# ՆՈՐ

# ԿՏԱԿԱՐԱՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

## ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



ՅՈՒՆԱԿԱՆ ԲՆԱԳՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ

A. B. S.
4,800

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
Ի ՏՊԱՐԱՆԻ Ա. ՅԱԿՈԲ ՊՕՅԱՃԵԱՆ
1912

# ՑԱՆԿ

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ

---

## ԳԼՈՒԽ Ա.

*1 Քրիստոսի ազգաբանութիւնը Աբրահամէ մինչեւ Յովսէփ ։ 18 Կոյս Մարիամ, որ Յովսէփին նշանուած էր, Սուրբ Հոգիէն կը յղանայ ։ 19 Հրեշտակը Յովսէփի սխալ կարծիքը կ'ուղղէ, եւ կը մեկնէ Քրիստոսի անունները ։*

1 Գիրք ծննդեան Յիսուսի Քրիստոսի, Դաւի-
թի որդւոյն, Աբրահամի որդւոյն ։
2 Աբրահամ ծնաւ Իսահակը· Իսահակ ծնաւ
Յակոբը· Յակոբ ծնաւ Յուդան ու անոր եղ-
3 բայրները· Յուդա ծնաւ Փարէսը ու Զարան
Թամարէ· Փարէս ծնաւ Եսրոմը· Եսրոմ ծնաւ
4 Արամը· Արամ ծնաւ Ամինադաբը· Ամինադաբ
ծնաւ Նաասոնը· Նաասոն ծնաւ Սաղմոնը·
5 Սաղմոն ծնաւ Բոոսը Ռախաբէ· Բոոս ծնաւ
6 Ովբէդը Հռութէ· Ովբէդ ծնաւ Յեսսէն· Յես-
սէ ծնաւ Դաւիթ թագաւորը· Դաւիթ թագա-
7 ւորը ծնաւ Սողոմոնը Ուրիայի կնոջմէն· Սո-
ղոմոն ծնաւ Ռոբովամը· Ռոբովամ ծնաւ Ա-
8 բիան· Աբիա ծնաւ Ասան· Ասա ծնաւ Յովսա-
փատը· Յովսափատ ծնաւ Յովրամը· Յովրամ
9 ծնաւ Ոզիան· Ոզիա ծնաւ Յովաթամը· Յովա-
թամ ծնաւ Աքազը· Աքազ ծնաւ Եզեկիան·
10 Եզեկիա ծնաւ Մանասէն· Մանասէ ծնաւ Ա-
11 մոնը· Ամոն ծնաւ Յովսիան· Յովսիա ծնաւ Յե-
քոնիան ու անոր եղբայրները Բաբելոնեան գե-
12 րութեան ատենները· Բաբելոն գերութեան
երթալէն ետեւ Յեքոնիա ծնաւ Սաղաթիէլը·
13 Սաղաթիէլ ծնաւ Զօրաբաբէլը· Զօրաբաբէլ
ծնաւ Աբիուդը· Աբիուդ ծնաւ Եղիակիմը·

14 Եղիակիմ ծնաւ Ազովրը. Ազովր ծնաւ Սադով-
կը. Սադովկ ծնաւ Աքիմը. Աքիմ ծնաւ Եղիու-
15 դը. Եղիուդ ծնաւ Եղիազարը. Եղիազար ծնաւ
16 Մատթանը. Մատթան ծնաւ Յակոբը. Յակոբ
ծնաւ զՅովսէփ, այրն Մարիամայ, որմէ ծնաւ
17 Յիսուս, որ կ՚ըսուի Քրիստոս։ Արդ բոլոր ազ-
գերը Աբրահամէ մինչև Դաւիթ տասնըչորս
ազգ, և Դաւիթէ մինչև Բաբելոնեան գերու-
թիւնը տասնըչորս ազգ, ու Բաբելոնեան գե-
րութենէն մինչև Քրիստոս տասնըչորս ազգ։
18 Եւ Յիսուսի Քրիստոսի ծնունդը այս կերպով
էր. անոր մայրը Մարիամ Յովսէփի նշանուած,
դեռ իրարու քով չեկած՝ Սուրբ Հոգիէն յղա-
19 ցած գտնուեցաւ։ Եւ Յովսէփ անոր այրը ար-
դար մարդ ըլլալով ու չուզելով որ զանիկա խայ-
տառակ ընէ, մտածեց որ ծածկաբար արձակէ
20 զանիկա։ Եւ քանի որ անիկա այս բանը կը մտա-
ծէր, ահա Տէրոջը հրեշտակը երազի մէջ երև-
ցաւ անոր ու ըսաւ, Յովսէփ, Դաւիթի որդի,
մի վախնար քեզի առնել քու Մարիամ կինդ,
վասն զի անոր ներսիդին ծնածը Սուրբ Հոգիէն
21 է։ Եւ որդի մը պիտի ծնանի, ու անոր անունը
*Յիսուս դնես, քանզի անիկա իր ժողովուրդը
22 իրենց մեղքերէն պիտի փրկէ։ Եւ այս ամէնը
եղաւ, որպէս զի կատարուի Տէրոջմէն ըսուածը
23 մարգարէին ձեռքով, որ կ՚ըսէ, Ահա կոյսը պի-
տի յղանայ ու որդի պիտի ծնանի, և անոր ա-
նունը Էմմանուէլ պիտի կոչեն, որ կը թարգ-
24 մանուի Աստուած մեզի հետ։ Եւ Յովսէփ
քունէն արթննալով ինչպէս Տէրոջը հրեշտակը
իրեն հրամայեց, այնպէս ըրաւ ու իր կինը քովն
25 առաւ. Եւ չէր գիտեր զանիկա՝ մինչև իր անդ-
րանիկ որդին ծնաւ, ու անոր անունը Յիսուս
դրաւ։

*Այսինքն, Փրկիչ

## ԳԼ. Բ

1 Արեւելքէն մոգերը Քրիստոսի կ'երթան՝ աստղի մը առաջնորդութեամբ, 11 և երկրպագութիւն կ'ընեն անոր, ու իրենց ընծաները կը մատուցանեն։ 14 Յովսէփ առնելով Յիսուսը ու անոր մայրը՝ Եգիպտոս կը փախչի։ 16 Հերովդէս մանր տղաքը սպաննել կու տայ. 20 անոր մահը։ 23 Յիսուս Եգիպտոսէ կը տարուի Գալիլեայի Նազարեթ քաղաքը։

1 Ու երբ Յիսուս ծնաւ Հրէաստանի Բեթլեհէ-
մին մէջ Հերովդէս թագաւորին օրերը, ահա
2 արեւելքէն մոգեր եկան Երուսաղէմ, Ու ըսին,
Ո՞ւր տեղ է ան՝ որ Հրեաներուն թագաւոր
ծնաւ. վասն զի մենք արեւելքի մէջ անոր
աստղը տեսանք, ու եկանք անոր երկրպագու-
3 թիւն ընելու։ Ու երբ Հերովդէս թագաւորը
լսեց, խռովեցաւ, և բոլոր Երուսաղէմ իրեն
4 հետ։ Եւ ժողվելով բոլոր քահանայապետները
ու ժողովուրդին դպիրները, հարցուց անոնց
5 թէ Քրիստոս ո՞ւր պիտի ծնանի։ Անոնք ալ
իրեն ըսին, Հրէաստանի Բեթլեհէմին մէջ.
վասն զի այսպէս գրուած է մարգարէին ձեռ-
6 քով. Եւ դուն, Բեթլեհէմ, Յուդայի երկիրը,
Յուդայի իշխաններուն մէջ բնաւ պզտիկ մը
չես. վասն զի քեզմէ իշխան մը պիտի ելլէ, որ
7 իմ Իսրայէլ ժողովուրդս պիտի հովուէ։ Այն
ատեն Հերովդէս ծածկաբար մոգերը կանչեց,
ու ստուգեց անոնցմէ աստղին երեւցած ատե-
8 նը։ Եւ զանոնք Բեթլեհէմ ղրկելով՝ ըսաւ,
Գացէք ստոյգը իմացէք այն մանուկին վրայով,
ու երբ գտնէք, ինծի իմացուցէք, որպէս զի ես
9 ալ գամ, անոր երկրպագութիւն ընեմ։ Ու
երբ անոնք թագաւորէն այս բանը լսեցին, գացին.
և ահա այն աստղը զոր արեւելքի մէջ տեսեր
էին, անոնց առջեւէն գնաց, մինչև եկաւ կե-
10 ցաւ մանուկին եղած տեղին վրայ։ Երբ տեսան
աստղը, շատ մեծ ուրախութիւնով ուրախացան։
11 Եւ տունը մտնելով՝ տեսան մանուկը իր մօրը
Մարիամի հետ, ու ինկան երկրպագութիւն

*ըրին անոր, և իրենց գանձերը բանալով ընծա-*
*ներ տուին անոր, ոսկի ու կնդրուկ և զմուռս։*
12 *Ու հրաման առնելով երազի մէջ, որ նորէն*
*Հերովդէսի չդառնան, ուրիշ ճամբով գացին*
*իրենց երկիրը։*
13. *Ու երբ անկէ գացին անոնք, ահա Տէրոջը*
*հրեշտակը երազի մէջ երեւցաւ Յովսէփի ու*
*ըսաւ, Ելիր, առ մանուկը ու անոր մայրը, ու*
*Եգիպտոս փախիր, և հոն կեցիր մինչև ես քե-*
*զի ըսեմ, քանզի Հերովդէս պիտի փնտռէ այդ*
14 *մանուկը կորսնցնելու համար։ Ան ալ ելաւ,*
*մանուկը ու անոր մայրը գիշերով առաւ և*
*գնաց Եգիպտոս, ու մինչև Հերովդէսի մահը*
15 *հոն էր։ Որպէս զի կատարուի Տէրոջմէն ը-*
*սուածը մարգարէին ձեռքով, որ կ'ըսէ, Եգիպ-*
*տոսէ կանչեցի իմ որդիս։*
16 *Այն ատեն երբ տեսաւ Հերովդէս թէ *խա-*
*բուեցաւ մոգերէն, սաստիկ սրդողեցաւ, ու*
*ղրկեց ջարդեց Բեթլեհէմի և անոր ամէն սահ-*
*մաններուն մէջ գտնուած բոլոր տղաքը՝ երկու*
*տարեկան և անկէ վար, այն ժամանակին համե-*
17 *մատ զոր մոգերէն ստուգեց։ Այն ատեն կա-*
*տարուեցաւ Երեմիա մարգարէին ձեռքով ը-*
*սուածը, որ կ'ըսէ, Ռամայի մէջ ձայն մը լսուե-*
18 *ցաւ, ողբ, լաց ու մեծ կոծ. Ռաքէլ կուլար իր*
*տղոցը համար, ու չէր ուզեր մխիթարուիլ,*
*վասն զի չկային։*
19 *Ու երբ Հերովդէս մեռաւ, ահա Տէրոջը հրեշ-*
*տակը Եգիպտոս երազի մէջ Յովսէփի երեւցաւ,*
20 *Ու ըսաւ, Ելիր, առ մանուկը ու անոր մայրը,*
*և գնա Իսրայէլի երկիրը, քանզի մեռան անոնք*
21 *որ մանուկին կեանքը կը փնտռէին։ Ան ալ ելաւ,*
*մանուկը ու անոր մայրը առաւ և եկաւ Իս-*
22 *րայէլի երկիրը։ Իսկ երբ լսեց թէ Արքեղայոս*

---
*Յուն. ծաղրուեցաւ

թագաւորեց Հրէաստանի վրայ իր հօրը Հե-
րովդէսի տեղ, վախցաւ հոն երթալու, ու երա-
զի մէջ պատգամ առնելով՝ Գալիլեայի կողմերը
23 գնաց. Եւ եկաւ Նազարէթ ըսուած քաղաքը
բնակեցաւ, որպէս զի մարգարէներուն խօսքը
կատարուի՝ թէ Նազովրեցի պիտի կոչուի։

## ԳԼ. Գ

1 Յովհաննէսի քարոզութիւնը, պաշտօնը, վարքը և մկրտութիւնը։ 7 Յովհաննէս կը յանդիմանէ փարիսեցիները, 13 և կը մկրտէ զՔրիստոս Յորդանանու մէջ։

1 Այն օրերը Յովհաննէս Մկրտիչը եկաւ, ու
2 Հրէաստանի անապատին մէջ կը քարոզէր, Ու
կ'ըսէր, Ապաշխարեցէք, վասն զի երկինքի թա-
3 գաւորութիւնը մօտեցած է։ Վասն զի ասիկա
ան է՝ որու համար Եսայի մարգարէին ձեռ-
քով ըսուեցաւ, որ կ'ըսէ, Անապատի մէջ կան-
չողին ձայնը, Տէրոջը ճամբան պատրաստեցէք,
4 անոր շաւիղները շիտկեցէք։ Եւ այս Յովհան-
նէսը իր հանդերձը ուղտի մազէ, ու իր մէջքը
կաշիէ գօտի ունէր. և իր կերակուրը մարախ
5 ու վայրենի մեղր էր։ Այն ատեն Երուսաղէմ
և բոլոր Հրէաստան ու Յորդանանու բոլոր կող-
6 մերը իրեն կ'ելլէին, Եւ կը մկրտուէին իրմէ
Յորդանանու մէջ, ու իրենց մեղքերը կը խոս-
7 տովանէին։ Ու երբ տեսաւ փարիսեցիներէն ու
սադուկեցիներէն շատերը իր մկրտութեանը ե-
կած, ըսաւ անոնց, Իժերու ծնունդներ, ո՞վ
իմացուց ձեզի գալու բարկութենէն փախչիլ։
8 Ուրեմն ապաշխարութեան արժանաւոր պտուղ
9 բերէք. Եւ մի խորհիք դուք ձեր ներսիդին ը-
սել, թէ Մենք մեր հայր՝ Աբրահամը ունինք.
քանզի կ'ըսեմ ձեզի որ Աստուած կարող է այս
10 քարերէն Աբրահամի որդիներ հանել։ Ալ հի-
մա կացինը ծառերուն արմատին քով կը դրուի.
ուստի ամէն ծառ որ բարի պտուղ չբերեր,

11 կը կտրուի ու կրակը կը ձգուի։ Ես ձեզ ջրով կը
մկրտեմ ապաշխարութեան համար, բայց իմ
ետեւէս եկողը ինծմէ զօրաւոր է, ու ես անոր
կօշիկները կրելու արժանի չեմ. անիկա ձեզ
12 պիտի մկրտէ Հոգւով Սրբով ու կրակով. Որուն
հեծանոցը իր ձեռքն է, և իր կալը պիտի մաք-
րէ ու իր ցորենը համբարը պիտի ժողվէ, և
յարդը պիտի այրէ չմարող կրակով։
13 Այն ատեն Յիսուս Գալիլեայէ Յորդանան ե-
կաւ Յովհաննէսի, որպէս զի անկէ մկրտուի։
14 Եւ Յովհաննէս կ'արգիլէր զանիկա ու կ'ըսէր,
Ինծի՛ պէտք է որ քեզմէ մկրտուիմ, ու դուն
15 ինծի՞ կու գաս։ Յիսուս պատասխան տուաւ ու
ըսաւ անոր, Թող տուր հիմա, վասն զի այսպէս
կը վայելէ մեզի որ բոլոր արդարութիւնը կա-
16 տարենք. ետքը թող տուաւ անոր։ Ու երբ Յի-
սուս մկրտուեցաւ, շուտ մը ջուրէն դուրս ե-
լաւ, և ահա երկինք անոր բացուեցաւ, ու տե-
սաւ Աստուծոյ Հոգին որ աղաւնիի պէս կ'իջ-
17 նէր, ու կու գար իր վրայ։ Եւ ահա երկինքէն
ձայն մը եկաւ որ կ'ըսէր, Ասիկա է իմ սիրելի
Որդիս, որու հաւներ եմ։

## ԳԼ. Դ

1 Քրիստոս ծոմ կը պահէ ու կը փորձուի։ 11 Հրեշտակները անոր սպասաւորութիւն կ'ընեն։ 13 Քրիստոս Կափառնայումի մէջ կը բնակի. 17 կը սկսի քարոզել. 18 կը կանչէ Պետրոսը ու Անդրէասը, 21 Յակոբոսը և Յովհաննէսը, 23 ու կը բժշկէ բոլոր հիւանդները։

1 Այն ատեն Յիսուս անապատը տարուեցաւ
Սուրբ Հոգիէն, որպէս զի Սատանայէ փորձուի.
2 Եւ քառասուն ցորեկ ու քառասուն գիշեր ծոմ
պահելէն ետքը անօթեցաւ։
3 Եւ փորձողը անոր մօտենալով՝ ըսաւ, Եթէ
դուն Աստուծոյ Որդին ես, ըսէ որ այս քարերը
4 հաց ըլլան։ Անիկա պատասխան տուաւ ու ը-
սաւ, Գրուած է թէ Ոչ միայն հացով կ'ապրի

մարդ, հապա այն ամէն խօսքով՝ որ Աստուծոյ
բերնէն կ'ելլէ։
5 Այն ատեն Սատանայ առաւ տարաւ զանի֊
կա սուրբ քաղաքը, և կայնեցուց զանիկա տա֊
6 ճարին աշտարակին վրայ, Ու ըսաւ անոր, Եթէ
դուն Աստուծոյ Որդին ես, քեզ ասկէ վար ձգէ,
վասն զի գրուած է թէ Իր հրեշտակներուն
պիտի ապսպրէ քեզի համար, ու ձեռքերնուն
վրայ պիտի վերցնեն քեզ, որպէս զի չըլլայ թէ
7 ոտքդ քարի զարնես։ Յիսուս ըսաւ անոր, Դար֊
ձեալ գրուած է թէ Քու Տէր Աստուածդ չփոր֊
ձես։
8 Սատանայ նորէն առաւ հանեց զանիկա խիստ
բարձր լեռան մը վրայ, և ցուցուց անոր աշ֊
խարհի բոլոր թագաւորութիւնները ու անոնց
9 փառքը. Ու ըսաւ անոր, Ասոնք ամէնը քեզի
կու տամ, եթէ իյնաս՝ ինծի երկրպագութիւն
10 ընես։ Այն ատեն Յիսուս ըսաւ անոր, [Ետևս]
գնա, Սատանայ, վասն զի գրուած է թէ Քու
Տէր Աստուծոյդ երկրպագութիւն ընես, ու
11 միայն զանիկա պաշտես։ Այն ատեն Սատանայ
զանիկա թողուց. և ահա հրեշտակներ եկան
ու անոր սպասաւորութիւն կ'ընէին։
12 Եւ երբ լսեց Յիսուս թէ Յովհաննէս մատ֊
13 նուեցաւ, ելաւ գնաց Գալիլեա, Ու ձգելով Նա֊
զարէթը, եկաւ բնակեցաւ Կափառնայում, ծո֊
վեզերեայ քաղաքը, Զաբուղոնի ու Նեփթաղիմի
14 սահմաններուն մէջ. Որպէս զի կատարուի Ե֊
15 սայի մարգարէին ձեռքով ըսուած խօսքը, Զա֊
բուղոնի երկիրը ու Նեփթաղիմի երկիրը, ծո֊
վու ճամբով Յորդանանու անդին կողմը, Հե֊
16 թանոսաց Գալիլեան. Խաւարի մէջ նստող ժո֊
ղովուրդը մեծ լոյս տեսաւ, և լոյս ծագեցաւ
անոնց՝ որոնք մահուան երկրին ու շուքին մէջ
17 կը նստէին։ Անկէ ետև Յիսուս սկսաւ քարոզել

ու ըսել, Ապաշխարեցէք, վասն զի երկինքի թա-
գաւորութիւնը մօտ է։
18 Երբ Յիսուս Գալիլեացւոց ծովուն քովէրը կը
պտըտէր, տեսաւ երկու եղբայրներ, Պետրոս
կոչուած Սիմոնը և անոր եղբայրը Անդրէասը,
որոնք ծովը ուռկան կը ձգէին, վասն զի ձկնորս
19 էին. Եւ ըսաւ անոնց, Իմ ետեւէս եկէք, ու
20 ձեզ մարդոց որսորդ ընեմ։ Անոնք ալ շուտ մը
ուռկանները թողուցին ու անոր ետեւէն գա-
21 ցին։ Եւ անկէ յառաջ երթալով՝ տեսաւ ուրիշ
երկու եղբայրներ, Զեբեդեան Յակոբոսը ու
անոր եղբայրը Յովհաննէսը, նաւին մէջ իրենց
հօրը Զեբեդէոսի հետ, երբ իրենց ուռկանները
22 կը կարկտէին. ու կանչեց զանոնք. Անոնք ալ
շուտ մը նաւը ու հայրերնին թողուցին ու ա-
նոր ետեւէն գացին։
23 Եւ Յիսուս բոլոր Գալիլեա պտըտելով, կը սոր-
վեցնէր անոնց ժողովարաններուն մէջ, և ար-
քայութեան աւետարանը կը քարոզէր, ու ժո-
ղովուրդին մէջի ամէն կերպ հիւանդութիւննե-
24 րը ու ամէն կերպ ցաւերը կը բժշկէր։ Եւ ա-
նոր համբաւը բոլոր Սուրիա տարածուեցաւ, և
բերին անոր՝ բոլոր հիւանդները որոնք կերպ
կերպ ցաւերով ու տանջանքներով կը նեղուէին,
և դիւահարները ու լուսնոտները և անդամա-
25 լոյծները. ու բժշկեց զանոնք։ Եւ շատ ժողո-
վուրդներ անոր ետեւէն կ'երթային, Գալիլեայէ
ու Դեկապոլիսէ և Երուսաղէմէ ու Հրէաստանէ
և Յորդանանու անդին կողմէն։

## ԳԼ. Ե

1 Քրիստոս կը սկսի իր քարոզութիւնը լեռանը վրայ, 3 և կ'իմացընէ թէ որո՛նք են երանելիները. 13 իր աշակերտները կ'անուանէ երկրի աղ, 14 աշխարհի լոյս, լեռան վրայ կեցած քաղաք. 17 կը յայտնէ թէ ինք եկաւ օրէնքը կատարելու. 21 կը բացատրէ թէ ի՛նչ է սպանութիւն ընելը, 27 շնութիւն ընելը, 33 երդում ընելը. 38 կը յորդորէ չարին հակառակ չկենալ, 44 մինչև անգամ թշնամիները սիրել, 48 և կատարեալ ըլլալու ջանք ընել։

1 Եւ տեսնելով ժողովուրդները, լեռը ելաւ. ու

երբ նստաւ նա, իր աշակերտները քովը գացին.
2 Եւ իր բերանը բանալով կը սորվեցնէր անոնց ու
կ'ըսէր,
3 Երանի՜ հոգւով աղքատներուն, վասն զի եր-
4 կինքի թագաւորութիւնը անոնցն է։ Երանի՜
սգաւորներուն, վասն զի անոնք պիտի մխիթա-
5 րուին։ Երանի՜ հեզերուն, վասն զի անոնք պիտի
6 ժառանգեն երկիրը։ Երանի՜ անոնց որ անօթի
ու ծարաւ են արդարութեան, վասն զի անոնք
7 պիտի կշտանան։ Երանի՜ ողորմածներուն, վասն
8 զի անոնք ողորմութիւն պիտի գտնեն։ Երանի՜
անոնց որ սրտով մաքուր են, վասն զի անոնք
9 պիտի տեսնեն զԱստուած։ Երանի՜ խաղաղու-
թիւն ընողներուն, վասն զի անոնք Աստուծոյ
10 որդիներ պիտի կոչուին։ Երանի՜ անոնց որ հա-
լածուած են արդարութեան համար, վասն զի
11 երկինքի թագաւորութիւնը անոնցն է։ Երանի՜
է ձեզի, երբ կը նախատեն ձեզ ու կը հալա-
ծեն, և սուտ տեղը ամէն կերպ գէշ խօսքեր
12 կը խօսին ձեր վրայ ինծի համար։ Ցնծացէք և
ուրախ եղէք, վասն զի ձեր վարձքը շատ է եր-
կինքը. քանզի այս կերպով հալածեցին ձեզմէ
առաջ եղած մարգարէները։
13 Դուք էք երկրի աղը. հապա եթէ աղը իր
համը կորսնցնէ, ինք ինչո՞վ պիտի աղուի. անկէ
ետև բանի մը չգար, միայն թէ դուրս ձգուե-
14 լու և մարդոց ոտքին տակ կոխուելու։ Դուք
էք աշխարհի լոյսը. քաղաք մը որ լեռան վրայ
15 կեցած է, չկրնար պահուիլ։ Ու ճրագը չեն վա-
ռեր և դներ գրուանի տակ, հապա աշտանակի
վրայ, և լոյս կու տայ բոլոր տանը մէջ եղողնե-
16 րուն։ Այնպէս թող լուսաւորէ ձեր լոյսը մար-
դոց առջև, որ տեսնեն ձեր բարի գործերը, ու
փառաւորեն ձեր Հայրը որ երկինքն է։
17 Մի կարծէք թէ ես եկայ օրէնքը կամ մար-

գարէները աւրելու. չեկայ աւրելու, հապա
18 կատարելու։ Քանզի ճշմարտապէս կ'ըսեմ ձե-
զի, Մինչեւ երկինք ու երկիր անցնին, օրէնքէն
յովտ մը կամ նշանագիր մը պիտի չանցնի,
19 մինչեւ բոլորն ալ կատարուին։ Ուստի ով որ այս
ամենափոքր պատուիրանքներէն մէկը աւրէ,
ու մարդոց այնպէս սորվեցնէ, անիկա ամենա-
փոքր պիտի կոչուի երկինքի թագաւորութեա-
նը մէջ. բայց ով որ ընէ եւ սորվեցնէ, անիկա
մեծ պիտի կոչուի երկինքի թագաւորութեանը
20 մէջ։ Քանզի կ'ըսեմ ձեզի, Եթէ ձեր արդա-
րութիւնը դպիրներուն ու փարիսեցիներուն ար-
դարութենէն աւելի չըլլայ, բնաւ պիտի չմտնէք եր-
կինքի թագաւորութիւնը։
21 Լսեր էք որ ըսուեցաւ առաջիններուն, Սպա-
նութիւն մի ըներ. եւ ով որ սպանութիւն ընէ,
22 դատաստանի պարտաւոր պիտի ըլլայ։ Բայց ես
ձեզի կ'ըսեմ, Ով որ իր եղբօրը պարապ տեղը
սրդողի, դատաստանի պարտաւոր պիտի ըլլայ.
եւ ով որ իր եղբօրը Ցխմար ըսէ, ատեանի պար-
տաւոր պիտի ըլլայ. եւ ով որ իր եղբօրը Անմիտ ը-
սէ, գեհենի կրակին պարտաւոր պիտի ըլլայ։
23 Ուրեմն, եթէ քու ընծադ սեղանին վրայ բե-
րես, ու հոն միտքդ գայ թէ քու եղբայրդ քեզի
24 դէմ բան մը ունի, Հոն ձգէ քու ընծադ սե-
ղանին առջեւ, եւ գնա առաջ եղբօրդ հետ հաշ-
տուէ, ու ետքը եկուր որ քու ընծադ մատուցա-
25 նես։ Քու ոսոխիդ հետ շուտով միաբանէ, քանի
որ անոր հետ ճամբուն մէջ ես. չըլլայ որ քու
ոսոխդ քեզ դատաւորին մատնէ, եւ դատաւորը
26 դահիճին, եւ բանտը ձգուիս։ Ճշմարիտ կ'ըսեմ
քեզի, Պիտի չելլես անկէ՝ մինչեւ որ վերջին նա-
քարակիտը չվճարես։
27 Լսեր էք որ ըսուեցաւ*, Շնութիւն մի ըներ։

*Ոմանք կ'աւելցնեն, առաջիններուն

28 Բայց ես ձեզի կ'ըսեմ, Ով որ կին մարդու կը
նայի անոր ցանկալու համար, ալ անիկա իր
29 սրտին մէջ շնութիւն ըրաւ անոր հետ։ Արդ
եթէ քու աջ աչքդ քեզ կը գայթակղեցնէ,
հանէ զանիկա ու քեզմէ ձգէ. վասն զի աղէկ
է քեզի որ անդամներէդ մէկը կորսուի, ու քու
30 բոլոր մարմինդ դժոխքը չձգուի։ Եւ եթէ աջ
ձեռքդ քեզ կը գայթակղեցնէ, կտրէ զանիկա
ու քեզմէ ձգէ. վասն զի աղէկ է քեզի որ ան-
դամներէդ մէկը կորսուի, ու քու բոլոր մար-
31 մինդ դժոխքը չձգուի։ Իսկ, ըսուեցաւ թէ Ով
որ իր կինը կ'արձակէ, թող անոր արձակման
32 թուղթ տայ. Բայց ես ձեզի կ'ըսեմ թէ Ով
որ իր կինը կ'արձակէ առանց պոռնկութեան
պատճառի, կնիք պատճառ կ'ըլլայ անոր շնու-
թիւն ընելուն, և ով որ այն արձակուածը առ-
նէ, շնութիւն կը գործէ։

33 Դարձեալ լսեր էք որ ըսուեցաւ առաջիննե-
րուն, Սուտ երդում մի ըներ, հապա ըրած
34 երդումներդ լմնցուր Տէրոջը։ Բայց ես ձեզի
կ'ըսեմ, Ամենևին երդում մի ընէք, ոչ եր-
35 կինքին վրայ՝ որ Աստուծոյ աթոռն է, Եւ ոչ
երկրի վրայ՝ որ անոր ոտքերուն պատուանդանն
է, ոչ ալ Երուսաղէմի վրայ՝ որ մեծ Թագաւո-
36 րին քաղաքն է. Եւ ոչ քու գլխուդ վրայ եր-
դում ըներ, վասն զի չես կրնար մէկ մազ ճեր-
37 մըկցնել կամ սևցնել։ Հապա ձեր խօսքը ըլլայ
այոն՝ այո, և ոչը՝ ոչ. ու ասկէ աւելին չարէն
յառաջ կու գայ։

38 Լսեր էք որ ըսուեցաւ, Աչքի տեղ աչք, ու
39 ակռայի տեղ ակռայ։ Բայց ես ձեզի կ'ըսեմ,
Չարին հակառակ մի կենաք, հապա եթէ մէկը
ապտակ մը զարնէ աջ ծնօտիդ, դարձուր անոր
40 միւսն ալ։ Եւ մէկը որ կ'ուզէ քեզի հետ դատ
վարել ու քու շապիկդ առնել, թող տուր ա-

41 նոր — վերարկուդ ալ։ Եւ ով որ քեզ պահակ
բռնէ ու մղոն մը ճամբայ քշէ, դուն անոր հետ
42 երկու։ Քեզմէ ուզողին տուր, ու երես մի դար-
ձըներ անկէ՝ որ կ'ուզէ քեզմէ փոխ առնել։
43 Լսեր էք որ ըսուեցաւ, Քու ընկերդ սիրես
44 ու թշնամիդ ատես։ Բայց ես ձեզի կ'ըսեմ,
Սիրեցէք ձեր թշնամիները, օրհնեցէք ձեզ ա-
նիծողները, բարի ըրէք անոնց որ ձեզ կ'ատեն,
և աղօթք ըրէք անոնց համար որ ձեզ կը չար-
45 չըրկեն ու կը հալածեն. Որպէս զի ձեր երկնա-
ւոր Հօրը որդիները ըլլաք. վասն զի իր արեւը
կը ծագեցնէ թէ՛ չարերուն և թէ՛ բարիներուն
վրայ, և անձրև կը ղրկէ թէ՛ արդարներուն և
46 թէ՛ մեղաւորներուն վրայ։ Վասն զի եթէ դուք
ձեզ սիրողները սիրէք, ի՞նչ վարձք կ'ունենաք.
47 չէ՞ որ մաքսաւորներն ալ նոյնը կ'ընեն։ Եւ եթէ
միայն ձեր եղբայրներուն բարեւ տաք, ի՞նչ ա-
ւելի կ'ընէք ուրիշներէն. չէ՞ որ մաքսաւորներն ալ
48 նոյնը կ'ընեն։ Ուրեմն դուք կատարեալ եղէք,
ինչպէս ձեր երկնաւոր Հայրն ալ կատարեալ է։

## ԳԼ. Զ

1 Քրիստոս կը շարունակէ իր քարոզութիւնը լեռանը վրայ, ու կը խօսի ողորմութեան, 5 աղօթք ընելու, 14 մեր եղբայրներուն յանցանքը ներելու, 16 ծոմ պահելու, 19 մեր գանձը ուր պահելու, 24 Աստուծոյ և մամոնայի ծառայութիւն ընելու վրայով. 25 կը յորդորէ որ աշխարհային բաներու համար հոգ չընենք, 33 հապա Աստուծոյ թագաւորութիւնը խնդրենք։

1 Զգոյշ եղէք որ ձեր ողորմութիւնը մարդոց
առջև չընէք՝ անոնց երևնալու համար, եթէ ոչ՝
վարձք չէք առներ ձեր Հօրմէն որ երկինքն է։
2 Ուստի երբ ողորմութիւն կ'ընես, առջևդ փող
մի հնչեցներ, ինչպէս կեղծաւորները ժողովա-
րաններուն ու փողոցներուն մէջ կ'ընեն, որպէս
զի մարդոցմէ փառաւորուին. ճշմարիտ կ'ըսեմ
3 ձեզի, Անոնք իրենց վարձքը առած կ'ըլլան։ Իսկ
դուն երբ ողորմութիւն կ'ընես, ձախ ձեռքդ

4 Թող չգիտնայ աջ ձեռքիդ ինչ գործելը․ Որպէս
զի քու ողորմութիւնդ գաղտուկ ըլլայ, և քու
Հայրդ որ գաղտուկը կը տեսնէ, քեզի յայտնա-
պէս հատուցում պիտի ընէ։
5 Ու երբ աղօթք կ'ընես, կեղծաւորներուն նման
չըլլաս, որոնք կը սիրեն ժողովարաններուն մէջ
ու հրապարակներուն անկիւնները կայնելով ա-
ղօթք ընել, որպէս զի մարդոց երեւնան․ Ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի, Անոնք իրենց վարձքը առած
6 կ'ըլլան։ Իսկ դուն երբ աղօթք կ'ընես, մտիր
քու ներքին սենեակդ ու դուռդ գոցէ, և ա-
ղօթք ըրէ քու Հօրդ որ գաղտուկ տեղ կը գտնուի․
և քու Հայրդ որ գաղտուկը կը տեսնէ, քեզի
7 յայտնապէս հատուցում պիտի ընէ։ Ու երբ
աղօթք կ'ընէք, հեթանոսներուն պէս շատա-
խօս մի ըլլաք, վասն զի կը կարծեն թէ իրենց
8 շատ խօսելուն համար պիտի լսուին։ Ուրեմն
անոնց չնմանիք, վասն զի ձեր Հայրը ձեզի պէտք
9 եղածը գիտէ՝ դեռ դուք իրմէ չխնդրած։ Ուս-
տի այսպէս աղօթք ըրէք դուք․
Ով Հայր մեր որ երկինքն ես, քու անունդ սուրբ
10 ըլլայ․ Քու թագաւորութիւնդ գայ․ քու կամքդ
ըլլայ, ինչպէս երկինքը՝ նոյնպէս երկրի վրայ․
11 Մեր ամէն օրուան հացը այսօր մեզի տուր․
12 Եւ մեզի ներէ մեր պարտքերը, ինչպէս մենք
13 ալ կը ներենք մեր պարտապաններուն․ Ու մեզ
փորձութեան մի տանիր, հապա չարէն մեզ ա-
զատէ․ քանզի քուկդ է թագաւորութիւնը և
զօրութիւնը ու փառքը յաւիտեան։ Ամէն։
14 Վասն զի եթէ դուք ներէք մարդոց իրենց
յանցանքները, ձեր երկնաւոր Հայրն ալ ձեզի
15 կը ներէ․ Հապա եթէ դուք չներէք մարդոց
իրենց յանցանքները, ձեր Հայրն ալ ձեզի չնե-
րեր ձեր յանցանքները։
16 Ու երբ ծոմ կը պահէք, կեղծաւորներուն

պէս տրտումերես մի ըլլաք. քանզի իրենց ե-
րեսները կ'աւրեն որպէս զի մարդոց երևնան
թէ ծոմ կը պահեն. Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
17 Անոնք իրենց վարձքը առած կ'ըլլան։ Բայց դուն
երբ ծոմ կը պահես, գլուխդ օծէ ու երեսդ
18 լուա, Որպէս զի մարդոց ծոմ պահողի պէս
չերևնաս, հապա քու Հօրդ՝ որ գաղտուկ տեղ
կը գտնուի. և քու Հայրդ որ գաղտուկը կը տես-
նէ, *քեզի հատուցում պիտի ընէ։
19 Երկրի վրայ ձեզի գանձեր մի դիզէք, ուր
ցեցը ու ժանգը կ'ապականեն, և ուր գողերը
20 պատ կը ծակեն ու կը գողնան. Հապա ձեզի գան-
ձեր դիզեցէք երկինքը, ուր ոչ ցեցը և ոչ ժան-
գը կ'ապականէ, ու ոչ գողերը պատ կը ծակեն և
21 կը գողնան։ Քանզի ձեր գանձը ուր որ է, սիր-
22 տերնիդ ալ հոն պիտի ըլլայ։ Մարմնին ճրագը
աչքն է. հապա եթէ քու աչքդ պարզ է, բոլոր
23 մարմինդ լուսաւոր կ'ըլլայ։ Բայց եթէ քու աչքդ
չար է, բոլոր մարմինդ մութ կ'ըլլայ. ուրեմն
եթէ քու մէջդ եղած լոյսը խաւար է, այն
24 խաւարը ո՜րչափ է։ Մարդ մը չկրնար երկու
տէրոջ ծառայութիւն ընել. վասն զի կա՛մ մէկը
պիտի ատէ և միւսը սիրէ, կա՛մ †մէկուն պիտի
յարի՝ և միւսը պիտի արհամարհէ. չէք կրնար
25 ծառայել Աստուծոյ ու մամոնայի։ Ուստի կ'ը-
սեմ ձեզի, Հոգ մի ընէք ձեր կեանքին համար
թէ ի՞նչ պիտի ուտէք, կամ ի՞նչ պիտի խմէք.
ոչ ալ ձեր մարմիններուն համար թէ ի՞նչ պիտի
հագնիք. չէ՞ որ կեանքը կերակուրէն աւելի է,
26 ու մարմինը հագուստէն։ Նայեցէք երկնքի
թռչուններուն որոնք ոչ կը սերմանեն և ոչ կը
հնձեն և ոչ ամբարի մէջ կը ժողվեն, ու ձեր
Երկնաւոր Հայրը կը կերակրէ զանոնք. չէ՞ որ
27 դուք անոնցմէ աւելի լաւ էք։ Հիմա ձեզմէ ո՞վ

*Ոմանք, քեզի յայտնապէս †Կամ, մէկը պիտի մեծարէ

կրնայ իր հոգ ընելովը իր հասակին վրայ կան-
28 գուն մը աւելցնել։ Ու հագուստի համար ին-
չո՞ւ հոգ կ'ընէք. նայեցէք դաշտի շուշաննե-
րուն, ի՛նչպէս կ'աճին. ոչ կ'աշխատին և ոչ կը
29 մանեն. Բայց ձեզի կ'ըսեմ որ Սողոմոն ալ իր
բոլոր փառաւորութեանը մէջ անոնցմէ մէկո՛ւն
30 պէս չհագուեցաւ։ Ուստի եթէ դաշտի խոտը,
որ այսօր կայ և վաղը փուռը կը ձգուի, Աստ-
ուած այնպէս կը հագուեցնէ, հապա ո՜րչափ
31 աւելի ձեզ, թերահաւատներ։ Ուրեմն հոգ մի
ընէք՝ ըսելով, Ի՞նչ պիտի ուտենք, կամ Ի՞նչ
32 պիտի խմենք, կամ Ի՞նչ պիտի հագնինք. (Քան-
զի այդ բոլոր բաները հեթանոսները կը խնդ-
րեն.) վասն զի ձեր երկնաւոր Հայրը գիտէ՝ թէ
33 այդ բոլոր բաները ձեզի պէտք են։ Բայց առաջ
խնդրեցէք Աստուծոյ թագաւորութիւնը և ա-
նոր արդարութիւնը, ու այդ բոլոր բաներն ալ
34 ձեզի պիտի տրուին։ Ուստի վաղուան համար
հոգ մի ընէք, վասն զի վաղուան օրը իրեն հա-
մար հոգ պիտի ընէ. հերիք է օրուան իր նե-
ղութիւնը։

## ԳԼ. Է

1 Քրիստոս իր քարոզութիւնը վերջացնելով կը յանդիմանէ անխոհեմաբար դատողութիւն ընելը. 6 կ'արգիլէ սուրբ բաները շուներուն տալը. 7 կը յորդորէ աղօթք ընել, 13 նեղ դռնէն ներս մտնել, 15 սուտ մարգարէներէն զգուշ կենալ, 21 իր խօսքը միայն լսողներ չըլլալ՝ հապա կատարողներ, 24 նմանելով այնպիսի մարդու մը որ իր տունը վէմի վրայ կը շինէ, 26 և ոչ թէ աւազի վրայ։

1 Մի դատէք, որպէս զի չդատուիք։ (2) Քան-
զի ի՛նչ դատաստանով որ դատէք, անով պիտի
դատուիք, և ի՛նչ չափով որ չափէք, անով պիտի
3 չափուի ձեզի։ Եւ ինչո՞ւ քու եղբօրդ աչքին
մէջի շիւղը կը տեսնես, ու քու աչքիդ մէջի
4 գերանին չես նայիր։ Կամ ի՛նչպէս կրնաս ըսել
քու եղբօրդ, Թող տուր աչքէդ շիւղը հանեմ.
5 և ահա քու աչքիդ մէջ գերան կայ։ Կեղծա-
ւոր, առաջ քու աչքէդ գերանը հանէ, ու

ետքը պարզ պիտի տեսնես եղբօրդ աչքէն շիւ-
ղը հանելու։
6 Սուրբ բանը շուներուն մի տաք, և ձեր մար-
գարիտները խոզերուն առջև մի ձգէք, որպէս
զի ոտքերնուն տակ չկոխկռտեն զանոնք, ու
դառնան ձեզ պատառեն։
7 Խնդրեցէք, և պիտի տրուի ձեզի. փնտռե-
ցէք, և պիտի գտնէք. դուռը զարկէք, և պիտի
8 բացուի ձեզի. Վասն զի ամէն ով որ կը խնդրէ՝
կ'առնէ, և ով որ կը փնտռէ՝ կը գտնէ, և ով որ
9 դուռը կը զարնէ՝ պիտի բացուի անոր։ Ձեզմէ
ո՞ր մարդը կայ՝ որմէ իր որդին եթէ հաց ուզէ,
10 միթէ քա՞ր պիտի տայ անոր. Եւ կամ եթէ
11 ձուկ ուզէ, միթէ օ՞ձ պիտի տայ անոր։ Ուստի
եթէ դուք որ չար էք, ձեր զաւակներուն ա-
ղէկ ընծաներ տալ գիտէք, ո՞րչափ աւելի ձեր
Հայրը որ երկինքն է, բարի բաներ պիտի տայ
անոնց որ իրմէ կը խնդրեն։
12 Ուստի ամէն ինչ որ կ'ուզէք որ մարդիկ ձե-
զի ընեն, դուք ալ անոնց այնպէս ըրէք, քան-
զի այս է օրէնքը ու մարգարէները։
13 Նեղ դռնէն ներս մտէք. վասն զի լայն է այն
դուռը ու ընդարձակ՝ այն ճամբան, որ դէպ ի
կորուստ կը տանի. և շատուոր են անոնք որ
14 անկէ կը մտնեն։ Վասն զի նեղ է այն դուռը ու
նեղուցք է այն ճամբան, որ դէպ ի կեանք կը
տանի. և քիչուոր են անոնք որ զանիկա կը գտնեն։
15 Զգուշ կեցէք սուտ մարգարէներէն, որոնք
ձեզի կու գան ոչխարի հանդերձներով, բայց
16 ներսէն յափշտակող գայլեր են։ Իրենց պտու-
ղէն պիտի ճանչնաք զանոնք. միթէ փուշերէն
խաղող կը քաղե՞ն, կամ տատասկէն թուզ։
17 Այսպէս ամէն բարի ծառ բարի պտուղ կու
18 տայ, և չար ծառ չար պտուղ կու տայ։ Բարի
ծառը չկրնար չար պտուղ տալ, ոչ ալ չար ծա-

19 ալ բարի պտուղ տալ։ Ամէն ծառ որ բարի պը-
տուղ չտար, կը կտրուի ու կրակը կը ձգուի։
20 Ուրեմն իրենց պտուղէն պիտի ճանչնաք զանոնք։
21 Ոչ թէ ամէն մէկը որ ինծի Տէր, Տէր, կ՚ըսէ,
պիտի մտնէ երկինքի թագաւորութիւնը, հապա
անիկա՝ որ իմ երկնաւոր Հօրս կամքը կը կատա-
22 րէ։ Շատերը այն օրը ինծի պիտի ըսեն, Տէր,
Տէր, չէ՞ որ քու անունովդ մարգարէութիւն
ըրինք, և քու անունովդ դեւեր հանեցինք, ու
23 քու անունովդ շատ հրաշքներ ըրինք։ Եւ այն
ատեն անոնց յայտնապէս պիտի ըսեմ թէ Ես
բնաւ ձեզ չէի ճանչնար. մէկդի գացէք քովէս
դուք որ անօրէնութիւն կը գործէիք։
24 Արդ ով որ այս իմ խօսքերս կը լսէ և կը կա-
տարէ զանոնք, զանիկա պիտի նմանցնեմ խե-
լացի մարդու մը՝ որ իր տունը վէմի վրայ շինեց.
25 Եւ անձրև իջաւ ու գետերը վազեցին ու հովե-
րը փչեցին, և զարկին այն տանը, ու չփլաւ,
26 վասն զի վէմի վրայ հաստատուած էր։ Եւ ով
որ այս իմ խօսքերս կը լսէ ու չկատարեր զա-
նոնք, կը նմանի անխելք մարդու մը՝ որ իր տու-
27 նը աւազի վրայ շինեց. Եւ անձրև իջաւ ու գե-
տերը վազեցին ու հովերը փչեցին, և զարկին
այն տանը, ու փլաւ, և մեծ էր անոր կործա-
նումը։
28 Ու երբ Յիսուս լմնցուց այս խօսքերը, ժողո-
վուրդները կը զարմանային անոր վարդապետու-
29 թեանը վրայ. Վասն զի իշխանութիւն ունեցո-
ղի մը պէս կը սորվեցնէր անոնց, ու ոչ թէ
դպիրներուն պէս։

## ԳԼ. Ը

2 Քրիստոս կը մաքրէ բորոտը, 5 կը բժշկէ հարիւրապետին ծառան, 14 Պետրոսի զոքանչը, 16 և ուրիշ շատ հիւանդներ. 18 կը ցուցընէ թէ ինչ կերպով իր ետեւէն երթալ պէտք է. 23 ծովուն ալէկոծութիւնը կը հանդարտեցնէ. 28 երկու դիւահարներէ դեւերը կը հանէ, 31 և զանոնք կը թողու որ երթան խոզերուն մէջ մտնեն։

1 Ու երբ այն լեռնէն վար իջաւ, շատ ժողո-

2 ժողովուրդներ գացին անոր ետեւէն։ Եւ ահա բո-
րոտ մը եկաւ, երկրպագութիւն կ՚ընէր անոր
ու կ՚ըսէր, Տէր, եթէ ուզես, կրնաս զիս մաք-
3 րել։ Եւ Յիսուս իր ձեռքը երկնցնելով դպաւ
անոր ու ըսաւ, Կ՚ուզեմ, մաքրուէ. և շուտ մը
4 անոր բորոտութիւնը մաքրուեցաւ։ Եւ Յիսուս
ըսաւ անոր, Զգոյշ կեցիր, մարդու չըսես, հա-
պա գնա, քեզ քահանային ցուցուր, և Մով-
սէսի պատուիրած ընծան տուր, անոնց վկայու-
թիւն ըլլալու համար։
5 Ու *երբ Կափառնայում մտաւ, հարիւրա-
6 պետ մը եկաւ քովը, կ՚աղաչէր անոր, Ու կ՚ը-
սէր, Տէր, իմ ծառաս տունը անդամալոյծ պառ-
7 կած չարաչար կը տանջուի։ Եւ Յիսուս ըսաւ
8 անոր, Ես կու գամ ու զանիկա կը բժշկեմ։ Եւ
հարիւրապետը պատասխան տալով՝ ըսաւ, Տէր,
ես արժանի չեմ որ դուն իմ յարկիս տակ մըտ-
նես. միայն թէ խօսքով գրուցէ, ու իմ ծառաս
9 պիտի բժշկուի։ Վասն զի ես ալ իշխանութեան
տակ մարդ մըն եմ, ու իմ հրամանիս տակ զին-
ուորներ ունիմ. և ասոր կ՚ըսեմ, Գնա, ու կ՚եր-
թայ. և միւսին՝ թէ Եկուր, ու կու գայ. և ծա-
10 ռայիս՝ թէ Այս բանը ըրէ, ու կ՚ընէ։ Յիսուս
երբ լսեց, զարմացաւ, և իր ետեւէն գացողնե-
րուն ըսաւ, Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի, Իսրայէլի
11 մէջ անգամ ես այսչափ հաւատք չգտայ։ Եւ
ձեզի կ՚ըսեմ որ արեւելքէն ու արեւմուտքէն
շատեր պիտի գան, ու երկնքի թագաւորու-
թեանը մէջ պիտի բազմին Աբրահամի ու Իսա-
12 հակի և Յակոբի հետ. Իսկ թագաւորութեա-
նը որդիները դուրսի խաւարը պիտի հանուին.
13 հոն պիտի ըլլայ լալ ու ակռաներ կրճտել։ Եւ
Յիսուս հարիւրապետին ըսաւ, Գնա, ու ինչ-
պէս դուն հաւատացիր, այնպէս թող ըլլայ քե-

*Ոմանք, երբ Յիսուս

գի. և նոյն ժամուն անոր ծառան բժշկուեցաւ։
14 Եւ Յիսուս Պետրոսի տունը գալով, տեսաւ
որ անոր զոքանչը ջերմէն բռնուած՝ պառկած
15 էր. Եւ անոր ձեռքէն բռնեց, ու ջերմը թող
տուաւ զանիկա. ան ալ ոտքի վրայ ելաւ և *ա-
նոնց սպասաւորութիւն կ'ընէր։
16 Երբ իրիկուն եղաւ, շատ դիւահարներ բե-
րին անոր, ու խօսքով հանեց չար ոգիները և
17 բոլոր հիւանդները բժշկեց. Որպէս զի Եսայի
մարգարէին ձեռքով ըսուած խօսքը կատարուի,
Անիկա մեր հիւանդութիւնները վերցուց և մեր
ցաւերը կրեց։
18 Յիսուս իր բոլորտիքը շատ ժողովուրդ տես-
նելով, հրաման ըրաւ որ միւս կողմը երթան։
19 Եւ դպիր մը մօտենալով՝ ըսաւ անոր, Վարդա-
պետ, ես քու ետեւէդ պիտի գամ՝ ուր որ եր-
20 թաս։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Աղուէսները որ-
ջեր ունին, ու երկնքի թռչունները բոյներ,
բայց Որդին մարդոյ տեղ մը չունի, ուր իր գլուխը
21 դնէ։ Եւ մէկ ուրիշը, որ անոր աշակերտներէն
էր, ըսաւ անոր, Տէր, ինծի հրաման տուր, որ
22 երթամ առաջ իմ հայրս թաղեմ։ Յիսուս ըսաւ
անոր, Եկուր իմ ետեւէս, ու թող տուր մե-
ռելներուն որ թաղեն իրենց մեռելները։
23 Ու երբ նաւը մտաւ, իր աշակերտներն իր ե-
24 տեւէն գացին. Եւ ահա մեծ ալէկոծութիւն մը
եղաւ ծովուն մէջ, այնպէս որ նաւը ալիքներէն
25 կը ծածկուէր. իսկ ինք կը քնանար։ Եւ աշա-
կերտները մօտ գալով, արթնցուցին զանիկա
ու ըսին, Տէր, ազատէ մեզ, ահա կը կորսուինք։
26 Եւ ըսաւ անոնց, Թերահաւատներ, ինչո՞ւ այդպէս
վախկոտ էք. այն ատեն ելաւ հովերուն ու ծո-
վուն սաստեց, և մեծ խաղաղութիւն եղաւ։
27 Ու մարդիկը զարմացան և կ'ըսէին, Ի՞նչպիսի

*Ոմանք, անոր

*մարդ է աս որ հովերը ու ծովը անոր կը հնա-*
*զանդին։*
28 *Ու երբ միւս կողմը *Գերգեսացւոց երկիրը*
*անցաւ, երկու դիւահար պատահեցան իրեն*
*գերեզմաններէն ելած՝ սաստիկ կատաղած, այն-*
*պէս որ հնար չէր մարդ ու այն ճամբայէն անցնիլ։*
29 *Եւ ահա աղաղակեցին ու ըսին, Յիսուս, Որ-*
*դի Աստուծոյ, դուն մեզի հետ ի՞նչ բան ունիս,*
*ատենէն առաջ մեզ տանջելո՞ւ համար հոս ե-*
30 *կար։ Եւ անոնցմէ հեռու շատ խոզերու երա-*
31 *մակ մը կար, որոնք կ՚արածուէին։ Ու դեւերը*
*կ՚աղաչէին իրեն ու կ՚ըսէին, Եթէ մեզ կը հա-*
*նես, հրաման տուր մեզի որ երթանք խոզերուն*
32 *երամակին մէջ մտնենք։ Եւ ըսաւ անոնց, Գացէք.*
*ու անոնք ելան գացին խոզերուն երամակին մէջ*
*մտան, և ահա բոլոր երամակը դահավէժ տեղէն*
33 *ծովը վազեցին, ու ջուրերուն մէջ մեռան։ Խո-*
*զարածները այլ փախան, և քաղաքը երթալով*
*բոլորը պատմեցին, ու դիւահարներուն պատահած*
34 *բաները։ Եւ ահա բոլոր քաղաքը Յիսուսի դէ-*
*մը ելաւ, ու երբ տեսան զանիկա, աղաչեցին*
*որ իրենց սահմաններէն երթայ։*

## ԳԼ. Թ

*2 Քրիստոս անդամալոյծ մը կը բժշկէ. 9 Մատթէոսը մաքսաւորութիւն ընելէն իրեն կը կանչէ. 10 մաքսաւորներու և մեղաւորներու հետ կ՚ուտէ. 14 իր աշակերտներուն ծոմ չպահելը կ՚արդարացընէ. 20 տեռատես կինը կը բժշկէ. 23 Յայրոսի աղջիկը կը յարուցանէ. 27 երկու կոյրերու աչքերը կը բանայ. 32 համր դիւահարը կը բժշկէ, 36 և կը խղճայ բազմութեանը վրայ։*

1 *Եւ նաւը մտնելով անդին կողմը անցաւ, ու*
2 *եկաւ իր քաղաքը։ Եւ ահա բերին իրեն ան-*
*դամալոյծ մը, որ մահիճի մէջ պառկած էր. և*
*Յիսուս անոնց հաւատքը տեսնելով, ըսաւ ան-*
*դամալոյծին, Քաջալերուէ, որդեակ, քու մեղ-*
3 *քերդ քեզի ներուած են։ Եւ ահա դպիրներէն*

---
*Ոմանք, Գադարացւոց

ոմանք իրենց մտքերնին մէջ ըսին, Ասիկա հայհոյու-
4 թիւն կ'ընէ։ Յիսուս ալ անոնց խորհուրդները
իմանալով՝ ըսաւ, Ինչո՞ւ սրտերնուդ մէջ չար
5 բաներ կը խորհիք։ Քանզի ո՞րը աւելի դիւրին
է. Քու մեղքերդ ներուած են՝ ըսե՞լը, թէ Ելիր
6 ու քալէ՝ ըսելը։ Բայց որպէս զի գիտնաք թէ
Որդին մարդոյ իշխանութիւն ունի երկրի վրայ
մեղքերու թողութիւն տալու, (այն ատեն ան-
դամալոյծին ըսաւ,) Ելիր, մահիճդ առ ու տունդ
7 գնա։ Ու անիկա ելաւ իր տունը գնաց։ (8) Ժո-
ղովուրդները երբ տեսան, զարմացան, ու փա-
ռաւորեցին զԱստուած, որ մարդոց այնպիսի
իշխանութիւն տուեր էր։
9 Եւ Յիսուս անկէ առաջ անցնելով՝ մարդ մը
տեսաւ Մատթէոս անունով, որ մաքս ընդու-
նելու տեղը նստեր էր, ու ըսաւ անոր, Ետեւէս
10 եկուր. ան ալ ելաւ անոր ետեւէն գնաց։ Ու ե-
ղաւ որ տունը սեղան նստած ատենը՝ ահա ու-
րիշ շատ մաքսաւորներ և մեղաւորներ եկած ու
սեղան նստած էին Յիսուսի ու անոր աշակերտ-
11 ներուն հետ։ Ու փարիսեցիները երբ տեսան,
ըսին անոր աշակերտներուն, Ինչո՞ւ ձեր վար-
դապետը մաքսաւորներուն ու մեղաւորներուն
12 հետ կ'ուտէ։ Բայց Յիսուս երբ լսեց՝ ըսաւ ա-
նոնց, Առողջներուն բժիշկ պէտք չէ, հապա
13 հիւանդներուն։ Գացէք սորվեցէք թէ ի՞նչ է
այս խօսքը, Ողորմութիւն կ'ուզեմ և ոչ թէ զոհ.
վասն զի ես արդարները կանչելու չեկայ, հա-
պա մեղաւորները *ապաշխարութեան։
14 Այն ատեն Յովհաննէսի աշակերտները անոր
եկան ու ըսին, Ինչո՞ւ մենք ու փարիսեցիները
շատ անգամ ծոմ կը պահենք, և քու աշա-
15 կերտներդ չեն պահեր։ Ու Յիսուս ըսաւ ա-
նոնց, Միթէ կարելի՞ է որ հարսնիքին տղաքը

*Ոմանք չունին

սուգ պահեն, քանի որ փեսան իրենց հետ է․
բայց օրեր պիտի գան որ երբ փեսան իրենցմէ
16 վերցուի, այն ատեն ծոմ պիտի պահեն։ Ու մէ-
կը չձգեր նոր լաթի կտոր հին հանդերձի վրայ,
քանզի այն որ անոր լրութեանը համար դրուած է,
կ'առնէ հանդերձէն, ու պատռուածքը ա՛լ ա-
17 ւելի գէշ կ'ըլլայ․ Ոչ ալ նոր գինին հին տիկե-
րու մէջ կը դնեն․ եթէ ոչ՝ տիկերը կը պատռին
ու գինին կը թափի, և տիկերը կը կորսուին․
հապա նոր գինին նոր տիկերու մէջ կը դնեն,
ու երկուքն ալ կը պահուին։
18 Երբ անիկա անոնց հետ այս բաները կը խօ-
սէր, ահա իշխան մը եկաւ, երկրպագութիւն
կ'ընէր անոր ու կ'ըսէր, Աղջիկս ա՛լ մինչև հի-
մա մեռած է, բայց եկուր ձեռքդ անոր վրայ
19 դիր, ու պիտի ապրի։ Ու Յիսուս ելաւ ու իր
աշակերտներուն հետ անոր ետևէն գնաց։
20 Ու ահա տասուերկու տարուան արիւնահոս
կին մը մօտեցաւ ետևէն, անոր հանդերձին
21 քղանցքին դպաւ․ Քանզի իր սրտին մէջ կ'ըսէր,
Եթէ միայն անոր հանդերձին դպչիմ, պիտի
22 բժշկուիմ․ Բայց Յիսուս երբ ետին դարձաւ ու
տեսաւ զանիկա, ըսաւ, Քաջալերուէ, աղջիկ,
քու հաւատքդ քեզ բժշկեց․ և կինը նոյն ժա-
մէն բժշկուեցաւ։
23 Ու երբ Յիսուս իշխանին տունը եկաւ, ու
տեսաւ փողահարները և խռոված բազմութիւ-
24 նը, Ըսաւ անոնց, Մէկդի գացէք, վասն զի աղ-
ջիկը մեռած չէ, հապա կը քնանայ․ և ծաղր
25 կ'ընէին զանիկա։ Ու երբ բազմութիւնը դուրս
ձգուեցաւ, ինք ներս մտաւ, անոր ձեռքէն բռ-
26 նեց, ու աղջիկը ոտք ելաւ։ Ու այս լուրը բո-
լոր երկիրը տարածուեցաւ։
27 Ու երբ Յիսուս անկէ՝ առաջ անցաւ, երկու
կոյր ինկան անոր ետևէն, կ'աղաղակէին ու կ'ը-

28 սէ՛ն, Ողորմէ՛ մեզի, Որդի Դաւիթի։ Ու երբ
տունը եկաւ, կոյրերը իրեն եկան. և Յիսուս ա-
նոնց ըսաւ, Կը հաւատա՞ք թէ կրնամ այս բա-
29 նը ընել. ըսին անոր, Այո, Տէր։ Այն ատեն
անոնց աչքերուն դպաւ ու ըսաւ, Ձեր հաւատա-
30 քին պէս ըլլայ ձեզի։ Ու անոնց աչքերը բաց-
ուեցան. և Յիսուս սաստիկ պատուէր տուաւ
անոնց ու ըսաւ, Զգոյշ կեցէք, մէ՛կը չիմանայ։
31 Բայց անոնք ելան, այն բոլոր երկրին մէջ անոր
համբաւը տարածեցին։
32 Եւ երբ անոնք դուրս ելան, ահա համր դի-
33 ւահար մարդ մը բերին իրեն։ Ու երբ դեւը ե-
լաւ, համրը խօսեցաւ. և ժողովուրդները զար-
մացան ու կ՚ըսէին թէ Իսրայէլի մէջ բնաւ այս-
34 պիսի բան մը տեսնուած չէ։ Բայց փարիսեցի-
ները կ՚ըսէին թէ Ատիկա դեւերուն իշխանովը
դեւերը կը հանէ։
35 Եւ Յիսուս կը պտըտէր բոլոր քաղաքները ու
գեղերը, և անոնց ժողովարաններուն մէջ կը
սորվեցնէր ու կը քարոզէր արքայութեան ա-
ւետարանը, և կը բժշկէր բոլոր ախտերը ու բո-
36 լոր հիւանդութիւնները ժողովուրդին մէջ։ Եւ
ժողովուրդները տեսնելով, անոնց վրայ խղճաց,
վասն զի յոգնած ու ցրուած էին հովիւ
37 չունեցող ոչխարներու պէս։ Այն ատեն ըսաւ
իր աշակերտներուն, Հունձքը շատ է, բայց մը-
38 շակները քիչ. Ուստի հունձքին Տէրոջը աղաչե-
ցէք, որ մշակներ հանէ իր հունձքին։

## ԳԼ. Ժ

1 Քրիստոս իր տասներկու առաքեալները կը ղրկէ՝ հրաշքներ ընելու իշխանութիւն տալով անոնց. 5 պատուէրներ կու տայ անոնց և կը սորվեցնէ թէ ի՛նչ պարտին ընել. 16 կը մխիթարէ զանոնք հալածումներու վրայով, 40 և օրհնութիւն կը խոստանայ զանոնք ընդունողներուն։

1 Եւ իր քով կանչելով իր տասներկու աշա-
կերտները, անոնց իշխանութիւն տուաւ պիղծ

ոգիներուն վրայ, որպէս զի զանոնք հանեն, և
ամէն ցաւերը ու ամէն հիւանդութիւնները
բժշկեն։
2 Ու տասներկու առաքեալներուն անունները
ասոնք են. առաջինը Սիմոն, Պետրոս ըսուածը
3 և անոր եղբայրը Անդրէաս, Յակոբոս Զեբեդ-
եան և անոր եղբայրը Յովհաննէս, Փիլիպպոս
և Բարթողոմէոս, Թովմաս և Մատթէոս մաք-
սաւոր, Յակոբոս Ալփեան և Ղեբէոս որ Թա-
4 դէոս մականուանեցաւ, Սիմոն Կանանացի և
Յուդա Իսկարիովտացի, որ նաև մատնեց զանիկա։
5 Այս տասներկուքը Յիսուս ղրկեց, և անոնց
պատուիրեց՝ ըսելով, Հեթանոսներու ճամբայ
մի երթաք ու Սամարացիներու քաղաք մի մըտ-
6 նէք, հապա աւելի Իսրայէլի տանը կորսուած
7 ոչխարներուն գացէք։ Ու երբ կ'երթաք, քա-
րոզեցէք ու ըսէք թէ Երկնքի թագաւորու-
8 թիւնը մօտեցած է։ Հիւանդները բժշկեցէք,
բորոտները *մաքրեցէք, դևերը հանեցէք. ձրի
9 առեր էք, ձրի տուէք։ Մի ստանաք ոսկի, և ոչ
10 արծաթ, և ոչ պղինձ ձեր գօտիներուն մէջ, Ոչ
ճամբու համար պարկ, և ոչ երկու հանդերձ,
ոչ կօշիկ, ոչ գաւազան. վասն զի մշակը իր կե-
11 րակուրին արժանի է։ Եւ ո՛ր քաղաք կամ գեղ
մտնէք, հարցուցէք թէ ո՛վ է անոր մէջ արժա-
12 նաւոր, ու հոն կեցէք մինչև որ ելլէք։ Ու երբ
13 տունը կը մտնէք, բարև տուէք †անոր։ Եւ ե-
թէ այն տունը արժանաւոր է, ձեր բարևը ա-
նոր վրայ գայ. հապա եթէ արժանաւոր չէ,
14 ձեր բարևը ձեզի դառնայ։ Եւ ով որ ձեզ չըն-
դունի, ու ձեր խօսքերը մտիկ չընէ, երբ այն
տունէն կամ քաղաքէն կ'ելլէք, ձեր ոտքերուն
15 փոշին թօթվեցէք։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Սո-

*Ոմն․, մաքրեցէք, մեռելները յարուցէք
†Ոմն․, անոր՝ ու ըսէք, Բարև այս տանը

դոմացւոց ու Գոմորացւոց երկրին աւելի դիւ-
րին պիտի ըլլայ դատաստանին օրը քան թէ
այն քաղաքին։
16 Ահա ես ձեզ կը ղրկեմ իբրև ոչխարներ գայ-
լերու մէջ. ուստի օձերու պէս խորագէտ եղէք
17 և աղաւնիներու պէս միամիտ։ Իսկ մարդոցմէ
զգուշացէք. վասն զի ձեզ ատեաններու պիտի
մատնեն, ու իրենց ժողովարաններուն մէջ ձեզ
18 պիտի ծեծեն։ Եւ իմ անունիս համար կուսակալ-
ներու ու թագաւորներու առջև պիտի տար-
ուիք, անոնց և հեթանոսներուն վկայութիւն
19 ըլլալու համար։ Բայց երբ ձեզ մատնեն, հոգ
մի ընէք թէ ինչպէս կամ ինչ պիտի խօսիք,
վասն զի ձեզի պիտի տրուի այն ժամանակ՝ ինչ որ
20 պիտի խօսիք։ Վասն զի ոչ թէ դուք էք որ կը
խօսիք, հապա ձեր Հօրը Հոգին՝ որ ձեր ներսի-
21 դին կը խօսի։ Ու եղբայր եղբայրը մահուան
պիտի մատնէ, և հայրը՝ որդին. և որդիներ իրենց
ծնողքներուն վրայ պիտի ելլեն ու մեռցնեն զա-
22 նոնք։ Եւ իմ անուանս համար ամէնուն ատե-
լի պիտի ըլլաք. բայց ան որ մինչև վերջը համ-
23 բերէ, անիկա պիտի ապրի։ Ու երբ այս քա-
ղաքին մէջ ձեզ կը հալածեն, ուրիշ քաղաք փա-
խէք. քանզի ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Իսրայէլի
քաղաքները պիտի չհատցնէք, մինչև Որդին
24 մարդոյ գայ։ Աշակերտը իր վարդապետէն ա-
25 ւելի չէ, և ոչ ծառան իր տէրոջմէն։ Հերիք է
աշակերտին՝ որ իր վարդապետին պէս ըլլայ, ու
ծառային՝ իր տէրոջը պէս. եթէ տանուտէրը
Բէեղզեբուղ կոչեցին, ո՞րչափ աւելի անոր ըն-
26 տանիքը։ Ուստի մի վախնաք անոնցմէ, վասն զի
բան մը չկայ ծածուկ որ պիտի չյայտնուի, և
27 գաղտնիք՝ որ պիտի չգիտցուի։ Ինչ որ ձեզի մու-
թի մէջ կ'ըսեմ, դուք լոյսի մէջ խօսեցէք, և
ինչ որ ականջին ի վար կը լսէք, տանիքներուն

28 վրայ քարոզեցէք։ Եւ մի՛ վախնաք անոնցմէ՝ որ
մարմինը կը սպաննեն, ու չեն կրնար հոգին
սպաննել. հապա աւելի անկէ վախցէք դուք, որ
կրնայ հոգին ու մարմինը գեհենին մէջ կորսն-
29 ցնել։ Չէ՞ որ երկու ճնճղուկ մէկ դանգի կը
ծախուին, և անոնցմէ մէ՛կը գետինը չիյնար ա-
30 ռանց ձեր Հօրը։ Բայց ձեր գլխուն բոլոր մա-
31 զերն ալ համրուած են։ Ուրեմն մի՛ վախնաք,
32 վասն զի շատ ճնճղուկներէն լաւ էք դուք։ Արդ
ով որ մարդոց առջև զիս կը դաւանի, ես ալ
զանիկա պիտի դաւանիմ իմ Հօրս առջև՝ որ
33 երկինքն է։ Եւ ով որ մարդոց առջև զիս կ՚ու-
րանայ, ես ալ զանիկա պիտի ուրանամ իմ Հօրս
34 առջև՝ որ երկինքն է։ Մի՛ կարծէք թէ ես երկ-
րի վրայ խաղաղութիւն ձգելու եկայ. խաղա-
35 ղութիւն ձգելու չեկայ՝ հապա սուր. Վասն զի
եկայ մարդը իր հօրմէն զատելու, ու աղջիկը իր
36 մօրմէն, ու հարսը իր կեսուրէն։ Եւ մարդուն
37 թշնամիները իր ընտանիքը պիտի ըլլան։ Ան որ
հայրը կամ մայրը ինծմէ աւելի կը սիրէ, ինծի
արժանի չէ. և ան որ տղան կամ աղջիկը ինծ-
38 մէ աւելի կը սիրէ, ինծի արժանի չէ. Եւ ան որ
իր խաչը չառներ ու իմ ետևէս գար, ինծի ար-
39 ժանի չէ։ Ան որ իր անձը կը գտնէ, պիտի կոր-
սնցնէ զանիկա. և ան որ իր անձը ինծի հա-
40 մար կը կորսնցնէ, պիտի գտնէ զանիկա։ Ան որ
ձեզ կ՚ընդունի, զիս կ՚ընդունի. և ան որ զիս կ՚ըն-
41 դունի, զիս ղրկողը կ՚ընդունի։ Ան որ մարգարէ
մը կ՚ընդունի մարգարէի անունով, մարգարէի
վարձք կ՚առնէ. և ան որ արդար մը կ՚ընդունի
42 արդարի անունով, արդարի վարձք կ՚առնէ։ Ու-
ան որ այս պզտիկներէն մէկուն միայն գաւաթ
մը պաղ ջուր կը խմցնէ աշակերտի անունով,
ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի, ընաւ իր վարձքը պի-
տի չկորսնցնէ։

# ԳԼ. ԺԱ.

2 Յովհաննէս իր աշակերտները Քրիստոսի կը ղրկէ ։ 7 Քրիստոսի վկայութիւնը Յով-
հաննէսի համար ։ 18 Ժողովուրդներուն կարծիքը Յովհաննէսի ու Քրիստոսի վրայով ։
20 Քրիստոս կը նախատէ Քորազինը, Բեթսայիդան և Կափառնայումը՝ իրենց ա-
պերախտութեանը և անզեղջ մնալուն համար. 25 և կը փառաւորէ իր Հօրը ի-
մաստութիւնը՝ Աւետարանը պարզամիտներուն յայտնելուն համար. 28 իրեն կը
կանչէ ամէն անոնք որ իրենց մեղքին ծանրութիւնը կը զգան ։

1 Եւ եղաւ որ երբ Յիսուս լմնցուց իր տասներ-
կու աշակերտներուն պատուէր տալը, գնաց
անկէ անոնց քաղաքներուն մէջ քարոզելու և
սորվեցնելու ։
2 Իսկ Յովհաննէս բանտին մէջ երբ լսեց Քրիս-
տոսի գործերը, իր աշակերտներէն երկուքը
3 ղրկելով՝ Ըսաւ անոր, Դուն ա՞ն ես որ գալու
4 էիր, թէ ուրիշի մը սպասենք ։ Եւ Յիսուս պա-
տասխան տալով՝ անոնց ըսաւ, Գացէք պատմե-
ցէք Յովհաննէսի ինչ որ կը լսէք ու կը տեսնէք.
5 Կոյրերը կը տեսնեն, կաղերը կը քալեն, բորոտ-
ները կը մաքրուին, խուլերը կը լսեն, մեռել-
ները յարութիւն կ'առնեն ու աղքատներուն
6 աւետարան կը քարոզուի ։ Եւ երանի՜ անոր որ
իմ վրայովս չգայթակղի ։
7 Ու երբ անոնք գացին, Յիսուս սկսաւ ժողո-
վուրդներուն ըսել Յովհաննէսի համար, Ի՞նչ
տեսնելու ելաք անապատին մէջ. եղէ՞գ մը հո-
8 վէն շարժուած ։ Հապա ի՞նչ տեսնելու ելաք.
փափուկ հանդերձներ հագած մա՞րդ մը. ահա
փափուկ հանդերձներ հագնողները թագաւորնե-
9 րուն տուներն են ։ Հապա ի՞նչ տեսնելու ելաք.
մարգարէ՞. այո, կ'ըսեմ ձեզի, մարգարէէ մըն
10 ալ աւելի ։ Վասն զի ասիկա է՝ որուն համար
գրուած է, Ահա ես իմ դեսպանս կը ղրկեմ
քու երեսիդ առջեւէն, որ քու ճամբադ պիտի
11 պատրաստէ քու առջեւէդ ։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի, Կիներէն ծնածներուն մէջ Յովհաննէս
Մկրտիչէն մեծը ելած չէ. սակայն երկինքի թա-

գաւորութեանը մէջ ամենէն պզտիկը անկէ մեծ
12 է ։ Ու Յովհաննէս մկրտիչին օրերէն մինչեւ հի-
մա երկնքի թագաւորութիւնը ուժով կ'առ-
նուի, եւ ուժեղները կը յափշտակեն զանիկա ։
13 Վասն զի բոլոր մարգարէները ու օրէնքը մին-
14 չեւ Յովհաննէս մարգարէութիւն ըրին ։ Ու ե-
թէ կ'ուզէք ընդունիլ, անիկա է Եղիան՝ որ գա-
15 լու էր ։ Ան որ լսելու ականջ ունի, թող լսէ ։
16 Բայց որո՞ւ նմանցնեմ այս ազգը. կը նմանի
տղոց, որոնք շուկաները նստելով՝ իրենց ընկեր-
17 ներուն կը կանչեն, Ու կ'ըսեն, Փող հնչեցու-
ցինք ձեզի՝ ու չխաղացիք, ողբ կարդացինք ձե-
18 զի՝ ու կոծ չըրիք ։ Վասն զի Յովհաննէս եկաւ,
ոչ կ'ուտէր եւ ոչ կը խմէր, ու կ'ըսեն, Դեւ կայ
19 անոր ներսիդին ։ Որդին մարդոյ եկաւ, կ'ուտէ
ու կը խմէ, եւ կ'ըսեն, Ահա ուտող եւ արբեցող
մարդ մը, մաքսաւորներու ու մեղաւորներու
բարեկամ. եւ իմաստութիւնը արդարացաւ իր
որդիներէն ։

20 Այն ատեն սկսաւ նախատել այն քաղաքնե-
րը, որոնց մէջ գործուեր էին իր հրաշքներէն
21 շատերը, քանզի չապաշխարեցին. Վա՜յ քեզ,
Քորազին, վա՜յ քեզ, Բեթսայիդա, վասն զի
եթէ Տիւրոսի ու Սիդոնի մէջ եղած ըլլային այն
հրաշքները որոնք ձեր մէջ եղան, շատոնցմէ
քուրձով ու մոխիրով ապաշխարած պիտի ըլ-
22 լային ։ Բայց ձեզի կ'ըսեմ, Տիւրոսի եւ Սիդոնի
աւելի դիւրին պիտի ըլլայ դատաստանին օրը՝
23 քան թէ ձեզի ։ Ու դուն, Կափառնայում, որ
մինչեւ երկինք բարձրացած ես, մինչեւ դժոխք
պիտի իջնես, վասն զի եթէ Սոդոմի մէջ եղած
ըլլային այն հրաշքները որոնք քու մէջդ եղան,
24 էրա— որ մինչեւ այսօր դեռ պիտի մնար ։ Բայց ձեզի
կ'ըսեմ որ Սոդոմացւոց երկրին աւելի դիւրին
պիտի ըլլայ դատաստանին օրը՝ քան թէ քեզի ։

25 Նոյն ժամանակ պատասխան տուաւ Յիսուս
ու ըսաւ, Շնորհակալ եմ քեզմէ, ով Հայր,
Տէր երկնի և երկրի, որ այս բաները ծածուկ
պահեցիր իմաստուններէն ու գիտուններէն, ու
26 տղոց յայտնեցիր. Այո, ով Հայր, վասն զի քու
27 առջևդ այսպէս հաճելի եղաւ։ Ամէն բան ին-
ծի տրուեցաւ իմ Հօրմէս, ու մէ՛կը չճանչնար
Որդին, բայց Հայրը, և մէ՛կը չճանչնար Հայրը,
բայց Որդին, և ան որու Որդին կ'ուզէ յայտ-
28 նել։ Եկէք ինծի, բոլոր յոգնած ու բեռնաւոր-
29 ուածներ, և ես ձեզ պիտի հանգչեցնեմ։ Իմ
լուծս ձեր վրայ առէք, և ինծմէ սորվեցէք՝ որ
հեզ եմ ու սրտով խոնարհ, և ձեր անձերուն
30 հանգստութիւն պիտի գտնէք. Վասն զի իմ
լուծս քաղցր է, և իմ բեռս թեթև։

## ԳԼ. ԺԲ

1 Քրիստոս կը յանդիմանէ փարիսեցիներուն կուրութիւնը շաբաթ օրուան վրայով 3 Սուրբ Գիրքերով, 9 փաստով, 13 և հրաշքով մը։ 22 Կոյր ու համր դիւահար մը կը բժշկէ։ 31 Կ'իմացնէ թէ Սուրբ Հոգիին դէմ եղած հայհոյութիւնը պիտի չներուի, 36 և թէ դատարկ խօսքերու համար հաշիւ պիտի տրուի։ 38 Կը յանդիմանէ անհաւատները որ նշան կը խնդրեն, 49 և կը ցուցնէ թէ ո՛վ է իր եղբայրը, իր քոյրը և իր մայրը։

1 Այն ատեն Յիսուս շաբաթ օրը գնաց արտե-
րուն մէջէն, և իր աշակերտները անօթեցան,
2 ու սկսան ցորէնի հասկեր փրցնել և ուտել։ Փա-
րիսեցիները երբ տեսան, ըսին անոր, Ահա քու
աշակերտներդ կը գործեն ինչ որ արժան չէ շա-
3 բաթ օրը գործել։ Ան ալ անոնց ըսաւ, Չէ՞ք
կարդացեր դուք Դաւիթի ըրածը, երբ անօ-
4 թեցաւ ինք ու անոնք որ իրեն հետ էին. Ինչ-
պէս մտաւ Աստուծոյ տունը, և առաջաւորու-
թեան հացերը կերաւ, որ ոչ իրեն օրինաւոր
էր ուտել, և ոչ անոնց որ իրեն հետ էին, բայց
5 միայն քահանաներուն։ Կամ թէ օրէնքին մէջ
չէ՞ք կարդացեր, որ քահանաները շաբաթ օրե-
րը տաճարին մէջ շաբաթը կը պղծեն ու անմեղ

6 են։ Բայց ձեզի կ'ըսեմ որ այս տեղ տաճարէն
7 մեծ մէկը կայ։ Եւ եթէ գիտնայիք թէ ինչ ը-
սել է, Ողորմութիւն կ'ուզեմ ու ոչ թէ զոհ, այն
8 ատեն անպարտները չէիք դատապարտեր. Քան-
գի Որդին մարդոյ *շաբաթին ալ տէրն է։
9 Եւ անկէ երթալով եկաւ անոնց ժողովարա-
10 նը։ Եւ հոն մարդ մը կար, որուն ձեռքը չոր-
ցած էր. և հարցուցին անոր, ու ըսին թէ Շա-
բաթ օրը բժշկել արժա՞ն է, որպէս զի անոր
11 վրայով ամբաստանութիւն ընեն։ Ան ալ ըսաւ
անոնց, Ձեզմէ ո՞ր մարդը կայ, որ ոչխար մը
ունենայ, և անիկա շաբաթ օրը փոսի մէջ իյ-
12 նայ, պիտի չբռնէ՞ ու վեր հանէ զանիկա։ Արդ
ո՞րչափ աւելի է մարդը ոչխարէն. ուրեմն շա-
13 բաթ օրը բարի գործել արժան է։ Այն ատեն
ըսաւ այն մարդուն, Երկնցուր ձեռքդ. ան ալ
14 երկնցուց, ու ողջացաւ միւսին պէս։ Իսկ փա-
րիսեցիները դուրս ելլելով անոր վրայ խորհուրդ
կ'ընէին թէ ինչպէս զանիկա կորսնցնեն։
15 Եւ Յիսուս երբ գիտցաւ, զատուեցաւ անկէ.
և շատ ժողովուրդներ անոր ետևէն գացին, ու
16 ամէնը բժշկեց։ Եւ սաստիկ պատուիրեց անոնց
17 որ զինք մարդո՛ւ չյայտնեն. Որպէս զի կատար-
ուի Եսայի մարգարէին ձեռքով ըսուած խօս-
18 քը, Ահա իմ ծառաս, զոր ընտրեցի, և իմ սի-
րելիս, որու հաւնեցաւ իմ անձս. իմ Հոգիս
անոր վրայ պիտի դնեմ, ու հեթանոսներուն
19 իրաւունք պիտի պատմէ։ Ոչ պիտի վիճի, և ոչ
պիտի աղաղակէ, և ոչ մէկը պիտի լսէ անոր
20 ձայնը հրապարակներուն մէջ։ Ջախջախուած
եղէգը պիտի չփշրէ, ու պլպլած պատրոյգը պի-
տի չմարէ, մինչև որ դատաստանը յաղթու-
21 թեան հանէ։ Եւ հեթանոսները անոր անուա-
նը պիտի յուսան։

---

*Ոմանք, շաբաթին ալ

22 Այն ատեն կոյր ու համր դիւահար մը բերին
իրեն, և զանիկա բժշկեց, այնպէս որ համրը
23 ու կոյրը խօսեցաւ ու տեսաւ։ Եւ բոլոր ժո-
ղովուրդները զարմացան ու կ'ըսէին, Արդեօք
24 ասիկա՞ է Դաւիթի որդին։ Բայց փարիսեցինե-
րը երբ լսեցին՝ ըսին, Ասիկա ուրիշ բանով չհաներ
դեւերը, բայց դեւերուն Բէեղզեբուղ իշխանո-
25 վը։ Եւ Յիսուս անոնց խորհուրդները իմանա-
լով՝ ըսաւ անոնց, Ամէն թագաւորութիւն իրեն
դէմ բաժնուած՝ կ'աւերի. և ամէն քաղաք
կամ տուն իրեն դէմ բաժնուած՝ չկրնար կե-
26 նալ։ Եւ եթէ Սատանայ Սատանայ կը հանէ,
իրեն դէմ բաժնուեցաւ. ուստի ի՞նչպէս պիտի
27 կենայ անոր թագաւորութիւնը։ Ու եթէ ես
Բէեղզեբուղով դեւերը կը հանեմ, ձեր որդի-
ները ինչո՞վ կը հանեն. ուրեմն անոնք պիտի ըլ-
28 լան ձեր դատաւորները։ Բայց եթէ ես Աստուա-
ծոյ Հոգիովը կը հանեմ դեւերը, ուրեմն Աստուա-
ծոյ թագաւորութիւնը ձեր վրայ հասած է։
29 Կամ ի՞նչպէս կրնայ մէկը զօրաւոր մարդու մը
տունը մանել, և անոր կարասիները յափշտա-
կել, եթէ առաջ այն զօրաւոր մարդը չկապէ,
30 ու ետքը անոր տունը կողոպտէ։ Ան որ ինծի հետ
չէ, ինծի հակառակ է, և ան որ ինծի հետ
31 չժողվեր, ցիր ու ցան կ'ընէ։ Անոր համար ձեզի
կ'ըսեմ, Ամէն մեղք ու հայհոյութիւն պիտի
ներուի մարդոց, բայց Սուրբ Հոգւոյն դէմ եղած
32 հայհոյութիւնը պիտի չներուի մարդոց։ Եւ ով
որ Որդւոյ մարդոյ դէմ բան կ'ըսէ, պիտի ներ-
ուի անոր, բայց ով որ Հոգւոյն Սրբոյ դէմ
կ'ըսէ, պիտի չներուի անոր, ոչ այս աշխարհին
33 մէջ և ոչ գալու աշխարհին մէջ։ Կա՛մ ծառը բա-
րի ըրէք, ու անոր պտուղը բարի, կա՛մ ծառը
չար ըրէք, ու անոր պտուղը չար. վասն զի ծա-
34 ռը պտուղէն կը ճանչցուի։ Իժերու ծնունդ-

ներ, ի՞նչպէս կրնաք բարի խօսիլ, որ չար էք․
վասն զի սրտին աւելցուքէն բերանը կը խօսի։
35 Բարի մարդը իր սրտին բարի գանձէն բարի բա-
ներ կը հանէ, և չար մարդը իր սրտին չար գան-
36 ձէն չար բաներ կը հանէ։ Բայց ձեզի կ՚ըսեմ
թէ Ամէն պարապ խօսքի համար՝ զոր մարդիկ
կը խօսին, դատաստանին օրը հաշիւ պիտի տան։
37 Վասն զի քու խօսքերէդ պիտի արդարանաս,
և քու խօսքերէդ պիտի դատապարտուիս։
38 Այն ատեն դպիրներէն ու փարիսեցիներէն
ոմանք պատասխան տուին իրեն ու ըսին, Վար-
դապետ, կ՚ուզենք քեզմէ նշան մը տեսնել։
39 Անիկա պատասխան տուաւ ու անոնց ըսաւ,
Չար և շնացող ազգը նշան կ՚ուզէ, և ուրիշ նշան
պիտի չտրուի անոր, բայց միայն Յովնան մար-
40 գարէին նշանը։ Քանզի ինչպէս Յովնան երեք
օր ու երեք գիշեր կէտ ձուկին փորին մէջ էր,
այնպէս Որդին մարդոյ պիտի ըլլայ երկրի սրտին
41 մէջ երեք օր ու երեք գիշեր։ Նինուէի մար-
դիկը դատաստանին օրը այս ազգին դէմ պիտի
ելլեն ու պիտի դատապարտեն զանիկա, վասն զի
Յովնանի քարոզութիւնովը զղջի եկան․ և ահա
42 Յովնանէ մեծ մէկը կայ հոս։ Հարաւի թա-
գուհին դատաստանին օրը այս ազգին դէմ պի-
տի ելլէ ու պիտի դատապարտէ զանիկա, վասն
զի ինք երկրի ծայրերէն եկաւ Սողոմոնի իմաս-
տութիւնը լսելու․ և ահա Սողոմոնէ մեծ մէկը
կայ հոս։
43 Ու երբ պիղծ ոգին մարդէ մը կ՚ելլէ, անջուր
տեղեր կը պտըտի, հանգստութիւն կը փնտռէ
44 ու չգտներ․ Այն ատեն կ՚ըսէ, Դառնամ նորէն
իմ տունս, ուրկէ ելայ․ և կու գայ զանիկա կը
գտնէ պարապ, մաքրուած ու զարդարուած։
45 Այն ատեն կ՚երթայ և իրեն հետ կ՚առնէ եօթը
ուրիշ ոգիներ իրմէ աւելի չար, ու մտնելով

հոն կը բնակին, և այն մարդուն վերջը առա-
ջինէն գէշ կ՚ըլլայ. այսպէս պիտի ըլլայ այս չար
ազգին ալ։
46 Ու քանի որ ինք ժողովուրդին կը խօսէր,
ահա իր մայրը ու եղբայրները դուրսը կայներ
47 էին, և կ՚ուզէին իրեն հետ խօսիլ։ Ու մէկը իրեն
ըսաւ, Ահա քու մայրդ ու եղբայրներդ դուրսը
48 կայներ են, և կ՚ուզեն քեզի հետ խօսիլ։ Ան ալ
իրեն ըսողին պատասխան տուաւ ու ըսաւ, Ո՞վ է
49 իմ մայրս, և ո՞վ են իմ եղբայրներս։ Եւ իր ձեռ-
քը դէպ ի իր աշակերտները երկնցնելով՝ ըսաւ,
50 Ահա իմ մայրս և իմ եղբայրներս. Վասն զի
ով որ իմ Երկնաւոր Հօրս կամքը կատարէ,
անիկա է իմ եղբայրս և քոյրս ու մայրս։

## ԳԼ. ԺԳ

3 Սերմնացանին առակը. 18 անոր մեկնութիւնը։ 24 Որոմին, 31 մանանեխին, 33 խմորին, 44 ծածկուած գանձին, 45 մարգարիտին 47 ու ծովը ձգուած ուռկանին առակները։ 53 Քրիստոս կ՚անարգուի իր հայրենակիցներէն։

1 Այն օրը Յիսուս տունէն ելլելով՝ ծովուն
2 եզերքը նստաւ։ Եւ շատ ժողովուրդներ քովը
ժողվուեցան, այնպէս որ ինք նաւը մտաւ ու
նստաւ, և բոլոր ժողովուրդը ծովեզերքը կայ-
3 ներ էր։ Ու շատ բաներ խօսեցաւ անոնց առակ-
ներով, և ըսաւ,
4 Ահա սերմ ցանողը ելաւ որ սերմ ցանէ. ու
երբ կը ցանէր, մէկ քանիները ճամբուն քով
ինկան, և թռչունները եկան ու կերան զանոնք։
5 Եւ ուրիշները ապառաժուտ տեղերու վրայ ին-
կան, ուր շատ հող չկար, և շուտ մը բուսան՝
հողին խորունկութիւն չունենալուն համար.
6 Սակայն արևուն ծագած ատենը այրեցան, ու
7 արմատ չունենալնուն համար չորցան։ Եւ ու-
րիշները ինկան փուշերու մէջ, և փուշերը ելան
8 ու խեղդեցին զանոնք։ Եւ ուրիշները ինկան
աղէկ հողի մէջ, ու պտուղ կու տային՝ ո՛րը Ճ․կուն

տեղ հարիւր, մէկը վաթսուն, և մէկը երեսուն։
9 Ան որ լսելու ականջ ունի՝ թող լսէ։
10 Ու աշակերտները մօտենալով՝ ըսին իրեն,
Ինչո՞ւ համար առակներով կը խօսիս անոնց։
11 Ան ալ պատասխան տուաւ ու ըսաւ անոնց,
Անոր համար՝ որ ձեզի տրուած է գիտնալ եր-
կինքի թագաւորութեան խորհուրդները, և
12 անոնց տրուած չէ։ Վասն զի ով որ ունի, անոր
պիտի տրուի ու պիտի աւելնայ. և ով որ չունի,
13 ունեցածն ալ անկէ պիտի առնուի։ Անոր հա-
մար առակներով կը խօսիմ անոնց, որ կը տես-
նեն՝ ու չեն տեսներ, և կը լսեն՝ ու չեն լսեր ու-
14 միտք չեն առներ։ Եւ անոնց վրայ կը կատարուի
Եսայիի մարգարէութիւնը որ կ՚ըսէ, Լսելով
պիտի լսէք, ու պիտի չիմանաք, և տեսնելով
15 պիտի տեսնէք, ու պիտի չտեսնէք։ Վասն զի
այս ժողովուրդին սիրտը թանձրացաւ, և իրենց
ականջներովը ծանր լսեցին, ու աչքերնին գո-
ցեցին, որպէս զի չըլլայ թէ ընաւ աչքերով
տեսնեն և ականջներով լսեն և սրտով իմանան
16 ու դառնան գան, և ես զանոնք բժշկեմ։ Բայց
երանի է ձեր աչքերուն որոնք կը տեսնեն, ու
17 ձեր ականջներուն որոնք կը լսեն։ Քանզի ճըշ-
մարիտ կ՚ըսեմ ձեզի որ շատ մարգարէներ
և արդարներ փափաքեցան ձեր տեսածները
տեսնել՝ ու չտեսան, և ձեր լսածները լսել՝ ու-
չլսեցին։
18 Հիմա դուք սերմ ցանողին առակը լսեցէք։
19 Այն ամէնը որ թագաւորութեան խօսքը կը
լսէ ու միտք չառներ, չարը կու գայ ու անոր
սրտին մէջ ցանուածը կը յափշտակէ. ասիկա
20 այն է որ ճամբուն քով ցանուեցաւ։ Եւ ապա-
ռաժուտ տեղերու վրայ ցանուածը այն է որ
երբ կը լսէ խօսքը, շուտ մը ուրախութեամբ
21 կ՚ընդունի զանիկա. Բայց իր մէջ արմատ չունե-

նալով, քիչ ժամանակ կը մնայ. ու երբ նեղու-
թիւն կամ հալածանք ըլլայ խօսքին համար,
22 շուտ մը կը գայթակղի։ Եւ փուշերուն մէջ ցան-
ուածը այն է որ երբ կը լսէ խօսքը, աշխարհիս
զբաղմունքը և հարստութեան խաբէութիւնը
23 խօսքը կը խեղդեն, ու կ'ըլլայ անպտուղ։ Իսկ
աղէկ հողի մէջ ցանուածը այն է որ երբ կը լսէ
խօսքը, միտք կ'առնէ, և պտուղ կու տայ, ո՛րը
հարիւր, ո՛րը վաթսուն, ու ո՛րը երեսուն։
24 Ուրիշ առակ մըն ալ յառաջ բերաւ անոնց ու
ըսաւ, Երկնքի թագաւորութիւնը նմանեցաւ
մարդու մը, որ իր արտին մէջ բարի սերմ ցա-
25 նեց. Ու երբ մարդիկ կը քնանային, իր թշնա-
մին եկաւ ու ցորենին մէջ որոմ ցանեց և գնաց.
26 Ու երբ խոտը բուսաւ ու պտուղ բերաւ, անկէ
27 ետև որոմն ալ երևցաւ։ Ուստի տանուտէրոջ
ծառաները մօտեցան ու իրեն ըսին, Տէր, չէ՞ որ
դուն քու արտիդ մէջ բարի սերմ ցանեցիր.
28 ուրեմն որոմը ուրկէ՞ ունի։ Եւ անիկա ըսաւ
անոնց, Թշնամի մարդ մը ըրած է ատիկա. ծա-
ռաները իրեն ըսին, Հիմա կ'ուզե՞ս որ երթանք
29 զանիկա մէկդի քաղենք. Ան ալ ըսաւ, Ոչ,
չըլլայ թէ որոմը քաղած ատեննիդ ցորենն ալ
30 անոր հետ փրցնէք, Թող տուէք որ երկուքն ալ
մէկտեղ աճին մինչև հունձքի ատենը. և հունձ-
քի ատենը հնձողներուն պիտի ըսեմ, Առաջ
որոմը քաղեցէք, և զանիկա խուրձ խուրձ կա-
պեցէք այրելու համար, իսկ ցորենը իմ ամ-
բարս ժողվեցէք։
31 Ուրիշ առակ մըն ալ յառաջ բերաւ անոնց
ու ըսաւ, Երկնքի թագաւորութիւնը մանա-
նեխի հատի նման է, զոր մարդ մը առաւ, իր
32 արտին մէջ ցանեց. Որ ամէն սերմերէն պզտիկ
է, ու երբ աճի, ամէն խոտեղէններէն մեծ է, ու
ծառ կ'ըլլայ, այնպէս որ երկնքի թռչունները

կու գան և անոր ճիւղերուն վրայ կը հանգչին։
33 Ուրիշ առակ մըն ալ պատմեց անոնց ու ըսաւ,
Երկնքի թագաւորութիւնը խմորի նման է, որ
կին մը առաւ, երեք գրիւ ալիւրի մէջ պահեց,
մինչև ամէնն ալ խմորեցաւ։
34 Յիսուս այս ամէն բաները առակներով խօ-
սեցաւ ժողովուրդին, ու առանց առակի բան մը
35 չէր խօսեր անոնց. Որպէս զի կատարուի մար-
գարէին ձեռքով ըսուած խօսքը, Առակներով
պիտի բանամ իմ բերանս, աշխարհի սկիզբէն
ի վեր ծածկուած բաները յառաջ պիտի բերեմ։
36 Այն ատեն Յիսուս ժողովուրդները թողուց,
տունը եկաւ, և իր աշակերտները մօտեցան
իրեն ու ըսին, Արտին որոմներուն առակը մեկ-
37 նէ մեզի։ Ան ալ պատասխան տուաւ ու ըսաւ
անոնց, Բարի սերմը ցանողը Որդին մարդոյ է.
38 Եւ արտը աշխարհն է. իսկ բարի սերմը անոնք
են որ թագաւորութեանը որդիներն են, բայց
39 որոմը չարին որդիներն են. Եւ թշնամին որ զա-
նիկա ցանեց, Սատանան է, և հունձքը աշխար-
հիս վերջն է, ու հնձողները հրեշտակներն են։
40 Արդ ինչպէս որ որոմը կը ժողվուի ու կրակի
մէջ կ'այրի, աշխարհիս վերջն ալ այնպէս պիտի
41 ըլլայ։ Որդին մարդոյ իր հրեշտակները պիտի
ղրկէ, ու պիտի ժողվեն անոր թագաւորութե-
նէն բոլոր գայթակղութիւնները, և զանոնք որ
42 անօրէնութիւն կը գործեն, Ու կրակի հնոցին
մէջ պիտի ձգեն զանոնք. հոն պիտի ըլլայ լալ ու
43 ակռաներ կրճտել։ Այն ատեն արևի պէս պիտի
փայլին արդարները իրենց Հօրը թագաւորու-
թեանը մէջ։ Ան որ լսելու ականջ ունի, թող լսէ։
44 Դարձեալ երկնքի թագաւորութիւնը արտի
մէջ պահուած գանձի նման է, որ մարդ մը
գտնելով կը ծածկէ, և ուրախութենէն կ'երթայ
բոլոր ունեցածը կը ծախէ, ու այն արտը կը գնէ։

45 Դարձեալ երկինքի թագաւորութիւնը վա-
ճառական մարդու մը նման է, որ գեղեցիկ մար-
46 գարիտներ կը փնտռէ. Եւ պատուական մար-
գարիտ մը գտնելով, գնաց իր բոլոր ունեցածը
ծախեց, ու զանիկա գնեց։
47 Դարձեալ երկինքի թագաւորութիւնը ծովը
ձգուած ուռկանի մը նման է, որ ամէն տեսա-
48 կէն կը ժողվէ. Զոր երբ լեցուեցաւ, ցամաքը
հանեցին, ու նստան՝ աղէկները ամաններու
49 մէջ ժողվեցին և անպէտքը դուրս ձգեցին։ Այս-
պէս պիտի ըլլայ աշխարհիս վերջը. հրեշտակ-
ները պիտի ելլեն, ու արդարներուն մէջէն չա-
50 րերը պիտի զատեն, Եւ պիտի ձգեն զանոնք
կրակի հնոցին մէջ, հոն պիտի ըլլայ լալ ու
ակռաներ կրճտել։
51 Ըսաւ անոնց Յիսուս, Հասկցա՞ք այս ամէն
52 բաները. ըսին անոր, Այո, Տէր։ Եւ անիկա
ըսաւ անոնց, Անոր համար ամէն դպիր որ եր-
կինքի թագաւորութեան աշակերտեալ է, նման
է տանուտէր մարդու մը որ իր գանձէն նոր ու
հին բաներ կը հանէ։
53 Ու երբ կատարեց Յիսուս այս առակները,
54 անկէ մեկնեցաւ. Եւ եկաւ իր գաւառը, ու
անոնց կը սորվեցնէր իրենց ժողովարանին մէջ.
մինչև որ կը զարմանային անոնք ու կ՚ըսէին,
Ասիկա ուրկէ՞ ունի այս իմաստութիւնը և
55 հրաշքները. Ասիկա հիւսին որդին չէ՞. ասոր
մայրը Մարիամ չի՞ կոչուիր, ու ասոր եղբայր-
ները՝ Յակոբոս և Յովսէս ու Սիմոն և Յուդա.
56 Ու ասոր քոյրերը ամէնը մեր քով չե՞ն. ալ ինք
57 ուրկէ՞ ունի այս ամէն բաները։ Եւ անոր վրա-
յով կը գայթակղէին. բայց Յիսուս ըսաւ անոնց,
Մարգարէ մը անպատիւ չէ, բայց միայն իր գա-
58 ւառին ու իր տանը մէջ։ Եւ հոն շատ հրաշք-
ներ չըրաւ անոնց անհաւատութեանը համար։

## ԳԼ. ԺԴ

1 Հերովդէսի կարծիքը Քրիստոսի վրայով։ 3 Յովհաննէս մկրտչին գլխատուելուն պատճառը։ 13 Յիսուս անապատ տեղ մը կ'երթայ, 15 ուր տեղ հինգ հազար հոգի կը կերակրէ հինգ նկանակով ու երկու ձուկով. 22 ծովուն վրայ քալելով իր աշակերտներուն կ'երթայ, 34 և Գեննեսարէթի ցամաքը ելլելով հիւանդները կը բժշկէ՝ անոնց իր հանդերձին ծայրին դպչելովը։

1 Այն ժամանակ Հերովդէս չորրորդապետը
2 Յիսուսի համբաւը լսեց. Ու իր ծառաներուն
ըսաւ, Անիկա Յովհաննէս մկրտիչն է. անիկա
մեռելներէն յարութիւն առած է, և անոր հա-
մար հրաշքներ կ'ըլլան անով։
3 Քանզի Հերովդէս Յովհաննէսը բռներ, զա-
նիկա կապեր ու բանտը դրեր էր, իր եղբօր
4 Փիլիպպոսի կնոջ, Հերովդիայի, համար։ Վասն
զի Յովհաննէս անոր կ'ըսէր, Քեզի օրինաւոր
5 չէ զանիկա կն. ունենալ։ Ուստի կ'ուզէր զանի-
կա սպաննել, բայց ժողովուրդէն կը վախնար,
վասն զի իբրև մարգարէ կ'ընդունէին զանիկա։
6 Ու երբ Հերովդէսի ծննդեան օրը եղաւ, Հե-
րովդիայի աղջիկը խաղաց հանդէսի սրահին մէջ, ու
7 Հերովդէսի հաճելի եղաւ։ Ուստի երդումով
խոստացաւ որ տայ անոր ինչ որ ուզելու ըլլայ։
8 Եւ անիկա առաջ իր մօրմէն խրատուելով՝ ըսաւ,
Տուր ինծի հոս Յովհաննէս մկրտչին գլուխը
9 սկուտեղի մը վրայ։ Եւ թագաւորը տրտմեցաւ.
բայց երդումներուն համար ու իրեն հետ նըս-
տողներուն համար հրամայեց որ տրուի։
10 Եւ մարդ ղրկելով՝ Յովհաննէսը բանտին մէջ գլխա-
11 տեց։ Եւ անոր գլուխը սկուտեղով բերուեցաւ
ու տրուեցաւ աղջկան, ան ալ իր մօրը տարաւ։
12 Եւ անոր աշակերտները եկան ու մարմինը վեր-
ցնելով թաղեցին, և գացին Յիսուսի պատմեցին։
13 Ու երբ լսեց Յիսուս, անկէ նաւով անապատ
տեղ մը գնաց առանձին. երբ լսեցին ժողո-
վուրդները, ոտքով անոր ետևէն գացին իրենց
քաղաքներէն։

14 Ու *երբ դուրս ելաւ, շատ ժողովուրդ տեսա-
նելով խղճաց անոնց վրայ, ու անոնց հիւանդ-
ները բժշկեց։
15 Եւ իրիկուան ատեն իր աշակերտները իրեն
եկան ու ըսին, Հոս անապատ տեղ մըն է, և
ժամանակը ուշացած է. արձակէ ժողովուրդ-
ները, որպէս զի գիւղերը երթան ու իրենց կե-
16 րակուր գնեն։ Եւ Յիսուս անոնց ըսաւ, Հարկ չէ
որ անոնք երթան, դուք տուէք անոնց որ ուտեն։
17 Անոնք ալ ըսին անոր, Հոս ուրիշ բան մը չունինք,
18 բայց միայն հինգ նկանակ ու երկու ձուկ։ Ու
19 ըսաւ անոնց, Հոս ինծի բերէք զանոնք։ Եւ հրա-
ման ըրաւ որ ժողովուրդները խոտին վրայ
նստին. և հինգ նկանակը ու երկու ձուկը առաւ,
ու դէպ ի երկինք նայելով օրհնեց, ու կտրելով
նկանակները աշակերտներուն տուաւ, և աշա-
20 կերտները՝ ժողովուրդին։ Եւ ամէնը կերան ու
կշտացան. և տասներկու կողով լեցուն աւել-
21 ցած կտորուանքները վերցուցին։ Եւ անոնք որ
կերան, հինգ հազարի չափ այր մարդիկ էին,
կիներէն և տղաքներէն զատ։
22 †Եւ շուտ մը աշակերտները ստիպեց որ
նաւը մտնեն, և իրմէ առաջ անդիի կողմը անց-
նին, մինչև որ ինք ժողովուրդները արձակէ։
23 Եւ ժողովուրդները արձակելէն ետքը, ինք լե-
ռը ելաւ առանձին աղօթք ընելու. ու երբ իրի-
24 կուն եղաւ, հոն մինակ էր։ Իսկ նաւը արդէն
ծովուն մէջտեղը ալէկոծութեան մէջ էր, վասն
25 զի հովը դէմ էր։ Ու գիշերուան չորրորդ պա-
հուն Յիսուս դէպ ի անոնք գնաց, ծովուն վրայ
26 քալելով։ Եւ աշակերտները երբ զանիկա տե-
սան որ ծովուն վրայ կը քալէր, խռովեցան, և
ըսին Թէ աչքի երեւոյթ բան մըն է. ու վա-
27 խերնէն կանչըռտեցին։ Եւ շուտ մը Յիսուս

*Ոմանք, երբ Յիսուս

†Ոմանք, Եւ Յիսուս

խօսեցաւ անոնց ու ըսաւ, Քաջ եղէք, ես եմ,
28 մի վախնաք։ Պետրոս պատասխան տուաւ անոր
ու ըսաւ, Տէր, եթէ դուն ես, հրաման ըրէ
29 ինծի որ քեզի գամ ջուրերուն վրայէն։ Ան ալ
ըսաւ, Եկուր. Պետրոս ալ նաւէն իջաւ, ջուրե-
րուն վրայէն քալեց որպէս զի Յիսուսի քով
30 երթայ։ Բայց հովը սաստիկ տեսնելով վախ-
ցաւ, ու երբ սկսաւ ընկղմիլ, աղաղակեց ու
31 ըսաւ, Տէր, ազատէ զիս։ Եւ Յիսուս շուտ մը
իր ձեռքը երկնցուց, բռնեց զանիկա ու անոր
32 ըսաւ, Թերահաւատ, ինչո՞ւ երկմտեցար։ Ու
33 երբ նաւը ելան, հովը դադարեցաւ։ Եւ անոնք
որ նաւուն մէջ էին, եկան երկրպագութիւն
ըրին անոր ու ըսին, Իրաւցնէ Որդի Աստու-
ծոյ ես դուն։
34 Ու անդին կողմը անցնելով, Գեննեսարեթի
35 երկիրը հասան։ Ու երբ այն տեղի մարդիկը
ճանչցան զանիկա, մարդ ղրկեցին բոլոր շրջակայ
տեղերը, ու բոլոր հիւանդները անոր բերին.
36 Եւ կ'աղաչէին անոր, որ միայն իր հանդերձին
քղանցքին դպչին. և անոնք որ դպան, բժըշ-
կուեցան։

## ԳԼ. ԺԵ

3 Քրիստոս կը յանդիմանէ դպիրները և փարիսեցիները՝ որոնք իրենց աւանդութիւն-ներուն պատճառաւ զանց կ'ընէին Աստուծոյ պատուիրանքները. 11 ու կը սորվեցնէ թէ բերանը մտած բանը մարդս չպղծեր. 21 կը բժշկէ Քանանացի կնոջ աղջիկը, 30 և ուրիշ շատ ժողովուրդներ. 32 եօթը նկանակով ու քանի մը ձուկով չորս հազար այր մարդիկ կը կշտացնէ, կիներէ ու տղաքներէ զատ։

1 Այն ատեն Յիսուսի եկան դպիրները ու փա-
րիսեցիները, որոնք Երուսաղէմէ էին, ու ըսին,
2 Ինչո՞ւ քու աշակերտներդ ծերերուն աւանդու-
թիւնը զանց կ'ընեն, վասն զի ձեռքերնին չեն
3 լուար, երբ հաց կ'ուտեն։ Ան ալ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Հապա դուք ինչո՞ւ
Աստուծոյ պատուիրանքը զանց կ'ընէք ձեր
4 աւանդութեան պատճառաւ։ Քանզի Աստուած

պատուիրեց՝ ըսելով, Քու հայրդ ու մայրդ պատ-
5 ուէ. Եւ, Ով որ իր հայրը կամ մայրը անիծէ,
6 մահով թող մեռնի։ Բայց դուք կ՚ըսէք, Ով որ
իր հօրը կամ մօրը ըսէ թէ Այն բանը զոր ինծ-
մէ պիտի շահիս, Աստուծոյ տրուած ընծայ է. ու իր
հայրը կամ իր մայրը չպատուէ, ազատ է. և այսպէս
ձեր աւանդութեան պատճառաւ Աստուծոյ
7 պատուիրանքը խափանած էք։ Կեղծաւորներ,
աղէկ մարգարէութիւն ըրաւ ձեր վրայ Եսայի
8 ու ըսաւ, Այս ժողովուրդը միայն *շրթունքնե-
րովը զիս կը պատուէ, բայց իրենց սիրտը հե-
9 ռացած գտնուած է ինծմէ. Ու պարապ տեղը
զիս կը պաշտեն՝ մարդոց պատուիրած բաները
իբրև վարդապետութիւն սորվեցնելով։
10 Եւ ժողովուրդները իրեն կանչելով՝ ըսաւ
11 անոնց, Լսեցէք ու միտք առէք. Ոչ թէ ինչ որ
բերանէն կը մտնէ՝ կը պղծէ մարդը, հապա ինչ
որ բերնէն կ՚ելլէ՝ անիկա կը պղծէ մարդը։
12 Այն ատեն իր աշակերտները եկան՝ ըսին իրեն,
Գիտե՞ս որ փարիսեցիները գայթակղեցան երբ
13 լսեցին այն խօսքը։ Ան ալ պատասխան տալով՝
ըսաւ, Ամէն տունկ զոր իմ երկնաւոր Հայրս
14 չէ տնկեր, պիտի խլուի։ Թող տուէք զանոնք.
Իրենք կոյր են, կոյրերու առաջնորդ. իսկ եթէ
կոյրը կոյրին առաջնորդէ, երկուքն ալ փոսը
15 պիտի իյնան։ Եւ Պետրոս պատասխան տալով՝
16 անոր ըսաւ, Մեկնէ մեզի այս առակը։ Ըսաւ
17 Յիսուս, Դո՞ւք ալ տակաւին անմիտ էք. Ու չէ՞ք
հասկնար թէ ամէն ինչ որ բերանէն կը մտնէ՝
18 փորը կ՚երթայ ու արտաքնոցը կը ձգուի։ Բայց
բերնէն ելած բաները սրտէն յառաջ կու գան,
19 և անոնք կը պղծեն մարդը։ Վասն զի սրտէն
կ՚ելլեն չար խորհուրդներ, սպանութիւններ,
շնութիւններ, պոռնկութիւններ, գողութիւն-

*Ոմանք, բերնովը ինծի կը մօտենայ, և շրթունքներովը

ներ, սուտ վկայութիւններ, հայհոյութիւններ։
20 Ասոնք են որ կը պղծեն մարդը, բայց անլուայ
ձեռքով հաց ուտելը չպղծեր մարդը։
21 Եւ Յիսուս անկէ ելլելով՝ Տիւրոսի ու Սիդո-
22 նի կողմերը գնաց։ Եւ ահա Քանանացի կին մը
այն սահմաններէն ելած՝ կ'աղաղակէր անոր ու
կ'ըսէր, Ողորմէ ինծի, Տէր, որդի Դաւիթի. աղ-
23 ջիկս դեւէն սաստիկ կը չարչարուի։ Եւ ինք բնաւ
պատասխան մը չտուաւ անոր. ու իր աշակերտա-
ները մօտենալով՝ կ'աղաչէին իրեն ու կ'ըսէին,
Արձակէ զանիկա, վասն զի մեր ետեւէն կ'աղա-
24 ղակէ։ Եւ ինք պատասխան տուաւ ու ըսաւ,
Ես ուրիշի մը չղրկուեցայ, բայց միայն Իսրայէլի
25 տանը կորսուած ոչխարներուն։ Եւ անիկա եկաւ
երկրպագութիւն կ'ընէր անոր ու կ'ըսէր, Տէր,
26 օգնէ ինծի։ Ան ալ պատասխան տուաւ ու ըսաւ,
Աղէկ չէ տղոց հացը առնել ու շուներուն ձգել։
27 Եւ անիկա ըսաւ, Այո, Տէր, վասն զի շուներն
ալ իրենց տէրոջ սեղանէն ինկած փշրանքնե-
28 րէն կը կերակրուին։ Այն ատեն Յիսուս պա-
տասխան տուաւ անոր ու ըսաւ, Ով կին, քու
հաւատքդ մեծ է, քու ուզածիդ պէս ըլլայ քե-
զի. և նոյն ժամէն անոր աղջիկը բժշկուեցաւ։
29 Ու Յիսուս անկէ գնաց, Գալիլեայի ծովեզեր-
30 քը եկաւ, և լեռը ելլելով հոն նստաւ։ Եւ շատ
ժողովուրդներ իրեն եկան, որոնք իրենց հետ
ունէին կաղեր, կոյրեր, համրեր, հաշմանդամ-
ներ և ուրիշ շատեր. ու ձգեցին զանոնք Յի-
31 սուսի ոտքը, և բժշկեց զանոնք։ Այնպէս որ
ժողովուրդները զարմացան, տեսնելով որ համ-
րերը կը խօսէին, հաշմանդամները կը բժշ-
կուէին, կաղերը կը քալէին և կոյրերը կը տես-
նէին, ու Իսրայէլի Աստուածը կը փառաւորէին։
32 Եւ Յիսուս իր աշակերտները քովը կանչե-
լով ըսաւ, Կը խղճամ այս ժողովուրդին վրայ,

վասն զի հիմա երեք օր է որ իմ՝ քովս են, և
բան մը չունին ուտելու. ու զանոնք անօթի ար-
ձակել չեմ ուզեր, չըլլայ որ ճամբան մարին։
33 Իսկ աշակերտները անոր ըսին, Մենք անապա-
տի մէջ ուրկէ՞ պիտի ունենանք այնչափ հաց,
34 որ այսչափ բազմութիւնը կշտացնենք։ Եւ Յի-
սուս ըսաւ անոնց, Քանի՞ նկանակ ունիք. անոնք
ալ ըսին, Եօթը, ու քանի մը մանր ձուկեր։
35 Եւ հրամեց ժողովուրդին որ գետինը վրայ
36 նստին։ Ու եօթը նկանակը և ձուկերը առաւ,
գոհացաւ և կտրեց ու տուաւ աշակերտներուն,
37 աշակերտներն ալ՝ ժողովուրդին։ Կերան ամէ-
նը և կշտացան, ու եօթը զամբիւղ լեցուն՝ աւել-
38 ցած կտորուանքները վերցուցին։ Եւ անոնք որ
կերան՝ չորս հազար այր մարդիկ էին, կիներէն
և տղաքներէն զատ։
39 Ու երբ ժողովուրդը արձակեց, նաւը մտաւ
ու Մագդաղայի սահմանները եկաւ։

## ԳԼ. ԺԶ

1 փարիսեցիները նշան մը կ'ուզեն։ 6 Յիսուս կը պատուիրէ իր աշակերտներուն որ զգուշ կենան փարիսեցիներուն և սադուկեցիներուն խմորէն։ 13 ժողովուրդին կարծիքը Քրիստոսի վրայով, 16 և Պետրոսի դաւանութիւնը։ 21 Յիսուս կ'իմացնէ աշակերտներուն իր մահը. 23 կը յանդիմանէ Պետրոսը՝ որ կ'ուզէր դէմ կենալ. 24 և իրեն հետևիլ ուզողները կը խրատէ որ իրենց խաչը կրեն։

1 Եւ փարիսեցիները ու սադուկեցիները քովը
եկան, փորձելով՝ իրմէ կ'ուզէին որ երկինքէն
2 նշան մը ցուցնէ իրենց։ Անիկա պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Երբ իրիկուն կ'ըլլայ,
կ'ըսէք թէ՝ Պարզ պիտի ըլլայ, վասն զի երկինք
3 կարմրած է։ Եւ առտուանց՝ Այսօր մրրիկ պի-
տի ըլլայ, վասն զի երկինք մռայլ ու կարմր-
րած է։ Կեղծաւորներ, երկինքի երեսը քննել
գիտէք, բայց ժամանակներուն նշանները չէ՞ք
4 կրնար գիտնալ։ Չար ու շնացող ազգը նշան կ'ուզէ,
և ուրիշ նշան պիտի չտրուի անոր, բայց Յովնան
մարգարէին նշանը. և թողուց զանոնք ու գնաց։

5 Ու երբ իր աշակերտները անդին կողմը անց-
6 նան, հաց առնելու մոռցեր էին։ Եւ Յիսուս
անոնց ըսաւ, Նայեցէք ու զգուշացէք փարի-
7 սեցւոց ու սադուկեցւոց խմորէն։ Անոնք ի-
րենց մէջ կը խորհէին ու կ'ըսէին թէ Հաց չբե-
8 րինք մեզի հետ։ Իսկ Յիսուս անոնց խորհուրդը գիտնա-
լով՝ ըսաւ անոնց, Ձեր մէջ ինչո՞ւ կը խորհիք,
9 թերահաւատներ, թէ հաց չառնիք։ Տակաւին
չէ՞ք հասկնար և չէ՞ք յիշեր հինգ նկանակը՝ հինգ
10 հազարին, ու քանի՛ կողով վերցուցիք։ Ո՛չ ալ
եօթը նկանակը՝ չորս հազարին, ու քանի՛ զամ-
11 բիւղ վերցուցիք։ Ի՞նչպէս չէք հասկնար թէ
ես հացի համար չըսի ձեզի՝ փարիսեցւոց և
12 սադուկեցւոց խմորէն զգուշ կենալ։ Այն ատեն
հասկցան որ հացի խմորէն զգուշանալ չըսաւ,
հապա փարիսեցւոց ու սադուկեցւոց վարդա-
պետութենէն։
13 Եւ Յիսուս Փիլիպպոսի Կեսարիային կողմերը
երթալով՝ իր աշակերտներուն հարցուց ու ըսաւ,
Մարդիկ ո՞վ կ'ըսեն թէ եմ՝ ես Որդի մարդոյ։
14 Ու անոնք ըսին, Ոմանք կ'ըսեն թէ Յովհաննէս Մկրտ-
ւիչն ես, ու ուրիշները՝ Եղիան, ու ուրիշներն ալ՝ Երե-
15 միան կամ մարգարէներէն մէկը։ Ըսաւ անոնց,
Հապա դուք ինծի համար ո՞վ կ'ըսէք թէ եմ։
16 Սիմոն Պետրոս պատասխան տուաւ ու ըսաւ,
Դուն ես Քրիստոս, կենդանի Աստուծոյ Որդին։
17 Եւ Յիսուս պատասխան տուաւ ու ըսաւ անոր,
Երանի՜ քեզ, Սիմոն, Յովնանի որդի. վասն զի
մարմինը և արիւնը քեզի չյայտնեց ասիկա, հա-
18 պա իմ Հայրս՝ որ երկինքն է։ Եւ ես քեզի կ'ը-
սեմ որ Դուն *Պետրոս ես, ու այս վէմին վրայ
պիտի շինեմ իմ եկեղեցիս, և դժոխքին դռնե-
19 րը զանիկա պիտի չյաղթեն։ Ու երկինքի թա-
գաւորութեան բանալիները քեզի պիտի տամ.

*Այսինքն, վէմ

և ինչ որ երկրի վրայ կապես, երկինքի մէջ
կապուած պիտի ըլլայ. ու ինչ որ երկրի վրայ
արձակես, երկինքի մէջ արձակուած պիտի ըլ-
20 լայ։ Այն ատեն աշակերտներուն պատուիրեց,
որ մարդու չըսեն թէ ինք *Քրիստոսն է։
21 Անկէ ետեւ սկսաւ Յիսուս իր աշակերտնե-
րուն ցուցնել թէ պէտք է որ ինք Երուսաղէմ
երթայ, ու շատ չարչարանքներ կրէ ծերերէն
և քահանայապետներէն ու դպիրներէն, և
սպաննուի, ու երրորդ օրը յարութիւն առնէ։
22 Ու Պետրոս մէկդի առաւ զանիկա, և սկսաւ
յանդիմանել զանիկա ու ըսել, Քա՛ւ լիցի քեզ,
23 Տէր, այդ բանը քեզի չըլլայ։ Ու ինք դառնա-
լով՝ Պետրոսի ըսաւ, Ետեւս գնա, Սատանայ,
ինծի գայթակղութիւն ես դուն. վասն զի Աս-
տուծոյ բաները չես մտածեր, հապա մարդոց
բաները։
24 Այն ատեն Յիսուս իր աշակերտներուն ըսաւ,
Եթէ մէկը իմ ետեւէս գալ կ'ուզէ, թող իր
անձը ուրանայ և իր խաչը վերցնէ ու իմ ետե-
25 ւէս գայ։ Վասն զի ով որ կ'ուզէ իր անձը ապ-
րեցնել, պիտի կորսնցնէ զանիկա. և ով որ ին-
ծի համար իր անձը կը կորսնցնէ, պիտի գտնէ
26 զանիկա։ Քանզի ի՞նչ կը շահի մարդ մը՝ եթէ
բոլոր աշխարհը վաստկի և իր անձը կորսնցնէ,
կամ՝ իր անձին համար ի՞նչ ադաւչէք պիտի տայ
27 մարդ։ Վասն զի Որդին մարդոյ իր Հօրը փառ-
քովը պիտի գայ իր հրեշտակներուն հետ, և
այն ատեն ամէն մէկուն իր գործերուն համե-
28 մատ հատուցում պիտի ընէ։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի որ հոս ներկայ եղողներէն մէկ քանինե-
րը կան՝ որոնք մահուան համը պիտի չառնեն,
մինչև տեսնեն Որդին մարդոյ իր թագաւորու-
թիւնովը եկած։

*Օծեալ, Յիսուս Քրիստոսն

## ԳԼ. ԺԷ

1 Քրիստոսի այլակերպութիւնը։ 14 Քրիստոս կը բժշկէ լուսնոտը. 22 կը նախաձայնէ իր չարչարանքները, 24 ու երկդրամեան տուրքը կը հատուցանէ ։

1 Եւ վեց օրէն ետեւ Յիսուս իրեն հետ առաւ
Պետրոսը ու Յակոբոսը եւ անոր եղբայրը Յով-
հաննէսը, ու զանոնք բարձր լեռ մը հանեց
2 առանձին. Եւ անոնց առջեւ այլակերպեցաւ,
ու իր երեսը փայլեցաւ արեգակի պէս, ու իր
3 հանդերձները ճերմկցան լոյսի պէս։ Եւ ահա
երեւցան անոնց Մովսէս ու Եղիա ու իրեն հետ
4 կը խօսէին։ Պատասխան տուաւ Պետրոս ու ըսաւ
Յիսուսի, Տէր, աղէկ է որ հոս կենանք. եթէ
կ'ուզես, երեք խորանի շինենք հոս. մէկը քե-
5 զի, եւ մէկը Մովսէսի, ու մէկը Եղիայի։ Եւ
քանի որ անիկա կը խօսէր, ահա լուսաւոր ամպ
մը անոնց վրայ հովանի եղաւ. եւ ահա ամպէն
ձայն մը եկաւ՝ ըսելով, Ասիկա է իմ սիրելի Որ-
դիս, որու հաւներ եմ, անոր մտիկ ըրէք։
6 Աշակերտները երբ լսեցին, երեսնուն վրայ ին-
7 կան ու խիստ վախցան։ Եւ Յիսուս մօտենալով
դպաւ անոնց ու ըսաւ, Ելէք ու մի վախնաք։
8 Աչքերնին վերցուցին ու մէ՛կը չտեսան, բայց
միայն Յիսուսը։
9 Ու երբ այն լեռնէն վար կ'իջնէին, Յիսուս
պատուիրեց անոնց ու ըսաւ, Այդ տեսիլքը
մարդո՛ւ մի զրուցէք, մինչեւ Որդին մարդոյ մե-
10 ռելներէն յարութիւն առնէ։ Եւ իր աշակերտ-
ները իրեն հարցուցին ու ըսին, Ուրեմն ինչո՞ւ
համար դպիրները կ'ըսեն թէ Պէտք է որ առաջ
11 Եղիա գայ։ Պատասխան տուաւ Յիսուս ու
ըսաւ անոնց, Յիրաւի առաջ Եղիա կու գայ եւ
12 ամէն բան կարգի կը դնէ։ Բայց ձեզի կ'ըսեմ
որ Եղիա արդէն եկած է, եւ զանիկա չճանչցան,
հապա ինչ որ ուզեցին՝ ըրին անոր. նոյնպէս ալ
13 Որդին մարդոյ անոնցմէ պիտի չարչարուի։ Այն

*ատեն հասկցան աշակերտները որ Յովհաննէս*
*Մկրտչին համար ըսաւ անոնց ։*
14 *Ու երբ ժողովուրդին քով եկան, մարդ մը*
*մօտեցաւ անոր, և ծունկի վրայ գալով՝ կ'ըսէր,*
*Տէր, իմ՝ որդւոյս ողորմէ, որ կը լուսնոտի և*
*չարաչար կը տանջուի, քանզի շատ անգամ կրա-*
15 *կի մէջ կ'իյնայ, ու շատ անգամ ջուրի մէջ։ Եւ*
*զանիկա քու աշակերտներուդ բերի, ու չկրցան*
16 *զանիկա բժշկել։ Յիսուս պատասխան տուաւ*
*ու ըսաւ, Ով անհաւատ և խոտորեալ ազգ, մին-*
*չև ե՞րբ ձեզի հետ պիտի ըլլամ, մինչև ե՞րբ*
*ձեզի պիտի համբերեմ. զանիկա հոս ինծի բե-*
17 *րէք։ Եւ Յիսուս սաստեց անոր, ու դևը անկէ*
18 *ելաւ, և բժշկուեցաւ տղան նոյն ժամէն։ Այն*
*ատեն աշակերտները առանձին Յիսուսին քով*
*երթալով ըսին, Մենք ինչո՞ւ չկրցանք զանիկա*
19 *հանել։ Եւ Յիսուս ըսաւ անոնց, Ձեր թերա-*
*հաւատութեանը համար. քանզի ճշմարիտ կ'ը-*
*սեմ ձեզի, Եթէ մանանեխի հատի չափ հա-*
*ւատք ունենաք, այս լերանը պիտի ըսէք, Ասկէ*
*անդին փոխադրուէ, և պիտի փոխադրուի. ու*
20 *բան մը անհնարին պիտի չըլլայ ձեզի։ Սակայն*
*այս տեսակը* ուրիշ բանով *չելլեր, բայց միայն*
*աղօթքով և ծոմապահութեամբ։*
21 *Ու երբ անոնք Գալիլեայի մէջ կը պտըտէին,*
*Յիսուս ըսաւ անոնց, Որդին մարդոյ պիտի մատ-*
22 *նուի մարդոց ձեռքը, Եւ զանիկա պիտի մեռ-*
*ցնեն, ու երրորդ օրը յարութիւն պիտի առ-*
*նէ. ու խիստ տրտմեցան։*
23 *Երբ անոնք Կափառնայում եկան, երկդրամ-*
*եան* տուրքը *առնողները Պետրոսի եկան ու ըսին,*
*Ձեր վարդապետը երկդրամեանը չ՞ հատուցա-*
24 *ներ. և անիկա ըսաւ, Այո,* կը հատուցանէ։ *Ու երբ*
*տունը մտաւ, առաջ Յիսուս խօսեցաւ անոր ու*
*ըսաւ, Քեզի ի՞նչպէս կ'երևնայ, Սիմոն. երկրի*

*թագաւորները որմէ՞ կ'առնեն հարկը կամ
տուրքը. իրենց որդիներէ՞ն թէ օտարներէն։
25 Պետրոս անոր ըսաւ Թէ Օտարներէն. Յիսուս
26 անոր ըսաւ, Ուրեմն որդիները ազատ են։ Բայց
չըլլայ որ զանոնք գայթակղեցնենք, դուն ծովը եւ
կարթ ձգէ, ու առաջին ձուկը որ կ'ելլէ՝ առ, եւ
անոր բերանը բանալով սատեր մը պիտի գտնես.
զանիկա առ, անոնց տուր ինծի եւ քեզի համար։*

## ԳԼ. ԺԸ

*1 Քրիստոս կը պատուիրէ իր աշակերտներուն խոնարհ եւ հեզ ըլլալ. 7 գայթակղութիւն չտալ, եւ պզտիկները չանարգել. 15 կը սորվեցնէ թէ ի՛նչպէս վարուելու ենք մեր եղբայրներուն հետ, երբ անոնք մեզի դէմ մեղանչեն, 21 եւ թէ քանի՛ անգամ ներելու ենք անոնց. 23 ասիկա կը բացատրէ թագաւորի մը առակով, որ հաշիւ ուզեց իր ծառաներէն, 32 ու իր ընկերին ողորմութիւն չցուցնողը պատժեց։*

*1 Նոյն ժամանակ աշակերտները Յիսուսի քով
եկան ու ըսին, Ո՞վ է մեծ երկնքի թագաւո-
2 րութեան մէջ։ Եւ Յիսուս տղայ մը կանչեց
3 իրեն, զանիկա անոնց մէջտեղը կայնեցուց, Ու
ըսաւ, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Եթէ դարձի
չգաք եւ տղայ պէս չըլլաք, երկնքի թագաւո-
4 րութիւնը բնաւ պիտի չմտնէք։ Ուստի ով որ
իր անձը այս տղուն պէս խոնարհեցնէ, անիկա
5 է մեծ երկնքի թագաւորութեանը մէջ։ Եւ
ով որ այսպիսի տղայ մը կ'ընդունի իմ անուա-
6 նովս, զիս կ'ընդունի։ Եւ ով որ գայթակղեցնէ
այս պզտիկներէն մէկը որոնք ինծի կը հաւա-
տան, աղէկ է անոր՝ որ իր պարանոցէն իշու
աղացքի քար մը կախուի, ու ծովուն անդուն-
դին մէջ ընկղմի։*

*7 Վա՜յ աշխարհի՝ գայթակղութիւններու պատ-
ճառաւ. վասն զի հարկ է որ գայթակղութիւն-
ները գան, բայց վա՜յ այն մարդուն՝ որուն ձեռ-
8 քով գայթակղութիւնը կու գայ։ Արդ եթէ
քու ձեռքդ կամ ոտքդ քեզ կը գայթակղեցնէ,
կտրէ զանիկա ու քեզմէ ձգէ. աղէկ է քեզի*

կաղ կամ պակասաւոր մտնել կեանքը, քան
թէ երկու ձեռք կամ երկու ոտք ունենալ ու
9 յաւիտենական կրակին մէջ ձգուիլ։ Եւ եթէ
աչքդ քեզ կը գայթակղեցնէ, հանէ զանիկա և
քեզմէ ձգէ. աղէկ է քեզի մէկ աչքով կեան-
քը մտնել, քան թէ երկու աչք ունենալ ու
կրակին գեհեանը ձգուիլ։
10 Զգոյշ կեցէք որ չանարգէք այս պզտիկներէն
մէկը. քանզի կ'ըսեմ ձեզի որ երկինքի մէջ
անոնց հրեշտակները միշտ կը տեսնեն իմ Հօրս
11 երեսը՝ որ երկինքն է։ Վասն զի Որդին մարդոյ
12 եկաւ կորսուածը փրկելու։ Ի՞նչպէս կ'երևնայ
ձեզի. եթէ մարդ մը հարիւր ոչխար ունենայ,
և անոնցմէ մէկը մոլորի, իննսունըինը ոչխարը
*լեռները չ՞ ձգեր, ու״ երթար մոլորածը փնտռ-
13 ռեր։ Եւ եթէ գտնելու ըլլայ զանիկա, ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի որ աւելի ուրախ կ'ըլլայ անոր
վրայ, քան թէ իննսունըիններին՝ որոնք մոլորած
14 չեն։ Այսպէս ձեր երկնաւոր Հայրը չհաճիր որ
այս պզտիկներէն մէկը կորսուի։
15 Եթէ քու եղբայրդ քեզի դէմ մեղանչէ, գնա
յանդիմանէ զանիկա երբ դուն և ան մինակ
էք. եթէ քեզի մտիկ ընէ, շահեցար քու եղ-
16 բայրդ։ Հապա եթէ մտիկ չընէ քեզ, քեզի հետ
ուրիշ մը կամ երկուք ալ առ, որպէս զի երկու
կամ երեք վկաներու բերնէ ամէն բան հաս-
17 տատուի։ Եւ եթէ անոնց ալ մտիկ չընէ, եկե-
ղեցիին ըսէ. իսկ եթէ եկեղեցիին ալ մտիկ
չընէ, հեթանոսի ու մաքսաւորի պէս թող ըլ-
լայ քեզի։
18 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Երկրի վրայ ինչ որ
կապէք, երկինքի մէջ կապուած պիտի ըլլայ. ու
երկրի վրայ ինչ որ արձակէք, երկինքի մէջ ար-
19 ձակուած պիտի ըլլայ։ Դարձեալ կ'ըսեմ ձեզի,

*Որմնէ, չը՞ ձգեր, ու լեռները

Եթէ ձեզմէ երկու հոգի երկրի վրայ միաբա-
նին, ամէն ինչ բանի համար որ խնդրեն, պիտի
20 ըլլայ անոնց իմ Հօրմէս որ երկինքն է։ Քանզի
ուր երկու կամ երեք հոգի ժողվուած ըլլան
իմ անունովս, հոն եմ ես անոնց մէջ։
21 Այն ատեն Պետրոս մօտեցաւ անոր ու ըսաւ,
Տէր, քանի՞ անգամ եթէ եղբայրս ինծի դէմ
մեղանչէ, ներեմ անոր. մինչեւ եօ՞թը անգամ։
22 Յիսուս անոր ըսաւ, Քեզի չեմ ըսեր թէ մինչեւ
եօթը անգամ, հապա մինչեւ եօթանասուն ան-
23 գամ եօթը։ Ասոր համար երկնքի թագաւո-
րութիւնը կը նմանի թագաւորի մը, որ իր ծա-
24 ռաներէն հաշիւ տանել ուզեց։ Ու երբ սկսաւ
տանել, տասը հազար տաղանդի պարտական մը
25 բերուեցաւ իրեն։ Բայց անիկա վճարելու կա-
րողութիւն չունենալով, իր տէրը հրաման ըրաւ
որ անիկա և անոր կինը ու որդիները և անոր
բոլոր ունեցածը ծախուին, ու պարտքը վճարուի։
26 Իսկ ծառան անոր առջեւ իյնալով երկրպագու-
թիւն կ՚ընէր ու կ՚ըսէր, Տէր, համբերէ ինծի և
27 ամէնը քեզի կը վճարեմ։ Եւ այն ծառային
տէրը վրան խղճալով արձակեց զանիկա, ու
28 պարտքը շնորհեց անոր։ Եւ նոյն ծառան ելաւ,
իր ծառայակիցներէն մէկը գտաւ որ իրեն
հարիւր դահեկան պարտք ունէր, ու զանիկա
բռնելով կը խեղդէր ու կ՚ըսէր, Վճարէ ինծի
29 ունեցած պարտքդ։ Ուստի անոր ծառայակիցը
անոր ոտքը ինկաւ, կ՚աղաչէր անոր ու կ՚ըսէր,
30 Համբերէ ինծի ու *քեզի կը վճարեմ։ Եւ ինք
չէր ուզեր, հապա գնաց՝ բանտը դրաւ զանի-
31 կա, մինչեւ որ պարտքը վճարէ։ Երբ իր ծա-
ռայակիցները տեսան եղած բաները, խիստ
տրտմեցան, ու եկան իրենց տէրոջը հասկցու-
32 ցին բոլոր եղածը։ Այն ատեն անոր տէրը կանչեց

*Ոմանք, ամէնը քեզի

զանիկա ու ըսաւ անոր, Չար ծառայ, այն բո-
լոր պարտքը ես քեզի շնորհեցի՝ ինծի աղաչե-
33 լուդ համար. Ուրեմն պէտք չէ՞ր քեզի ալ քու
ծառայակցիդ ողորմիլ, ինչպէս ես քեզի ողոր-
34 մեցայ։ Եւ անոր տէրը բարկանալով՝ դահիճ-
ներուն մատնեց զանիկա, մինչեւ որ բոլոր պարտ-
35 քը վճարէ։ Այսպէս իմ երկնաւոր Հայրս ալ պի-
տի ընէ ձեզի, եթէ ձեր սրտերէն չէք ներեր
ամէն մէկդ իր եղբօրը իրենց յանցանքները։

## ԳԼ. ԺԹ

2 Քրիստոս կը բժշկէ հիւանդները. 3 պատասխան կու տայ կնն արձակելու վրայով փարիսեցիներուն բրած հարցումին. 13 մանր տղաքները կ'ընդունի. 16 կը սորվեցընէ պատանիին թէ ի՛նչպէս կրնայ ստանալ յաւիտենական կեանքը, 20 և թէ ի՛նչ ընելու է որ կատարեալ ըլլայ. 23 իր աշակերտներուն կ'ըսէ թէ ի՛նչպէս դժուար է հարուստին՝ Աստուծոյ թագաւորութիւնը մտնել, 27 և վարձք կը խոստանայ անոնց՝ որ իր ետեւէն երթալու համար որեւիցէ բան կը թողուն։

1 Ու եղաւ որ երբ Յիսուս այս խօսքերը լմըն-
ցուց, Գալիլեայէն ելաւ ու եկաւ Հրէաստանի
2 սահմանները Յորդանանու անդիի կողմը։ Եւ
անոր ետեւէն շատ ժողովուրդներ գացին, ու
հոն բժշկեց զանոնք։
3 Եւ փարիսեցիները անոր մօտենալով՝ զանի-
կա կը փորձէին, ու կ'ըսէին թէ Արժա՞ն է որ
մարդ մը իր կինը արձակէ ամէն պատճառի հա-
4 մար։ Անիկա ալ պատասխան տուաւ ու անոնց
ըսաւ, Չէ՞ք կարդացեր թէ ան որ սկիզբէն
ստեղծեց, արու և էգ ստեղծեց զանոնք՝ ու
5 ըսաւ, Ասոր համար մարդ իր հայրը ու մայրը
պիտի ձգէ և իր կնոջ պիտի յարի, ու երկուքը
6 մէկ մարմին պիտի ըլլան։ Ուստի ա՛լ երկուք
չեն, հապա մէկ մարմին. ուրեմն զայն որ Ա-
7 տուած միաւորեց՝ մարդ թող չզատէ։ Ըսին
իրեն, Հապա Մովսէս ինչո՞ւ պատուիրեց արձակ-
8 ման թուղթ տալ և արձակել։ Ըսաւ անոնց,
Մովսէս ձեր սրտերուն կարծրութեանը հա-
մար ձեզի հրաման տուաւ կիներնիդ արձակել,

9 բայց սկիզբէն այնպէս չէր։ Սակայն ձեզի
կ'ըսեմ, Ով որ առանց պոռնկութեան պատճառ-
ի իր կինը արձակէ և ուրիշ մը առնէ, շնու-
թիւն կ'ընէ. և ով որ արձակուածը առնէ, շնու-
10 թիւն կ'ընէ։ Իր աշակերտները ըսին իրեն, Եթէ
այդպիսի բան կայ էրկան ու կնոջ մէջտեղ, չա-
11 մուսնանալը աղէկ է։ Եւ ինք անոնց ըսաւ,
Ամէնը բաւական չեն այդ բանին, հապա անոնք՝
12 որոնց տրուած է։ Վասն զի կան ներքինիներ՝
որոնք իրենց մօրը որովայնէն այնպէս ծնան, և
կան ներքինիներ՝ որոնք մարդոցմէ ներքինի
եղան, և կան ներքինիներ՝ որոնք իրենքզիրենք
ներքինի ըրին երկնքի թագաւորութեանը հա-
մար. ով որ կրնայ առնել՝ թող առնէ։
13 Այն ատեն մանր տղաք բերուեցան իրեն,
որպէս զի անոնց վրայ ձեռք դնէ և աղօթք ընէ,
ու աշակերտները կը յանդիմանէին զանոնք։
14 Բայց Յիսուս ըսաւ, Թող տուէք այդ մանր տղա-
քը, և մի արգիլէք անոնք ինծի գալէն, վասն զի
երկնքի թագաւորութիւնը այդպիսիներունն է։
15 Եւ անոնց վրայ ձեռք դնելէն ետև գնաց անկէ։
16 Եւ ահա մէկը մօտենալով ըսաւ անոր, Բարի
վարդապետ, ի՞նչ բարի գործ գործեմ, որպէս զի
17 յաւիտենական կեանքը ընդունիմ։ Եւ անիկա
ըսաւ անոր, Ինչո՞ւ զիս բարի կանուանես. մէ-
կէն զատ բարի չկայ, որ է Աստուած. հապա
եթէ կ'ուզես կեանքը մտնել, պատուիրանքնե-
18 րը պահէ։ Ըսաւ անոր, Որո՞նք. և Յիսուս ըսաւ,
Ասոնք. Սպանութիւն մի ըներ, Շնութիւն մի
ըներ, Գողութիւն մի ըներ, Սուտ վկայութիւն
19 մի ըներ, Քու հայրդ ու մայրդ պատուէ, և Քու
20 ընկերդ քու անձիդ պէս սիրես։ Պատանին ըսաւ
անոր, Ասոնք ամէնը մանկութենէս ի վեր պա-
21 հեր եմ. ալ ի՞նչ բանով պակաս եմ։ Ըսաւ
անոր Յիսուս, Եթէ կ'ուզես կատարեալ ըլլալ,

*դնա ունեցածդ ծախէ և տուր աղքատներուն,*
*ու երկինքը գանձ պիտի ունենաս, և եկուր*
22 *իմ ետևէս։ Երբ պատանին այս խօսքը լսեց՝*
*տրտմած գնաց, վասն զի շատ ստացուածք ունէր։*
23 *Եւ Յիսուս ըսաւ աշակերտներուն, Ճշմարիտ*
*կ'ըսեմ ձեզի որ հարուստը դժուարաւ պիտի*
24 *մտնէ երկինքի թագաւորութիւնը։ Դարձեալ*
*կ'ըսեմ ձեզի, Դիւրին է որ *ուղտը ասեղին ծա-*
*կէն անցնի, քան թէ հարուստը Աստուծոյ թա-*
25 *գաւորութիւնը մտնէ։ Աշակերտները երբ լսե-*
*ցին, շատ զարմացան ու ըսին, Ուրեմն ո՞վ կըր-*
26 *նայ փրկուիլ։ Յիսուս անոնց նայելով՝ ըսաւ,*
*Ասիկա մարդոց կողմանէ անկարելի է, բայց*
*Աստուծոյ կողմանէ ամէն բան կարելի է։*
27 *Այն ատեն Պետրոս պատասխան տուաւ ու-*
*ըսաւ անոր, Ահա մենք ամէն բան թողուցինք*
*և քու ետևէդ եկանք. ուստի մեզի ի՞նչ պիտի*
28 *ըլլայ։ Ըսաւ անոնց Յիսուս, Ճշմարիտ կ'ըսեմ*
*ձեզի թէ դուք որ իմ ետևէս եկաք, †միւսան-*
*գամ գալուստին" երբ Որդին մարդոյ իր փա-*
*ռաց աթոռը նստի, դուք ալ տասնըերկու-*
*աթոռներու վրայ պիտի նստիք՝ Իսրայէլի տաս-*
29 *ներկու ցեղերը դատելու։ Եւ ով որ թողուց*
*տուներ, կամ եղբայրներ, կամ քոյրեր, կամ*
*հայր, կամ մայր, կամ կին, կամ որդիներ,*
*կամ արտեր իմ անուանս համար, հարիւրա-*
*պատիկ պիտի առնէ, և յաւիտենական կեանք*
30 *պիտի ժառանգէ։ Բայց շատ առաջիններ պիտի*
*ըլլան յետին, և յետիններ՝ առաջին։*

## ԳԼ. Ի

1 Քրիստոս այգիի բանուորներու առակով կը ցուցնէ թէ՝ Աստուած բնաւ մարդու մը պարտական չէ. 17 իր չարչարանքը կը նախաձայնէ. 20 Զեբեդէոսի որդիներուն մօրը պատասխան տալով՝ կը սորվեցնէ իր աշակերտներուն խոնարհ ըլլալ. 30 ու երկու կոյրերու աչքերը կը բանայ։

1 *Քանզի երկինքի թագաւորութիւնը տանուտէր*

---

*Ոմն., պարանը

†Յուն. վերստին ծննդեան մէջ

մարդու մը նման է, որ առտուանց կանուխ
ելաւ՝ իր այգիին համար բանուորներ բռնելու։
2 Եւ բանուորներուն հետ օրը մէկ դահեկանի
3 խօսք կապեց, ու զանոնք ղրկեց իր այգին։ Եւ
ժամը երեքին ատենները ելաւ՝ ուրիշները տե-
սաւ, որոնք շուկային մէջ պարապ կայներ էին․
4 Ու ըսաւ անոնց, Դուք ալ գացէք իմ այգիս, և
5 ինչ որ արժան է՝ կու տամ ձեզի։ Անոնք ալ
գացին․ ու նորէն ժամը վեցին և ժամը իննին
6 ատենները ելաւ՝ այնպէս ըրաւ։ Եւ ժամը տաս-
նըմէկին ատենները ելաւ, ուրիշները գտաւ՝
որոնք պարապ կայներ էին, ու անոնց ըսաւ,
7 Ինչո՞ւ հոս բոլոր օրը պարապ կայներ էք։ Ըսին
իրեն, Անոր համար որ մէ՛կը մեզ վարձքով
չբռնեց․ ըսաւ անոնց, Դուք ալ այգին գացէք,
8 ու ինչ որ արժան է՝ պիտի առնէք։ Եւ իրիկուն
որ եղաւ, այգիին տէրը իր տնտեսին ըսաւ,
Բանուորները կանչէ, և անոնց վարձքը տո՛ւր՝
9 վերջիններէն սկսելով մինչև առաջինները։ Ու
երբ եկան անոնք որ ժամը տասնըմէկին գացեր
10 էին, մէյմէկ դահեկան առին․ Եւ առաջինները
գալով՝ կը կարծէին որ աւելի պիտի առնեն, ու
11 անոնք ալ առին մէյմէկ դահեկան։ Երբ առին՝
տանուտէրոջ դէմ տրտունջ կ'ընէին ու կ'ըսէին
12 թէ Այս վերջինները մէկ ժամ գործեցին, և
զանոնք հաւասար ըրիր մեզի, որ օրուան ծան-
13 րութիւնը ու տաքութիւնը քաշեցինք։ Անիկա
պատասխան տուաւ անոնցմէ մէկուն ու ըսաւ,
Ընկեր, ես քեզ չեմ զրկեր․ չէ՞ որ դուն ինծի
14 հետ մէկ դահեկանի խօսք կապեցիր․ Առ
քուկդ ու գնա․ կ'ուզեմ որ այս վերջինին քե-
15 զի տուածիս պէս տամ։ Միթէ ես իշխանութիւն
չունի՞մ իմ բաներուս վրայ՝ ինչ որ ուզեմ ընե-
լու․ կամ թէ քու աչքդ չա՞ր է՝ որ ես բարե-
16 րար եմ։ Այսպէս յետինները առաջին պիտի

ըլլան, և առաջինները յետին. վասն զի կան-
չուածները շատ են, բայց ընտրուածները քիչ։
17 Ու երբ Յիսուս Երուսաղէմ կ'ելլէր, ճամբան
տասուերկու աշակերտները իրեն հետ առաւ
18 առանձին, ու ըսաւ անոնց, Ահա Երուսաղէմ
կ'ելլենք, և Որդին մարդոյ պիտի մատնուի քա-
հանայապետներուն ու դպիրներուն, և զանիկա
19 մահուան պիտի դատապարտեն։ Եւ զանիկա
հեթանոսներուն պիտի մատնեն՝ ծաղր ընելու
ու ծեծելու և խաչը հանելու. ու երրորդ օրը
յարութիւն պիտի առնէ։
20 Այն ատեն Զեբեդէոսի որդիներուն մայրը
իր որդիներուն հետ եկաւ անոր, երկրպագու-
21 թիւն կ'ընէր ու բան մը կը խնդրէր անկէ։ Ան
ալ ըսաւ անոր, Ի՞նչ կ'ուզես։ Ըսաւ անոր, Ըսէ
որ այս իմ երկու որդիներս մէկը աջ կողմդ՝ և
միւսը ձախ կողմդ նստին քու թագաւորու-
22 թեանդ մէջ։ Պատասխան տուաւ Յիսուս ու
ըսաւ, Չէք գիտեր ինչ կը խնդրէք. կրնա՞ք
խմել այն գաւաթը զոր ես պիտի խմեմ, կամ
այն մկրտութիւնով մկրտուիլ զոր ես պիտի
23 մկրտուիմ. ըսին իրեն, Կրնանք։ Եւ ըսաւ
անոնց, Իմ գաւաթս պիտի խմէք, և այն մկր-
տութիւնով զոր ես մկրտուելու եմ, պիտի
մկրտուիք. բայց իմ աջ կողմս ու ձախ կողմս
նստիլը՝ ինծի չէ տալը, հապա որոնց որ պատ-
24 րաստուած է իմ Հօրմէս։ Ու երբ միւս տասը
աշակերտները լսեցին, այն երկու եղբայրներուն նե-
25 ղացան։ Իսկ Յիսուս իրեն կանչեց զանոնք ու
ըսաւ, Գիտէք որ ազգերուն իշխանները կը տի-
րեն անոնց, և մեծամեծները կ'իշխեն անոնց.
26 Բայց ձեր մէջ այնպէս պիտի չըլլայ, հապա ձեզ-
մէ ով որ մեծ ըլլալ կ'ուզէ, թող անիկա ձեր
27 սպասաւորը ըլլայ. Ու ձեզմէ ով որ առաջին
ըլլալ կ'ուզէ, թող անիկա ձեր ծառան ըլլայ.

28 Ինչպէս Որդին մարդոյ չեկաւ սպասաւորու-
թիւն ընդունելու, հապա սպասաւորութիւն
ընելու և իր կեանքը շատերու համար փրկանք
տալու ։
29 Ու երբ անոնք Երիքովէն ելան, մեծ բազմու-
30 թիւն անոր ետեւէն գնաց։ Եւ ահա ճամբուն
քով երկու կոյր նստած էին. երբ լսեցին թէ
Յիսուս կ'անցնի, աղաղակեցին ու ըսին, Ողոր-
31 մէ մեզի, Տէր, Որդի Դաւթի։ Եւ բազմու-
թիւնը կը յանդիմանէր զանոնք որ լռեն, բայց
անոնք ա՛լ աւելի կ'աղաղակէին ու կ'ըսէին,
32 Ողորմէ մեզի, Տէր, Որդի Դաւթի։ Եւ Յիսուս
կանգ առնելով կանչեց զանոնք ու ըսաւ, Ի՞նչ
33 կ'ուզէք որ ձեզի ընեմ։ Ըսին անոր, Տէր, որ
34 աչքերնիս բացուին։ Եւ Յիսուս խղճալով անոնց
աչքերուն դպաւ, և շուտ մը անոնց աչքերը
բացուեցան, ու անոր ետեւէն գացին։

## ԳԼ. ԻԱ

1 Քրիստոս իշու վրայ հեծած՝ Երուսաղէմ կը մտնէ. 12 տաճարէն դուրս կը վռնտէ առուտուր ընողները. 17 թզենին կ'անիծէ. 23 կը պապանձեցնէ քահանաները ու ծերերը, 28 և կը յանդիմանէ զանոնք՝ օրինակ բերելով հօր մը երկու որդիները, 33 ու ան մշակները՝ որ իրենց ղրկուածները սպաննեցին։

1 Ու երբ Երուսաղէմի մօտեցան ու եկան Բեթ-
փագէ դէպ ի Ձիթենեաց լեռը, այն ատեն Յի-
2 սուս իր աշակերտներէն երկուքը ղրկեց. Եւ
ըսաւ անոնց, Գացէք այդ ձեր դիմացի գեղը,
և շուտ մը պիտի գտնէք կապուած էշ մը ու
անոր հետ աւանակ մը. արձակեցէք զանոնք ու
3 ինծի բերէք. Եւ եթէ մէկը ձեզի բան մը ըսէ,
ըսէք թէ Տէրոջը պէտք են. և շուտ մը զանոնք
4 պիտի ղրկէ։ Այս ամէն բաները եղան, որպէս
զի կատարուի մարգարէին խօսքը որ կ'ըսէ.
5 Ըսէք Սիոնի աղջկան, Ահա քու Թագաւորդ
քեզի կու գայ, հեզ, ու իշու վրայ հեծած և
6 իշու ձագի, աւանակի, վրայ։ Եւ աշակերտները

գացին, և ինչպէս Յիսուս իրենց պատուիրեր
7 էր՝ ըրին. Ու բերին էշը ու աւանակը, և անոնց
վրայ իրենց հանդերձները դրին, ու *նստաւ
8 անոնց վրայ։ Եւ ժողովուրդէն շատեր իրենց
հանդերձները ճամբուն վրայ փռեցին, և ու-
րիշներ ծառերէն ճիւղեր կը կտրէին ու ճամ-
9 բուն վրայ կը տարածէին։ Եւ ժողովուրդները,
որոնք առջևէն ու ետևէն կ՚երթային, կ՚աղա-
ղակէին ու կ՚ըսէին, Ովսաննա Որդւոյ Դաւթի,
օրհնեալ է ան որ Տէրոջը անունովը կու գայ.
Ովսաննա ի բարձունս։
10 Ու երբ անիկա Երուսաղէմ մտաւ, բոլոր քա-
11 ղաքը շարժեցաւ ու ըսաւ, Ո՞վ է աս։ Եւ ժո-
ղովուրդները ըսին, Ասիկա Յիսուս մարգարէն
է Գալիլեայի Նազարէթէն։
12 Եւ Յիսուս Աստուծոյ տաճարը մտաւ, ու
դուրս հանեց ամէն անոնք որ տաճարին մէջ
կը ծախէին ու կը գնէին, և ստակ փոխողնե-
րուն սեղանները ու աղաւնի ծախողներուն
13 աթոռները կործանեց. Եւ ըսաւ անոնց, Գրուած
է թէ Իմ տունս աղօթքի տուն պիտի կոչուի.
բայց դուք աւազակներու այր ըրիք։
14 Եւ տաճարին մէջ կոյրեր ու կաղեր եկան
15 իրեն, և բժշկեց զանոնք։ Եւ քահանայապետ-
ները ու դպիրները տեսան անոր ըրած հրաշք-
ները, և տղաքը որոնք տաճարին մէջ կ՚աղաղա-
կէին ու կ՚ըսէին, Ովսաննա Որդւոյ Դաւթի,
16 բարկացան. Ու ըսին անոր, Կը լսե՞ս ինչ կ՚ըսեն
ասոնք. և Յիսուս ըսաւ անոնց, Այո. բնաւ
չէ՞ք կարդացեր, Թէ Մանկանց ու կաթնկեր
տղայոց բերնէն գովութիւն կատարեցիր։
17 Եւ թողուց զանոնք՝ քաղաքէն դուրս Բե-
թանիա ելաւ, ու գիշերը հոն կեցաւ։
18 Եւ առտուանց երբ քաղաքը կը դառնար,

*Յոյն., Նստեցուցին

19 անօթեցաւ. Ու ճամբուն վրայ թզենի մը տե-
սնելով քովը գնաց, եւ անոր վրայ տերեւներէն
զատ բան մը չգտաւ. ու ըսաւ անոր, Ասկէ ետեւ
քեզմէ պտուղ չըլլայ յաւիտեան. եւ իսկոյն
20 թզենին չորցաւ։ Եւ աշակերտները երբ տե-
սան, զարմացան ու ըսին թէ Ինչպէս թզենին
21 շուտ մը չորցաւ։ Յիսուս պատասխան տուաւ
ու ըսաւ անոնց, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Եթէ
հաւատք ունենաք ու չերկմտիք, ոչ թէ միայն
այդ թզենիին եղածը պիտի ընէք, հապա նաեւ
եթէ այս լերանը ըսէք, Ելիր, ու ծովը ինկիր,
22 պիտի ըլլայ։ Եւ ամէն ինչ որ աղօթքի մէջ հա-
ւատքով կը խնդրէք, պիտի առնէք։
23 Ու երբ անիկա տաճարը եկաւ, քահանայա-
պետները եւ ժողովուրդին ծերերը անոր մօտե-
ցան երբ կը սորվեցնէր, ու ըսին, Ի՞նչ իշխա-
նութիւնով կ'ընես այդ բաները, եւ ո՞վ տուաւ
24 քեզի այդ իշխանութիւնը։ Պատասխան տուաւ
Յիսուս ու ըսաւ անոնց, Ես ալ ձեզի բան մը
հարցնեմ, զոր եթէ ինծի ըսէք, ես ալ
ձեզի պիտի ըսեմ թէ ինչ իշխանութիւնով
25 կ'ընեմ այս բաները։ Յովհաննէսի մկրտութիւ-
նը ուրկէ՞ էր, երկինքէ՞ն թէ մարդոցմէ. եւ
26 անոնք իրենց մէջ կը խորհէին ու կ'ըսէին, Եթէ
ըսենք՝ Երկինքէն, մեզի պիտի ըսէ թէ Հապա
ինչո՞ւ չհաւատացիք անոր. իսկ եթէ ըսենք՝
Մարդոցմէ, ժողովուրդէն կը վախնանք, վասն
զի բոլորն ալ Յովհաննէսը իբրեւ մարգարէ կ'ըն-
27 դունին։ Եւ պատասխան տալով Յիսուսի՝ ըսին,
Չենք գիտեր. եւ ինք ըսաւ անոնց, Ես ալ ձեզի
չեմ ըսեր թէ ինչ իշխանութիւնով կ'ընեմ
այս բաները։
28 Բայց ի՞նչպէս կ'երեւնայ ձեզի. մարդ մը եր-
կու որդի ունէր, ու գնաց առաջինին ըսաւ,
Որդեակ, գնա այսօր այգիիս մէջ գործէ։

29 Անիկա պատասխան տալով ըսաւ, Չեմ ու-
30 զեր երթալ. բայց ետքը զղջալով գնաց։ Մի-
սին ալ գնաց և այնպէս ըսաւ. անիկա պատաս-
խան տալով ըսաւ, Կ՚երթամ, տէր. և չգնաց։
31 Հիմա այս երկուքէն ո՞րը իր հօրը կամքը կա-
տարեց. ըսին անոր, Առաջինը. Յիսուս ըսաւ
անոնց, Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի որ մաքսաւոր-
ները ու պոռնիկները ձեզմէ առաջ կը մտնեն
32 Աստուծոյ թագաւորութիւնը։ Վասն զի Յով-
հաննէս արդարութեան ճամբայով եկաւ ձեզի,
և դուք անոր չհաւատացիք. բայց մաքսաւորնե-
րը ու պոռնիկները անոր հաւատացին. և դուք
տեսաք ու ետքը չզղջացիք անոր հաւատալու։
33 Ուրիշ առակ մըն ալ լսեցէք. Տանուտէր մարդ
մը կար՝ որ այգի մը տնկեց ու ցանկով պատեց
զանիկա, և անոր մէջ հնձան փորեց ու աշտա-
րակ շինեց, և զանիկա մշակներու յանձնեց, ու
34 ինք օտար երկիր մը գնաց։ Երբ պտուղի ժա-
մանակը մօտեցաւ, իր ծառաները մշակներուն
35 ղրկեց, որպէս զի անոր պտուղները առնեն։ Եւ
մշակները անոր ծառաները բռնեցին, մէկը ծե-
ծեցին, միւսը սպաննեցին, մէկ ուրիշը քարկո-
36 ծեցին։ Նորէն ուրիշ ծառաներ ղրկեց առա-
ջիններէն շատ, և անոնց ալ այնպէս ըրին։
37 Վերջը իր որդին ղրկեց անոնց՝ ըսելով, Թերևս
38 ամչնան իմ որդիէս։ Բայց մշակները երբ տե-
սան որդին, իրարու ըսին, Ասիկա է ժառան-
գը. եկէք զանիկա սպաննենք ու անոր ժառան-
39 գութիւնը առնենք։ Եւ առին զանիկա, այ-
40 գիէն դուրս հանեցին ու սպաննեցին։ Ուստի
երբ այգիին տէրը գայ, ի՞նչ պիտի ընէ այն
41 մշակներուն։ Ըսին իրեն, Այն չարերը չարա-
չար պիտի կորսնցնէ, և այգին պիտի յանձնէ
ուրիշ մշակներու, որոնք պտուղները իրենց ժա-
42 մանակին պիտի տան իրեն։ Ըսաւ անոնց Յիսուս,

Բնաւ չէ՞ք կարդացեր գիրքին մէջ, Այն քարը
զոր շինողները անարգեցին, անիկա անկիւնին
գլուխ եղաւ. ասիկա Տէրոջմէն եղաւ և զար-
43 մանալի է մեր աչքերուն։ Անոր համար կ'ըսեմ
ձեզի, որ Աստուծոյ թագաւորութիւնը ձեզմէ
պիտի առնուի, ու այնպիսի ազգի մը պիտի
44 տրուի՝ որ անոր պտուղները բերէ։ Եւ ով որ
այս քարին վրայ իյնայ, պիտի կոտրի, և որուն
վրայ որ իյնայ, պիտի փշրէ զանիկա։
45 Ու երբ քահանայապետները և փարիսեցի-
ները անոր առակները լսեցին, իմացան որ իրենց
46 համար կ'ըսէր։ Եւ կը փնտռէին ԲԷ ճնշէ՞ բռնել
զանիկա, բայց ժողովուրդէն վախցան, վասն զի
մարգարէի տեղ կ'ընդունէին զանիկա։

## ԳԼ. ԻԲ

1 Թագաւորի որդւոյն հարսնիքին առակը։ 9 Հեթանոսներուն երկինքի թագաւորութեան հրաւիրուիլը։ 12 Հարսնիքի հանդերձ չունեցողին պատիժը։ 15 Կայսրին տուրք տալու վրայով։ 23 Քրիստոս փաստով կը ջրէ սադուկեցիներուն մերժութիւնը յարութեան վրայով. 34 պատասխան կու տայ օրինականին թէ ո՛րն է մեծ ու առաջին պատուիրանքը. 41 փարիսեցիներուն հարցումներ կ'ընէ Մեսիային վրայով, ու կը պապանձեցնէ զանոնք։

1 Դարձեալ պատասխան տուաւ Յիսուս և
2 առակներով ըսաւ անոնց, Երկինքի թագաւո-
րութիւնը թագաւոր մարդու մը կը նմանի, որ
3 իր որդւոյն համար հարսնիք ըրաւ։ Եւ իր ծա-
ռաները ղրկեց, որպէս զի կանչեն հարսնիքի
հրաւիրուածները, և անոնք չուզեցին գալ։
4 Նորէն ուրիշ ծառաներ ղրկեց ու ըսաւ, Ըսէք
հրաւիրուածներուն, Ահա իմ ճաշս պատրաս-
տեցի, զուարակներս ու գէր կենդանիներս մոր-
թուած են, և ամէն բան պատրաստ է. հարս-
5 նիք եկէք։ Բայց անոնք անհոգութիւն ընելով
գացին, մէկը իր արտը ու միւսը իր առուտու-
6 րին. Եւ ուրիշները անոր ծառաները բռնեցին,
7 նախատեցին ու սպաննեցին։ Թագաւորին ալ

երբ լսեց՝ բարկացաւ, և իր զօրքերը ղրկեց
ու այն սպանողները սատկեցուց, ու անոնց
8 քաղաքը այրեց։ Այն ատեն իր ծառաներուն
ըսաւ, Հարսնիքը պատրաստ է, բայց հրաւիր-
9 ուածները արժանի չէին։ Ուստի գացէք ճամ-
բու գլուխները, և ով որ գտնելու ըլլաք, հար-
10 նիքի հրաւիրեցէք։ Եւ այն ծառաները ելան
ճամբաներու վրայ, ու ով որ գտան, թէ՛ չար
և թէ՛ բարի, ամէնն ալ ժողվեցին, ու հար-
11 նիքը հարսնաւորներով լեցուեցաւ։ Եւ թագա-
ւորը երբ մտաւ հարսնաւորները տեսնելու, հոն
մարդ մը տեսաւ որ հարսնիքի հանդերձ հա-
12 գած չէր. Եւ ըսաւ անոր, Ընկեր, ինչո՞ւ հա-
մար հոս մտար առանց հարսնիքի հանդերձ ու-
13 նենալու. և անիկա պապանձեցաւ։ Այն ատեն
թագաւորը սպասաւորներուն ըսաւ, Կապեցէք
ատոր ոտքերը ու ձեռքերը, և առէք ու հանե-
ցէք զանիկա դուրսի խաւարը. հոն պիտի ըլլայ
14 լալ ու ակռաներ կրճտել։ Վասն զի կանչուած-
ները շատ են ու ընտրուածները քիչ։
15 Այն ատեն փարիսեցիները գացին խորհուրդ
ըրին, թէ ինչպէս անոր որոգայթ մը դնեն
16 խօսքով. Եւ իրենց աշակերտները Հերովդէս-
եաններուն հետ մէկտեղ ղրկեցին անոր ու
ըսին, Վարդապետ, գիտենք որ ճշմարիտ ես,
և ճշմարտութեամբ Աստուծոյ ճամբան կը սոր-
վեցնես, ու մարդո՛ւ համար հոգ չէ, քանզի
17 մարդոց երեսպաշտութիւն չես ըներ։ Ուստի
մեզի ըսէ, քեզի ի՞նչպէս կ'երեւնայ, Կայսրին
18 տուրք տալ արժա՞ն է՝ թէ ոչ։ Յիսուս գիտ-
նալով անոնց խորամանկութիւնը՝ ըսաւ, Ինչո՞ւ
19 զիս կը փորձէք, կեղծաւորներ, Ցուցուցէք ին-
ծի տուրքին դրամը. և անոնք դահեկան մը բե-
20 րին իրեն։ Ու ըսաւ անոնց, Որո՞ւնն է այս
21 պատկերը ու գիրը։ Ըսին անոր, Կայսրին. այն

ատեն ըսաւ անոնց, Ուրեմն զայն որ Կայսրինն
է՝ Կայսրին տուէք, և զայն որ Աստուծոյն է՝
22 Աստուծոյ տուէք։ Երբ լսեցին՝ զարմացան, և
թողուցին զանիկա ու գացին։
23 Նոյն օրը անոր քով եկան սադուկեցիները,
որոնք կ'ըսեն թէ յարութիւն չկայ, և անոր
24 հարցուցին՝ Ըսելով, Վարդապետ, Մովսէս
ըսաւ, Եթէ մէկը առանց զաւկի մեռնելու
ըլլայ, անոր եղբայրը առնէ անոր կինը, և իր
25 եղբօրը զաւակ հանէ։ Արդ եօթը եղբայրներ
կային մեր մէջ. և առաջինը կին առաւ՝ ու մե-
ռաւ, և զաւակ չունենալուն համար իր կինը
26 ձգեց իր եղբօրը։ Նոյնպէս ալ երկրորդը՝ ու
27 երրորդը՝ մինչև եօթներորդը։ Ամենէն ետքը
28 կինն ալ մեռաւ։ Ուրեմն յարութեան ատեն
այն եօթնէն որո՞ւն կինը պիտի ըլլայ. վասն զի
29 ամէնն ալ զանիկա կին ունեցան։ Եւ Յիսուս
պատասխան տալով՝ անոնց ըսաւ, Դուք մոլո-
րած էք, որ ո՛չ գիրքերը գիտէք և ո՛չ Աստու-
30 ծոյ զօրութիւնը. Քանզի յարութեան ատեն
ոչ կին կ'առնեն և ոչ էրկան կու տրուին, հապա
երկինքի մէջ Աստուծոյ հրեշտակներուն պէս
31 են։ Բայց մեռելներուն յարութեան առնելուն
համար՝ չէ՞ք կարդացեր Աստուծմէ ձեզի ըսուած
32 խօսքը. Ես եմ Աբրահամի Աստուածը, և Իսա-
հակի Աստուածը, ու Յակոբի Աստուածը.
Աստուած մեռելներուն Աստուածը չէ, հապա
33 կենդանիներուն։ Ու ժողովուրդները լսելով՝ կը
զարմանային անոր վարդապետութեանը վրայ։
34 Բայց փարիսեցիները երբ լսեցին թէ անիկա
պապանձեցուց սադուկեցիները, մէկտեղ ժողո-
35 վուեցան. Եւ անոնցմէ մէկը, օրինական մը,
36 հարցուց, զանիկա փորձելով, ու ըսաւ, Վար-
դապետ, ո՞ր պատուիրանքը մեծ է օրէնքին մէջ.
37 Եւ Յիսուս ըսաւ անոր, Քու Տէր Աստուածդ

սիրես քու բոլոր սրտովդ և քու բոլոր անձովդ
38 ու քու բոլոր մտքովդ։ Այս է առաջին ու
39 մեծ պատուիրանքը։ Ու երկրորդը ասոր նման,
40 Քու ընկերդ սիրես քու անձիդ պէս։ Այս եր-
կու պատուիրանքէն կախուած են բոլոր օրէն-
քը և մարգարէները։
41 Ու երբ փարիսեցիները ժողվուեցան, Յիսուս
42 հարցուց անոնց ու ըսաւ, Քրիստոսի վրայով
ի՞նչ կարծիք ունիք. անիկա որո՞ւն որդին է։
43 Ըսին իրեն, Դաւիթի։ Ըսաւ անոնց Յիսուս, Հա-
պա ի՞նչպէս Դաւիթ Հոգիով զանիկա Տէր կը
44 կոչէ ու կ'ըսէ, Տէրը իմ Տէրոջս ըսաւ, Նստէ
իմ աջ կողմս, մինչև քու թշնամիներդ ոտ-
45 քերուդ պատուանդան ընեմ։ Ուրեմն եթէ
Դաւիթ զանիկա Տէր կը կոչէ, ի՞նչպէս անիկա
46 անոր որդին կ'ըլլայ։ Եւ մէ՛կը չէր կրնար անոր
խօսք մը պատասխանել. ու այն օրէն ետև մէ՛կը
չէր համարձակեր անոր բան մը հարցնել։

## ԳԼ. ԻԳ

1 Քրիստոս խրատ կու տայ ժողովուրդներուն որ դպիրներուն ու փարիսեցիներուն բարի վարդապետութեանը հետևին, և ոչ թէ անոնց չար օրինակներուն. 5 Նոյնպէս ալ իր աշակերտները կը խրատէ որ զգոյշ կենան անոնց փառասիրութենէն. 13 ութ անգամ վայ կու տայ անոնց կեղծաւորութեանը ու կուրութեանը. 34 ու Երուսաղէմի կործանումը կը նախաձայնէ։

1 Այն ատեն Յիսուս խօսեցաւ ժողովուրդնե-
2 րուն և իր աշակերտներուն ու ըսաւ, Մովսէսի
աթոռը դպիրները և փարիսեցիները նստած
3 են. Ուրեմն ինչ որ ձեզի կ'ըսեն որ պահէք,
պահեցէք ու ըրէք, բայց անոնց գործերուն
պէս մի ընէք, վասն զի կ'ըսեն ու չեն ըներ։
4 Քանզի ծանր և տանելու դժուար բեռներ կը
կապեն ու կը դնեն մարդոց ուսերուն վրայ, և
5 իրենց մատովը չեն ուզեր զանոնք շարժել։ Եւ
իրենց ամէն գործերը մարդոց երևնալու հա-
մար կ'ընեն. կը լայնցնեն իրենց գրպանակները

ու կ'երկնցնեն իրենց հանդերձներուն քղանցք-
6 ները. Ընթրիքներու մէջ առաջին բազմոցները
կը սիրեն, և ժողովարաններուն մէջ առաջին
աթոռները, ու շուկաներուն մէջ բարևնե-
7 րը։ Եւ մարդոցմէ Ռաբբի Ռաբբի կոչուիլ։
8 Բայց դուք Ռաբբի մի կոչուիք, վասն զի ձեր
Ուսուցիչը մէկ է, այսինքն Քրիստոս. և դուք
9 ամէնդ եղբայր էք։ Ու երկրի վրայ մարդ ձեզի
Հայր մի կոչէք, վասն զի ձեր Հայրը մէկ է, որ
10 երկինքն է։ Եւ դուք ուսուցիչներ մի կոչուիք,
վասն զի ձեր Ուսուցիչը մէկ է, այսինքն Քրիս-
11 տոս։ Եւ ձեր մէջէն մեծը ձեր սպասաւորը պի-
12 տի ըլլայ։ Ով որ իր անձը կը բարձրացնէ, պի-
տի խոնարհի, և ով որ իր անձը կը խոնարհե-
ցնէ, պիտի բարձրանայ։
13 Բայց վա՜յ ձեզի, կեղծաւոր դպիրներ ու փա-
րիսեցիներ, որ երկինքի թագաւորութիւնը
մարդոց առջև կը գոցէք. քանզի դուք չէք մտ-
ներ, և մտնողներն ալ չէք թողուր որ մտնեն։
14 Վա՜յ ձեզի, կեղծաւոր դպիրներ ու փարիսե-
ցիներ, որ որբևայրիներուն տուները կ'ուտէք,
ու մարդոց երևնալու համար աղօթքը կ'երկնցնէք.
անոր համար աւելի դատապարտութիւն պիտի
15 ընդունիք։ Վա՜յ ձեզի, կեղծաւոր դպիրներ ու
փարիսեցիներ, որ ծով ու ցամաք կը պտըտիք
մէկը նորահաւատ ընելու, ու երբ ըլլայ, զա-
նիկա ձեզմէ երկու անգամ աւելի գեհենի որ-
16 դի կ'ընէք։ Վա՜յ ձեզի, կոյր առաջնորդներ, որ
կ'ըսէք թէ Ով որ տաճարին վրայ երդում ընէ,
բան մը չէ, բայց ով որ տաճարին մէջի ոսկիին
17 վրայ երդում ընէ, պարտաւոր կ'ըլլայ։ Ով յի-
մարներ ու կոյրեր, ո՞րը մեծ է, ոսկի՞ն թէ
18 տաճարը որ կը սրբացնէ ոսկին։ Եւ թէ՝ Ով որ
սեղանին վրայ երդում ընէ, բան մը չէ, բայց
ով որ սեղանին վրայի պատարագին վրայ երդում

19 ընէ, պարտաւոր կ'ըլլայ։ Յիմարներ ու կոյրեր,
ո՞րը մեծ է, պատարա՞գը թէ սեղանը որ կը
20 սրբացնէ պատարագը։ Ուստի ով որ սեղանին
վրայ երդում ընէ, երդում կ'ընէ անոր վրայ
21 և անոր վրայի ամէն բաներուն վրայ. Եւ ով որ
տաճարին վրայ երդում ընէ, երդում կ'ընէ
22 անոր վրայ և անոր մէջ բնակողին վրայ. Եւ ով
որ երկինքի վրայ երդում ընէ, երդում կ'ընէ
Աստուծոյ աթոռին վրայ և անոր վրայ նստո-
23 ղին վրայ։ Վա՜յ ձեզի, կեղծաւոր դպիրներ ու
փարիսեցիներ, որ անանուխին ու սամիթին և
չամանին տասանորդը կը վճարէք, ու կը ձգէք
օրէնքին ծանր ծանր բաները, դատաստանը և
ողորմութիւնը ու հաւատքը. ասոնք պէտք էր
24 ընել, և զանոնք չձգել։ Կոյր առաջնորդներ, որ
25 մժղուկը կը քամէք և ուղտը կը կլլէք։ Վա՜յ
ձեզի, կեղծաւոր դպիրներ ու փարիսեցիներ,
որ գաւաթին ու պնակին դուրսի կողմը կը մաք-
րէք, ու ներսէն յափշտակութեամբ և *անի-
26 րաւութեամբ լեցուն են։ Կոյր փարիսեցի, առաջ
գաւաթին ու պնակին ներսի կողմը մաքրէ, որ-
պէս զի անոնց դուրսի կողմն ալ մաքուր ըլլայ։
27 Վա՜յ ձեզի, կեղծաւոր դպիրներ ու փարիսե-
ցիներ, որ կը նմանիք ծեփած գերեզմաններու,
որոնք դուրսէն գեղեցիկ կ'երևնան, և ներսէն
մեռելներու ոսկորներով և ամէն կերպ պղծութիւ-
28 նով լեցուն են։ Նոյնպէս դուք դուրսէն մար-
դոց արդար կ'երևնաք, ու ներսէն կեղծաւորու-
29 թեամբ ու անօրէնութեամբ լեցուն էք։ Վա՜յ
ձեզի, կեղծաւոր դպիրներ ու փարիսեցիներ, որ
մարգարէներուն տապանները կը շինէք, և ար-
30 դարներուն գերեզմանները կը զարդարէք։ Ու
կ'ըսէք, Եթէ մեր հայրերուն օրերը ըլլայինք,
անոնց հետ մարգարէներուն արեանը մասնակից

*Ոմն., անբարեխառնութեամբ

31 չէինք ըլլար։ Ուրեմն դուք ձեր վրայ կը վկայէք
թէ անոնց զաւակներն էք՝ որ մարգարէները
32 կը սպաննէին։ Ուրեմն դուք ալ ձեր հայրերուն
33 չափը լեցուցէք. Օձեր, իժերու ծնունդներ, ի՞նչ֊
պէս պիտի փախչիք գեհենին դատապարտու֊
34 թենէն։ Ասոր համար ահա ես կը ղրկեմ ձե֊
զի մարգարէներ և իմաստուններ ու դպիրներ,
և անոնցմէ մէկ քանիները պիտի սպաննէք ու խաչը
հանէք, և մէկ քանիները ձեր ժողովարաննե֊
րուն մէջ պիտի ծեծէք, ու քաղաքէ քաղաք
35 հալածէք։ Որպէս զի երկրի վրայ թափուած
բոլոր արդար արիւնը ձեր վրայ գայ, արդար
Աբէլի արիւնէն մինչև Բարաքիայի որդւոյն
Զաքարիայի արիւնը, զոր տաճարին ու սեղանին
36 մէջտեղ սպաննեցիք։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
Այս ամէն բաները պիտի գան այս ազգին վրայ։
37 Ով Երուսաղէմ, Երուսաղէմ, որ մարգարէ֊
ները կը սպաննէիր, ու քեզի ղրկուածները կը
քարկոծէիր, քանի՜ անգամ քու տղաքներդ
ժողվել ուզեցի, ինչպէս հաւը իր ձագերը թե֊
38 ւերուն տակ կը ժողվէ, և դուք չուզեցիք։ Ահա
39 ձեր տունը ձեզի աւերակ պիտի մնայ։ Վասն
զի ձեզի կ'ըսեմ որ ա՛լ ասկէ ետև պիտի չտես֊
նէք զիս, մինչև ըսէք, Օրհնեալ է ան որ Տէ֊
րոջը անունովը կու գայ։

## ԳԼ. ԻԴ

1 Քրիստոս կը նախաձայնէ տաճարին կործանումը, 3 անկէ առաջ հասնելու մեծ թշուառութիւնները, 29 և իր դատաստանի գալուն նշանները։ 31 Եւ այն օրուան ու ժամուն մեզի անծանօթ ըլլալուն համար, 42 կը պատուիրէ որ արթուն կենանք այն բարի ծառային պէս՝ որ ամէն վայրկեան իր տէրոջ գալուն կը սպասէ։

1 Եւ Յիսուս տաճարէն դուրս ելլելով կ'եր֊
թար, ու աշակերտները անոր քով գացին տա֊
2 ճարին շէնքերը իրեն ցուցնելու։ Եւ Յիսուս
անոնց ըսաւ, Զէ՞ք տեսներ այդ ամէն բանե֊
րը. Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Պիտի չմնայ հոս
քար քարի վրայ՝ որ չքակուի։

3 Ու երբ անիկա Ձիթենեաց լեռը նստեր էր,
աշակերտները իրեն եկան առանձին ու ըսին,
Ըսէ մեզի, ե՞րբ պիտի ըլլան այդ բաները. և
քու գալուստիդ ու աշխարհիս վերջին նշանը
4 ի՞նչ պիտի ըլլայ։ Եւ Յիսուս պատասխան տուաւ
ու ըսաւ անոնց, Զգուշ կեցէք, չըլլայ որ մէկը
5 ձեզ խաբէ։ Վասն զի շատերը պիտի գան իմ
անունովս ու ըսեն թէ Ես եմ Քրիստոսը, ու
6 շատերը պիտի մոլորեցնեն։ Եւ պիտի լսէք պա-
տերազմներ ու պատերազմներու լուրեր. զգուշ
կեցէք որ չխռովիք. վասն զի այն ամէն բաները
7 պէտք է որ ըլլան, բայց դեռ վերջը չէ։ Վասն
զի ազգ ազգի վրայ պիտի ելլէ, ու թագաւո-
րութիւն թագաւորութեան վրայ, և տեղ տեղ
սովեր ու մահտարաժամներ և երկրաշարժու-
8 թիւններ պիտի ըլլան։ Բայց ասոնք ամէնը ցա-
9 ւերուն սկիզբն են։ Այն ատեն ձեզ նեղու-
թեան պիտի մատնեն և ձեզ պիտի սպաննեն,
ու իմ անուանս համար ամէն ազգերուն ատելի
10 պիտի ըլլաք։ Եւ այն ատեն շատերը պիտի գայ-
թակղին, ու մէկզմէկ պիտի մատնեն և մէկզմէկ
11 պիտի ատեն։ Եւ շատ սուտ մարգարէներ պիտի
12 ելլեն ու շատերը պիտի մոլորեցնեն. Եւ անօրէ-
նութեան շատնալուն համար շատերուն սէրը
13 պիտի պաղի։ Բայց ով որ մինչև վերջը համբե-
14 րէ, անիկա պիտի ապրի։ Եւ արքայութեան այս
աւետարանը բովանդակ աշխարհի մէջ պիտի
քարոզուի՝ բոլոր ազգերուն վկայութիւն ըլլա-
լու, և անկէ ետև վերջը պիտի գայ։
15 Ուստի երբ տեսնէք աւերմունքին պղծու-
թիւնը՝ որ Դանիէլ մարգարէին ձեռքով ըսուած
է, թէ սուրբ տեղը կը կենայ. (ով որ կարդայ,
16 թող հասկընայ.) Այն ատեն Հրէաստանի մէջ
17 եղողները լեռները թող փախչին. Եւ ան որ
տանիքին վրայ է, թող չիջնէ իր տունէն բան մը

18 առնելու . Եւ ան որ արտին մէջ է, թող ետ
19 չդառնայ իր հանդերձները առնելու ։ Բայց վա՜յ
այն օրերը յղի եղողներուն ու ծիծ տուողնե-
20 րուն ։ Եւ աղօթք ըրէք որ ձեր փախչիլը ձմե-
21 ռը չըլլայ, ոչ ալ շաբաթ օրը . Քանզի այն ատեն
այնպիսի մեծ նեղութիւն պիտի ըլլայ, որու
նմանը աշխարհի սկիզբէն մինչեւ հիմա եղած չէ,
22 ոչ ալ պիտի ըլլայ ։ Եւ եթէ այն օրերը չքչ-
նային, բնաւ մարմին մը պիտի չազատէր . բայց
ընտրեալներուն համար այն օրերը պիտի քչ-
23 նան ։ Այն ատեն եթէ մէկը ձեզի ըսէ թէ
Ահա հոս է Քրիստոսը կամ՝ Հոն, մի հաւա-
24 տաք . Վասն զի սուտ Քրիստոսներ ու սուտ
մարգարէներ պիտի ելլեն, ու մեծ նշաններ և
հրաշքներ պիտի ցուցնեն, որ եթէ կարելի է՝
25 ընտրեալներն ալ մոլորեցնեն ։ Ահա ձեզի առաջ-
26 ուընէ ըսի ։ Ուստի եթէ ձեզի ըսեն թէ Ահա
անապատին մէջ է, մի ելլէք . և թէ՝ Ահա ներքին
27 սենեակներուն մէջ է, մի հաւատաք ։ Վասն զի
ինչպէս փայլակը արեւելքէն կ'ելլէ ու մինչեւ
արեւմուտք կ'երեւնայ, այնպէս պիտի ըլլայ Որդ-
28 ւոյ մարդոյ գալուստը ։ Քանզի ուր մեռած մար-
մին կայ, հոն պիտի ժողվուին արծիւները ։
29 Եւ շուտ մը այն նեղութեան օրերէն ետեւ
արեգակը պիտի խաւարի, ու լուսինը իր լոյսը
պիտի չտայ, և աստղերը երկինքէն պիտի իյնան,
30 ու երկինքի զօրութիւնները պիտի շարժին ։ Եւ
այն ատեն Որդւոյ մարդոյ նշանը պիտի երեւնայ
երկինքի մէջ, ու այն ատեն երկրի բոլոր ազ-
գերը կոծ պիտի ընեն, ու պիտի տեսնեն Որդին
մարդոյ երկինքի ամպերուն վրայ եկած զօրու-
31 թիւնով ու մեծ փառքով ։ Եւ անիկա իր հրեշ-
տակները պիտի ղրկէ մեծաձայն փողով, ու պի-
տի ժողվեն իր ընտրեալները չորս հովերէն,
երկինքի մէկ ծայրէն մինչեւ միւս ծայրը ։

32 Թզենիէն առակ մը սորվեցէք. որ երբ անոր
ոստերը կը կակուղնան ու տերեւները կը ցցուին,
33 գիտէք թէ ամառը մօտ է։ Նոյնպէս դուք երբ
այս ամէն բաները տեսնէք, գիտցէք որ մօտ է
34 դռներուն քով։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ այս
ազգը պիտի չանցնի մինչեւ այս ամէն բաները
35 ըլլան։ Երկինք ու երկիր պիտի անցնին, բայց
իմ խօսքերս բնաւ պիտի չանցնին։
36 Իսկ այն օրուան եւ այն ժամուն համար մարդ
չգիտեր, ոչ ալ երկինքի *հրեշտակները, հապա
37 միայն իմ Հայրս։ Բայց ինչպէս Նոյի օրերը
եղան, Որդւոյ մարդոյ գալուստն ալ այնպէս
38 պիտի ըլլայ։ Քանզի ինչպէս էին այն օրերը
ջրհեղեղէն առաջ, կ'ուտէին, կը խմէին, կին
կ'առնէին ու էրկան կու տային, մինչեւ այն օրը
39 որ Նոյ տապանը մտաւ, Եւ չգիտցան՝ մինչեւ
ջրհեղեղը եկաւ ու ամէնը վերցուց, Որդւոյ
40 մարդոյ գալուստն ալ այնպէս պիտի ըլլայ։ Այն
ատեն երբ երկու հոգի արտի մը մէջ ըլլան, մէ-
41 կը պիտի առնուի ու միւսը ձգուի. Եւ երբ եր-
կու կին մէկ աղօրիքի մէջ աղալու վրայ գըտ-
նուին, մէկը պիտի առնուի ու միւսը ձգուի։
42 Ուրեմն արթուն կեցէք, վասն զի չէք գիտեր
43 թէ ո՛ր ժամուն ձեր Տէրը կու գայ։ Բայց զայս
գիտցէք, որ եթէ տանուտէրը գիտնար թէ
Գիշերուան ո՛ր պահուն գողը կու գայ, արթուն
կը կենար և թող չէր տար որ իր տունը ծակեն։
44 Անոր համար դուք ալ պատրաստ կեցէք, քան-
զի Որդին մարդոյ կու գայ այնպիսի ժամու մէջ
45 որ դուք չէք կարծեր։ Ուստի ո՞վ է այն հաւա-
տարիմ ու իմաստուն ծառան՝ զոր իր տէրը իր
ծառաներուն վրայ դրաւ, որպէս զի ատենին
46 անոնց կերակուր տայ։ Երանի՜ է այն ծառա-
յին, զոր իր տէրը եկած ատեն այնպէս ըրած

*Ոմանք, հրեշտակները, և ոչ Որդին

47 պիտի գտնէ ։ Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի որ իր բոլոր
48 ունեցածին վրայ պիտի կեցնէ զանիկա ։ Հա-
պա եթէ այն չար ծառան իր սրտին մէջ ըսէ,
49 Իմ տէրս իր գալը կ՚ուշացնէ ։ Եւ սկսի իր ծա-
ռայակիցները ծեծել, ու գինովներուն հետ ու-
50 տել ու խմել, Այն ծառային տէրը պիտի գայ
այնպիսի օր մը՝ որ չսպասեր, և այնպիսի ժամ մը՝ որ
51 չգիտեր ։ Եւ զանիկա մէջտեղէն պիտի կտրէ,
ու անոր բաժինը կեղծաւորներուն հետ պիտի
դնէ ․ հոն պիտի ըլլայ լալ ու ակռաներ կրճտել ։

## ԳԼ․ ԻԵ

1 Տասը կոյսերուն առակը, 14 ու տաղանդներուն առակը։ 31 Վերջին դատաստանին ստորագրութիւնը ։

1 Այն ատեն երկնքի թագաւորութիւնը պի-
տի նմանի տասը կոյսերու, որոնք իրենց լապ-
տերները առնելով՝ փեսան դիմաւորելու ելան ։
2 Անոնցմէ հինգը իմաստուն էին, և հինգը յի-
3 մար ։ Յիմարները առին իրենց լապտերները, ու
4 իրենց հետ ձէթ չառին ․ Բայց իմաստունները
իրենց լապտերներուն հետ ամաններով ձէթ ա-
5 ռին ։ Եւ երբ փեսան ուշացաւ, ամէնն ալ
6 թմրեցան ու քնացան ։ Եւ կէսգիշերին ձայն
մը եղաւ, Ահա փեսան կու գայ ․ զանիկա դի-
7 մաւորելու ելէք ։ Այն ատեն բոլոր կոյսերը
8 ելան ու իրենց լապտերները շտկեցին ։ Եւ յի-
մարները ըսին իմաստուններուն, Տուէք մեզի
ձեր ձէթէն, վասն զի մեր լապտերները մարելու
9 վրայ են ։ Պատասխան տուին իմաստունները ու
ըսին, Չըլլայ որ մեզի ու ձեզի չբաւականանայ,
այլ յաւէտ ծախողներուն գացէք և գնեցէք
10 ձեզի համար ։ Երբ անոնք գացին գնելու, փեսան
եկաւ, ու պատրաստ եղողները անոր հետ հարսա-
11 նիքը մտան, և դուռը գոցուեցաւ ։ Ետքը միւս
կոյսերը եկան ու ըսին, Տէր, Տէր, բաց մեզի ։

12 Բայց անիկա պատասխան տուաւ ու ըսաւ,
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի թէ Ես ձեզ չեմ ճանչ-
13 նար։ Ուրեմն արթուն կեցէք, վասն զի ո՛չ օրը
գիտէք և ո՛չ ժամը։
14 Քանզի ինչպէս օտար երկիր գացող մարդ մը
կանչեց իր ծառաները, և իր ունեցածը անոնց
15 յանձնեց։ Մէկուն տուաւ հինգ տաղանդ, ու
մէկուն՝ երկու, և մէկուն՝ մէկ, ամէն մէկուն
իր կարողութեանը չափ, ու անմիջապէս ճամ-
16 բայ ելաւ։ Եւ ան որ հինգ տաղանդը առած
էր, գնաց անոնցմով գործ տեսաւ, և ուրիշ
17 հինգ տաղանդ շահեցաւ։ Նմանապէս ան որ
երկուքը առած էր, ուրիշ երկու ալ շահեցաւ։
18 Իսկ ան որ մէկը առած էր, գնաց գետինը փո-
19 րեց, ու իր տէրոջը ստակը պահեց։ Շատ ժա-
մանակէ ետև այն ծառաներուն տէրը եկաւ,
20 և անոնցմէ հաշիւ ուզեց։ Եւ հինգ տաղանդը
առնողը եկաւ՝ ուրիշ հինգ տաղանդ ալ բերաւ,
ու ըսաւ, Տէր, հինգ տաղանդ յանձնեցիր ին-
ծի, ահա ուրիշ հինգ տաղանդ ալ անոնց վրայ
21 շահեցայ։ Ըսաւ անոր իր տէրը, Ապրիս, բարի
ու հաւատարիմ ծառայ. դուն որ քիչ բանին
մէջ հաւատարիմ եղար, քեզ շատ բաներու
վրայ պիտի կեցնեմ. մտիր քու տէրոջդ ուրա-
22 խութեանը մէջ։ Երկու տաղանդը առնողն ալ
եկաւ ու ըսաւ, Տէր, երկու տաղանդ յանձնե-
ցիր ինծի, ահա ուրիշ երկու տաղանդ ալ անոնց
23 վրայ շահեցայ։ Ըսաւ անոր իր տէրը, Ապրիս,
բարի ու հաւատարիմ ծառայ. դուն որ քիչ
բանին մէջ հաւատարիմ եղար, քեզ շատ բա-
ներու վրայ պիտի կեցնեմ. մտիր քու տէրոջդ
24 ուրախութեանը մէջ։ Մէկ տաղանդը առնողն
ալ եկաւ ու ըսաւ, Տէր, գիտէի որ դուն խիստ
մարդ մըն ես, չսերմանած տեղէդ կը հնձես ու
25 չցանած տեղէդ կը ժողվես։ Ուստի վախնալով

գացի քու տաղանդդ գետնին տակ պահեցի.
26 [illegible] ահա քուկդ քեզի։ Պատասխան տուաւ
անոր տէրը ու ըսաւ անոր, Չար եւ ծոյլ ծառայ,
գիտէիր որ չսերմանած տեղէս կը հնձեմ ու
27 չցանած տեղէս կը ժողվեմ. Ուրեմն պէտք էր
քեզի որ իմ ստակս սեղանաւորներուն տայիր,
որպէս զի եկած ատենս շահովը առնէի իմս։
28 Արդ առէք անկէ տաղանդը, ու տասը տաղանդ
29 ունեցողին տուէք։ Վասն զի ամէն ունեցողին
պիտի տրուի, ու պիտի աւելնայ, եւ չունեցողին
30 ունեցածն ալ անկէ պիտի առնուի։ Եւ այդ
անպիտան ծառան դուրսի խաւարը հանեցէք.
հոն պիտի ըլլայ լալ ու ակռաներ կրճտել։
31 Ու երբ Որդին մարդոյ իր փառքովը գայ, եւ
բոլոր *սուրբ հրեշտակները իրեն հետ, այն
32 ատեն իր փառաց աթոռը պիտի նստի. Եւ անոր
առջեւ պիտի ժողվուին բոլոր ազգերը, ու զա-
նոնք իրարմէ պիտի զատէ, ինչպէս հովիւ մը
33 ոչխարները այծերէն կը զատէ. Եւ ոչխարնե-
րը իր աջ կողմը պիտի կայնեցնէ, ու այծերը
ձախ կողմը։
34 Այն ատեն Թագաւորը իր աջ կողմը եղողնե-
րուն պիտի ըսէ, Եկէք, իմ Հօրս օրհնածները,
աշխարհի սկիզբէն ձեզի համար պատրաստուած
35 թագաւորութիւնը ժառանգեցէք. Վասն զի
անօթեցայ, եւ ինծի ուտելիք տուիք. ծարաւե-
ցայ, ու ինծի խմցուցիք. օտարական էի, եւ
36 զիս ներս առիք. Մերկ էի, եւ զիս հագուեցու-
ցիք. հիւանդ էի, ու ինծի տեսնելու եկաք. բանտի
37 մէջ էի, եւ ինծի եկաք։ Այն ատեն արդարնե-
րը անոր պատասխան պիտի տան ու ըսեն, Տէ՛ր,
ե՞րբ քեզ անօթեցած տեսանք ու կերակրե-
38 ցինք, կամ ծարաւած՝ ու խմցուցինք. Ե՞րբ քեզ
օտարական տեսանք եւ ներս առինք, կամ մերկ՝

* Ոմանք չունին

39 ու հագուեցուցինք. Ե՞րբ քեզ հիւանդ կամ
40 բանտի մէջ տեսանք, ու քեզի եկանք։ Եւ Թա-
գաւորը պատասխան տալով պիտի ըսէ անոնց,
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Որովհետեւ այս իմ եղ-
բայրներուս ամէնէն պզտիկներէն մէկուն ըրիք,
ինծի ըրիք։
41 Այն ատեն ձախ կողմը եղողներուն ալ պիտի
ըսէ, Մէկդի գացէք ինծմէ, անիծեալներ, յա-
ւիտենական կրակին մէջ՝ որ պատրաստուած է
42 Սատանայի ու իր հրեշտակներուն։ Վասն զի
անօթեցայ, և ինծի ուտելիք չտուիք. ծարա-
43 ւեցայ, ու ինծի չխմցուցիք. Օտարական էի, և
զիս ներս չառիք. մերկ էի, և զիս չհագուեցու-
ցիք. հիւանդ ու բանտի մէջ էի, և ինծի տես
44 չեկաք։ Այն ատեն անոնք ալ պատասխան պի-
տի *տան ու ըսեն, Տէր, ե՞րբ տեսանք քեզ
անօթեցած, կամ ծարաւած, կամ օտարական,
կամ մերկ, կամ հիւանդ, կամ բանտի մէջ,
45 ու քեզի սպասաւորութիւն չըրինք։ Այն ատեն
պատասխան պիտի տայ անոնց ու ըսէ, Ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի, Որովհետեւ ասոնց ամէնէն
պզտիկներէն մէկուն չըրիք, ինծի ալ չըրիք։
46 Եւ ասոնք պիտի երթան յաւիտենական տան-
ջանքը, իսկ արդարները՝ յաւիտենական կեանքը։

## ԳԼ. ԻԶ

1 Իշխանները խորհուրդ կ'ընեն Քրիստոսի դէմ։ 6 Կին մը իւղով կ'օծէ անոր գլուխը։ 14 Յուդա կը մատնէ զՔրիստոս։ 17 Քրիստոս կ'ուտէ զատիկը. 26 կը սահմանէ իր սուրբ ընթրիքը. 36 աղօթք կ'ընէ պարտէզին մէջ. 47 և մէկ համբուրով մը մատնուած՝ 57 Կայիափայի առջև կը տարուի։ 69 Պետրոս կ'ուրանայ զՔրիստոս։

1 Ու երբ Յիսուս լմնցուց այս բոլոր խօսքերը,
2 ըսաւ իր աշակերտներուն, Գիտէք որ երկու
օրէն ետև զատիկ կ'ըլլայ, և Որդին մարդոյ կը
մատնուի խաչը ելլելու։
3 Այն ատեն քահանայապետները ու դպիրները

*Ոմանք ; տան անոր

և ժողովուրդին ծերերը ժողվուեցան քահանա-
յապետին սրահը, որուն անունը Կայիափա էր.
4 Ու խորհուրդ ըրին որ նենգութեամբ բռնեն
5 Յիսուսը ու մեռցնեն։ Բայց կ'ըսէին թէ Ոչ
տօնին ատենը, որպէս զի ժողովուրդին մէջ
խռովութիւն չըլլայ։
6 Ու երբ Յիսուս Բեթանիա էր, բորոտ Սիմո-
7 նի տունը, Կին մը եկաւ անոր՝ որ ունէր ծան-
րագին իւղի շիշ մը, և թափեց անոր գլխուն
8 վրայ՝ երբ անիկա սեղան նստած էր։ Եւ անոր
աշակերտները տեսնելով՝ գժտուեցան ու ըսին,
9 Ինչո՞ւ այս կորուստը ըլլայ. Քանզի այդ իւղը
կրնար սուղ գնով ծախուիլ, ու աղքատներուն
10 տրուիլ։ Եւ Յիսուս իմանալով՝ ըսաւ անոնց,
Ինչո՞ւ անհանգիստ կ'ընէք կնիկը. քանզի ասի-
11 կա բարի գործ մը գործեց ինծի։ Վասն զի աղ-
քատները ամէն ատեն ձեզի հետ ունիք, բայց
12 զիս ամէն ատեն չունիք։ Վասն զի ասիկա որ
այդ իւղը իմ մարմինիս վրայ թափեց, իմ թա-
13 ղումիս համար ըրաւ։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի
թէ Բոլոր աշխարհի մէջ՝ ուր որ այս աւետա-
րանը քարոզուի, ասոր ըրածն ալ պիտի խօսու-
ուի՝ իրեն յիշատակ ըլլալու համար։
14 Այն ատեն տասուերկուքէն մէկը, որ Յուդա
Իսկարիովտացի կ'ըսուէր, գնաց քահանայա-
15 պետներուն ու ըսաւ, Ի՞նչ կ'ուզէք ինծի տալ,
ու ես ձեզի մատնեմ զանիկա. և անոնք երե-
16 սուն էէչ արծաթ *խոստացան անոր։ Եւ անկէ
ետև պատեհութիւն մը կը փնտռէր, որպէս զի
զանիկա մատնէ անոնց։
17 Եւ բաղարջակերաց առաջին օրը աշակերտնե-
րը Յիսուսի եկան ու անոր ըսին, Ո՞ւր կ'ուզես
որ քեզի պատրաստենք՝ զատիկը ուտելու հա-
18 մար։ Եւ անիկա ըսաւ, Գացէք քաղաքը այս

---

* կամ, կշռեցին

մինչ մարդուն ու ըսէք անոր, Վարդապետը կ՚ը-
սէ, Ժամանակս մօտ է. աշակերտներուս հետ
19 մէկտեղ քու քովդ պիտի ընեմ զատիկը։ Աշա-
կերտներն ալ ըրին ինչպէս Յիսուս իրենց հրա-
ման ըրաւ, ու պատրաստեցին զատիկը։
20 Ու երբ իրիկուն եղաւ, տասուերկուքին հետ
21 սեղան նստաւ։ Եւ քանի որ կ՚ուտէին, ըսաւ,
Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի որ ձեզմէ մէկը զիս պի-
22 տի մատնէ։ Ու շատ տրտմեցան, և անոնցմէ
ամէն մէկը սկսաւ ըսել անոր, Տէր, միթէ ե՞ս
23 եմ։ Անիկա պատասխան տուաւ ու ըսաւ, Ան
որ ինծի հետ իր ձեռքը պնակը խոթեց, նոյնը
24 պիտի մատնէ զիս։ Յիրաւի Որդին մարդոյ կ՚եր-
թայ, ինչպէս գրուած է իրեն համար, բայց
վա՜յ այն մարդուն, որուն ձեռքով Որդին մար-
դոյ կը մատնուի. աղէկ էր այն մարդուն որ
25 ծնած չըլլար։ Պատասխան տուաւ Յուդա որ
զանիկա պիտի մատնէր՝ ու ըսաւ, Վարդապետ,
միթէ ե՞ս եմ. ըսաւ անոր, Դուն ըսիր։
26 Եւ քանի որ անոնք կ՚ուտէին, Յիսուս հաց
առաւ, օրհնեց ու կտրեց, և տուաւ աշակերտա-
ներուն ու ըսաւ, Առէք, կերէք, այս է իմ
27 մարմինս։ Եւ գաւաթը առաւ, գոհացաւ, ու
տուաւ անոնց և ըսաւ, Ամէնքդ ալ խմեցէք ա-
28 սկէ. Վասն զի ասիկա է իմ արիւնս նոր ուխ-
տի, որ շատերու համար կը թափուի մեղքերու
29 թողութեան համար։ Բայց կ՚ըսեմ ձեզի, Ասկէ
ետև որթին բերքէն ալ պիտի չխմեմ մինչև
այն օրը՝ երբ ձեզի հետ զանիկա նոր խմեմ իմ
Հօրս թագաւորութեանը մէջ։
30 Եւ օրհնութիւն մը երգելէ ետև Ձիթենեաց
31 լեռը ելան։ Այն ատեն Յիսուս ըսաւ անոնց,
Դուք ամէնքդ այս գիշեր իմ վրայովս պիտի գայ-
թակղիք. վասն զի գրուած է թէ Հովիւը պի-
տի զարնեմ, ու հօտին ոչխարները պիտի ցրուին։

32 Բայց յարութիւն առնելէս ետեւ ձեզմէ առաջ
33 Գալիլեա պիտի երթամ։ Պատասխան տուաւ
Պետրոս ու ըսաւ անոր, Թէպէտ ամէնն ալ քու
վրայով գայթակղին, բայց ես բնաւ պիտի
34 չգայթակղիմ։ Ըսաւ անոր Յիսուս, Ճշմարիտ
կ'ըսեմ քեզի, Այս գիշեր դեռ հաւը չխօսած՝
35 երեք անգամ զիս պիտի ուրանաս։ Ըսաւ անոր
Պետրոս, Թէեւ քեզի հետ մեռնելու ալ ըլլամ,
բնաւ քեզ պիտի չուրանամ. այսպէս կ'ըսէին
նաեւ ամէն աշակերտները։
36 Այն ատեն Յիսուս անոնց հետ տեղ մը եկաւ
որուն անունը Գեթսեմանի էր, ու ըսաւ աշա-
կերտներուն, Հոս նստեցէք մինչեւ որ ես եր-
37 թամ հոն աղօթք ընեմ։ Եւ իրեն հետ առնելով
Պետրոսը ու Զեբեդէոսի երկու որդիները, սկը-
38 սաւ տրտմիլ ու վշտանալ։ Այն ատեն ըսաւ
անոնց, Իմ անձս մեռնելու չափ տրտում է.
39 Հոս կեցէք եւ ինծի հետ արթուն մնացէք։ Ու
քիչ մը առաջ երթալով՝ իր երեսին վրայ ինկաւ
եւ աղօթք ըրաւ՝ ըսելով, Ով Հայր իմ, եթէ
կարելի է, թող այս գաւաթը ինծմէ անցնի.
բայց ոչ թէ ինչպէս ես կ'ուզեմ, հապա ինչ-
40 պէս դուն կ'ուզես։ Եւ եկաւ աշակերտներուն ու
զանոնք քնացած գտաւ, եւ ըսաւ Պետրոսի,
Այսպէս մէկ ժամ ալ չկրցա՞ք ինծի հետ ար-
41 թուն կենալ։ Արթուն կեցէք եւ աղօթք ըրէք,
որպէս զի փորձութեան մէջ չմտնէք. հոգին
42 յօժար է, բայց մարմինը տկար։ Դարձեալ երկ-
րորդ անգամ գնաց աղօթք ըրաւ՝ ըսելով, Ով
Հայր իմ, եթէ անկարելի է որ այս գաւաթը
ինծմէ անցնի առանց անոր խմելուս, թող քու
43 կամքդ ըլլայ։ Եւ եկաւ զանոնք նորէն քնացած
44 գտաւ, վասն զի աչքերնին ծանրացած էր։ Եւ
թողուց զանոնք, ու նորէն գնաց երրորդ ան-
45 գամ աղօթք ըրաւ՝ նոյն խօսքը ըսելով։ Այն

ատեն եկաւ իր աշակերտներուն ու ըսաւ անոնց,
Ասկէ ետև քնացէք ու հանգչեցէք. ահա ժա-
մը հասաւ, և Որդին մարդոյ մեղաւորներուն
46 ձեռքը կը մատնուի։ Ելէք ասկէ երթանք. ահա
մօտեցաւ անիկա որ զիս պիտի մատնէ։
47 Եւ դեռ անիկա գայս որ կը խօսէր, ահա Յու-
դա, տասներկուքէն մէկը, եկաւ, և իրեն հետ
շատ բազմութիւն՝ սուրերով ու բիրերով, քա-
հանայապետներէն և ժողովուրդին ծերերէն։
48 Եւ զանիկա մատնողը անոնց նշան մը տուեր էր՝
ըսելով, Ով որ ես համբուրեմ, ան է, բռնեցէք
49 զանիկա։ Եւ շուտ մը Յիսուսի մօտենալով՝
ըսաւ, Ողջոյն քեզ, վարդապետ, ու համբու-
50 րեց զանիկա։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Ընկեր,
ինչո՞ւ համար եկար դուն. այն ատեն մօտեցան,
ձեռք զարկին Յիսուսի, ու բռնեցին զանիկա։
51 Եւ ահա Յիսուսի հետ եղողներէն մէկը ձեռ-
քը երկնցուց և իր սուրը հանելով՝ զարկաւ
քահանայապետին ծառային, և անոր ականջը
52 մէկդի հանեց։ Այն ատեն Յիսուս ըսաւ անոր,
Սուրդ իր տեղը դարձուր, վասն զի ամէն սուր
53 առնողները սրով պիտի կորսուին։ Կը կարծես
թէ չե՞մ կրնար հիմա իմ Հօրս աղաչել, և ին-
ծի հասցնէ տասներկու *գունդէն աւելի հրեշ-
54 տակներ։ Բայց ի՞նչպէս պիտի կատարուին գիր-
քերը, թէ պէտք է այսպէս ըլլալ։
55 Այն ատեն Յիսուս ըսաւ այն բազմութեանը,
Իբր թէ աւազակի՞ վրայ ելաք սուրերով ու
բիրերով զիս բռնելու, ամէն օր տաճարին մէջ
ձեզի հետ կը նստէի ու կը սորվեցնէի, և զիս
56 չբռնեցիք։ Բայց այս ամէն բաները եղան, որ-
պէս զի կատարուին մարգարէներուն գիրքերը։
Այն ատեն բոլոր աշակերտները թողուցին զա-
նիկա ու փախան։

*Յուն. լեգէոնէն

57 *Եւ անոնք որ Յիսուսը բռնեցին, Կայիափա*
*քահանայապետին տարին, ուր դպիրները ու*
58 *ծերերը ժողվուեր էին։ Եւ Պետրոս հեռուանց*
*անոր ետեւէն գնաց մինչեւ քահանայապետին*
*գաւիթը, ու ներս մտաւ սպասաւորներուն հետ*
59 *նստաւ որպէս զի վերջը տեսնէ։ Իսկ քահա-*
*նայապետները ու ծերերը և բոլոր ժողովքը*
*Յիսուսի դէմ սուտ վկայութիւն մը կը փնտռ-*
60 *ուէին, որպէս զի զանիկա մեռցնեն. Ու չգտան.*
*թէեւ շատ սուտ վկաներ ալ եկան, բայց չգտան.*
61 *ետքը երկու սուտ վկայ եկան, Ու ըսին թէ*
*Ասիկա ըսաւ, Ես կրնամ Աստուծոյ տաճարը*
*քակել, և զանիկա երեք օրուան մէջ շինել։*
62 *Եւ քահանայապետը ոտք ելլելով ըսաւ անոր,*
*Պատասխան մը չե՞ս տար. ի՞նչ կը վկայեն ասոնք*
63 *քեզի դէմ։ Եւ Յիսուս լուռ կը կենար։ Պա-*
*տասխան տուաւ քահանայապետը ու ըսաւ*
*անոր, Կենդանի Աստուծով քեզ կ'երդմնցնեմ*
*որ մեզի ըսես, թէ դո՞ւն ես Քրիստոս Որդին*
64 *Աստուծոյ։ Ըսաւ անոր Յիսուս, Դուն ըսիր.*
*բայց կ'ըսեմ ձեզի, Ասկէ ետեւ պիտի տեսնէք*
*Որդին մարդոյ Զօրութեան աջ կողմը նստած,*
65 *ու երկնքի ամպերուն վրայ եկած։ Այն ատեն*
*քահանայապետը իր հանդերձները պատռեց ու*
*ըսաւ, Հայհոյութիւն ըրաւ. ալ ի՞նչ պէտք են*
*մեզի վկաներ. ահա հիմա լսեցիք անոր հայ-*
66 *հոյութիւնը. Ձեզի ի՞նչպէս կ'երեւնայ. անոնք*
*պատասխան տուին ու ըսին, Մահապարտ է։*
67 *Այն ատեն անոր երեսը թքին, ու բռունցով*
*ծեծեցին զանիկա. անոնք ալ ապտակ զարնե-*
68 *լով ըսին, Մարգարէացիր մեզի, դուն Քրիս-*
*տոս, ո՞վ է ան որ քեզի զարկաւ։*
69 *Իսկ Պետրոս դուրսը գաւիթը նստեր էր, և*
*աղախին մը եկաւ անոր ու ըսաւ, Դուն ալ*
70 *Գալիլեացի Յիսուսի հետ էիր։ Բայց անիկա*

ամէնուն առջև ուրացաւ ու ըսաւ, Չեմ գի-
71 տեր դուն ի՛նչ կը խօսիս։ Ու երբ դուռը ելաւ,
ուրիշ աղախին մը զանիկա տեսաւ, և հոն եղող-
ներուն ըսաւ, Ասիկա ալ Յիսուս Նազովրեցիի
72 հետ էր։ Եւ Պետրոս նորէն երդում ընելով ու-
րացաւ, թէ Ես այն մարդը չեմ ճանչնար։
73 Ու քիչ մը ատենէն ետև հոն եղողները եկան
և ըսին Պետրոսի, Արդարև դուն ալ անոնցմէ
ես, վասն զի քու զրուցուածքդ ալ քեզ յայտնի
74 կ՚ընէ։ Այն ատեն սկսաւ անիծել ու երդում
ընել՝ ըսելով թէ Ես այն մարդը չեմ ճանչնար. և
75 իսկոյն հաւը խօսեցաւ։ Եւ Պետրոս միտքը բե-
րաւ Յիսուսի խօսքը զոր իրեն ըսեր էր թէ
Դեռ հաւը չխօսած՝ երեք անգամ պիտի ուրա-
նաս զիս. ու դուրս ելլելով դառնապէս լացաւ։

## ԳԼ. ԻԷ

1 Քրիստոս Պիղատոսի ձեռքը կը տրուի կապուած։ 3 Յուդա խեղդամահ կ՚ըլլայ։ 19 Պիղատոս իր կնոջմէն խրատուած՝ 24 իր ձեռքերը կը լուայ, 26 ու Բարաբբան կ՚արձակէ։ 29 Քրիստոս փուշերով կը պսակուի, 34 կը խաչուի, 39 կը նախատուի, 50 կը մեռնի ու կը թաղուի։ 66 Քրիստոսի գերեզմանը Հրեաները կը կնքեն, ու պահապան զինուորներ կը դնեն։

1 Երբ առտու եղաւ, բոլոր քահանայապետ-
ները ու ժողովուրդին ծերերը Յիսուսի դէմ
2 խորհուրդ ըրին որ զանիկա մեռցնեն։ Եւ կա-
պելով զանիկա տարին, ու Պոնտացի Պիղատոս
կուսակալին ձեռքը տուին։
3 Այն ատեն Յուդա, որ զանիկա մատնեց,
տեսնելով թէ դատապարտուեցաւ, զղջի
եկաւ, ու երեսուն արծաթը ետ դարձուց քա-
4 հանայապետներուն և ծերերուն, Ու ըսաւ,
Մեղայ, որ անմեղ արիւն մատնեցի. և անոնք
5 ըսին, Մեզի ի՞նչ, դուն նայէ։ Եւ արծաթը
տաճարին մէջ ձգեց ու դուրս ելաւ, և գնաց
6 ինքզինք խեղդեց։ Քահանայապետներն ալ ար-
ծաթը առնելով՝ ըսին, Արժան չէ ատիկա

*կորբանին մէջ՝ դնել, վասն զի արեան գին է։
7 Ուստի խորհուրդ ըրին, և անով բրուտին ար-
տը ծախու առին՝ օտարներու գերեզմանատուն
8 ըլլալու համար։ Այս պատճառաւ այն արտը
9 Արեան արտ կոչուեցաւ մինչև այսօր։ Այն ատեն
կատարուեցաւ †Երեմիա մարգարէին ձեռքով
ըսուած խօսքը, Եւ առին երեսուն արծաթը,
գին կարուածին գինը, զոր Իսրայէլի որդիներ-
10 րէն ոմանք գին կտրեցին, Ու տուին զանոնք բրու-
տին արտին, ինչպէս ինծի հրաման ըրաւ Տէրը։
11 Եւ Յիսուս կուսակալին առջև կայնեցաւ. և
կուսակալը հարցուց անոր ու ըսաւ, Հրէից
թագաւորը դո՞ւն ես։ Եւ Յիսուս ըսաւ անոր,
12 Դուն կ'ըսես։ Ու քահանայապետներէն և ծե-
րերէն ամբաստանուած ատեն բնաւ պատաս-
13 խան մը չտուաւ։ Այն ատեն Պիղատոս ըսաւ
անոր, Չե՞ս լսեր թէ որչափ քեզի դէմ կը
14 վկայեն ասոնք։ Եւ անոր բան մը պատասխան
չտուաւ, մինչև շատ զարմացաւ կուսակալը։
15 Բայց կուսակալը սովորութիւն ունէր որ տօ-
նին ատենը կապուած մը արձակէր ժողովուր-
16 դին, ով որ ուզէին։ Այն ատեն Բարաբբա
17 անունով երևելի բանտարկեալ մը ունէին։ Երբ
ժողվուեցան, ըսաւ անոնց Պիղատոս, Ո՞ր կ'ու-
զէք որ ձեզի արձակեմ. Բարաբբա՞ն, թէ Յի-
18 սուսը՝ որ Քրիստոս կ'ըսուի. Քանզի գիտէր
թէ նախանձի համար մատնեցին զանիկա։
19 Ու երբ անիկա ատեանը նստեր էր, անոր
կինը մէկը ղրկեց անոր ու ըսաւ, Դուն այն ար-
դարին հետ բան մը չունենաս, վասն զի այսօր
երազիս մէջ շատ գլխուածներ անցան գլխէս
անոր համար։
20 Բայց քահանայապետները և ծերերը ժողո-
վուրդը համոզեցին որ Բարաբբան խնդրեն ու

*Այսինքն՝ տաճարին գանձանակը †Ոմանք ըսեն Երեմիա

21 Յիսուսը կորսնցնեն։ Պատասխան տուաւ կու-
սակալը ու ըսաւ անոնց, Այս երկուքէն ո՞րը
կ'ուզէք որ ձեզի արձակեմ. և անոնք ըսին,
22 Բարաբբան։ Ըսաւ անոնց Պիղատոս, Հապա ի՞նչ
23 ընեմ Յիսուսը, որ Քրիստոս կ'ըսուի։ Ամէնն
ալ ըսին անոր, Թող խաչուի. և կուսակալը
ըսաւ, Բայց ի՞նչ չար գործ ըրաւ. և անոնք ևս
առաւել կ'աղաղակէին ու կ'ըսէին, Թող խաչ-
24 ուի։ Եւ Պիղատոս տեսնելով որ օգուտ մը չըլ-
լար, հապա ա՛լ աւելի խռովութիւն կ'ըլլայ,
ջուր առաւ, ձեռքերը լուաց ժողովուրդին առ-
ջև ու ըսաւ, Ես այդ արդարին արիւնէն ան-
25 պարտ եմ. դուք մտածեցէք։ Եւ բոլոր ժողո-
վուրդը պատասխան տալով՝ ըսաւ, Անոր արիւ-
նը մեր վրայ ու մեր որդիներուն վրայ ըլլայ։
26 Այն ատեն Բարաբբան արձակեց անոնց, և
Յիսուսը ծեծելով անոնց ձեռքը տուաւ որ-
պէս զի խաչուի։
27 Այն ատեն կուսակալին զինուորները պալա-
տին ներսը առին Յիսուսը, ու բոլոր զինուորներուն
28 գունդը անոր վրայ ժողվեցին. Եւ զանիկա մեր-
կացնելով կարմիր վերարկու մը հագցուցին
29 անոր։ Ու փուշերէ պսակ մը հիւսելով՝ անոր
գլուխը դրին, ու եղէգ մը անոր աջ ձեռքը. և
անոր առջև ծունկի վրայ գալով ծաղր կ'ընէին
զանիկա, ու կ'ըսէին, Ողջոյն քեզ, Հրէից թա-
30 գաւոր։ Եւ թքնելով անոր վրայ՝ եղէգը կ'առ-
31 նէին ու անոր գլուխը կը ծեծէին։ Ու երբ
ծաղր ըրին զանիկա, վերարկուն վրայէն հանե-
ցին ու իր հանդերձները հագցուցին անոր և
տարին զանիկա խաչը հանելու։
32 Եւ դուրս ելլելով Կիւրենացի մարդ մը գտան
Սիմոն անունով, զանիկա պահակ բռնեցին
33 որպէս զի անոր խաչը վերցնէ։ Ու եկան
Գողգոթա ըսուած տեղը, որ է գանկի տեղ.

34 Եւ լեղիով խառնուած քացախ տուին անոր
որպէս զի խմէ․ ու երբ համը առաւ, խմել չէր
35 ուզեր։ Եւ զանիկա խաչը հանելով, անոր հան-
դերձները վիճակով բաժնեցին․ [որպէս զի մար-
գարէին բառածը կատարուի, Իմ հանդերձ-
ները իրենց մէջ բաժնեցին, և իմ պատմուճա-
36 նիս վրայ վիճակ ձգեցին։] Ու նստեր զանիկա
37 կը պահէին։ Եւ անոր գլխուն վրայ իր յան-
ցանքը գրուած դրին, Թէ Ասիկա է Յիսուս,
38 Հրէից թագաւորը։ Այն ատեն անոր հետ եր-
կու աւազակ խաչուեցան, մէկը անոր աջ կող-
մէն, ու մէկը ձախ կողմէն։
39 Եւ անոնք որ կ՚անցնէին՝ կը հայհոյէին անոր,
40 գլուխնին կը շարժէին, Ու կ՚ըսէին, Դուն որ
տաճարը կը քակէիր և երեք օրուան մէջ կը
շինէիր, ինքզինքդ ազատէ․ եթէ Աստուծոյ
41 Որդին ես, իջիր այդ խաչէն։ Նոյնպէս ալ քա-
հանայապետները դպիրներուն ու ծերերուն
42 հետ ծաղր ընելով՝ կ՚ըսէին, Ուրիշները ազա-
տեց, ինքզինք չկրնար ազատել․ եթէ Իսրայէլի
թագաւոր է, թող հիմա իջնէ խաչէն, և իրեն
43 հաւատանք։ Աստուծոյ յուսացեր է, հիմա թող
փրկէ զանիկա՝ եթէ կ՚ուզէ զանիկա․ վասն զի
44 ըսաւ, Թէ Ես Որդի Աստուծոյ եմ։ Իրեն հետ
խաչուած աւազակներն ալ նոյնպէս կը նախա-
տէին զանիկա։
45 Եւ վեցերորդ ժամէն մինչև իններորդ ժամը
46 բոլոր երկրին վրայ խաւար եղաւ։ Եւ ժամը
իննին ատենները Յիսուս մեծ ձայնով աղաղա-
կեց ու ըսաւ, Էլի, Էլի, լա՞մա սաբաքթանի․
որ ըսել է՝ Աստուած իմ, Աստուած իմ, ինչո՞ւ
47 զիս թողուցիր․ Անոնցմէ ոմանք, որ հոն կայ-
ներ էին, երբ լսեցին՝ կ՚ըսէին, Ասիկա Եղիան
48 կը կանչէ։ Եւ շուտ մը անոնցմէ մէկը վազեց
սպունգ մը առաւ՝ քացախով լեցուց, ու եղեգի

49 մը անցընելով տուաւ անոր որպէս զի խմէ ։ Ու
միւսները կ'ըսէին, Թող տուր, տեսնենք թէ
Եղիա կու գա՞յ ատիկա ազատելու ։
50 Եւ Յիսուս դարձեալ մեծ ձայնով աղաղա-
կեց, ու հոգին աւանդեց ։
51 Եւ ահա տաճարին վարագոյրը վերէն վար
երկուքի ճեղքուեցաւ, ու երկիր շարժեցաւ,
52 և քարերը պատռեցան ։ Եւ գերեզմանները
բացուեցան, ու շատ սուրբ ննջեցեալներու մար-
53 միններ յարութիւն առին, Եւ գերեզմաններէն
ելան անոր յարութենէն ետև, մտան սուրբ
քաղաքը ու շատերու երևցան ։
54 Բայց հարիւրապետը և անոր հետ Յիսուսը
պահողները, երբ տեսան երկրաշարժը ու եղած
բաները, շատ վախցան՝ ու ըսին, Արդարև ասի-
կա Որդի Աստուծոյ էր ։
55 Եւ հոն շատ կիներ կային որոնք հեռուէն
կը նայէին, որոնք Գալիլեայէ Յիսուսի ետևէն
56 եկան իրեն ծառայութիւն ընելու. Որոնց մէջ
էր Մարիամ Մագդաղենացի և Յակոբոսի ու
Յովսէսի մայրը Մարիամ և Զեբեդէոսի որդի-
ներուն մայրը ։
57 Ու երբ իրիկուն եղաւ, Արիմաթիայէ հա-
րուստ մարդ մը եկաւ, որուն անունը Յովսէփ
58 էր, որ ինքն ալ Յիսուսի աշակերտ էր ։ Ասիկա
Պիղատոսի քով երթալով՝ Յիսուսի մարմինը
խնդրեց. այն ատեն Պիղատոս հրաման ըրաւ
59 որ մարմինը տրուի ։ Եւ Յովսէփ մարմինը առաւ,
60 մաքուր կտաւով պատեց, Ու դրաւ իր նոր
գերեզմանին մէջ՝ զոր քարէ փորած էր. և գե-
րեզմանին դուռը մեծ քար մը գլորելով գնաց ։
61 Եւ հոն էր Մարիամ Մագդաղենացի և միւս
Մարիամը՝ գերեզմանին դիմաց նստած ։
62 Եւ հետևեալ օրը, որ ուրբաթէն ետև էր, քա-
հանայապետները ու փարիսեցիները ժողվուե-

63 յան Պիղատոսի քով, Ու ըսին, Տէր, կը յիշենք
որ այն մոլորեցուցիչը իր կենդանութեան ատեն
կ'ըսէր թէ Երեք օրէն ետեւ յարութիւն կ'առ-
64 նեմ։ Ուստի հրաման ըրէ որ մինչեւ երրորդ
օրը գերեզմանին զգուշութիւն ընեն. չըլլայ թէ
իր աշակերտները գիշերով գան զանիկա գող-
նան, և ժողովուրդին ըսեն թէ Մեռելներէն
յարութիւն առաւ. ու ետքի մոլորութիւնը
65 առաջինէն գէշ ըլլայ։ Պիղատոս անոնց ըսաւ,
Դուք ունիք պահապան զինուորներ. գացէք,
66 զգուշութիւն ըրէք ինչպէս որ գիտէք։ Անոնք
ալ գացին գերեզմանին զգուշութիւն ըրին, քա-
րը կնքելով ու պահապան զինուորներ դնելով։

## ԳԼ. ԻԸ

1 Հրեշտակը կ'աւետէ կիներուն Քրիստոսի յարութիւնը։ 9 Քրիստոս ինք կ'երեւնայ անոնց։ 11 Քահանայապետները ստակ կու տան զինուորներուն որպէս զի ըսեն թէ անիկա իր գերեզմանէն գողցուեցաւ։ 16 Քրիստոս իր աշակերտներուն կ'երեւնայ, 19 և կը ղրկէ զանոնք բոլոր հեթանոսները աշակերտելու և մկրտելու։

1 Եւ շաբաթ գիշերը երբ մէկշաբթին կը լուս-
նար, եկաւ Մարիամ Մագդաղենացին ու միւս
2 Մարիամը գերեզմանը տեսնելու։ Եւ ահա մեծ
երկրաշարժ մը եղաւ, վասն զի Տէրոջը հրեշ-
տակը երկինքէն իջնելով, գնաց դուռէն մէկդի
3 գլորեց քարը, ու անոր վրայ նստաւ։ Եւ անոր
տեսքը փայլակի պէս էր, ու անոր հանդերձ-
4 ները՝ ձիւնի պէս ճերմակ։ Եւ անոր վախէն
պահապանները խռովեցան, ու մեռածի պէս
5 եղան։ Պատասխան տուաւ հրեշտակը ու ըսաւ
կիներուն, Դուք մի վախնաք, քանզի գիտեմ
6 որ կը փնտռէք Յիսուսը, որ խաչուեցաւ. Անի-
կա հոս չէ, վասն զի յարութիւն առաւ, ինչ-
պէս ըսաւ. եկէք տեսէք այն տեղը, ուր Տէրը
7 պառկած էր։ Եւ շուտ մը գացէք անոր աշա-
կերտներուն ըսէք թէ Անիկա մեռելներէն
յարութիւն առաւ, և ահա ձեզմէ առաջ Գա-
լիլեա կ'երթայ, հոն պիտի տեսնէք զանիկա.

8 ահա ձեզի զրուցեցի։ Եւ անոնք շուտ մը գե-
րեզմանէն ելան վախով ու մեծ ուրախութիւ-
նով, և կը վազէին աշակերտներուն պատմել։
9 Ու երբ կ'երթային անոր աշակերտներուն
պատմել, ահա Յիսուս անոնց դէմ ելաւ ու
ըսաւ, Ողջոյն ձեզ։ Եւ անոնք մօտենալով անոր
ոտքերը բռնեցին, ու երկրպագութիւն ըրին
10 անոր։ Այն ատեն Յիսուս ըսաւ անոնց, Մի վախ-
նաք, գացէք իմ եղբայրներուս ըսէք որ Գա-
լիլեա երթան, ու հոն զիս պիտի տեսնեն։
11 Երբ անոնք կ'երթային, ահա պահապան զին-
ուորներէն մէկ քանին քաղաքը եկան, ու քա-
հանայապետներուն պատմեցին բոլոր եղած բա-
12 ները, Եւ անոնք ծերերուն հետ մէկտեղ ժող-
վուելով ու խորհուրդ ընելով, շատ ստակ տուին
13 զինուորներուն, Ու ըսին, Ըսէք թէ Անոր աշա-
կերտները գիշերով եկան զանիկա գողցան, երբ
14 մենք կը քնանայինք։ Եւ եթէ այդ բանը կուսա-
կալին ականջը հասնի, մենք զանիկա կը հաճեցը-
15 նենք, և ձեզ *ապահով կ'ընենք։ Անոնք ալ ստակը
առին, ու սորվածնուն պէս ըրին. և այս ձայնը
Հրեաներուն մէջ տարածուեցաւ մինչև այսօր։
16 Իսկ տասնըմէկ աշակերտները գացին Գալիլ-
եա, այն լեռը ուր Յիսուս իրենց որոշեր էր։
17 Ու երբ զանիկա տեսան, երկրպագութիւն ըրին
18 անոր, բայց ոմանք տարակուսեցան։ Եւ Յիսուս
մօտենալով խօսեցաւ անոնց ու ըսաւ, Ամէն
իշխանութիւն ինծի տրուեցաւ երկինքի ու երկ-
19 րի մէջ։ Ուրեմն գացէք բոլոր ազգերը աշա-
կերտեցէք, մկրտեցէք զանոնք յանուն Հօր և
20 Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. Սորվեցուցէք անոնց
որ այն ամէն բաները պահեն՝ ինչ որ ես ձեզի
պատուիրեցի. և ահա ամէն օր ես ձեզի հետ
եմ մինչև աշխարհիս վերջը։ Ամէն։

*Յուն. անհոգ

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ

---

## ԳԼՈՒԽ Ա

*1 Յովհաննէս մկրտչին պաշտօնը։ 9 Յիսուս կը մկրտուի. 12 կը փորձուի. 14 կը քարոզէ. 16 իրեն հետեւելու կը կանչէ Պետրոսը, Անդրէասը, Յակոբոսը եւ Յովհաննէսը. 23 կը բժշկէ դիւահար մը, 29 Պետրոսի զոքանչը, 32 ու շատ հիւանդներ. 41 եւ կը մաքրէ բորոտը։*

1 Աստուծոյ Որդւոյն Յիսուսի Քրիստոսի աւե-
2 տարանին սկիզբը։ Ինչպէս մարգարէներուն մէջ
գրուած է. Ահա ես իմ հրեշտակս կը ղրկեմ
քու երեսիդ առջեւէն, որ քու ճամբադ պիտի
3 պատրաստէ քու առջեւդ։ Անապատին մէջ
կանչողին ձայնը, Տէրոջը ճամբան պատրաստե-
4 ցէք, անոր շաւիղները շիտկեցէք։ Յովհաննէս
անապատին մէջ կը մկրտէր, եւ ապաշխարու-
թեան մկրտութիւն կը քարոզէր՝ մեղքերու
5 թողութեան համար։ Եւ բոլոր Հրէաստանի
երկիրը ու Երուսաղեմացիք կ'երթային անոր,
ու ամէնքը կը մկրտուէին անկէ Յորդանան գե-
6 տին մէջ՝ մեղքերնին խոստովանելով։ Եւ Յով-
հաննէս հագեր էր ուղտի մազ, եւ իր մէջքը
կաշիէ գօտի. ու իր կերակուրը մարախ ու վայ-
7 րենի մեղր էր։ Եւ կը քարոզէր ու կ'ըսէր, Իմ
ետեւէս ինծմէ զօրաւորը կու գայ, որ ես ար-
ժանի չեմ ծռելու եւ անոր կօշիկներուն կա-
8 պերը արձակելու։ Ես ձեզ ջրով մկրտեցի, բայց
անիկա ձեզ Սուրբ Հոգիով պիտի մկրտէ։
9 Ու եղաւ որ այն օրերը Յիսուս Գալիլեայի
Նազարէթէն եկաւ, ու Յովհաննէսէ մկրտուե-
10 ցաւ Յորդանանու մէջ։ Եւ շուտ մը ջուրէն
ելլելուն պէս երկինքը բացուած տեսաւ, եւ

Հոգին աղաւնիի պէս՝ որ իր վրայ կ'իջնէր։
11 Եւ ձայն մը եկաւ երկինքէն, որ կ'ըսէր, Դուն ես
իմ սիրելի Որդիս, որու հաճեր եմ։
12 Եւ շուտ մը Հոգին անապատը հանեց զանի–
13 կա։ Ու քառասուն օր հոն էր անապատին մէջ՝
Սատանայէ փորձուած, և գազաններուն հետ
էր, ու հրեշտակները իրեն սպասաւորութիւն
կ'ընէին։
14 Եւ Յովհաննէսի մատնուելէն ետև Յիսուս
Գալիլեա եկաւ, Աստուծոյ արքայութեան աւե–
15 տարանը կը քարոզէր ու կ'ըսէր, Թէ ժամա–
նակը լրացած է, և Աստուծոյ թագաւորու–
թիւնը մօտեցած է. ապաշխարեցէք ու աւե–
տարանին հաւատացէք։
16 Երբ Գալիլեացւոց ծովուն քովերը կը պտը–
տէր, տեսաւ Սիմոնը ու Սիմոնի եղբայրը Անդ–
րէասը, ծովը ուռկան ձգած, վասն զի ձկնորս
17 էին։ Եւ Յիսուս ըսաւ անոնց, Իմ ետևէս եկէք,
ու ես ձեզ ընեմ որ մարդու որսորդ ըլլաք։
18 Անոնք ալ շուտ մը իրենց ուռկանները թողու–
19 ցին ու անոր ետևէն գացին։ Եւ անկէ քիչ մը
առաջ երթալով՝ տեսաւ Զեբեդեան Յակոբոսը
ու անոր եղբայրը Յովհաննէսը, որ անոնք ալ
20 նաւին մէջ ուռկանները կը կարկատէին։ Եւ շուտ
մը զանոնք կանչեց. անոնք ալ իրենց հայրը
Զեբեդէոսը վարձկաններուն հետ նաւին մէջ
ձգելով՝ անոր ետևէն գացին։
21 Ու մտան Կափառնայում. և իսկոյն շաբաթ
22 օրը ժողովարանը մտնելով՝ կը սորվեցնէր։ Եւ կը
զարմանային անոր վարդապետութեանը վրայ,
վասն զի իշխանութիւն ունեցողի մը պէս կը
սորվեցնէր անոնց, ու ոչ թէ դպիրներուն պէս։
23 Եւ անոնց ժողովարանին մէջ մարդ մը կար, որ
պիղծ ոգի ունէր իր ներսիդին, ու աղաղակեց՝
24 ըսելով, Թող տուր, դուն մեզի հետ ի՞նչ բան

ունիս, Յիսուս Նազովրեցի. միթէ մեզ կոր-
սնցնելո՞ւ եկար. գիտեմ քեզ՝ ո՛վ ես. Աստու-
25 ծոյ Սուրբը։ Եւ Յիսուս սաստեց անոր՝ ըսելով,
26 Պապանձէ՛ ու ել անկէ։ Եւ պիղծ ոգին սաս-
տիկ ցնցեց զանիկա, ու մեծ ձայնով մը աղա-
27 ղակեց ու անկէ ելաւ։ Եւ ամէնքը զարմացան,
այնպէս որ իրարու հարցուփորձ կ'ընէին ու
կ'ըսէին, Այս ի՞նչ է. ի՞նչ նոր վարդապետու-
թիւն է այս, որ իշխանութեամբ պիղծ ոգինե-
րուն ալ կը հրամայէ, ու իրեն կը հնազանդին։
28 Եւ շուտ մը իր համբաւը Գալիլեացւոց ամէն
կողմերը ելաւ։
29 Եւ շուտ մը ժողովարանէն ելլելով՝ Սիմոնի
ու Անդրէասի տունը մտան Յակոբոսի և Յով-
30 հաննէսի հետ։ Ու Սիմոնի զոքանչը ջերմէ բռ-
նուած՝ պառկած էր, և շուտ մը անոր համար
31 ըսին իրեն։ Ու Յիսուս մօտեցաւ, անոր ձեռքէն
բռնեց, վերցուց զանիկա. և իսկոյն ջերմը
թող տուաւ զանիկա, ու անոնց սպասաւորու-
թիւն կ'ընէր։
32 Ու երբ իրիկուն եղաւ, արեգակին մտած
ատենը բոլոր հիւանդները և դիւահարները
33 իրեն կը բերէին։ Ու բոլոր քաղաքը դուռը
34 ժողվուեր էր։ Եւ շատ հիւանդներ կերպ կերպ
ցաւերէ՝ բժշկեց ու շատ դևեր հանեց. ու
դևերուն խօսիլ չէր տար, վասն զի զինք կը
ճանչնային։
35 Եւ առաւօտուն շատ կանուխ ելլելով դեռ
չլուսցած՝ ելաւ ու գնաց անապատ տեղ մը, և
36 հոն աղօթք կ'ընէր։ Ու Սիմոն և իրեն հետ եղող-
37 ները գացին անոր ետևէն։ Ու երբ գտան զա-
նիկա, ըսին անոր թէ Ամէնքը քեզ կը փնտռեն։
38 Եւ ըսաւ անոնց, Եկէք երթանք մերձակայ գիւ-
ղաքաղաքները, որպէս զի հոն ալ քարոզեմ,
39 քանզի այս բանին համար ելեր եմ։ Եւ անոնց

ժողովարաններուն մէջ կը քարոզէր բոլոր Գա-
լիլեայի մէջ, ու դեւեր կը հանէր։
40 Բորոտ մը եկաւ անոր, կ'աղաչէր, ծունկ կը
դնէր ու կ'ըսէր անոր, Եթէ ուզես, կրնաս զիս
41 մաքրել։ Եւ Յիսուս խղճալով՝ ձեռքը երկնցուց,
դպաւ անոր ու ըսաւ անոր, Կ'ուզեմ, մաքրուէ։
42 Ու երբ այս ըսաւ անոր, շուտ մը բորոտութիւ-
43 նը անկէ գնաց, ու մաքրուեցաւ։ Եւ սաստիկ
պատուէր տալով անոր՝ շուտ մը դուրս հանեց
44 զանիկա, ու ըսաւ անոր, Զգուշ կեցիր, մարդո՛ւ
բան մը չըսես, հապա գնա քեզ քահանային
ցուցուր, և տուր քու մաքրուելուդ ընծան, զոր
Մովսէս պատուիրեց՝ անոնց վկայութիւն ըլլա-
45 լու համար։ Բայց անիկա ելլելով՝ սկսաւ շատ
հրատարակել ու բանը տարածել, այնպէս որ
ա՛լ ինք չէր կրնար յայտնի կերպով քաղաք մը
մտնել. հապա դուրս անապատ տեղեր էր, և
ամէն կողմերէն իրեն կու գային։

## ԳԼ. Բ

1 Քրիստոս կը բժշկէ անդամալոյծ մը. 14 իրեն հետեւելու կը կանչէ Մատթէոս մաքսաւորը. 15 մաքսաւորներու ու մեղաւորներու հետ հաց կ'ուտէ. 18 կ'արդարացնէ իր աշակերտներուն ծոմ չպահելը, 23 և շաբաթ օրը ցորենի հասկեր փրցնել ուտելը։

1 Եւ նորէն Կափառնայում մտաւ քանի մը
2 օրէն ետեւ. Ու լսուեցաւ որ անիկա տան մէջ
է, և շուտով շատ մարդիկ ժողվուեցան, այն-
պէս որ ա՛լ տեղ չկար, ոչ ալ դրանը քովերը. ու
3 կը խօսէր անոնց Աստուծոյ խօսքը։ Եւ կու գային
իրեն՝ չորս մարդով վերցուած անդամալոյծ մը
4 կը բերէին։ Ու երբ բազմութենէն չէին կրնար
անոր մօտենալ, քակեցին տանը յարկը ուր Յիսուս
էր, ու ծակ մը բանալով վար իջեցուցին մա-
հիճը, որուն վրայ պառկած էր անդամալոյծը։
5 Եւ Յիսուս անոնց հաւատքը տեսնելով՝ ըսաւ
անդամալոյծին, Որդեակ, քու մեղքերդ քեզի

6 ներուած են։ Ու դպիրներէն մէկ քանիները
կային որ հոն նստեր էին, և իրենց սրտերուն
7 մէջ կը խորհէին՝ ըսելով, Ինչո՞ւ համար ասիկա
այսպիսի հայհոյութիւններ կը խօսի. ո՞վ կրնայ
մեղքերու թողութիւն տալ, բայց միայն Աստ-
8 ուած։ Եւ Յիսուս իսկոյն իմանալով իր հոգւոյն
մէջ՝ որ անոնք այնպէս կը խորհին իրենց մէջ,
ըսաւ անոնց, Այդ ի՞նչ կը խորհիք սրտերնուդ
9 մէջ։ Ո՞րը աւելի դիւրին է, անդամալուծին
ըսե՞լ՝ Քու մեղքերդ ներուած են, թէ ըսել՝
10 Ելիր, մահիճդ առ ու քալէ։ Բայց որպէս զի
գիտնաք թէ Որդին մարդոյ իշխանութիւն ու-
նի երկրի վրայ մեղքերու թողութիւն տալու,
11 (ըսաւ անդամալուծին,) Քեզի կ'ըսեմ, ելիր,
12 մահիճդ առ ու տունդ գնա։ Ան ալ շուտ մը
ելաւ, և իր մահիճը առնելով՝ ամէնուն առջե-
ւը դուրս ելաւ, այնպէս որ ամէնը ապշած մնա-
ցին, և փառք տուին Աստուծոյ, ու ըսին թէ
Այսպիսի բան մը ամենեւին տեսած չենք։
13 Եւ ելաւ նորէն ծովեզերքը, ու բոլոր ժողո-
վուրդը իրեն կուգային, և կը սորվեցնէր անոնց։
14 Ու երբ կ'անցնէր, տեսաւ Ղևի Ալփէոսեանը,
որ մաքս ընդունելու տեղը նստեր էր, ու ըսաւ
անոր, Ելիր իմ ետևէս. ան ալ ելաւ անոր
15 ետևէն գնաց։ Ու եղաւ որ երբ սեղան նստած
էր անոր տանը մէջ, շատ մաքսաւորներ ու մե-
ղաւորներ ալ սեղան նստած էին Յիսուսի հետ
ու անոր աշակերտներուն հետ. քանզի շատ-
16 ուոր էին, ու անոր ետևէն կ'երթային։ Եւ
դպիրները ու փարիսեցիները երբ տեսան թէ
անիկա մաքսաւորներուն ու մեղաւորներուն
հետ կ'ուտէ, ըսին անոր աշակերտներուն, Ին-
չո՞ւ համար մաքսաւորներուն ու մեղաւորնե-
17 րուն հետ կ'ուտէ ու կը խմէ։ Եւ Յիսուս երբ
լսեց՝ ըսաւ անոնց, Առողջներուն բժիշկ պէտք

*չէ, հապա հիւանդներուն. ես արդարները կան-*
*չելու չեկայ, հապա մեղաւորները** ։
18 Եւ Յովհաննէսի ու փարիսեցիներուն աշա-
կերտները ծոմ կը պահէին. և եկան ու ըսին
անոր, Ինչո՞ւ Յովհաննէսի ու փարիսեցիներուն
աշակերտները ծոմ կը պահեն, ու քու աշա-
19 կերտներդ ծոմ չեն պահեր. Եւ Յիսուս ըսաւ
անոնց, Միթէ կարելի՞ է որ հարսնիքին տղա-
քը, քանի որ փեսան իրենց հետ է, ծոմ պա-
հեն. որչափ ժամանակ որ փեսան իրենց հետ
20 ունին, կարելի չէ ծոմ պահել ։ Բայց օրեր պի-
տի գան՝ որ երբ փեսան իրենցմէ վերցուի, ապա
21 այն օրը ծոմ պիտի պահեն ։ Մէկը կարկատան
չձգեր նոր լաթի կտոր մը հին հանդերձի վրայ.
եթէ ոչ՝ այն նորը որ անոր լրութեանը համար
դրուած էր, հինէն կ'առնէ ու պատառուածքը ա՛լ
22 աւելի գէշ կ'ըլլայ, Ոչ ալ մէկը նոր գինին հին
տիկերու մէջ կը դնէ. եթէ ոչ՝ նոր գինին տի-
կերը կը պատռէ, ու գինին կը թափի և տիկե-
րը կը կորսուին. հապա նոր գինին նոր տիկե-
րու մէջ դնելու է ։
23 Ու եղաւ որ շաբաթ օրը Ինք արտերուն մէ-
ջէն կ'անցնէր, և իր աշակերտները երբ կ'եր-
24 թային, սկսան ցորենի հասկեր փրցնել ։ Ու փա-
րիսեցիները ըսին իրեն, Նայէ՛ շաբաթ օրը ի՞նչ
25 կ'ընեն, որ արժան չէ ։ Ինք ալ անոնց ըսաւ,
Բնաւ չէ՞ք կարդացեր դուք Դաւիթի ըրածը՝
երբ պէտք ունեցաւ, և անօթեցաւ Ինք ու
26 անոնք որ իրեն հետ էին ։ Ի՛նչպէս մտաւ Աս-
տուծոյ տունը Աբիաթար քահանայապետին
օրով, և առաջաւորութեան հացերը կերաւ, ու
տուաւ անոնց ալ որ իրեն հետ էին, որ զանոնք
օրինաւոր չէ ուտել. բայց միայն քահանանե-
27 րուն ։ Եւ ըսաւ անոնց, Շաբաթը մարդուն

*Ոմանք կ'աւելցնեն, ապաշխարութեան

համար եղաւ, ու ոչ թէ մարդը շաբաթին հա-
28 մար։ Ուրեմն Որդին մարդոյ շաբաթին ալ
տէրն է։

## ԳԼ. Գ

1 Քրիստոս կը բժշկէ ձեռքը չորցած մարդը, 10 և ուրիշ շատ ցաւագարներ. 11 պիղծ ոգիները կը յանդիմանէ. 13 իր տասներկու առաքեալները կ'ընտրէ. 22 փաստով կը ցուցնէ որ անոնց ըսածը թէ՝ ինքը Բէեզեբուղով դևեր կը հանէ, հայհոյութիւն է. 31 և կ'իմացնէ թէ որո՛նք են իր եղբայրը, քոյրը և մայրը։

1 Եւ նորէն ժողովարանը մտաւ, ու հոն մարդ
2 մը կար՝ որուն ձեռքը չորցած էր։ Եւ իրեն
կը սպասէին թէ արդեօք շաբաթ օրը զանիկա
պիտի բժշկէ՞, որպէս զի իր վրայ ամբաստա-
3 նութիւն ընեն։ Եւ ինք ձեռքը չորցած մար-
4 դուն ըսաւ, Ելիր մէջտեղը կայնէ։ Ու ըսաւ
անոնց, Շաբաթ օրը բարի՞ք ընել արժան է՝ թէ
չարիք ընել, հոգի մը ազատե՞լ՝ թէ մեռցնել.
5 բայց անոնք լուռ կեցան։ Եւ Յիսուս բարկու-
թեամբ շուրջանակի անոնց վրայ նայելով՝ անոնց
սրտերուն կուրութեանը համար տրտմած,
ըսաւ այն մարդուն, Ձեռքդ երկնցուր. ան ալ
6 երկնցուց, և անոր ձեռքը *ողջացաւ։ Ու փա-
րիսեցիները Հերովդէսեաններուն հետ մէկտեղ
շուտ մը դուրս ելլելով, անոր դէմ խորհուրդ
կ'ընէին թէ ինչպէս կորսնցնեն զանիկա։
7 Բայց Յիսուս իր աշակերտներովը ծովեզերքը
գնաց. և շատ բազմութիւն անոր ետևէն գա-
8 ցին Գալիլեայէ ու Հրէաստանէ, Եւ Երուսա-
ղէմէ ու Եդոմէէ և Յորդանանու անդին կող-
մէն. ու անոնք որ Տիւրոսի ու Սիդոնի շրջակայ
տեղերէն էին, շատ բազմութիւն, երբ լսեցին
9 ինչ որ կ'ընէր, իրեն եկան։ Եւ իր աշակերտ-
ներուն ըսաւ որ նաւակ մը պատրաստ կե-
նայ իրեն համար՝ ժողովուրդին բազմութեանը
10 պատճառաւ, որպէս զի զինք չնեղեն։ Քանզի

---

Ոմանք, ողջացաւ միւսին պէս

չաները բժշկեց, այնպէս որ ցաւ ունեցողները
11 վրան կը գլուէին որպէս զի իրեն դպչին։ Եւ
պիղծ ոգիները երբ զինք կը տեսնէին, կ'իյնային
12 իր առջև, կը կանչուըտէին ու կ'ըսէին, Դուն
ես Աստուծոյ Որդին. և ինք սաստիկ կը յան-
դիմանէր զանոնք, որ զինք չյայտնեն։
13 Եւ լեռը ելլելով՝ իր ուզածները իրեն կան-
14 չեց, ու գացին անոր քով։ Եւ տասն երկու հո-
գի որոշեց, որպէս զի իրեն հետ ըլլան, և որ-
15 պէս զի զանոնք ղրկէ քարոզել, Ու իշխանու-
թիւն ունենան ցաւերը բժշկելու և դևերը
16 հանելու։ Եւ Սիմոնի անունը Պետրոս դրաւ.
17 Եւ Զեբեդեան Յակոբոսն ու Յակոբոսի եղբօ-
րը Յովհաննէսի՝ անոնց անունները Բանէրգէս
18 դրաւ, որ ըսել է Որդիք որոտման. Եւ Անդ-
րէասը, ու Փիլիպպոսը, և Բարթողոմէոսը, ու
Մատթէոսը, և Թովմասը, ու Ալփէոսեան Յա-
կոբոսը, և Թադէոսը, ու Սիմոն Կանանացին,
19 Եւ Յուդա Իսկարիովտացին, որ նաև մատնեց
զանիկա։
20 Տուն մը եկան, և նորէն ժողովուրդը ժո-
ղովուեցաւ, այնպէս որ հաց ուտելու ալ ժամանակ
21 չկրցան գտնել։ Ու երբ իրենները լսեցին, ելան
որ զինք բռնեն, քանզի կ'ըսէին թէ Խելլուած
22 է։ Եւ այն դպիրները որոնք Երուսաղէմէ իջեր
էին, կ'ըսէին թէ Ասոր ներսիդին Բէեղզեբուղ
կայ, և դևերուն իշխանովը դևերը կը հանէ։
23 Եւ իրեն կանչելով զանոնք՝ առակներով կ'ըսէր
անոնց, Ի՞նչպէս կրնայ Սատանայ Սատանայ
24 հանել։ Ու եթէ թագաւորութիւն մը իրեն
դէմ բաժնուի, այն թագաւորութիւնը չկրնար
25 կենալ։ Եւ եթէ տուն մը իրեն դէմ բաժնուի,
26 այն տունը չկրնար կենալ։ Ու եթէ Սատա-
նայ իրեն դէմ ելաւ ու բաժնուած է, անիկա
չկրնար կենալ, հապա անոր վերջը հասած է։

27 Մէկը չկրնար զօրաւոր մարդու մը տունը մըտ-
նելով՝ անոր կարասիները յափշտակել, եթէ
առաջ այն զօրաւոր մարդը չկապէ, ու ետքը
28 անոր տունը կողոպտէ։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի
որ Ամէն մեղքերը պիտի ներուին մարդոց որ-
դիներուն, և հայհոյութիւնները՝ որչափ որ
29 հայհոյեն. Բայց ով որ Հոգւոյն Սրբոյ դէմ հայ-
հոյէ, յաւիտեան թողութիւն պիտի չունենայ,
հապա յաւիտենական դատաստանի պարտաւոր
30 պիտի ըլլայ։ Վասն զի կ'ըսէին թէ Պիղծ ոգի
կայ անոր ներսիդին։

31 Ետքը անոր մայրը ու եղբայրները եկան, ու
դուրս կայնելով՝ մարդ ղրկեցին ու կը կանչէին
32 զանիկա։ Եւ ժողովուրդը անոր բոլորտիքը նըս-
տեր էր, ու իրեն ըսին թէ Ահա քու մայրդ ու
եղբայրներդ դուրսը կայներ են և քեզ կ'ուզեն։
33 Եւ անիկա պատասխան տուաւ անոնց ու ըսաւ,
34 Ո՞վ է իմ մայրս կամ եղբայրներս։ Ու իր բո-
լորտիքը նստողներուն նայելով՝ ըսաւ, Ահա
35 իմ մայրս ու իմ եղբայրներս. Վասն զի ով որ
Աստուծոյ կամքը կը կատարէ, անիկա է իմ
եղբայրս և քոյրս ու մայրս։

## ԳԼ. Դ

1 Սերմնացանին առակը, 11 և այն առակին մեկնութիւնը: 21 Մենք պարտաւոր ենք մեր գիտութեան լոյսը ուրիշներուն ալ հաղորդել: 26 Ծածուկ աճեցող սերմին, 30 և մանանեխի հատին առակը: 35 Քրիստոս կը հանդարտեցնէ ծովուն ալէկոծութիւնը:

1 Դարձեալ սկսաւ սորվեցնել ծովեզերքին վրայ,
և շատ ժողովուրդ անոր քով ժողվուեցաւ,
այնպէս որ ինք նաւը մտաւ ու նստաւ ծովուն
վրայ, և բոլոր ժողովուրդը ցամաքը ծովուն
2 եզերքն էր։ Եւ անոնց շատ բաներ կը սորվե-
ցընէր առակներով, ու կ'ըսէր անոնց իր վար-
3 դապետութեանը մէջ, Լսեցէք. ահա սերմ
4 ցանողը ելաւ որպէս զի սերմ ցանէ։ Ու երբ

կը ցանէր, մէկ քանին ճամբուն քով ինկաւ,
5 և *թռչունները եկան ու կերան զանիկա։ Եւ
ուրիշը ինկաւ ապառաժուտ տեղի վրայ, ուր
շատ հող չկար. և շուտ մը բուսաւ՝ հողին խո-
6 րունկութիւն չունենալուն համար. Սակայն
արևուն ծագած ատենը այրեցաւ, ու արմատ
7 չունենալուն համար չորցաւ։ Եւ ուրիշը ինկաւ
փուշերու մէջ, և փուշերը ելան ու խեղդեցին
8 զանիկա, ու պտուղ չտուաւ։ Եւ ուրիշը ինկաւ
աղէկ հողի մէջ, ու պտուղ կու տար, որ ելաւ ու
մեծցաւ, և կը բերէր մէկուն տեղ երեսուն, ու
մէկուն տեղ վաթսուն, և մէկուն տեղ հարիւր։
9 Ու կ'ըսէր, Ան որ լսելու ականջ ունի, թող լսէ։
10 Ու երբ առանձին էր, իր քով եղողները
տասուերկուքին հետ մէկտեղ հարցուցին իրեն
11 այն առակը։ Եւ ըսաւ անոնց, Ձեզի տրուած
է գիտնալ Աստուծոյ թագաւորութեան խոր-
հուրդը, բայց անոնց որ դուրսն են, ամէն
12 բան առակներով կ'ըլլայ. Որպէս զի տեսնելով
տեսնեն՝ ու չտեսնեն, և լսելով լսեն՝ ու չիմա-
նան, որպէս զի չըլլայ թէ դարձի գան, և իրենց
13 մեղքերուն թողութիւն ըլլայ։ Ու ըսաւ անոնց,
Այս առակը չէ՞ք գիտեր. ուրեմն ի՞նչպէս պի-
14 տի գիտնաք ամէն առակները։ Սերմ ցանողը
15 խօսքը կը ցանէ։ Եւ ճամբուն քովինները անոնք
են, որոնց մէջ խօսքը կը ցանուի, ու երբ կը
լսեն, շուտ մը Սատանան կու գայ և անոնց
սրտերուն մէջ ցանուած խօսքը կը հանէ։
16 Նոյնպէս ալ ապառաժուտ տեղերու վրայ ցան-
ուածները անոնք են, որ երբ կը լսեն խօսքը,
շուտ մը ուրախութեամբ կ'ընդունին զանիկա.
17 Եւ իրենց մէջ արմատ չունենալով՝ քիչ ժամա-
նակ կը տևեն, ետքը երբ նեղութիւն կամ
հալածանք ըլլայ խօսքին համար, շուտ մը

*Ոմանք, երկինքի թռչունները

18 կը գայթակղին։ Եւ փուշերուն մէջ ցանուած-
19 ները անոնք են, որ երբ խօսքը կը լսեն, Աշ-
խարհիս զբաղմունքները ու հարստութեան խա-
բէութիւնները, և ուրիշ բաներուն ցանկու-
թիւնները մէջ մտնելով, խօսքը կը խեղդեն, ու
20 կ'ըլլայ անպտուղ։ Եւ աղէկ հողի մէջ ցան-
ուածները անոնք են, որ խօսքը կը լսեն և կ'ըն-
դունին, ու պտուղ կու տան՝ մէկուն տեղ երես-
սուն, և մէկուն տեղ վաթսուն, ու մէկուն
տեղ հարիւր։
21 Եւ ըսաւ անոնց, Միթէ ճրագը գրուանին
կամ մահիճին տա՞կ դրուելու համար կու գայ,
չէ՞ որ աշտանակին վրայ դրուելու համար։
22 Վասն զի ծածուկ բան մը չկայ, որ պիտի չյայտ-
նուի. և գաղտուկ բան մը չէ եղած, որ երևան
23 պիտի չելլէ։ Եթէ մէկը լսելու ականջ ունի,
թող լսէ։
24 Եւ ըսաւ անոնց, Նայեցէք ի՛նչ կը լսէք. ի՛նչ
չափով որ դուք կը չափէք, նոյն չափովը պիտի չափ-
ուի ձեզի. և ձեզի, որ կը լսէք, պիտի աւելնայ։
25 Վասն զի ո՛վ որ ունի, անոր պիտի տրուի. և
ո՛վ որ չունի, ունեցածն ալ անկէ պիտի առնուի։
26 Եւ կ'ըսէր, Աստուծոյ թագաւորութիւնը
այսպէս է, որպէս թէ մարդ մը հողին մէջ սերմ
27 ձգէ, Ու քնանայ և արթննայ գիշեր ու ցորեկ,
և սերմը բուսնի ու մեծնայ,— ինք չգիտեր
28 թէ ինչպէս։ Քանզի հողը ինքիրմէ պտուղ
կու տայ. առաջ խոտը, ետքը հասկը, անկէ
29 ետև լեցուն ցորենը հասկին մէջ, Ու երբ պտու-
ղը հասուննայ, շուտ մը մանգաղը կը ղրկէ,
վասն զի հունձքի ատենը հասած է։
30 Եւ կ'ըսէր, Աստուծոյ թագաւորութիւնը ի՛նչ
բանի նմանցնենք, կամ ի՛նչ առակով զանիկա
31 բաղդատենք։ Մանանեխի հատին նման է, որ
հողին մէջ ցանուած ատեն՝ երկրի վրայ եղած

32 սերմերուն ամէնէն պզտիկն է. Ու երբ ցան-
ուի, կը բուսնի և ամէն խոտեղէններէն ալ մեծ
կ'ըլլայ, ու մեծ ճիւղեր կ'արձակէ, այնպէս որ
երկինքի թռչուններուն հերիք կ'ըլլայ անոր
շուքին տակ բնակելու։
33 Եւ այսպէս շատ առակներով կը խօսէր անոնց
34 հետ խօսքը, որչափ որ կրնային մտիկ ընել. Ու
առանց առակի բան մը չէր խօսեր անոնց, բայց
առանձին իր աշակերտներուն կը մեկնէր ամէնը։
35 Եւ նոյն օրը երբ իրիկուն կ'ըլլար, ըսաւ
36 անոնց, Եկէք ծովուն անդին կողմը անցնինք։ Անոնք
ալ ժողովուրդը թող տալով՝ առին զինք ինչ-
պէս էր նաւուն մէջ. և ուրիշ նաւակներ ալ
37 կային անոր հետ։ Ու հովի մեծ փոթորիկ մը
եղաւ. և ալիքները նաւուն վրայ կու գային,
38 այնպէս որ գրեթէ կը լեցուէր։ Ու ինք նաւուն
ետևի կողմը բարձի վրայ կը քնանար. արթըն-
ցուցին զանիկա և կ'ըսէին անոր, Վարդապետ,
39 հոգ չէ՞ որ կը կորսուինք։ Ու ելլելով՝ սաստեց
հովին, և ծովուն ըսաւ, Դադարէ, լուռ կեցիր.
ու հովը դադարեցաւ, և մեծ խաղաղութիւն
40 եղաւ։ Ու ըսաւ անոնց, Ինչո՞ւ այդպէս վախ-
կոտ էք, ի՞նչպէս կ'ըլլայ որ հաւատք չունիք։
Եւ անոնք խիստ վախցան, ու կ'ըսէին իրարու,
Արդեօք ո՞վ է ասիկա, որ հովը ու ծովը անոր
կը հնազանդին։

## ԳԼ. Ե

1 Քրիստոս լէգէոն ունեցող մարդը կը բժշկէ. 13 և անկէ ելլող դևերը խոզերուն մէջ կը մտնեն։ 25 Քրիստոս կը բժշկէ տեռատես կինը, 35 և Յայրոսի աղջիկը կը յարուցանէ։

1 Եւ եկան ծովուն անդին կողմը *Գադարացւոց
2 երկիրը։ Ու երբ ինք նաւէն ելաւ, գերեզման-
ներէն ելած մարդ մը պատահեցաւ իրեն, որ
3 պիղծ ոգի ունէր. Որուն բնակած տեղն ալ

*Ոմանք, Գերգեսացւոց

գերեզմաններուն մէջ էր, ու շղթայով ալ մէ-
4 կը չէր կրնար զանիկա կապել. Որովհետեւ շատ
անգամ ոտնակապերով եւ շղթաներով կապ-
ուեր էր, բայց անիկա շղթաները կտրեր ու
ոտնակապերը կտրտեր էր, եւ մէկը չէր կրնար
5 զանիկա նուաճել. Եւ միշտ գիշեր ու ցորեկ
*գերեզմաններուն մէջ ու լեռներուն մէջ՝ կը
կանչուըռտէր, ու իր մարմինը քարերով կը
6 ճեղքռտէր։ Երբ հեռուանց Յիսուսը տեսաւ,
7 վազեց ու երկրպագութիւն ըրաւ անոր. Եւ
մեծ ձայնով մը աղաղակեց ու ըսաւ, Դուն ինծի
հետ ի՞նչ բան ունիս, Յիսուս, Որդի Աստու-
ծոյ բարձրելոյ, քեզ Աստուծով կ'երդմնցնեմ,
8 զիս մի տանջեր։ (Քանզի կ'ըսէր անոր, Պիղծ
9 ոգի, ելիր այդ մարդէն։) Եւ անոր հարցուց
թէ Անունդ ի՞նչ է. ու ըսաւ անոր, Իմ անունս
10 Լէգէոն է, վասն զի մենք շատուոր ենք։ Եւ
շատ †կ'աղաչէին անոր՝ որ զիրենք այն երկրէն
11 դուրս չղրկէ։ Եւ հոն լեռանը մօտ խոզերու
12 մեծ երամակ մը կար՝ որ կ'արածուէին։ Ու բո-
լոր դեւերը աղաչեցին անոր ու ըսին, Մեզ խո-
զերուն ղրկէ, որպէս զի անոնց մէջ մտնենք։
13 Եւ Յիսուս շուտ մը հրաման տուաւ անոնց. ու
երբ պիղծ ոգիները ելան, խոզերուն մէջ մտան,
եւ երամակը գահավէժ տեղէն ծովը վազեց,
(երկու հազարի չափ կային,) ու ծովուն մէջ
14 խեղդուեցան։ Եւ խոզարածները փախան, ու
պատմեցին քաղաքը ու ագարակները. եւ ժողովուրդը
15 ելան տեսնելու՝ թէ ինչ բան է որ եղաւ։ Ու
եկան Յիսուսի, եւ տեսան դիւահարը, որ լէ-
գէոն ունէր, որ հագուած ու խելքը վրան
16 եկած նստեր էր, ու վախցան։ Եւ անոնք որ
տեսեր էին, պատմեցին անոնց թէ ինչ եղաւ
17 դիւահարին, նաեւ խոզերուն վրայով։ Եւ սկսան

*Ոմն., լեռներուն մէջ ու գերեզմաններուն մէջ

†Կամ, կ'աղաչէր

աղաչել անոր, որպէս զի իրենց սահմաններէն
18 երթայ։ Ու երբ անիկա նաւը մտաւ, դիւահարը
19 կ՚աղաչէր անոր՝ որ անոր հետ ըլլայ. Եւ Յիսուս
թող չտուաւ անոր, հապա ըսաւ անոր, Գնա՛ քու
տունդ՝ քու ընտանիքիդ, ու պատմէ անոնց ինչ
20 որ Տէրը քեզի ըրաւ, և ողորմեցաւ քեզի։ Ան
ալ գնաց, և սկսաւ Դեկապոլսի մէջ քարոզել
ինչ որ Յիսուս իրեն ըրաւ. և ամէնը կը զար-
մանային։
21 Ու երբ Յիսուս նաւով նորէն ծովուն անդիի
կողմը անցաւ, շատ բազմութիւն ժողովուեցաւ
22 անոր քով, և ինք ծովեզերքն էր։ Եւ ահա
ժողովրդապետներէն մէկը կու գար, որուն ա-
նունը Յայրոս էր, ու երբ տեսաւ զանիկա, ա-
23 նոր ոտքը ինկաւ. Եւ շատ կ՚աղաչէր անոր ու
կ՚ըսէր թէ Իմ աղջիկս մեռնելու մօտ է, գա՛
անոր վրայ ձեռք դնես, որպէս զի ապրի, ու
24 պիտի ապրի։ Եւ գնաց անոր հետ, ու շատ
բազմութիւն իր ետևէն կ՚երթային ու կը նե-
ղէին զինք։
25 Եւ կին մը, որ տասուերկու տարի արիւնի
26 տեղատուութեան մէջ էր, Ու շատ նեղութիւն
կրած էր շատ բժիշկներէ, և իր բոլոր ունե-
ցածը վատներ էր, ու օգուտ մը չէր գտեր,
27 հապա ևս առաւել զայրացեր էր, Երբ Յիսու-
սի վրայով լսեց, ետևէն եկաւ բազմութեանը
28 մէջ, ու անոր հանդերձին դպաւ. Քանզի կ՚ը-
սէր, Եթէ միայն անոր հանդերձներուն դպչ-
29 չիմ, պիտի բժշկուիմ։ Եւ շուտ մը իր արիւնին
աղբիւրը ցամքեցաւ, ու իր մարմինին մէջ իմա-
30 ցաւ թէ տանջանքէն բժշկուեցաւ։ Եւ Յիսուս
շուտ մը գիտնալով իր անձին մէջ այն զօրու-
թիւնը որ իրմէ ելաւ, դարձաւ բազմութեանը
մէջ ու ըսաւ, Ո՞վ դպաւ իմ հանդերձներուս։
31 Եւ իր աշակերտները ըսին իրեն, Կը տեսնես

*որ բազմութիւնը քեզ կը նեղէ, ու կ'ըսե՞ս թէ*
32 *Ո՞վ ինծի դպաւ։ Եւ ինք բոլորտիքը կը նայէր*
33 *որպէս զի այս բանը ընողը տեսնէ։ Ու կինը*
*վախնալով ու դողալով, վասն զի գիտէր թէ իրեն*
*ինչ եղաւ, և եկաւ՝ անոր առջև ինկաւ, ու բո-*
34 *լոր* բաները *շիտակ շիտակ պատմեց անոր։ Եւ*
Յիսուս *ըսաւ անոր, Աղջիկ, քու հաւատքդ քեզ*
*բժշկեց. գնա խաղաղութեամբ, ու բժշկուած*
*եղիր քու տանջանքէդ։*
35 *Երբ ինք դեռ կը խօսէր, ժողովրդապետին*
*տունէն* մարդիկ *եկան ու ըսին թէ Աղջիկդ մե-*
*ռաւ, ալ ինչո՞ւ վարդապետը կը յոգնեցնես։*
36 *Իսկ Յիսուս լսուած խօսքը լսածին պէս ժո-*
*ղովրդապետին ըսաւ, Մի վախնար, միայն թէ*
37 *հաւատա։ Եւ մէ՛կը թող չտուաւ իրեն հետ*
*երթալ, բայց միայն Պետրոսը ու Յակոբոսը և*
38 *Յակոբոսի եղբայրը Յովհաննէսը։ Ու ժողովր-*
*դապետին տունը գալով՝ տեսաւ աղմուկ և*
39 *սաստիկ լացողներ ու աղաղակողներ։ Եւ ներս*
*մտնելով՝ ըսաւ անոնց, Ինչո՞ւ խռովեր էք ու*
*կու լաք. մանուկը մեռած չէ, հապա կը քնա-*
40 *նայ։ Եւ ծաղր կ'ընէին զանիկա. բայց ինք ամէ-*
*նը դուրս հանելով՝ իրեն հետ առաւ մանուկին*
*հայրը ու մայրը, և զանոնք որ իրեն հետ էին,*
41 *ու մտաւ հոն ուր մանուկը պառկած էր։ Եւ*
*մանուկին ձեռքէն բռնելով՝ ըսաւ անոր, Տա-*
*լիթա, կումի. որ կը թարգմանուի, Աղջիկ,*
42 *(քեզի կ'ըսեմ,) ելիր։ Եւ իսկոյն աղջիկը ոտք*
*ելաւ ու կը քալէր, վասն զի տասուերկու տա-*
*րեկան էր. ու մեծ ապշութեամբ ապշեցան։*
43 *Եւ սաստիկ պատուէր տուաւ անոնց՝ որ մա՛րդ*
*չգիտնայ այս բանը, ու ըսաւ որ անոր ուտե-*
*լիք տան։*

## ԳԼ. Զ

1 Քրիստոս անարգութիւն կը կրէ իր քաղաքակիցներէն. 7 տասներկու աշակերտներուն իշխանութիւն կու տայ պիղծ ոգիները հանելու: 14 Զանազան կարծիքներ Քրիստոսի վրայով: 27 Յովհաննէս մկրտիչ կը գլխատուի, 29 և կը թաղուի: 30 Առաքեալները իրենց քարոզութենէն Յիսուսի կը դառնան: 34 Հինգ հացին ու երկու ձուկին հրաշքը: 48 Քրիստոս ծովուն վրայ կը քալէ. 53 և ամէն իրեն դպչող ցաւագարները կը բժշկէ:

1 Եւ անկէ ելլելով եկաւ իր երկիրը, ու անոր
2 աշակերտները իր ետեւէն գացին։ Եւ երբ շա-
բաթ օրը հասաւ, սկսաւ ժողովարանին մէջ
սորվեցնել. ու շատերը լսելով կը զարմանային
ու կ'ըսէին, Ասիկա ուրկէ՞ ունի այս բաները,
և այս ի՞նչ իմաստութիւն է անոր տրուած, որ
այսպիսի հրաշքներ կ'ըլլան անոր ձեռքով։
3 Ասիկա հիւսն չէ՞, Մարիամու որդին, և Յակո-
բոսի ու Յովսէսի և Յուդայի ու Սիմոնի եղբայ-
րը. ու անոր քոյրերը հոս մեր քով չե՞ն. և
4 անոր վրայով կը գայթակղէին։ Բայց Յիսուս
ըսաւ անոնց, Մարգարէ մը անպատիւ չէ՝ բայց
միայն իր երկրին մէջ ու իր ազգականներուն և
5 իր տանը մէջ։ Ու չէր կրնար հոն մէ՛կ հրաշք
ալ ընել, միայն թէ քանի մը հիւանդներու
6 վրայ ձեռք դրաւ ու բժշկեց զանոնք. Եւ անոնց
անհաւատութեանը վրայ կը զարմանար. ու
շրջակայ գեղերը պտըտելով՝ կը սորվեցնէր։
7 Եւ իրեն կանչեց տասներկուքը, ու սկսաւ
երկու երկու ղրկել զանոնք, ու անոնց իշխա-
8 նութիւն տուաւ պիղծ ոգիներուն վրայ. Եւ
պատուիրեց անոնց՝ որ ճամբու համար բան մը
չառնեն, բայց միայն գաւազան մը. ոչ պարկ,
9 ոչ հաց, ոչ ստակ՝ գօտիներնուն մէջ. Հապա
հողաթափ հագնին. և Կրկին հանդերձ մի հագ-
10 նիք՝ ըսաւ։ Ու ըսաւ անոնց, Ո՛ր տուն որ մտնէք,
11 հոն կեցէք մինչև անկէ ելլէք։ Եւ անոնք որ
ձեզ չեն ընդունիր ու ձեզի մտիկ չեն ըներ,
երբ անկէ կ'ելլէք, ոտքերնուդ տակի փոշին

թօթուեցէք՝ անոնց վկայութիւն ըլլալու հա-
մար։ *Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Սոդոմացւոց ու
Գոմորացւոց աւելի դիւրին պիտի ըլլայ դա-
տաստանին օրը՝ քան թէ այն քաղաքին։"
12 Եւ անոնք ելլելով՝ կը քարոզէին որ մարդիկ
13 ապաշխարեն։ Եւ շատ դեւեր կը հանէին, ու
շատ հիւանդներ իւղով կ'օծէին ու կը բժշկէին
զանոնք։
14 Եւ Հերովդէս թագաւորը լսեց, (քանզի անոր
անունը յայտնի եղաւ,) ու կ'ըսէր թէ Յովհան-
նէս մկրտիչը մեռելներէն յարութիւն առեր է,
15 ու անոր համար հրաշքներ կ'ըլլան անով։ Ու-
րիշները կ'ըսէին թէ Եղիան է. ուրիշներն ալ
կ'ըսէին թէ Մարգարէ մըն է, կամ մարգարէ-
16 ներէն մէկուն պէս։ Բայց երբ Հերովդէս լսեց,
ըսաւ, Անիկա Յովհաննէսն է, որուն գլուխը ես
կտրեցի, մեռելներէն յարութիւն առեր է։
17 Քանզի Հերովդէս ինք մարդ ղրկեց, Յովհան-
նէսը բռնեց, ու կապեց բանտը դրաւ իր եղբօ-
րը Փիլիպպոսի կնոջ, Հերովդիայի, համար,
18 քանզի իրեն կին առեր էր զանիկա։ Վասն զի
Յովհաննէս Հերովդէսի կ'ըսէր, Քեզի օրինա-
19 ւոր չէ քու եղբօրդ կինը ունենալ։ Եւ Հերով-
դիա ոխ ունէր անոր դէմ, ու կ'ուզէր զանիկա
20 մեռցնել ու չէր կրնար. Վասն զի Հերովդէս կը
վախնար Յովհաննէսէն, գիտնալով թէ անիկա
արդար և սուրբ մարդ մըն է, և անոր բերանը
կը նայէր, ու անկէ լսելով՝ շատ բաներ կ'ընէր,
21 և քաղցրութեամբ անոր մտիկ կ'ընէր։ Ու երբ
դիպուկ օր մը եղաւ, որ Հերովդէս իր ծննդեան
օրը ընթրիք կ'ընէր իր մեծամեծներուն և հա-
զարապետներուն ու Գալիլեայի երեւելիներուն,
22 Եւ Հերովդիայի աղջիկը հանդէսին ներսը մտնելով
խաղաց, ու հաճելի եղաւ Հերովդէսի և իրեն

*Ոմանք չունին

հետ նստողներուն. թագաւորը ըսաւ աղջկան,
Խնդրէ ինծմէ ինչ որ կ'ուզես, ու պիտի տամ
23 քեզի։ Եւ անոր երդում ըրաւ՝ ըսելով, Ինչ որ
դուն ինծմէ խնդրես, պիտի տամ քեզի, մինչեւ
24 թագաւորութեանս կէսը. Եւ անիկա դուրս
ելլելով իր մօրը ըսաւ, Ի՞նչ ուզեմ. ան ալ ըսաւ,
25 Յովհաննէս Մկրտչին գլուխը։ Եւ շուտ մը արա-
տորալով թագաւորին քով մտաւ ու խնդրեց՝
ըսելով, Կ'ուզեմ որ շուտով սկուտեղի մը վրայ
26 Յովհաննէս Մկրտչին գլուխը տաս ինծի։ Եւ
թագաւորը խիստ տրտմեցաւ, բայց երդումնե-
րուն համար ու իրեն հետ նստողներուն համար
27 չուզեց որ անոր խօսքը մերժէ։ Եւ թագաւորը
խոյն դահիճ ղրկեց, ու հրաման ըրաւ անոր
գլուխը բերել. ան ալ գնաց բանտին մէջ գլը-
28 խատեց զանիկա, Եւ սկուտեղով մը բերաւ
անոր գլուխը ու տուաւ աղջկան, և աղջիկը
29 զանիկա իր մօրը տուաւ։ Եւ անոր աշակերտ-
ները լսելով՝ եկան անոր մարմինը վերցուցին
ու գերեզմանի մէջ դրին։
30 Եւ առաքեալները Յիսուսի քով ժողովուեցան,
ու պատմեցին անոր ամէն ինչ որ ըրին և ինչ որ
31 սորվեցուցին։ Եւ անիկա ըսաւ անոնց, Եկէք
դուք առանձին անապատ տեղ մը, և քիչ մը
հանգչեցէք. քանզի շատերը կային որ կու գա-
յին ու կ'երթային. և հաց ուտելու ալ ժամա-
32 նակ չէին ունենար։ Եւ նաւով անապատ տեղ
33 մը գացին առանձին։ Ու ժողովուրդները տեսան զա-
նոնք որ կ'երթային, և շատերը զանիկա ճանչ-
ցան, ու ոտքով բոլոր քաղաքներէն հոն կը վա-
զէին, և անոնցմէ առաջ հասնելով՝ անոր քով
34 ժողովուեցան։ Ու Յիսուս երբ դուրս ելաւ, շատ
ժողովուրդ տեսնելով խղճաց անոնց վրայ, վասն
զի հովիւ չունեցող ոչխարներու պէս էին, և
սկսաւ շատ բաներ սորվեցնել անոնց։

35 Ու երբ ժամանակը շատ ուշացաւ, իր աշա-
կերտները իրեն եկան ու ըսին, Հոս անապատ
36 տեղ մըն է, ու ժամանակը ուշացած է։ Արձա-
կէ ժողովուրդները որպէս զի երթան բոլորտիքի
ագարակները ու գեղերը ու իրենց հաց գնեն,
37 վասն զի ուտելու բան մը չունին։ Բայց անիկա
պատասխան տուաւ ու ըսաւ անոնց, Դուք
տուէք ասոնց որ ուտեն։ Եւ ըսին իրեն, Եր-
թանք երկու հարիւր դահեկանի հաց գնե՞նք
38 և տանք ասոնց որ ուտեն։ Ըսաւ անոնց, Քա-
նի՞ նկանակ ունիք, գացէք նայեցէք. ու երբ
39 գիտցան՝ ըսին, Հինգ, ու երկու ձուկ։ Եւ հրա-
ման ըրաւ անոնց՝ որ ամէնը կանանչ խոտին
40 վրայ գունդ գունդ նստեցնեն։ Եւ դաս դաս
41 նստան, հարիւրական ու յիսունական։ Եւ հինգ
նկանակը ու երկու ձուկը առաւ ու դէպ ի եր-
կինք նայելով՝ օրհնեց, և մանրեց նկանակնե-
րը ու տուաւ իր աշակերտներուն, որպէս զի
անոնց առջև դնեն, ու երկու ձուկը ամէնուն
42 ալ բաժնեց։ Եւ ամէնը կերան ու կշտացան։
43 Եւ տասնըերկու կողով լեցուն՝ կտորուանքնե-
44 րը վերցուցին, և ձուկերէն ալ։ Եւ այն հա-
ցերէն ուտողները հինգ հազարի չափ այր մար-
դիկ էին։
45 Եւ շուտ մը իր աշակերտները ստիպեց որ
նաւը մտնեն, և իրմէ առաջ միւս կողմը Բեթ-
սայիդա անցնին, մինչև ինք ժողովուրդը ար-
46 ձակէ։ Եւ անոնցմէ զատուելով՝ լեռը ելաւ
47 աղօթք ընելու։ Ու երբ իրիկուն եղաւ, նաւը
ծովուն մէջտեղն էր, ու ինք մինակ ցամաքն էր։
48 Եւ տեսաւ զանոնք որ կը տաղնապէին հովէն թի
քաշելու ատեն, վասն զի հովը իրենց դէմ
էր. և գիշերուան չորրորդ պահուն ատենները
ծովուն վրայ քալելով կու գայ անոնց, ու կ՚ու-
49 զէր անոնցմէ անցնիլ։ Անոնք երբ տեսան որ

ծովուն վրայ կը քալէր, կարծեցին թէ աչքի
50 երեւոյթ բան մըն է, ու կանչուըռտեցին. Քան-
զի ամէնն ալ զանիկա տեսան ու խռովեցան.
և իսկ շուտ մը խօսեցաւ անոնց հետ ու ըսաւ
51 անոնց, Քաջ եղէք, ես եմ, մի վախնաք։ Եւ
նաւը ելաւ անոնց քով, ու հովը դադարեցաւ. և
անոնք մտքերնուն մէջ չափէ դուրս ապշած էին
52 ու կը զարմանային, Վասն զի հացին վրայ եղած
հրաշքը չիմացան, քանզի սրտերնին թմրած էր։
53 Ու միւս կողմը անցնելով Գեննեսարէթի եր-
54 կիրը հասան ու նաւը տեղաւորեցին։ Ու երբ
նաւէն ելան, այն տեղի մարդիկը իսկոյն ճանչցան զա-
55 նիկա. Եւ ասդին անդին վազելով բոլոր շրջա-
կայ տեղերը, սկսան մահիճներով հիւանդները
56 բերել՝ ուր որ կը լսէին թէ հոն է։ Եւ ուր որ
կը մտնէր, գեղերը կամ քաղաքները կամ ագա-
րակները, հրապարակներուն մէջ կը դնէին հի-
ւանդները, ու կ'աղաչէին իրեն որ գոնէ իր
հանդերձին քղանցքին դպչին. և որոնք որ
դպան, բժշկուեցան։

## ԳԼ. Է

1 Փարիսեցիները կը մեղադրեն Քրիստոսի աշակերտները անլուայ ձեռքով հաց ուտելնուն համար։ 8 Իսկ ինք կ'ապացուցանէ թէ անոնք մարդոց աւանդութիւնները բռնելով՝ Աստուծոյ պատուիրանքը կ'անարգեն. 14 և թէ կերակուրը մարդը չպղծեր։ 24 Փիւնիկ Ասորի կնոջ աղջիկը պիղծ ոգիէ մը կ'ազատէ, 31 և խուլ ու դժուարախօս մարդ մը կը բժշկէ։

1 Եւ իր քով ժողվուեցան փարիսեցիները ու
դպիրներէն ոմանք՝ որ Երուսաղէմէ եկած էին։
2 Ու երբ տեսան որ անոր աշակերտներէն ոմանք
պիղծ, այսինքն անլուայ, ձեռքերով հաց կ'ու-
3 տէին, մեղադրեցին, Վասն զի փարիսեցիները
ու բոլոր Հրեաները մինչև աղէկ մը ձեռքեր-
նին չլուան՝ հաց չեն ուտեր, քանզի ծերերուն
4 աւանդութիւնը կը բռնեն։ Եւ շուկայէն եկած
ատենները եթէ չլուացուին՝ չեն ուտեր. և ուրիշ

շատ բաներ կան զորոնք ընդունած են ու կը
բռնեն, այսինքն գաւաթներու և փարչերու
ու պղնձէ ամաններու և անկողիններու լուաց-
5 մունքներ։ Այն ատեն փարիսեցիները ու դպիր-
ները հարցուցին անոր, թէ Ինչո՞ւ քու աշա-
կերտներդ ծերերուն աւանդութեանը պէս չեն
երթար, հապա անլուայ ձեռքերով հաց կ՚ու-
6 տեն։ Ան ալ պատասխան տուաւ ու ըսաւ
անոնց, Աղէկ մարգարէութիւն ըրաւ Եսայի
ձեզի կեղծաւորներուդ համար, ինչպէս գրուած
է, Այս ժողովուրդը միայն շրթունքներովը զիս
կը պատուէ, բայց իրենց սիրտը հեռացած
7 զատուած է ինծմէ. Ու պարապ տեղ զիս կը
պաշտեն, մարդոց պատուիրած բաները իբրև
8 վարդապետութիւն սորվեցնելով։ Վասն զի Աս-
տուծոյ պատուիրանքը թողելով՝ մարդոց աւան-
դութիւնը կը բռնէք, ինչպէս՝ փարչերու և գա-
ւաթներու լուացմունքներ, և ասանկ նմանն շատ
9 ուրիշ բաներ կ՚ընէք։ Ու ըսաւ անոնց, Աղէկ
կ՚անարգէք Աստուծոյ պատուիրանքը, որպէս
10 զի ձեր աւանդութիւնը պահէք։ Քանզի Մով-
սէս ըսաւ, Քու հայրդ ու մայրդ պատուէ. և,
Ով որ իր հայրը կամ՝ մայրը անիծէ, մահով թող
11 մեռնի։ Բայց դուք կ՚ըսէք, Եթէ մէկը իր հօրը
կամ՝ մօրը ըսէ, Այն բանը զոր ինծմէ պիտի
շահիս, Աստուծոյ տալու կորբան է, (որ ըսել է ըն-
12 ծայ,) ազատ կ՚ըլլայ անիկա. Եւ ա՛լ թող չէք տար
13 անոր բան մը ընել իր հօրը կամ՝ իր մօրը. Ու
Աստուծոյ խօսքը կը խափանէք ձեր աւանդու-
թիւնովը զոր կ՚աւանդէք. և ասոր նման շատ
ուրիշ բաներ կ՚ընէք։
14 Եւ բոլոր ժողովուրդը իրեն կանչելով՝ ըսաւ
անոնց, Լսեցէք ինծի ամէնդ ու հասկցէք։
15 Բան մը չկայ որ դուրսէն մարդուն ներսը մըտ-
նէ, ու կարող ըլլայ զանիկա պղծելու, հապա

այն բաները որ անկէ կ'ելլեն, անոնք են որ
16 մարդը կը պղծեն։ Ով որ լսելու ականջ ունի՝
թող լսէ։
17 Ու երբ այն բազմութենէն զատուելով տուն
մտաւ, իր աշակերտները հարցուցին իրեն այն
18 առակին համար։ Ու ըսաւ անոնց, Դո՞ւք ալ
այդպէս անմիտ էք. չէ՞ք հասկնար թէ ամէն
ինչ որ դուրսէն մարդուն ներսիդին կը մտնէ,
19 չկրնար զանիկա պղծել. Վասն զի ոչ թէ անոր
սրտին մէջ կը մտնէ, հապա փորը, և արտաքս-
նոցը կ'ելլէ, ու բոլոր կերակուրները կը մաքրէ։
20 Եւ կ'ըսէր թէ Ինչ որ կ'ելլէ մարդուն ներսէն,
21 անիկա կը պղծէ մարդը։ Վասն զի ներսէն,
մարդոց սրտէն, կ'ելլեն չար խորհուրդներ, շնու-
թիւններ, պոռնկութիւններ, սպանութիւն-
22 ներ, Գողութիւններ, ագահութիւններ, չա-
րութիւններ, նենգութիւն, գիճութիւն, չար
աչք, հայհոյութիւն, ամբարտաւանութիւն,
23 անզգամութիւն։ Այս բոլոր չար բաները ներ-
սէն կ'ելլեն, ու կը պղծեն մարդը։
24 Եւ անկէ ելլելով Տիւրոսի ու Սիդոնի սահ-
մանները գնաց, և տուն մը մտնելով՝ չէր ու-
զեր որ մէկուն յայտնուի, բայց չկրցաւ ծած-
25 կուիլ. Քանզի կին մը, որուն աղջիկը պիղծ ոգի
ունէր իր ներսերէն, լսեց անոր վրայով, ու եկաւ,
26 անոր ոտքը ինկաւ։ Եւ այն կինը *հեթանոս
էր, ազգով Փիւնիկէ Ասորի, ու կ'աղաչէր անոր՝
27 որ դեւը իր աղջիկէն հանէ։ Եւ Յիսուս ըսաւ
անոր, Թող առաջ որ տղաքը կշտանան,
քանզի աղէկ չէ տղոց հացը առնել ու շուներ-
28 ուն ձգել։ Անիկա պատասխան տուաւ ու
ըսաւ անոր, Այո, Տէր, վասն զի շուներն ալ
սեղանին տակ տղոց փշրանքներէն կը կերակ-
29 րուին։ Եւ ըսաւ անոր, Այդ խօսքիդ համար

*Յուն. Յոյն

30 դնա, քու աղջիկէդ դեւը ելաւ ։ Եւ կինը իր տու-
նը երթալով, գտաւ որ դեւը ելած՝ ու աղջիկը
անկողինին վրայ պառկած էր ։
31 Եւ նորէն Տիւրոսի ու Սիդոնի սահմաններէն
ելլելով, եկաւ Գալիլեայի ծովեզերքը, Դեկա-
32 պոլիսի սահմաններուն մէջէն ։ Եւ մէկը բերին
անոր առջեւ, խուլ ու դժուարախօս, ու կ՚ա-
33 ղաչէին որ անոր վրայ ձեռք դնէ ։ Եւ ժողո-
վուրդէն մէկդի առնելով զանիկա, իր մատերը
անոր ականջներուն մէջ խոթեց ու թքաւ, և
34 անոր լեզուին դպաւ, Ու երկինք նայելով՝ հա-
ռաչեց ու ըսաւ անոր, Եփփաթա, (որ ըսել է
35 Բացուէ.) Եւ իսկոյն անոր ականջները բացուե-
ցան, ու անոր լեզուին կապը քակուեցաւ, և
36 շիտակ կը խօսէր ։ Ու պատուիրեց անոնց որ
մարդո՛ւ չըսեն. և որչափ ինք կը պատուիրէր
37 անոնց, անոնք ա՛լ աւելի կը քարոզէին. Ու չա-
փէ դուրս կը զարմանային և կ՚ըսէին, Ամէն
բաները աղէկ ըրաւ ասիկա, որ խուլերուն ըսել
կու տայ և համրերուն խօսիլ ։

## ԳԼ. Ը

1 Քրիստոս հրաշքով կը կերակրէ ժողովուրդը. 11 փարիսեցիներուն խնդրած նշանը չուզեր տալ. 15 կը պատուիրէ իր աշակերտներուն որ զգուշ ըլլան փարիսեցիներուն խմորէն և Հերովդեսեաններուն խմորէն. 22 կոյրի մը աչքերը կը բանայ. 27 կը ծանուցանէ թէ ինք Քրիստոսն է, որ պիտի չարչարուի ու յարութիւն առնէ. 34 և իր աշակերտները կը յորդորէ որ համբերեն, երբ հալածուին աւետարանի դաւանութեանը համար ։

1 Այն օրերը ժողովուրդը խիստ շատ ըլլալով,
և ուտելու բան մը չունենալով, Յիսուս իրեն
2 կանչեց իր աշակերտները ու ըսաւ անոնց, Կը
խղճամ այս ժողովուրդին վրայ, վասն զի հիմա
երեք օր է որ իմ քովս են, և բան մը չունին
3 ուտելու. Եւ եթէ զանոնք անօթի ղրկեմ իրենց
տուները, ճամբուն մէջ պիտի մարին, վասն զի
4 ասոնցմէ ոմանք հեռու տեղէ եկած են ։ Եւ

Իր աշակերտները պատասխան տուին իրեն,
Այս անապատին մէջ ուրկէ՞ կրնայ մէկը հա-
5 ցով կշտացնել ասոնք, Եւ հարցուց անոնց,
Քանի՞ նկանակ ունիք, ու անոնք ըսին, Եօթը։
6 Եւ հրամանն ըրաւ ժողովուրդին՝ որ գետնին
վրայ նստին, ու առաւ եօթը նկանակը, գո-
հացաւ և կտրեց ու տուաւ աշակերտներուն,
որպէս զի ժողովուրդին առջև դնեն, և դրին։
7 Ու քանի մը մանր ձուկեր ունէին, և օրհնեց
8 ու ըսաւ որ զանոնք ալ դնեն անոնց առջև։ Եւ
կերան ու կշտացան, ու աւելցած կտորուանք-
9 ները վերցուցին եօթը զամբիւղ։ Եւ ուտողնե-
րը չորս հազարի չափ էին, ու արձակեց զա-
10 նոնք։ Եւ շուտ մը նաւ մտնելով աշակերտնե-
րուն հետ՝ եկաւ Դաղմանութայի կողմերը։
11 Եւ փարիսեցիները ելլելով՝ սկսան անոր հետ
վիճաբանութիւն ընել, և զանիկա փորձելով՝
12 իրմէ նշան մը կ'ուզէին երկինքէն։ Եւ անիկա
իր հոգիին մէջ հառաչելով ըսաւ, Ի՞նչ է որ
այս ազգը նշան կ'ուզէ. ճշմարիտ կ'ըսեմ ձեզի
13 որ այս ազգին նշան պիտի չտրուի։ Ու զանոնք
թող տալով նորէն նաւ մտաւ, ու գնաց ծովուն
միւս կողմը։
14 Եւ հաց առնելու մոռցեր էին, ու նաւուն
մէջ իրենց հետ միայն մէկ նկանակ ունէին։
15 Եւ կը պատուիրէր անոնց ու կ'ըսէր, Նայեցէք և
զգուշացէք փարիսեցիներուն խմորէն ու Հերով-
16 դէսի խմորէն։ Եւ իրարու հետ կը խորհէին ու
17 կ'ըսէին թէ Հաց չունենալնուս համար է։ Իսկ
Յիսուս անոնց խորհուրդը գիտնալով՝ ըսաւ անոնց,
Ինչո՞ւ կը խորհիք թէ հաց չունիք. տակաւին
չէ՞ք հասկնար ու չէ՞ք իմանար. դեռ սրտեր-
18 նիդ թմրա՞ծ է։ Աչքեր ունիք ու չէ՞ք տեսներ,
և ականջներ ունիք ու չէ՞ք լսեր, և չէ՞ք յիշեր։
19 Երբ հինգ նկանակը հինգ հազարին կտրեցի,

քանի՞ կողով լեցուն կտորուանք վերցուցիք․
20 ըսին անոր, Տասներկու։ Ու երբ եօթը նկանակը
չորս հազարին կոտրեցի, քանի՞ զամբիւղ լեցուն
կտորուանք վերցուցիք․ անոնք ալ ըսին, Եօթը։
21 Ու ըսաւ անոնց, Հապա ի՞նչպէս չէք հասկնար։
22 Եւ Բեթսայիդա եկաւ, ու անոր առջեւ կոյր
մը բերին, ու կ'աղաչէին իրեն որ դպչի անոր․
23 Եւ անիկա կոյրին ձեռքէն բռնելով գեղէն
դուրս հանեց, ու անոր աչքերուն թքնելով՝
ձեռքը անոր վրայ դրաւ, ու կը հարցնէր անոր
24 թէ բան մը կը տեսնէ՞։ Ան ալ նայեցաւ ու
կ'ըսէր, Մարդիկ կը տեսնեմ ծառերու պէս որ
25 կը պտըտին։ Նորէն ձեռքը անոր աչքերուն
վրայ դրաւ, ու անոր նայիլ տուաւ․ և ողջացաւ
26 ու ամէն բան համարձակ կը տեսնէր։ Եւ
զանիկա իր տունը ղրկելով՝ ըսաւ, Գեղը մի
մտներ ու գեղին մէջ մարդո՛ւ մի ըսեր։
27 Եւ Յիսուս իր աշակերտներուն հետ մէկտեղ
Փիլիպպոսի Կեսարիային գեղերը եկաւ, ու ճամ-
բուն մէջ կը հարցնէր իր աշակերտներուն ու
կ'ըսէր անոնց, Ինծի համար ո՞վ կ'ըսեն մար-
28 դիկ թէ եմ։ Եւ անոնք պատասխան տուին ու-
ըսին, Ոմանք՝ Յովհաննէս մկրտիչ, և ուրիշները՝
29 Եղիա, ուրիշներն ալ՝ մարգարէներէն մէկը։ Եւ
ինք ըսաւ անոնց, Հապա դուք ինծի համար
ո՞վ կ'ըսէք թէ եմ․ պատասխան տուաւ Պետ-
30 րոս ու ըսաւ անոր, Դուն ես Քրիստոսը։ Եւ
սաստիկ պատուիրեց անոնց՝ որ իրեն համար
մարդո՛ւ չըսեն։
31 Ու սկսաւ սորվեցնել անոնց, թէ Պէտք է որ
Որդին մարդոյ շատ չարչարանքներ կրէ, ու ե-
րէցներէն և քահանայապետներէն ու դպիրնե-
րէն մերժուի, ու սպաննուի, և երեք օրէն ետև
32 յարութիւն առնէ։ Ու այս խօսքը յայտնի խօ-
սեցաւ․ և Պետրոս մէկդի առաւ զանիկա, ու

33 սկսաւ յանդիմանել զանիկա։ Եւ ինք դարձաւ
ու իր աշակերտներուն նայելով՝ յանդիմանեց
Պետրոսը ու ըսաւ, Ետիս գնա, Սատանայ,
վասն զի դուն Աստուծոյ բաները չես մտածեր,
հապա մարդոց բաները։
34 Եւ ժողովուրդը իր աշակերտներուն հետ
մէկտեղ իրեն կանչելով՝ ըսաւ անոնց, Ով որ
կ՚ուզէ իմ ետեւէս գալ, թող իր անձը ուրա-
նայ, եւ իր խաչը վերցնէ, ու իմ ետեւէս գայ։
35 Վասն զի ով որ կ՚ուզէ իր անձը ապրեցնել,
պիտի կորսնցնէ զանիկա. եւ ով որ ինծի ու ա-
ւետարանին համար իր անձը կորսնցնէ, պիտի
36 ապրեցնէ զանիկա։ Քանզի ի՞նչ օգուտ է մար-
դուն՝ որ բոլոր աշխարհը վաստկի, եւ իր անձը
37 կորսնցնէ. Կամ իր անձին համար ի՞նչ ապա-
38 չէք պիտի տայ մարդ։ Վասն զի ով որ զիս ու
իմ խօսքերս [illegible] ամօթ սեպէ այս շնացող
ու մեղաւոր ազգին մէջ, Որդին մարդոյ ալ զա-
նիկա [illegible] ամօթ պիտի սեպէ՝ երբ գայ իր
Հօրը փառքովը սուրբ հրեշտակներուն հետ։
39 Եւ ըսաւ անոնց, Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի, որ
հոս ներկայ եղողներէն մէկ քանիները կան՝
որոնք մահուան համը պիտի չտանեն, մինչեւ
տեսնեն Աստուծոյ թագաւորութիւնը զօրու-
թիւնով եկած։

## ԳԼ. Թ

1 Քրիստոսի այլակերպութիւնը։ 11 Քրիստոս իր աշակերտներուն կը սորվեցնէ Եղիա-յի գալուն վրայով. 24 խուլ եւ համր դեւ մը կը հանէ. 30 կը նախաձայնէ իր մա-հը եւ յարութիւնը. 34 կը յորդորէ իր աշակերտները որ հեզ ըլլան. 38 եւ կը պատուիրէ անոնց որ իրեն հակառակ չեղողները չարգիլեն, ու հաւատացեալներուն գայթակղութիւն չտան։

1 Եւ վեց օրէն ետեւ Յիսուս իրեն հետ առաւ
Պետրոսը ու Յակոբոսը եւ Յովհաննէսը, ու զա-
նոնք բարձր լեռ մը հանեց առանձին, եւ անոնց
2 առջեւ այլակերպեցաւ։ Ու իր հանդերձները
եղան փայլուն խիստ ճերմակ, այնպէս որ երկրի

վրայ թափիչ մը չկրնար այնպէս ճերմկցնել։
3 Ու Եղիա Մովսէսի հետ երեւցաւ անոնց, և
4 Յիսուսի հետ կը խօսէին։ Եւ Պետրոս պատաս-
խան տուաւ ու ըսաւ Յիսուսի, Ռաբբի, աղէկ
է որ հոս կենանք. ու երեք խրճիթ շինենք,
մէկը քեզի, և մէկը Մովսէսի, ու մէկը Եղիայի.
5 Վասն զի չէր գիտեր թէ ինչ խօսի, քանզի
6 զարհուրեր էին։ Եւ ամպ մը հովանի եղաւ ա-
նոնց վրայ, ու ձայն մը եկաւ ամպէն՝ ըսելով,
Ասիկա է իմ սիրելի Որդիս, ատոր մտիկ ըրէք։
7 Եւ յանկարծ երբ ասդին անդին նայեցան, ալ
ուրիշ մէկը չտեսան, հապա միայն Յիսուսը ի-
8 րենց հետ։ Ու երբ լեռնէն վար կ'իջնէին, պատ-
ուիրեց անոնց որ տեսածնին մարդու չպատ-
մեն, բայց միայն Որդւոյն մարդոյ մեռելներէն
9 յարութիւն առնելէն ետեւ։ Եւ անոնք այն
խօսքը պահեցին. ու իրենց մէջ հարցափորձ կ'ը-
նէին թէ մեռելներէն յարութիւն առնելը ինչ
10 է։ Եւ իրեն հարցուցին ու ըսին, Այն ինչ է
որ դպիրները կ'ըսեն թէ Պէտք է որ առաջ
11 Եղիա գայ։ Անիկա պատասխան տուաւ ու ըսաւ
անոնց, Յիրաւի առաջ Եղիա կու գայ, և ամէն
բան կարգի կը դնէ. և թէ ինչպէս գրուած է
Որդւոյ մարդոյ համար, որ շատ չարչարանքներ
12 պիտի կրէ ու անարգուի. Բայց ձեզի կ'ըսեմ որ
Եղիա եկաւ ալ, և ինչ որ ուզեցին՝ ըրին անոր,
ինչպէս գրուած է անոր համար։
13 Ու աշակերտներուն քով գալով՝ տեսաւ շատ
ժողովուրդ անոնց բոլորտիքը, և դպիրները որ
14 վիճաբանութիւն կ'ընէին անոնց հետ։ Եւ շուտ
մը բոլոր ժողովուրդը երբ տեսան զանիկա,
խիստ զարմացան, ու առաջ վազելով բարեւ
15 կու տային անոր։ Եւ հարցուց դպիրներուն թէ
16 Ի՞նչ վիճաբանութիւն կ'ընէք անոնց հետ։ Ու
ժողովուրդէն մէկը պատասխան տալով՝ ըսաւ,

Վարդապետ, իմ որդիս քեզի բերի, որ համր
17 ոգի ունի։ Եւ ուր որ անոր հասնի, զանիկա
գետինը կը զարնէ, ան ալ կը փրփրի ու իր ակ-
ռաները կը կրճտէ ու կը ցամքի. ու քու աշա-
կերտներուդ ըսի որ զանիկա հանեն ու չկրցան։
18 Պատասխան տուաւ անոնց ու ըսաւ, Ով անհա-
ւատ ազգ, մինչեւ ե՞րբ ձեզի հետ պիտի ըլլամ,
մինչեւ ե՞րբ ձեզի պիտի համբերեմ. ինծի բե-
19 րէք զանիկա։ Եւ զանիկա բերին իրեն. երբ
տղան տեսաւ զանիկա, շուտ մը չար ոգին ցնցեց
զանիկա, ու գետինը ինկած կը թաւալէր ու
20 կը փրփրէր։ Եւ Յիսուս հարցուց անոր հօրը ու
ըսաւ, Ո՞րչափ ատեն է որ այդ բանը ատոր ե-
ղաւ. ու անիկա ըսաւ, Տղայութենէն ի վեր.
21 Եւ շատ անգամ կրակի ու ջուրի մէջ կը նետէ
զանիկա՝ որպէս զի կորսնցնէ. բայց եթէ կարո-
ղութիւն մը ունիս, օգնէ մեզի, խղճալով մեր
22 վրայ։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Եթէ կրնաս
հաւատալու, ամէն բան կարելի է անոր որ կը
23 հաւատայ։ Եւ տղուն հայրը շուտ մը աղաղա-
կեց ու արցունքով ըսաւ, Կը հաւատամ, Տէր,
24 օգնէ իմ անհաւատութեանս։ Յիսուս երբ տե-
սաւ որ ժողովուրդը վրան կը դիզուի, սաստեց
պիղծ ոգիին ու ըսաւ անոր, Համր ու խուլ ոգի,
կը հրամայեմ քեզի, ելիր ատկէ, ու մէյմըն ալ
25 չմտնես ատոր ներսը։ Եւ կանչուըռտելով սաս-
տիկ ցնցեց զանիկա ու ելաւ. ու տղան մեռելի պէս
եղաւ, այնպէս որ շատերը ըսին թէ Մեռաւ։
26 Եւ Յիսուս անոր ձեռքէն բռնելով վերցուց զա-
27 նիկա. ան ալ կայնեցաւ։ Ու երբ ինք տուն մտաւ,
իր աշակերտները առանձին հարցուցին իրեն՝
28 ըսելով, Մենք ինչո՞ւ չկրցանք հանել զանիկա։ Եւ
ըսաւ անոնց, Այդ տեսակին կարելի չէ ուրիշ բա-
նով մը ելլել, բայց միայն աղօթքով ու ծոմա-
պահութեամբ։

29 Եւ անկէ ելլելով Գալիլեայի մէջէն կ'անց-
30 նէին, ու չէր ուզեր որ մէկը գիտնայ։ Վասն
զի կը սորվեցնէր իր աշակերտներուն ու կ'ըսէր
անոնց թէ Որդին մարդոյ պիտի մատնուի մար-
դոց ձեռքը, և զանիկա պիտի սպաննեն. ու երբ
սպաննուի՝ երրորդ օրը յարութիւն պիտի առ-
31 նէ։ Եւ անոնք չէին հասկնար այն խօսքը, ու
կը վախնային իրեն հարցնելու։
32 Եւ եկաւ Կափառնայում, ու երբ տուն մտաւ՝
հարցուց անոնց, Ի՞նչ վիճաբանութիւն կ'ընէիք
33 ճամբան իրարու հետ։ Եւ անոնք լուռ կեցան,
վասն զի ճամբուն մէջ իրարու հետ վիճաբա-
34 նութիւն կ'ընէին թէ ո՛վ մեծ է։ Ու երբ նըս-
տաւ, կանչեց տասներկուքը ու ըսաւ անոնց,
Եթէ մէկը կ'ուզէ առաջին ըլլալ, ամէնուն յե-
35 տինը պիտի ըլլայ և ամէնուն սպասաւորը։ Ու
տղայ մը առաւ կայնեցուց անոնց մէջ, և իր
36 գիրկը առնելով զանիկա՝ ըսաւ անոնց, Ով որ
այսպիսի տղայմէն մէկը ընդունի իմ անունովս,
զիս կ'ընդունի. և ով որ զիս ընդունի, ոչ թէ
37 զիս կ'ընդունի, հապա զիս ղրկողը։ Պատասխան
տուաւ անոր Յովհաննէս ու ըսաւ, Վարդա-
պետ, մէկը տեսանք որ քու անունովդ դևեր
կը հանէր, ու մեր ետևէն չպտըտիր, և զանի-
կայ արգիլեցինք՝ մեր ետևէն չպտըտելուն հա-
38 մար։ Եւ Յիսուս ըսաւ, Մի արգիլէք զանիկա,
վասն զի մէկը չկայ որ իմ անունովս հրաշք
գործէ, ու կարենայ շուտ մը զիս հայհոյել։
39 Քանզի ան որ *մեզի հակառակ չէ, մեր" կող-
40 մէն է։ Վասն զի ով որ ձեզի գաւաթ մը ջուր
խմցնէ †իմ անունովս" թէ դուք Քրիստոսին
էք, ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Անիկա իր վարձքը
41 պիտի չկորսնցնէ։ Եւ ով որ գայթակղեցնէ այս
պզտիկներէն մէկը որ ինծի կը հաւատան, աւելի

*Ոմնք., ձեզի հակառակ չէ, ձեր †Ոմնք., այս անունով

տղէկ էր անոր՝ որ աղացքի քար մը իր վիզէն
42 կախուէր, ու ծովը ձգուէր։ Եւ եթէ քու ձեռքդ
քեզ կը գայթակղեցնէ, կտրէ զանիկա. աղէկ
է քեզի պակասաւոր մտնել կեանքը, քան թէ
երկու ձեռք ունենալ ու գեհենը երթալ չմա-
43 րելու կրակին մէջ, Ուր անոնց որդը չմեռնիր
44 ու կրակը չմարիր։ Եւ եթէ քու ոտքդ քեզ կը
գայթակղեցնէ, կտրէ զանիկա. աղէկ է քեզի
կաղ մտնել կեանքը, քան թէ երկու ոտք ու-
նենալ ու գեհենը ձգուիլ չմարելու կրակին
45 մէջ, Ուր անոնց որդը չմեռնիր ու կրակը չմա-
46 րիր։ Եւ եթէ քու աչքդ քեզ կը գայթակղե-
ցընէ, հանէ զանիկա. աղէկ է քեզի մէկ աչ-
քով Աստուծոյ թագաւորութիւնը մտնել, քան
թէ երկու աչք ունենալ ու կրակին գեհենը
47 ձգուիլ, Ուր անոնց որդը չմեռնիր ու կրակը
48 չմարիր։ Վասն զի ամէն մարդ կրակով պիտի
49 աղուի, և ամէն զոհ աղով պիտի աղուի։ Աղը
աղէկ է, բայց եթէ աղը անհամնայ, ինչո՞վ
պիտի համեցնէք. ձեր անձին մէջ աղ ունե-
ցէք, և իրարու հետ խաղաղութիւն ըրէք։

## ԳԼ. Ժ

2 Քրիստոս կը վիճաբանի փարիսեցիներուն հետ՝ կին արձակելու վրայով. 13 իրեն բերուած տղաքը կ'օրհնէ. 17 կ'իմացնէ հարուստ մարդու մը՝ թէ ի՛նչ ընելու է որ յաւիտենական կեանքը ժառանգէ. 23 հարստութեան վտանգը կը ցուցնէ իր աշակերտներուն. 28 վարձք կը խոստանայ անոնց՝ որ աւետարանին համար իրենց որևիցէ բաները կը թողուն. 32 կը նախաձայնէ իր մահը և յարութիւնը. 33 երկու փառասէր աշակերտները կը խրատէ որ աւելի իրեն հետ չարչարուիլը մտածեն. 46 և կոյր Բարտիմէոսի աչքերը կը բանայ։

1 Եւ անկէ ելլելով՝ Հրէաստանի սահմանները
եկաւ Յորդանանու անդին կողմէն, ու նորէն
ժողովուրդները անոր քով կը ժողվուէին. և
ինչպէս սովորութիւն ունէր, դարձեալ կը սոր-
վեցնէր անոնց։
2 Ու փարիսեցիները քովը եկան, և զանիկա
փորձելով՝ կը հարցնէին անոր թէ Արժա՞ն է

3 որ այրը իր կինը արձակէ։ Եւ անիկա պատաս-
խան տալով անոնց ըսաւ, Մովսէս ձեզի ի՞նչ
4 պատուիրեց։ Եւ անոնք ըսին, Մովսէս հրաման
5 տուաւ արձակման գիր գրել ու արձակել։ Եւ
Յիսուս պատասխան տալով անոնց ըսաւ, Ձեր
սրտին կարծրութեանը համար գրեց ձեզի այդ
6 պատուէրը. Բայց ստեղծագործութեան սկիզ-
բէն Աստուած զանոնք արու և էգ ըրաւ, ու
7 ըսաւ, Ասոր համար մարդ իր հայրը ու մայրը
8 պիտի ձգէ և իր կնոջ պիտի յարի, Ու երկուքը
մէկ մարմին պիտի ըլլան. ուստի ա՛լ երկու չեն,
9 հապա մէկ մարմին. Ուրեմն զայն որ Աստուած
10 միացուցեր, մարդ թող չզատէ։ Եւ տունը իր
աշակերտները նորէն նոյն բանը հարցուցին ի-
11 րեն։ Ու ըսաւ անոնց, Ով որ իր կինը արձակէ
և ուրիշ մը առնէ, անոր դէմ շնութիւն կ'ընէ։
12 Ու կին մը եթէ իր էրիկէն զատուի և ուրիշ
էրկան մը ըլլայ, շնութիւն կ'ընէ։
13 Եւ մանր տղաք բերին իրեն. որպէս զի անոնց
դպչի, բայց աշակերտները կը յանդիմանէին
14 բերողները։ Յիսուս երբ տեսաւ, սրդողելով
անոնց ըսաւ, Թող տուէք այդ մանր տղաքը որ
ինծի գան, և մի արգիլէք զանոնք, վասն զի Աս-
տուծոյ թագաւորութիւնը այդպիսիներուն է։
15 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Ով որ Աստուծոյ թա-
գաւորութիւնը պզտիկ տղու մը պէս չընդունի,
16 բնաւ պիտի չմտնէ անոր մէջ։ Եւ զանոնք գիրկը ա-
ռաւ, անոնց վրայ ձեռք դրաւ ու օրհնեց զանոնք։
17 Ու երբ անիկա դուրս ելաւ ճամբուն մէջ, մէկ
մարդ մը վազեց, ու անոր առջև ծունկ դնելով
կը հարցնէր անոր ու կ'ըսէր, Բարի վարդապետ,
ի՞նչ ընեմ որ յաւիտենական կեանքը ժառան-
18 գեմ։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Ինչո՞ւ զիս բարի
կ'անուանես. մէկէն զատ բարի չկայ, որ է Աս-
19 տուած։ Պատուիրանքները գիտես. Շնութիւն

մի ըներ, Սպանութիւն մի ըներ, Գողութիւն
մի ըներ, Սուտ վկայութիւն մի ըներ, Զրկանք
20 մի ըներ, Քու հայրդ ու մայրդ պատուէ։ Անի-
կա պատասխան տուաւ ու ըսաւ անոր, Վար-
դապետ, ատոնք ամէնը մանկութենէս ի վեր
21 պահեր եմ։ Եւ Յիսուս անոր նայելով՝ սիրեց
զանիկա, ու ըսաւ անոր, Մէկ բան պակաս է
քեզի. գնա ունեցածդ ծախէ և տուր աղքատ-
ներուն, ու երկինքը գանձ պիտի ունենաս, և
22 խաչը վերցուր ու եկուր իմ ետեւէս։ Եւ անի-
կա այս խօսքին համար խոժոռելով տրտմած
23 գնաց, վասն զի շատ ստացուածք ունէր։ Եւ
Յիսուս իր բոլորտիքը նայելով՝ ըսաւ իր աշա-
կերտներուն, Որչափ դժուար է անոնց որ հա-
րստութիւն ունին Աստուծոյ թագաւորու-
24 թիւնը մտնել։ Եւ աշակերտները զարմացեր էին
անոր խօսքերուն վրայ. բայց Յիսուս նորէն պա-
տասխան տալով՝ անոնց ըսաւ, Որդեակներ, ո՜ր-
չափ դժուար է իրենց հարստութեան յուսացող-
ներուն Աստուծոյ թագաւորութիւնը մտնել։
25 Դիւրին է որ ուղտը ասեղին ծակէն անցնի,
քան թէ հարուստը Աստուծոյ թագաւորու-
26 թիւնը մտնէ։ Եւ անոնք խիստ շատ կը զարմա-
նային ու կ'ըսէին իրարու, Այլ ո՞վ կրնայ փր-
27 կուիլ։ Եւ Յիսուս անոնց նայելով՝ ըսաւ, Ասի-
կա մարդոց կողմանէ անկարելի է, բայց ոչ Աս-
տուծոյ կողմանէ. քանզի Աստուծոյ կողմանէ
28 ամէն բան կարելի է։ Պետրոս սկսաւ ըսել ա-
նոր, Ահա մենք ամէն բան թողուցինք և քու
29 ետեւէդ եկանք։ Եւ Յիսուս պատասխան տալով՝
ըսաւ, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Մէկը չկայ որ
թողուց տուն, կամ եղբայրներ, կամ քոյրեր,
կամ հայր, կամ մայր, կամ կին, կամ որդի-
ներ, կամ արտեր՝ ինծի համար ու աւետարա-
30 նին համար, Որ պիտի չառնէ հարիւրապատիկ

հիմա այս ատենս տուներ, ու եղբայրներ, և
քոյրեր, ու մայրեր, և որդիներ, ու արտեր
հալածանքներու հետ, և գալու աշխարհին մէջ՝
31 յաւիտենական կեանքը։ Բայց շատ առաջինները
պիտի ըլլան յետին, ու յետինները՝ առաջին։
32 Եւ անոնք դէպ ի Երուսաղէմ կ'ելլէին ու—
ճամբուն մէջ էին. և Յիսուս անոնցմէ առաջ
կ'երթար, ու անոնք կը զարմանային, ու ետե-
ւէն երթալով՝ կը վախնային։ Եւ նորէն քովը
առնելով տասներկուքը, սկսաւ ըսել անոնց
33 ինչ բաներ որ իրեն պիտի պատահէին. Ու-
ըսաւ, Ահա Երուսաղէմ կ'ելլենք, և Որդին մար-
դոյ պիտի մատնուի քահանայապետներուն ու
դպիրներուն, և զանիկա մահուան պիտի դա-
տապարտեն, ու զանիկա հեթանոսներուն պիտի
34 մատնեն. Եւ զանիկա ծաղր պիտի ընեն ու ծեծեն,
և անոր վրայ պիտի թքնեն, ու զանիկա մեռց-
նեն, ու երրորդ օրը յարութիւն պիտի առնէ։
35 Եւ անոր քով գային Յակոբոս ու Յովհան-
նէս, Զեբեդէոսի որդիները, ու ըսին, Վարդա-
պետ, կ'ուզենք որ քեզ ինչ որ խնդրենք՝ մեզի
36 ընես։ Ան ալ ըսաւ անոնց, Ի՞նչ կ'ուզէք որ
37 ձեզի ընեմ։ Ու անոնք ըսին իրեն, Շնորհէ մե-
զի որ նստինք մեզմէ մէկը աջ կողմդ և միւսը
38 ձախ կողմդ քու փառքիդ մէջ։ Եւ Յիսուս ըսաւ
անոնց, Չէք գիտեր ինչ կը խնդրէք. կրնա՞ք
խմել այն գաւաթը զոր ես կը խմեմ, և այն
մկրտութիւնը մկրտուիլ՝ զոր ես կը մկրտուիմ։
39 Եւ անոնք ըսին իրեն, Կրնանք. ու Յիսուս ըսաւ
անոնց, Այն գաւաթը զոր ես կը խմեմ՝ պիտի
խմէք, և այն մկրտութիւնը զոր ես կը մկրտ-
40 ուիմ՝ պիտի մկրտուիք. Բայց իմ աջ կողմս ու
ձախ կողմս նստիլը իմս չէ տալը, հապա որոնց
41 որ պատրաստուած է։ Ու երբ միւս տասը
աշակերտները լսեցին, սկսան Յակոբոսի ու Յովհան-

42 նէսի նեղանալ։ Իսկ Յիսուս իրեն կանչեց զա-
նոնք ու ըսաւ անոնց, Գիտէք որ ազգերուն իշ-
խան սեպուածները կը տիրեն անոնց, և անոնց
43 մեծամեծները կ'իշխեն անոնց․ Բայց ձեր մէջ
այնպէս պիտի չըլլայ, հապա ձեզմէ ով որ մեծ
ըլլալ կ'ուզէ, անիկա ձեր սպասաւորը ըլլայ․
44 Ու ձեզմէ ով որ առաջին ըլլալ կ'ուզէ, անիկա
45 ամէնուն ծառայ ըլլայ։ Քանզի Որդին մարդոյ
ալ չեկաւ սպասաւորութիւն ընդունելու, հա-
պա սպասաւորութիւն ընելու, և իր կեանքը
շատերուն համար փրկանք մը տալու։
46 Ու եկան Երիքով․ ու երբ Երիքովէ կ'ելլէր
աշակերտներովը և շատ բազմութիւնով, Տի-
մէոսի որդին կոյր Բարտիմէոս ճամբուն քով
47 նստեր էր մուրալու։ Ու երբ լսեց թէ Յիսուս
Նազովրեցին է, սկսաւ աղաղակել ու ըսել, Յի-
48 սուս որդի Դաւթի, ողորմէ ինծի։ Եւ շատերը
կը յանդիմանէին զանիկա որպէս զի լռէ, բայց
անիկա ա՛լ աւելի կ'աղաղակէր, Որդի Դաւթի,
49 ողորմէ ինծի։ Եւ Յիսուս կանգ առնելով՝ ըսաւ
որ զանիկա կանչեն․ կանչեցին կոյրը ու ըսին
50 անոր, Քաջ եղիր, ելիր, քեզ կը կանչէ։ Եւ
անիկա իր հանդերձը ձգելով, ելաւ ու եկաւ
51 Յիսուսի։ Եւ Յիսուս պատասխան տուաւ ու
անոր ըսաւ, Ի՞նչ կ'ուզես որ քեզի ընեմ․ կոյ-
րը ըսաւ անոր, Ռաբբունի, որ աչքերս բաց-
52 ուին։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Գնա․ քու հա-
ւատքդ քեզ բժշկեց․ և շուտ մը անոր աչքե-
րը բացուեցան, ու ճամբան Յիսուսի ետևէն
կ'երթար։

## ԳԼ․ ԺԱ

1 Քրիստոս իշու վրայ հեծած՝ Երուսաղէմ կը մտնէ հանդէսով. 13 անպտուղ թզենին կ'անիծէ. 13 տաճարը կը մաքրէ. 20 կը յորդորէ իր աշակերտները որ հաստատ հաւատք ունենան, և իրենց թշնամիներուն ներեն. 27 և իր ըրած բաներուն օրինաւոր ըլլալը կը հաստատէ Յովհաննէսի վկայութիւնովը, որ Աստուծմէ ղրկուած մարդ մըն էր։

1 Ու երբ Երուսաղէմի մօտեցան, Բեթփագէ

ու Բեթանիա դէպ ի Ձիթենեաց լեռը, Յիսուս
2 իր աշակերտներէն երկուքը ղրկեց, Եւ ըսաւ
անոնց, Գացէք այդ ձեր դիմացի գեղը, և անոր
մէջ մտնելնուդ պէս՝ պիտի գտնէք կապուած ա-
ւանակ մը, որուն վրայ մարդ մը նստած չէ. ար-
3 ձակեցէք զանիկա ու բերէք. Եւ եթէ մէկը
ըսէ ձեզի թէ Այդ ի՞նչ կ'ընէք, ըսէք թէ Տէ-
րոջը պէտք է. և շուտ մը հոս պիտի ղրկէ զա-
4 նիկա: Գացին և գտան աւանակը դուրսը փո-
ղոցին մէջ դրանը քով կապուած, ու արձակե-
5 ցին զանիկա: Եւ հոն կայնողներէն ոմանք ըսին
անոնց, Ի՞նչ կ'ընէք որ կ'արձակէք այդ աւա-
6 նակը: Եւ անոնք ըսին անոնց ինչպէս Յիսուս
7 պատուիրեր էր, ու իրենց թող տուին: Եւ
աւանակը Յիսուսի բերին, ու անոր վրայ իրենց
8 հանդերձները դրին, ու նստաւ անոր վրայ: Եւ
շատերը իրենց հանդերձները ճամբուն վրայ
փռեցին, և ուրիշները ծառերէն ճիւղեր կը
9 կտրէին ու ճամբուն վրայ կը տարածէին: Եւ
առջևէն ու ետևէն գացողները կ'աղաղակէին
ու կ'ըսէին, Ովսաննա. Օրհնեալ է ան որ Տէ-
10 րոջ անունովը կու գայ. Օրհնեալ է մեր Դա-
ւիթ հօրը թագաւորութիւնը որ *կու գայ.
Ովսաննա ի բարձունս:
11 Եւ Յիսուս մտաւ Երուսաղէմ ու տաճարը,
և չորս կողմը ամէն բաները աչքէ անցուց.
և արդէն ժամանակը իրիկուն ըլլալով Բեթա-
նիա ելաւ տասներկուքին հետ մէկտեղ:
12 Ու հետևեալ օրը երբ Բեթանիայէ կ'ելլէին,
13 անօթեցաւ. Եւ հեռուանց տերևալից թզենի
մը տեսնելով եկաւ որ թերևս անոր վրայ բան
մը գտնէ. ու երբ անոր քով գնաց, տերևնե-
րէն զատ բան մը չգտաւ, վասն զի դեռ թուզի
14 ատեն չէր. †Եւ պատասխան տուաւ ու ըսաւ

*Ոմանք, Տէրոջը անունովը կու գայ

†Ոմանք, Եւ Յիսուս

*անոր, Ասկէ ետև մէկը քեզմէ պտուղ չուտէ*
*յաւիտեան. և իր աշակերտները լսեցին։*
15 *Ու եկան Երուսաղէմ. և Յիսուս տաճարը*
*մտնելով՝ սկսաւ դուրս հանել զանոնք որ տա-*
*ճարին մէջ կը ծախէին ու կը գնէին. և ստակ*
*փոխողներուն սեղանները ու աղաւնի ծախող-*
16 *ներուն աթոռները կործանեց. Եւ թող չէր*
*տար որ մէկը տաճարին մէջէն աման մը անցը-*
17 *նէ։ Եւ կը սորվեցնէր ու կ'ըսէր անոնց, Գրուած*
*չէ՞ որ Իմ տունս աղօթքի տուն պիտի կոչուի*
*բոլոր ազգերուն. բայց դուք աւազակ-*
18 *ներու այր ըրիք։ Եւ դպիրները ու քահանա-*
*յապետները զայս լսելով՝ կը փնտռէին թէ ինչ-*
*պէս կորսնցնեն զանիկա, քանզի անկէ կը վախ-*
*նային. վասն զի բոլոր ժողովուրդը զարմացեր*
19 *էր անոր վարդապետութեանը վրայ։ Ու երբ*
*իրիկուն եղաւ, քաղաքէն դուրս ելաւ։*
20 *Եւ առտուանց երբ անկէ կ'անցնէին, թզենին*
21 *տեսան արմատէն չորցած։ Ու Պետրոսի միտքը*
*եկաւ ու ըսաւ անոր, Ռաբբի, ահա թզենին*
22 *զոր անիծեցիր՝ չորցեր է։ Եւ Յիսուս պատաս-*
*խան տալով՝ ըսաւ անոնց, Աստուծոյ հաւատք*
23 *ունեցէք. Քանզի ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Ով որ*
*այս լերանը ըսէ, Ելիր ու ծովը ինկիր, և իր*
*սրտին մէջ չերկմտի, հապա հաւատայ թէ ինչ*
*որ ըսէ կ'ըլլայ, պիտի ըլլայ անոր ինչ որ ըսէ։*
24 *Ասոր համար կ'ըսեմ ձեզի, Ինչ բան որ աղօթ-*
*քով կը խնդրէք, հաւատացէք թէ պիտի առ-*
25 *նէք, և պիտի ըլլայ ձեզի։ Ու երբ աղօթքի կը*
*կայնիք, ներեցէք եթէ մէկուն դէմ բան մը*
*ունիք, որպէս զի ձեր Հայրն ալ որ երկինքն է,*
26 *ներէ ձեզի ձեր յանցանքները։ Իսկ եթէ դուք*
*չէք ներեր, ձեր Հայրն ալ որ երկինքն է, պի-*
*տի չներէ ձեր յանցանքները։*
27 *Եւ նորէն Երուսաղէմ եկան. ու երբ տաճարին*

մէջ կը պտըտէր, քահանայապետները և դպիր-
28 ները ու ծերերը անոր եկան, Ու ըսին անոր,
Ի՞նչ իշխանութիւնով կ'ընես այդ բաները, և
ո՞վ տուաւ քեզի այդ իշխանութիւնը, որ այդ
29 բաները ընես։ Պատասխան տուաւ Յիսուս ու
ըսաւ անոնց, Ես ալ ձեզի բան մը հարցնեմ, ու
եթէ ինծի պատասխան տաք, ես ալ ձեզի պիտի
ըսեմ թէ ինչ իշխանութիւնով կ'ընեմ այս բա-
30 ները։ Յովհաննէսի մկրտութիւնը երկինքէ՞ն
էր՝ թէ մարդոցմէ. պատասխան տուէք ինծի։
31 Եւ անոնք իրենց մէջ կը խորհէին ու կ'ըսէին,
Եթէ ըսենք՝ Երկինքէն, պիտի ըսէ, Հապա ին-
32 չո՞ւ չհաւատացիք անոր. Իսկ եթէ ըսենք՝ Մար-
դոցմէ, ժողովուրդէն կը վախնային, վասն զի
ամէնը *գիտէին Յովհաննէսը թէ ճշմարտապէս
33 մարգարէ էր։ Եւ պատասխան տալով ըսին Յի-
սուսի, Չենք գիտեր. և Յիսուս պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Ես ալ ձեզի չեմ ըսեր
թէ ինչ իշխանութիւնով կ'ընեմ այս բաները։

## ԳԼ. ԺԲ

1 Քրիստոս կը նախաձայնէ հրեաներուն մերժուիլը և հեթանոսներուն կոչումը՝ այգեպանի մշակներուն ձեռքը յանձնուած այգիին առակովը. 13 պատասխան կու տայ՝ կայսրին հարկ տալու վրայով. 18 կը ցուցնէ սադուկեցիներուն իրենց մոլորութիւնը յարութիւն չկայ ըսելնուն համար. 28 առաջին պատուիրանքին վրայով հարցնող դպիրին խնդիրը կը լուծէ. 35 կը հրէ այն կարծիքը զոր դպիրները ունէին Քրիստոսի վրայով. 38 և կը պատուիրէ ժողովուրդին որ զգուշ ըլլան անոնց փառասիրութենէն և կեղծաւորութենէն։ 41 Քրիստոս կը գովէ երկու լումայ տուող աղքատ որբևարին։

1 Եւ սկսաւ առակներով խօսիլ անոնց հետ ը-
սել, Մարդ մը այգի տնկեց, ու անոր բոլորտի-
քը ցանկ քաշեց, և ստորահնձան փորեց, ու
աշտարակ շինեց, և զանիկա մշակներու յանձ-
2 նեց, ու ինք օտար երկիր մը գնաց։ Եւ ատե-
նին ծառայ մը ղրկեց մշակներուն, որպէս զի
3 մշակներէն այգիին պտուղէն առնէ։ Իսկ անոնք

*Յուն. ունէին

բռնեցին, ծեծեցին զանիկա ու պարապ ճամ-
4 բեցին։ Նորէն ուրիշ ծառայ մըն ալ ղրկեց ա-
նոնց, և զանիկա քարկոծելով գլուխը վիրաւո-
5 րեցին ու անարգուած ճամբեցին։ Եւ դարձեալ
ուրիշ մը ղրկեց, ու զանիկա սպաննեցին. և շատ
ուրիշներ ալ ղրկեց, որոնց մէկ քանիները ծեծեցին
6 ու մէկ քանիները սպաննեցին։ Ուստի սիրելի
որդի մըն ալ ունենալով, վերջապէս զանիկա ալ
ղրկեց անոնց՝ ըսելով, Թերևս ամչնան իմ որ-
7 դիէս։ Բայց այն մշակները ըսին իրարու, Ասի-
կա է ժառանգը. եկէք զանիկա սպաննենք, ու
8 ժառանգութիւնը մերը ըլլայ։ Եւ բռնեցին զա-
նիկա ու սպաննեցին, և այգիէն դուրս հանե-
9 ցին։ Ուստի այգիին տէրը ի՞նչ պիտի ընէ. պի-
տի գայ ու կորսնցնէ մշակները, և այգին ու-
10 րիշներու պիտի տայ։ Եւ այս գիրը չէ՞ք կար-
դացեր, Թէ Այն քարը զոր շինողները անարգե-
11 ցին, անիկա անկիւնին գլուխ եղաւ. Ասիկա
Տէրոջմէն եղաւ, և զարմանալի է մեր աչքերուն։
12 Եւ կը փնտռէին թէ ինչպէս բռնեն զանի-
կա, բայց ժողովուրդէն վախցան, քանզի իմա-
ցան որ այն առակը իրենց համար ըսաւ, և
ձգեցին զանիկա ու գացին։
13 Եւ փարիսեցիներէն ու Հերովդեսեաններէն
քանի մը հոգի ղրկեցին անոր, որպէս զի խօս-
14 քով բռնեն զանիկա։ Եւ անոնք եկան ու ըսին
անոր, Վարդապետ, գիտենք որ ճշմարիտ ես,
և մէկու՛ն համար հոգ չէ, քանզի մարդոց
երեսպաշտութիւն չես ըներ, հապա ճշմար-
տութեամբ Աստուծոյ ճամբան կը սորվեցնես.
Կայսրին տուրք տալ արժա՞ն է՝ թէ ոչ, տա՞նք՝
15 թէ չտանք։ Եւ Յիսուս գիտնալով անոնց կեղծա-
ւորութիւնը՝ ըսաւ անոնց, Ինչո՞ւ զիս կը փոր-
ձէք. բերէք ինծի դահեկան մը որ տեսնեմ։
16 Եւ անոնք բերին. ու ըսաւ անոնց, Որո՞ւն է

այս պատկերը ու գիրը. և անոնք ըսին անոր,
17 Կայսերին։ Եւ Յիսուս պատասխան տալով ըսաւ
անոնց, Զայն որ Կայսերինն է՝ Կայսերին տուէք,
և զայն որ Աստուծոյն է՝ Աստուծոյ տուէք. ու
զարմացան անոր վրայ։
18 Եւ անոր քով եկան Սադուկեցիները որոնք
կ'ըսեն թէ յարութիւն չկայ, և անոր հարցու-
19 ցին՝ ըսելով, Վարդապետ, Մովսէս մեզի գրեց
որ եթէ մէկուն եղբայրը մեռնի, ու կինը ձգէ
և զաւակ չձգէ, անոր եղբայրը առնէ անոր կի-
20 նը, և իր եղբօրը զաւակ հանէ։ Արդ եօթը եղ-
բայրներ կային, և առաջինը կին առաւ ու մե-
21 ռաւ և զաւակ չձգեց։ Ու երկրորդը առաւ զա-
նիկա ու մեռաւ, և ան ալ զաւակ չձգեց. նոյն-
22 պէս ալ երրորդը։ Ու եօթն ալ զանիկա առին
և զաւակ չձգեցին. ամէնէն ետքը կինն ալ մե-
23 ռաւ։ Ուրեմն յարութեան ատեն, երբ յա-
րութիւն առնեն, անոնցմէ որո՞ւն կինը պիտի
ըլլայ. վասն զի եօթն ալ զանիկա կին ունեցան։
24 Եւ Յիսուս պատասխան տալով՝ անոնց ըսաւ,
Ասոր համար չէ՞ որ մոլորած էք, որ ոչ գիրքերը
25 գիտէք և ոչ Աստուծոյ զօրութիւնը։ Քանզի
երբ մեռելներէն յարութիւն առնեն, ոչ կին
կ'առնեն և ոչ էրկան կը տրուին, հապա երկին-
26 քի հրեշտակներուն պէս են։ Բայց մեռելնե-
րուն համար՝ թէ յարութիւն կ'առնեն, Մով-
սէսի գիրքին մէջ չէ՞ք կարդացեր մորենիին
վրայ, ինչպէս Աստուած անոր խօսեցաւ՝ ըսե-
լով, Ես եմ Աբրահամի Աստուածը, և Իսահա-
27 կի Աստուածը, ու Յակոբի Աստուածը։ Անիկա
մեռելներուն Աստուածը չէ, հապա կենդանի-
ներուն. ուրեմն դուք խիստ մոլորած էք։
28 Եւ դպիրներէն մէկը եկաւ, ու մտիկ կ'ընէր
անոնց՝ երբ վիճաբանութիւն կ'ընէին, ու երբ
տեսաւ թէ աղէկ պատասխան տուաւ անոնց,

հարցուց անոր ու ըսաւ, Ո՞րն է բոլոր պատուի-
29 րանքներուն առաջինը։ Եւ Յիսուս պատասխա-
նեց անոր, Բոլոր պատուիրանքներուն առաջի-
նը այս է. Լսէ՛, ով Իսրայէլ, մեր Տէր Աստուա-
30 ծը մէկ Տէր է. Եւ քու Տէր Աստուածդ սիրես
քու բոլոր սրտէդ, և քու բոլոր անձէդ, ու
քու բոլոր մտքէդ, և քու բոլոր զօրութենէդ.
31 ասիկա է առաջին պատուիրանքը։ Ու երկրոր-
դը ասոր նման, Քու ընկերդ սիրես քու անձիդ
պէս. ասոնցմէ մեծ ուրիշ պատուիրանք չկայ։
32 Եւ դպիրը ըսաւ անոր, Աղէկ, վարդապետ, շի-
տակ խօսեցար թէ Աստուած մէկ է, և անկէ
33 զատ ուրիշ մը չկայ. Եւ բոլոր սրտէ, ու բոլոր
մտքէ, և բոլոր անձէ, ու բոլոր զօրութենէ զա-
նիկա սիրել, ու ընկերը իր անձին պէս սիրելը
34 ամէն ողջակէզներէ ու զոհերէ աւելի է։ Եւ
Յիսուս տեսնելով որ անիկա խելացութեամբ
պատասխան տուաւ, ըսաւ անոր, Աստուծոյ
թագաւորութենէն շատ հեռու չես. և ա՛լ ուրիշ
մէկը չէր համարձակեր անոր բան մը հարցնելու։
35 Եւ Յիսուս երբ տաճարին մէջ կը սորվեցնէր,
պատասխան տուաւ ու ըսաւ, Դպիրները ի՞նչ-
պէս կ'ըսեն թէ Քրիստոս Դաւիթի որդին է.
36 Եւ ինք Դաւիթ Սուրբ Հոգիով կ'ըսէ, Տէրը իմ
Տէրոջս ըսաւ, Նստէ իմ աջ կողմս, մինչև քու
թշնամիներդ ոտքերուդ պատուանդան ընեմ։
37 Ուրեմն Դաւիթ ինք որ զանիկա Տէր կը կոչէ,
ի՞նչպէս անիկա անոր որդին կ'ըլլայ. և ժո-
ղովուրդէն շատերը յօժարութեամբ մտիկ կ'ը-
նէին անոր։
38 Եւ իր վարդապետութեան մէջ կ'ըսէր ա-
նոնց, Զգուշացէք դպիրներէն, որոնք կ'ուզեն
փառաւոր հանդերձներով պտըտիլ, և շուկանե-
39 րուն մէջ բարևներ կը փնտռեն, Ու ժողովարաննե-
րուն մէջ առաջին աթոռները, և ընթրիքներու

40 մէջ առաջին բազմոցները․ Որոնք որբեւայրինե-
րուն տուները կ՚ուտեն, ու ձեւով երեւնալու
համար աղօթքը կ՚երկնցնեն․ ասոնք աւելի դա-
տապարտութիւն պիտի ընդունին։
41 Եւ Յիսուս գանձանակին դիմաց նստած՝ կը
նայէր թէ ինչպէս ժողովուրդը գանձանակին
մէջ ստակ կը ձգէ․ և շատ հարուստներ շատ
42 բան ձգեցին։ Աղքատ որբեւայրի մըն ալ եկաւ
ու երկու լումայ ձգեց, որ նաքարակիտ մը կ՚ը-
43 նէ։ Եւ իր աշակերտները իրեն կանչելով՝ ըսաւ
անոնց, Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի, որ Այս աղ-
քատ որբեւայրին գանձանակը ստակ ձգողներուն
44 ամէնէն աւելի ձգեց․ Վասն զի ամէնը իրենց
աւելցածէն ձգեցին, բայց ասիկա իր չքաւո-
րութենէն՝ ունեցածին բոլորը ձգեց, իր բոլոր
ապրուստը։

## Գլ․ ԺԳ

1 Քրիստոս կը նախաձայնէ թէ տաճարը պիտի կործանի. 9 թէ աւետարանին համար հալածանքներ պիտի ըլլան. 14 թէ մեծամեծ թշուառութիւններ պիտի գան Հրեաներուն վրայ. 24 և թէ ինք ի՛նչ կերպով դատաստանի պիտի գայ։ 32 Վերջին ժամուն ընաւ մէկուն յայտնուած չըլլալուն համար՝ Քրիստոս կը պատուիրէ արթուն կենալ ու աղօթք ընել։

1 Ու երբ տաճարէն դուրս կ՚ելլէր, իր աշա-
կերտներէն մէկը ըսաւ իրեն, Վարդապետ,
նայէ ինչպէս քարեր են, և ինչ կերպ շէնքեր։
2 Եւ Յիսուս պատասխան տալով՝ ըսաւ անոր,
Կը տեսնե՞ս այդ մեծ շէնքերը․ քար մը քարի
վրայ պիտի չմնայ որ չքակուի։
3 Ու երբ անիկա Ձիթենեաց լեռը տաճարին
դիմաց նստեր էր, Պետրոս ու Յակոբոս և
Յովհաննէս ու Անդրէաս հարցուցին իրեն ա-
4 ռանձին, Ըսէ մեզի, ե՞րբ պիտի ըլլան այդ բա-
ները, և ի՞նչ նշան պիտի ըլլայ այդ ամէն բա-
5 ներուն կատարուելու ատենը։ Եւ Յիսուս պա-
տասխան տուաւ անոնց ու սկսաւ ըսել, Զգոյշ
6 կեցէք, չըլլայ որ մէկը ձեզ խաբէ․ Վասն զի

շատերը պիտի գան իմ անունովս ու ըսեն թէ
Ես եմ Քրիստոսը, ու շատերը պիտի մոլորեցնեն։
7 Բայց երբ լսէք պատերազմներ և պատերազմ-
ներու լուրեր՝ մի խռովիք, վասն զի պէտք է
8 ըլլալ, բայց դեռ վերջը չէ։ Վասն զի ազգ ազ-
գի վրայ պիտի ելլէ, ու թագաւորութիւն թա-
գաւորութեան վրայ, և տեղ տեղ երկրաշար-
ժութիւններ պիտի ըլլան. սովեր ու խռովու-
թիւններ ալ պիտի ըլլան. ասոնք ցաւերուն
9 սկիզբներն են։ Զգուշացէք ձեր անձերուն.
քանզի ձեզ ատեաններու պիտի մատնեն, ու
ժողովարաններուն մէջ ձեզ պիտի ծեծեն, և
իմ անուանս համար կուսակալներու ու թագա-
ւորներու առջև պիտի կենաք՝ անոնց վկայու-
10 թիւն ըլլալու համար։ Եւ առաջ պէտք է որ
11 աւետարանը քարոզուի բոլոր ազգերուն։ Բայց
երբ ձեզ մատնելու տանին, առաջուընէ հոգ
մի ընէք և մի մտածէք թէ ինչ պիտի խօսիք,
հապա այն ժամուն ինչ որ ձեզի տրուի՝ զանի-
կա խօսեցէք. վասն զի ոչ թէ դուք էք որ կը
խօսիք, հապա Հոգին Սուրբ։
12 Ու եղբայր եղբայրը մահուան պիտի մատնէ,
և հայրը՝ որդին, և որդիներ իրենց ծնողքներուն
13 վրայ պիտի ելլեն ու մեռցնեն զանոնք։ Եւ իմ
անուանս համար ամէնուն ատելի պիտի ըլլաք.
բայց ով որ մինչև վերջը համբերէ՝ անիկա պի-
14 տի ապրի։ Ու երբ տեսնէք աւերմունքին պղ-
ծութիւնը՝ որ Դանիէլ մարգարէին ձեռքով
ըսուած է, թէ արժան չեղած տեղը կը կենայ,
(ով որ կարդայ՝ թող հասկնայ,) այն ատեն Հրէ-
աստանի մէջ եղողները լեռները թող փախչին.
15 Եւ ան որ տանիքին վրայ է՝ թող տուն չիջնէ,
16 ու չմտնէ իր տունէն բան մը առնելու. Եւ ան
որ արտին մէջ է՝ թող ետ չդառնայ իր հան-
17 դերձը առնելու։ Բայց վա՜յ այն օրերը յղի

18 եղողներուն ու ծիծ տուողներուն։ Եւ աղօթք
19 ըրէք որ ձեր փախչիլը ձմեռը չըլլայ։ Քանզի
այն օրերը այնպիսի նեղութիւն պիտի ըլլայ,
որուն նմանը Աստուծոյ ստեղծած արարածնե-
րուն սկիզբէն մինչև հիմա եղած չէ, ոչ ալ պի-
20 տի ըլլայ։ Եւ եթէ Տէրը այն օրերը չկարճեցը-
նէր, բնաւ մարմին մը պիտի չազատէր. բայց
ընտրեալներուն համար զորոնք ընտրեց՝ այն
21 օրերը կարճեցուց։ Եւ այն ատեն եթէ մէկը
ձեզի ըսէ, Ահա հոս է Քրիստոսը՝ կամ Ահա
22 հոն, մի՛ հաւատաք. Վասն զի սուտ քրիստոս-
ներ ու սուտ մարգարէներ պիտի ելլեն, ու նշան-
ներ ու հրաշքներ պիտի ցուցնեն, որպէս զի ե-
թէ կարելի էր, ընտրեալներն ալ մոլորեցնեն։
23 Իսկ դուք զգոյշ կեցէք. ահա առաջուընէ ըսի
ձեզի ամէնը։
24 Բայց այն օրերը այն նեղութենէն ետև արե-
գակը պիտի խաւարի, ու լուսինը իր լոյսը պի-
25 տի չտայ, Եւ աստղերը երկինքէն պիտի թափ-
թփին, ու երկինքին մէջի զօրութիւնները
26 պիտի շարժին։ Եւ այն ատեն պիտի տեսնեն
Որդին մարդոյ՝ ամպերու մէջ եկած մեծ զօրու-
27 թիւնով ու փառքով։ Եւ այն ատեն իր հրեշ-
տակները պիտի ղրկէ, ու իր ընտրեալները պի-
տի ժողվէ չորս հովերէն, երկրի ծայրէն մինչև
28 երկինքի ծայրը։ Թզենիէն առակ մը սորվեցէք.
երբ անոր ոստերը կը կակղնան ու տերև-
ները կը ցցուին, գիտէք թէ ամառը մօտ է։
29 Նոյնպէս ալ դուք երբ այս բաները եղած տեսա-
30 նէք, գիտցէք որ մօտ է դռներուն քով։ Ճշմա-
րիտ կ՚ըսեմ ձեզի, որ այս ազգը պիտի չանցնի,
31 մինչև որ այս ամէն բաները ըլլան։ Երկինք ու
երկիր պիտի անցնին, բայց իմ խօսքերս բնաւ
32 պիտի չանցնին։ Իսկ այն օրուան ու ժամուն
համար մէկը չգիտեր, ոչ երկինքի մէջ եղող

հրեշտակները և ոչ Որդին, հապա միայն Հայ-
33 րը։ Զգոյշ կեցէք, արթուն մնացէք և աղօթք
34 ըրէք, վասն զի չէք գիտեր ատենը ե՛րբ է։ Ինչ-
պէս օտար երկիր գացող մարդ մը իր տունը
կը թողու, ու իր ծառաներուն իշխանութիւն
կու տայ, և ամէն մէկուն իր գործը, ու դռնա-
35 պանին կ'ապսպրէ որ արթուն կենայ։ Ուրեմն
արթուն կեցէք, վասն զի չէք գիտեր թէ ե՛րբ
կու գայ տանուտէրը, իրիկո՞ւնը՝ թէ կէսգի-
շերի՞ն՝ թէ հաւախօսի՞ն և թէ առտուա՞նց։
36 Չըլլայ որ յանկարծակի գայ ու ձեզ քունի մէջ
37 գտնէ։ Եւ ինչ որ կ'ըսեմ ձեզի՝ ամէնուն կ'ը-
սեմ, Արթուն կեցէք։

## ԳԼ. ԺԴ

1 Հրեաներուն դաւաճանութիւնը Քրիստոսի դէմ։ 3 Կին մը անոր գլխուն վրայ կը թափէ շիշ մը պատուական իւղ։ 10 Յուդա իր Տէրը կը ծախէ ստակով։ 18 Քրիստոս կը ծանուցանէ թէ իր աշակերտներէն մէկը զինք պիտի մատնէ։ 22 Զատկին պատրաստուելէն և ուտուելէն ետև, Քրիստոս հաղորդութեան խորհուրդը կը սահմանէ։ 26 Կը նախաձայնէ իր բոլոր աշակերտներուն ցրուիլը, և Պետրոսի ուրացութիւնը։ 43 Յուդա համբուրելով կը մատնէ զՔրիստոս։ 46 Քրիստոս պարտէզին մէջ կը բռնուի, 55 սուտ վկաներէն կ'ամբաստանուի, և ամբարիշտ վճռով կը դատապարտուի Հրեաներուն ատեանէն։ 65 Հրեաները անարգանքներով կը չարչարեն զՔրիստոս։ 66 Պետրոս երեք անգամ կ'ուրանայ իր Տէրը։

1 Եւ երկու օրէն ետև զատիկ ու բաղարջա-
կերք էր. և քահանայապետները ու դպիրնե-
րը կը փնտռէին թէ ինչպէս նենգութեամբ
2 բռնեն զանիկա ու մեռցնեն։ Բայց կ'ըսէին թէ
Ոչ տօնին ատենը, որպէս զի ժողովուրդին մէջ
խռովութիւն չըլլայ։
3 Ու երբ ինք Բեթանիա էր բորոտ Սիմոնի
տունը սեղան նստած, կին մը եկաւ՝ որ շիշ մը
պատուական սուղ նարդոսի իւղ ունէր, և կոտ-
րեց այն շիշը ու անոր գլխուն վրայ թափեց։
4 Եւ կային ոմանք որ կը դժուարէին ու կ'ըսէին,
Ինչո՞ւ համար եղաւ այդ իւղին կորուստը.
5 Քանզի այդ [իւղը] երեք հարիւր դահեկանէն

աւելի կրնար ծախուիլ ու աղքատներուն տըր-
ուիլ. և սաստիկ կը յանդիմանէին զանիկա։
6 Բայց Յիսուս ըսաւ, Թող տուէք ասոր, ինչո՞ւ
անհանգիստ կ'ընէք ասիկա. բարի գործ մը
7 գործեց ինծի։ Վասն զի աղքատները ամէն ա-
տեն ձեզի հետ ունիք, ու երբ ուզէք, կրնաք
անոնց բարիք ընել, բայց զիս ամէն ատեն չու-
8 նիք։ Ասիկա ինչ որ ունէր՝ ըրաւ. առաջու-
նէ իմ մարմինս օծեց իմ թաղումիս համար։
9 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, թէ Բոլոր աշխարհի
մէջ, ուր որ այս աւետարանը քարոզուի, ասոր
ըրածն ալ պիտի խօսուի՝ իրեն յիշատակ ըլլա-
լու համար։
10 Եւ Յուդա Իսկարիովտացի, տասուերկուքէն
մէկը, գնաց քահանայապետներուն, որ զանի-
11 կա մատնէ անոնց։ Անոնք ալ լսելով ուրախա-
ցան, ու իրեն ստակ տալ խոստացան, և կը
փնտռէր թէ ինչպէս պատեհութիւնով մը
մատնէ զանիկա։
12 Եւ բաղարջակերաց առաջին օրը, երբ զա-
տիկը կը մորթէին, անոր աշակերտները ըսին
իրեն, Ո՞ւր կ'ուզես երթանք պատրաստենք՝
13 որպէս զի զատիկը ուտես։ Եւ իր աշակերտնե-
րէն երկուքը ղրկեց ու ըսաւ անոնց, Գացէք
քաղաքը, ու ձեզի մարդ մը պիտի պատահի՝ որ
ուսին վրայ ջուրի սափոր մը կը տանի, գացէք ա-
14 նոր ետևէն։ Եւ ուր որ մտնէ, տանը տէրոջը
ըսէք, Վարդապետը կ'ըսէ, Ո՞ւր է օթևանը,
ուր աշակերտներուս հետ մէկտեղ զատիկը ու-
15 տեմ։ Ան ալ ձեզի յարդարուած ու պատրաստ
մեծ վերնատուն մը պիտի ցուցնէ. հոն պատ-
16 րաստեցէք մեզի։ Եւ իր աշակերտները գացին
ու քաղաքը մտան, և ինչպէս իրենց ըսաւ՝ այն-
պէս գտան, և զատիկը պատրաստեցին։
17 Ու երբ իրիկուն եղաւ, տասուերկուքին հետ

18 մէկտեղ եկաւ։ Ու երբ սեղան նստան և կ՚ու-
տէին, ըսաւ Յիսուս, Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի
որ ձեզմէ մէկը որ հիմա ինծի հետ կ՚ուտէ, զիս
19 պիտի մատնէ։ Եւ անոնք սկսան տրտմիլ, ու
մէկիկ մէկիկ ըսել անոր, Միթէ ե՞ս եմ. և
20 ուրիշ մը՝ Միթէ ե՞ս եմ։ Անիկա պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Այդ տասուերկուքէն
մէկը՝ որ ինծի հետ իր ձեռքը պնակը կոխեց։
21 Յիրաւի Որդին մարդոյ կ՚երթայ, ինչպէս գըր-
ուած է իրեն համար. բայց վա՜յ այն մարդուն,
որուն ձեռքով Որդին մարդոյ կը մատնուի.
աղէկ էր այն մարդուն որ ծնած չըլլար։
22 Եւ քանի որ անոնք կ՚ուտէին, Յիսուս հաց
առաւ, օրհնեց ու կտրեց, և տուաւ անոնց ու
23 ըսաւ, *Առէք, այս է իմ մարմինս։ Եւ գաւա-
թը առաւ, գոհացաւ, ու տուաւ անոնց, և
24 ամէնն ալ խմեցին անկէ։ Ու ըսաւ անոնց,
Ասիկա է իմ արիւնս նոր ուխտի, որ շատերու
25 համար կը թափուի։ Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի,
Ասկէ ետև որթին բերքէն ընաւ պիտի չխմեմ
մինչև այն օրը երբ զանիկա նոր խմեմ Աստու-
ծոյ թագաւորութեանը մէջ։
26 Եւ օրհնութիւն մը երգելէ ետև Ձիթենեաց
27 լեռը ելան։ Եւ Յիսուս ըսաւ անոնց, Ամէնդ-
ալ այս գիշեր իմ վրայովս պիտի գայթակղիք.
վասն զի գրուած է թէ Հովիւը պիտի զարնեմ,
28 ու ոչխարները պիտի ցրուին։ Բայց յարութիւն
առնելէս ետև ձեզմէ առաջ Գալիլեա պիտի
29 երթամ։ Իսկ Պետրոս ըսաւ անոր, Թէպէտ
30 ամէնն ալ գայթակղին, բայց ոչ թէ ես։ Եւ
Յիսուս ըսաւ անոր, Ճշմարիտ կ՚ըսեմ քեզի, որ
դուն ալ այս գիշեր դեռ հաւը երկու անգամ
չխօսած երեք անգամ զիս պիտի ուրանաս։
31 Բայց Պետրոս աւելի կը պնդէր ու կ՚ըսէր, Թէև

---

*Ոմանք, Առէք, կերէք

քեզի հետ մեռնիլ պէտք ըլլայ ինծի, բնաւ քեզ
պիտի չուրանամ․ նոյնպէս կ՚ըսէին ամէնն ալ։
32 Եկան այն տեղը որուն անունը Գեթսեմանի
էր, ու ըսաւ իր աշակերտներուն, Հոս նստե-
33 ցէք, մինչեւ որ ես աղօթք ընեմ։ Եւ իրեն հետ
առնելով Պետրոսը ու Յակոբոսը և Յովհաննէ-
34 սը, սկսաւ խռովիլ և վշտանալ։ Այն ատեն
ըսաւ անոնց, Իմ անձս մեռնելու չափ տրտում
35 է․ հոս կեցէք և արթուն մնացէք։ Ու քիչ մը
առաջ երթալով՝ իր երեսին վրայ գետինը ինկաւ և
աղօթք ըրաւ, որ եթէ կարելի է, այն ժամը
36 իրմէ անցնի։ Եւ ըսաւ, Աբբա Հայր, ամէն բան
քեզի հնարաւոր է, այս գաւաթը ինծմէ անց-
ուր․ բայց ոչ թէ ինչպէս ես կ՚ուզեմ, հապա
37 ինչպէս դուն կ՚ուզես։ Եւ եկաւ ու զանոնք քնա-
ցած գտաւ, և ըսաւ Պետրոսի, Սիմոն, կը քնա-
38 նա՞ս․ չկրցա՞ր ժամ մը արթուն կենալ։ Արթուն
կեցէք և աղօթք ըրէք, որպէս զի փորձութեան
մէջ չմտնէք․ հոգին յօժար է, բայց մարմինը
39 տկար։ Եւ նորէն գնաց աղօթք ըրաւ՝ նոյն
40 խօսքը ըսելով։ Եւ դարձաւ ու զանոնք նորէն
քնացած գտաւ, վասն զի աչքերնին ծանրա-
ցած էր, և չէին գիտեր թէ ինչ պատասխան
41 տան անոր։ Երրորդ անգամ ալ եկաւ ու ըսաւ
անոնց, Ասկէ ետեւ քնացէք ու հանգչեցէք․
բաւական է, ժամը հասաւ․ ահա Որդին մար-
42 դոյ մեղաւորներուն ձեռքը կը մատնուի։ Ելէք
երթանք, ահա մօտեցաւ անիկա որ զիս պի-
տի մատնէ։

43 Եւ դեռ անիկա [illegible] որ կը խօսէր, իսկոյն
Յուդա, տասուերկուքէն մէկը, եկաւ, և իրեն
հետ քահանայապետներուն և դպիրներուն ու
ծերերուն կողմէն շատ բազմութիւն՝ սուրերով
44 ու բիրերով։ Եւ զանիկա մատնողը անոնց նշան
մը տուեր էր՝ ըսելով, Ով որ ես համբուրեմ՝

ան է, բռնեցէք զանիկա և զգուշութեամբ տա-
45 րէք։ Ու անիկա գալով՝ շուտ մը մօտեցաւ անոր
և ըսաւ, Ռաբբի, Ռաբբի, ու համբուրեց զա-
46 նիկա։ Եւ անոնք ձեռք զարկին անոր ու բռնե-
47 ցին զանիկա։ Եւ քովը կայնողներէն մէկը սու-
րը քաշեց ու զարկաւ քահանայապետին ծա-
48 ռային, ու անոր ականջը մէկդի հանեց։ Եւ Յի-
սուս պատասխան տալով՝ ըսաւ անոնց, Իբր
թէ աւազակի՞ վրայ ելաք սուրերով ու բիրերով
49 զիս բռնելու։ Ամէն օր ձեր քով էի ու տաճա-
րին մէջ կը սորվեցնէի, և զիս չբռնեցիք. բայց
50 որպէս զի գիրքերը կատարուին։ Այն ատեն
բոլոր աշակերտները թողուցին զանիկա ու փախան։
51 Եւ երիտասարդ մը անոր ետևէն կ'երթար՝ մերկ
մարմնին վրայ կտաւ մը առած, ու երիտասարդ-
52 ները զանիկա բռնեցին. Ան ալ կտաւը թողուց
ու մերկ փախաւ անոնցմէ։
53 Եւ տարին Յիսուսը քահանայապետին, ու
անոր քով ժողովուեցան բոլոր քահանայապետ-
54 ները և ծերերը ու դպիրները։ Եւ Պետրոս
հեռուանց անոր ետևէն գնաց մինչև ներսը,
քահանայապետին գաւիթը, և սպասաւորնե-
րուն հետ նստաւ, ու կրակին քով կը տաքնար։
55 Իսկ քահանայապետները ու բոլոր ժողովքը
Յիսուսի դէմ վկայութիւն կը փնտռէին, որպէս
56 զի զանիկա մեռցնեն, և չէին գտներ. Վասն
զի շատերը սուտ վկայութիւն կը վկայէին անոր
դէմ, ու վկայութիւնները իրարու համաձայն
57 չէին։ Եւ ոմանք ելան սուտ վկայութիւն կ'ը-
58 նէին անոր դէմ՝ ու կ'ըսէին թէ, Մենք լսեցինք
ատկէ որ կ'ըսէր, Ես այդ ձեռագործ տաճարը
պիտի քակեմ, և երեք օրուան մէջ ուրիշ մը
59 պիտի շինեմ առանց ձեռագործի։ Բայց այն-
պէս ալ իրենց վկայութիւնը համաձայն չէր։
60 Եւ քահանայապետը մէջտեղը ոտք ելլելով՝

հարցուց Յիսուսի ու ըսաւ, Պատասխան մը
չե՞ս տար. ի՞նչ կը վկայեն ասոնք քեզի դէմ։
61 Բայց անիկա լուռ կը կենար և պատասխան մը
չէր տար. քահանայապետը նորէն կը հարցնէր
անոր ու կ՚ըսէր, Դո՞ւն ես Քրիստոսը, օրհնեալ
62 Աստուծոյ Որդին։ Եւ Յիսուս ըսաւ, Ես եմ. ու
պիտի տեսնէք Որդին մարդոյ Զօրութեան աջ
կողմը նստած, ու երկնքի ամպերովը եկած։
63 Եւ քահանայապետը իր հանդերձները պատ-
ռեց ու ըսաւ, Ալ ի՞նչ պէտք են մեզի վկաներ։
64 Ասոր հայհոյութիւնը լսեցիք. ձեզի ի՞նչպէս
կ՚երեւնայ. և ամէնը դատապարտեցին զանիկա
թէ մահապարտ է։
65 Եւ ոմանք սկսան թքնել անոր ու երեսը ծած-
կել և բռունցքով ծեծել ու ըսել, Մարգարէացիր.
ու սպասաւորները ապտակ կը զարնէին անոր։
66 Եւ Պետրոս վարը գաւիթն էր, ու քահանա-
67 յապետին աղախիններէն մէկը եկաւ, Ու տես-
նելով Պետրոսը որ կը տաքնար, նայեցաւ անոր
ու ըսաւ, Դուն ալ Յիսուս Նազովրեցիին հետ
68 էիր։ Բայց անիկա ուրացաւ ու ըսաւ, Չեմ
գիտեր և չեմ հասկնար թէ դուն ի՞նչ կը խօ-
սիս. ու երբ դուրս ելաւ գաւիթին դրանը առ-
69 ջեւ, հաւը խօսեցաւ։ Եւ աղախինը նորէն տե-
սաւ զանիկա, ու սկսաւ բոլորտիքը կայնողնե-
70 րուն ըսել թէ Աս ալ անոնցմէ է։ Եւ անիկա
նորէն ուրացաւ։ Ու քիչ մը ատենէն ետքը՝
նորէն բոլորտիքը կայնողները ըսին Պետրոսի,
Արդարեւ դուն անոնցմէ ես, վասն զի Գալիլեա-
ցի ես, և քու խօսուածքդ ալ նման է անոնց։
71 Բայց անիկա սկսաւ անիծել ու երդում ընել՝
ըսելով թէ Ես այն մարդը չեմ ճանչնար, ու-
72 րու համար դուք կ՚ըսէք։ Եւ իսկոյն երկրորդ-
անգամ հաւը խօսեցաւ. ու Պետրոս միտքը բե-
րաւ այն խօսքը զոր Յիսուս իրեն ըսեր էր թէ

Դեռ հաւը երկու անգամ չխօսած՝ դուն երեք անգամ պիտի ուրանաս զիս. ու սկսաւ լալ։

## ԳԼ. ԺԵ

1 Յիսուս կապուած կը տարուի Պիղատոսի առջև և կ'ամբաստանուի։ 15 Պիղատոս ժողովուրդին մեծ աղաղակին նայելով՝ մարդասպան Բարաբբան կ'արձակէ, և Յիսուսը ձեռք կու տայ որ խաչուի։ 17 փուշերէ պսակ մը կը դնեն Յիսուսի գլուխը. 19 անոր երեսը կը թքնեն և զանիկա ծաղր կ'ընեն. 27 խաչը կը հանեն երկու չարագործներու մէջտեղ. 29 Հրեաները սաստիկ նախատինքներ կու տան անոր. 39 բայց հարիւրապետը կը խոստովանի թէ անիկա Աստուծոյ Որդին է։ 43 Յովսէփ պատուով կը թաղէ զՅիսուս։

1 Եւ առտուանց շուտ մը քահանայապետները
ծերերուն ու դպիրներուն հետ՝ և բոլոր ժո-
ղովքն ալ խորհուրդ ըրին, Յիսուսը կապեցին
2 ու տարին մատնեցին Պիղատոսի։ Եւ Պիղատոս
հարցուց անոր ու ըսաւ, Դո՞ւն ես Հրէից թա-
գաւորը. անիկա ալ պատասխան տալով ըսաւ
3 անոր, Դուն կ'ըսես։ Եւ քահանայապետները
շատ ամբաստանութիւն կ'ընէին անոր վրայով։
4 Ու Պիղատոս նորէն հարցուց անոր՝ ըսելով, Պա-
տասխան մը չե՞ս տար. նայէ ո՛րչափ քեզի դէմ
5 կը վկայեն։ Եւ Յիսուս տակաւին պատասխան
մը չտուաւ, մինչև որ Պիղատոս զարմացաւ։
6 Բայց տօնին ատենը կապուած մը կ'արձակէր
7 անոնց, ո՛րը որ իրենք ուզէին։ Եւ մէկը կար Բա-
րաբբա անունով իր ընկեր խռովարարներուն
հետ կապուած. որոնք խռովութեան ատենը
8 մարդասպանութիւն ըրեր էին։ Եւ ժողովուր-
դը աղաղակելով՝ սկսաւ խնդրել որ ընէ ինչպէս
9 միշտ կ'ընէր իրենց։ Եւ Պիղատոս անոնց պա-
տասխան տուաւ ու ըսաւ, Կ'ուզէ՞ք որ Հրէից
10 թագաւորը արձակեմ ձեզի։ Քանզի գիտէր
որ քահանայապետները նախանձի համար մատ-
11 ներ էին զանիկա։ Բայց քահանայապետները
ժողովուրդը գրգռեցին որ խնդրեն յաւէտ Բա-
12 րաբբան իրենց արձակել։ Նորէն Պիղատոս

պատասխան տուաւ ու ըսաւ անոնց, Հապա
Հրէից թագաւոր ըսածնիդ ի՞նչ կ'ուզէք որ ը-
13 նեմ։ Եւ անոնք նորէն կ'աղաղակէին, Խաչը հա-
14 նէ ատիկա։ Պիղատոս ըսաւ անոնց, Բայց ի՞նչ
չար գործ ըրած է ատիկա. և անոնք ա՛լ աւե-
լի կ'աղաղակէին ու կ'ըսէին, Խաչը հանէ ատիկա։
15 Եւ Պիղատոս ժողովուրդը գոհ ընել ուզելով՝
Բարաբբան արձակեց անոնց, ու Յիսուսը ծե-
ծելով՝ ձեռք տուաւ որպէս զի խաչուի։
16 Եւ զինուորները ներս տարին զանիկա գաւի-
թը, այսինքն ատեանը, և բոլոր գունդը մէկ-
17 տեղ կանչեցին. Ու հագցուցին անոր ծիրանի-
ներ, և փշեղէն պսակ հիւսելով՝ անոր գլուխը
18 դրին. Ու սկսան բարև տալ անոր ու ըսել, Ողջոյն
19 քեզ, Հրէից թագաւոր։ Եւ անոր գլուխը եղէ-
գով կը ծեծէին ու կը թքնէին անոր, և ծուն-
կի վրայ գալով երկրպագութիւն կ'ընէին անոր։
20 Ու երբ ծաղր ըրին զանիկա, ծիրանիները վրա-
յէն հանեցին և իր հանդերձները հագցուցին
անոր, ու դուրս հանեցին զանիկա՝ որպէս զի
խաչը հանեն։
21 Եւ Սիմոն Կիւրենացի, Աղեքսանդրոսի և
Ռուփոսի հայրը, որ անկէ կ'անցնէր արտէն ե-
կած, պահակ բռնեցին որպէս զի անոր խաչը
22 վերցնէ։ Ու տարին զանիկա Գողգոթա ըսուած
23 տեղը, (որ կը թարգմանուի Գանկի տեղ,) Եւ
անոր զմուռսով խառնուած գինի տուին որ
24 խմէ, բայց ինք չառաւ։ Ու խաչը հանեցին զա-
նիկա, և անոր հանդերձները բաժնեցին՝ անոնց
վրայ վիճակ ձգելով թէ ո՛վ ինչ պիտի առնէ։
25 Ժամը երեքն էր ու խաչը հանեցին զանիկա։
26 Եւ անոր յանցանքի գիրը գրուած էր թէ Հրէից
27 թագաւորն է։ Ու անոր հետ երկու աւազակ
խաչը հանեցին. մէկը անոր աջ կողմէն ու մէ-
28 կը ձախ կողմէն։ Եւ կատարուեցաւ այն գիրը

որ կ՚ըսէ թէ Անօրէններուն հետ սեպուեցաւ։
29 Եւ անոնք որ կ՚անցնէին, կը հայհոյէին անոր,
գլուխնին կը շարժէին ու կ՚ըսէին, Աւա՜ղ, որ
տաճարը կը քակէիր, և երեք օրուան մէջ կը
30 շինէիր. Ինքզինքդ ազատէ ու իջիր այդ խաչէն։
31 Նոյնպէս ալ քահանայապետները դպիրներուն
հետ իրենց մէջ ծաղր ընելով՝ կ՚ըսէին, Ուրիշ-
32 ները ազատեց, ինքզինք չկրնար ազատել։ Այդ
Քրիստոսը, Իսրայէլի թագաւորը, թող հիմա
խաչէն վար իջնէ, որպէս զի տեսնենք ու հա-
ւատանք. և իրեն հետ խաչը ելլողները կը նա-
խատէին զանիկա։
33 Ու վեցերորդ ժամը հասածին պէս՝ բոլոր
երկրին վրայ խաւար եղաւ մինչև իններորդ
34 ժամը։ Եւ իններորդ ժամուն՝ Յիսուս մեծ ձայ-
նով աղաղակեց ու ըսաւ, Էլօի, Էլօի, լա՜մա
սաբաքթանի. որ կը թարգմանուի, Աստուած
35 իմ, Աստուած իմ, ինչո՞ւ զիս թողուցիր։ Եւ
քովը կայնողներէն ոմանք երբ լսեցին՝ կ՚ըսէին
36 թէ Եղիան կը կանչէ։ Ու մէկը վազեց սպունգ
մը քացախով լեցուց, ու եղէգի մը անցընելով՝
տուաւ անոր որպէս զի խմէ, և ըսաւ, Թող
տուր, տեսնենք թէ Եղիա կու գա՞յ զանիկա
վար իջեցնելու։
37 Եւ Յիսուս մեծ ձայն մը հանեց ու հոգի
38 տուաւ։ Ու տաճարին վարագոյրը երկուքի
39 պատռեցաւ վերէն վար։ Եւ հարիւրապետը որ
անոր դիմաց կեցեր էր, տեսնելով որ այսպէս
աղաղակելով հոգի տուաւ, ըսաւ. Արդարև Որ-
40 դի Աստուծոյ էր այս մարդը։ Կիներ ալ կային,
որոնք հեռուանց կը նայէին, որոնց մէջ էր
Մարիամ Մագդաղենացի. և պզտիկ Յակոբո-
սի ու Յովսէսի մայրը Մարիամ, և Սաղոմէ.
41 Որոնք երբ Յ[illegible] Գալիլեա էր, իր ետևէն կ՚եր-
թային, և իրեն սպասաւորութիւն կ՚ընէին.

և ուրիշ շատ կիներ ալ՝ որոնք իրեն հետ Երու-
սաղէմ ելեր էին ։
42 Ու երբ իրիկուն եղաւ, այն օրը ուրբաթ, այս-
43 ինքն շաբաթին առջի օրը, ըլլալով, Յովսէփ Ա-
րիմաթացի, երևելի խորհրդական մը, որ ինք
ալ Աստուծոյ թագաւորութեանը կը սպասէր,
եկաւ ու համարձակութիւն ընելով՝ Պիղատոսի
44 քով մտաւ, և Յիսուսի մարմինը խնդրեց ։ Ու
Պիղատոս զարմացաւ որ արդէն մեռած ըլլայ.
և հարիւրապետը իրեն կանչելով՝ հարցուց ա-
45 նոր թէ Շա՞տ ատեն է որ մեռաւ ։ Ու երբ ստուգը
իմացաւ հարիւրապետէն, մարմինը Յովսէփի
46 շնորհեց ։ Եւ Յովսէփ կտաւ գնեց, ու զանիկա վար
իջեցնելով՝ կտաւովը փաթթեց, ու դրաւ գե-
րեզմանի մը մէջ՝ որ քարէ փորուած էր. և քար
47 մը գլորեց գերեզմանին դուռը ։ Իսկ Մարիամ
Մագդաղենացի ու Յովսէսի մայրը Մարիամ տե-
սան այն տեղը ուր դրուեցաւ ։

## ԳԼ. ԺԶ

1 Հրեշտակ մը Քրիստոսի յարութիւն առնելը կ'աւետէ երեք կիներու ։ 9 Քրիստոս կ'երևնայ Մարիամ Մագդաղենացիին, 12 արտը գացող երկու աշակերտներուն, 14 ետքը առաքեալներուն, զորոնք կը ղրկէ աւետարանը քարոզելու ։ 19 Քրիստոս երկինք կը համբառնայ ։

1 Ու երբ շաբաթը անցաւ, Մարիամ Մագդաղե-
նացի և Յակոբոսի մայրը Մարիամ և Սողոմէ
խունկեր ծախու առին, որպէս զի գան օծեն
2 զանիկա ։ Եւ միաշաբթի առտուանց շատ կա-
նուխ, երբ արևը կը ծագէր, եկան գերեզմա-
3 նը, Ու իրարու կ'ըսէին, Քարը ո՞վ պիտի գլորէ
4 մեզի գերեզմանին դռնէն, (Ու նայեցան տեսան
որ քարը գլորուած էր,) վասն զի շատ մեծ էր ։
5 Եւ ներս գերեզմանը մտնելով՝ երիտասարդ մը
տեսան որ աջ կողմը նստեր էր ճերմակ պատ-
6 մուճան հագած, ու զարհուրեցան ։ Եւ անիկա
ըսաւ անոնց, Մի զարհուրիք. Յիսուս Նազով-

րեցին կը փնտռէք, որ խաչուեցաւ. անիկա յա-
րութիւն առաւ, հոս չէ. ահա այն տեղը ուր
7 դրին զանիկա։ Բայց գացէք, ըսէք անոր աշա-
կերտներուն և Պետրոսի, թէ ահա ձեզմէ առաջ
Գալիլեա կ՚երթայ, հոն պիտի տեսնէք զանիկա՝
8 ինչպէս ձեզի ըսաւ։ Եւ անոնք դողով ու ապ-
շութեամբ բռնուած՝ *ելան ու փախան գերեզ-
մանէն, և մարդո՛ւ բան չըսին, քանզի կը վախ-
նային։
9 Յիսուս մէկշաբթի առտուանց յարութիւն ա-
ռած՝ առաջ Մարիամ Մագդաղենացիի երև-
10 ցաւ, որմէ եօթը դև հաներ էր։ Անիկա գնաց
անոնց պատմեց՝ որոնք անոր հետ էին, երբ սուգ
11 կ՚ընէին ու կու լային։ Իսկ անոնք երբ լսեցին
թէ կենդանի է և թէ իրեն երևցաւ, չհաւա-
տացին։
12 Ետքը ուրիշ կերպարանքով երևցաւ անոնցմէ
երկուքին՝ որոնք քալելով արտը կ՚երթային։
13 Եւ անոնք գացին ուրիշներուն պատմեցին, ու
անոնց ալ չհաւատացին։
14 Վերջը տասնըմէկին երևցաւ, երբ սեղան
նստած էին, ու երեսնին զարկաւ իրենց անհա-
ւատութիւնը և սրտերնուն կարծրութիւնը,
վասն զի որոնց որ զինք երևցաւ մեռելներէն
յարութիւն առած՝ իրենք չհաւատացին։
15 Եւ ըսաւ անոնց, Գացէք բոլոր աշխարհ, ու
աւետարանը քարոզեցէք բոլոր ստեղծուածնե-
16 րուն։ Ան որ հաւատայ ու մկրտուի՝ պիտի փըր-
կուի, և ան որ չհաւատայ՝ պիտի դատապար-
17 տուի։ Եւ անոնք որ կը հաւատան, այս նշան-
ները անոնց հետ պիտի երթան. Իմ անունովս
դևեր պիտի հանեն, նոր լեզուներ պիտի խօ-
18 սին. Ձեռքերնին օձեր պիտի բռնեն, և եթէ
մահառիթ դեղ մը խմեն, իրե՛նց պիտի չվնասէ.

*Ոմանք, շուտ ելան

հիւանդներուն վրայ ձեռք պիտի դնեն, ու ա-
նոնք պիտի առողջանան։
19 Արդ Տէրը անոնց հետ խօսելէն ետքը եր-
կինք համբարձաւ, ու Աստուծոյ աջ կողմը
20 նստաւ։ Եւ անոնք ելան ու ամէն տեղ կը քա-
րոզէին, և Տէրը անոնց գործակից էր, ու խօսքը
կը հաստատէր այն նշաններով որոնք անոնց
հետ կ'երթային։ Ամէն։



# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՂՈՒԿԱՍՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 Ղուկասու աւետարանին յառաջաբանութիւնը։ 5 Եղիսաբեթի 26 ու կոյս Մարիամի յղութիւնը։ 39 Եղիսաբեթի և Մարիամի մարգարէութիւնը Քրիստոսի վրայով։ 57 Յովհաննէս մկրտչին ծնունդը և թլփատութիւնը։ 67 Զաքարիայի մարգարէութիւնը Քրիստոսի 76 և Յովհաննէսի վրայով։

1 Որովհետև շատերը մեր մէջ հաստատ գիտ-
ցուած բաներուն վրայով եղած պատմութիւնը
2 կարգի դնելու ձեռք զարկին, Ինչպէս սկիզբէն
աչքով տեսնողները և խօսքին սպասաւոր ե-
3 ղողները աւանդեցին մեզի, Ես ալ որ սկիզբէն
այն ամէն բաներուն ճշդութեամբ տեղեկացեր
էի, յարմար դատեցի կարգաւ գրել քեզի, ով
4 պատուական Թէոփիլոս, Որպէս զի սորված
բաներուդ ստուգութիւնը իմանաս։
5 Հրէաստանի Հերովդէս թագաւորին օրերը
Աբիայի դասակարգութենէն Զաքարիա անու-
նով քահանայ մը կար, որուն կինը Ահարոնի
աղջիկներէն էր, և անոր անունը Եղիսաբեթ,
6 Ու երկուքն ալ Աստուծոյ առջև արդար էին,

և Տէրոջը բոլոր պատուիրանքներուն ու իրա-
ւունքներուն մէջ անարատութեամբ կը քալէին։
7 Եւ զաւակ չունէին, վասն զի Եղիսաբեթ ամուլ
էր, ու երկուքն ալ օրերնին անցուցած էին։
8 Ու երբ անիկա իր դասակարգութեան օրերը
հանելուն քահանայական պաշտօնը կը կատա-
9 րէր Աստուծոյ առջև, Քահանայութեան սո-
վորութեանը պէս իրեն ինկաւ որ Տէրոջը տա-
10 ճարը մտնէ խնկարկութիւն ընէ։ Եւ ժողո-
վուրդին բոլոր բազմութիւնը դուրսը աղօթքի
11 կայներ էին խունկին ատենը։ Ու երևցաւ ա-
նոր՝ Տէրոջը հրեշտակը, որ կայներ էր խունկի
12 սեղանին աջ կողմը։ Եւ Զաքարիա երբ տեսաւ,
13 շփոթեցաւ, ու անոր վրայ վախ մը ինկաւ։ Եւ
հրեշտակը ըսաւ անոր, Մի վախնար, Զաքա-
րիա, վասն զի քու աղօթքդ լսուեցաւ, և քու
կինդ Եղիսաբեթ քեզի որդի մը պիտի ծնանի,
14 ու անոր անունը *Յովհաննէս դնես։ Եւ քեզի
ուրախութիւն ու ցնծութիւն պիտի ըլլայ, և
շատերը անոր ծնանելուն վրայ պիտի ուրախա-
15 նան։ Վասն զի Տէրոջը առջև մեծ պիտի ըլլայ,
և գինի ու օղի պիտի չխմէ. և դեռ իր մօրը
16 որովայնէն Սուրբ Հոգիով պիտի լեցուի. Ու Իս-
րայէլի որդիներէն շատերը իրենց Տէր Աստու-
17 ծոյն պիտի դարձնէ։ Եւ ինք անոր առջևէն
պիտի գայ Եղիայի հոգիովը ու զօրութիւնովը,
հայրերուն սիրտերը որդիներուն վրայ դարձը-
նելու, և անհնազանդները՝ արդարներուն ի-
մաստութեանը, որպէս զի Տէրոջը բարեկարգ
18 ժողովուրդ մը պատրաստէ։ Եւ Զաքարիա ըսաւ
հրեշտակին, Ինչո՞վ գիտնամ այդ բանը, որով-
հետև ես ծեր եմ, ու իմ կինս իր օրերը ան-
19 ցուցած է։ Եւ հրեշտակը պատասխան տալով
ըսաւ անոր, Ես եմ Գաբրիէլ որ Աստուծոյ

*Այսինքն, Տէրոջը շնորհքը

առջև կը կայնիմ, ու ղրկուեցայ քեզի զրու-
ցելու և այս բաներուն աւետիսը քեզի տալու։
20 Եւ ահա համր պիտի ըլլաս դուն, ու պիտի
չկրնաս խօսիլ մինչև այն օրը՝ որ այս բաները
ըլլան, քանզի չհաւատացիր իմ խօսքերուս,
21 որոնք իրենց ատենին պիտի կատարուին։ Ու
ժողովուրդը Զաքարիային կը սպասէր, և կը զար-
մանային անոր տաճարին մէջ ուշանալուն վրայ։
22 Ու երբ դուրս ելաւ, չէր կրնար խօսիլ անոնց
հետ. և իմացան որ տաճարին մէջ տեսիլք մը
տեսած է. ու ինք նշանով կը խօսէր անոնց հետ,
23 և համր կը կենար։ Ու եղաւ որ երբ անոր պաշ-
24 տօնին օրերը լմնցան, իր տունը գնաց։ Եւ այն
օրերէն ետքը անոր կինը Եղիսաբեթ յղա-
ցաւ, ու հինգ ամիս ինքզինք կը պահէր, և կ'ը-
25 սէր, Այսպէս ըրաւ ինծի Տէրը այս օրերս, որ
իմ վրաս նայեցաւ նախատինքս մարդոց մէջէն
վերցնելու։
26 Ու վեցերորդ ամսուն մէջ Գաբրիէլ հրեշտա-
կը Աստուծմէ ղրկուեցաւ Գալիլեայի մէկ քա-
27 ղաքը՝ որուն անունը Նազարէթ էր, Կոյսի մը՝
մարդու մը նշանուած, որուն անունը Յովսէփ
էր, Դաւիթի տունէն, և այն կոյսին անունը
28 Մարիամ էր։ Ու հրեշտակը անոր գալով ըսաւ,
Ողջոյն քեզ, ով շնորհընկալ կոյս, Տէրը քեզի
29 հետ է. դուն կանանց մէջ օրհնեալ ես։ Եւ
զանիկա տեսնելով, անոր խօսքին վրայ շփոթե-
ցաւ, ու ինքնիրեն կը մտածէր թէ ինչպէս բան
30 պիտի ըլլայ այս ողջոյնը։ Եւ հրեշտակը անոր
ըսաւ, Մի վախնար, Մարիամ, վասն զի Աս-
31 տուծմէ շնորհք գտար։ Եւ ահա պիտի յղա-
նաս ու որդի մը պիտի ծնանիս, և անոր անու-
32 նը Յիսուս պիտի դնես։ Անիկա մեծ պիտի ըլ-
լայ, ու Բարձրելոյն Որդին պիտի ըսուի, և Տէր
Աստուած պիտի տայ անոր իր հօրը Դաւիթի

աթոռը. ու Յակոբի տանը վրայ յաւիտեան
33 պիտի թագաւորէ, Եւ անոր թագաւորութիւ-
34 նը վերջ պիտի չունենայ։ Ու Մարիամ ըսաւ
հրեշտակին, Ի՞նչպէս պիտի ըլլայ այդ բանը,
35 որովհետեւ ես այր մարդ չեմ գիտեր։ Եւ
հրեշտակը պատասխան տալով՝ ըսաւ անոր,
Հոգին Սուրբ պիտի գայ քեզի, ու Բարձրելոյն
զօրութիւնը քու վրադ հովանի պիտի ըլլայ.
ուստի ան քեզմէ ծնանելու սուրբը Աստուծոյ
36 Որդի պիտի ըսուի։ Եւ ահա քու ազգականդ
Եղիսաբեթ՝ անիկա իր պառաւութեան ատենը
արու զաւակով մը յղի է. ու ասիկա այն ա-
37 մուլ ըսուածին վեցերորդ ամիսն է, Վասն զի
Աստուծոյ քով բնաւ բան մը անհնարին չըլ-
38 լար։ Եւ Մարիամ ըսաւ, Ահա ես Տէրոջը աղա-
խինն եմ, քու ըսածիդ պէս թող ըլլայ ինծի.
ու հրեշտակը անոր քովէն գնաց։
39 Այն օրերը ելաւ Մարիամ ու արտորնօք
40 լեռնակողմը Յուդայի մ՟կ քաղաքը գնաց. Եւ
մտաւ Զաքարիայի տունը ու Եղիսաբեթի բա-
41 րեւ տուաւ։ Եւ եղաւ որ երբ լսեց Եղիսաբեթ
Մարիամի բարեւը, մանուկը անոր որովայնին
մէջ խաղաց, ու Եղիսաբեթ Սուրբ Հոգիով լեց-
42 ուեցաւ. Եւ բարձր ձայնով մը կանչեց ու ը-
սաւ, Օրհնեալ ես դուն կանանց մէջ, և օրհ-
43 նեալ է քու որովայնիդ պտուղը։ Եւ այս ինծի
ուրկէ՞ եղաւ, որ իմ Տէրոջս մայրը ինծի գայ.
44 Վասն զի ահա երբ քու բարեւիդ ձայնը ական-
ջիս եկաւ, մանուկը որովայնիս մէջ խաղաց ու-
45 րախութենէն։ Եւ երանի անոր որ *հաւատա-
ցեր է, քանզի" պիտի կատարուին այն բաները
46 որոնք Տէրոջմէ ըսուեցան իրեն։ Եւ Մարիամ
47 ըսաւ, Իմ անձս կը մեծցնէ Տէրը, Եւ իմ հոգիս
48 ուրախացաւ իմ Փրկիչ Աստուծմովս։ Վասն զի

*կամ, հաւատացեր է թէ

իր աղախինին խոնարհութեանը նայեցաւ․
քանզի ահա ասկէ ետեւ բոլոր ազգերը ինծի
49 երանութիւն պիտի տան։ Վասն զի Հզօրը ին-
ծի մեծամեծ բաներ ըրաւ, ու անոր անունը
50 սուրբ է։ Եւ անոր ողորմութիւնը իրմէ վախ-
51 ցողներուն վրայ է ազգէ ազգ։ Իր բազուկովը
զօրութիւն ցուցուց, ցիրուցան ըրաւ ամբար-
52 տաւանները իրենց սրտին խորհուրդովը։ Զօ-
րաւորները իրենց աթոռներէն իջեցուց, ու խո-
53 նարհները բարձրացուց։ Անօթիները բարիք-
ներով լեցուց, և հարուստները պարապ ճամ-
54 բեց։ Օգնութիւն ըրաւ իր Իսրայէլ ծառային՝
55 իր ողորմութիւնը միտք բերելով, Ինչպէս ինք
խօսեցաւ մեր հայրերուն, Աբրահամի ու անոր
սերունդին յաւիտեան։
56 Եւ Մարիամ անոր քով երեք ամիսի չափ
կեցաւ, ու իր տունը դարձաւ։
57 Ու Եղիսաբեթի ծնանելու ժամանակը լեց-
58 ուեցաւ, ու որդի մը ծնաւ։ Եւ լսեցին անոնք
որ անոր բոլորտիքը կը բնակէին, ու անոր ազ-
գականները, որ Տէրը անոր վրայ իր մեծ ո-
ղորմութիւնը ցուցուց, և անոր հետ կ'ուրա-
խանային։
59 Ու եղաւ որ ութերորդ օրը տղան թլփատե-
լու եկան, և զանիկա իր հօրը անունովը Զա-
60 քարիա կը կոչէին։ Իսկ անոր մայրը պատաս-
խան տուաւ ու ըսաւ, Ոչ, հապա Յովհաննէս
61 պիտի կոչուի։ Եւ անոր ըսին թէ Քու ազգա-
կաններուդ մէջ մէկը չկայ որ այս անունով
62 կոչուի։ Աչք կ'ընէին անոր հօրը թէ ի՛նչ անու-
63 նով կ'ուզէ որ անիկա կոչուի։ Ան ալ տախտակ
մը ուզեց ու գրեց՝ ըսելով, Յովհաննէս է ասոր
64 անունը․ ու ամէնը զարմացան։ Եւ իսկոյն բաց-
ուեցաւ անոր բերանը ու անոր լեզուն, և կը
65 խօսէր ու կ'օրհնէր զԱստուած։ Եւ վախ մը

ինկաւ այն ամէնուն վրայ՝ որոնք անոնց բոլոր-
տիքը կը բնակէին. ու այս ամէն բաները Հրէ-
66 աստանի բոլոր լեռնակողմը կը զրուցուէին։ Եւ
ամէն լսողները իրենց սրտերուն մէջ դրին, ու
կ'ըսէին, Արդեօք այս տղան ի՞նչ պիտի ըլլայ.
ու Տէրոջը ձեռքը անոր հետ էր։
67 Եւ անոր հայրը Զաքարիա Սուրբ Հոգիով
68 լեցուած՝ մարգարէացաւ ու ըսաւ, Օրհնեալ
ըլլայ Իսրայէլի Տէր Աստուածը, որ այցելու-
թեան եկաւ և իր ժողովուրդին փրկութիւն
69 ըրաւ։ Ու մեզի փրկութեան եղջիւր մը հանեց
70 իր Դաւիթ ծառային տունէն. (Ինչպէս սուր-
բերուն բերնովը խօսեցաւ, որոնք աշխարհի
71 սկիզբէն ի վեր անոր մարգարէներն էին.) Փըր-
կութիւն մեր թշնամիներէն և բոլոր մեզ ա-
72 տողներուն ձեռքէն, Ողորմութիւն ընելու մեր
հայրերուն վրայ, և իր սուրբ ուխտը միտք բե-
73 րելու, Այն երդումը զոր մեր հօրը Աբրահա-
74 մի ըրաւ, մեզի տալու, Որպէս զի մեր թշնա-
միներուն ձեռքէն ազատուելով՝ առանց վախի
75 զանիկա պաշտենք Սրբութիւնով ու արդարու-
թիւնով անոր առջև մեր կեանքին բոլոր օրերուն
76 մէջ։ Եւ դուն, ով մանուկ, Բարձրելոյն մար-
գարէն պիտի կոչուիս, վասն զի Տէրոջը երեսին
առջևէն պիտի երթաս՝ անոր ճամբաները պատ-
77 րաստելու, Անոր ժողովուրդին գիտցնելու իրենց
փրկութիւնը իրենց մեղքերուն թողութիւնո-
78 վը, Մեր Աստուծոյն գթած ողորմութեանը հա-
մար, որով Ծագող արեգակը վերէն մեզի այցելու-
79 թեան եկաւ՝ Խաւարի և մահուան ստուերի
մէջ նստողներուն լոյս տալու, ու մեր ոտքերը
խաղաղութեան ճամբուն մէջ շիտկելու։
80 Եւ տղան կը մեծնար ու կը զօրանար հոգիով,
և անապատներուն մէջ էր մինչև այն օրը երբ
ինք Իսրայէլի երևցաւ։

# ԳԼ. Բ

1 Օգոստոս կայսրը կը հրամայէ աշխարհագիր ընել իր բոլոր տէրութեանը մէջ։ 6 Քրիստոսի ծնունդը։ 8 Հրեշտակ մը աւետիս կու տայ հովիւներուն։ 13 Երկնային զօրաց բազմութիւն կ'օրհնեն զԱստուած՝ Քրիստոսի ծննդեան համար։ 21 Քրիստոս կը թլփատուի, 22 տաճարը կը տարուի։ 28 Սիմէօն և Աննա կը մարգարէանան Քրիստոսի վրայով։ 40 Քրիստոս կը զարգանայ իմաստութիւնով, 46 տաճարին մէջ Հրէից վարդապետներուն հարցումներ կ'ընէ, 51 և իր ծնողաց հնազանդ կը մնայ։

1 Ու եղաւ որ այն օրերը Օգոստոս կայսրէն
2 հրաման ելաւ որ բոլոր աշխարհ գրուի։ (Այս
առաջին աշխարհագիրը եղաւ Կիւրենոսի Սու-
րիայի վրայ կուսակալութիւն ըրած ատենը։)
3 Եւ ամէնը կ'երթային աշխարհագիրը մտնելու՝
4 ամէն մէկը իր քաղաքին մէջ։ Յովսէփ ալ
Գալիլեայէ, Նազարէթ քաղաքէն, ելաւ գնաց ի
Հրէաստան Դաւիթի քաղաքը որ Բեթլէհէմ
կ'ըսուի, (իրեն Դաւիթի տունէն ու ազգատոհ-
5 մէն ըլլալուն համար,) Աշխարհագիրը մտնելու
Մարիամի հետ մէկտեղ, որ իր նշանածն էր,
6 և յղի էր։ Ու եղաւ որ երբ անոնք հոն էին,
7 անոր ծնանելու օրերը լեցուեցան։ Եւ իր անդ-
րանիկ որդին ծնաւ, ու խանձարուրով փաթ-
թեց և զանիկա մսուրին մէջ պառկեցուց,
վասն զի իջեւանին մէջ իրենց տեղ չկար։
8 Եւ այն տեղը հովիւներ կային դաշտի մէջ
կեցած, որոնք իրենց հօտերուն գիշերուան
9 պահպանութիւնը կ'ընէին։ Եւ ահա Տէրոջը
հրեշտակը անոնց վրայ իջաւ, ու Տէրոջը փառ-
քը անոնց բոլորտիքը ծագեցաւ. ու խիստ շատ
10 վախցան։ Եւ հրեշտակը ըսաւ անոնց, Մի վախ-
նաք, վասն զի ահա ես ձեզի մեծ ուրախու-
թեան աւետիս կու տամ, որ բոլոր ժողովուր-
11 դին պիտի ըլլայ. Վասն զի ձեզի այսօր Փրկիչ
մը ծնաւ Դաւիթի քաղաքին մէջ, որ Օծեալ
12 Տէր է։ Եւ այս ձեզի նշան մը ըլլայ. մանուկ
մը պիտի գտնէք խանձարուրով փաթթուած ու

13 մսուրի մէջ պառկած։ Եւ յանկարծ այն հրեշտա-
կին հետ երկնային զօրքերու բազմութիւն մը
եղաւ, որոնք զԱստուած կ'օրհնէին ու կ'ըսէին,
14 Եղիցի բարձրութեան մէջ Աստուծոյ փառք,
ու երկրի վրայ խաղաղութիւն, մարդոց մէջ
15 հաճութիւն։ Ու եղաւ որ երբ հրեշտակները
անոնցմէ երկինք վերցան, հովիւները իրարու
ըսին, Եկէք մինչև Բեթլեհէմ երթանք, ու
տեսնենք թէ ի՞նչ է այս եղած բանը, զոր Տէրը
16 մեզի յայտնեց։ Ու եկան արտորնօք, և գտան
Մարիամը ու Յովսէփը և մսուրին մէջ պառկած
17 մանուկը։ Ու երբ տեսան, իմացուցին այն խօս-
քին վրայով որ այս մանուկին համար իրենց
18 ըսուեցաւ։ Եւ ամէնը որ կը լսէին, կը զար-
մանային այն բաներուն վրայ զորոնք հովիւնե-
19 րը իրենց կը ըսուէին։ Բայց Մարիամ այս
ամէն բաները կը պահէր, ու իր սրտին մէջ կը
20 մտածէր։ Եւ հովիւները դարձան, կը փառա-
ւորէին ու կ'օրհնէին զԱստուած այն ամէն բա-
ներուն համար զորոնք լսեցին ու տեսան, ինչ-
պէս իրենց ըսուած էր։
21 Ու երբ ութ օրերը լման եղան *մանուկը
թլփատելու, անոր անունը Յիսուս դրուեցաւ,
որ հրեշտակէն կոչուած էր՝ դեռ ինք մօրը որո-
վայնին մէջ չյղացած։
22 Ու Մովսէսի օրէնքին համեմատ երբ †անոնց
մաքրութեան օրերը լմնցան, Երուսաղէմ տա-
23 րին զանիկա Տէրոջը առջև հանելու, (Ինչպէս
գրուած է Տէրոջը օրէնքին մէջ, թէ Ամէն ա-
րու որ արգանդ կը բանայ՝ Տէրոջը սուրբ ըսուի,)
24 Ու Տէրոջը օրէնքին մէջ ըսուածին պէս ընծայ
տալու՝ զոյգ մը տատրակ կամ աղաւնիի երկու
25 ձագ։ Եւ ահա Երուսաղէմի մէջ մարդ մը կար,
որուն անունը Սիմէօն էր, ու այն մարդը ար-

---

*Ոմանք, զանիկա †Ոմանք, անոր

դար ու աստուածավախ էր, և Իսրայէլի մխի-
թարութեանը կը սպասէր. ու Սուրբ Հոգին
26 անոր վրայ էր։ Եւ անոր յայտնուած էր Սուրբ
Հոգիէն թէ մահ պիտի չտեսնէ, մինչև Տէրոջը
27 Օծեալը տեսնէ։ Եւ Հոգիով տաճարը եկաւ.
ու երբ ծնողքը բերին Յիսուս մանուկը, որպէս
զի օրէնքին սովորութեանը պէս անոր համար
28 ընեն, Ինք ալ զանիկա իր գիրկը առաւ, և օրհ-
29 նեց զԱստուած ու ըսաւ, Ալ հիմա, ով Տէր,
արձակես քու ծառադ խաղաղութիւնով քու
30 խօսքիդ համեմատ. Վասն զի իմ աչքերս տե-
31 սան քու փրկութիւնդ, Զոր բոլոր ժողովուրդ-
32 ներուն առջև պատրաստեցիր, Լոյս մը հեթա-
նոսները լուսաւորելու, և փառք քու Իսրայէլ
33 ժողովուրդիդ։ Եւ Յովսէփ ու անոր մայրը զար-
մացած էին այն բաներուն վրայ՝ որոնք անոր
34 համար կը խօսուէին։ Ու Սիմէօն օրհնեց զա-
նոնք, և անոր մօրը Մարիամի ըսաւ, Ահա այս
մանուկը Իսրայէլի մէջ շատ մարդոց իյնալուն ու
ելլելուն համար, ու հակառակութեան նշա-
35 նակ մը ըլլալու համար կեցած է. (Եւ քու
սրտէդ ալ թուր մը պիտի անցնի.) որպէս զի
այսպէս շատ սիրտերէ խորհուրդներ յայտնուին։
36 Եւ հոն էր Աննա մարգարէն, Փանուէլի աղ-
ջիկը, Ասերի ցեղէն. ասիկա իր օրերը շատ
անցուցած էր, էրկանը հետ եօթը տարի կե-
37 նալով իր կուսութեան ժամանակէն, Եւ որ-
բևարի էր գրեթէ ութսունըչորս տարուան,
որ տաճարէն չէր զատուեր, հապա ծոմով և
աղօթքով Աստուծոյ ծառայութիւն կ'ընէր գիշեր
38 ու ցորեկ։ Եւ ասիկա նոյն ժամուն եկաւ, ու
Տէրոջը գոհութիւն կու տար, ու անոր վրայով
կը խօսէր այն ամէնուն՝ որոնք Երուսաղէմի մէջ
փրկութեան կը սպասէին։
39 Ու երբ ամէն բան կատարեցին Տէրոջը օրէն-

քին համեմատ, նորէն Գալիլեա դարձան իրենց
40 Նազարէթ քաղաքը։ Եւ մանուկը կը մեծնար
ու հոգւով կը զօրանար իմաստութիւնով լեց-
ուած, ու Աստուծոյ շնորհքը անոր վրայ էր։
41 Եւ անոր ծնողքը ամէն տարի զատկի տօնին
42 Երուսաղէմ կ'երթային։ Ու երբ անիկա տաս-
ուերկու տարեկան եղաւ, տօնին սովորութեա-
43 նը պէս երբ անոնք Երուսաղէմ ելան, Եւ երբ-
այն օրերը լմնցուցին ու նորէն ետ դարձան,
Յիսուս մանուկը Երուսաղէմ մնաց. և Յովսէփ
44 ու անոր մայրը չէին գիտեր. Հապա կարծելով
թէ անիկա ճամբորդներուն հետ է, մէկ օր-
ուան ճամբայ գացին, ու կը փնտռէին զանիկա
իրենց ազգականներուն և ճանչուորներուն մէջ։
45 Ու երբ չգտան, նորէն Երուսաղէմ դարձան
46 զանիկա փնտռելու։ Ու եղաւ որ երեք օրէն
ետքը տաճարին մէջ գտան զանիկա, որ վար-
դապետներուն հետ նստեր էր, անոնց մտիկ
47 կ'ընէր ու անոնց բան կը հարցնէր։ Եւ ամէն
անոր ականջ դնողները կը զարմանային անոր
իմաստութեանը ու պատասխաններուն վրայ։
48 Ու երբ տեսան զանիկա, ապշած մնացին. և
անոր մայրը ըսաւ անոր, Որդեակ, ինչո՞ւ հա-
մար մեզի այդպէս ըրիր. ահա քու հայրդ ու
49 ես խիստ վշտացած քեզ կը փնտռէինք, Եւ ը-
սաւ անոնց, Զիս ինչո՞ւ կը փնտռէիք. չէ՞ք գի-
տեր թէ ինծի պէտք է որ իմ Հօրս *տունը ըլլամ։
50 Եւ անոնք չհասկցան այն խօսքը զոր իրենց
51 զրուցեց։ Եւ իջաւ անոնց հետ ու գնաց Նազա-
րէթ, և անոնց հնազանդ էր. բայց անոր մայրը
այս ամէն խօսքերը իր սրտին մէջ կը պահէր։
52 Եւ Յիսուս կը զարգանար իմաստութիւնով
ու հասակով, և Աստուծմէ ու մարդոցմէ
շնորհք գտնելով։

*կամ, գործերուն մէջ

## ԳԼ. Գ

1 Յովհաննէսի մկրտութիւնը և քարոզութիւնը. 15 անոր վկայութիւնը Քրիստոսի համար։ 20 Հերովդէս կը բանտարկէ Յովհաննէսը։ 21 Քրիստոս կը մկրտուի, ու երկինքէն վկայութիւն կ'ըլլայ իրեն համար։ 23 Յիսուսի տարիքը, և անոր ազգաբանութիւնը Յովսէփէ մինչև Ադամ ելլելով։

1 Տիբերիոս կայսրին թագաւորութեան տաս–
նըհինգերորդ տարին, Պոնտացի Պիղատոսի Հրէ–
աստանի վրայ կուսակալութիւն ըրած ատենը,
ու Հերովդէսի Գալիլեացւոց վրայ չորրորդա–
պետութեան ատենը, և անոր եղբօրը Փիլիպ–
պոսի Իտուրացւոց և Տրաքոնացւոց երկրին վրայ
չորրորդապետութեան ատենը, և Լիւսանիայի
Աբիլինացւոց վրայ չորրորդապետութեան ա–
2 տենը, Եւ Աննայի ու Կայիափայի քահանայա–
պետութեան ատենը Աստուծոյ խօսքը եղաւ
Զաքարիայի որդւոյն Յովհաննէսի վրայ անա–
3 պատին մէջ։ Ու անիկա եկաւ Յորդանանու բո–
լոր կողմերը, և ապաշխարութեան մկրտութիւն
կը քարոզէր մեղքերու թողութեան համար.
4 Ինչպէս Եսայի մարգարէին խօսքերուն գրքին
մէջ գրուած է՝ ըսելով, Անապատին մէջ կանչո–
ղին ձայնը, Տէրոջը ճամբան պատրաստեցէք,
5 անոր շաւիղները շիտկեցէք. Ամէն ձոր պիտի
լեցուի, և ամէն լեռ ու բլուր պիտի ցածնայ,
և ծուռը պիտի շիտկուի, ու խորտուբորտ տե–
6 ղերը հարթ ճամբաներ պիտի ըլլան։ Եւ ամէն
մարմին Աստուծոյ փրկութիւնը պիտի տեսնէ։
7 Ու իրմէ մկրտուելու եկող ժողովուրդներուն
ըսաւ, Իժերու ծնունդներ, ո՞վ խրատեց ձեզի
8 գալու բարկութենէն փախչիլ։ Ուրեմն ապաշ–
խարութեան արժանաւոր պտուղներ բերէք,
և մի՛ սկսիք ձեր ներսիդին ըսել թէ Մենք մե–
զի հայր՝ Աբրահամը ունինք, քանզի կ'ըսեմ
ձեզի որ Աստուած կարող է այս քարերէն

9 Աբրահամի որդիներ հանել։ Ալ հիմա կացի-
նը ծառերուն արմատին քով կը դրուի. ուստի
ամէն ծառ որ բարի պտուղ չբերեր, կը կտրուի
10 ու կրակը կը ձգուի։ Եւ ժողովուրդները կը
հարցնէին իրեն ու կ'ըսէին, Ուրեմն ի՞նչ ընենք։
11 Պատասխան տուաւ ու ըսաւ անոնց, Ով որ եր-
կու հանդերձ ունի, թող մէկը չունեցողին տայ.
12 և ով որ կերակուր ունի, նոյնպէս ընէ։ Մաք-
սաւորներ ալ եկան մկրտուելու, ու ըսին անոր,
13 Վարդապետ, մենք ի՞նչ ընենք։ Ան ալ ըսաւ
անոնց, Ձեզի հրամայուածէն աւելի բան չպա-
14 հանջէք։ Զինուորներն ալ կը հարցնէին անոր
ու կ'ըսէին, Եւ մենք ի՞նչ ընենք. ըսաւ անոնց,
Մէ՛կը մի հարստահարէք. և մարդո՛ւ վրայ զրպար-
տութիւն մի ընէք, ու ձեր թոշակով բաւա-
կանացէք։
15 Երբ ժողովուրդը կը սպասէր, և ամէնը ի-
րենց սիրտերուն մէջ կը մտածէին Յովհաննէսի
16 համար՝ թէ ա՞ս է արդեօք Քրիստոսը, Յովհան-
նէս պատասխան տուաւ ամէնուն ու ըսաւ, Ես
ձեզ ջրով կը մկրտեմ, բայց ինծմէ աւելի
զօրաւորը կու գայ, որուն կօշիկներուն կա-
պերը քակելու արժանի չեմ, անիկա ձեզ պի-
17 տի մկրտէ Հոգւով Սրբով և կրակով. Որուն
հեծանոցը իր ձեռքն է, և իր կալը պիտի մաք-
րէ, ու ցորենը իր ամբարը պիտի ժողվէ, և
18 յարդը չմարող կրակով պիտի այրէ։ Ուրիշ շատ
բաներ ալ կը քարոզէր՝ ժողովուրդը յորդորելով։
19 Բայց Հերովդէս չորրորդապետը անկէ յան-
դիմանուելով իր *եղբօր կնոջ, Հերովդիայի,
համար, և բոլոր չարութիւններուն համար,
20 զորոնք Հերովդէս գործեց, Այն ամէնուն վրայ
զայս ալ աւելցուց, որ Յովհաննէսը բանտի
մէջ գոցեց։

*Ոմանք, եղբօրը Փիլիպպոսի

21 Ու երբ մկրտուեցաւ բոլոր ժողովուրդը, և
Յիսուս ալ մկրտուելով՝ աղօթք կ՚ընէր, երկինք
22 բացուեցաւ, Եւ Սուրբ Հոգին մարմնաւոր երե-
ւոյթով աղաւնիի պէս անոր վրայ իջաւ, ու
երկինքէն ձայն մը եկաւ, որ կ՚ըսէր, Դուն ես
իմ սիրելի Որդիս, քեզի հաճեցայ։
23 Եւ ինքն Յիսուս սկսեր էր գրեթէ երեսուն
տարեկան ըլլալ, որ (ինչպէս կը կարծուէր) որ-
24 դին էր Յովսէփի, որ Հեղիի, որ Մատաթի, Որ
Ղևիի, որ Մեղքիի, որ Յաննէի, որ Յովսէփի,
25 Որ Մատաթիայի, որ Ամովսի, որ Նաւումի, որ
26 Եսղիի, որ Նանգէի, Որ Մաաթի, որ Մատա-
թիայի, որ Սէմէիի, որ Յովսէփի, որ Յուդայի,
27 Որ Յովհաննայի, որ Րեսայի, որ Զօրաբաբէլի,
28 որ Սաղաթիէլի, որ Ներիի, Որ Մեղքիի, որ
Ադդիի, որ Կովսամի, որ Եղմովդադի, որ Էրի,
29 Որ Յովսէսի, որ Եղիազարի, որ Յովրիմի, որ
30 Մատաթի, որ Ղևիի, Որ Սիմէօնի, որ Յուդա-
յի, որ Յովսէփի, որ Յովնանի, որ Եղիակիմի,
31 Որ Մելեայի, որ Մայնանի, որ Մատաթայի, որ
32 Նաթանի, որ Դաւիթի, Որ Յեսսէի, որ Ովբէ-
33 թի, որ Բոոսի, որ Սաղմոնի, որ Նաասոնի, Որ
Ամինադաբի, որ Արամի, որ Եսրոնի, որ Փա-
34 րէսի, որ Յուդայի, Որ Յակոբի, որ Իսահակի,
35 որ Աբրահամի, որ Թարայի, որ Նաքովրի, Որ
Սերուգի, որ Ռագաւի, որ Փաղէկի, որ Եբերի,
36 որ Սաղայի, Որ Կայնանի, որ Արփաքսադի, որ
37 Սէմի, որ Նոյի, որ Ղամէքի, Որ Մաթուսա-
ղայի, որ Ենովքի, որ Յարեդի, որ Մաղաղիէ-
38 լի, որ Կայնանի, Որ Ենովսի, որ Սէթի, որ
Ադամի, որ Աստուծոյ։

## ԳԼ. Դ

1 Քրիստոս ծոմ կը պահէ և կը փորձուի. 13 կը յաղթէ Սատանայի, 14 կը սկսի քարոզել : 16 Նազարէթի մարդիկը կը զարմանան անոր շնորհալից խօսքերուն վրայ: 33 Յիսուս կը բժշկէ դիւահար մը, 38 Պետրոսի զոքանչը 40 և ուրիշ շատ հիւանդներ : 41 Դևերը կը խոստովանին թէ անիկա է Քրիստոսը, բայց կը յանդիմանուին անկէ : 43 Քրիստոս կը քարոզէ քաղաքներուն մէջ :

1 Եւ Յիսուս Հոգւով Սրբով լեցուած՝ Յորդա-
նանէ դարձաւ, ու Հոգիէն անապատը տար-
2 ուեցաւ, Եւ քառասուն օր Սատանայէ փոր-
ձուեցաւ. ու այն օրերը բան մը չկերաւ, և այն
օրերուն լմննալէն ետև անօթեցաւ:
3 Ու Սատանայ ըսաւ անոր, Եթէ Աստուծոյ
4 Որդին ես, ըսէ այդ քարին որ հաց ըլլայ: Եւ
Յիսուս պատասխան տուաւ անոր ու ըսաւ,
Գրուած է թէ Ոչ միայն հացով կ՚ապրի մարդ,
հապա Աստուծոյ ամէն խօսքովը:
5 Եւ Սատանայ բարձր լեռ մը հանելով զա-
նիկա, աշխարհի բոլոր թագաւորութիւնները
6 ցուցուց անոր վայրկեանի մը մէջ: Եւ Սատա-
նայ ըսաւ անոր, Այս ամէն իշխանութիւնը ու
անոնց փառքը քեզի պիտի տամ, վասն զի ինծի
յանձնուած է, և որու որ ուզեմ՝ կու տամ
7 զանիկա: Ուստի եթէ դուն իմ առջևս իյնաս
երկրպագութիւն ընես, ամէնը քեզի ըլլայ:
8 Եւ Յիսուս պատասխան տուաւ անոր ու ըսաւ,
*Գրուած է թէ Քու Տէր Աստուծոյդ երկրպա-
գութիւն ընես, ու միայն զանիկա պաշտես:
9 Եւ զանիկա տարաւ Երուսաղէմ ու տաճա-
րին աշտարակին վրայ կայնեցուց, ու ըսաւ ա-
նոր, Եթէ դուն Աստուծոյ Որդին ես, քեզ
10 աստի վար ձգէ. Վասն զի գրուած է թէ Իր
հրեշտակներուն պիտի ապսպրէ քեզի համար
11 որ քեզ պահեն. Ու ձեռքերնուն վրայ պիտի
վերցնեն քեզ, որ չըլլայ թէ ոտքդ քարի զար-

*Ոմն., Ետևս գնա, Սատանայ, վասն զի գրուած

12 նես. Եւ Յիսուս պատասխան տուաւ ու ըսաւ
անոր, Ըսուած է թէ Քու Տէր Աստուածդ չփոր-
13 ձես: Ու երբ Սատանայ ամէն փորձութիւնը
կատարեց,ատեն մը ետ կեցաւ անկէ:
14 Եւ Յիսուս Հոգիին զօրութիւնովը Գալիլեա
դարձաւ, ու անոր համբաւը այն գաւառին ա-
15 մէն կողմերը տարածուեցաւ: Եւ ինք անոնց
ժողովարաններուն մէջ կը սորվեցնէր, ու ամէ-
նէն կը փառաւորուէր:
16 Ու եկաւ Նազարէթ, ուր ինք մեծցած էր, և
իր սովորութեանը պէս շաբաթ օրը մտաւ ժո-
17 ղովարանը, ու ելաւ որ կարդայ: Եւ տուին ա-
նոր Եսայի մարգարէին գիրքը. ու երբ բացաւ,
18 գտաւ այն տեղը՝ ուր գրուած էր, Տէրոջը Հո-
գին իմ վրաս է. *վասն զի զիս օծեց աղքատ-
ներուն աւետարան քարոզելու, զիս ղրկեց
19 կոտրած սիրտ ունեցողները բժշկելու, Գերի-
ներուն ազատութիւն և կոյրերուն տեսութիւն
քարոզելու, հարստահարութիւն կրողները ա-
զատ թող տալու, Տէրոջը ընդունելի տարին
20 քարոզելու: Եւ գիրքը գոցելով տուաւ սպա-
սաւորին ու նստաւ. և ժողովարանը եղողնե-
րուն ամէնը աչքերնին անկած անոր կը նայէին:
21 Եւ սկսաւ անոնց ըսել, Այսօր այս գրուածը
22 կատարուեցաւ ու ձեր ականջները լսեցին: Եւ
ամէնը անոր վրայ կը վկայէին, ու կը զարմա-
նային անոր բերնէն ելած շնորհալի խօսքերուն
վրայ, ու կ'ըսէին, Ասիկա Յովսէփի որդին չէ՞:
23 Եւ ըսաւ անոնց, Իրաւ որ դուք ինծի պիտի
ըսէք այս առակը, Բժիշկ, քու անձդ բժշկէ.
որչափ բաներ լսեցինք որ Կափառնայումի մէջ
24 եղան, հոս ալ ըրէ քու քաղաքիդ մէջ: Եւ
ըսաւ, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, թէ Մարգարէ
25 մը իր քաղաքին մէջ ընդունելի չէ: Եւ արդարև

*կամ, անոր համար

կ'ըսեմ ձեզի, Թէ Շատ որբեւարիներ կային
Եղիայի օրերը Իսրայէլի մէջ, երբ երեք տարի
ու վեց ամիս երկինք գոցուեցաւ, այնպէս որ
26 մեծ սով եղաւ բոլոր երկրին մէջ. Բայց Եղիա
անոնցմէ մէկո՛ւն չղրկուեցաւ, հապա միայն
Սիդոնացւոց Սարեփթա քաղաքին մէջ որբեւարի
27 կնոջ մը։ Եւ շատ բորոտներ կային Իսրայէլի
մէջ Եղիսէ մարգարէին ատենը, ու անոնցմէ
մէ՛կը չմաքրուեցաւ, հապա միայն Նէեման Ասո-
28 րի։ Եւ ժողովարանին մէջ ամէնն ալ բարկու-
29 թիւնով լեցուեցան՝ երբ այս խօսքերը լսեցին. Ու
ելան զանիկա քաղաքէն դուրս հանեցին, ու
տարին զանիկա մինչեւ այն լերանը ցցուած ծայ-
րը, որուն վրայ իրենց քաղաքը շինուած էր,
որպէս զի զանիկա բարձր տեղէն վար ձգեն։
30 Բայց ինք անոնց մէջէն անցաւ գնաց։
31 Եւ իջաւ Գալիլեայի Կափառնայում քաղա-
քը, ու շաբաթ օրերը կը սորվեցնէր անոնց։
32 Եւ կը զարմանային անոր վարդապետութեանը
վրայ, վասն զի իշխանութիւնով էր անոր խօս-
33 քը։ Եւ ժողովարանին մէջ մարդ մը կար, որ
պիղծ դեւի ոգի ունէր, ու մեծ ձայնով մը աղա-
34 ղակեց՝ Ըսելով, Թող տուր, դուն մեզի հետ
ի՞նչ բան ունիս, Յիսուս Նազովրեցի. միթէ
մեզ կորսնցնելո՞ւ եկար. գիտեմ քեզ ով ես.
35 Աստուծոյ Սուրբը։ Եւ Յիսուս սաստեց անոր՝
ըսելով, Պապանձէ ու ել ատկէ. ու դեւը զա-
նիկա ներքեւ գտնուողներուն մէջտեղը գետինը զար-
կաւ, և ելաւ անկէ, ու վնաս մը չտուաւ անոր։
36 Եւ զարմանք եկաւ ամէնուն վրայ, և իրարու
հետ կը խօսէին ու կ'ըսէին, Այս ի՞նչ խօսք է,
որ իշխանութիւնով և զօրութիւնով կը հրա-
37 մայէ պիղծ ոգիներուն, ու կ'ելլեն։ Եւ անոր
համբաւը տարածուեցաւ շրջակայ գաւառին
ամէն տեղերը։

38 Ու ժողովարանէն ելլելով՝ Սիմոնի տունը
39 մտաւ։ Սիմոնի զոքանչն ալ սաստիկ ջերմով կը
տանջուէր, ու անոր համար աղաչեցին իրեն։
40 Եւ Յիսուս անոր վրայ կայնելով՝ սաստեց ջերմին,
որ թողուց զանիկա. և շուտ մը ելաւ ու անոնց
սպասաւորութիւն կ'ընէր։
41 Եւ արևին մարը մտած ատենը՝ ամէն անոնք
որ ունէին տեսակ տեսակ ցաւերով հիւանդ-
ներ, իրեն բերին զանոնք. ինք ալ անոնցմէ
ամէն մէկուն վրայ ձեռք դնելով՝ բժշկեց զա-
42 նոնք։ Դևեր ալ կ'ելլէին շատերէն, կ'աղաղա-
կէին ու կ'ըսէին թէ Դուն ես Քրիստոս, Աս-
տուծոյ Որդին. և ինք կը սաստէր ու թող չէր
տար անոնց որ խօսին, վասն զի գիտէին թէ
ինք Քրիստոսն է։
43 Ու երբ ցորեկ եղաւ, ելաւ ու գնաց անա-
պատ տեղ մը, և ժողովուրդները կը փնտռէին
զանիկա. եկան մինչև անոր, ու կը ստիպէին
44 զանիկա որ իրենցմէ չերթայ. Բայց անիկա ը-
սաւ անոնց, Պէտք է ինծի որ ուրիշ քաղաքնե-
րու ալ Աստուծոյ թագաւորութիւնը քարոզեմ,
45 քանզի այս բանին համար ղրկուած եմ։ Ու
Գալիլեայի ժողովարաններուն մէջ կը քարոզէր։

## ԳԼ. Ե

1 Քրիստոս Պետրոսի նաւը նստած՝ կը սորվեցնէ ժողովուրդին, 4 և ձուկերու հրաշալի որսով մը կը ցուցնէ թէ Պետրոսը ու անոր ընկերները մարդոց որսորդներ պիտի ընէ։ 12 Քրիստոս բորոտը կը մաքրէ. 16 անապատ տեղ մը քաշուած՝ աղօթք կ'ընէ. 18 անդամալոյծ մը կը բժշկէ. 27 իրեն կը կանչէ Մատթէոս մաքսաւորը. 29 մեղաւորներու հետ հաց կ'ուտէ. 34 և կը նախաձայնէ թէ իր համբառնալէն ետև առաքեալները նեղութիւն պիտի կրեն ու ծոմ պահեն։

1 Ու եղաւ որ երբ ժողովուրդը անոր բոլորտի-
քը դիզուեցաւ Աստուծոյ խօսքը լսելու հա-
մար, ինք ալ Գեննեսարէթի ծովակին քով կե-
2 ցեր էր։ Ու տեսաւ երկու նաւեր որոնք ծովա-
կին քով կեցեր էին, և ձկնորսները անոնց

3 մէջէն ելած՝ ուռկանները կը լուային։ Ինք այն
նաւերէն մէկուն մէջ մտաւ որ Սիմոնին էր, և
աղաչեց անոր որ քիչ մը ցամաքէն ծովուն մէջ
տանի. և նստելով՝ նաւուն մէջէն ժողովուրդ-
ներուն կը սորվեցնէր։
4 Ու երբ խօսելէն դադարեցաւ, ըսաւ Սիմոնի,
Առաջ տար նաւը դէպ ի խորունկը, և ուռկան-
5 ներնիդ ձգեցէք ձուկ որսալու։ Եւ Սիմոն պա-
տասխան տալով ըսաւ անոր, Վարդապետ, բո-
լոր գիշերս աշխատեցանք ու բան մը չբռնե-
ցինք բայց քու խօսքիդ համար ուռկանը ձգեմ։
6 Ու երբ զայս ըրին, խիստ շատ ձուկեր ժողվե-
ցին մէջը, ու իրենց ուռկանը կը պատռուէր։
7 Եւ աչք կ'ընէին միւս նաւուն մէջ եղող իրենց
ընկերներուն՝ որ գան օգնեն իրենց. և եկան
ու երկու նաւերն ալ լեցուցին, մինչև որ ըն-
8 կղմելու մօտ էին։ Սիմոն Պետրոս երբ տե-
սաւ, Յիսուսի ծունկերուն ինկաւ ու ըսաւ, Տէր,
իմ քովէս մէկդի գնա, քանզի ես մեղաւոր
9 մարդ մըն եմ։ Վասն զի ապշութիւնը պատեց
զանիկա և անոր հետ եղող ամէնը՝ այն իրենց
10 բռնած ձուկերուն որսին համար. Նոյնպէս ալ
Զեբեդէոսի որդիները, Յակոբոս և Յովհան-
նէս, որոնք Սիմոնի ընկերներն էին. ու Յիսուս
ըսաւ Սիմոնի, Մի վախնար, ասկէ ետև մար-
11 դոց որսորդ պիտի ըլլաս։ Եւ նաւերը ցամաքը
հանելով՝ ամէն բան թողուցին ու անոր ետե-
ւէն գացին։
12 Ու եղաւ որ երբ ինք քաղաքի մը մէջ էր,
ահա մարդ մը բորոտութիւնով լեցուն՝ երբ
Յիսուսը տեսաւ, երեսի վրայ ինկնալով աղաչեց
անոր ու ըսաւ, Տէր, եթէ ուզես՝ կրնաս զիս
13 մաքրել։ Եւ Յիսուս իր ձեռքը երկնցնելով դպաւ
անոր, ու ըսաւ, Կ'ուզեմ, մաքրուէ. և շուտ մը
14 բորոտութիւնը անկէ գնաց։ Ու ինք պատուիրեց

անոր որ մարդո՛ւ չըսէ, Հապա, ըսաւ, Գնա՛ քեզ
քահանային ցուցուր, և Մովսէսի պատուիրա-
ծին պէս քու մաքրուելուդ ընծան տուր, ա-
15 նոնց վկայութիւն ըլլալու համար։ Եւ անոր
վրայով խօսքը աւելի կը տարածուէր ու շատ
ժողովուրդներ կը ժողվուէին մտիկ ընելու, և
անով իրենց հիւանդութիւններէն բժշկուե-
16 լու։ Ու ինք անապատ տեղեր կը քաշուէր և
աղօթք կ'ընէր։
17 Ու եղաւ որ օր մը ինք կը սորվեցնէր, ու փարի-
սեցիներ և օրինաց վարդապետներ նստած էին,
որոնք Գալիլեայի ու Հրէաստանի ու Երուսա-
ղէմի բոլոր գիւղաքաղաքներէն ժողվուած էին.
ու Տէրոջը զօրութիւնը ներկայ էր զանոնք բժըշ-
18 կելու։ Եւ ահա քանի մը մարդիկ անդամալոյծ
մարդ մը մահիճովը բերին, և հնարը կը փնտռ-
ուէին թէ ի՛նչպէս զանիկա ներս խոթեն ու
19 դնեն անոր առջև։ Ու երբ բազմութենէն ճամ-
բայ չէին գտներ՝ որ անկէ ներս խոթեն զանի-
կա, տանիքին վրայ ելան, և զանիկա կղմինտր-
ներուն մէջէն մահիճովը մէջտեղը Յիսուսի առ-
20 ջև իջեցուցին։ Եւ անիկա տեսնելով անոնց
հաւատքը՝ ըսաւ անոր, Ով մարդ, քու մեղքերդ
21 քեզի ներուած են։ Եւ դպիրները ու փարի-
սեցիները սկսան խորհիլ ու ըսել, Ո՞վ է ասի-
կա՝ որ հայհոյութիւններ կը խօսի. ո՞վ կրնայ
մեղքերու թողութիւն տալ, բայց միայն Աստ-
22 ուած։ Եւ Յիսուս իմանալով անոնց խորհուրդ-
ները՝ պատասխան տուաւ ու ըսաւ անոնց, Սիր-
23 տերնուդ մէջ ի՞նչ կը խորհիք։ Ո՞ր աւելի դիւ-
րին է, Քու մեղքերդ քեզի ներուած են՝ ըսե՞-
24 լը, թէ Ելիր ու քալէ՝ ըսելը։ Բայց որպէս զի
գիտնաք թէ Որդին մարդոյ իշխանութիւն ու-
նի երկրի վրայ մեղքերու թողութիւն տալու,
(ըսաւ անդամալոյծին,) Քեզի կ'ըսեմ, Ելիր

25 մահիճդ առ ու տունդ գնա։ Ան ալ իսկոյն ա-
նոնց առջև ելաւ, ու վրան առաւ ինչ բանի
վրայ որ պառկած էր, և գնաց իր տունը, ու
26 Աստուծոյ փառք կու տար։ Եւ ամէնը ապշած
մնացին, ու Աստուծոյ փառք կու տային, և
վախով լեցուած՝ կ'ըսէին թէ Այսօր նորանշան
բաներ տեսանք։
27 Եւ այս բաներէն ետև ելաւ անկէ, ու տեսաւ
մաքսաւոր մը, որուն անունը Ղևի էր որ մաքս
ընդունելու տեղը նստեր էր, ու ըսաւ անոր,
28 Ետևէս եկուր։ Ան ալ թողուց ամէնը և ելաւ
29 գնաց անոր ետևէն։ Ու Ղևի անոր մեծ կո-
չունք մը ըրաւ իր տանը մէջ. և շատ բազմու-
թիւն կար մաքսաւորներու և ուրիշներու՝ որ
30 անոնց հետ սեղան նստեր էին։ Եւ անոնց
դպիրները ու փարիսեցիները տրտունջ կ'ընէին
անոր աշակերտներուն ու կ'ըսէին, Ինչո՞ւ հա-
մար մաքսաւորներուն և մեղաւորներուն հետ
31 կ'ուտէք ու կը խմէք։ Եւ Յիսուս պատասխան
տալով՝ ըսաւ անոնց, Առողջներուն բժիշկ
32 պէտք չէ, հապա հիւանդներուն. Ես արդար-
ները կանչելու չեկայ, հապա մեղաւորները՝
ապաշխարութեան։
33 Անոնք ալ ըսին անոր, Ինչո՞ւ Յովհաննէսի
աշակերտները շատ անգամ՝ ծոմ կը պահեն և
աղօթքներ կ'ընեն, նոյնպէս ալ փարիսեցինե-
րուն աշակերտները. և քուկիններդ կ'ուտեն ու կը
34 խմեն։ Անիկա ալ ըսաւ անոնց, Կրնա՞ք հարս-
նիքին տղոցը ծոմ պահել տալ՝ քանի որ փե-
35 սան իրենց հետ է։ Բայց օրեր պիտի գան՝ որ
երբ փեսան իրենցմէ վերցուի, ապա այն օրե-
36 րը ծոմ պիտի պահեն։ Առակ մըն ալ ըսաւ ա-
նոնց, թէ Մէկը չձգեր նոր լաթի կտոր հին
հանդերձի վրայ. եթէ ոչ՝ այն նորը պատ-
ռուածք ալ կ'ընէ, ու հինցածին հետ ալ չմիա-

37 բանիր այն նոր լաթէն եղած կտորը ։ Եւ մէկը նոր
գինին հին տիկերու մէջ չդներ․ եթէ ոչ՝ նոր
գինին *տիկերը կը պատռէ, ինք կը թափի ու
38 տիկերը կը կորսուին․ Հապա նոր գինին նոր
տիկերու մէջ դնելու է, ու երկուքն ալ կը
39 պահուին ։ Եւ մէկը հին գինին խմելէն ետև ան-
միջապէս նորը չուզեր, քանզի կ՚ըսէ թէ Հինը
աւելի ախորժելի է ։

## ԳԼ․ Զ

1 Քրիստոս շաբաթ օրուան պահպանութեանը վրայով փարիսեցիներուն կուրութիւնը կը յանդիմանէ Սուրբ Գրոց վկայութեամբ՝ փաստով և հրաշքով․ 13 տասուերկու առաքեալները կ՚ընտրէ․ 17 հիւանդները կը բժշկէ․ 20 ժողովուրդին առջև իր աշակերտներուն խօսելով կը ցուցնէ թէ որո՛նց կը վայլէ երանութիւն և որո՛նց վայ․ 21 կը պատուիրէ թշնամին սիրել, 46 և Աստուծոյ խօսքին հնազանդելով բարիք գործել, որ չըլլայ թէ առանց հիման հողի վրայ շինուած տան մը պէս կործանինք փորձութեան օրը ։

1 Ու եղաւ որ երկրորդ առաջին շաբաթ օրը
ինք արտերուն մէջէն կ՚անցնէր, և իր աշա-
կերտները ցորենի հասկեր փրցնելով ձեռքերնուն
2 մէջ կը շփէին ու կ՚ուտէին ։ Ու փարիսեցինե-
րէն ոմանք ըսին անոնց, Ի՞նչ կ՚ընէք, զոր ար-
3 ժան չէ ընել շաբաթ օրը ։ Եւ Յիսուս պատաս-
խան տալով անոնց ըսաւ, Չէ՞ք կարդացեր
դուք Դաւիթի ըրածը, երբ անօթեցաւ ինք և
4 անոնք որ իրեն հետ էին, Ինչպէս անիկա Աս-
տուծոյ տունը մտաւ, և առաջաւորութեան
հացերը առաւ ու կերաւ, և տուաւ անոնց ալ
որ իրեն հետ էին․ զորոնք մարդու օրինաւոր չէ
5 ուտել, բայց միայն քահանաներուն ։ Եւ ըսաւ
անոնց, Որդին մարդոյ շաբաթին ալ տէրն է ։
6 Ու եղաւ որ ուրիշ շաբաթ օր մըն ալ ինք ժո-
ղովարանը մտաւ ու կը սորվեցնէր․ և հոն մարդ
7 մը կար որուն աջ ձեռքը չորցած էր ։ Եւ դպիր-
ները ու փարիսեցիները անոր կը սպասէին՝ թէ

*Ոմանք, հին տիկերը

շաբաթ օրը զանիկա կը բժշկէ՞, որպէս զի ամբաս-
8 տանութեան առիթ մը գտնեն անոր դէմ։ Իսկ
ինք գիտնալով անոնց խորհուրդները, ըսաւ այն
մարդուն որուն ձեռքը չորցած էր, Ելիր, մէջ-
9 տեղը կայնէ. ան ալ ելաւ կայնեցաւ։ Այն ա-
տեն Յիսուս ըսաւ անոնց, Ձեզի բան մը հարցնեմ.
Շաբաթ օրը ի՞նչ արժան է. բարի՞ք ընել թէ
չարիք ընել, հոգի մը ազատե՞լ թէ մեռցնել։
10 Եւ շուրջանակի ամէնուն վրայ նայելով՝ ըսաւ
անոր, Ձեռքդ երկնցուր. ան ալ այնպէս ըրաւ,
11 ու անոր ձեռքը ողջացաւ միւսին պէս։ Եւ ա-
նոնք կատաղութեամբ լեցուեցան, ու իրարու
հետ կը խօսէին թէ ի՞նչ ընեն Յիսուսի։
12 Ու եղաւ որ այն օրերը լեռը ելաւ աղօթք
ընելու, ու բոլոր գիշերը Աստուծոյ աղօթք ը-
13 նելով անցուց։ Ու երբ առտու եղաւ, կանչեց
իր աշակերտները, ու անոնցմէ տասներկու հո-
գի ընտրեց, զորոնք առաքեալ ալ անուանեց.
14 Սիմոնը՝ զոր Պետրոս ալ անուանեց, և անոր
եղբայրը Անդրէասը, Յակոբոսը ու Յովհաննէ-
15 սը, Փիլիպպոսը և Բարթողոմէոսը, Մատթէո-
սը և Թովմասը, Ալփէոսեան Յակոբոսը և Նա-
16 խանձայոյզ ըսուած Սիմոնը, Յակոբոսի եղբայրը
Յուդա, և Իսկարիովտացի Յուդա, որ և մատ-
17 նիչ եղաւ։ Եւ անոնց հետ իջնելով՝ տափարակ
տեղ մը կայնեցաւ, նաև իր աշակերտներուն
ժողովը՝ ու մեծ բազմութիւն մը ժողովուրդնե-
րու՝ բոլոր Հրէաստանէ ու Երուսաղէմէ և Տիւ-
18 րոսի ու Սիդոնի ծովեզերքէն. Որոնք եկան ա-
նոր խօսքերը մտիկ ընելու, ու իրենց հիւանդու-
թիւններէն բժշկուելու. և պիղծ ոգիներէն
նեղութիւն կրողներն ալ եկան ու կը բժշկուէին։
19 Եւ բոլոր ժողովուրդը կ'ուզէր իրեն դպչիլ, վասն
զի զօրութիւն կ'ելլէր իրմէ ու ամէնը կը
բժշկէր։

20 Եւ ինք իր աչքերը դէպ իր աշակերտները
վերցուց ու ըսաւ, Երանի՜ ձեզի աղքատներուդ,
վասն զի ձերն է Աստուծոյ թագաւորութիւնը։
21 Երանի՜ ձեզի որ հիմա անօթի էք, վասն զի պիտի
կշտանաք. երանի՜ ձեզի որ հիմա կու լաք, վասն
22 զի պիտի խնդաք։ Երանի՜ է ձեզի՝ երբ մարդիկ
ձեզ ատեն, ու երբ ձեզ իրենց ընկերութենէն մերժեն
ու նախատեն, և ձեր վրայով գէշ անուն հա-
23 նեն Որդւոյ մարդոյ պատճառաւ։ Ուրախ եղէք
դուք այն օրը ու ցնծացէք, որ ահա ձեր վարձ-
քը շատ է երկինքը. վասն զի իրենց հայրերը
24 այդպէս կ'ընէին մարգարէներուն։ Բայց վա՜յ
ձեզի հարուստներուդ, վասն զի ձեր մխիթա-
25 րութիւնը առած էք։ Վա՜յ ձեզի որ կուշտ էք,
վասն զի պիտի անօթենաք. վա՜յ ձեզի որ հիմա
կը ծիծաղիք, վասն զի սուգ պիտի ընէք ու լաք։
26 Վա՜յ ձեզի երբ *մարդիկ ձեր վրայով աղէկ
խօսին, վասն զի իրենց հայրերը այդպէս կ'ը-
նէին սուտ մարգարէներուն։
27 Բայց կ'ըսեմ ձեզի որ մտիկ կ'ընէք, Սիրեցէք
ձեր թշնամիները, ձեզ ատողներուն բարի ըրէք.
28 Ձեզ անիծողները օրհնեցէք, ձեզի նեղութիւն
29 տուողներուն համար աղօթք ըրէք։ Ան որ քու
մէկ ծնօտիդ կը զարնէ, միւսն ալ մօտեցուր
անոր. և ան որ քու վերարկուդ քեզմէ կը հա-
30 նէ, մի արգիլեր անկէ շապիկդ ալ։ Ա՛ն ամէ-
նուն որ քեզմէ կ'ուզէ՝ տուր, ու քու բաներդ
31 առնողէն զանոնք մի պահանջեր։ Եւ ինչպէս կ'ու-
զէք որ մարդիկ ձեզի ընեն, դուք ալ անոնց
32 այնպէս ըրէք։ Եւ եթէ դուք ձեզ սիրողները
սիրէք, ի՞նչ շնորհ կ'ունենաք. վասն զի մեղա-
33 ւորներն ալ կը սիրեն զիրենք սիրողները։ Եւ
եթէ դուք ձեզի բարի ընողներուն բարի ընէք,
ի՞նչ շնորհ կ'ունենաք. վասն զի մեղաւորներն

*Ոմանք, բոլոր մարդիկ

34 ալ նոյն բանը կ'ընեն։ Եւ եթէ այնպիսի մար-
դոց փոխ տաք՝ որոնցմէ յոյս ունիք առնելու,
ինչ շնորհ կ'ունենաք. վասն զի մեղաւորներն
ալ մեղաւորներուն փոխ կու տան, որպէս զի
35 նոյն չափով ետ առնեն։ Հապա սիրեցէք դուք
ձեր թշնամիները, ու բարի ըրէք, և փոխ
տուէք առանց փոխարէնի մը սպասելու, և ձեր
վարձքը շատ պիտի ըլլայ, ու Բարձրելոյն որդի-
ները պիտի ըլլաք. վասն զի անիկա բարերար է
36 ապերախտներուն ու չարերուն։ Ուրեմն գթած
37 եղէք, ինչպէս ձեր Հայրն ալ գթած է։ Մի
դատէք, ու պիտի չդատուիք. մի դատապար-
տէք, ու պիտի չդատապարտուիք. ներեցէք, ու
38 ձեզի պիտի ներուի. Տուէք, ու ձեզի պիտի
տրուի. աղէկ չափով, կոխուած, ցնցուած, լեփ-
լեցուն պիտի տրուի ձեր գոգը. քանզի այն չա-
փովը որով դուք կը չափէք, ձեզի պիտի չափուի։
39 Առակ մըն ալ ըսաւ անոնց, Միթէ կոյրը
կոյրին կրնա՞յ առաջնորդութիւն ընել. չէ՞ որ
40 երկուքն ալ փոսը պիտի իյնան։ Աշակերտը իր
վարդապետէն մեծ չէ, բայց ամէն կատարելա-
պէս վարժուածը իր վարդապետին պէս կ'ըլլայ։
41 Եւ ինչո՞ւ քու եղբօրդ աչքին մէջի շիւղը կը
տեսնես, ու քու աչքիդ մէջի գերանին չես
42 նայիր։ Կամ ինչպէս կրնաս ըսել քու եղբօրդ,
Եղբայր, թող տուր որ աչքիդ մէջի շիւղը հա-
նեմ. և դուն քու աչքիդ մէջի գերանը չես
տեսներ. կեղծաւոր, առաջ քու աչքէդ գերա-
նը հանէ, ու ետքը պարզ պիտի տեսնես քու
43 եղբօրդ աչքին մէջի շիւղը հանելու։ Քանզի
չկայ բարի ծառ մը որ չար պտուղ բերէ, ոչ ալ
44 չար ծառ մը որ բարի պտուղ բերէ. Վասն զի
ամէն ծառ իր պտուղէն կը ճանչցուի. քանզի
փուշերէն թուզ չեն քաղեր, ու մորենիէն խա-
45 ղող չեն ժողվեր։ Բարի մարդը իր սրտին բարի

գանձէն բարութիւն կը բղխէ, և չար մարդը
իր սրտին չար գանձէն չարութիւն կը բղխէ․
վասն զի իր բերանը սրտին աւելցուքէն կը խօսի։
46 Եւ ինչո՞ւ զիս Տէր, Տէր, կը կոչէք, ու ըսած
47 բաներս չէք կատարեր։ Այն ամէնը որ ինծի
կու գայ և իմ խօսքերս կը լսէ ու զանոնք կը
կատարէ, ձեզի ցուցնեմ թէ որու՛ կը նմանի։
48 Անիկա տուն շինող մարդու մը կը նմանի, որ
փորեց ու խորունկցուց, ու հիմը վէմի վրայ
դրաւ․ և ջուրերուն յորդած ատենը գետը զար-
կաւ այն տանը, ու չկրցաւ զանիկա շարժել,
49 վասն զի վէմի վրայ հաստատուած էր։ Բայց ան
որ իմ խօսքերս կը լսէ ու չկատարեր, կը նմանի այն
մարդուն՝ որ հողի վրայ առանց հիմի տուն կը
շինէ․ որու գետը զարկաւ, և շուտ մը փլաւ,
ու այն տանը կործանումը մեծ էր։

## ԳԼ․ Է

1 Քրիստոս աւելի մեծ հաւատք կը գտնէ հեթանոս հարիւրապետի մը վրայ քան թէ Հրեաներուն վրայ․ 10 անոր ծառան չտեսած կը բժշկէ․ 11 Նային քաղաքին եղող այրի կնոջ մը զաւակը կը յարուցանէ․ 19 իր հրաշքները յիշելով պատասխան կու տայ Յովհաննէսի ղրկած մարդոցը․ 24 Յովհաննէսի վրայով իր ունեցած գաղափարը կը յայտնէ ժողովուրդին․ 30 կը յանդիմանէ Հրեաները՝ որ ո՛չ Յովհաննէսի և ո՛չ իր վարմունքովը հաւնեցան․ 36 կը ցուցնէ թէ ինք բարեկամ է մեղաւորներուն, ոչ թէ զանոնք մեղքի մէջ պահելու, այլ անոնց մեղքերը ներելու, երբ անոնք զղջի գան ու հաւատան։

1 Ու երբ իր բոլոր խօսքերը ժողովուրդին ա-
կանջներուն խօսիլը լմնցուց, մտաւ Կափառնա-
2 յում։ Եւ հարիւրապետի մը ծառայ ծանր հի-
ւանդացած՝ մօտ էր մեռնելու, որ սիրելի էր
3 անոր։ Երբ Յիսուսի վրայով լսեց, Հրեաներէն
քանի մը ծերեր ղրկելով՝ աղաչեց անոր որ գայ իր
4 ծառան ապրեցնէ։ Անոնք ալ եկան Յիսուսի և
թախանձանօք կ'աղաչէին անոր ու կ'ըսէին թէ
Անիկա արժանի է՝ որու այս շնորհը պիտի ընես․
5 Վասն զի մեր ազգը կը սիրէ, ու ժողովարանը
6 անիկա շինեց մեզի։ Եւ Յիսուս անոնց հետ

գնաց. երբ տունէն շատ հեռու չէր, հարիւ-
րապետը ղրկեց անոր քանի մը բարեկամներ, ու
ըսաւ անոր, Տէր, մի՛ յոգնիր, վասն զի ես ար-
ժանի չեմ որ դուն իմ յարկիս տակ մտնես.
7 Անոր համար ես ինքզինքս ալ արժանի չսեպե-
ցի քեզի գալու. հապա խօսքով զրուցէ, և իմ
8 ծառաս պիտի բժշկուի։ Վասն զի ես ալ իշ-
խանութեան տակ դրուած մարդ մըն եմ, ու
իմ հրամանիս տակ զինուորներ ունիմ. և ասոր
կ'ըսեմ, Գնա, ու կ'երթայ. և միւսին՝ թէ
Եկուր, ու կու գայ. և ծառայիս՝ թէ Այս բա-
9 նը ըրէ, ու կ'ընէ։ Յիսուս այս բաները լսելով՝
զարմացաւ անոր վրայ. և իր ետևէն գացող
ժողովուրդին դարձաւ ու ըսաւ, Ձեզի կ'ըսեմ,
որ Իսրայէլի մէջ անգամ ես այսչափ հաւատք
10 չգտայ։ Ու պատգամաւորները նորէն տուն դար-
ձան, և հիւանդ ծառան առողջացած գտան։
11 Ու եղաւ որ հետևեալ օրը քաղաք մը կ'եր-
թար, որուն անունը Նային էր, և անոր հետ
կ'երթային իր աշակերտներէն շատերը ու մեծ
12 բազմութիւն։ Ու երբ քաղաքին դրանը մօտե-
ցաւ, ահա մեռել մը դուրս կը հանէին, իր մօ-
րը մէկ հատիկ տղան. և անիկա որբևարի էր,
ու քաղաքին շատ ժողովուրդը անոր հետ էր։
13 Եւ Տէրը զանիկա տեսնելով՝ խղճաց անոր վրայ,
14 ու ըսաւ անոր, Մի՛ լար։ Եւ մօտենալով՝ դա-
գաղին դպաւ, ու տանողները կանգ առին. և
15 ըսաւ, Ով պատանի, քեզի կ'ըսեմ, Ելի՛ր։ Ու
մեռելը ելաւ նստաւ, ու սկսաւ խօսիլ. ու տուաւ
16 զանիկա իր մօրը։ Եւ ամէնն ալ վախով բռ-
նուեցան, ու զԱստուած կը փառաւորէին՝ ըսե-
լով թէ Մեծ մարգարէ մը ելեր է մեր մէջ. և
թէ Աստուած իր ժողովուրդին այցելութիւն
17 ըրաւ։ Եւ այս ձայնը անոր վրայով բոլոր Հրէ-
աստան ելաւ, ու բոլոր շրջակայ տեղերը։

18 Եւ Յովհաննէսի պատմեցին իր աշակերտնե-
19 րը այս ամէն բաներուն վրայով։ Յովհաննէս
ալ իր աշակերտներէն երկուքը իրեն կանչեց,
և զանոնք Յիսուսի ղրկեց՝ ըսելով, Դուն ա՞ն ես
20 որ գալու էիր, թէ ուրիշի մը սպասենք։ Եւ
այն մարդիկը եկան անոր ու ըսին, Յովհաննէս
մկրտիչը մեզ ղրկեց քեզի, ու կ'ըսէ, Դուն ա՞ն
ես որ գալու էիր, թէ ուրիշի մը սպասենք։
21 Եւ նոյն ժամուն շատերը բժշկեց իրենց հիւան-
դութիւններէն ու հարուածներէն և չար ոգի-
ներէն, և շատ կոյրերու տեսութիւն շնորհեց։
22 Եւ Յիսուս պատասխան տալով՝ անոնց ըսաւ,
Գացէք Յովհաննէսի պատմեցէք ինչ որ տեսաք
ու լսեցիք. որ կոյրերը կը տեսնեն, կաղերը կը
քալեն, բորոտները կը մաքրուին, խուլերը կը
լսեն, մեռելները յարութիւն կ'առնեն, աղ-
23 քատներուն աւետարան կը քարոզուի։ Եւ ե-
րանի՛ անոր որ իմ՛ վրայովս չգայթակղիր։
24 Ու երբ Յովհաննէսի ղրկած մարդիկը գացին,
Յիսուս սկսաւ ժողովուրդներուն ըսել Յովհան-
նէսի համար, Ի՞նչ տեսնելու ելաք անապատին
25 մէջ. եղէ՞գ մը հովէն շարժուած։ Հապա ի՞նչ
տեսնելու ելաք. փափուկ հանդերձներ հագած
մա՞րդ մը. ահա անոնք որ փառաւոր հագուստ-
ներով ու փափկութեան մէջ են, թագաւորա-
26 կան պալատներն են։ Հապա ի՞նչ տեսնելու
ելաք. մարգարէ՞. այո, կ'ըսեմ ձեզի, մարգարէէ
27 մըն ալ աւելի։ Վասն զի ասիկա է՝ որու համար
գրուած է, Ահա ես իմ՛ դեսպանս կը ղրկեմ
քու երեսիդ առջեւէն, որ քու ճամբադ պիտի
28 պատրաստէ քու առջեւդ։ Քանզի կ'ըսեմ ձե-
զի, Կիներէն ծնածներուն մէջ Յովհաննէս մկր-
տիչէն մեծ մարգարէ չկայ. սակայն Աստու-
ծոյ թագաւորութեանը մէջ ամէնէն պզտիկը
անկէ մեծ է։

29 Եւ բոլոր ժողովուրդը ու մաքսաւորները երբ
լսեցին, արդարացուցին զԱստուած, որ Յով-
30 հաննէսի մկրտութիւնովը մկրտուեցան։ Բայց
փարիսեցիները և օրինականները իրենց անձին
դէմ Աստուծոյ խորհուրդը անարգեցին, և
անկէ չմկրտուեցան։
31 *Ուստի որո՞ւ նմանցնեմ այս ազգին մարդի-
32 կը, և որո՞ւ կը նմանին։ Կը նմանին տղոց, ո-
րոնք շուկաները նստելով՝ իրարու կը կանչեն
ու կ'ըսեն, Փող հնչեցուցինք ձեզի, ու չխաղա-
33 ցիք, ողբ կարդացինք ձեզի, ու չլացիք։ Վասն
զի Յովհաննէս մկրտիչ եկաւ, ոչ հաց կ'ուտէր
և ոչ գինի կը խմէր, ու կ'ըսէք, Դեւ կայ անոր
34 ներսիդին։ Որդին մարդոյ եկաւ, կ'ուտէ ու կը
խմէ, և կ'ըսէք, Ահա ուտող և արբեցող մարդ
մը, մաքսաւորներու ու մեղաւորներու բարե-
35 կամ։ Եւ իմաստութիւնը արդարացաւ իր բո-
լոր որդիներէն։
36 Փարիսեցիներէն մէկը կ'աղաչէր անոր որ իրեն
հետ հաց ուտէ. ան ալ փարիսեցիին տունը մտաւ
37 ու սեղան նստաւ։ Եւ ահա քաղաքին մէջ մե-
ղաւոր կին մը կար. երբ իմացաւ թէ անիկա
փարիսեցիին տունը սեղան նստեր է, շիշ մը
38 անուշահոտ իւղ բերաւ. Ու ետեւի կողմէն ա-
նոր ոտքերուն քով կեցեր՝ կու լար, և արցուն-
քովը սկսաւ անոր ոտքերը թրջել, ու իր գլը-
խուն մազերովը կը սրբէր, և կը համբուրէր
39 անոր ոտքերը, ու իւղով կ'օծէր։ Ու երբ տե-
սաւ փարիսեցին, որ զանիկա հրաւիրեր էր,
կ'ըսէր իր միտքին մէջ, Ասիկա եթէ մարգարէ
ըլլար, պիտի գիտնար թէ ո՛վ և ի՛նչպէս կին է
40 իրեն դպչողը, վասն զի մեղաւոր է։ Եւ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ անոր, Սիմոն, քե-
զի բան մը ունիմ ըսելու. ան ալ ըսաւ, Ըսէ,

*Ոմանք, Եւ Տէրը ըսաւ, Ուստի

41 վարդապետ. և ըսաւ, Փոխ տուող մը երկու պար-
տական ունէր, մէկը հինգ հարիւր դահեկան
42 պարտք ունէր, ու միւսը յիսուն։ Եւ որովհե-
տեւ հատուցանելու կարողութիւն չունէին, երկու-
քին ալ շնորհեց. հիմա ըսէ, Անոնցմէ ո՞րը
43 աւելի պիտի սիրէ զանիկա։ Պատասխան տուաւ
Սիմոն ու ըսաւ, Ինծի այնպէս կ'երեւնայ, թէ
որու որ շատ շնորհեց. ան ալ ըսաւ անոր, Ու-
44 ղիղ դատեցիր։ Ու դառնալով դէպ ի այն կինը՝
ըսաւ Սիմոնի, Կը տեսնե՞ս այս կինը. ես քու
տունդ մտայ, դուն ոտքերուս ջուր չտուիր,
բայց ասիկա իր արցունքովը ոտքերս թրջեց, և
45 իր *մազերովը սրբեց։ Դուն ինծի համբոյր մը
չտուիր, բայց ասիկա հոս մտնելէս ի վեր ոտ-
46 քերս համբուրելէն չդադարեցաւ։ Դուն իմ
գլուխս ձէթով չօծեցիր, բայց ասիկա իմ ոտ-
47 քերս անուշահոտ իւղով օծեց։ Ասոր համար
կ'ըսեմ քեզի, Ներուած են ասոր շատ մեղքե-
րը, վասն զի շատ սիրեց. բայց որու որ քիչ կը
48 ներուի, անիկա քիչ կը սիրէ. Ու ըսաւ անոր,
49 Քու մեղքերդ ներուած են։ Եւ անոր հետ սե-
ղան նստողները սկսան իրենց մէջ ըսել, Ո՞վ է
ասիկա որ մեղքերու թողութիւն ալ կու տայ։
50 Եւ ինք ըսաւ կնոջը, Քու հաւատքդ քեզ †փրկ-
կեց, գնա խաղաղութեամբ։

## ԳԼ. Ը

1 Կանայք իրենց ստացուածքովը ծառայութիւն կ'ընեն Քրիստոսի։ 4 Քրիստոս կը զրուցէ սերմնացանին 16 և ճրագին առակը. 21 կ'իմացնէ թէ ո՛վ են իր մայրը ու եղբայրները. 22 կը սաստէ հովերուն. 26 և մարդէ մը դեւերուն լէգէոնը դուրս հանելով՝ թող կու տայ անոնց որ խոզերուն երամակը մտնեն։ 37 Գադարացիք չեն ընդունիր զինք։ 43 Յիսուս տեղատես կինը կը բժշկէ, 49 և Յայրոսի աղջիկը կը յարուցանէ։

1 Ու եղաւ որ անկէ ետեւ ա՛լ ինք քաղաքէ
քաղաք ու գեղէ գեղ պտտելով կը քարոզէր,

*Յուն., գլխուն մազերովը

†Կամ, բժշկեց

և Աստուծոյ թագաւորութիւնը կ՚աւետարա-
2 նէր, ու տասուերկուքը իրեն հետ էր. Նաև
քանի մը կիներ՝ որոնք չար ոգիներէ ու հի-
ւանդութիւններէ բժշկուեր էին. Մարիամ որ
Մագդաղենացի կ՚ըսուէր, որկէ եօթը դև ե-
3 լեր էր, Եւ Յովհաննա, Հերովդէսի տանը վե-
րակացուին Քուզայի կինը, ու Շուշան և շատ
ուրիշներ, որոնք իրենց ստացուածքովը *անոր
ծառայութիւն կ՚ընէին։
4 Ու երբ մեծ բազմութիւն ժողվուեցաւ և
շատ քաղաքներէ իրեն եկան, առակով մը ըսաւ
5 անոնց, Սերմ ցանող մը ելաւ իր սերմը ցանելու.
ու ցանած ատենը մէկ քանին ճամբուն քով
ինկաւ և ոտքի տակ կոխուեցաւ, ու երկնքի թռչ-
6 չունները կերան զանիկա։ Եւ ուրիշը ապառա-
ժի վրայ ինկաւ, ու բուսածին պէս չորցաւ, հո-
7 վին հիւթ չունենալուն համար։ Եւ ուրիշը փու-
շերու մէջ ինկաւ, ու փուշերը անոր հետ բուս-
8 նելով, խեղդեցին զանիկա։ Եւ ուրիշը աղէկ
հողի մէջ ինկաւ, ու բուսնելով՝ հարիւրապա-
տիկ պտուղ տուաւ։ Երբ այս բաները կը զրու-
ցէր, կ՚աղաղակէր, Ան որ լսելու ականջ ունի՝
թող լսէ։
9 Եւ իր աշակերտները կը հարցնէին իրեն՝
10 ըսելով թէ Ի՞նչ պիտի ըլլայ այն առակը։ Ան
ալ ըսաւ, Ձեզի տրուած է գիտնալ Աստուծոյ
թագաւորութեան խորհուրդները, բայց ու-
րիշներուն առակներով կը խօսիմ. որպէս զի տես-
նելով՝ չտեսնեն, և լսելով՝ չիմանան։
11 Այդ առակը այս է. Սերմը Աստուծոյ խօսքն
12 է։ Ու ճամբուն քովինները անոնք են՝ որ կը լսեն,
ու ետքը Սատանայ կու գայ, անոնց սրտէն կը
հանէ խօսքը, որպէս զի չըլլայ թէ հաւատան
13 ու փրկուին։ Եւ ապառաժին վրայինները անոնք

*Ոմանք, անոնց

են՝ որ երբ կը լսեն, ուրախութեամբ կ'ընդու-
նին խօսքը, բայց արմատ չունին. ատեն մը կը
հաւատան, ու փորձութեան ժամանակ կը հե-
14 ռանան։ Եւ փուշերուն մէջ ինկածը անոնք են՝
որ կը լսեն, բայց հոգերով ու հարստութիւնով
և այս կեանքին ցանկութիւններովը զբաղած
15 ըլլալով՝ կը խեղդուին և անպտուղ կ'ըլլան։ Իսկ
աղէկ հողի մէջ ցանուածը անոնք են՝ որ բարի և
յօժար սրտով լսելով խօսքը կ'ընդունին ու
համբերութիւնով պտուղ կուտան։
16 Չկայ մէկը որ ճրագ վառէ ու ամանի մը տակ
կամ մահիճին ներքև դնէ, հապա աշտանակի
վրայ կը դնէ, որպէս զի ներս մտնողները լոյսը
17 տեսնեն։ Վասն զի չկայ ծածուկ բան մը որ պի-
տի չյայտնուի, ոչ ալ գաղտուկ բան մը որ պի-
18 տի չգիտցուի ու երևան չելլէ։ Ուստի նայեցէք
թէ ինչպէս կը լսէք. քանզի ով որ ունի՝ անոր
պիտի տրուի, և ով որ չունի՝ այն ալ զոր ինք
կը կարծէ թէ ունի, անկէ պիտի առնուի։
19 Եւ անոր մայրը ու եղբայրները իրեն եկան,
ու բազմութենէն չէին կրնար անոր քով եր-
20 թալ։ Եւ անոր իմացուցին՝ ըսելով, Քու մայրդ
ու եղբայրներդ դուրսը կայներ են, ու քեզ
21 տեսնել կ'ուզեն։ Եւ անիկա պատասխան տա-
լով՝ ըսաւ անոնց, Իմ մայրս ու իմ եղբայրներս
ասոնք են, որ Աստուծոյ խօսքը կը լսեն ու
զանիկա կը կատարեն։
22 Ու եղաւ որ օր մը նաւը մտաւ ինք և իր ա-
շակերտներն ալ, ու ըսաւ անոնց, Ծովակին
23 միւս կողմը անցնինք. և ճամբայ ելան։ Ու երբ
նաւով կ'երթային, ինք քնացաւ. ու հովի փո-
թորիկ մը իջաւ ծովակին վրայ, և նաւը կը լեց-
24 ուէր, ու իրենք վտանգի մէջ էին։ Մօտեցան,
արթնցուցին զանիկա ու ըսին, Վարդապետ,
վարդապետ, ահա կը կորսուինք. ան ալ ելաւ

սաստեց հովին ու ջուրերուն խռովութեանը․
և հանդարտեցան, ու խաղաղութիւն եղաւ։
25 Եւ ըսաւ անոնց, Ո՞ւր է ձեր հաւատքը․ և ա-
նոնք վախի մէջ իյնալով՝ զարմացան, ու իրարու
կ՚ըսէին, Արդեօք ո՞վ է ասիկա՝ որ հովերուն
ու ջուրին ալ հրաման կու տայ, և կը հնազան-
դին ասոր։
26 Ու նաւելով իջան *Գադարացւոց երկիրը, որ
27 Գալիլեայի դիմացի կողմն է։ Եւ ինք ցամաքը
ելլելուն պէս՝ այն քաղաքէն մարդ մը ելաւ դի-
մացը, որուն ներսը շատ ատենէ ի վեր դևեր
կային․ ու անիկա հանդերձ չէր հագներ, ոչ ալ
տան մէջ կը բնակէր, հապա գերեզմաններու
28 մէջ։ Եւ Յիսուսը տեսնելով՝ աղաղակեց ու իյն-
կաւ անոր առջև, ու բարձր ձայնով ըսաւ,
Դուն ինծի հետ ի՞նչ բան ունիս, Յիսուս, Որդի
Աստուծոյ Բարձրելոյ․ կ՚աղաչեմ՝ քեզի, զիս մի
29 տանջեր։ (Վասն զի հրամայեց պղծ ոգիին որ
այն մարդէն ելլէ․ որովհետև շատ ատեններ որ
զանիկա յափշտակեր էր, և անիկա շղթանե-
րով ու ոտնակապերով կապուած կը պահուէր,
բայց կապերը կը կոտրտէր ու դևէն անապատը
30 կը քշուէր։) Հարցուց անոր Յիսուս ու ըսաւ,
Անունդ ի՞նչ է․ ան ալ ըսաւ, Լէգէոն․ վասն
31 զի շատ դևեր մտեր էին անոր ներսիդին։ Եւ
կ՚աղաչէին անոր որ անդունդը երթալու հրա-
32 ման չընէ իրենց։ Եւ այնտեղ շատ խոզերու
երամակ մը կար, որոնք լեռը կ՚արածուէին․ ու
աղաչեցին անոր որ իրենց հրաման տայ անոնց
33 մէջ մտնելու․ և հրաման տուաւ անոնց։ Ու
դևերը մարդէն ելլելով՝ խոզերուն մէջ մտան,
և երամակը զառիվէժ տեղէն ծովակը վազեց
34 ու խեղդուեցաւ։ Եւ խոզարածները այս եղած
բանը տեսնելով փախան, ու պատմեցին քա-

*Ոմանք, Գերգեսացւոց

35 դէպքը ու ագարակները։ Եւ մարդիկ ելան եղած
բանը տեսնելու, ու եկան Յիսուսի, և գտան
այն մարդը՝ ուրկէ դեւերը ելեր էին, հագուած
ու խելքը վրան Յիսուսի ոտքերուն քով նըս-
36 տած, ու վախցան։ Եւ անոնք որ տեսեր էին,
պատմեցին անոնց թէ ինչպէս դիւահարը ա-
37 զատեցաւ։ Եւ Գադարացւոց շրջակայ տեղերը
գտնուող բոլոր բազմութիւնը կ'աղաչէր անոր,
որ իրենցմէ երթայ, վասն զի մեծ վախով բռ-
նուած էին. ան ալ նաւը մտնելով ետ դարձաւ։
38 Եւ այն մարդը՝ ուրկէ դեւերը ելեր էին, կ'ա-
ղաչէր անոր որ հետը ըլլայ, բայց Յիսուս ար-
39 ձակեց զանիկա ու ըսաւ, Դարձիր քու տունդ,
ու պատմէ ինչ որ Աստուած քեզի ըրաւ. ան ալ
գնաց, ու բոլոր քաղաքին մէջ քարոզեց ինչ որ
Յիսուս իրեն ըրաւ։
40 Ու երբ Յիսուս ետ դարձաւ, ժողովուրդը
զանիկա ընդունեց, վասն զի ամէնը անոր կը
41 սպասէին։ Եւ ահա Յայրոս անունով մարդ մը
եկաւ, ու ինք ժողովարանին իշխանն էր. և
Յիսուսի ոտքը իյնալով՝ կ'աղաչէր անոր որ իր
42 տունը մտնէ. Վասն զի մէկ հատիկ աղջիկ մը
ունէր, գրեթէ տասուերկու տարեկան, որ մեռ-
նելու մօտ էր. ու երբ անիկա կ'երթար, բազ-
մութիւնը կը նեղէր զանիկա։
43 Եւ կին մը, որ տասուերկու տարիէ ի վեր
արիւնի տեղատուութեան մէջ էր, ու իր բո-
լոր ունեցածը բժիշկներուն ծախք ըրած էր, և
իրեն ոչ մէկէն բժշկուելու ձար մը եղած էր,
44 Ետևէն մօտենալով՝ անոր հանդերձին քղանց-
քին դպաւ, և իսկոյն իր արիւնին հոսումը դա-
45 դարեցաւ։ Եւ Յիսուս ըսաւ, Ո՞վ էր ան որ ին-
ծի դպաւ. երբ ամէնը կ'ուրանային, ըսաւ
Պետրոս ու անոր հետ եղողները, Վարդապետ,
բազմութիւնը քեզ կը հրէ ու կը նեղէ, ու

46 կ'ըսե՞ս թէ Ո՞վ ինծի դպաւ։ Եւ Յիսուս ըսաւ,
Մէկը ինծի դպաւ, քանզի իմացայ որ ինծմէ
47 զօրութիւն մը ելաւ։ Եւ տեսաւ կինը որ բանը
անկէ չպահուեցաւ, դողալով եկաւ ու անոր առ-
ջև ինկաւ, և բոլոր ժողովուրդին առջև անոր
պատմեց թէ ինչ բանի համար անոր դպեր էր,
48 և թէ ինչպէս ինք իսկոյն բժշկուեցաւ։ Եւ
Յիսուս ըսաւ անոր, Քաջալերուէ, աղջիկ, քու
հաւատքդ քեզ բժշկեց, գնա խաղաղու-
թեամբ։
49 Երբ ինք դեռ կը խօսէր, ժողովրդապետին
տունէն մէկը եկաւ ու ըսաւ անոր, Աղջիկդ
50 մեռաւ, ալ վարդապետը մի յոգնեցներ։ Բայց
Յիսուս երբ լսեց, պատասխան տուաւ անոր ու
ըսաւ, Մի վախնար, միայն հաւատա, ու պիտի
51 ապրի։ Եւ երբ տունը մտաւ, ուրիշ մէկը թող
չտուաւ որ մտնէ, բայց միայն Պետրոսը ու Յա-
կոբոսը և Յովհաննէսը ու աղջկան հայրը ու
52 մայրը։ Ամէնն ալ կու լային ու կ'ողբային անոր
վրայ. և ինք ըսաւ, Մի լաք, անիկա մեռած չէ,
53 հապա կը քնանայ։ Եւ անոնք ծաղր կ'ընէին
54 զանիկա, քանզի գիտէին թէ մեռաւ։ Ու ինք
ամէնն ալ դուրս հանելով՝ բռնեց անոր ձեռ-
55 քէն ու կանչեց՝ ըսելով, Աղջիկ, ելիր։ Եւ անոր
հոգին դարձաւ, ու իսկոյն ոտք ելաւ. և Յիսուս
56 հրաման ըրաւ որ ուտելիք տան անոր։ Ու
անոր ծնողքը ապշած մնացին. և ինք ա-
նոնց պատուիրեց որ եղած բանը մարդո՛ւ
չզրուցեն։

# ԳԼ. Թ

1 Քրիստոս իր աշակերտները կը ղրկէ հրաշքներ ընելու և քարոզելու։ 7 Հերովդէս կը ցանկայ Քրիստոսը տեսնելու։ 17 Քրիստոս հինգ հազար հոգի կը կերակրէ. 18 կը հարցնէ թէ մարդիկ իրեն համար ո՞վ է կ'ըսեն. 22 իր չարչարանքները կը նախածայնէ. 23 ամէնուն պատուէր կու տայ որ իր օրինակին հետևին։ 28 Քրիստոսի այլակերպութիւնը։ 37 Քրիստոս կը բժշկէ լուսնոտը. 43 դարձեալ իր չարչարանքը կը նախածայնէ իր աշակերտներուն. 46 կը պատուիրէ անոնց որ խոնարհ ըլլան, 51 ամէնուն հետ քաղցրութեամբ վարուին՝ առանց վրէժխնդրութեան։ 57 քանի մը անձինք կ'ուզեն Քրիստոսի հետևիլ, սակայն պայմաններ կ'առաջարկեն։

1 Եւ իր տասնըերկու *աշակերտները մէկտեղ
իրեն կանչելով՝ անոնց զօրութիւն ու իշխա-
նութիւն տուաւ բոլոր դեւերուն վրայ և ախ-
2 տերը բժշկելու։ Ու զանոնք ղրկեց որ Աստու-
ծոյ թագաւորութիւնը քարոզեն ու հիւանդ-
3 ները բժշկեն։ Եւ ըսաւ անոնց, Ճամբու համար
բան չառնէք, ոչ գաւազան և ոչ պարկ, ոչ հաց
և ոչ ստակ, ոչ ալ կրկին հանդերձ ունենաք։
4 Եւ ո՛ր տուն որ մտնէք, հոն մնացէք ու անկէ
5 ելէք։ Ու անոնք որ ձեզ չեն ընդունիր, երբ այն
քաղաքէն կ'ելլէք, ձեր ոտքերուն փոշին ան-
գամ թօթուեցէք՝ իրենց դէմ վկայութիւն ըլ-
6 լալու համար։ Եւ անոնք ելան ու գեղէ գեղ
կը պտըտէին, և ամէն տեղ աւետարանը կը
քարոզէին ու բժշկութիւն կ'ընէին։
7 Եւ Հերովդէս չորրորդապետը անոր բոլոր
գործերը լսելով՝ տարակուսանքի մէջ էր. որով-
8 հետև ոմանք ըսած էին թէ Յովհաննէս յա-
րութիւն առաւ մեռելներէն, և ոմանք՝ թէ
Եղիա յայտնուեցաւ, և ուրիշներն ալ՝ թէ
Առաջուան մարգարէներէն մէկը յարութիւն
9 առաւ։ Եւ Հերովդէս ըսաւ, Յովհաննէսը ես
գլխատեցի, հապա ասիկա ո՞վ պիտի ըլլայ, ո-
րուն վրայով այսպիսի բաներ կը լսեմ. ու կ'ու-
զէր որ տեսնէ զանիկա։
10 Եւ առաքեալները դարձան ու պատմեցին

*Ոմանք, առաքեալները

անոր ինչ որ ըրին. և առաւ զանոնք, առան-
ձին անապատ տեղ մը քաշուեցաւ քաղաքի մը
11 քով՝ որուն անունը Բեթսայիդա էր։ Եւ ժո-
ղովուրդները երբ իմացան՝ անոր ետևէն գա-
ցին, ու զանոնք ընդունելով՝ կը խօսէր անոնց
Աստուծոյ թագաւորութեանը վրայով. և որոնք
որ բժշկութեան կարօտ էին՝ կը բժշկէր։
12 Ու երբ օրը սկսաւ իրիկուան մօտենալ, տաս-
ներկուքը եկան ու ըսին անոր, Արձակէ ժո-
ղովուրդները, որպէս զի շրջակայ գեղերը ու
ագարակները երթան իջևանին ու կերակուր
գտնեն, վասն զի հոս անապատ տեղ մըն ենք։
13 Ըսաւ անոնց, Դուք տուէք ատոնց ուտելիք.
անոնք ալ ըսին, Մենք հինգ նկանակէն ու եր-
կու ձուկէն աւելի բան չունինք, եթէ չերթանք
այդ բոլոր ժողովուրդին համար կերակուր չգը-
14 նենք։ (Քանզի հինգ հազարի չափ այր մարդիկ
կային։) Ու ըսաւ իր աշակերտներուն, Ասոնք
15 դաս դաս, յիսուն յիսուն, նստեցուցէք։ Եւ
16 այնպէս ըրին ու ամէնն ալ նստեցուցին։ Եւ
այն հինգ նկանակը ու երկու ձուկը առնելով
ու դէպ ի երկինք նայելով՝ օրհնեց զանոնք ու
կտրեց, և կու տար աշակերտներուն, որպէս զի
17 ժողովուրդին առջև դնեն։ Եւ կերան ու կըշ-
տացան ամէնն ալ, ու աւելցած կտորուանք-
ները տասուերկու կողով վերցուցին։
18 Ու եղաւ որ երբ ինք առանձին աղօթք կ'ը-
նէր, աշակերտներն ալ իրեն հետ էին, և հար-
ցուց անոնց՝ ըսելով, Ժողովուրդները ինծի հա-
19 մար ո՞վ կ'ըսեն թէ եմ։ Անոնք ալ պատասխան
տալով՝ ըսին, Ոմանք՝ Յովհաննէս մկրտիչը, և ու-
րիշներ՝ Եղիա, ուրիշներ ալ՝ թէ Առաջուան մար-
20 գարէներէն մէկը յարութիւն առեր է։ Եւ ինք
ըսաւ անոնց, Հապա դուք ինծի համար ո՞վ
կ'ըսէք թէ եմ. պատասխան տուաւ Պետրոս

21 ու ըսաւ, Աստուծոյ Քրիստոսը։ Եւ ինք սաս-
տիկ պատուիրեց անոնց որ այս բանը մարդու
22 չըսեն. Ու ըսաւ թէ Պէտք է որ Որդին մար-
դոյ շատ չարչարանքներ կրէ, և ծերերէն ու
քահանայապետներէն և դպիրներէն մերժուի
ու սպաննուի, ու երրորդ օրը յարութիւն առ-
23 նէ։ Եւ ամէնուն կ'ըսէր, Եթէ մէկը կ'ուզէ
իմ ետևէս գալ, թող իր անձը ուրանայ, և
ամէն օր իր խաչը վերցնէ, ու իմ ետևէս գայ։
24 Վասն զի ով որ կ'ուզէ իր անձը ապրեցնել,
պիտի կորսնցնէ զանիկա. և ով որ ինծի համար
իր անձը կորսնցնէ, պիտի ապրեցնէ զանիկա։
25 Քանզի ի՞նչ կը շահի մարդ մը՝ եթէ բոլոր աշ-
խարհը վաստկի, և իր անձը կորսնցնէ կամ
26 վնաս ընէ։ Վասն զի ով որ զիս ու իմ խօսքերս
դաւանելը ամօթ սեպէ, Որդին մարդոյ ալ զանի-
կա դաւանելը ամօթ պիտի սեպէ՝ երբ գայ իր
ու Հօրը և սուրբ հրեշտակներուն փառքովը։
27 Բայց ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ Հոս կայնող-
ներէն մէկ քանիները կան՝ որոնք մահուան
համը պիտի չառնեն, մինչև տեսնեն Աստուծոյ
թագաւորութիւնը։
28 Ու եղաւ որ այս խօսքերէն գրեթէ ութ օր
ետքը՝ Պետրոսը ու Յովհաննէսը և Յակոբոսը
29 առնելով, լեռը ելաւ աղօթք ընելու։ Ու երբ
ինք աղօթք կ'ընէր, իր երեսին տեսքը ուրիշ
կերպ մը եղաւ, ու իր հագուստը ճերմակ ու
30 փայլուն եղաւ։ Եւ ահա երկու մարդիկ իրեն
հետ կը խօսէին, որոնք Մովսէս ու Եղիա էին,
31 Փառքով երևցած, և անոր այս կեանքէն ելլելուն
վրայով կը խօսէին, որ Երուսաղէմի մէջ պիտի
32 կատարուէր։ Բայց Պետրոս և անոր հետ եղող-
ները քունով ծանրացած էին, ու երբ արթըն-
ցան, տեսան անոր փառքը և այն երկու մար-
33 դիկը որոնք անոր քով կեցեր էին։ Ու եղաւ որ

երբ անոնք զատուեցան անոր քովէն, Պետրոս
ըսաւ Յիսուսի. Վարդապետ, աղէկ է որ հոս
կենանք, ու երեք խորանի շինենք. մէկը քեզի՝
և մէկը Մովսէսի՝ ու մէկը Եղիայի, վասն զի
34 չէր գիտեր ինչ կը խօսէր։ Եւ քանի որ անի-
կա այս բաները կը խօսէր, ամպ մը եկաւ ու
անոնց վրայ հովանի եղաւ, և ամպին տակ մտած
35 ատեննին վախցան։ Ու ձայն մը եղաւ ամպէն՝
ըսելով, Աստիկա է իմ սիրելի Որդիս, ատոր
36 մտիկ ըրէք։ Եւ երբ այն ձայնը եղաւ, Յիսուս
միայն գտնուեցաւ։ Ու իրենք լուռ կեցան, և
իրենց տեսածներէն այն օրերը մարդու բան մը
չպատմեցին։
37 Ու եղաւ որ հետևեալ օրը, երբ անոնք լեռ-
նէն վար իջան, շատ ժողովուրդ անոր դէմը
38 ելաւ։ Եւ ահա ժողովուրդին մէջէն մարդ մը
աղաղակեց ու ըսաւ, Վարդապետ, կ'աղաչեմ
քեզի, նայէ իմ որդիիս, քանզի իմ մէկ հա-
39 տիկս է. Եւ ահա ոգի մը կը բռնէ զանիկա. ան
ալ յանկարծ կը կանչուըռտէ, և զանիկա ցնցե-
լով կը փրփրեցնէ, ու հազիւ կը զատուի ան-
40 կէ՝ ջարդուբուրդ ընելով զանիկա. Եւ քու ա-
շակերտներուդ աղաչեցի որ հանեն զանիկա.
41 ու չկրցան։ Պատասխան տուաւ Յիսուս ու ը-
սաւ, Ով անհաւատ և խոտորեալ ազգ, մինչև
ե՞րբ ձեզի հետ պիտի ըլլամ ու ձեզի համբե-
42 րեմ. հոս բեր քու որդիդ։ Ու երբ դեռ կը մօ-
տենար, դևը զանիկա գետինը զարկաւ ու սաս-
43 տիկ ցնցեց։ Իսկ Յիսուս սաստեց պիղծ ոգիին,
և բժշկեց տղան ու զանիկա իր հօրը տուաւ։
44 Եւ ամէնը կը զարմանային Աստուծոյ մեծամեծ
գործերուն վրայ։

Ու քանի որ ամէնը կը զարմանային Յիսուսի
ըրած բոլոր գործերուն վրայ, անիկա ըսաւ իր
աշակերտներուն, Դուք այս խօսքերը ականջ-

ներնիդ դրէք, վասն զի Որդին մարդոյ պիտի
45 մատնուի մարդոց ձեռքը։ Բայց անոնք չէին ի-
մանար այն խօսքը, և անոնցմէ ծածկուած էր
որպէս զի չհասկնան, ու կը վախնային այն խօս-
քին համար իրեն հարցնելու։
46 Խորհուրդ մըն ալ մտաւ անոնց մէջ՝ թէ արդ-
47 եօք իրենց մէջ ո՞վ է մեծ։ Իսկ Յիսուս անոնց
սրտին խորհուրդը իմանալով՝ տղայ մը առաւ
48 ու զանիկա իր քով կայնեցուց, Եւ ըսաւ ա-
նոնց, Ով որ այս տղան իմ անունովս կ՚ընդու-
նի՝ զիս կ՚ընդունի. և ան որ զիս կ՚ընդունի՝ անի-
կա զիս ղրկողը կ՚ընդունի. վասն զի ան որ ձեր
ամէնուն մէջ պզտիկ է, անիկա մեծ պիտի ըլլայ։
49 Պատասխան տուաւ Յովհաննէս ու ըսաւ,
Վարդապետ, մէկը տեսանք որ քու անունովդ
դևեր կը հանէր, և զանիկա արգիլեցինք, վասն
50 զի մեզի հետ չպարտիր։ Եւ Յիսուս ըսաւ անոր,
Մի արգիլէք, քանզի ան որ *մեզի հակառակ
չէ, մեր" կողմէն է։
51 Ու եղաւ որ երբ իր աշխարհէս վերանալու օրե-
րը կը կատարուէին, ինք ալ †հաստատ որոշեց"
52 Երուսաղէմ երթալ։ Եւ իր երեսին առջևէն
պատգամաւորներ ղրկեց. և երբ գացին, Սա-
մարացւոց մէկ գեղը մտան որպէս զի իրեն հա-
53 մար պատրաստութիւն մը ընեն։ Եւ չընդունե-
ցին զանիկա, վասն զի անոր երեսը դէպ ի Երու-
54 սաղէմ երթալու ուղղուած էր։ Երբ իր աշակերտ-
ները, Յակոբոս ու Յովհաննէս, տեսան, ըսին,
Տէր, կ՚ուզե՞ս որ ըսենք, ու երկինքէն կրակ
իջնէ և սատկեցնէ զանոնք, ինչպէս Եղիա
55 ալ ըրաւ։ Եւ դարձաւ յանդիմանեց զանոնք՝
ըսելով, Չէք գիտեր թէ ինչ հոգիի տէր էք
դուք. ‡վասն զի Որդին մարդոյ չեկաւ մարդոց

*Ոմանք, ձեզի հակառակ չէ, ձեր †Յուն. երեսը հաստատեց
‡Ոմանք չունին

*հոգիները կորսնցնելու, հապա փրկելու.» և*
*ուրիշ գեղ մը գացին։*
57 *Ու երբ անոնք ճամբան կ'երթային, մէկը ը-*
*սաւ անոր, Տէր, քու ետեւէդ գամ՝ ուր որ եր-*
58 *թաս։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Աղուէսները որ-*
*ջեր ունին, ու երկնքի թռչունները՝ բոյներ,*
*բայց Որդին մարդոյ տեղ մը չունի, ուր իր գլու-*
*խը դնէ։*
59 *Ուրիշի մըն ալ ըսաւ, Եկուր իմ ետեւէս. ան*
*ալ ըսաւ, Տէր, ինծի հրաման տուր որ առաջ*
60 *երթամ իմ հայրս թաղեմ։ Յիսուս ըսաւ ա-*
*նոր, Թող տուր մեռելներուն որ թաղեն իրենց*
*մեռելները, բայց դուն գնա Աստուծոյ թագա-*
*ւորութիւնը քարոզէ։*
61 *Ուրիշ մըն ալ ըսաւ, Տէր, ես քու ետեւէդ*
*պիտի գամ, բայց ինծի հրաման տուր որ առաջ*
*իմ տանս մէջ եղողներուն հրաժարական ող-*
62 *ջոյն տամ։ Յիսուս ըսաւ անոր, Ոչ մէկը որ*
*ձեռքը մաճին վրայ կը դնէ ու ետին կը նայի,*
*Աստուծոյ թագաւորութեանը յարմար է։*

## ԳԼ. Ժ

*1 Քրիստոս եօթանասուն աշակերտներ կը ղրկէ հրաշագործութիւն ընելու և քարոզելու. 17 կը պատուիրէ անոնց որ խոնարհ ըլլան, և կ'իմացնէ թէ ի՛նչ բանի համար պարտին ուրախանալ. 21 շնորհակալ կ'ըլլայ Հօրը՝ անոր շնորհքներուն համար. 23 երանութիւն կու տայ իր աշակերտներուն երջանիկ վիճակին. 25 կը սորվեցնէ օրինականին թէ ի՛նչ ընելու է որ յաւիտենական կեանքը ժառանգէ. և թէ ո՛վ որ իր ողորմութեանը կարօտ է, անիկա իրեն ընկեր սեպելու է. 41 կը յանդիմանէ Մարթան, ու անոր քոյրը Մարիամը կը գովէ։*

1 *Այս բաներէն ետեւ Տէրը ուրիշ եօթանասուն*
*ալ որոշեց, և զանոնք իր առջեւէն երկու երկու*
*ղրկեց բոլոր քաղաքները ու տեղերը՝ ուր ինք*
2 *պիտի երթար։ Եւ կ'ըսէր անոնց, Հունձքը շատ*
*է, ու մշակները քիչ. ուստի հունձքին Տէրոջը*
*աղաչեցէք որ մշակներ հանէ իր հունձքին։*
3 *Գացէք. ահա ես ձեզ կը ղրկեմ իբրև գառներ*

4 գայլերու մէջ։ Ձեզի հետ քսակ մի՛ առնէք, ոչ
ալ պարկ, և ոչ կօշիկներ, ու ճամբան մարդո՛ւ
5 բարեւ մի՛ տաք։ Եւ ո՛ր տունը որ մտնէք՝ առաջ
6 ըսէք, *Բարեւ այս տանը։ Ու եթէ հոն †բա-
րեւի արժանաւոր մարդ՝ կայ, ձեր բարեւը պի-
տի հանգչի անոր վրայ, ապա թէ ոչ՝ ձեզի պի-
7 տի դառնայ։ Եւ այն տանը մէջ մնացէք, ու
անոնցմէ կերէք ու խմեցէք, վասն զի մշակը իր
վարձքին արժանի է. տունէ տուն մի՛ փոխուիք։
8 Եւ ո՛ր քաղաք որ մտնէք ու ձեզ ընդունին, ինչ
9 որ ձեր առջև դրուի՝ կերէք. Ու բժշկեցէք անոր
մէջի հիւանդները, և ըսէք անոնց, Աստուծոյ
10 թագաւորութիւնը ձեզի մօտեցեր է։ Բայց ո՛ր
քաղաք որ մտնէք ու ձեզ չընդունին, անոր
11 հրապարակները ելլելով՝ ըսէք, Այն փոշին ալ
որ ձեր քաղաքէն մեր ոտքերուն փակած է, ձեզի
կը թօթուենք. միայն թէ զայս գիտնաք որ Աս-
տուծոյ թագաւորութիւնը ձեզի մօտեցեր է։
12 Ձեզի կ՚ըսեմ որ այն օրը Սոդոմի դատաստանը աւե-
լի դիւրին պիտի ըլլայ՝ քան թէ այն քաղաքին։
13 Վա՜յ քեզ, Քորազին, վա՜յ քեզ, Բեթսայիդա,
վասն զի եթէ Տիւրոսի ու Սիդոնի մէջ եղած
ըլլային այն հրաշքները որոնք ձեր մէջ եղան,
շատոնցմէ քուրձով ու մոխիրի մէջ նստելով
14 ապաշխարած պիտի ըլլային։ Բայց դատաստա-
նին օրը Տիւրոսի ու Սիդոնի աւելի դիւրին պի-
15 տի ըլլայ քան թէ ձեզի։ Եւ դուն, Կափառ-
նայում, որ մինչև երկինք բարձրացած ես,
16 մինչև դժոխք պիտի իջնես։ Ան որ ձեզի մտիկ
կ՚ընէ, ինծի մտիկ կ՚ընէ. և ան որ ձեզ կը մեր-
ժէ, զիս կը մերժէ. և ան որ զիս կը մերժէ,
զիս ղրկողը կը մերժէ։
17 Եւ եօթանասունը աշակերտները դարձան ուրա-
խութեամբ ու ըսին, Տէ՛ր, քու անունովդ

*Յուն. Խաղաղութիւն
†Յուն. խաղաղութեան որդի

18 դեւերն ալ մեզի կը հնազանդին։ Եւ ըսաւ ա-
նոնց, Սատանան փայլակի պէս երկինքէն վար
19 ինկած կը տեսնէի։ Ահա ձեզի իշխանութիւն
կու տամ օձերու ու կարիճներու և թշնամիին
բոլոր զօրութեանը վրայ կոխկռտելու. ու բնաւ
20 բան մը ձեզի վնաս չհասնէ։ Բայց դուք անոր
վրայ մի ուրախանաք որ չար ոգիները ձեզի կը
հնազանդին, հապա ուրախացէք որ ձեր անուն-
ները երկինքը գրուած են։
21 Այն նոյն ժամուն Յիսուս Հոգիով ուրախա-
ցաւ ու ըսաւ, Շնորհակալ եմ քեզմէ, ով Հայր,
Տէր երկնի և երկրի, որ այս բաները ծածուկ
պահեցիր իմաստուններէն և գիտուններէն, ու
տղոց յայտնեցիր. այո, ով Հայր, վասն զի քու
22 առջեւդ այսպէս հաճելի եղաւ։ Ամէն բան ին-
ծի տրուեցաւ իմ Հօրմէս, ու մէկը չգիտեր թէ
ով է Որդին, բայց միայն Հայրը. և թէ ով է
Հայրը, բայց միայն Որդին, և ան՝ որուն Որդին
կ՚ուզէ յայտնել։
23 Եւ աշակերտներուն դառնալով՝ առանձին
ըսաւ, Երանի՛ այն աչքերուն՝ որոնք ձեր տե-
24 սածները կը տեսնեն. Քանզի կ՚ըսեմ ձեզի, որ
շատ մարգարէներ և թագաւորներ ուզեցին
ձեր տեսածները տեսնել, ու չտեսան, և ձեր
լսածները լսել, ու չլսեցին։
25 Եւ ահա օրէնսական մը ելաւ, ու զանիկա
փորձելով ըսաւ, Վարդապետ, ի՞նչ ընեմ որ
26 յաւիտենական կեանքը ժառանգեմ։ Անիկա
ալ ըսաւ անոր, Օրէնքին մէջ ի՞նչ գրուած է,
27 ի՞նչպէս կը կարդաս։ Պատասխան տուաւ անի-
կա ու ըսաւ, Քու Տէր Աստուածդ սիրես քու
բոլոր սրտէդ ու քու բոլոր անձէդ և քու բո-
լոր զօրութենէդ ու քու բոլոր միտքէդ, և քու
28 ընկերդ քու անձիդ պէս։ Եւ ինք ըսաւ անոր,
Շիտակ պատասխան տուիր. ատիկա ըրէ ու

29 պիտի ապրիս։ Իսկ անիկա ուզելով ինքզինք
արդարացնել, ըսաւ Յիսուսի, Բայց իմ ընկերս
30 ո՞վ է։ Պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ,
Մարդ մը Երուսաղէմէ Երիքով կ'իջնէր, ու ա-
ւազակներու ձեռք ինկաւ, որոնք մերկացուցին
զանիկա ու վիրաւորելով կիսամեռ թողուցին
31 ու գացին։ Եւ պատահեցաւ որ քահանայ մը
այն ճամբայէն կ'իջնէր, ու զանիկա տեսնելով՝
32 անդին կողմէն անցաւ։ Նոյնպէս Ղեւտացի մըն
ալ այն տեղ հասնելով՝ գնաց ու տեսաւ, եւ ան-
33 դին կողմէն անցաւ։ Բայց Սամարացի մը որ
ճամբորդութիւն կ'ընէր, եկաւ անոր քով, ու
34 զանիկա տեսնելով խղճաց. Եւ մօտեցաւ, անոր
վէրքերը փաթթեց, վրան ձէթ եւ գինի թա-
փելով, ու իր գրաստին վրայ դնելով՝ տարաւ
35 զանիկա պանդոկ մը, եւ անոր հոգ տարաւ։ Ու
հետեւեալ օրը երբ կ'ելլէր անկէ, երկու դա-
հեկան հանեց՝ պանդոկապետին տուաւ եւ անոր
ըսաւ, Հոգ տար ատոր, ու ինչ որ աւելի ծախք
ընես, ես դառնալուս ես քեզի կը վճարեմ։
36 Հիմա այն երեքէն ո՞րը քեզի կ'երեւնայ ընկեր
37 ըլլալ աւազակներուն ձեռքը ինկողին։ Եւ անիկա
ըսաւ, Ան որ ողորմութիւն ըրաւ։ Այն ատեն
Յիսուս ըսաւ անոր, Գնա, դուն ալ այնպէս ըրէ։
38 Ու եղաւ որ երբ անոնք կ'երթային, ինք գեղ
մը մտաւ, եւ կին մը, Մարթա անունով, զանի-
39 կա իր տունը ընդունեց։ Եւ անիկա քոյր մը
ունէր, որուն անունը Մարիամ էր, որ եկաւ Յի-
սուսի ոտքերուն քով նստաւ, ու անոր խօսքե-
40 րը մտիկ կ'ընէր։ Բայց Մարթա շատ սպասա-
ւորութիւնով զբաղած էր. եկաւ անոր քով ու
ըսաւ, Տէր, քու հոգդ չէ՞, որ իմ քոյրս զիս
մինակ թողուց սպասաւորութեան մէջ. ուստի
41 ատոր զրուցէ որ ինծի օգնէ։ Պատասխան
տուաւ Յիսուս ու ըսաւ անոր, Մարթա,

Մարթա, դուն շատ բաներու համար հոգ ը-
42 նելով կը տագնապիս. Բայց մէկ բան պէտք
է, և Մարիամ այն աղէկ բաժինը ընտրեց, որ
իրմէ պիտի չառնուի։

## ԳԼ. ԺԱ.

1 Քրիստոս իր աշակերտներուն կը սորվեցնէ աղօթք ընել, և կը պատուիրէ որ ստէպ աղօթք ընեն. 11 հաստատելով որ այսպէս՝ Աստուած իրենց բարիքներ պիտի ընէ. 14 համր դև մը հանելով՝ կը յանդիմանէ հայհոյիչ փարիսեցիները, 28 և կը ցուցնէ թէ որո՞նք են երանելիները. 29 ժողովուրդներուն կը քարոզէ, 32 և կը յանդիմանէ փարիսեցիներուն, դպիրներուն և օրինականներուն կեղծաւորեալ սրբութիւնը։

1 Ու եղաւ որ տեղ մը աղօթք կ'ընէր. ու երբ
դադարեցաւ, իր աշակերտներէն մէկը ըսաւ
իրեն, Տէր, մեզի աղօթք ընել սորվեցուր, ինչ-
պէս Յովհաննէս ալ իր աշակերտներուն սոր-
2 վեցուց։ Եւ ըսաւ անոնց, Երբ աղօթք կ'ընէք՝
ըսէք, Ով Հա՛յր *մեր, որ երկինքն ես", քու ա-
նունդ սուրբ ըլլայ. քու թագաւորութիւնդ
գայ. *քու կամքդ ըլլայ, ինչպէս երկինքը՝ այն-
3 պէս երկրի վրայ. Մեր ամէն օրուան հացը օրէ
4 օր մեզի տուր. Եւ մեզի ներէ մեր մեղքերը,
քանզի մենք ալ կը ներենք այն ամէնուն՝ որ
մեզի պարտական են. ու մեզ փորձութեան մի
տանիր, *հապա չարէն մեզ ազատէ։"
5 Եւ ըսաւ անոնց, Ձեզմէ ո՞վ է ան որ բարեկամ
մը ունենայ, ու կէսգիշերուան մէջ երթայ ա-
նոր և ըսէ անոր, Բարեկամ, ինծի երեք նկա-
6 նակ փոխ տուր. Վասն զի իմ մէկ բարեկամս
ճամբայէ ինծի եկաւ, ու բան մը չունիմ անոր
7 առջև դնելու։ Անիկա ալ ներսէն պատասխան
տայ և ըսէ, Զիս մի յոգնեցներ, արդէն դուռը
գոցուած է. ու տղաքս իմ քովս անկողինի
մէջ են. չեմ կրնար ելլել ու քեզի հաց տալ։
8 Ձեզի կ'ըսեմ, Թէև բարեկամութեան համար
չելլէ տայ անոր, սակայն անոր թախանձանքին

*Ոմանք, չունին

համար պիտի ելլէ ու պէտք եղածը տայ անոր։
9 Ես ալ կ՚ըսեմ ձեզի, Խնդրեցէք և պիտի տրուի
ձեզի, փնտռեցէք ու պիտի գտնէք, դուռը զար-
10 կէք և պիտի բացուի ձեզի․ Վասն զի ամէն
ով որ կը խնդրէ՝ կ՚առնէ, և ով որ կը փնտռէ՝
կը գտնէ, և ով որ դուռը կը զարնէ՝ պիտի բաց-
11 ուի անոր։ Ձեզմէ ո՞վ է այն հայրը, որմէ իր
որդին հաց որ ուզէ, միթէ քա՞ր պիտի տայ
անոր․ կամ եթէ ձուկ ուզէ, միթէ ձուկին տեղ
12 օ՞ձ պիտի տայ անոր․ Եւ կամ եթէ հաւկիթ
13 ուզէ, միթէ կարի՞ճ պիտի տայ անոր։ Ուստի
եթէ դուք որ չար էք՝ ձեր զաւակներուն ա-
ղէկ ընծաներ տալ գիտէք, ո՜րչափ աւելի ձեր
Հայրը երկինքէն Սուրբ Հոգին պիտի տայ ա-
նոնց որ իրմէ կը խնդրեն։
14 Ու դեւ մը կը հանէր, և անիկա համր էր․ ու
եղաւ որ երբ դեւը ելաւ, համրը խօսեցաւ, և
15 ժողովուրդները զարմացան։ Բայց անոնցմէ մէկ
քանիները ըսին, Անիկա դեւերուն Բէեղզեբուղ
16 իշխանին միջոցով դեւերը կը հանէ։ Ուրիշներն
ալ փորձելով երկինքէն նշան մը կ՚ուզէին ան-
17 կէ։ Բայց ինք գիտնալով անոնց խորհուրդները՝
ըսաւ անոնց, Ամէն թագաւորութիւն իրեն
դէմ բաժնուած՝ կ՚աւերի, և տուն մը *իրեն
18 դէմ բաժնուած՝ կը կործանի․ Հապա եթէ Սա-
տանայ իրեն դէմ բաժնուած է, անոր թա-
գաւորութիւնը ի՞նչպէս պիտի կենայ․ որովհե-
տև կ՚ըսէք թէ Բէեղզեբուղով դեւերը կը հա-
19 նեմ։ Իսկ եթէ ես Բէեղզեբուղով դեւերը կը
հանեմ, ձեր որդիները ինչո՞վ կը հանեն․ ու-
րեմն անոնք պիտի ըլլան ձեր դատաւորները։
20 Բայց եթէ ես Աստուծոյ մատովը կը հանեմ
դեւերը, ուրեմն Աստուծոյ թագաւորութիւնը
21 ձեր վրայ հասած է։ Երբ զօրաւոր մարդ մը

---

*Յուն. տուն

զէնքերը վրան առած՝ իր տանը բակը կը պահ-
պանէ, անոր բաները խաղաղութեան մէջ կը
22 մնան. Բայց երբ անկէ աւելի զօրաւորը վրան
գալով յաղթէ զանիկա, անոր զէնքերը կ'առնէ՝
որոնց ինք յուսացեր էր, և անկէ առած կողո-
23 պուտը կը բաժնէ։ Ան որ ինծի հետ չէ՝ ինծի
հակառակ է, և ան որ ինծի հետ չժողվեր՝
ցիրուցան կ'ընէ։
24 Երբ պիղծ ոգին մարդէ մը կ'ելլէ, անջուր
տեղեր կը պտըտի, հանգստութիւն կը փնտռէ.
ու երբ չգտներ՝ կ'ըսէ, Դառնամ նորէն իմ
25 տունս՝ ուրկէ ելայ։ Եւ կու գայ, զանիկա մաք-
26 րուած ու յարդարուած կը գտնէ։ Այն ատեն
կ'երթայ, և իրեն հետ կ'առնէ եօթը ուրիշ ոգիներ
իրմէ աւելի չար, ու մտնելով հոն կը բնակին,
և այն մարդուն վերջը առաջինէն գէշ կ'ըլլայ։
27 Ու եղաւ որ երբ անիկա այս բաները կը խօ-
սէր, ժողովուրդին մէջէն կին մը ձայնը վեր-
ցուց ու ըսաւ անոր, Երանի՜ այն որովայնին՝ որ
քեզ կրեց, և այն ծիծերուն՝ որոնք քեզի կաթ
28 տուին։ Եւ ինք ըսաւ, Մանաւանդ թէ երանի՜
անոնց որ Աստուծոյ խօսքը կը լսեն ու կը պահեն։
29 Ու երբ ժողովուրդները անոր վրայ կը գիզուէին,
սկսաւ ըսել, Այս ազգը չար է. նշան կ'ուզէ,
և ուրիշ նշան պիտի չտրուի անոր, բայց միայն
30 Յովնան մարգարէին նշանը։ Քանզի ինչպէս
Յովնան Նինուէացիներուն նշան եղաւ, այնպէս
31 Որդին մարդոյ այս ազգին պիտի ըլլայ։ Հարաւի
թագուհին դատաստանին օրը այս ազգին մար-
դոցը դէմ պիտի ելլէ, ու պիտի դատապարտէ
զանոնք, վասն զի երկրի ծայրերէն եկաւ Սողո-
մոնի իմաստութիւնը լսելու. և ահա Սողոմոնէ
32 մեծ մէկը կայ հոս։ Նինուէի մարդիկը դա-
տաստանին օրը այս ազգին դէմ պիտի ելլեն, ու
պիտի դատապարտեն զանիկա, վասն զի Յովնանի

*քարոզութիւնով զղջի եկան, և ահա Յովնանէ*
*մեծ մէկը կայ հոս։*
33 *Մէկը ճրագը չվառեր, ծածուկ տեղ մը դներ,*
*ոչ ալ գրուանի տակ, հապա աշտանակի վրայ,*
34 *որպէս զի ներս մտնողները լոյսը տեսնեն։ Մար-*
*մինին ճրագը աչքն է. ուստի երբ աչքդ պարզ*
*է, բոլոր մարմինդ ալ լուսաւոր կ'ըլլայ. բայց*
*երբ աչքդ վատ է, մարմինդ ալ մութ կ'ըլլայ։*
35 *Ուրեմն զգոյշ կեցիր, որ քու մէջդ եղած լոյսը*
36 *խաւար չըլլայ։ Արդ եթէ քու բոլոր մարմինդ*
*լուսաւոր է, և մութ մաս մը չունի, բոլորն ալ*
*լուսաւոր կ'ըլլայ, ինչպէս երբ ճրագ մը իր փայ-*
*լունութիւնովը քեզ կը լուսաւորէ։*
37 *Ու երբ այս բաները կը խօսէր, փարիսեցի մը*
*կ'աղաչէր անոր՝ որ իր քով ճաշ ուտէ. անիկա*
38 *ալ մտաւ սեղան նստաւ։ Իսկ փարիսեցին երբ*
*տեսաւ, զարմացաւ, որ նախ չլուացուեցաւ ճա-*
39 *շէն առաջ։ Եւ Տէրը ըսաւ անոր, Հիմա դուք,*
*փարիսեցիներ, գաւաթին ու պնակին դուրսի-*
*դին կը մաքրէք, ու ձեր ներսիդին յափշտա-*
40 *կութեամբ և չարութեամբ լեցուն է։ Անխելք-*
*ներ, ան որ դուրսինը ըրաւ, ներսինն ալ ինք*
41 *չըրա՞ւ։ Սակայն անոնց մէջ եղածներէն ողոր-*
*մութիւն տուէք, և ահա ամէն բան մաքուր*
42 *կ'ըլլայ ձեզի։ Բայց վա՜յ ձեզի փարիսեցինե-*
*րուդ, որ անանուխին ու փեգենային և բոլոր*
*խոտեղէններուն տասանորդը կը վճարէք, ու*
*զանց կ'ընէք իրաւունքը և Աստուծոյ սէրը. ա-*
43 *սոնք պէտք էր ընել, և զանոնք չձգել։ Վա՜յ*
*ձեզի փարիսեցիներուդ, որ ժողովարաններուն*
*մէջ առաջին աթոռները կը սիրէք, ու շուկա-*
44 *ներուն մէջ բարեւները։ Վա՜յ ձեզի, կեղծաւոր*
*դպիրներ ու փարիսեցիներ, որ անյայտ գերեզ-*
*մաններու նման էք, որոնց վրայէն մարդիկ կը*
*քալեն ու չեն գիտեր։*

45 Եւ օրինականներէն մէկը պատասխան տա֊
լով ըսաւ անոր, Վարդապետ, այդ խօսքերը
46 զրուցելով՝ մեզ ալ վար կը զարնես։ Եւ անիկա
ըսաւ, Ձեզի ալ վա՜յ օրինականներուդ, որ տա֊
նելու դժուար բեռներ կը բեռցնէք մարդոց,
ու դուք ձեր մէկ մատով այն բեռներուն չէք
47 դպչիր։ Վա՜յ ձեզի, որ մարգարէներուն գե֊
րեզմանները կը շինէք, ու ձեր հայրերը սպան֊
48 նեցին զանոնք։ Ուրեմն կը վկայէք և հաւանու֊
թիւն կու տաք ձեր հայրերուն ըրածներուն.
վասն զի իրենք սպաննեցին զանոնք, ու դուք
49 անոնց գերեզմանները կը շինէք։ Անոր համար
ալ Աստուծոյ իմաստութիւնը ըսաւ, Պիտի
ղրկեմ անոնց մարգարէներ ու առաքեալներ,
և անոնցմէ ո՛րը պիտի սպաննեն ու ո՛րը հալա֊
50 ծեն. Որպէս զի աշխարհի սկիզբէն հետէ
թափուած բոլոր մարգարէներուն արիւնը այս
51 ազգէն պահանջուի, Աբէլի արիւնէն մինչև Զա֊
քարիայի արիւնը, որ սեղանին ու տաճարին
մէջտեղ կորսուեցաւ. Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
52 այս ազգէն պիտի պահանջուի։ Վա՜յ ձեզի օ֊
րինականներուդ, որ գիտութեան բանալին վեր֊
ցուցիք. դուք չմտաք, և մտնողներն ալ ար֊
գիլեցիք։
53 Ու երբ այս բաները անոնց կը զրուցէր, դպիր֊
ները ու փարիսեցիները սկսան խիստ դժուա֊
րիլ, և շատ բաներու վրայով անոր բերնէն
54 խօսք փնտռել. Եւ անոր դարան պատրաստե֊
լով, կը փնտռէին թէ ի՛նչպէս անոր բերնէն
բան մը որսան, որպէս զի անոր վրայով ամբաս֊
տանութիւն ընեն։

# ԳԼ. ԺԲ

*1 Քրիստոս իր աշակերտներուն կը պատուիրէ կեղծաւորութենէ զգոյշ կենալ, ու չվախնալ իր վարդապետութիւնը քարոզելէ. 13 մեծամեծ ամբարներ շինել մտածող հարուստին առակովը կը պատուիրէ ժողովուրդներուն որ զգոյշ ըլլան ագահութենէ: 22 Պէտք չէ որ չափազանց հոգ ունենանք աշխարհային բաներու վրայ, 31 այլ Աստուծոյ թագաւորութիւնը խնդրենք, 33 ողորմութիւն տանք, 36 և պատրաստ ըլլանք՝ որ երբ մեր Տէրը գայ դուռը զարնէ, իսկոյն իրեն բանանք: 41 Քրիստոսի պաշտօնեաները պարտին իրենց յանձնուած պաշտօնը կատարել, 49 և հալածանքներու սպասել: 54 Պէտք է որ մարդիկ այս շնորհաց ժամանակին պատեհութիւնը չկորսնցնեն, 58 վասն զի սոսկալի բան է մեռնիլ առանց հաշտուելու Աստուծոյ հետ:*

1 Այս միջոցին երբ բիւրաւոր ժողովուրդներ
վրան ժողվուեցան, մինչև մէկզմէկ կը կոխէին,
սկսաւ ըսել իր աշակերտներուն, Ամէնէն ա-
ռաջ ինքզինքնիդ զգոյշ պահեցէք փարիսեցինե-
2 րուն խմորէն, որ է կեղծաւորութիւն: Վասն զի
բան մը չկայ ծածուկ՝ որ պիտի չյայտնուի, և
3 գաղտուկ՝ որ պիտի չգիտցուի: Ուստի ինչ որ
մութ տեղը զրուցեցիք, անիկա լոյս տեղը պի-
տի լսուի. և այն զոր ներքին սենեակներուն
մէջ ականջի խօսեցաք, տանիքներուն վրայ պի-
4 տի քարոզուի: Բայց ձեզի իմ բարեկամներուս
կը զրուցեմ, Մի վախնաք անոնցմէ՝ որ մարմինը
կը սպաննեն, ու անկէ ետև աւելի բան մը ը-
5 նելու կարողութիւն չունին: Հապա ձեզի ցուցնեմ
թէ որմէ պիտի վախնաք. Անկէ վախցէք՝ որ
սպաննելէն ետև իշխանութիւն ունի գեհեանը
ձգելու. այո, կ՚ըսեմ ձեզի, Անկէ վախցէք:
6 Չէ՞ որ հինգ ճնճղուկ երկու դանկի կը ծախ-
ուի, և անոնցմէ մէ՛կը մոռցուած չէ Աստուծոյ
7 առջև: Բայց ձեր գլխուն բոլոր մազերն ալ
համրուած են. ուրեմն մի վախնաք, վասն զի դուք
8 շատ ճնճղուկներէն աւելի աղէկ էք: Եւ ձեզի
կ՚ըսեմ, Ամէն ով որ զիս կը դաւանի մարդոց
առջև, Որդին մարդոյ ալ զանիկա պիտի դաւա-
9 նի Աստուծոյ հրեշտակներուն առջև: Բայց ան

որ զիս մարդոց առջեւ կ՚ուրանայ, ուրացուած
պիտի ըլլայ Աստուծոյ հրեշտակներուն առջեւ ։
10 Եւ ամէն ով որ Որդւոյ մարդոյ դէմ բան կ՚ըսէ,
պիտի ներուի անոր, բայց ան որ Սուրբ Հոգիին
դէմ հայհոյութիւն կ՚ընէ, պիտի չներուի անոր ։
11 Ու երբ ձեզ ժողովարանները եւ իշխանութիւն-
ներու ու պետութիւններու առջեւ տանելու ըլ-
լան, հոգ մի ընէք թէ ի՛նչպէս կամ ի՛նչ պա-
տասխան պիտի տաք, կամ ի՛նչ պիտի ըսէք.
12 Վասն զի Սուրբ Հոգին պիտի սորվեցնէ ձեզի
նոյն ժամուն՝ ինչ որ պէտք է խօսիլ ։
13 Ժողովուրդին մէջէն մէկը ըսաւ անոր, Վար-
դապետ, զրուցէ եղբօրս, որ մեզի ինկած ժառան-
14 գութիւնը ինծի հետ բաժնէ ։ Ան ալ ըսաւ ա-
նոր, Մարդ, ո՞վ զիս ձեր վրայ դատաւոր կամ
15 բաժին ընող դրաւ ։ Եւ ըսաւ անոնց, Նայեցէք
եւ զգուշացէք ագահութենէ. վասն զի մարդուս
ստացուածքներուն աւելնալէն կախուած չէ իր
16 կեանքը ։ Առակ մըն ալ խօսեցաւ անոնց՝ ըսե-
լով, Հարուստ մարդու մը արտերը առատ բեր-
17 քեր տուին. Եւ ինք կը մտածէր ինքնիրեն ու
կ՚ըսէր, Ի՞նչ ընեմ, վասն զի տեղ չունիմ, ուր
18 իմ բերքերս ժողվեմ ։ Եւ ըսաւ, Զայս ընեմ.
իմ ամբարներս քակեմ ու ա՛լ աւելի մեծ շի-
նեմ, եւ հոն ժողվեմ իմ բոլոր բերքերս ու
19 բարիքներս. Եւ իմ անձիս ըսեմ. Ով անձս,
շատ բարիքներ ունիս շատ տարիներու համար
ժողվուած. հանգչէ, կեր, խմէ ու ուրախ եղիր ։
20 Բայց Աստուած ըսաւ անոր, Անմիտ, այս գի-
շեր հոգիդ քեզմէ պիտի պահանջուի. ուստի
այն քու պատրաստած բաներդ որո՞ւ պիտի ըլ-
21 լան ։ Այսպէս է անիկա որ իր անձին համար
գանձ կը դիզէ, ու Աստուծոյ չհարստանար ։
22 Եւ ըսաւ իր աշակերտներուն, Ասոր համար
կ՚ըսեմ ձեզի, Հոգ մի ընէք ձեր կեանքին հա-

մար՝ թէ ի՛նչ պիտի ուտէք, ոչ ալ մարմնին
23 համար՝ թէ ի՛նչ պիտի հագնիք. Վասն զի կեան-
քը կերակուրէն աւելի է, ու մարմինը հագուս-
24 տէն։ Նայեցէք ագռաւներուն, որոնք ոչ կը
սերմանեն և ոչ կը հնձեն, որոնք ոչ շտեմարան-
ներ ունին, ոչ ալ ամբարներ, ու Աստուած
զանոնք կը կերակրէ. դուք ո՜րչափ աւելի լաւ
25 էք թռչուններէն։ Եւ ձեզմէ ո՞վ կրնայ իր հոգ-
ընելովը իր հասակին վրայ կանգուն մը աւել-
26 ցնել։ Հապա եթէ ամենափոքր բանին կարող
չէք, ուրիշ բաներու համար ինչո՞ւ հոգ կ՚ընէք։
27 Նայեցէք շուշաններուն, ի՛նչպէս կ՚աճին. ոչ
կ՚աշխատին և ոչ կը մանեն. բայց ձեզի կ՚ըսեմ
որ Սողոմոն ալ իր բոլոր փառաւորութեանը
28 մէջ անոնցմէ մէկո՛ւն պէս չհագուեցաւ։ Ուս-
տի եթէ խոտը որ այսօր դաշտի մէջ է, ու վա-
ղը փուռը կը ձգուի, Աստուած այնպէս կը հագ-
ուեցնէ, ո՜րչափ աւելի ձեզ, թերահաւատներ։
29 Ալ դուք մի փնտռէք թէ ի՛նչ պիտի ուտէք և
30 ի՛նչ պիտի խմէք, ու մի շփոթիք. Վասն զի այդ
բոլոր բաները աշխարհիս ազգերը կը փնտռեն.
ու ձեր Հայրը գիտէ որ այդ բաները ձեզի պէտք
31 են։ Բայց դուք Աստուծոյ թագաւորութիւնը
խնդրեցէք, և այդ բոլոր բաներն ալ ձեզի պի-
32 տի տրուին։ Մի վախնար, պզտիկ հօտ, վասն
զի ձեր Հայրը հաճեցաւ որ թագաւորութիւ-
33 նը ձեզի տայ։ Ծախեցէք ձեր ստացուածքը և
ողորմութիւն տուէք. ու ձեզի չհիննալու քսակ-
ներ պատրաստեցէք, ու երկինքը՝ չպակսելու
գանձ մը, ուր ոչ գողը կը մօտենայ և ոչ ցեցը
34 կ՚ապականէ։ Քանզի ձեր գանձը ուր որ է,
35 սիրտերնիդ ալ հոն պիտի ըլլայ։ Ձեր մէջքերը
գօտեւորուած ըլլան, ու ճրագները վառուած։
36 Եւ դուք այն մարդոց նման՝ որոնք իրենց տէրոջը
կը սպասեն, թէ ե՛րբ պիտի դառնայ հարսնիքէն.

*որպէս զի երբ գայ և դուռը զարնէ, իսկոյն բա-*
37 *նան անոր։ Երանի՜ այն ծառաներուն, որ տէ-*
*րը երբ գայ՝ զանոնք արթուն պիտի գտնէ.*
*Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ ինք գօտին մէջքը*
*պիտի կապէ ու սեղան նստեցնէ զանոնք, և*
*առաջ անցնելով սպասաւորութիւն պիտի ընէ*
38 *անոնց։ Եւ եթէ գիշերուան երկրորդ պահուն գայ,*
*կամ երրորդ պահուն գայ ու այնպէս գտնէ,*
39 *երանելի են այն ծառաները։ Բայց զայս գիտ-*
*ցէք, որ եթէ տանուտէրը գիտնար թէ ո՛ր ա-*
*տեն գողը կու գայ, արթուն կը կենար ու թող*
40 *չէր տար որ իր տունը ծակեն։ Ուրեմն դուք ալ*
*պատրաստ կեցէք, քանզի Որդին մարդոյ կու գայ*
*այնպիսի ժամու մը մէջ՝ որ դուք չէք կարծեր։*
41 *Եւ Պետրոս ըսաւ անոր, Տէր, այդ առակը*
42 *մեզի՞ կ'ըսես թէ ամէնուն ալ։ Եւ Տէրը ըսաւ,*
*Ուրեմն ո՞վ է այն հաւատարիմ ու իմաստուն*
*տնտեսը, զոր տէրը իր գերդաստանին վրայ*
*պիտի դնէ, որպէս զի ատենին անոնց ուտելիքը*
43 *տայ։ Երանի՜ է այն ծառային, զոր իր տէրը ե-*
44 *կած ատենը այնպէս ըրած պիտի գտնէ։ Ճշմա-*
*րիտ կ'ըսեմ ձեզի, որ իր բոլոր ունեցածին վրայ*
45 *պիտի կեցնէ զանիկա։ Հապա եթէ այն ծառան*
*իր սրտին մէջ ըսէ, Իմ տէրս իր գալը կ'ու-*
*շացնէ. և սկսի ծառաները ու աղախինները*
46 *ծեծել, և ուտել ու խմել ու գինովնալ, Այն*
*ծառային տէրը պիտի գայ այնպիսի օր մը որ*
*չսպասեր, և այնպիսի ժամ մը որ չգիտեր, և զա-*
*նիկա մէջտեղէն պիտի կտրէ, ու անոր բաժինը*
47 *անհաւատարիմներուն հետ պիտի դնէ։ Եւ այն*
*ծառան որ իր տէրոջը կամքը գիտէ ու չպատ-*
*րաստուիր, ոչ ալ անոր կամքը ի գործ կը դնէ,*
48 *շատ ծեծ պիտի ուտէ։ Բայց ան որ չգիտեր ու*
*ծեծի արժանի բան մը կ'ընէ, քիչ ծեծ պիտի*
*ուտէ. որու որ շատ տրուեցաւ, շատ պիտի*

ուզուի անկէ, և որու որ աւելի յանձնուեցաւ,
ա՛լ աւելի պիտի պահանջուի անկէ ։
49 Ես կրակ ձգելու եկայ երկրի վրայ, ու ի՜նչ
50 կ՚ուզեմ եթէ արդէն բորբոքած է ։ Բայց մկըր-
տութիւն մը ունիմ մկրտուելու, և ի՜նչպէս կը
51 տագնապիմ մինչև կատարուի ։ Կը կարծէք թէ
ես երկրի վրայ խաղաղութի՞ւն տալու եկայ .
52 ձեզի կ՚ըսեմ, Ոչ, հապա բաժանմունք . Վասն
զի ասկէ ետև մէկ տան մէջ հինգը իրարմէ բաժ-
նուած պիտի ըլլան, երեքը երկուքէն ու եր-
53 կուքը երեքէն . Հայրը պիտի բաժնուի որդիէն,
և որդին հօրմէն, մայրը աղջիկէն ու աղջիկը
մօրմէն, կեսուրը իր հարսէն ու հարսը իր կե-
սուրէն ։
54 Եւ ըսաւ ժողովուրդներուն, Երբ արևմուտ-
քի կողմէն ամպ մը ելած կը տեսնէք, շուտ մը
կ՚ըսէք թէ Անձրև պիտի գայ, և այնպէս կ՚ըլ-
55 լայ ։ Ու երբ հարաւային հովը կը փչէ, կ՚ըսէք
56 թէ Տաք պիտի ըլլայ, և այնպէս կ՚ըլլայ ։ Կեղ-
ծաւորներ, երկրի ու երկինքի երեսը քննել
գիտէք, հապա այս ժամանակը ի՜նչպէս չէք
57 քններ ։ Եւ ինչո՞ւ դուք ձեզմէ չէք որոշեր ի-
58 րաւունքը ։ Երբ դուն քու ոսոխիդ հետ իշխա-
նին երթալու ըլլաս, ճամբուն մէջ անկէ ա-
զատուելու համար ջանք ըրէ, որ չըլլայ թէ
քեզ դատաւորին առջև քաշէ, ու դատաւորը
դահիճին ձեռքը տայ քեզ, ու դահիճն ալ
59 բանտը դնէ ։ Քեզի կ՚ըսեմ, բնաւ պիտի չելլես
անկէ, մինչև վերջին լուման չվճարես ։

## ԳԼ. ԺԳ

1 Քրիստոս ապաշխարութիւն կը քարոզէ, Գալիլեացիներուն և ուրիշներուն կրած պատիժը յիշելով ։ 6 Անպտուղ թզենիին առակը ։ 11 Քրիստոս կծկուած կինը կը բժշկէ . 18 մանանեխի հատին և խմորին առակովը կը ցուցնէ ճշմարտութեան խօսքին զօրաւոր ներգործութիւնը իր ընտրածներուն սրտին մէջ . 24 կը խրատէ նեղ դռնէն ներս մտնելու ջանք ընել, 31 և կը յանդիմանէ Հերովդէսը ու Երուսաղէմը ։

1 Եւ ոմանք այն ատեն ներկայ գտնուելով

պատմեցին անոր Գալիլեացւոց վրայով, որոնց
արիւնը Պիղատոս իրենց զոհերուն հետ խառ-
2 նեց։ Եւ Յիսուս պատասխան տալով՝ ըսաւ ա-
նոնց, Կը կարծէ՞ք որ այն Գալիլեացիները բո-
լոր Գալիլեացիներէն աւելի մեղաւոր էին, ո-
3 րոնք այսպիսի բաներ քաշեցին։ Ձեզի կ'ըսեմ,
Ոչ. հապա եթէ չապաշխարէք, ամէնդ ալ նոյն-
4 պէս պիտի կորսուիք։ Կամ թէ այն տասնըութ
հոգին որոնց վրայ Սելովամի մէջի աշտարակը
ինկաւ, ու զանոնք մեռցուց. կը կարծէ՞ք որ ա-
նոնք Երուսաղէմի մէջ բնակած բոլոր մարդոց-
5 մէ աւելի պարտաւոր էին։ Ձեզի կ'ըսեմ, Ոչ.
հապա եթէ չապաշխարէք, ամէնդ ալ նոյնպէս
պիտի կորսուիք։
6 Այս առակն ալ ըսաւ. Մարդ մը իր այգիին
մէջ տնկուած թզենի մը ունէր, ու եկաւ անկէ
7 պտուղ փնտռելու և չգտաւ։ Ուստի ըսաւ այ-
գեպանին, Ահա երեք տարի է որ կու գամ
այդ թզենիին վրայ պտուղ փնտռելու, ու չեմ
գտներ. ալ ատիկա կտրէ, ինչո՞ւ համար գետի-
8 նը խափանէ։ Անիկա պատասխան տուաւ ու
անոր ըսաւ, Տէր, այս տարի ալ ատիկա թող
տուր, մինչև ատոր բոլորտիքը բրեմ ու թրիք
9 դնեմ, Եւ եթէ պտուղ տայ՝ աղէկ, ապա թէ ոչ՝
գալ տարը կտրես ատիկա։
10 Եւ ինք ժողովարաններէն մէկուն մէջ շա-
11 բաթ օրը կը սորվեցնէր։ Եւ ահա կին մը կար,
որ հիւանդութեան ոգի մը ունէր տասնըութ
տարիէ ի վեր, ու կծկուած էր և ամենևին չէր
12 կրնար շիտակ կայնիլ։ Ու Յիսուս զանիկա տես-
նելով՝ իրեն կանչեց և ըսաւ անոր, Ով կին, դուն
13 քու հիւանդութենէդ արձակուած ես։ Ու ձեռ-
քը անոր վրայ դրաւ. և խկոյն շիտկուեցաւ ու
14 փառք կու տար Աստուծոյ։ Իսկ ժողովարանին
իշխանը պատասխան տուաւ բարկանալով՝ որ

Յիսուս շաբաթ օրը բժշկեց, և ըսաւ ժողո֊
վուրդին. Վեց օր կայ, որոնց մէջ արժան է
գործ գործել. ուստի այն օրերը եկէք բժշկուե֊
15 ցէք, ու ոչ թէ շաբաթ օրը։ Այն ատեն Տէրը
պատասխան տուաւ անոր ու ըսաւ, *Կեղծաւոր,
ձեզմէ ամէն մէկը շաբաթ օրը իր եզը կամ
էշը մսուրէն չա՞րձակէր, որպէս զի տանի ջուր
16 տայ։ Հապա ասիկա որ Աբրահամի աղջիկ էր,
որ ահա տասնըութ տարի Սատանայ զանիկա
կապեց, չէ՞ր վայլեր որ շաբաթ օրը այն կապէն
17 արձակուի։ Եւ երբ այս բանը ըսաւ, իրեն հա֊
կառակ կեցողները ամէնն ալ ամօթով մնա֊
ցին. ու բոլոր ժողովուրդը կ'ուրախանար այն
ամէն փառաւոր գործերուն համար՝ որոնք անի֊
կէ կ'ըլլային։
18 Եւ ըսաւ, Աստուծոյ թագաւորութիւնը ի՞նչ
բանի կը նմանի, ու ի՞նչ բանի նմանցնեմ զա֊
19 նիկա։ Մանանեխի հատի նման է, զոր մարդ մը
առաւ իր պարտէզը ձգեց. և աճեցաւ ու մեծ
ծառ եղաւ. ու երկնքի թռչունները անոր
ճիւղերուն վրայ բնակեցան։
20 Դարձեալ ըսաւ, Աստուծոյ թագաւորու֊
21 թիւնը ի՞նչ բանի նմանցնեմ։ Խմորի նման է,
զոր կին մը առաւ, երեք գրիւ ալիւրի մէջ պա֊
հեց, մինչև ամէնն ալ խմորեցաւ։
22 Եւ քաղաքները ու գեղերը պտըտելով՝ կը
սորվեցնէր, ու դէպ ի Երուսաղէմ ճամբայ կ'ը֊
23 նէր։ Եւ մէկը ըսաւ անոր, Տէր, քիչո՞ւ են
24 անոնք որ պիտի փրկուին։ Անիկա ալ ըսաւ ա֊
նոնց, Ջանք ըրէք որ նեղ դռնէն մտնէք, քան֊
զի կ'ըսեմ ձեզի որ շատերը մտնել պիտի ուզեն
25 և պիտի չկրնան։ Անկէ ետև երբ տանուտէրը
ելլէ ու դուռը գոցէ, և դուք սկսիք դուրսը
կենալ, ու դուռը զարնել և ըսել, Տէր, Տէր,

*Ոմանք, կեղծաւորներ,

բաց մեզի. ան ալ պատասխան տալով՝ պիտի
26 ըսէ ձեզի, Ձեզ չեմ ճանչնար ուրկէ՛ էք։ Այն
ատեն պիտի սկսիք ըսել, Մենք քու առջեւդ
կերանք ու խմեցինք, և դուն մեր փողոցներուն
27 մէջ սորվեցուցիր։ Եւ անիկա պիտի ըսէ, Ձեզի
կ՚ըսեմ, Ձեզ չեմ ճանչնար ուրկէ՛ էք. մէկդի կե-
ցէք ինծմէ, բոլոր անիրաւութիւն գործողներդ։
28 Հոն պիտի ըլլայ լալ ու ակռաներ կրճտել, երբ
տեսնէք Աբրահամը ու Իսահակը և Յակոբը ու
բոլոր մարգարէները Աստուծոյ թագաւորու-
29 թեանը մէջ, ու ձեզ դուրս հանած։ Եւ պիտի
գան արևելքէն ու արևմուտքէն և հիւսիսէն
ու հարաւէն, ու պիտի բազմին Աստուծոյ թա-
30 գաւորութեանը մէջ։ Եւ ահա կան յետիններ՝
որոնք առաջիններ պիտի ըլլան, ու կան առա-
ջիններ՝ որոնք յետիններ պիտի ըլլան։
31 Նոյն օրը մէկ քանի փարիսեցիներ եկան ու
ըսին անոր, Ելիր ու գնա ասկէ, վասն զի Հե-
32 րովդէս քեզ սպաննել կ՚ուզէ։ Եւ ինք ըսաւ
անոնց, Գացէք, այն աղուէսին ըսէք, Ահա ես
դևեր կը հանեմ ու բժշկութիւններ կը կատա-
րեմ այսօր և վաղը, ու երրորդ օրը պիտի կա-
33 տարուիմ։ Միայն թէ պէտք է որ այսօր ու
վաղը և միւս օրը պտըտիմ, վասն զի կարելի չէ
որ մարգարէ մը Երուսաղէմէ դուրս կորսուի։
34 Ով Երուսաղէմ, Երուսաղէմ, որ մարգարէնե-
րը կը սպաննէիր, ու քեզի ղրկուածները կը
քարկոծէիր, քանի՜ անգամ քու տղաքներդ
ժողվել ուզեցի, ինչպէս հաւը իր ձագերը թե-
35 ւերուն տակ կը ժողվէ, և դուք չուզեցիք։ Ահա
ձեր տունը ձեզի աւերակ պիտի մնայ. սակայն
ձեզի կ՚ըսեմ, որ Ա՛լ զիս պիտի չտեսնէք, մին-
չև գայ այն ժամանակը որ պիտի ըսէք, Օրհ-
նեալ է ան որ Տէրոջը անունովը կու գայ։

## ԳԼ. ԺԴ

2 Քրիստոս շաբաթ օրը կը բժշկէ ջրգողեալ մարդը. 7 կը սորվեցնէ խոնարհ ըլլալ, 12 և աղքատները ճաշի հրաւիրել. 16 ընթրիքին առակովը կը ցուցնէ թէ աշխարհասէր անձինք որ Աստուծոյ խօսքը կ'անարգեն, դուրս պիտի մնան երկինքէն։ 25 Քրիստոսի աշակերտիլ ուզողները պէտք է որ առաջ խորհին թէ իրենց խաչը պիտի կրեն, որ չըլլայ թէ ետքը ամօթալի եղանակաւ ետ քաշուին իրմէն. 34 ու բոլորովին անպիտան ըլլան իր համը կորսնցուցած աղի պէս։

1 Ու եղաւ որ երբ Ինք շաբաթ օր մը փարի-
սեցւոց գլխաւորներէն մէկուն տունը մտաւ
հաց ուտելու, ու անոնք անոր կը սպասէին։
2 Եւ ահա հոն ջրգողեալ մարդ մը կար իր առ-
3 ջեւ։ Եւ Յիսուս պատասխան տուաւ ու խօսե-
ցաւ օրինականներուն ու փարիսեցիներուն՝ ը-
4 սելով, Արժա՞ն է շաբաթ օրը բժշկել։ Անոնք
ալ լուռ կեցան. և Ինք բռնեց զանիկա, բժշկեց
5 ու ճամբեց. Եւ պատասխան տալով՝ ըսաւ ա-
նոնց, Ձեզմէ որո՞ւն էշը կամ եզը հորը իյնա-
լու ըլլայ, ու շուտ մը չհաներ զանիկա շաբաթ
6 օրը։ Եւ այս բաներուն չկրցան անոր պատաս-
խան տալ։
7 Առակ մը զրուցեց այն հրաւիրուած մար-
դոց ալ, երբ տեսաւ թէ ի՛նչպէս առաջին բազ-
8 մոցները կ'ընտրէին, ու ըսաւ անոնց, Երբ մար-
դէ մը հարսնիքի հրաւիրուիս, առաջին բազ-
մոցին վրայ մի՛ նստիր. չըլլայ որ քեզմէ աւելի
պատուաւոր մէկն ալ հրաւիրուած ըլլայ անկէ։
9 Եւ ան որ քեզ ու զանիկա հրաւիրեց, գայ
զրուցէ քեզի, Ասոր տեղ տուր, և անկէ ետև
10 սկսիս ամօթով յետին տեղը բռնել։ Հապա
երբ հրաւիրուիս, գնա յետին տեղը նստէ. որ-
պէս զի երբ քեզ հրաւիրողը գայ, քեզի ըսէ,
Բարեկամ, վեր հրամմէ. այն ատեն քեզի հետ
11 նստողներուն առջև քեզի փառք կ'ըլլայ։ Վասն
զի ամէն ով որ իր անձը կը բարձրացնէ, պիտի
խոնարհի. և ով որ իր անձը կը խոնարհեցնէ,
պիտի բարձրանայ։

12 Ու զինք հրաւիրողին ալ ըսաւ, Երբ ճաշկամ
ընթրիք կ'ընես, մի կանչեր քու բարեկամներդ,
ոչ ալ քու եղբայրներդ, և ոչ քու ազգական-
ներդ, ու ոչ ալ հարուստ դրացիներդ, որ չըլ-
լայ թէ անոնք ալ փոխարէնը քեզ հրաւիրեն,
13 ու քեզի հատուցում ըլլայ։ Հապա երբ հացկե-
րոյթ կ'ընես, աղքատներ, պակասաւորներ,
14 կաղեր ու կոյրեր հրաւիրէ. Ու երանելի պիտի
ըլլաս, վասն զի անոնք չեն կրնար փոխարէնը
քեզի հատուցանել. քանզի արդարներուն յա-
րութիւն ատած ատենը փոխարէնը քեզի պի-
տի հատուցուի։
15 Եւ սեղան նստողներէն մէկը երբ լսեց այս
խօսքը՝ ըսաւ անոր, Երանի անոր որ Աստուծոյ
16 թագաւորութեանը մէջ հաց պիտի ուտէ։ Եւ
ինք ըսաւ անոր, Մարդ մը մեծ ընթրիք ըրաւ
17 ու շատ մարդիկ հրաւիրեց։ Եւ ընթրիքին ա-
տենը ղրկեց իր ծառան, որպէս զի հրաւիր-
ուածները կանչէ՝ ըսելով, Եկէք, վասն զի արդէն
18 ամէն բան պատրաստ է։ Եւ ամէնը մէկէն
սկսան եա քաշուիլ. առաջինը անոր ըսաւ, Ես
արտ մը ծախու առի, ու պէտք է որ ելլեմ
տեսնեմ զանիկա. կ'աղաչեմ քեզի, զիս հրա-
19 ժարուած սեպէ։ Եւ միւսը ըսաւ, Հինգ զոյգ
եզ ծախու առի, ու կ'երթամ որ զանոնք փոր-
ձեմ. կ'աղաչեմ քեզի, զիս հրաժարուած սե-
20 պէ։ Եւ միւսը ըսաւ, Կին առի, ու անոր հա-
21 մար չեմ կրնար գալ։ Եւ այն ծառան եկաւ ու
իր տէրոջը պատմեց այս բաները. այն ատեն
բարկացաւ տանուտէրը ու ըսաւ իր ծառային,
Շուտով քաղաքին հրապարակները ու փողոց-
ները ելիր, և աղքատները ու պակասաւորները
22 և կաղերը ու կոյրերը հոս մտցուր։ Ծառան ալ
ըսաւ, Տէր, եղաւ ինչ որ հրամայեցիր, ու տա-
23 կաւին տեղ կայ։ Եւ տէրը ըսաւ ծառային,

Ելիր ճամբաները ու ցանկերը, և գտածներդ ստի-
24 պէ ներս մտնելու, որպէս զի տունս լեցուի։ Քան-
զի կ'ըսեմ ձեզի, որ այն հրաւիրուածներէն
մէկն ալ իմ ընթրիքէս համը պիտի չառնէ։
25 Ու իրեն հետ շատ ժողովուրդներ կ'երթային.
26 և դառնալով անոնց ըսաւ, Եթէ մէկը ինծի
կու գայ, ու չատեր իր հայրը և մայրը, ու կինը
և զաւակները, ու եղբայրները և քոյրերը,
նաև իր կեանքն ալ, չկրնար իմ աշակերտս ըլ-
27 լալ։ Եւ ով որ իր խաչը չվերցներ ու իմ ետևէս
28 գար, չկրնար իմ աշակերտս ըլլալ։ Վասն զի
ձեզմէ ո՞վ աշտարակ մը շինել ուզելով, առաջ
չնստիր ու հաշիւ ըներ ծախքը, թէ զանիկա
29 լմնցնելու կարողութիւն ունի՞. Որ չըլլայ թէ երբ
հիմը դնէ ու չկրնայ լմնցնել, բոլոր տեսնողնե-
30 րը սկսին զանիկա ծաղր ընել, Եւ ըսել թէ
Այս մարդը սկսաւ շինել ու չկրցաւ լմնցնել։
31 Կամ թէ ո՞ր թագաւորը ուրիշ թագաւորի մը
հետ պատերազմելու երթալով, առաջ չնստիր
ու խորհիր, թէ արդեօք տասը հազարով կըր-
նա՞յ դէմ կենալ անոր՝ որ քսան հազարով իր
32 վրայ կու գայ։ Ապա թէ ոչ՝ քանի որ անիկա
հեռու է, դեսպան ղրկելով խաղաղութիւն կը
33 խնդրէ։ Ահա այսպէս ալ ձեր մէջէն ամէն մէ-
կը եթէ իր բոլոր ստացուածքէն ետ չկենայ,
34 չկրնար իմ աշակերտս ըլլալ։ Աղը աղէկ բան է.
բայց եթէ աղը իր համը կորսնցնէ, ինչո՞վ պի-
35 տի համեմուի։ Ոչ հողի ու ոչ թրիքի տեղ օգ-
տակար կ'ըլլայ, հապա զանիկա դուրս կը նետեն։
Ան որ լսելու ականջ ունի՝ թող լսէ։

## ԳԼ. ԺԵ

1 Մոլորեալ ոչխարին, 8 կորսուած դրամին, 11 և անառակ որդիին առակները։

1 Եւ բոլոր մաքսաւորները ու մեղաւորները
2 անոր կը մօտենային իրմէ լսելու համար։ Եւ

փարիսեցիները ու դպիրները տրտունջ կ'ընէին
ու կ'ըսէին, Ասիկա մեղաւորները կ'ընդունի,
ու անոնց հետ կ'ուտէ։
3 Եւ անիկա այս առակը խօսեցաւ անոնց՝ ը-
4 սելով, Ձեզմէ ո՞վ է այն մարդը որ հարիւր ոչ-
խար ունենայ, և անոնցմէ մէկը կորսնցնէ,
իննսունըինը չ՞ձգեր անապատին մէջ, ու այն
կորսուածին ետևէն երթար, մինչև զանիկա
5 գտնէ, Ու երբ կը գտնէ, ուրախանալով իր ու-
6 սերուն վրայ կը դնէ զանիկա։ Եւ տունը գա-
լով, կը կանչէ բարեկամները ու դրացիները,
ու անոնց կ'ըսէ, Ուրախ եղէք ինծի հետ, վասն
7 զի իմ կորսուած ոչխարս գտայ։ Ձեզի կ'ըսեմ
որ այսպէս ուրախութիւն պիտի ըլլայ երկինքը
մէկ մեղաւորի համար որ կ'ապաշխարէ, քան
թէ իննսունըինը արդարներու համար՝ որոնց
8 ապաշխարութիւն պէտք չէ։ Կամ թէ ո՞վ է
այն կինը որ տասը դրամ ունենայ, ու եթէ
դրամ մը կորսնցնէ, ճրագ չ՞ վառեր, ու տունը
մէջ աւել զարներ և զգուշութեամբ փնտռեր,
9 մինչև գտնէ։ Ու երբ կը գտնէ, կը կանչէ բա-
րեկամները ու դրացիները, և կ'ըսէ, Ուրախ
եղէք ինծի հետ, վասն զի իմ կորսնցուցած
10 դրամս գտայ։ Այնպէս ալ, ձեզի կ'ըսեմ, ու-
րախութիւն կ'ըլլայ Աստուծոյ հրեշտակներուն
առջև մէկ մեղաւորի համար որ կ'ապաշխարէ։
11 Եւ ըսաւ, Մարդ մը երկու որդի ունէր.
12 Ու անոնցմէ պզտիկը հօրը ըսաւ, Հայր, քու
ստացուածքէդ ինծի ինկած բաժինը տուր ին-
13 ծի. ան ալ բաժնեց անոնց իր ունեցածը։ Եւ
շատ օրեր չանցած՝ պզտիկ որդին բոլոր բանե-
րը ժողվեց ու հեռու երկիր մը գնաց, և հոն
անառակութեամբ ապրելով իր ունեցածը փճա-
14 ցուց։ Ու երբ ամէնը հատցուց, այն երկրին
մէջ սաստիկ սով մը եղաւ, ու ինք սկսաւ չքա-

15 ւոր ըլլալ։ Եւ գնաց այն երկրին քաղաքացի-
ներէն մէկուն քով մտաւ, ան ալ իր ագարակը
16 ղրկեց զանիկա՝ խոզեր արածելու համար։ Եւ
կը փափաքէր խոզերուն կերած եղջիւրէն իր
17 փորը լեցնել, ու մէկը չէր տար անոր։ Եւ
ինքզինքին գալով՝ ըսաւ, Քանի՜ բանուորներ
կան իմ հօրս տունը հացով լեցուած, ու ես հոս
18 սովամահ կը կորսուիմ։ Ելլեմ, երթամ իմ
հօրս, և ըսեմ անոր, Հայր, մեղանչեցի երկնի-
19 քին դէմ ու քու առջեւդ, Եւ ալ արժանի չեմ
քու որդիդ ըսուելու. զիս քու վարձկաններէդ
20 մէկուն պէս ըրէ։ Ու ելաւ իր հօրը եկաւ. և
մինչ դեռ ինք շատ հեռու էր, հայրը տեսաւ
զանիկա ու գութը շարժեցաւ, և վազելով ա-
նոր պարանոցին վրայ ինկաւ ու համբուրեց զա-
21 նիկա։ Որդին ալ ըսաւ անոր, Հայր, մեղանչեցի
երկինքին դէմ ու քու առջեւդ, և ալ արժանի
22 չեմ քու որդիդ ըսուելու։ Բայց հայրը ըսաւ իր
ծառաներուն, Հանեցէք առաջին պատմուճանը
ու հագցուցէք անոր, և մատանի դրէք անոր
23 ձեռքը, ու կօշիկներ՝ անոր ոտքերը։ Եւ պա-
րարտ զուարակը բերէք, մորթեցէք, և ուտենք
24 և ուրախ ըլլանք. Վասն զի այս իմ որդիս մե-
ռած էր ու ողջնցաւ, կորսուած էր ու գտնուե-
25 ցաւ. և սկսան ուրախ ըլլալ։ Ու անոր մեծ որ-
դին ագարակին էր, ու երբ կուգար ու տանը
մօտեցաւ, նուագարաններուն և պարերուն
26 ձայնը լսեց։ Ու ծառաներէն մէկը իրեն կան-
27 չելով կը հարցնէր թէ այս ինչ է։ Անիկա ալ
ըսաւ անոր, Եղբայրդ եկաւ, ու հայրդ պա-
րարտ զուարակը մորթեց, վասն զի ողջ առողջ
28 ձեռք ձգեց զանիկա։ Իսկ ինք բարկացաւ ու
չէր ուզեր ներս մտնել. ուստի իր հայրը դուրս
29 ելլելով կ'աղաչէր անոր։ Եւ անիկա պատաս-
խան տալով՝ ըսաւ հօրը, Ահա այսչափ տարի է

որ քեզի կը ծառայեմ, ու բնաւ քու խօսքէդ
դուրս չելայ, ու ինծի երբեք ուլ մը չտուիր, որ
իմ բարեկամներուս հետ ուրախութիւն ընէի։
30 Բայց երբ եկաւ այդ քու որդիդ, որ քու ստաց-
ուածքդ բոզերու հետ կերաւ, անոր մորթեցիր
31 պարարտ զուարակը։ Եւ անիկա ըսաւ անոր,
Որդեակ, դուն միշտ ինծի հետ ես, ու իմ բո-
32 լոր ունեցածս քուկդ է։ Սակայն պէտք էր
ուրախ ըլլալ և խնդալ, վասն զի այս քու եղ-
բայրդ մեռած էր ու ողջնցաւ, կորսուած էր
ու գտնուեցաւ։

## ԳԼ. ԺԶ

1 Անիրաւ տնտեսին առակը։ 14 Քրիստոս կը յանդիմանէ արծաթասէր փարիսեցինե-
րուն կեղծաւորութիւնը։ 19 Հեշտասէր մեծատունը և աղքատ Ղազարոսը։

1 Ու իր աշակերտներուն ալ ըսաւ, Հարուստ
մարդ մը կար, որ տնտես մը ունէր, և անոր
վրայով զանգատ եղաւ իրեն՝ որպէս թէ իր ու-
2 նեցածը կը փճացնէ։ Ուստի կանչեց զանիկա
ու ըսաւ անոր, Ի՞նչ է այս զոր քեզի համար
կը լսեմ. քու տնտեսութեանդ հաշիւը տուր,
3 վասն զի ա՛լ չես կրնար տնտես ըլլալ։ Եւ տըն-
տեսը իր մտքին մէջ ըսաւ, Ի՞նչ ընեմ, որով-
հետև իմ տէրս տնտեսութիւնը ինծմէ կ՚առ-
նէ. *Հողագործութիւն չեմ կրնար ընել", մու-
4 րալու կ՚ամչնամ։ Գիտեմ ի՛նչ պիտի ընեմ, որ-
պէս զի երբ ես տնտեսութենէս մերժուիմ, զիս
5 իրենց տունը ընդունին։ Եւ իր տէրոջը պար-
տականները մէկիկ մէկիկ իրեն կանչելով՝ ըսաւ
առաջինին, Դուն իմ տէրոջս ո՞րչափ պարտք
6 ունիս։ Ան ալ ըսաւ, Հարիւր մար ձէթ. և ը-
սաւ անոր, Գիրդ առ ու շուտով նստէ յիսուն
7 գրէ։ Ետքը միւսին ըսաւ, Դուն ալ ո՞րչափ
պարտք ունիս. և անիկա ըսաւ, Հարիւր քոռ

*Յուն. չեմ կրնար բրել

*ցորեն. ու ըսաւ անոր, Գիրդ առ և ութսուն*
8 *գրէ։ Ու տէրը անիրաւ տնտեսը գովեց, որ*
*խելացութիւնով ըրաւ. վասն զի այս աշխար-*
*հին որդիները իրենց ցեղին մէջ՝ լուսոյ որդինե-*
9 *րէն աւելի խելացի են։ Եւ ես ալ ձեզի կ'ըսեմ,*
*Անիրաւ մամոնայէն ձեզի բարեկամներ ըրէք,*
*որպէս զի *երբ անիկա պակսի", ձեզ յաւիտե-*
10 *նական բնակարաններու մէջ ընդունին։ Ան որ*
*քիչ բանի մէջ հաւատարիմ է, շատի մէջ ալ*
*հաւատարիմ է. և ան որ քիչի մէջ անիրաւ է,*
11 *շատի մէջ ալ անիրաւ է։ Ուստի եթէ անիրաւ*
*մամոնային մէջ հաւատարիմ չեղաք, ճշմարիտ*
12 *հարստութիւնը ո՞վ պիտի հաւատայ ձեզի։ Ու եթէ*
*օտարին բանին մէջ հաւատարիմ չեղաք, ձերը*
13 *ո՞վ պիտի տայ ձեզի։ Ծառայ մը չկրնար երկու*
*տէրերու ծառայութիւն ընել, վասն զի կա՛մ*
*մէկը պիտի ատէ և միւսը սիրէ, կա՛մ †մէկուն*
*պիտի յարի" և միւսը արհամարհէ. չէք կրնար*
*ծառայել Աստուծոյ ու մամոնայի։*
14 *Եւ փարիսեցիներն ալ, որոնք արծաթասէր*
*էին, այս ամէն բաները լսելով կը քամահրէին*
15 *զանիկա։ Եւ ըսաւ անոնց, Դուք էք որ մարդոց*
*առջև ինքզինքնիդ կ'արդարացնէք, բայց Աստ-*
*ուած գիտէ ձեր սիրտերը. վասն զի մարդոց*
*մէջ բարձր եղածը Աստուծոյ առջև պիղծ է։*
16 *Օրէնքը ու մարգարէները մինչև Յովհաննէս էին.*
*անկէ ետև Աստուծոյ թագաւորութիւնը կը*
*քարոզուի, և ամէն մէկը անոր մէջ մտնելու*
17 *կ'արտորայ։ Դիւրին է որ երկինք ու երկիր*
*անցնին, քան թէ օրէնքէն մէկ նշանագիր իյ-*
18 *նայ։ Ով որ իր կինը արձակէ և ուրիշ մը առ-*
*նէ, շնութիւն կ'ընէ, և ով որ էրիկէ արձակ-*
*ուած կին մը առնէ, շնութիւն կ'ընէ։*
19 *Հարուստ մարդ մը կար, որ ծիրանի ու բեհեզ*

*Այսինքն, ձեր կարօտութեան ժամանակը    †Կամ, մէկը պիտի մեծարէ

*կը հագնէր, եւ ամէն օր փառաւորապէս ուրա-*
20 *խութիւն կ'ընէր։ Ու Ղազարոս անունով աղ-*
*քատ մը կար վէրքերով լեցուն, որ անոր դրա-*
21 *նը առջեւ դրուած էր. Եւ կը փափաքէր որ այն*
*հարուստին սեղանէն ինկած փշրանքներէն իր*
*փորը լեցնէ. նաեւ շուներն ալ կու գային եւ ա-*
22 *նոր վէրքերը կը լզէին։ Ու եղաւ որ այն աղ-*
*քատը մեռաւ, ու հրեշտակները Աբրահամի*
*գոգը տարին զանիկա. հարուստն ալ մեռաւ ու*
23 *թաղուեցաւ։ Եւ դժոխքին մէջ երբ տանջան-*
*քի մէջ էր, իր աչքերը վերցնելով՝ հեռուէն*
*տեսաւ Աբրահամը, ու Ղազարոսը անոր գոգը*
24 հանգչեր նստած։ *Եւ ինք աղաղակեց ու ըսաւ, Հայր*
*Աբրահամ, ողորմէ ինծի ու ղրկէ Ղազարոսը,*
*որպէս զի իր մատին ծայրը ջուրը թաթխէ, ու*
*զովացնէ իմ լեզուս, վասն զի այս բոցին մէջ*
25 *կը տանջուիմ։ Եւ Աբրահամ ըսաւ, Որդեակ,*
*միտքդ բեր, որ դուն քու կեանքիդ ատենը քու*
*բարիքներդ առիր, նոյնպէս Ղազարոս՝ չարիք-*
*ներ. հիմա անիկա [հոս] կը մխիթարուի, ու*
26 *դուն կը տանջուիս։ Եւ այս ամէն բաներէն*
*զատ՝ մեր ու ձեր մէջտեղ մեծ անդունդ մը կայ*
*հաստատուած, այնպէս որ ձեզի անցնիլ ուզող-*
*ները չկրնան, ոչ ալ անկէ մեզի* գալ ուզողները *անց-*
27 *նին։ Ան ալ ըսաւ, Ուրեմն կ'աղաչեմ քեզի,*
28 *հայր, որ զանիկա իմ հօրս տունը ղրկես, Քան-*
*զի հինգ եղբայր ունիմ, որպէս զի* երթայ *անոնց*
*վկայութիւն տայ, որ չըլլայ թէ անոնք ալ այս*
29 *չարչարանքին տեղը գան։ Եւ Աբրահամ ըսաւ*
*անոր, Անոնք Մովսէսը ու մարգարէները ու-*
30 *նին, թող անոնց մտիկ ընեն։ Ան ալ ըսաւ,*
*Ոչ, հայր Աբրահամ, հապա եթէ մեռելներէն*
31 *մէկը անոնց երթայ, պիտի ապաշխարեն։ Եւ*
*անիկա ըսաւ անոր, Եթէ Մովսէսի ու մար-*
*գարէներուն մտիկ չեն ըներ, ոչ ալ եթէ մե-*

ռելներէն մէկը յարութիւն առնելու ըլլայ,
պիտի համոզուին։

## ԳԼ. ԺԷ

1 Քրիստոս կը սորվեցնէ գայթակղութիւն չտալ, 3 և իրարու յանցանքները ներել։ 6 Հաւատքին զօրութիւնը։ 7 Մենք պարտաւոր ենք Աստուծոյ, բայց Աստուած պարտաւոր չէ մեզի։ 11 Քրիստոս կը բժշկէ տասը բորոտներ։ 22 Աստուծոյ թագաւորութիւնը և Որդւոյ մարդոյ գալուստը։

1 Եւ ըսաւ իր աշակերտներուն, Անկարելի է
որ գայթակղութիւններ չգան. բայց վա՜յ
2 անոր, որուն ձեռքով կու գան։ Անոր աւելի
աղէկ է, որ անոր պարանոցէն իշու աղացքի
քար մը կախուի, ու անիկա ծովը ձգուի, քան
թէ այս պզտիկներէն մէկը գայթակղեցնէ։
3 Զգուշացէք ձեր անձերուն։ Եթէ քու եղբայրդ
քեզի դէմ մեղանչէ, յանդիմանէ զանիկա. ու
4 եթէ ապաշխարէ, ներէ անոր։ Եւ եթէ օրը
եօթը անգամ քեզի դէմ մեղանչէ, ու օրը եօ-
թը անգամ դառնայ քեզի ու ըսէ, Կ'ապաշ-
խարեմ, ներես անոր։
5 Եւ առաքեալները ըսին Տէրոջը, Մեր հա-
6 ւատքը աւելցուր։ Եւ Տէրը ըսաւ, Եթէ մա-
նանեխի հատի չափ հաւատք ունենայիք, այս
թթենիին կրնայիք ըսել, Արմատաքի խլուէ ու
ծովուն մէջ տնկուէ, ան ալ պիտի հնազան-
դէր ձեզի։
7 Բայց ձեզմէ ո՞վ է այն մարդը՝ որ ունենայ երկ-
րագործ կամ հովիւ ծառայ մը, որ անիկա երբ
ագարակէն դառն մտնէ, շուտով գրուցէ անոր թէ
8 Անցիր սեղան նստէ։ Հապա չ՞ըսեր անոր թէ
Պատրաստէ իմ ընթրիքս, ու գօտիդ կապած
ինծի սպասաւորութիւն ըրէ, մինչև ես ուտեմ
ու խմեմ, ու ետքը դուն ալ կեր ու խմէ։
9 Միթէ շնորհակա՞լ կ'ըլլայ այն ծառային, իրեն
հրամայուած բաները կատարելուն համար. չեմ
10 կարծեր։ Նոյնպէս դուք երբ բոլոր ձեզի հրա-

մայուած բաները ընէք, ըսէք թէ Մենք ան-
պիտան ծառաներ ենք, քանզի զայն որ պար-
տական էինք ընելու՝ ըրինք։
11 Ու եղաւ որ երբ ինք Երուսաղէմ կ'երթար,
Սամարիայի և Գալիլեայի մէջտեղէն կ'անցնէր։
12 Ու երբ գեղ մը պիտի մտնէր, տասը բորոտ մար-
դիկ հանդիպեցան անոր, որոնք հեռուն կայ-
13 նեցան։ Եւ ձայներնին վերցուցին ու ըսին, Յի-
14 սուս վարդապետ, ողորմէ մեզի։ Եւ տեսնե-
լով՝ անոնց ըսաւ, Գացէք դուք ձեզ քահանա-
ներուն ցուցուցէք. ու եղաւ որ երբ կ'երթային,
15 մաքրուեցան։ Եւ անոնցմէ մէկը երբ տեսաւ
թէ բժշկուեցաւ, ետ դարձաւ ու մեծ ձայնով
16 փառք կու տար Աստուծոյ. Ու երեսի վրայ ա-
նոր ոտքը իյնալով՝ շնորհակալ կ'ըլլար անոր. և
17 ինք Սամարացի էր։ Պատասխան տուաւ Յիսուս
ու ըսաւ, Չէ՞ որ տասն ալ մաքրուեցան, իսկ
18 այն իննը ո՞ւր են. Այս օտարազգիէն զատ ու-
րիշներ չգտնուեցա՞ն՝ որ դառնալով Աստուծոյ
19 փառք տան։ Եւ ըսաւ անոր, Ելիր գնա, քու
հաւատքդ քեզ բժշկեց։
20 Ու երբ փարիսեցիները իրեն հարցուցին թէ
Աստուծոյ թագաւորութիւնը ե՞րբ պիտի գայ,
պատասխան տուաւ անոնց ու ըսաւ, Աստուծոյ
թագաւորութիւնը դիտուելու երևցած բաներով
21 չգար։ Ու պիտի չըսեն թէ Ահա հոս է, կամ
Ահա հոն, վասն զի ահա Աստուծոյ թագաւո-
րութիւնը ձեր ներսիդին է։
22 Աշակերտներուն ալ ըսաւ, Օրեր պիտի գան
որ դուք Որդւոյ մարդոյ օրերէն մէկը տեսնե-
23 լու պիտի փափաքիք, ու պիտի չտեսնէք։ Եւ
երբ ըսեն ձեզի թէ Ահա հոս է, կամ Ահա հոն,
24 մի երթաք ու անոնց մի հետևիք։ Վասն զի ինչ-
պէս փայլակը երկինքին տակ մէկ դիէն փայլա-
տակելով մինչև երկինքին տակ միւս դին լոյս

կու տայ, նոյնպէս պիտի ըլլայ Որդին մարդոյ
25 իր գալուն օրը։ Միայն թէ պէտք է որ ինք ա-
ռաջ շատ չարչարանքներ կրէ ու մերժուի այս
26 ազգէն։ Եւ ինչպէս Նոյի օրերը եղաւ, այնպէս
27 պիտի ըլլայ Որդւոյ մարդոյ օրերն ալ։ Կ'ու-
տէին, կը խմէին, կին կ'առնէին, էրկան կը
տրուէին, մինչեւ այն օրը որ Նոյ տապանը
մտաւ, եւ ջրհեղեղը եկաւ ու ամէնը կորսնցուց։
28 Նմանապէս, ինչպէս Ղովտի օրերը եղաւ, կ'ու-
տէին, կը խմէին, ծախու կ'առնէին, կը ծա-
29 խէին, կը տնկէին, կը շինէին. Բայց այն օրը որ
Ղովտ Սոդոմէ ելաւ, երկինքէն կրակ ու ծծումբ
30 տեղաց եւ բոլորն ալ կորսնցուց. Նոյնպէս պի-
տի ըլլայ այն օրը որուն մէջ Որդին մարդոյ պի-
31 տի յայտնուի։ Այն օրը ան որ տանիքին վրայ
է եւ իր կարասիները տանը մէջ, թող վար չիջնէ
զանոնք առնելու. եւ ան որ արտին մէջ է, նոյն-
32 պէս թող ետ չդառնայ։ Միտքերնիդ բերէք
33 Ղովտի կինը։ Ով որ իր կեանքը կ'ուզէ ապրե-
ցընել՝ պիտի կորսնցնէ զանիկա, եւ ով որ կը
34 կորսնցնէ՝ պիտի ապրեցնէ զանիկա։ Ձեզի կ'ը-
սեմ, Այն գիշերը երբ երկու հոգի մէկ անկո-
ղինի մէջ ըլլան, մէկը պիտի առնուի ու միւսը
35 ձգուի. Եւ երբ երկու կին մէկտեղ աղալու ըլ-
լան, մէկը պիտի առնուի ու միւսը ձգուի. Եւ երբ
երկու հոգի արտի մը մէջ ըլլան, մէկը պիտի
36 առնուի ու միւսը ձգուի։ Եւ պատասխան տա-
37 լով ըսին անոր, Տէր, ո՞ւր պիտի ըլլայ այս բանը։ Ան
ալ ըսաւ անոնց, Ուր մարմին կայ, հոն պիտի
ժողվուին արծիւները։

## ԳԼ. ԺԸ

1 Թախանձող որբեւայրին, 9 փարիսեցիին եւ մաքսաւորին առակը։ 15 Մանր տղաք Քրիստոսի կը բերուին։ 18 Իշխան մը կ'ուզէ Քրիստոսի հետեւիլ, բայց իր հարստութիւնները արգելք կ'ըլլան։ 28 Քրիստոսի համար ամէն բան թողողներուն վարձքը։ 31 Քրիստոս կը նախաձայնէ իր մահը, 35 եւ կոյրին աչքերը կը բանայ։

1 Անոնց առակ մըն ալ ըսաւ այս բանին վրայ՝

*թէ պէտք է ամէն ատեն աղօթք ընել ու*
2 *չձանձրանալ։ Ըսաւ, Դատաւոր մը կար քա-*
*ղաքի մը մէջ, որ Աստուծմէ չէր վախնար ու*
3 *մարդէ չէր ամչնար։ Եւ նոյն քաղաքին մէջ*
*որբեւարի մը կար, որ անոր կու գար ու կ՚ըսէր,*
*Իրաւունք ըրէ ինծի ու ազատէ զիս իմ ոսոխէս։*
4 *Եւ անիկա ժամանակ մը չէր ուզեր անոր մտիկ ընել.*
*բայց ետքը ըսաւ իր մտքին մէջ, Թէեւ Աստուծ-*
5 *մէ չեմ վախնար ու մարդէ չեմ ամչնար, Գոնէ*
*այս որբեւարիին զիս ձանձրացնելուն համար*
*իրեն իրաւունք ընեմ, որպէս զի չգայ ամէն*
6 *ատեն զիս թախանձէ։ Եւ Տէրը ըսաւ, Լսե-*
7 *ցէք, անիրաւ դատաւորը ինչ կ՚ըսէ։ Հապա*
*Աստուած իր ընտրեալներուն իրաւունք պիտի*
*չընէ՞, որոնք ցորեկ ու գիշեր իրեն կ՚աղաղա-*
*կեն, թէեւ երկայնամիտ ալ ըլլայ անոնց վրայ։*
8 *Ձեզի կ՚ըսեմ որ շուտով անոնց իրաւունք պիտի*
*ընէ. բայց Որդին մարդոյ երբ գայ, արդեօք*
*հաւատք պիտի գտնէ՞ երկրի վրայ։*
9 *Եւ մէկ քանիներուն, որոնք իրենց անձերուն*
*վրայ կը վստահանային թէ արդար են, և ու-*
10 *րիշները կ՚անարգէին, այս առակը ըսաւ. Երկու*
*մարդ ելան տաճարը աղօթք ընելու, մէկը փա-*
11 *րիսեցի ու միւսը մաքսաւոր։ Փարիսեցին կայ-*
*ներ էր, ու առանձին այսպէս աղօթք կ՚ընէր.*
*Ով Աստուած, շնորհակալ եմ քեզմէ, որ ու-*
*րիշ մարդոց պէս չեմ, յափշտակող, անիրաւ,*
12 *շնացող, և կամ այս մաքսաւորին պէս. Հապա*
*շաբաթը երկու անգամ ծոմ կը պահեմ, ու*
13 *բոլոր ստացուածքիս տասանորդը կու տամ։ Եւ*
*մաքսաւորը հեռուն կայներ էր, ու չէր ուզեր*
*աչքն ալ երկինք վերցնել, հապա իր կուրծքը*
*ծեծելով կ՚ըսէր, Աստուած, ողորմէ ինծի մե-*
14 *ղաւորիս։ Ձեզի կ՚ըսեմ թէ ասիկա այն միւսէն*
*աւելի արդարացած իր տունը իջաւ. վասն զի*

ով որ իր անձը կը բարձրացնէ՝ պիտի խոնար-
հի, և ով որ իր անձը կը խոնարհեցնէ՝ պիտի
բարձրանայ։
15 Մանր տղաք ալ բերին իրեն, որպէս զի անոնց
դպչի. ու աշակերտները տեսնելով կը յանդի-
16 մանէին զանոնք։ Բայց Յիսուս զանոնք իրեն
կանչելով ըսաւ, Թող տուէք այդ մանր տղոցը
որ ինծի գան, և մի արգիլէք զանոնք, վասն զի
Աստուծոյ թագաւորութիւնը այդպիսիներուն
17 է։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Ով որ Աստուծոյ
թագաւորութիւնը պզտիկ տղու մը պէս չըն-
դունի, բնաւ պիտի չմտնէ անոր մէջ։
18 Եւ իշխան մը հարցուց անոր ու ըսաւ, Բարի
վարդապետ, ի՞նչ գործ գործեմ որպէս զի յա-
19 ւիտենական կեանքը ժառանգեմ։ Եւ Յիսուս
ըսաւ անոր, Ինչո՞ւ զիս բարի կ'անուանես. մէ-
20 կէն զատ բարի չկայ, որ է Աստուած։ Պատուի-
րանքները գիտես. Շնութիւն մի ըներ, Սպա-
նութիւն մի ըներ, Գողութիւն մի ըներ, Սուտ
վկայութիւն մի ըներ, Քու հայրդ ու մայրդ
21 պատուէ։ Ան ալ ըսաւ, Ասոնք ամէնը ման-
22 կութենէս ի վեր պահեր եմ։ Ասիկա լսելով Յի-
սուս ըսաւ անոր, Բան մըն ալ պակաս է քեզի.
քու բոլոր ունեցածդ ծախէ և աղքատներուն
բաշխէ, ու երկինքը գանձ պիտի ունենաս, և
23 եկուր իմ ետևէս։ Անիկա երբ այս բանը լսեց,
24 տրտմեցաւ, վասն զի շատ հարուստ էր։ Եւ
Յիսուս երբ զանիկա տրտմած տեսաւ, ըսաւ,
Որչափ դժուար է անոնց որ հարստութիւն
ունին, Աստուծոյ թագաւորութիւնը մտնել։
25 Քանզի դիւրին է որ ուղտը ասեղին ծակէն
անցնի, քան թէ հարուստը Աստուծոյ թագա-
26 ւորութիւնը մտնէ։ Եւ անոնք որ լսեցին, կ'ը-
27 սէին, Ալ ո՞վ կրնայ փրկուիլ։ Եւ ինք ըսաւ,
Մարդոց կողմանէ անկարելի եղած բաները

28 Աստուծոյ կողմանէ կարելի են։ Ու Պետրոս
ըսաւ, Ահա մենք ամէն բան թողուցինք և քու
29 ետեւէդ եկանք։ Ու անիկա ըսաւ անոնց, Ճշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի թէ Մարդ մը չկայ որ
թողուց տուն, կամ ծնողք, կամ եղբայրներ,
կամ կին, կամ որդիներ Աստուծոյ թագաւո-
30 րութեանը համար, Որ պիտի չառնէ բազմա-
պատիկ այս ատենին մէջ, և գալու աշխարհին
մէջ յաւիտենական կեանքը։
31 Եւ տասուերկուքը իր քով առնելով՝ ըսաւ
անոնց, Ահա մենք Երուսաղէմ կ'ելլենք, և
մարգարէներուն ձեռքով Որդւոյ մարդոյ հա-
մար բոլոր գրուածները պիտի կատարուին։
32 Վասն զի հեթանոսներուն պիտի մատնուի, ու
ծաղր պիտի ըլլայ և պիտի նախատուի, ու պի-
33 տի թքնեն անոր, Եւ պիտի ծեծեն ու սպաննեն
զանիկա, ու երրորդ օրը յարութիւն պիտի
34 առնէ։ Բայց անոնք այս բաներէն մէկն ալ
չհասկցան. ու այս խօսքը անոնցմէ ծածկուած
էր, և ըսած բաները չէին իմանար։
35 Ու եղաւ որ երբ ինք Երիքովի կը մօտենար,
36 կոյր մը ճամբուն քով նստեր էր մուրալու։ Երբ
լսեց բազմութեանը անցնիլը, հարցուց թէ Ի՞նչ
37 է այն։ Եւ իրեն ըսին թէ Յիսուս Նազովրեցի
38 կ'անցնի։ Ուստի աղաղակեց ու ըսաւ, Յիսուս,
39 Որդի Դաւթի, ողորմէ ինծի։ Եւ անոնք որ առ-
ջեւէն կ'երթային, կը յանդիմանէին զանիկա,
որպէս զի լռէ. բայց անիկա ա՛լ աւելի կ'աղա-
40 ղակէր, Որդի Դաւթի, ողորմէ ինծի։ Եւ Յի-
սուս կանգ առնելով՝ հրաման ըրաւ որ զանիկա
իրեն բերեն, ու երբ անիկա մօտեցաւ, հար-
41 ցուց անոր ու ըսաւ, Ի՞նչ կ'ուզես որ քեզի ը-
նեմ. անիկա ալ ըսաւ, Տէր, որ աչքերս բաց-
42 ուին։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Թող բացուին.
43 քու հաւատքդ քեզ բժշկեց։ Եւ իսկոյն անոր

աչքերը բացուեցան, ու անոր ետեւէն կ'երթար, և փառք կու տար Աստուծոյ․ բոլոր ժողովուրդն ալ տեսնելով՝ զԱստուած կը գովաբանէին ։

## ԳԼ․ ԺԹ

1 Զակքէոս մաքսապետը ։ 11 Տասը մնասին առակը ։ 28 Քրիստոս իշու վրայ հեծած՝ փառաւոր հանդէսով Երուսաղէմ կը մտնէ ․ 41 քաղաքին վրայ կ'ողբայ ․ 45 տաճարէն դուրս կը հանէ գնողները և վաճառողները ․ 47 ամէն օր տաճարին մէջ կը սորվեցնէ ․ իսկ Հրեից գլխաւորները կ'ուզեն կորսնցնել զանիկա , բայց ժողովուրդէն կը վախնան ։

1 Եւ մտնելով Երիքովի մէջէն կ'անցնէր ։ (2) Եւ
ահա մարդ մը կար, անունը Զակքէոս ըսուած,
3 որ մաքսապետ էր ու հարուստ էր ։ Եւ
կ'ուզէր տեսնել թէ ով է Յիսուս, ու բազմու-
թենէն չէր կրնար, վասն զի հասակով կարճ
4 էր ։ Եւ առաջ վազեց ու ժանտաթզենիի մը
վրայ ելաւ, որպէս զի զանիկա տեսնէ, վասն զի
5 անկէ պիտի անցնէր ։ Ու երբ Յիսուս այն տեղը
եկաւ, վեր նայելով զանիկա տեսաւ, ու ըսաւ
անոր, Զակքէոս, շուտ ըրէ, ասկէ վար իջիր,
վասն զի պէտք է ինծի այսօր քու տունդ կե-
6 նալ ։ Եւ արտորալով վար իջաւ, և ուրախու-
7 թեամբ ընդունեց զանիկա ։ Երբ ամէնն ալ
տեսան, կը տրտնջէին ու կ'ըսէին թէ Մեղաւոր
8 մարդու քով մտաւ իջեւան ընելու ։ Եւ Զակքէոս
կայնեցաւ ու ըսաւ Տէրոջը, Տէր, ահա իմ ու-
նեցածիս կէսը աղքատներուն կու տամ, ու
եթէ զրպարտութեամբ մէկուն զրկանք ըրած
9 եմ, չորեքպատիկ կը հատուցանեմ անոր ։ Եւ
Յիսուս ըսաւ անոր, Այսօր այս տանը փրկու-
թիւն եղաւ, քանզի ասիկա ալ Աբրահամի որ-
10 դի է ։ Վասն զի Որդին մարդոյ եկաւ որպէս
զի կորսուածը փնտռէ ու փրկէ ։

11 Ու երբ անոնք այս բաները կը լսէին, առակ
մըն ալ ըսաւ իր Երուսաղէմ մօտենալուն հա-
մար, և անոնց այնպէս կարծելուն համար թէ

շուտ մը Աստուծոյ թագաւորութիւնը պիտի
12 յայտնուի ։ Ուստի ըսաւ, Ազնուական մարդ մը
հեռու երկիր գնաց՝ իրեն թագաւորութիւն
13 առնելու և դառնալու ։ Եւ իր տասը ծառա-
ները կանչելով՝ տասը մնաս տուաւ անոնց, ու
ըսաւ անոնց, Բանեցուցէք ասոնք մինչև ես գամ ։
14 Եւ անոր քաղաքացիները զանիկա կ'ատէին, ու
դեսպաններ ղրկեցին անոր ետևէն, ըսելով թէ
Չենք ուզեր որ ասիկա մեր վրայ թագաւորու-
15 թիւն ընէ ։ Ու եղաւ որ երբ անիկա թագաւո-
րութիւնը առնելով ետ դարձաւ, իրեն կանչել
տուաւ այն ծառաները որոնց ստակը տուեր էր,
որպէս զի գիտնայ թէ ո՛վ ինչ շահ ըրած է ։
16 Եւ առաջինը եկաւ ու ըսաւ, Տէր, քու մնասդ
17 տասը մնաս շահ ըրաւ ։ Եւ ըսաւ անոր, Ապրիս,
բարի ծառայ. որովհետև քիչ բանին մէջ հա-
ւատարիմ եղար, տասը քաղաքի վրայ իշխա-
18 նութիւն ունեցիր ։ Ու երկրորդը եկաւ ու ըսաւ,
19 Տէր, քու մնասդ հինգ մնաս շահ ըրաւ ։ Եւ
ըսաւ անոր, Դուն ալ հինգ քաղաքի վրայ եղիր ։
20 Եւ ուրիշ մը եկաւ ու ըսաւ, Տէր, ահա քու
մնասդ՝ զոր թաշկինակի մէջ ծրարած կը պահէի.
21 Քանզի կը վախնայի քենմէ, վասն զի դուն
խիստ մարդ մըն ես, չդրած բանդ կը վերցնես
22 ու չսերմանածդ կը հնձես ։ Եւ անիկա ըսաւ
անոր, Քու բերնէդ քեզ պիտի դատեմ, ով
չար ծառայ. գիտէիր որ ես խիստ մարդ մըն եմ,
չդրած բանս կը վերցնեմ ու չսերմանածս կը
23 հնձեմ ։ Եւ ինչո՞ւ համար իմ ստակս սեղանա-
ւորներուն չտուիր, որպէս զի ես եկած ատենս
24 շահովը առնէի զանիկա ։ Եւ հոն կայնողնե-
րուն ըսաւ, Առէք ատկէ մնասը ու տուէք
25 անոր որ տասը մնաս ունի. (Եւ ըսին իրեն,
26 Տէր, անիկա տասը մնաս ունի.) Քանզի կ'ըսեմ
ձեզի, թէ ամէն ունեցողին պիտի տրուի, և

չունեցողին ունեցածն ալ անկէ պիտի առնուի ։
27 Բայց այն իմ թշնամիներս, որոնք չէին ուզեր
որ իրենց վրայ թագաւոր ըլլամ, հոս բերէք ու
28 իմ առջեւս սպաննեցէք ։ Եւ այս բաները խօսե-
լէն ետեւ՝ յառաջ գնաց Երուսաղէմ ելլելու ։
29 Ու եղաւ որ երբ Բեթփագէի ու Բեթա-
նիայի մօտեցաւ՝ դէպ ի այն լեռը որ Ձիթե-
նեաց կ՚ըսուի, իր աշակերտներէն երկուքը
30 ղրկեց, Եւ ըսաւ, Գացէք Դր դիմացի գեղը, և
անոր մէջ մտնելնուդ պէս պիտի գտնէք կապ-
ուած աւանակ մը, որուն վրայ բնաւ մարդ մը
31 նստած չէ. արձակեցէք զանիկա ու բերէք ։ Եւ
եթէ մէկը ձեզի հարցնէ թէ Ինչո՞ւ կ՚արձա-
կէք, այսպէս ըսէք անոր, թէ Տէրոջը պէտք է ։
32 Երբ գացին անոնք որ ղրկուեցան, ինչպէս ի-
33 րենց զրուցեր էր՝ գտան ։ Ու երբ աւանակը
կ՚արձակէին, անոր տէրերը ըսին անոնց, Ինչո՞ւ
34 կ՚արձակէք այդ աւանակը ։ Անոնք ալ ըսին,
35 Տէրոջը պէտք է ։ Եւ զանիկա Յիսուսի բերին
ու իրենց հանդերձները աւանակին վրայ ձգե-
36 լով՝ Յիսուսը հեծուցին ։ Ու երբ կ՚երթար, ի-
րենց հանդերձները ճամբուն վրայ կը փռէին ։
37 Ու երբ ա՛լ մօտեցաւ, և Ձիթենեաց լեռանը
զառ ի վայրէն կ՚իջնէր, աշակերտներուն բոլոր
բազմութիւնը սկսաւ ուրախութեամբ զԱստ-
ուած օրհնել բարձր ձայնով՝ այն բոլոր հրաշք-
38 ներուն համար զորոնք տեսեր էին. Ու կ՚ըսէին,
Օրհնեալ է այդ թագաւորը որ Տէրոջը անու-
նովը կու գայ. երկինքի մէջ խաղաղութիւն, ու
39 փառք՝ բարձրութեան մէջ ։ Եւ բազմութեանը
մէջէն փարիսեցիներէն մէկ քանիները ըսին
անոր, Վարդապետ, այդ քու աշակերտներդ
40 յանդիմանէ ։ Եւ անիկա պատասխան տուաւ
ու ըսաւ անոնց, Ձեզի կ՚ըսեմ, եթէ ասոնք
լուռ կենան, քարերը պիտի աղաղակեն ։

41 Ու երբ մօտեցաւ, քաղաքը տեսնելով՝ լա-
42 ցաւ անոր վրայ և ըսաւ, Գոնէ՛ այս քու օր-
ուանդ մէջ գիտնայիր քու խաղաղութիւնդ.
43 բայց հիմա ծածկուեցաւ քու աչքերէդ ։ Վասն
զի օրեր պիտի գան քու վրադ՝ որ թշնամիներդ
քու բոլորտիքդ պատնէշ պիտի շինեն, ու քեզ
պիտի պաշարեն, և ամէն կողմէ քեզ նեղը պի-
44 տի ձգեն. Եւ հիմնայատակ պիտի ընեն քեզ ու
քու մէջդ եղած զաւակներդ, և քար մը քարի
վրայ ամենևին պիտի չթողուն քու մէջդ, ա-
նոր համար որ չճանչցար քու այցելութեանդ
ժամանակը ։
45 Եւ տաճարը մտնելով՝ սկսաւ դուրս հանել
46 անոր մէջ ծախողները և գնողները ։ Եւ ըսաւ
անոնց, Գրուած է թէ Իմ տունս աղօթքի
տուն է. բայց դուք աւազակներու
այր ըրիք ։
47 Եւ ամէն օր տաճարին մէջ կը սորվեցնէր.
բայց քահանայապետները ու դպիրները և ժո-
ղովուրդին գլխաւորները կը փնտռէին թէ ի՛նչ-
48 պէս կորսնցնեն զանիկա ։ Ու բան մը չէին կըր-
նար գտնել թէ ի՛նչ ընեն, վասն զի բոլոր ժո-
ղովուրդը անոր կախուեր էին մտիկ ընելու ։

## ԳԼ. Ի

Քրիստոս իր իշխանութեան իրաւունքը կը պաշտպանէ Յովհաննէսի մկրտութեան հարցումովը ։ 9 Այգիին առակը ։ 25 Քրիստոսի պատասխանը կայսրին տուրք տալու վրայով ։ 27 Յարութիւն չկայ ըսող սադուկեցիները կը պապանձեցնէ ։ 41 Քրիստոս ի՛նչպէս Դաւիթի որդին կ՚ըլլայ ։ 45 Իր աշակերտներուն կը պատուիրէ դպիրներէն զգուշ կենալ ։

1 Ու եղաւ որ այն օրերէն մէկը, երբ տաճա-
րին մէջ ժողովուրդին կը սորվեցնէր և աւե-
տարանը կը քարոզէր, քահանայապետները ու
դպիրները ծերերուն հետ մէկտեղ վրայ հա-
2 սան, Եւ անոր հետ խօսեցան՝ ըսելով, Զրուցէ
մեզի, ի՛նչ իշխանութիւնով կ՚ընես այդ բանե-

ըր, կամ ո՞վ է այդ իշխանութիւնը քեզի տուողը։
3 Պատասխան տուաւ ու ըսաւ անոնց, Ես ալ ձե-
4 զի բան մը հարցնեմ, և ըսէք ինծի. Յովհան-
նէսի մկրտութիւնը երկնքէ՞ն էր թէ մարդոց-
5 մէ։ Եւ անոնք իրենց մէջ խորհեցան ու ըսին,
6 Եթէ ըսենք՝ Երկնքէն, պիտի ըսէ, Հապա ին-
չո՞ւ չհաւատացիք անոր. իսկ եթէ ըսենք՝ Մար-
դոցմէ, բոլոր ժողովուրդը մեզ պիտի քարկո-
ծեն, վասն զի հաստատ համոզուած են թէ Յով-
7 հաննէս մարգարէ էր։ Եւ պատասխան տուին
8 թէ չեն գիտեր ուրկէ՛ էր։ Եւ Յիսուս ըսաւ
անոնց, Ես ալ ձեզի չեմ ըսեր թէ ի՛նչ իշխա-
նութիւնով կ՚ընեմ այս բաները։
9 Սկսաւ այս առակը զրուցել ժողովուրդին.
Մարդ մը այգի տնկեց և զանիկա մշակներու
յանձնեց, ու ինք օտար երկիր երթալով՝ շատ
10 ժամանակ մնաց։ Եւ ատենին ծառայ մը ղրկեց
մշակներուն, որպէս զի այգիին պտուղէն անոր
տան. իսկ մշակները ծեծեցին զանիկա ու պա-
11 րապ ճամբեցին։ Եւ ուրիշ ծառայ մըն ալ ղըր-
կեց. իսկ անոնք զանիկա ալ ծեծեցին, անար-
12 գեցին ու պարապ ճամբեցին։ Ու երրորդ մըն
ալ ղրկեց. իսկ անոնք զանիկա ալ վիրաւորեցին
13 ու դուրս հանեցին։ Այն ատեն այգիին տէրը
ըսաւ, Ի՞նչ ընեմ. իմ սիրելի որդիս ղրկեմ,
14 թերևս զանիկա տեսնելով ամչնան. Բայց մշակ-
ները երբ տեսան զանիկա, իրարու հետ խոր-
հուրդ ըրին՝ ըսելով, Ասիկա է ժառանգը, ե-
կէք զանիկա սպաննենք, որպէս զի ժառանգու-
15 թիւնը մերը ըլլայ։ Եւ զանիկա այգիէն դուրս
հանեցին ու սպաննեցին. ուստի այգիին տէրը
16 ի՞նչ պիտի ընէ անոնց. Պիտի գայ ու կորսնցնէ
այն մշակները, և այգին ուրիշներու պիտի տայ։
17 Երբ այս լսեցին, ըսին, Քա՛ւ լիցի։ Եւ ինք ա-
նոնց նայելով՝ ըսաւ, Հապա ի՞նչ է այս գրուածը,

թէ Այն քարը զոր շինողները մերժեցին, անի-
18 կա անկիւնին գլուխը եղաւ։ Ամէն ով որ այն
քարին վրայ իյնայ, պիտի կոտրի, և որուն վրայ
19 որ իյնայ, պիտի փշրէ զանիկա։ Եւ քահա-
նայապետները ու դպիրները կը փնտռէին թէ
ի՞նչպէս նոյն ժամուն ձեռք զարնեն անոր, բայց
ժողովուրդէն վախցան. քանզի իմացան որ այն
առակը իրենց համար ըսաւ։
20 Ու ետքը յարմար առթէնի սպասելով, ղրկեցին քանի
մը խաբեբայ մարդիկ, որոնք կեղծաւորու-
թեամբ ինքզինքնին արդար կը ձեւացնէին, որ-
պէս զի զանիկա խօսքով բռնեն՝ տէրութեան
և կուսակալին իշխանութեանը զանիկա մատ-
21 նելու։ Ու անոր հարցուցին՝ ըսելով, Վարդա-
պետ, գիտենք որ շիտակ կը խօսիս ու կը սոր-
վեցնես, և աչառութիւն չես ըներ, հապա
ճշմարտութեամբ Աստուծոյ ճամբան կը սորվե-
22 ցնես։ Մեզի արժա՞ն է Կայսրին տուրք տալ
23 թէ ոչ։ Եւ անոնց խորամանկութիւնը հասկը-
նալով՝ ըսաւ անոնց, Ինչո՞ւ զիս կը փորձէք։
24 Ցուցուցէք ինծի դահեկան մը։ Որո՞ւն պատ-
կերը ու գիրը ունի վրան։ Պատասխան տուին ու
25 ըսին, Կայսրինը։ Եւ ինք ըսաւ անոնց, Ուրեմն
զայն որ Կայսրինն է՝ Կայսրին տուէք, և զայն
26 որ Աստուծոյն է՝ Աստուծոյ տուէք։ Եւ չկրցան
զանիկա խօսքով մը բռնել ժողովուրդին առ-
ջև, ու զարմանալով անոր պատասխանին վրայ՝
լուռ կեցան։
27 Եւ սադուկեցիներէն ոմանք եկան, (որոնք
հակառակութիւն կ'ընեն թէ յարութիւն չկայ,)
28 և անոր հարցուցին՝ Ըսելով, Վարդապետ,
Մովսէս մեզի գրեց, Եթէ մէկուն եղբայրը կին
ունենալով մեռնելու ըլլայ, ու մեռած ատենը
զաւակ չունենայ, անոր եղբայրը առնէ այն կի-
29 նը և իր եղբօրը զաւակ հանէ։ Արդ եօթը

*եղբայրներ կային. ու առջինը կին մը առնե-*
30 *լով՝ զաւակ չունեցած մեռաւ։ Երկրորդն ալ ա-*
*ռաւ այն կինը եւ ինք ալ մեռաւ առանց զաւա-*
31 *կի։ Երրորդն ալ առաւ զանիկա. նմանապէս*
32 *եօթն ալ, ու զաւակ չձգեցին ու մեռան։ Ամէ-*
33 *նէն ետքը կինն ալ մեռաւ։ Ուրեմն յարու-*
*թեան ատենը անոնցմէ որո՞ւն կինը պիտի ըլլայ,*
34 *վասն զի եօթն ալ զանիկա կին ունեցան։ Եւ*
*Յիսուս պատասխան տալով անոնց՝ ըսաւ, Այս*
*աշխարհին որդիները կին կ'առնեն ու էրկան*
35 *կը տրուին։ Բայց անոնք որ արժանի պիտի ըլլան*
*այն աշխարհին հասնելու ու մեռելներէն յա-*
*րութիւն առնելու, ոչ կին կ'առնեն եւ ոչ էր-*
36 *կան կը տրուին. Որովհետեւ ա՛լ չեն կրնար մեռ-*
*նիլ. քանզի հրեշտակներուն հաւասար են, ու*
*Աստուծոյ որդիներ են, վասն զի յարութեան*
37 *որդիներ են։ Բայց մեռելներուն յարութիւն*
*առնելը Մովսէս ալ իմացուց մորենիին պատմու-*
*թեանը մէջ, երբ կը կոչէ Տէրը՝ Աբրահամի Աստ-*
*ուածը, ու Իսահակի Աստուածը, եւ Յակոբի*
38 *Աստուածը։ Ու Աստուած մեռելներուն Աստ-*
*ուածը չէ, հապա կենդանիներուն, վասն զի ամէնը*
39 *անոր կենդանի են։ Եւ դպիրներէն մէկ քանին*
*պատասխան տուին ու ըսին, Վարդապետ, աղէկ*
40 *ըսիր։ Ու ա՛լ մէկը համարձակութիւն չէր ըներ*
*անոր բան մը հարցնելու։*

41 Եւ *ըսաւ անոնց, Ի՞նչպէս կ'ըսեն թէ Քրիս-*
42 *տոս Դաւիթի որդին է. Եւ ինք Դաւիթ Սաղ-*
*մոսներուն գիրքին մէջ կ'ըսէ, Տէրը իմ Տէրոջս*
43 *ըսաւ, Նստէ իմ աջ կողմս, Մինչեւ քու թշնա-*
44 *միներդ ոտքերուդ պատուանդան ընեմ։ Ուրեմն*
*Դաւիթ որ զանիկա Տէր կը կոչէ, ի՞նչպէս ա-*
*նիկա անոր որդին կ'ըլլայ։*

45 Եւ *բոլոր ժողովուրդին առջեւ ըսաւ իր աշա-*
46 *կերտներուն, Զգուշացէք դպիրներէն, որոնք*

կ՚ուզեն փառաւոր հանդերձներով պտըտիլ, և
շուկաներուն մէջ բարևներ կը սիրեն. ու ժո-
ղովարաններուն մէջ՝ առաջին աթոռները, և
47 ընթրիքներու մէջ՝ առաջին բազմոցները. Որոնք
որբևարիներուն տուները կ՚ուտեն, ու մարդոց ե-
րևնալու համար աղօթքը կ՚երկնցնեն. ասոնք ա-
ւելի դատապարտութիւն պիտի ընդունին։

## ԳԼ. ԻԱ.

1 Քրիստոս կը գովէ աղքատ որբևարին. 5 կը նախաձայնէ տաճարին ու Երուսաղէմի կործանումը. 25 Նաև վերջին օրուան նշանները. 34 կը յորդորէ որ արթուն ըլլանք։

1 Ու նայելով՝ տեսաւ հարուստները որոնք իրենց
2 ընծաները գանձանակը կը ձգէին։ Տնանկ որբևա-
րի մըն ալ տեսաւ, որ հոն երկու լումայ ձգեց։
3 Ու ըսաւ, Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի որ այս աղքատ
4 որբևարին ամէնէն աւելի ձգեց. Վասն զի ամէն
անոնք իրենց աւելցածէն Աստուծոյ ընծանե-
րուն մէջ ձգեցին, բայց ասիկա իր չքաւորու-
թենէն բոլոր իր ունեցած ապրուստը ձգեց։
5 Ու երբ մէկ քանիները տաճարին համար կ՚ը-
սէին թէ Գեղեցիկ քարերով ու նուէրներով
6 զարդարուած է, ըսաւ, Այդ բաները զորոնք
կը տեսնէք, օրեր պիտի գան որ այն ատեն քար
7 մը քարի վրայ պիտի չմնայ որ չքակուի։ Հար-
ցուցին իրեն ու ըսին, Վարդապետ, ե՞րբ պիտի
ըլլան այդ բաները, և ի՞նչ է նշանը՝ երբ այդ
8 բաները պիտի ըլլան։ Ան ալ ըսաւ, Զգոյշ կե-
ցէք, չխաբուիք, վասն զի շատերը պիտի գան
իմ անունովս ու ըսեն թէ Ես եմ Քրիստոսը, ու
ժամանակը մօտեցած է. ուրեմն անոնց ետևէն
9 չերթաք։ Բայց երբ լսէք պատերազմներ և
խռովութիւններ, մի վախնաք, վասն զի պէտք է
առաջ այս բաները ըլլան, բայց վախճանը իսկոյն
10 չէ։ Այն ատեն ըսաւ անոնց, Ազգ ազգի վրայ
պիտի ելլէ, ու թագաւորութիւն՝ թագաւորու-

11 *թեան վրայ. Եւ տեղ տեղ մեծ երկրաշարժու-*
*թիւններ պիտի ըլլան, ու սովեր և մահտարա-*
*ժամներ, նաև երկինքէն սոսկալի բաներ և մեծ*
12 *նշաններ պիտի ըլլան։ Բայց այս ամէն բանե-*
*րէն առաջ իրենց ձեռքերը ձեզի պիտի զարնեն*
*ու հալածեն, և ժողովարաններու ու բանտե-*
*րու պիտի մատնեն. և իմ անուանս համար թա-*
*գաւորներու ու կուսակալներու առջև պիտի*
13 *տարուիք։ Եւ այս բաները վերջը ձեզի վկայութիւն*
14 *մը պիտի ըլլան։ Ուստի ձեր սրտին մէջ դրէք՝*
*որ առաջուընէ չմտածէք պատասխան տալու*
15 *վրայ։ Վասն զի ես ձեզի բերան ու իմաստու-*
*թիւն պիտի տամ, որու պիտի չկրնան դէմ խօ-*
*սիլ կամ դէմ կենալ ձեր ամէն հակառակորդ-*
16 *ները։ Եւ պիտի մատնուիք ծնողքներէ ու եղ-*
*բայրներէ և ազգականներէ ու բարեկամներէ,*
17 *ու ձեզմէ պիտի սպաննեն. Եւ իմ անուանս*
18 *համար ամէնուն ատելի պիտի ըլլաք. Բայց մազ մը*
19 *ձեր գլխէն պիտի չկորսուի։ Ձեր համբերու-*
*թիւնովը հոգիներնիդ պիտի ստանաք։*
20 Ու *երբ տեսնէք Երուսաղէմը չորս կողմէն*
*զօրքերով պատած, այն ատեն գիտցէք որ անոր*
21 *աւերումը մօտ է։ Այն ատեն Հրէաստանի մէջ*
*եղողները լեռները թող փախչին, ու անոր մէջ*
*եղողները թող հեռանան, և անոնք որ ագա-*
22 *րակներն են՝ թող չմտնեն անոր մէջ։ Վասն զի*
*այն օրերը վրէժխնդրութեան օրեր են, որպէս զի*
23 *բոլոր գրուածները կատարուին։ Բայց վա՜յ այն*
*օրերը յղի եղողներուն ու ծիծ տուողներուն,*
*վասն զի մեծ նեղութիւն պիտի ըլլայ երկրին*
*վրայ. ու բարկութիւն պիտի գայ այս ժողովուր-*
24 *դին վրայ. Եւ սուրի բերնով պիտի իյնան, ու*
*բոլոր ազգերուն մէջ գերի պիտի տարուին.*
*ու Երուսաղէմ ազգերուն ոտից կոխան պիտի*
*ըլլայ, մինչև ազգերուն ժամանակները լմնան։*

25 Ու արեգակին և լուսնին ու աստղերուն վրայ
նշաններ պիտի ըլլան ու երկրի վրայ ազգերը
ապշութեամբ պիտի տագնապին, և ծովը ու
26 ալիքները պիտի գոռան. Մարդոց սիրտերը պիտի
նուաղին երկիւղ վախէն և աշխարհի վրայ գալու
բաներուն սպասելէն, վասն զի երկինքի զօրու-
27 թիւնները պիտի շարժին։ Եւ այն ատեն պիտի
տեսնեն Որդին մարդոյ ամպի մէջ եկած զօրու-
28 թիւնով ու մեծ փառքով։ Ու երբ այս բաները
սկսին ըլլալ, ելէք ու գլուխնիդ բարձրացուցէք,
վասն զի ձեր փրկութիւնը մօտ է։
29 Եւ առակ մը ըսաւ անոնց, Տեսէք թզենին
30 ու ամէն ծառերը. Երբ կը բողբոջին, տեսնելով՝
դուք ձեզմէ կ'իմանաք թէ ալ ամառը մօտ է։
31 Նոյնպէս դուք երբ այս բաները եղած տեսնէք,
գիտցէք որ Աստուծոյ թագաւորութիւնը մօտ
32 է։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ այս ազգը պիտի
33 չանցնի, մինչև այս ամէն բաները ըլլան։ Եր-
կինք ու երկիր պիտի անցնին. բայց իմ խօս-
34 քերս բնաւ պիտի չանցնին։ Իսկ դուք զգուշա-
ցէք ձեր անձերուն. չըլլայ որ սիրտերնիդ կերու-
խումով ու գինովութիւնով և աշխարհային
զբաղմունքներով ծանրանայ, ու յանկարծակի
35 այն օրը ձեր վրայ հասնի. Վասն զի բոլոր երկ-
րին երեսը բնակողներուն ամէնուն վրայ որո-
36 գայթի մը պէս պիտի հասնի։ Ուստի արթուն
կեցէք, ու ամէն ատեն աղօթք ըրէք, որ ար-
ժանի ըլլաք այն բոլոր ըլլալու բաներէն ազատ-
ուելու և Որդւոյ մարդոյ առջև կայնելու։
37 Ու ցորեկները տաճարին մէջ կը սորվեցնէր
և գիշերները կ'ելլէր Ձիթենեաց ըսուած լեռը
38 կը կենար։ Եւ բոլոր ժողովուրդը առտուանց
կանուխ իրեն կ'երթային տաճարը՝ իր խօսքերը
լսելու։

## ԳԼ. ԻԲ

*1 Հրեաները դաւակցութիւն կ'ընեն Քրիստոսի դէմ։ 3 Սատանայ կը դրդէ Յուդան որ մատնէ զՔրիստոս ։ 7 Առաքեալները կը պատրաստեն զատիկը ։ 19 Քրիստոս իր սուրբ ընթրիքը կը սահմանէ . 21 իր մատնիչին ո՛վ ըլլալը կ'իմացնէ՝ առանց անոր անունը տալու . 24 իր աշակերտները փառասիրութենէ կը զգուշացնէ . 31 Պետրոսի կ'իմացնէ թէ իր հաւատքը պիտի չպակսի , 34 բայց երեք անգամ պիտի ուրանայ իր Տէրը . 39 աղօթք կ'ընէ գեթսեմանի պարտէզին մէջ և արիւն քրտինք կը թափէ . 47 մէկ համբուրով մը կը մատնուի . 50 Մաղքոսի ականջը կը բժշկէ ։ 54 Պետրոս երեք անգամ կ'ուրանայ իր Տէրը ։ 63 Քրիստոս Նախատալից անարգութիւն և չարչարանք կը կրէ , 66 ու կը խոստովանի թէ ինք Աստուծոյ Որդին է ։*

1 Բաղարջակերաց տօնը մօտեցաւ որ Զատիկ
2 կ'ըսուէր ։ Եւ քահանայապետները ու դպիր-
ները կը փնտռէին թէ ինչպէս սպաննեն զա-
նիկա , քանզի ժողովուրդէն կը վախնային ։
3 Եւ Սատանայ՝ Իսկարիովտացի մականուանեալ
Յուդային ներսը մտաւ , որ տասուերկուքին համ-
4 րանքէն էր ։ Եւ գնաց քահանայապետներուն
ու իշխաններուն հետ խօսք ըրաւ թէ ինչպէս
5 զանիկա մատնէ անոնց ։ Անոնք ալ ուրախացան
6 և խոստացան անոր ստակ տալ ։ Ու ինք վրան ա-
ռաւ , և պատեհութիւն մը կը փնտռէր որպէս
զի զանիկա մատնէ անոնց առանց բազմութեա-
նը ժողովուելուն ։
7 Եւ բաղարջակերաց օրը եկաւ , որուն մէջ
8 պէտք էր զատիկը մորթել ։ Ու ղրկեց Պետրոսը
և Յովհաննէսը ու ըսաւ , Գացէք պատրաստե-
9 ցէք մեզի զատիկը որպէս զի ուտենք ։ Անոնք ալ
ըսին անոր , Ո՞ւր կ'ուզես որ պատրաստենք ։
10 Եւ ըսաւ անոնց , Ահա երբ քաղաքը մտնէք ,
ձեզի մարդ մը պիտի պատահի որ ուսին վրայ ջուրի
սափոր մը կը տանի . անոր ետեւէն գացէք այն
11 տունը ուր ինք կը մտնէ . Եւ այն տանը տէրոջ
ըսէք , Վարդապետը կ'ըսէ քեզի , Ո՞ւր է օ-
թեւանը ուր աշակերտներուս հետ մէկտեղ զա-
12 տիկը ուտեմ ։ Ան ալ ձեզի յարդարուած մեծ
վերնատուն մը պիտի ցուցնէ , հոն պատրաստե-

13 ցէք ։ Եւ գացին գտան ինչպէս իրենց ըսաւ, ու-
զատիկը պատրաստեցին ։
14 Ու երբ ժամը հասաւ, սեղան նստաւ և տաս-
15 ուերկու առաքեալները իրեն հետ ։ Ու ըսաւ ա-
նոնց, Փափաքելով փափաքեցայ որ այս զատիկը
ձեզի հետ ուտեմ իմ չարչարուելէս առաջ ։
16 Քանզի կ'ըսեմ ձեզի որ ալ ընաւ անկէ պիտի
չուտեմ՝ մինչև Աստուծոյ թագաւորութեա-
17 նը մէջ կատարուի ։ Եւ գաւաթը առաւ, գո-
հացաւ ու ըսաւ, Առէք ասիկա ու բաժնեցէք
18 ձեր մէջ. Վասն զի ձեզի կ'ըսեմ որ ընաւ որ-
թին բերքէն պիտի չխմեմ՝ մինչև Աստուծոյ
թագաւորութիւնը գայ ։
19 Եւ հաց առաւ, գոհացաւ, կտրեց և տուաւ
անոնց ու ըսաւ, Այս է իմ մարմինս, որ ձեզի
համար տրուած է. ասիկա ըրէք զիս յիշելու
20 համար ։ Նոյնպէս ալ գաւաթը ——— ընթրիքէն
ետև ու ըսաւ, Այս գաւաթը նոր ուխտ է իմ
արիւնովս, որ ձեզի համար կը թափուի ։
21 Բայց ահա զիս մատնողին ձեռքը ինծի հետ
22 այս սեղանն է ։ Եւ յիրաւի Որդին մարդոյ կ'եր-
թայ՝ ինչպէս սահմանուած է, բայց վա՜յ այն
23 մարդուն՝ որուն ձեռքով անիկա կը մատնուի ։ Եւ
անոնք սկսան իրենց մէջ հարցուփորձ ընել՝ թէ
իրենցմէ ո՛վ է որ այն բանը պիտի ընէ ։
24 Վէճ մըն ալ եղաւ անոնց մէջ՝ թէ իրենցմէ
25 ո՛վ մեծ պիտի սեպուի ։ Եւ անիկա ըսաւ անոնց,
Ազգաց թագաւորները անոնց կը տիրեն, և ա-
նոնք որ կ'իշխեն անոնց՝ բարերար կը կոչուին ։
26 Բայց դուք այնպէս պիտի չըլլաք, հապա ան որ
ձեր մէջ մեծ է, պզտիկին պէս թող ըլլայ, և
27 առաջնորդը սպասաւորին պէս ։ Քանզի ո՛վ է
մեծը, սեղան նստո՞ղը թէ սպասաւորը. չէ՞ որ
սեղան նստողը. սակայն ես ձեր մէջ սպասա-
28 ւորի մը պէս եմ ։ Եւ դուք անոնք էք՝ որ միշտ

ինծի հետ կը կենայիք իմ փորձութիւններուս
29 մէջ. Ես ալ ձեզի թագաւորութիւն մը ուխտ կ՚ընեմ,
ինչպէս իմ Հայրս ինծի թագաւորութիւն մը
30 ուխտ ըրաւ. Որպէս զի դուք իմ սեղանէս ու-
տէք ու խմէք իմ թագաւորութեանս մէջ, և
աթոռներու վրայ նստիք Իսրայէլի տասներկու
ցեղերը դատելու։
31 Եւ Տէրը ըսաւ, Սիմոն, Սիմոն, ահա Սատա-
նայ ձեզ փնտռեց, որ ցորենի պէս խարբալէ.
32 Բայց ես քեզի համար աղօթք ըրի որպէս զի
քու հաւատքդ չպակսի. և դուն երբ դարձի
33 գաս, քու եղբայրներդ ալ հաստատէ։ Իսկ ինք
ըսաւ անոր, Տէր, ես պատրաստ եմ քեզի հետ
34 բանտ երթալու ալ, մեռնելու ալ։ Եւ անիկա
ըսաւ, Պետրոս, քեզի կ՚ըսեմ որ այսօր հաւ
պիտի չխօսի մինչև դուն երեք անգամ ուրա-
նաս՝ ըսելով թէ զիս չես ճանչնար։
35 Եւ ըսաւ անոնց, Երբ ձեզ ղրկեցի առանց
քսակի ու պարկի և կօշիկներու, բանի մը կա-
36 րօտ եղա՞ք։ Անոնք ալ ըսին, Բանի մըն ալ չէ.
ետքը ըսաւ, Բայց հիմա ան որ քսակ ունի,
թող իրեն հետ առնէ, նոյնպէս ալ պարկը և ան որ
սուր չունի, թող իր հանդերձը ծախէ ու իրեն
37 թուր մը ծախու առնէ. Քանզի կ՚ըսեմ ձեզի
որ այս գրուած բանն ալ պէտք է որ իմ վրաս
կատարուի, Եւ անօրէններու հետ սեպուեցաւ.
քանզի ինչ որ ինծի համար որոշուած է, կատար-
38 ուելու վրայ է։ Անոնք ալ ըսին, Տէր, ահա հոս
երկու թուր կայ. ան ալ ըսաւ անոնց, Հերիք են։
39 Ու ելաւ իր սովորութեանը պէս Ձիթենեաց
լեռը գնաց. աշակերտներն ալ իր ետևէն գա-
40 ցին։ Երբ այն տեղը հասաւ, ըսաւ անոնց, Ա-
ղօթք ըրէք որպէս զի փորձութեան մէջ չմտնէք։
41 Եւ ինք անոնցմէ զատուեցաւ քարընկեցի մը
չափ, ու ծունկի վրայ գալով աղօթք կ՚ընէր,

42 Ու կ՚ըսէր, Հայր, եթէ կ՚ուզես, այս գաւաթը
ինծմէ անցուր. բայց ոչ թէ իմ կամքս՝ հապա
43 քուկդ թող ըլլայ։ Ու երկինքէն հրեշտակ մը
երեւցաւ անոր և կը զօրացնէր զանիկա. ու սաս-
տիկ նեղութեան մէջ ըլլալով՝ աւելի ջերմե-
44 ռանդութեամբ աղօթք կ՚ընէր։ Եւ իր քրտինքը
արիւնի մեծ կաթիլներու պէս էր, որ գետինը
կը թափուէր։
45 Եւ աղօթքէն ելլելով աշակերտներուն քով
եկաւ, ու գտաւ զանոնք տրտմութենէն քնա-
46 ցած. Եւ ըսաւ անոնց, Ինչո՞ւ կը քնանաք. ելէք ա-
ղօթք ըրէք որպէս զի փորձութեան մէջ չմտնէք։
47 Ու երբ դեռ կը խօսէր, ահա բազմութիւն
մը, և Յուդա ըսուածն ալ, տասնըերկուքէն
մէկը, անոնց առջեւէն կ՚երթար, ու Յիսուսի
48 մօտեցաւ որպէս զի զանիկա համբուրէ։ Բայց
Յիսուս ըսաւ անոր, Յուդա, համբուրելո՞վ կը
49 մատնես Որդին մարդոյ։ Երբ անոր բոլորտիքը
եղողները տեսան ինչ որ պիտի ըլլար, ըսին անոր,
50 Տէր, թուրով զարնե՞նք։ Եւ անոնցմէ մէկը քա-
հանայապետին ծառային զարկաւ ու մէկդի հա-
51 նեց անոր աջ ականջը։ Պատասխան տուաւ Յի-
սուս ու ըսաւ, Թող տուէք մինչև այդ տեղը.
և դպաւ անոր ականջին ու բժշկեց զանիկա։
52 Եւ Յիսուս իր վրայ եկող քահանայապետնե-
րուն ու տաճարին իշխաններուն ու ծերերուն
ըսաւ, Իբր թէ աւազակի՞ վրայ ելաք սուրերով
53 ու բիրերով։ Ամէն օր ձեզի հետ էի տաճարին
մէջ, և ինծի ձեռք չզարկիք. բայց այս է ձեր
ժամանակը ու խաւարին իշխանութիւնը։
54 Ու զանիկա բռնելով տարին ու քահանայա-
պետին տունը մտցուցին. Պետրոս ալ հեռուանց
55 անոր ետեւէն կ՚երթար։ Երբ կրակ վառեցին գա-
ւիթին մէջ ու մէկտեղ նստան, Պետրոս ալ նստաւ
56 անոնց մէջ։ Աղախին մը տեսնելով զանիկա որ

կրակին քով նստեր էր, նայեցաւ անոր ու ըսաւ,
57 Ասիկա ալ անոր հետ էր։ Բայց Պետրոս ուրացաւ
զանիկա ու ըսաւ, Ով կին, ես զանիկա չեմ
58 ճանչնար։ Եւ քիչ մը ետքը ուրիշ մը տեսաւ
զանիկա ու ըսաւ, Դուն ալ անոնցմէ ես. և
59 Պետրոս ըսաւ, Ով մարդ, ես անոնցմէ չեմ։ Եւ
ժամու մը չափ անցնելէն ետև՝ ուրիշ մըն ալ
կը պնդէր ու կ'ըսէր, Յիրաւի ասիկա ալ անոր
60 հետ էր, վասն զի Գալիլեացի է։ Բայց Պետրոս
ըսաւ, Ով մարդ, չեմ գիտեր ինչ կը զրուցես
դուն. և քանի որ իր խօսքը բերանն էր, իսկոյն
61 հաւը խօսեցաւ։ Եւ Տէրը դարձաւ ու Պետրոսի
նայեցաւ. Պետրոս ալ միտքը բերաւ Տէրոջը
խօսքը որ իրեն ըսեր էր թէ Դեռ հաւը չխօ-
62 սած՝ երեք անգամ պիտի ուրանաս զիս։ Ու
Պետրոս դուրս ելլելով դառնապէս լացաւ։
63 Եւ այն մարդիկը որոնք Յիսուսը կը պահէին,
64 ծաղր կ'ընէին զանիկա ու կը ծեծէին. Եւ անոր
աչքերը ծածկելով՝ անոր երեսին կը զարնէին, ու
65 կը հարցնէին իրեն՝ ըսելով, Մարգարէացիր, Ո՞վ
է ան որ քեզի զարկաւ։ Եւ ուրիշ շատ բաներ
կը զրուցէին իրեն հայհոյելով։
66 Ու երբ առտու եղաւ, ժողովուրդին ծերա-
կոյտը, քահանայապետները և դպիրները ժող-
վուեցան, ու տարին զանիկա իրենց ատեանը և
ըսին, Եթէ Քրիստոսը դուն ես, ըսէ մեզի։
67 Ըսաւ անոնց, Եթէ ձեզի ըսեմ ալ՝ պիտի չհա-
68 ւատաք. Եւ եթէ ձեզի բան մը հարցնեմ, ինծի
պատասխան պիտի չտաք, ոչ ալ զիս պիտի արձա-
69 կէք։ Ասկէ ետև Որդին մարդոյ Աստուծոյ զօ-
70 րութեանը աջ կողմը պիտի նստի։ Եւ ամէնք
ըսին, Ուրեմն դուն Աստուծոյ Որդի՞ն ես. ինք
71 ալ ըսաւ անոնց, Դուք կ'ըսէք թէ ես եմ։ Եւ ա-
նոնք ըսին, Ալ ի՞նչ պէտք է մեզի վկայութիւն,
վասն զի մենք մեզմէ անոր բերնէն լսեցինք։

# ԳԼ. ԻԳ

1 Քրիստոս կ'ամբաստանուի Պիղատոսի առջև, և Հերովդէսի կը ղրկուի։ 8 Հերովդէս ծաղր կ'ընէ զանիկա։ 12 Հերովդէս և Պիղատոս բարեկամ կ'ըլլան իրարու հետ։ 18 Պիղատոս կ'արձակէ Բարաբբան, և Յիսուսը ձեռք կու տայ որ խաչուի։ 27 Քրիստոս իր վրայ լացող կիներուն կ'իմացնէ Երուսաղէմի կործանումը. 34 աղօթք կ'ընէ իր թշնամիներուն համար։ 39 Երկու չարագործ անձինք իրեն հետ կը խաչուին։ 46 Քրիստոսի մահը 50 և թաղումը։

1 Եւ անոնց բոլոր բազմութիւնը ոտք ելլելով՝
2 տարին զանիկա Պիղատոսի. Ու սկսան անոր
վրայով ամբաստանութիւն ընել և ըսել, Ա-
սիկա գտանք, որ Դր ազգը կը մոլորեցնէր, ու
Կայսրին հարկ տալէ կ'արգիլէր, և իրեն հա-
մար կ'ըսէր թէ ինք Քրիստոս — թագաւոր է։
3 Իսկ Պիղատոս հարցուց անոր ու ըսաւ, Հրէից
թագաւորը դո՞ւն ես. անիկա ալ պատասխան
4 տուաւ անոր ու ըսաւ, Դուն կ'ըսես։ Այն ատեն
Պիղատոս քահանայապետներուն ու ժողո-
վուրդներուն ըսաւ, Ես այս մարդուն վրայ յան-
5 ցանք մը չեմ գտներ։ Բայց անոնք ոտք կը կո-
խէին ու կ'ըսէին թէ Ժողովուրդը իրար կ'անցնէ,
ու բոլոր Հրէաստանի մէջ կը սորվեցնէ՝ Գա-
6 լիլեայէ սկսած մինչև այս տեղ։ Եւ Պիղատոս
երբ լսեց Գալիլեայի համար, հարցուց թէ այդ
7 մարդը Գալիլեացի՞ է։ Ու երբ իմացաւ թէ Հե-
րովդէսի իշխանութեան տակէն էր, զանիկա
Հերովդէսի ղրկեց, քանզի ան ալ այն օրերը Ե-
րուսաղէմ էր։
8 Եւ Հերովդէս երբ Յիսուսը տեսաւ, շատ ուրա-
խացաւ, վասն զի ինք շատոնցուընէ կը փափա-
քէր զանիկա տեսնել. քանզի անոր վրայով շատ
բաներ լսած էր, և կը յուսար որ անկէ եղած
9 նշան մը տեսնէ։ Ու շատ խօսքերով հարցու-
փորձ կ'ընէր անոր, բայց անիկա բնաւ իրեն
10 պատասխան մը չտուաւ։ Քահանայապետները
ու դպիրներն ալ կեցեր էին, և սաստիկ ամբաս-
11 տանութիւն կ'ընէին անոր վրայ։ Իսկ Հերով-
դէս անարգեց զանիկա իր զօրականներուն հետ,

ու ծաղր ընելէն ետեւ փառաւոր հանդերձներ
12 հագցուց անոր, և նորէն Պիղատոսի ղրկեց։ Ու-
այն օրը Պիղատոս և Հերովդէս իրարու հետ
բարեկամ եղան. որովհետեւ առաջ իրենց մէջ-
տեղ թշնամութիւն կար։
13 Եւ Պիղատոս քահանայապետները ու իշխան-
14 ները և ժողովուրդը մէկտեղ կանչեց։ Եւ ըսաւ
անոնց, Այս մարդը առջեւս բերիք ժողովուրդը
մոլորեցնողի մը պէս, և ահա ես ձեր առջեւ
քննութիւն ընելով՝ ատոր համար ձեր բրած
ամբաստանութիւններէն յանցանք մը չգտայ այդ
15 մարդուն վրայ. Ոչ ալ Հերովդէս, վասն զի ձեզ
անոր ղրկեցի, և ահա ատիկա մահու արժանի
16 գործ մը բրած չէ։ Ուրեմն պատիժ մը տամ
17 ատոր ու արձակեմ. (Իսկ տօնին ատենը պէտք
18 էր որ մէկը արձակէր անոնց.) Եւ բոլոր բազ-
մութիւնը մէկտեղ աղաղակեցին՝ ըսելով, Վեր-
ցուր ատիկա, ու Բարաբբան արձակէ մեզի.
19 (Որ քաղաքին մէջ եղած խռովութեան մը և
մարդասպանութեան համար բանտը դրուած
20 էր։) Եւ Պիղատոս Յիսուսը արձակել ուզե-
21 լով՝ նորէն խօսեցաւ անոնց։ Բայց անոնք կ'ա-
ղաղակէին ու կ'ըսէին, Խաչը հանէ ատիկա,
22 խաչը հանէ։ Եւ ինք երրորդ անգամ ըսաւ ա-
նոնց, Բայց ի՞նչ չար գործ բրած է ատիկա. ես
ատոր վրայ մահու արժանի յանցանք մը չգտայ.
ուրեմն պատիժ մը տամ ատոր ու արձակեմ։
23 Իսկ անոնք մեծաձայն աղաղակներով ոտք կը կո-
խէին, ու կ'ուզէին որ անիկա խաչուի. և ա-
նոնց ու քահանայապետներուն ձայները զօրա-
24 ւոր եղան։ Ու Պիղատոս վճռեց որ անոնց խնդ-
25 րիքը ի գործ դրուի։ Եւ անոնց ուզած մարդը,
որ խռովութեան և մարդասպանութեան հա-
մար բանտը դրուած էր, արձակեց անոնց, և
Յիսուսը իրենց կամքին յանձնեց։

26 Ու երբ զանիկա կը տանէին, Սիմոն Կիւրենացի
ըսուած մէկը բռնեցին՝ որ արտէն կու գար, և
խաչը անոր վրայ դրին որպէս զի Յիսուսի ետե-
27 ւէն բերէ ։ Ու անոր ետևէն կ՚երթար մեծ
բազմութիւն ժողովուրդներու, նաև կիներու,
28 որոնք կ՚ողբային ու կու լային անոր համար ։ Եւ
Յիսուս դարձաւ անոնց ու ըսաւ, Ով Երուսա-
ղէմի աղջիկներ, իմ վրաս մի լաք, հապա ձեր
անձերուն վրայ ու ձեր զաւակներուն վրայ լա-
29 ցէք ։ Վասն զի ահա օրեր կու գան, որոնց մէջ
պիտի ըսեն, Երանի ամուլներուն, և այն որո-
վայններուն որոնք չծնան, և ծիծերուն որոնք
30 կաթ չտուին ։ Այն ատեն պիտի սկսին ըսել
լեռներուն, Մեր վրայ ինկէք, ու բլուրներուն՝
31 Մեզ ծածկեցէք ։ Վասն զի եթէ դալար փայտին
այսպէս կ՚ընեն, հապա չորին ի՞նչ պիտի ըլլայ ։
32 Ուրիշ երկուք ալ, չարագործներ, բերուե-
33 ցան անոր հետ սպաննուելու ։ Երբ Գագաթ
ըսուած տեղը գացին, հոն խաչը հանեցին զա-
նիկա, և այն չարագործներն ալ, մէկը աջ կող-
34 մէն ու միւսը ձախ կողմէն, խաչեցին ։ Եւ ըսաւ
Յիսուս, Հայր, թողութիւն տուր ասոնց, վասն
զի չեն գիտեր ի՛նչ կ՚ընեն ։ Ու անոր հանդերձ-
35 ները բաժնելու ատեննին վիճակ ձգեցին ։ Եւ
ժողովուրդը կայներ կը նայէր ․ իշխաններն ալ
անոնց հետ կը նախատէին զանիկա ու կ՚ըսէին,
Ուրիշները ազատեց, թող ինքզինքն ալ ազատէ,
եթէ ատիկա է Քրիստոս, Աստուծոյ ընտրեալը ։
36 Ծաղր կ՚ընէին զանիկա զինուորներն ալ, առ-
ջեւը կու գային քացախ կը մատուցանէին անոր,
37 Ու կ՚ըսէին, Եթէ դուն ես Հրէից թագաւորը,
38 քու անձդ ազատէ ։ Եւ գիր մը գրուած էր անոր
վրայ Յունարէն ու Լատիներէն և Եբրայեցե-
րէն գիրերով, Թէ Ասիկա է Հրէից թագաւորը ։
39 Եւ այն կախուած չարագործներէն մէկը հայ-

հայհոյութիւն կ'ընէր անոր ու կ'ըսէր, Եթէ դուն
Քրիստոսն ես, ազատէ քու անձդ ու մեզ ալ։
40 Իսկ միւսը պատասխան տուաւ ու զանիկա յան-
դիմանելով՝ ըսաւ, Դուն Աստուծմէ չե՞ս վախ-
նար, որովհետեւ նոյն դատապարտութեան մէջ
41 ես։ Ու մենք իրաւունքով, քանզի մեր ը-
րածներուն արժանաւոր հատուցումը կ'առ-
42 նենք. բայց ասիկա գէշ բան մը չըրաւ։ Եւ
ըսաւ Յիսուսի, Տէր, յիշէ զիս, երբ քու թա-
43 գաւորութիւնովդ գաս։ Յիսուս ալ ըսաւ անոր,
Ճշմարիտ կ'ըսեմ քեզի, Դուն այսօր ինծի հետ
դրախտին մէջ պիտի ըլլաս։
44 Եւ ժամը վեցին ատեններն էր, ու բոլոր
երկրին վրայ խաւար եղաւ մինչեւ իններորդ
45 ժամը. եւ արեւը խաւարեցաւ, Ու տաճարին
46 վարագոյրը մէջտեղէն պատռեցաւ. Եւ Յիսուս
մեծ ձայնով աղաղակեց ու ըսաւ, Հայր, քու
ձեռքդ կ'աւանդեմ իմ հոգիս. ու երբ զայս
ըսաւ, հոգին տուաւ։
47 Եւ հարիւրապետը եղած բանը տեսնելով՝
Աստուծոյ փառք տուաւ ու ըսաւ, Իրաւցնէ
48 այս մարդը արդար էր։ Եւ այս տեսարանը դի-
տելու համար ժողվուած բոլոր բազմութիւն-
ները եղած բաները տեսնելով՝ կուրծքերնին
49 կը զարնէին ու ետ կը դառնային։ Ամէն իր
ճանչուորներն ալ հեռուն կայներ էին, նոյն-
պէս ալ այն կիները՝ որոնք իր ետեւէն եկեր էին
Գալիլեայէ, ու կը տեսնէին այս բաները։
50 Եւ ահա մարդ մը Յովսէփ անունով, որ խոր-
51 հրդական էր, բարի ու արդար մարդ մը, (Ա-
սիկա անոնց խորհուրդին ու գործին հաւանու-
թիւն տուած չէր,) Հրեաներուն Արիմաթիա
քաղաքէն, որ ինք ալ Աստուծոյ թագաւորու-
52 թեանը կը սպասէր։ Ասիկա Պիղատոսի գնաց,
53 ու Յիսուսի մարմինը խնդրեց։ Եւ զանիկա խաչէն

իջեցնելով՝ կտաւով փաթթեց, ու քարէ փոր-
ուած գերեզմանի մը մէջ դրաւ, ուր բնաւ մէկը
54 դրուած չէր։ Եւ այն օրը ուրբաթ էր, ու շա-
բաթը պիտի *սկսէր։
55 Եւ անոր ետեւէն գացին այն կիները, որոնք
իրեն հետ Գալիլեայէ եկած էին, ու տեսան
գերեզմանը, և թէ ինչպէս անոր մարմինը հոն
56 դրուեցաւ։ Եւ դառնալով՝ խունկեր ու իւղեր
պատրաստեցին, և շաբաթ օրը հանգստացան
պատուիրանքին համեմատ։

## ԳԼ. ԻԴ

4 Երկու հրեշտակներ Քրիստոսի յարութիւնը կ'աւետեն գերեզմանը եկող կիներուն։ 9 Անոնք ալ այս լուրը առաքեալներուն կը պատմեն։ 13 Քրիստոս կ'երեւնայ Էմմաուս գացող երկու աշակերտներուն. 36 ետքը առաքեալներուն, և անոնց անհաւատութիւնը կը յանդիմանէ. 47 պատուէր մը կու տայ անոնց. 49 Հոգւոյն Սրբոյ գալստեան խոստումները կ'ընէ, 51 և կը համբառնայ երկինք։

1 Ու մէկշաբթի օրը առաւօտուն շատ կանուխ գե-
րեզմանը եկան, ու բերին այն խունկերը զո-
րոնք պատրաստեր էին, և ուրիշ կիներ ալ ա-
2 նոնց հետ։ Ու քարը գերեզմանէն մէկդի գլոր-
3 ուած գտան։ Եւ ներս մտնելով՝ Տէր Յիսուսի
4 մարմինը հոն չգտան։ Ու եղաւ որ երբ անոնք
այս բանին համար տարակուսանքի մէջ էին,
ահա երկու մարդիկ լուսափայլ հանդերձներով
5 հասան անոնց։ Ու երբ վախով լեցուած՝ երես-
նին դէպ ի գետին ծռեցին, այն մարդիկը ըսին ա-
նոնց, Ինչո՞ւ համար ողջը մեռելներուն հետ
6 կը փնտռէք. Հոս չէ ան, հապա յարութիւն
առաւ. միտքերնիդ բերէք ինչպէս խօսեցաւ
7 ձեզի երբ դեռ Գալիլեայի մէջ էր, Ըսելով թէ
Որդին մարդոյ պէտք է որ մեղաւոր մարդոց
ձեռքը մատնուի ու խաչը ելլէ, ու երրորդ օրը
8 յարութիւն առնէ։ Եւ միտքերնին բերին անոր
9 խօսքերը։ Ու գերեզմանէն դառնալով՝ այս
ամէն բաները պատմեցին տասնըմէկին ու բո-
10 լոր ուրիշներուն։ Եւ էին Մարիամ Մագդա-

*Յուն. լուսնար

ղենացի ու Յովհաննա և Յակոբոսի մայրը Մա-
րիամ, ու անոնց հետ ուրիշներ ալ, որոնք այս
11 բաները առաքեալներուն պատմեցին ։ Եւ ա-
նոնց առջև ցնորական խօսքեր երևցաւ անոնց
12 զրոյցը, ու չէին հաւատար անոնց ։ Բայց
Պետրոս ելաւ վազեց դէպ ի գերեզմանը, ու
ծռելով նայեցաւ և տեսաւ որ միայն կտաւները
կը կենային. ու գնաց՝ իր մտքին մէջ զարմանա-
լով այն եղածին վրայ ։
13 Եւ ահա անոնցմէ երկուքը նոյն օրը գեղ մը
կ'երթային, որ Երուսաղէմէ վաթսուն ասպա-
րէզ հեռու էր, և անոր անունը Էմմաւուս էր ։
14 Եւ անոնք կը խօսէին իրարու հետ այս բոլոր
15 եղած անցքերուն վրայով ։ Ու եղաւ որ երբ
անոնք կը խօսակցէին ու խորհրդածութիւն կ'ը-
նէին, Յիսուս ինք ալ մօտենալով անոնց հետ
16 կ'երթար ։ Բայց անոնց աչքերը բռնուած էին,
17 որպէս զի զինք չճանչնան ։ Եւ ըսաւ անոնց, Ի՞նչ
են այդ խօսքերը՝ որ քալելով իրարու հետ կը
18 խօսակցիք, ու տրտմած ալ էք ։ Պատասխան
տուաւ անոնցմէ մէկը, որուն անունը Կղէով-
պաս էր, ու ըսաւ անոր, Դո՞ւն միայն Երու-
սաղէմի մէջ կը կենաս, ու չես գիտեր թէ ին-
19 չե՛ր եղան հոն այս օրերս ։ Եւ ինք ըսաւ ա-
նոնց, Ի՞նչ. անոնք ալ ըսին իրեն, Նազովրեցի
Յիսուսի համար, որ Աստուծոյ և բոլոր ժո-
ղովուրդին առջև գործով ու խօսքով զօրաւոր
20 մարգարէ մը եղաւ. Ի՛նչպէս քահանայապետ-
ները ու մեր իշխանները մահուան դատաստանի
21 մատնեցին զանիկա և խաչը հանեցին ։ Իսկ մենք
կը յուսայինք թէ անիկա էր որ Իսրայէլը պիտի
ազատէր. և այս ամէնուն վրայ այս երրորդ օրն
22 է որ այս բաները եղան ։ Նաև մեր մէջէն մէկ
քանի կիներ ալ մեզ զարմացուցին, որոնք առ-
23 տուանց կանուխ գերեզմանը գացին, Ու անոր

մարմինը չգտնելով՝ եկան ու ըսին թէ հրեշտակ-
ներու տեսիլք ալ տեսան, որոնք ըսեր են թէ
24 անիկա ողջ է։ Եւ մերիններէն մէկ քանիները
ալ գերեզմանը գացին ու այնպէս գտան, ինչ-
պէս այն կիները զրուցեցին, միայն թէ զինք
25 չտեսան։ Ան ալ ըսաւ անոնց, Ով անմիտներ ու
թուլասիրտներ, հաւատալու այն բոլոր բանե-
26 րուն, զորոնք մարգարէները խօսեցան. Չէ՞ որ
Քրիստոսի պէտք էր այս չարչարանքները կրել,
27 և իր փառքը մտնել։ Ու սկսելով Մովսէսէ և
բոլոր մարգարէներէն, կը մեկնէր անոնց, ինչ որ
իրեն համար բոլոր գիրքերուն մէջ գրուած էր։
28 Երբ մօտեցան այն գեղին՝ ուր կ'երթային, ինք
ալ կը ցուցնէր որպէս թէ աւելի հեռու տեղ մը
29 պիտի երթար։ Բայց ստիպեցին զինք ու ըսին,
Մեր քով կեցիր, վասն զի իրիկունը մօտ է և
30 օրը իջած է. և մտաւ անոնց հետ կենալու։ Ու
եղաւ որ երբ ինք անոնց հետ սեղան նստաւ,
հաց առաւ, օրհնեց, ու կտրելով տուաւ անոնց։
31 Այն ատեն անոնց աչքերը բացուեցան ու զինք
ճանչցան, և ինք անոնցմէ աներևոյթ եղաւ։
32 Ու իրարու կ'ըսէին, Չէ՞ որ սիրտերնիս մեր
ներսիդին կը բորբոքէր, երբ ինք մեզի հետ կը խօ-
սէր ճամբուն մէջ, և գիրքերը կը մեկնէր մեզի։
33 Ու ելան նոյն ժամուն Երուսաղէմ դարձան,
ու մէկտեղ ժողվուած գտան տասնմէկը ու
34 անոնց հետ եղողները, Որոնք կ'ըսէին թէ Ի-
րաւցընէ Տէրը յարութիւն առաւ, ու Սիմոնի
35 երևցաւ։ Եւ իրենք պատմեցին ինչ որ ճամբուն
վրայ եղաւ, և թէ ինչպէս ինքզինք իրենց ճանչ-
ցուց հացը կտրած ատենը։
36 Եւ քանի որ այս բաները կը խօսէին, Յիսուս
ինք կայնեցաւ անոնց մէջտեղը ու ըսաւ անոնց,
37 Խաղաղութիւն ձեզի։ Բայց անոնք զարհուրելով
կը վախնային, ու կը կարծէին թէ ոգի մը կը տես-

38 նեն։ Եւ ըսաւ անոնց, Ինչո՞ւ խռոված էք, և
ինչո՞ւ սիրտերնուդ մէջ խորհուրդներ կ'ելլեն։
39 Տեսէք ձեռքերս ու ոտքերս, որ ես ինքնս եմ.
շօշափեցէք զիս ու տեսէք, վասն զի ոգին մար-
մին և ոսկորներ չունենար, ինչպէս զիս կը տես-
40 նէք որ ունիմ։ Եւ զայս ըսելով՝ ձեռքերը ու
41 ոտքերը ցուցուց անոնց։ Ու երբ տակաւին իրենց
ուրախութենէն չէին հաւատար, և զարմանքի
մէջ էին, ըսաւ անոնց, Ուտելիք մը ունի՞ք հոս։
42 Անոնք ալ կտոր մը խորոված ձուկ ու մեղրա-
43 խորիսխ առին իրեն։ Եւ առաւ կերաւ անոնց
44 առջև։ Եւ ըսաւ անոնց, Ասոնք են այն խօս-
քերը զորոնք ձեզի խօսեցայ երբ դեռ ձեզի հետ
էի, թէ Պէտք է որ կատարուին այն ամէնը՝ ո-
րոնք Մովսէսի օրէնքին մէջ ու մարգարէնե-
րուն մէջ և սաղմոսներուն մէջ ինծի համար
45 գրուած են։ Այն ատեն անոնց միտքը բացաւ.
46 որպէս զի գիրքերը հասկնան. Եւ ըսաւ անոնց
թէ Այսպէս գրուած է, և այսպէս պէտք էր
Քրիստոսի չարչարուիլ, ու երրորդ օրը մեռելնե-
47 րէն յարութիւն առնել. Եւ անոր անունովը ա-
պաշխարութիւն ու մեղքերու թողութիւն քա-
րոզուիլ բոլոր ազգերու մէջ՝ Երուսաղէմէ սկսած։
48 Ու դուք էք այս բաներուն վկաները։ (49) Եւ
ահա ես իմ Հօրս խոստմունքը ձեր վրայ կը ղրկեմ.
բայց դուք Երուսաղէմ քաղաքին մէջ նստեցէք,
մինչև վերէն զօրութիւն առնէք ձեր վրայ։
50 Եւ զանոնք մինչև Բեթանիա հանեց, ու իր
51 ձեռքերը վեր վերցնելով օրհնեց զանոնք։ Եւ
եղաւ որ երբ զանոնք կ'օրհնէր, զատուեցաւ
52 անոնցմէ ու վեր կ'ելլէր երկինք։ Անոնք ալ
երկրպագութիւն ընելով անոր՝ մեծ ուրախու-
53 թեամբ Երուսաղէմ դարձան. Եւ ամէն ատեն
տաճարին մէջ էին, ու կը գովաբանէին և կ'օրհ-
նէին զԱստուած։ Ամէն։

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ԳԼՈՒԽ Ա.

1 Յիսուս Քրիստոսի Աստուածութիւնը, մարդկութիւնը և պաշտօնը։ 15 Յովհաննէսի վկայութիւնը Քրիստոսի համար։ 39 Քրիստոս իրեն կը կանչէ Անդրէասը, Պետրոսը, ևն.։

1 Սկիզբէն էր Բանը, ու Բանը Աստուծոյ քով
2 էր, և Բանը Աստուած էր։ Անիկա սկիզբէն
3 Աստուծոյ քով էր։ Ամէն բան անով եղաւ, և
առանց անոր բան մը չեղաւ՝ ինչ որ եղաւ։
4 Կեանքը անով էր, ու կեանքը մարդոց լոյսն էր.
5 Եւ լոյսը խաւարին մէջ կը լուսաւորէր, ու խա-
ւարը զանիկա չճանչցաւ։
6 Աստուծմէ ղրկուած մարդ մը կար, որուն
7 անունը Յովհաննէս էր։ Անիկա վկայութեան
եկաւ որպէս զի Լոյսին համար վկայէ, որպէս զի
8 ամէնը անոր միջոցով հաւատան։ Ինք չէր այն
Լոյսը, հապա եկաւ որպէս զի Լոյսին համար
վկայութիւն տայ։
9 Ճշմարիտ Լոյսը ան էր, որ աշխարհ *եկող
10 բոլոր մարդիկը կը լուսաւորէ։ Ինք աշխարհի
մէջ էր, և աշխարհ անով եղաւ, ու աշխարհ
11 զանիկա չճանչցաւ։ Իրեններուն եկաւ, և ի-
12 րենները զինք չընդունեցին։ Բայց որոնք որ
զինք ընդունեցին, անոնց իշխանութիւն տուաւ
Աստուծոյ որդիներ ըլլալու, որոնք կը հաւատան
13 իր անունը. Որոնք ոչ արիւնէ և ոչ մարմնի
կամքէ, ոչ ալ մարդու կամքէ, հապա Աստուծմէ
14 ծնան։ Եւ Բանը մարմին եղաւ ու մեր մէջ բնա-
կեցաւ, (և անոր փառքը տեսանք՝ Հօրմէն միածնի
փառքին պէս,) շնորհքով ու ճշմարտութիւնով
լեցուն։

*Կ-մ, գալով

15 Յովհաննէս վկայեց անոր համար եւ աղաղա-
կեց՝ ըսելով, Ասիկա է, որուն համար կը գրուցէի,
Ան որ իմ ետեւէս կու գայ, ինծմէ առաջ եղաւ,
16 վասն զի ինծմէ առաջ էր։ Եւ անոր լեցուն-
թենէն մենք ամէնս շնորհք առինք շնորհքի
17 տեղ։ Վասն զի օրէնքը Մովսէսի ձեռքով տր-
ուեցաւ, բայց շնորհքը ու ճշմարտութիւնը Յի-
18 սուս Քրիստոսի ձեռքով եղան։ Մէկը երբեք
զԱստուած տեսած չէ, բայց միածին Որդին
որ Հօրը ծոցն է, անիկա պատմեց։
19 Ու Յովհաննէսի վկայութիւնը այս է. երբ
Հրեաները Երուսաղէմէ քահանաներ ու Ղեւ-
տացիներ ղրկեցին որպէս զի հարցնեն անոր թէ
20 Դուն ո՞վ ես։ Եւ անիկա խոստովանեցաւ ու
չուրացաւ. խոստովանեցաւ թէ Ես Քրիստոսը
21 չեմ։ Ու հարցուցին անոր, Հապա ի՞նչ. Եղիա՞ն
ես. եւ ըսաւ, Չեմ. Այն մարգարէ՞ն ես. պա-
22 տասխան տուաւ թէ Ոչ։ Այն ատեն ըսին անոր,
Դուն ո՞վ ես. ըսէ մեզի, որպէս զի պատասխան տա-
նինք մեզ ղրկողներուն. դուն ի՞նչ կ'ըսես քեզի
23 համար։ Ըսաւ, Ես անոր ձայնն եմ, որ անապա-
տին մէջ կը կանչէ, Շիտկեցէք Տէրոջը ճամբան,
24 ինչպէս Եսայի մարգարէն ըսաւ։ Եւ այն ղր-
25 կուածները փարիսեցիներէն էին. Ու հար-
ցուցին իրեն՝ ըսելով, Հապա ինչո՞ւ մկրտու-
թիւն կ'ընես, եթէ դուն Քրիստոսը չես, ու ոչ
26 Եղիան, եւ ոչ մարգարէն։ Պատասխան տուաւ
անոնց Յովհաննէս ու ըսաւ, Ես ջրով կը մկր-
տեմ, բայց ձեր մէջ մէկը կայ զոր դուք չէք
27 ճանչնար. Անիկա է իմ ետեւէս եկողը որ ինծմէ
առաջ եղաւ, որուն կօշիկին կապը քակելու
28 ես արժանի չեմ։ Այս բաները Բեթաբարայի
մէջ եղան Յորդանանու անդին կողմը, ուր Յով-
հաննէս կը կենար ու կը մկրտէր։
29 Հետեւեալ օրը Յովհաննէս տեսաւ Յիսուսը

որ իրեն կու գար, և ըսաւ, Ահա Աստուծոյ
30 Գառը որ աշխարհի մեղքը կը վերցնէ ։ Ասիկա է
որուն համար ես կը գրուցէի, Իմ ետևէս մարդ
մը կու գայ որ ինծմէ առաջ եղաւ, վասն զի
31 ինծմէ առաջ էր ։ Ու ես զանիկա չէի ճանչնար,
բայց անոր համար ես եկայ ջրով մկրտելու, որ-
32 պէս զի անիկա Իսրայէլի յայտնուի ։ Եւ Յովհան-
նէս վկայութիւն տուաւ ըսելով՝ թէ Կը տեսնէի
Հոգին որ աղաւնիի պէս երկինքէն կ՚իջնէր, ու
33 անոր վրայ կը հանգչէր ։ Եւ ես զանիկա չէի
ճանչնար, բայց ան որ զիս ղրկեց ջրով մկրտե-
լու, ինք ըսաւ ինծի; Որու վրայ տեսնես Հոգին,
որ կ՚իջնէ ու կը հանգչի անոր վրայ, անիկա է
34 որ Սուրբ Հոգւով կը մկրտէ ։ Ես ալ տեսայ, ու
վկայեցի թէ ասիկա է Աստուծոյ Որդին ։
35 Հետևեալ օրը դարձեալ Յովհաննէս կայներ
36 էր, և իր աշակերտներէն երկուքը ։ Ու նայե-
լով Յիսուսի վրայ որ կը պտըտէր, ըսաւ, Ահա
37 Աստուծոյ Գառ ը ։ Եւ լսեցին անկէ երկու աշա-
կերտները երբ կը խօսէր, ու գացին Յիսուսի
38 ետևէն ։ Յիսուս երբ դարձաւ ու տեսաւ զա-
նոնք որ իր ետևէն կու գային, ըսաւ անոնց, Ի՞նչ
կ՚ուզէք ․ անոնք ալ ըսին իրեն, Ռաբբի, (որ
թարգմանուելով վարդապետ ըսել է,) ո՞ւր է
39 քու օթևանդ ։ Ըսաւ անոնց, Եկէք ու տեսէք,
եկան ու տեսան ուր տեղ որ էր իր օթևանը ․ և
այն օրը անոր քով կեցան, վասն զի ժամը տասնի
40 տաեններն էր ։ Սիմոն Պետրոսի եղբայրը Անդ-
րէաս այն երկուքէն մէկն էր, որոնք լսեցին
41 Յովհաննէսէ և անոր ետևէն գացին ։ Ասիկա
նախ իր Սիմոն եղբայրը կը գտնէ և կ՚ըսէ անոր,
Գտանք Մեսիան, (որ *Քրիստոս կը թարգման-
42 ուի ․) Ու տարաւ զանիկա Յիսուսի քով ․ Յիսուս
անոր նայելով՝ ըսաւ, Դուն ես Յովնանի որդին

*Այսինքն, Օծեալ

*Սիմոն. դուն Կեփաս պիտի ըսուիս, որ *Պետ-
րոս կը թարգմանուի։*

43 *Հետեւեալ օրը Յիսուս Գալիլեա երթալ ուզեց,
եւ Փիլիպպոսը գտնելով՝ ըսաւ անոր, Եկուր իմ
44 ետեւէս։ Եւ Փիլիպպոս Բեթսայիդայէ էր. Անդ-
45 րէասի ու Պետրոսի քաղաքէն։ Փիլիպպոս կը
գտնէ Նաթանայէլը եւ կ'ըսէ անոր. Ան, որուն
համար Մովսէս օրէնքին մէջ գրեց, եւ մար-
գարէներն ալ, զանիկա գտանք, այսինքն Յիսուս
46 Նազովրեցին, Յովսէփի որդին։ Եւ Նաթանայէլ
ըսաւ անոր, Նազարէթէ կարելի՞ է որ աղէկ
բան մը ըլլայ. ըսաւ անոր Փիլիպպոս, Եկուր
47 ու տես։ Յիսուս երբ տեսաւ Նաթանայէլը որ
իրեն կու գար, ըսաւ անոր համար, Ահա իրաւ-
ցընէ Իսրայելացի մը, որուն ներսը նենգութիւն
48 չկայ։ Նաթանայէլ ըսաւ անոր, Ուրկէ՞ կը ճանչ-
նաս զիս. պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ
անոր, Դեռ Փիլիպպոս քեզ չկանչած, դուն որ
49 թզենիին տակ էիր, ես քեզ տեսայ։ Պատասխան
տուաւ Նաթանայէլ ու ըսաւ անոր, Ռաբբի,
դուն ես Աստուծոյ Որդին, դուն ես Իսրայէլի
50 թագաւորը։ Յիսուս պատասխան տուաւ ու ըսաւ
անոր, Ասոր համար՝ որ քեզի ըսի թէ քեզ
թզենիին տակ տեսայ, կը հաւատա՞ս. ասկէ
51 աւելի մեծ բաներ պիտի տեսնես։ Ու ըսաւ
անոր, Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Ասկէ
ետեւ պիտի տեսնէք երկինքը բացուած, եւ Աս-
տուծոյ հրեշտակները՝ որ կ'ելլեն ու կ'իջնեն
Որդւոյ մարդոյ վրայ։*

## ԳԼ. Բ

1 Քրիստոս ջուրը գինիի կը փոխէ, 12 կ'երթայ Կափառնայում, ու ետքը Երուսաղէմ, 14 ուր տեղ տաճարէն դուրս կը հանէ գնողները եւ ծախողները. 19 կը նախաձայնէ իր մահը եւ յարութիւնը։ 23 Շատերը իր հրաշքները տեսնելով կը հաւատան իրեն, բայց ինք իր անձը չհաւատար անոնց։

1 *Ու երրորդ օրը հարսնիք մը կար Գալիլեայի*

---

*Այսինքն, վէմ

2 Կանա քաղաքը, և Յիսուսի մայրը հոն էր ։ Յի-
սուս ալ կանչուեցաւ այն հարսնիքը, ու իր ա-
3 շակերտներն ալ ։ Ու երբ գինին պակսեցաւ,
4 Յիսուսի մայրը ըսաւ անոր, Գինի չունին ։ Յի-
սուս ըսաւ անոր, Ով կին, դուն ինծի հետ ի՞նչ
բան ունիս․ իմ ժամանակս դեռ հասած չէ ։
5 Իր մայրը սպասաւորներուն ըսաւ, Ինչ որ ձեզի
6 ըսէ, ըրէք ։ Հոն վեց հատ քարէ կարասներ
դրուած էին Հրէից մաքրուելու սովորութեանը հա-
մեմատ, որոնց ամէն մէկը երկու կամ երեք մար
7 բան կ'առնէր ։ Յիսուս ըսաւ անոնց, Լեցուցէք
այդ կարասները ջրով․ ու լեցուցին զանոնք մինչև
8 բերանը ։ Եւ ըսաւ անոնց, Հիմա հանեցէք ու
9 սեղանապետին տարէք․ անոնք ալ տարին ։ Ու
սեղանապետը երբ գինի եղած ջուրին համը ա-
ռաւ, և չէր գիտեր ուրկէ ըլլալը, (բայց սպա-
սաւորները որոնք ջուրը քաշեր էին, գիտէին,)
10 սեղանապետը կը խօսի փեսային, Ու անոր կ'ըսէ,
Ամէն մարդ աղէկ գինին առաջ կը մատուցանէ,
ու երբ խմած կ'ըլլան, այն ատեն ստորնագոյնը․
բայց դուն աղէկ գինին մինչև հիմա պահեցիր ։
11 Յիսուս հրաշքներուն սկիզբը զայս ըրաւ Գա-
լիլեայի Կանա քաղաքին մէջ, և իր փառքը յայտ-
նեց․ ու իր աշակերտները հաւատացին իրեն ։
12 Ասկէ ետև Յիսուս Կափառնայում իջաւ, ինք
և իր մայրը ու իր եղբայրները և իր աշակերտ-
ները, ու շատ օրեր հոն չկեցան ։
13 Եւ Հրէից զատիկը մօտ էր, ու Յիսուս Երու-
14 սաղէմ ելաւ․ Եւ տաճարին մէջ գտաւ արջառ
ու ոչխար և աղաւնի ծախողները, ու սատակ
15 փոխողներն ալ՝ որոնք նստեր էին․ Եւ չուանէ
խարազան մը շինելով՝ ամէնը տաճարէն դուրս
հանեց, ոչխարներն ալ ու արջառներն ալ, և
սատակ փոխողներուն պղինձները ցիրուցան ըրաւ,
16 ու սեղանները կործանեց․ Եւ աղաւնի ծախող-

ներուն ըսաւ, Ասկէ վերցուցէք ասոնք, իմ Հօրս
17 տունը առուտուրի տուն մի՛ ընէք։ Եւ իր աշա-
կերտները միտքերնին բերին որ գրուած է,
Քու տանդ նախանձը զիս կերաւ։
18 Այն ատեն պատասխան տուին Հրեաները ու
ըսին անոր, Ի՞նչ նշան կը ցուցնես մեզի՝ որ այդ
19 բաները կ՚ընես։ Պատասխան տուաւ Յիսուս ու
ըսաւ անոնց, Քակեցէք այս տաճարը, ու երեք
20 օրուան մէջ զանիկա պիտի կանգնեմ։ Եւ Հրեա-
ները ըսին, Քառասունըվեց տարուան մէջ շինու-
ւեցաւ այս տաճարը, և դուն երեք օրուան մէջ
21 պիտի կանգնե՞ս զանիկա։ Բայց ինք իր մարմնին
22 տաճարին համար կ՚ըսէր։ Ուստի երբ ինք մեռ-
ելներէն յարութիւն առաւ, իր աշակերտները
միտքերնին բերին թէ այս բանը ըսած էր*, ու
հաւատացին գիրքին և Յիսուսի ըսած խօսքին։
23 Ու երբ զատկի տօնին ատենը Երուսաղէմ
էր, շատ մարդիկ անոր ըրած հրաշքները տես-
24 նելով՝ հաւատացին անոր անուանը։ Բայց ինք
Յիսուս իր անձը անոնց չէր հաւատար, վասն զի
25 ինք գիտէր ամէն մարդ. Ու պէտք չէր որ մէկը
մարդու համար վկայութիւն տար իրեն, քանզի
ինք գիտէր թէ ինչ կայ մարդուն ներսիդին։

## ԳԼ. Գ

1 Քրիստոս կը սորվեցնէ Նիկոդեմոսի թէ վերստին ծնունդը հարկաւոր է. 14 Թէ փրկուելու համար պէտք է հաւատքով իր մահուանը նայիլ. 16 Թէ Աստուած մեծ սէր ունի մարդոց վրայ. 18 Թէ անհաւատները պիտի դատապարտուին։ 23 Յովհաննէսի վկայութիւնը. անոր վկայութիւնը և վարդապետութիւնը Քրիստոսի վրայով։

1 Եւ փարիսեցիներէն մարդ մը կար Նիկոդեմոս
2 անունով, որ Հրէից իշխան էր։ Ասիկա գիշե-
րով †Յիսուսի քով եկաւ, և ըսաւ անոր, Ռաբբի,
գիտենք որ դուն Աստուծմէ վարդապետ եկած
ես, վասն զի մէկը չկրնար ընել այդ հրաշքները
զորոնք դուն կ՚ընես, եթէ Աստուած իրեն հետ

*Ոմանք կ՚աւելցնեն, իրենց

†Ոմանք, անոր

3 չըլլայ ։ Պատասխան տուաւ Յիսուս և ըսաւ
անոր. Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ քեզի, Եթէ
մարդ մը *նորէն չծնանի, չկրնար Աստուծոյ
4 թագաւորութիւնը տեսնել ։ Նիկոդեմոս ըսաւ
անոր, Ի՞նչպէս կրնայ մարդ մը ծնանիլ, որ ծե-
րացած է. հնարաւո՞ր բան է որ նորէն իր մօրը
5 որովայնը մտնէ ու ծնանի ։ Յիսուս պատասխան
տուաւ, Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ քեզի, Եթէ
մարդ մը ջուրէն ու Հոգիէն չծնանի, չկրնար
6 Աստուծոյ թագաւորութիւնը մտնել ։ Մարմի-
նէն ծնածը մարմին է, ու Հոգիէն ծնածը հոգի
7 է ։ Դուն մի զարմանար որ քեզի ըսի, Պէտք է
8 ձեզի նորէն ծնանիլ ։ Հովը ուր որ ուզէ՝ կը փչէ,
և անոր ձայնը կը լսես, բայց չես գիտեր ուրկէ՛
կու գայ կամ ո՛ւր կ'երթայ. այսպէս ալ է այն
9 ամէնը որ Հոգիէն կը ծնանի ։ Պատասխան տուաւ
Նիկոդեմոս ու ըսաւ անոր, Այդ ի՞նչպէս կրնայ
10 ըլլալ ։ Պատասխան տուաւ Յիսուս ու ըսաւ
անոր, Դուն Իսրայէլի մէջ վարդապետ մըն ես,
11 և այս բաները չե՞ս գիտեր ։ Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ քեզի, թէ ինչ որ գիտենք՝ կը խօսինք,
և ինչ որ տեսանք՝ կը վկայենք, ու մեր վկայու-
12 թիւնը չէք ընդունիր ։ Եթէ երկրաւո՛ր բաները
ձեզի զրուցեցի ու չէք հաւատար, ի՞նչպէս պիտի
հաւատաք եթէ երկնաւոր բաները ձեզի զրու-
13 ցեմ ։ Եւ մէ՛կը երկինք չելաւ. բայց անիկա միայն
որ երկինքէն իջաւ, Որդին մարդոյ որ երկինքն է ։
14 Եւ ինչպէս Մովսէս անապատին մէջ օձը բարձ-
րացուց, այնպէս պէտք է որ Որդին մարդոյ
15 բարձրանայ ։ Որպէս զի ամէն ով որ անոր հա-
ւատայ՝ չկորսուի, հապա յաւիտենական կեանք
16 ունենայ ։ Վասն զի Աստուած այնպէս սիրեց
աշխարհը, մինչև իր միածին Որդին տուաւ, որ-
պէս զի ամէն ով որ անոր հաւատայ՝ չկորսուի,

*Կամ, վերէն

17 հապա յաւիտենական կեանք ունենայ։ Վասն զի
Աստուած իր Որդին չղրկեց աշխարհ, որպէս զի
աշխարհը դատէ, հապա՝ որպէս զի աշխարհ
18 անով փրկուի։ Ան որ կը հաւատայ անոր՝ չդա-
տապարտուիր. և ան որ չհաւատար՝ անիկա ար-
դէն դատապարտուած է, վասն զի Աստուծոյ
19 միածին Որդւոյն անուանը չհաւատաց. Եւ այս է
դատապարտութիւնը, որ լոյսը աշխարհ եկաւ,
ու մարդիկ խաւարը լոյսէն աւելի սիրեցին,
20 քանզի իրենց գործերը չար էին։ Վասն զի
ամէն ով որ չար կը գործէ, անիկա լոյսը կ'ատէ.
և լոյսին քով չգար, որպէս զի իր գործերը չյան-
21 դիմանուին։ Բայց ան որ ճշմարտութիւն կը
գործէ, լոյսին քով կու գայ, որպէս զի իր գոր-
ծերը յայտնի ըլլան թէ Աստուծով գործուեցան։
22 Այս բաներէն ետքը եկաւ Յիսուս և իր աշա-
կերտները Հրէաստանի երկիրը, և հոն կը կե-
նար անոնց հետ մէկտեղ, ու մկրտութիւն կ'ը-
23 նէր։ Յովհաննէս ալ Այենոնի մէջ Սաղիմի մօտ
մկրտութիւն կ'ընէր, որովհետև հոն շատ ջուր
24 կար, ու կու գային և կը մկրտուէին. Վասն զի
Յովհաննէս դեռ բանտը դրուած չէր։
25 Այն ատեն վիճաբանութիւն մը եղաւ Յով-
հաննէսի աշակերտներէն *Հրեաներուն հետ՝
26 մաքրութեան վրայով։ Ու եկան Յովհաննէսի
և անոր ըսին, Ռաբբի, անիկա որ քեզի հետ
Յորդանանու անդին կողմն էր, որուն համար
դուն վկայութիւն տուիր, ահա ինք կը մկրտէ
27 և ամէնը անոր կու գան։ Պատասխան տուաւ
Յովհաննէս և ըսաւ, Մարդ մը չկրնար բան մը
առնել, եթէ երկինքէն տրուած չըլլայ անոր։
28 Դուք ձեզմէ կը վկայէք ինծի համար, որ ըսի թէ
Ես Քրիստոսը չեմ, հապա անոր առջևէն ղըր-
29 կուած եմ։ Ան որ հարսն ունի, փեսան անիկա

*կամ, Հրեայի մը

է․ բայց փեսային բարեկամը որ կը կենայ ու
կը լսէ անոր, մեծապէս կ'ուրախանայ փեսային
ձայնին համար․ ուստի այս իմ ուրախութիւնս
30 լցուած է։ Անիկա պէտք է որ մեծնայ, բայց
31 ես պզտիկնամ։ Ան որ վերէն կու գայ՝ ամէնէն
վեր է․ ան որ երկրէ է՝ երկրաւոր է, ու երկ-
րէ կը խօսի․ ան որ երկինքէն կու գայ՝ ամէնէն
32 վեր է․ Եւ ինչ որ տեսաւ ու լսեց, զայն կը վկայէ,
33 ու անոր վկայութիւնը մէ՛կը չընդունիր։ Ան որ
անոր վկայութիւնը կ'ընդունի, կնքեց թէ Աստ-
34 ուած ճշմարիտ է։ Վասն զի ան զոր Աստուած
ղրկեց, Աստուծոյ խօսքերը կը խօսի, վասն զի
35 Աստուած անոր չափով չտար Հոգին։ Հայրը կը
սիրէ Որդին, և ամէն բան անոր ձեռքը տուած
36 է։ Ան որ Որդւոյն կը հաւատայ, յաւիտենա-
կան կեանք ունի․ և ան որ Որդւոյն չհնազան-
դիր, անիկա կեանք պիտի չտեսնէ, հապա Աս-
տուծոյ բարկութիւնը անոր վրայ կը մնայ։

## ԳԼՈՒԽ Դ

1 Քրիստոս Սամարացի կնոջ մը հետ կը խօսի, և իր ո՛վ ըլլալը անոր կը յայտնէ․ 27 ասոր վրայ իր աշակերտները կը զարմանան։ 31 Քրիստոս կ'իմացնէ անոնց իր նախանձը Աստուծոյ փառքին համար։ 39 Շատ Սամարացիներ կը հաւատան անոր։ 43 Քրիստոս Գալիլեա կ'երթայ և կը բժշկէ ազնուականի մը որդին։

1 Արդ երբ Տէրը իմացաւ որ փարիսեցիները լսեր
են՝ թէ Յիսուս Յովհաննէսէ աւելի աշակերտ-
2 ներ կ'ընէ և կը մկրտէ, (Թէպէտ ոչ թէ Յիսուս
3 ինք կը մկրտէր, հապա իր աշակերտները,) Թո-
ղուց Հրէաստանը ու նորէն Գալիլեա գնաց։
4 Ու պէտք եղաւ որ Սամարիայի մէջէն անցնի։
5 Ուստի եկաւ Սամարացւոց մէկ քաղաքը, որուն
անունը Սուքար էր, այն տեղին մօտ՝ զոր Յակոբ
6 իր որդւոյն Յովսէփի տուաւ․ Եւ հոն Յակոբի
մէկ աղբիւրը կար․ Յիսուս ալ ճամբայէն յոգ-
նած ըլլալով՝ այն աղբիւրին վրայ նստաւ․ և ժամը
վեցին ատեններն էր։

7 Սամարիայէ կին մը եկաւ ջուր հանելու . Յի-
8 սուս ըսաւ անոր , Ինծի ջուր տուր խմելու . (Քանզի
իր աշակերտները քաղաքը գացեր էին , որպէս
9 զի ուտելիք առնեն ։) Այն ատեն Սամարացի
կինը ըսաւ անոր , Դուն որ Հրեայ ես , ի՞նչպէս
կ'ուզես ջուր խմել ինծմէ , Սամարացի կնոջմէ մը .
վասն զի Հրեաները Սամարացւոց հետ հաղոր-
10 դակցութիւն չեն ըներ ։ Յիսուս պատասխան
տուաւ ու ըսաւ անոր , Եթէ դուն գիտնայիր
Աստուծոյ պարգևը , և թէ ո՞վ է ան որ քեզի
կ'ըսէ , Ինծի ջուր տուր խմելու , դուն անկէ պիտի
ուզէիր , և ինք քեզի կենդանի ջուր պիտի տար ։
11 Կինը ըսաւ անոր , Տէր , դուն ջրհան ալ չունիս ,
ու այս հորը խորունկ է . ուրեմն ուրկէ՞ պիտի
12 ունենաս այն կենդանի ջուրը ։ Միթէ դուն մեր
Յակոբ հօրմէն աւելի մե՞ծ մըն ես , որ այս հորը
մեզի տուաւ , և անկէ խմեց ինք ու իր որդի-
13 ները և իր անասունները ։ Պատասխան տուաւ
Յիսուս ու ըսաւ անոր , Ամէն ով որ այդ ջուրէն
խմէ , նորէն պիտի ծարաւի , բայց ով որ խմէ
այն ջուրէն զոր ես անոր պիտի տամ , յաւիտեան
14 պիտի չծարաւի . Հապա այն ջուրը զոր ես անոր
պիտի տամ , պիտի ըլլայ անոր ներսիդին ջուրի
աղբիւր մը՝ որ յաւիտենական կեանքի համար
15 կը բղխէ ։ Կինը ըսաւ անոր , Տէր , տուր ինծի
այն ջուրը , որպէս զի չծարաւիմ , և հոս չգամ
16 ջուր հանելու ։ Յիսուս ըսաւ անոր , Գնա քու
17 այրդ կանչէ , ու հոս եկուր ։ Կինը պատասխան
տալով ըսաւ , Ես այր չունիմ . Յիսուս ըսաւ անոր ,
18 Աղէկ ըսիր թէ այր չունիմ , Վասն զի դուն հինգ
այր ունեցեր ես , և ան զոր հիմա ունիս՝ քու
19 այրդ չէ . ասիկա շիտակ զրուցեցիր ։ Կինը ըսաւ
անոր , Տէր , կը տեսնեմ որ դուն մարգարէ մըն
20 ես ։ Մեր հայրերը այս լեռան վրայ երկրպա-
գութիւն ըրին , և դուք կ'ըսէք թէ Միայն Երու-

սաղէմ է տեղը, ուր պէտք է երկրպագութիւն
21 ընել։ Յիսուս ըսաւ անոր, Ով կին, հաւատա
ինծի որ ժամանակ կու գայ, երբ ոչ այս լեռան
վրայ, և ոչ Երուսաղէմի մէջ երկրպագութիւն
22 պիտի ընէք Հօրը։ Դուք անոր երկրպագութիւն
կ'ընէք, զոր չէք ճանչնար. մենք անոր երկրպա-
գութիւն կ'ընենք, զոր կը ճանչնանք. վասն զի
23 փրկութիւնը Հրեաներէն է։ Բայց ժամանակ
կու գայ ու հիմա ալ է, երբ ճշմարիտ երկրպա-
գողները երկրպագութիւն պիտի ընեն Հօրը հո-
գիով ու ճշմարտութիւնով, վասն զի Հայրն ալ
24 իրեն այնպիսի երկրպագողներ կ'ուզէ։ Աստուած
Հոգի է, և իրեն երկրպագողներուն ալ պէտք է
որ հոգիով ու ճշմարտութիւնով երկրպագու-
25 թիւն ընեն։ Կինը ըսաւ անոր, Գիտեմ որ Մե-
սիան կու գայ, (Քրիստոս ըսուածը,) երբ ինք
26 գայ՝ ամէն բան մեզի պիտի պատմէ։ Յիսուս
ըսաւ անոր, Ես ան եմ՝ որ քեզի հետ կը խօ-
27 սիմ։ Եւ այս խօսքին վրայ իր աշակերտները եկան,
ու զարմացան որ այն կնոջ հետ կը խօսէր. բայց
անոնցմէ մէկը չըսաւ թէ Ի՞նչ կ'ուզես, կամ
28 Ի՞նչ կը խօսիս անոր հետ։ Այն ատեն կինը
ձգեց իր սափորը ու քաղաքը գնաց, և ըսաւ
29 մարդոցը, Եկէք տեսէք մարդ մը՝ որ ըսաւ ինծի
ամէն ինչ որ գործեր եմ. արդեօք անիկա՞ է
30 Քրիստոսը։ Եւ անոնք քաղաքէն ելան ու անոր
կու գային։

31 Եւ այս միջոցին աշակերտները իրեն կ'աղա-
32 չէին ու կ'ըսէին, Ռաբբի, հաց կեր։ Անիկա ըսաւ
անոնց, Ես կերակուր ունիմ ուտելու՝ զոր դուք
33 չէք գիտեր։ Ուստի աշակերտները կ'ըսէին ի-
րարու, Արդեօք մէկը անոր ուտելու բան մը
34 բերա՞ւ։ Յիսուս ըսաւ անոնց, Իմ կերակուրս
այն է որ ես զիս ղրկողին կամքը ընեմ, և անոր
35 գործը կատարեմ։ Չէ՞ որ դուք կ'ըսէք թէ Տա-

կաւելն չորս ամիս կայ որ հունձքի ատենը գայ.
ահա ես ձեզի կ'ըսեմ, Աչքերնիդ վերցուցէք
ու արտերուն նայեցէք, որ արդէն ճերմկած ու
36 հնձուելու պատրաստ են։ Եւ ան որ կը հնձէ՝ վարձք
կ'առնէ, ու յաւիտենական կեանքի համար
պտուղ կը ժողվէ, որպէս զի սերմանողը ու հնձո-
37 ղը մէկտեղ ուրախանան։ Վասն զի այս բանին
մէջ ճշմարիտ է այն խօսքը թէ Ուրիշը կը սեր-
38 մանէ և ուրիշը կը հնձէ։ Ես ձեզ ղրկեցի հնձե-
լու զայն որ դուք չաշխատեցաք. ուրիշները աշ-
խատեցան, ու դուք անոնց աշխատանքին մէջ
մտաք։

39 Եւ այն քաղաքէն շատ Սամարացիներ իրեն
հաւատացին այն կնոջ խօսքին համար որ վկայեց,
ըսելով թէ Ինչ որ ես գործեր էի՝ բոլորը ինծի
40 ըսաւ։ Ու երբ Սամարացիներն անոր եկան, կ'ա-
ղաչէին անոր որ իրենց քով կենայ. ու եր-
41 կու օր հոն կեցաւ։ Եւ ալ շատերը իրեն հա-
42 ւատացին իր խօսքին համար։ Ու կ'ըսէին կնոջը,
Ասկէ ետեւ ոչ թէ քու խօսքիդ համար կը հա-
ւատանք, վասն զի մենք մեզմէ լսեցինք, և գի-
տենք որ ասիկա է ճշմարտապէս աշխարհի
Փրկիչը, Քրիստոս։

43 Ու երկու օրէն ետեւ ելաւ անկէ և Գալիլեա
44 գնաց։ Վասն զի Յիսուս ինք վկայեց թէ Մար-
գարէ մը իր գաւառին մէջ պատիւ չունենար։
45 Ու երբ Գալիլեա եկաւ, Գալիլեացիները զինք
ընդունեցին, քանզի տեսած էին այն բոլոր հրաշ-
ները, զորոնք ինք ըրաւ Երուսաղէմի մէջ տօնին
ատենը. վասն զի իրենք ալ այն տօնին գացեր
էին։

46 Եւ Յիսուս նորէն եկաւ Գալիլեացւոց Կանա
քաղաքը, ուր ջուրը գինի ըրած էր. և հոն ազ-
նուական մէկը կար, որուն որդին հիւանդ էր
47 Կափառնայումի մէջ։ Ասիկա լսելով որ Յիսուս

Հրէաստանէ Գալիլեա եկեր է, եկաւ անոր ու
կ'աղաչէր որ իջնէ և իր որդին բժշկէ, վասն զի
48 մեռնելու վրայ էր։ Այն ատեն Յիսուս ըսաւ
անոր, Եթէ նշաններ ու հրաշքներ չտեսնէք,
49 բնաւ պիտի չհաւատաք։ Արքունականը ըսաւ
անոր, Տէր, իջիր քանի որ իմ տղաս մեռած չէ։
50 Յիսուս ըսաւ անոր, Գնա, քու որդիդ ողջ է.
մարդն ալ հաւատաց այն խօսքին զոր Յիսուս
51 իրեն ըսաւ, ու գնաց։ Ու երբ կ'իջնէր, իր ծա-
ռաները դիմաւորեցին զինք, և աւետիս տուին
52 ըսելով թէ Քու տղադ ողջ է։ Ուստի հարցուց
անոնց թէ ո՞ր ժամէն սկսաւ աղէկի դառնալ.
և ըսին իրեն, Երէկ ժամը եօթնին տենդը թո-
53 ղուց զանիկա։ Այն ատեն գիտցաւ անոր հայրը
թէ այն ժամն էր երբ Յիսուս իրեն ըսաւ թէ
Քու որդիդ ողջ է. ու հաւատաց ինք և իր բո-
54 լոր տունը։ Այս նորէն երկրորդ հրաշքն էր
զոր Յիսուս ըրաւ, երբ Հրէաստանէ Գալիլեա
եկաւ։

## ԳԼ. Ե

1 Յիսուս երեսունըութ տարիէ ի վեր հիւանդ եղող մարդը կը բժշկէ շաբաթ օրը։ 10 Հրեաները ատոր վրայով տրտունջ կ'ընեն ու կը հալածեն զՔրիստոս։ 17 Ան ալ իր անձին համար պատասխան կու տայ Հրեաներուն, ու զանոնք կը յանդիմանէ. և իր Հօրը, 32 ու Յովհաննէսի, 36 և իր գործերուն, 39 ու Սուրբ Գրոց վկայութիւններովը իր ո՛վ ըլլալը կը յայտնէ։

1 Ասկէ ետև Հրէից տօն էր, և Յիսուս Երու-
2 սաղէմ ելաւ։ Ու Երուսաղէմի մէջ Ոչխարաց
դրանը քով աւազան մը կայ, որ Եբրայեցերէն
3 Բեթհեզդա կ'ըսուի, որ հինգ սրահ ունի։ Ա-
նոնց մէջ խիստ շատ հիւանդներ պառկած էին,
կոյրեր, կաղեր, չորցածներ, որոնք կը սպասէին
4 ջուրին խառնուելուն։ Վասն զի հրեշտակ մը
ժամանակ ժամանակ աւազանը կ'իջնէր ու ջու-
րերը կը խառնէր, և ով որ ջուրին խառնուելէն
ետև ամէնէն առաջ անոր մէջ կը մտնէր, կը բժըշ-

5 կուէր ինչ հիւանդութիւն որ ունենար։ Եւ հոն
մարդ մը կար, որ երեսունըութ տարիէ ի վեր
6 հիւանդութիւն մը ունէր։ Յիսուս երբ տեսաւ
զանիկա որ ինկած պառկած էր, ու գիտցաւ որ
շատ ժամանակէ ի վեր է, ըսաւ անոր, Կ'ուզե՞ս
7 առողջանալ։ Հիւանդը պատասխան տուաւ
անոր, Տէր, մարդ մը չունիմ որ երբ ջուրերը
խառնուին զիս աւազանը ձգէ. հապա քանի որ
ես ծանր կը շարժիմ, ինծմէ առաջ ուրիշ մը կ'իջնէ։
8 Յիսուս ըսաւ անոր, Ելիր, մահիճդ առ ու քալէ։
9 Եւ իսկոյն մարդը առողջացաւ, ու իր մահիճը
վերցնելով կը քալէր. ու այն օրը շաբաթ էր։
10 Ասոր համար Հրեաները ըսին բժշկուած մարդուն,
Շաբաթ է, և արժան չէ որ մահիճդ վերցնես։
11 Պատասխան տուաւ անոնց ու ըսաւ, Ան որ զիս
բժշկեց, ինք ինծի ըսաւ, Մահիճդ առ ու քալէ։
12 Ուստի հարցուցին անոր, Ո՞վ է այն մարդը որ
13 քեզի ըսաւ, Մահիճդ առ ու քալէ։ Եւ բժշ-
կուողը չէր գիտեր թէ ո՛վ է ան, վասն զի Յի-
սուս մէկդի քաշուեցաւ՝ այն տեղ բազմութիւն
14 ըլլալուն համար։ Անկէ ետքը Յիսուս զանիկա
տաճարին մէջ գտնելով՝ ըսաւ անոր, Ահա բժշ-
կուեցար, ալ մեղք մի գործեր, որ ալ աւելի
15 չար բան մը չպատահի քեզի։ Գնաց մարդը, ու
Հրեաներուն պատմեց թէ Յիսուս էր որ զինք
բժշկեց։
16 Եւ ասոր համար Հրեաները կը հալածէին Յի-
սուսը, և կը փնտռէին զանիկա սպաննել, որ
17 այս բաները շաբաթ օրը կ'ընէր։ Եւ Յիսուս
պատասխան տուաւ անոնց, Իմ Հայրս մինչև
18 հիմա կը գործէ, ես ալ կը գործեմ։ Ասոր հա-
մար ա՛լ աւելի կը փնտռէին Հրեաները զանիկա
սպաննել, վասն զի ոչ թէ միայն շաբաթ օրը
կը լուծէր, հապա նաև զԱստուած իր Հայրը
կ'անուանէր, ու այսպէս ինքզինք Աստուծոյ

19 հաւասար կ'ընէր ։ Իսկ Յիսուս պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Ճշմարիտ ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի, Որդին ինքնիրմէ բան մըն ալ չկրնար
ընել, միայն թէ ինչ որ տեսնէ զոր Հայրը կ'ընէ․
վասն զի ինչ որ անիկա կ'ընէ, նմանապէս Որ-
20 դին ալ նոյնը կ'ընէ ։ Քանզի Հայրը կը սիրէ Որ-
դին, և ամէն բան կը ցուցնէ անոր՝ ինչ որ ինք
կ'ընէ․ և ասոնցմէ ալ աւելի մեծ գործեր պիտի
21 ցուցնէ անոր, որպէս զի դուք զարմանաք ։ Վասն
զի ինչպէս Հայրը մեռելները կը յարուցանէ ու
կենդանի կ'ընէ, այնպէս ալ Որդին զորոնք կ'ուզէ
22 կը կենդանացնէ ։ Քանզի Հայրը մէ՛կը չդատեր,
23 հապա ամէն դատաստանը Որդւոյն տուաւ․ Որ-
պէս զի ամէնը պատուեն Որդին, ինչպէս Հայրը
կը պատուեն․ ան որ Որդին չպատուեր, զանիկա
24 ղրկող Հայրը չպատուեր ։ Ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի թէ Ան որ իմ խօսքս մտիկ կ'ընէ,
և կը հաւատայ անոր որ զիս ղրկեց, յաւիտե-
նական կեանք ունի, ու դատապարտութեան
տակ չիյնար, հապա մահուանէ դէպ ի կեանք
25 անցած է ։ Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ
ժամանակ պիտի գայ և ալ հիմա է, երբ մե-
ռելները պիտի լսեն Աստուծոյ Որդւոյն ձայնը,
26 և անոնք որ կը լսեն, պիտի ապրին ։ Վասն զի
ինչպէս Հայրը իր անձին մէջ կեանք ունի, այն-
պէս ալ Որդւոյն տուաւ որ իր անձին մէջ կեանք
27 ունենայ․ Եւ դատաստան ընելու ալ իշխանու-
թիւն տուաւ անոր, քանզի անիկա Որդի մարդոյ
28 է ։ Ասոր վրայ մի զարմանաք․ վասն զի ժամանակ
պիտի գայ՝ երբ բոլոր գերեզմաններուն մէջ ե-
29 ղողները անոր ձայնը պիտի լսեն, Ու դուրս պիտի
գան, անոնք որ բարի գործեր են՝ կենաց յա-
րութեան համար, և անոնք որ չար գործեր են՝
30 դատապարտութեան յարութեան համար ։ Ես
ինքնիրմէս բան մը չեմ կրնար ընել․ ինչպէս

կը լսեմ, այնպէս կը դատեմ, և իմ դատաստանս
արդար է, վասն զի ես իմ կամքս չեմ փնտռեր,
31 հապա *անոր կամքը որ զիս ղրկեց։ Եթէ ես
ինծի համար վկայեմ, իմ վկայութիւնս ճշմա-
32 րիտ չէ։ Ուրիշ մըն է որ ինծի համար կը վկայէ․
և ես գիտեմ որ ճշմարիտ է այն վկայութիւնը՝
33 զոր ինք ինծի համար վկայեց։ Դուք Յովհան-
նէսի ղրկեցիք, և ինք ճշմարտութեանը վկայեց։
34 Բայց ես ոչ թէ մարդոցմէ վկայութիւն կ՚առ-
նեմ, հապա այս բաները կ՚ըսեմ որպէս զի դուք
35 փրկուիք։ Անիկա ճրագ մըն էր որ կը վառէր
ու լոյս կու տար, և դուք քիչ մը ատեն ուզե-
36 ցիք անոր լուսովը ուրախանալ։ Բայց ես Յով-
հաննէսի վկայութենէն ալ մեծ վկայութիւն ունիմ,
քանզի այն գործերը զորոնք Հայրը ինծի տուաւ
որ զանոնք կատարեմ, այն նոյն գործերը զո-
րոնք ես կը գործեմ, ինծի համար կը վկայեն թէ
37 Հայրը զիս ղրկեց։ Ու Հայրը որ զիս ղրկեց, ինք
վկայեց ինծի համար․ դուք բնաւ անոր ձայնը
38 չլսեցիք, ոչ ալ անոր կերպարանքը տեսաք․ Եւ
ոչ անոր խօսքը ձեր մէջ բնակած ունիք, քանզի
զայն որ ինք ղրկեց, դուք անոր չէք հաւատար։
39 Գիրքերը քննեցէք, վասն զի դուք անոնցմով
կը սեպէք յաւիտենական կեանքը ունենալ, և
40 բուն անոնք են որ ինծի համար կը վկայեն․ Եւ
դուք չէք ուզեր ինծի գալ, որ կեանք ու-
41 նենաք։ Ես մարդոցմէ փառք չեմ առներ։
42 Բայց գիտեմ ձեզ որ Աստուծոյ սէրը ձեր մէջ
43 չունիք։ Ես իմ Հօրս անունովը եկայ, ու զիս
չէք ընդունիր․ եթէ ուրիշ մէկը իր անունովը
44 գայ, զանիկա պիտի ընդունիք։ Դուք ինչպէս
կրնաք հաւատալ, որ իրարմէ փառք կ՚առնէք, և
այն փառքը որ մէկ Աստուծմէն է՝ չէք փնտռեր։
45 Մի կարծէք թէ ես ձեզի համար ամբաստանու-

*Ոմանք, Հօրը

թիւն պիտի ընեմ Հօրը. կայ մէկը որ ձեզի հա-
մար ամբաստանութիւն կ'ընէ, Մովսէս՝ որու
46 դուք յուսացած էք։ Վասն զի եթէ դուք Մով-
սէսի հաւատայիք, ինծի ալ պիտի հաւատայիք,
47 քանզի անիկա ինծի համար գրեց։ Բայց եթէ
անոր գրածներուն չէք հաւատար, իմ խօսքե-
րուս ի՞նչպէս պիտի հաւատաք։

## ԳԼ. Զ

1 Քրիստոս հինգ հազար հոգի կը կերակրէ հինգ հացով ու երկու ձուկով. 15 Այս բանին վրայ մարդիկ կ'ուզեն թագաւոր ընել զանիկա. բայց Յիսուս անոնց քովէն ետ կը քաշուի, ու ծովուն վրայ քալելով՝ իր աշակերտներուն կ'երթայ. 26 կը յանդիմանէ իր բոլորտիքը դիզուողները, ու ամէն մարմնաւոր շահու համար իր խօսքին ունկնդրողները. 32 կը ցուցնէ թէ ինքը հոգեւոր կերակուր է հաւատացեալներուն։ 66 Շատ աշակերտներ իրմէ կը զատուին։ 63 Պետրոս կը դաւանի զՅիսուս։ 70 Յուդա սատանայ կ'անուանի։

1 Այս բաներէն ետքը Յիսուս Գալիլեայի, այսինքն
2 Տիբերիայի, ծովուն անդին կողմը գնաց. Եւ
անոր ետեւէն շատ ժողովուրդ կ'երթար, վասն զի
կը տեսնէին այն հրաշքները զորոնք հիւանդ-
3 ներուն վրայ կ'ընէր։ Եւ Յիսուս լեռը ելաւ, ու
հոն նստաւ իր աշակերտներուն հետ մէկտեղ։
4 Եւ Հրէից զատկի տօնը մօտ էր։
5 Յիսուս երբ իր աչքերը վեր վերցուց ու տե-
սաւ որ շատ ժողովուրդ կու գար իրեն, ըսաւ
Փիլիպպոսի, Ուրկէ՞ հաց ծախու առնենք որ-
6 պէս զի ասոնք ուտեն։ (Եւ զայս կ'ըսէր զա-
նիկա փորձելու համար, քանզի ինք գիտէր ի՛նչ
7 պիտի ընէր։) Փիլիպպոս պատասխան տուաւ
անոր, Երկու հարիւր դահեկանի հաց ասոնց
8 հերիք չէ, որ ամէն մէկը քիչ մը առնէ։ Իր
աշակերտներէն մէկը, Սիմոն Պետրոսի եղբայրը
9 Անդրէաս, ըսաւ իրեն, Հոս պատանի մը կայ,
որ հինգ գարեղէն հաց ու երկու ձուկ ունի,
բայց ասոնք ի՛նչ պիտի ըլլան այդչափ մարդոց։
10 Իսկ Յիսուս ըսաւ, Նստեցուցէք այդ մարդիկը.
և այն տեղ շատ խոտ կար, ու մարդիկը նստան
11 թուով հինգ հազարի չափ։ Եւ Յիսուս հացերը

տուաւ ու գոհացաւ, և աշակերտներուն բաժ-
նեց, աշակերտներն ալ նստողներուն, նոյնպէս
12 ալ ձուկերէն՝ որչափ որ ուզեցին ։ Ու երբ կշտա-
ցան, ըսաւ իր աշակերտներուն, Ժողվեցէք ա-
ւելցած կտորուանքները, որպէս զի բան մը
13 չկորսուի ։ Ուստի ժողվեցին, և տասուերկու
կողով լեցուցին այն հինգ գարեղէն հացերէն
մնացած կտորուանքները, որոնք ուտողներէն ա-
14 ւելցան ։ Իսկ մարդիկը երբ Յիսուսի ըրած
հրաշքը տեսան, կ'ըսէին թէ Ասիկա է ճշմար-
տապէս այն մարգարէն որ աշխարհ պիտի գար ։
15 Եւ Յիսուս գիտնալով որ պիտի գան զինք յա-
փշտակեն, որպէս զի զինք թագաւոր ընեն,
16 նորէն մինակ լեռը գնաց ։ Ու երբ իրիկուն ե-
17 ղաւ, իր աշակերտները ծովեզերքը իջան ։ Եւ
նաւ մտնելով ծովուն անդին կողմը Կափառ-
նայում կ'երթային և արդէն մութ կոխեր էր,
18 ու Յիսուս դեռ իրենց եկած չէր ։ Ծովն ալ հա-
19 ւին սաստիկ փչելէն տակնուվրայ կ'ըլլար ։ Ու
երբ թի քաշելով քսանըհինգ կամ երեսուն
ասպարէզի չափ գացին, տեսան Յիսուսը որ ծո-
վուն վրայէն քալելով նաւուն կը մօտենար, ու
20 վախցան ։ Բայց ինք ըսաւ անոնց. Ես եմ, մի
21 վախնաք ։ Այն ատեն ուզեցին զանիկա նաւը
առնել. և շուտ մը նաւը այն երկիրը հասաւ՝
ուր կ'երթային ։

22 Հետևեալ օրը ժողովուրդը որ ծովուն անդին
կողմն էր, և տեսեր էր որ ուրիշ նաւակ չկար
հոն այն մէկէն զատ՝ որուն մէջ անոր աշակերտ-
ները մտեր էին, և որ Յիսուս իր աշակերտնե-
րուն հետ նաւակը մտած չէր, հապա միայն
23 անոր աշակերտները գացեր էին. (Բայց Տիբե-
րիայէ ուրիշ նաւակներ եկան այն տեղին մօտ՝
24 ուր Տէրոջը գոհանալովը հացը կերեր էին.) Այն
ատեն ժողովուրդը տեսնելով թէ ոչ Յիսուս

հոն է, ոչ ալ անոր աշակերտները, իրենք ալ
նաւերը մտան ու եկան Կափառնայում Յիսուսը
25 փնտռելու։ Ու երբ զանիկա ծովուն անդին կողմը
գտան, ըսին անոր, Ռաբբի, ե՞րբ եկար դուն
26 հոս։ Յիսուս պատասխան տուաւ անոնց և ըսաւ,
Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Դուք զիս
կը փնտռէք՝ ոչ թէ անոր համար որ հրաշքներ
տեսաք, հապա անոր համար որ հացերէն կե-
27 րաք ու կշտացաք։ Գոյէ՛, գործեցէք, ոչ թէ
կորստական կերակուրին համար, հապա այն
կերակուրին համար որ յաւիտենական կեանքի
մէջ կը մնայ, զոր Որդին մարդոյ ձեզի պիտի տայ.
28 վասն զի Հայրն Աստուած զանիկա կնքեց։ Ան
ատեն ըսին անոր, Ի՞նչ ընենք որպէս զի Աս-
29 տուծոյ գործերը գործենք։ Պատասխան տուաւ
Յիսուս ու ըսաւ անոնց, Այս է Աստուծոյ գործը,
30 որ անոր ղրկածին հաւատաք։ Ըսին անոր, Բայց
դուն ի՞նչ նշան կ'ընես որ տեսնենք ու քեզի
31 հաւատանք. ի՞նչ կը գործես։ Մեր հայրերը ա-
նապատին մէջ մանանան կերան. ինչպէս գրուած
է, Երկինքէն հաց տուաւ անոնց որպէս զի ու-
32 տեն։ Եւ Յիսուս ըսաւ անոնց, Ճշմարիտ ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի թէ Մովսէս չտուաւ ձեզի
երկնաւոր հացը, բայց իմ Հայրս կու տայ ձեզի
33 ճշմարիտ երկնաւոր հացը։ Վասն զի Աստուծմէ
ղրկուած հացը այն է որ երկինքէն կ'իջնէ, ու աշ-
34 խարհի կեանք կու տայ։ Ուստի ըսին անոր, Տէր,
35 ամէն ատեն այդ հացը մեզի տուր։ Եւ Յիսուս
ըսաւ անոնց, Ես եմ կենաց հացը. ան որ ինծի
կու գայ, երբէք պիտի չանօթենայ, և ան որ
36 ինծի կը հաւատայ, պիտի չծարաւի։ Բայց ես
ձեզի ըսի որ դուք զիս տեսաք ալ, ու չէք հա-
37 ւատար։ Այն ամէնը զոր Հայրը ինծի կու տայ,
ինծի պիտի գայ, և ան որ ինծի կու գայ, բնաւ
38 դուրս պիտի չհանեմ։ Վասն զի ես երկինքէն

իջայ՝ ոչ թէ իմ կամքս ընելու, հապա անոր
39 կամքը՝ որ զիս ղրկեց։ Եւ զիս ղրկող Հօրը կամքը
այս է որ այն ամէնը զոր ինք ինծի տուաւ, չկոր-
սնցնեմ անկէ, հապա անոր յարութիւն առնել
40 տամ վերջին օրը։ Քանզի զիս ղրկողին կամքը
այս է, որ այն ամէնը որ կը տեսնէ Որդին և
կը հաւատայ անոր, յաւիտենական կեանք ու-
նենայ. ես ալ անոր յարութիւն առնել տամ
վերջին օրը։
41 Ուստի Հրեաները տրտունջ կ՚ընէին իրեն
համար, վասն զի ըսաւ թէ Ես եմ երկինքէն
42 իջած հացը. Եւ կ՚ըսէին, Ասիկա Յովսէփի որ-
դին Յիսուս չէ՞, որուն հայրը ու մայրը մենք
կը ճանչնանք. ուրեմն ի՞նչպէս կ՚ըսէ ասիկա թէ
43 Ես երկինքէն իջայ։ Պատասխան տուաւ Յիսուս
ու ըսաւ անոնց, Տրտունջ մի ընէք ձեր մէջ։
44 Մէկը չկրնար ինծի գալ, եթէ զիս ղրկող Հայրը
զանիկա չքաշէ, ու ես անոր յարութիւն առ-
45 նել պիտի տամ վերջին օրը։ Մարգարէներուն
մէջ գրուած է, Եւ ամէնն ալ Աստուծմէ սորված
պիտի ըլլան. այն ամէնը որ Հօրմէն կը լսէ ու
46 կը սորվի, ինծի կու գայ։ Ոչ թէ մէկը Հայրը
տեսած է, եթէ ոչ ան՝ որ Աստուծմէ է, անիկա
47 Հայրը տեսած է։ Ճշմարիտ ճշմարիտ կ՚ըսեմ
ձեզի թէ Ան որ ինծի կը հաւատայ, յաւիտե-
48 նական կեանք ունի։ Ես եմ կենաց հացը։
49 Ձեր հայրերը անապատին մէջ մանանան կերան
50 ու մեռան։ Այս է այն հացը որ երկինքէն կ՚իջնէ,
51 որպէս զի եթէ մէկը անկէ ուտէ, չմեռնի։ Ես եմ
52 կենդանի հացը որ երկինքէն իջայ. Եթէ մէկը
այս հացէն ուտէ, յաւիտեան պիտի ապրի. և
այն հացը զոր ես պիտի տամ, իմ մարմինս է,
զոր ես պիտի տամ աշխարհի կեանքին համար։
53 Ասոր վրայ Հրեաները իրարու հետ կը վիճէին
ու կ՚ըսէին, Ի՞նչպէս կրնայ ասիկա իր մարմինը

54 մեզի տալ ուտելու ։ Իսկ Յիսուս ըսաւ անոնց ,
Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , Եթէ Որդւոյ
մարդոյ մարմինը չուտէք և անոր արիւնը չխմէք ,
55 ձեր անձերուն մէջ կեանք չէք ունենար ։ Ով որ
իմ մարմինս ուտէ և իմ արիւնս խմէ , յաւի-
տենական կեանք կ'ունենայ , ու ես անոր յա-
56 րութիւն առնել պիտի տամ վերջին օրը ։ Վասն
զի իմ մարմինս ճշմարիտ կերակուր է , և իմ
57 արիւնս ճշմարիտ ըմպելիք է ։ Ան որ իմ մարմինս
կ'ուտէ և իմ արիւնս կը խմէ , անիկա իմ ներ-
58 սիդիս կը բնակի ու ես անոր ներսիդին ։ Ինչ-
պէս կենդանի Հայրը զիս ղրկեց , ու ես կեն-
դանի եմ Հօրը ձեռքով , այսպէս ալ ան որ զիս
կ'ուտէ , ինք ալ իմ ձեռքովս կենդանի կը մնայ ։
59 Այս է այն հացը որ երկինքէն իջած է . ոչ թէ
ինչպէս հայրերնիդ մանանան կերան ու մեռան .
ով որ այս հացը ուտէ , յաւիտեան պիտի ապրի ։
60 Այս բաները գրուցեց ժողովարանին մէջ՝ երբ
Կափառնայումի մէջ կը սորվեցնէր ։
61 Ու աշակերտներէն շատերը երբ լսեցին՝ ըսին ,
Խիստ է այդ խօսքը , ո՞վ կրնայ ատոր մտիկ ընել ։
62 Յիսուս երբ ինքնիրեն հասկցաւ որ իր աշակերտ-
ները այն բանին համար տրտունջ կ'ընեն , ըսաւ
63 անոնց , Ատիկա ձեզ կը գայթակղեցնէ՞ ։ Հապա
ի՞նչ պիտի ըլլայ , եթէ տեսնէք Որդին մարդոյ որ
64 ելլէ ուր առաջ էր ։ Հոգին է կենդանի ընողը ,
մարմինը շահ մը չըներ . այն խօսքերը զորոնք
65 ես ձեզի *կը խօսիմ , հոգի ու կեանք են ։ Բայց
ձեր մէջէն կան ոմանք որ չեն հաւատար . վասն
զի Յիսուս սկիզբէն գիտէր թէ ո՛վ են անոնք
որ չեն հաւատար , և ո՛վ է ան որ զինք պիտի
66 մատնէ ։ Ու կ'ըսէր , Ասոր համար ձեզի ըսի որ
մէ՛կը չկրնար ինծի գալ , եթէ իմ Հօրմէս տրուած
չըլլայ անոր ։

*Որոնք , խօսեցայ

67 Այս պատճառաւ իր աշակերտներէն շատերը
68 ետ դարձան, և ալ իրեն հետ չէին պտըտեր։ Ան
ատեն Յիսուս տասուերկուքին ըսաւ, Միթէ
69 դուք ալ կ՚ուզէ՞ք երթալ։ Սիմոն Պետրոս պա-
տասխան տուաւ անոր, Տէր, որո՞ւ պիտի եր-
թանք, դուն յաւիտենական կեանքի խօսքեր
70 ունիս։ Եւ մենք հաւատացինք ու գիտցանք թէ
71 դուն ես Քրիստոսը *Աստուծոյ Որդին։ Յիսուս
պատասխան տուաւ անոնց, Ես ձեզ տասուեր-
կուքդ չընտրեցի՞, ու ձեզմէ ալ մէկը սատանայ
72 է։ Զայս կ՚ըսէր Իսկարիովտացի Սիմոնեան Յու-
դայի համար, վասն զի անիկա էր որ զինք պիտի
մատնէր, ու տասուերկուքէն մէկն էր։

## ԳԼ. Է

1 Յիսուս կը յանդիմանէ իր ազգականներուն փառասիրութիւնը և յանդգնութիւնը. 10 Գալիլեայէ Երուսաղէմ կ՚ելլէ տաղաւարահարաց տօնին. 14 տաճարին մէջ կը սորվեցնէ։ 40 ժողովուրդներուն զանազան կարծիքները Քրիստոսի վրայով։ 45 փարիսեցիները կը բարկանան իրենց սպասաւորներուն՝ զանիկա չբռնելնուն համար, և կը յանդիմանեն Նիկոդեմոսը՝ որ Յիսուսի կողմը կը բռնէր։

1 Եւ այս բաներէն ետև Յիսուս Գալիլեայի մէջ
կը պտըտէր, քանզի չէր ուզեր Հրէաստանի մէջ
պտըտիլ, վասն զի Հրեաները զինք սպաննել
կ՚ուզէին։
2 Եւ Հրեաներուն տաղաւարահարաց տօնը մօտ
3 էր։ Ուստի իր եղբայրները ըսին իրեն, Ելիր ասկէ
ու Հրէաստան գնա, որպէս զի քու աշակերտա-
ներդ ալ տեսնեն քու գործերդ զորոնք կ՚ընես.
4 Վասն զի մէկը չկայ որ ծածկաբար բան մը ընէ,
և ինք յայտնի ըլլալ ուզէ. եթէ դուն այդ բա-
5 ները կ՚ընես, ինքզինքդ աշխարհի յայտնէ։ Քան-
զի իր եղբայրներն ալ չէին հաւատար իրեն։
6 Իսկ Յիսուս ըսաւ անոնց, Իմ ժամանակս դեռ
հասած չէ, բայց ձեր ժամանակը միշտ պատ-
7 րաստ է։ Աշխարհ ձեզ չկրնար ատել, բայց զիս

Որդին, կենդանի Աստուծոյ

կ՚ատէ, վասն զի ես անոր վրայով կը վկայեմ թէ
8 իր գործերը չար են։ Դուք ելէք այս տօնին.
ես [դեռ] չեմ ելլեր այս տօնին. վասն զի իմ
9 ժամանակս դեռ լցուած չէ։ Ասիկա ըսելով անոնց՝
10 ինք Գալիլեա մնաց։ Բայց երբ իր եղբայրները
ելան, ետքը ինք ալ ելաւ տօնին, ոչ թէ յայտնի՝
հապա գաղտուկ կերպով մը։
11 Եւ Հրեաները տօնին ատենը կը փնտռէին
12 զինք, ու կ՚ըսէին, Ո՞ւր է անիկա։ Եւ ժողո-
վուրդին մէջ շատ շշնջիւն կար անոր վրայով.
ոմանք կ՚ըսէին թէ Աղէկ մարդ է. ուրիշները կ՚ը-
սէին, Ոչ, հապա ժողովուրդը կը մոլորեցնէ։
13 Սակայն մէ՛կը անոր վրայով համարձակ չէր խօ-
սեր Հրեաներուն վախէն։
14 Իսկ երբ տօնը կէս եղաւ, Յիսուս տաճարը
15 ելաւ ու կը սորվեցնէր։ Եւ Հրեաները կը զար-
մանային ու կ՚ըսէին, Ի՞նչպէս ասիկա գիրքերը
16 գիտէ, որ սորված չէ։ Յիսուս պատասխան տուաւ
անոնց ու ըսաւ, Իմ վարդապետութիւնս իմս չէ,
17 հապա զիս ղրկողինն է։ Եթէ մէկը կ՚ուզէ անոր
կամքը ընել, պիտի գիտնայ այս վարդապետու-
թեան համար թէ արդեօք Աստուծմէ՞ է՝ թէ
18 ես ինքնիմէս կը խօսիմ։ Ան որ ինքնիմէ կը
խօսի, իր անձին փառքը կը փնտռէ, բայց ան
որ զինք ղրկողին փառքը կը փնտռէ, անիկա
ճշմարիտ է, և անոր քով անիրաւութիւն չկայ։
19 Մովսէս չտուա՞ւ ձեզի օրէնքը, ու ձեզմէ մէ՛կն
20 ալ չպահեր օրէնքը։ Ինչո՞ւ կը փնտռէք զիս
սպաննել. պատասխան տուաւ ժողովուրդը ու
ըսաւ, Դև կայ քու ներսդ. ո՞վ քեզ կը փնտռէ
21 սպաննել։ Պատասխան տուաւ Յիսուս և ըսաւ
անոնց, Գործ մը գործեցի, ու ամէնդ ալ զար-
22 մացեր էք։ Արդ Մովսէս ձեզի թլփատութիւնը
տուաւ, (որ ոչ թէ Մովսէսէ էր՝ հապա նախ-
նիքներէն,) ու շաբաթ օրը մարդ կը թլփատէք։

23 Եթէ շաբաթ օրը մարդ թլփատութիւն կ'առնէ՝
որպէս զի Մովսէսի օրէնքը չքակուի, ինծի
կը բարկանա՞ք որ ես շաբաթ օրը ամբողջ մարդ
24 մը բժշկեցի։ Աչքի երևցածին պէս դատաս-
տան մի ընէք, հապա արդար դատաստան ըրէք։
25 Այն ատեն Երուսաղեմացիներէն ոմանք կ'ը-
սէին, Ասիկա ան չէ՞ զոր կը փնտռեն սպաննել։
26 Եւ ահա յայտնի կը խօսի, ու բան մը չեն ըսեր
անոր. միթէ իշխանները գիտցա՞ծ են թէ ա
27 սիկա ճշմարտապէս Քրիստոսն է։ Սակայն մենք
ասիկա գիտենք ուրկէ՛ է. բայց Քրիստոս երբ
28 գայ, մէ՛կը չգիտեր ուրկէ՛ է։ Եւ Յիսուս քա-
նի որ կը սորվեցնէր, տաճարին մէջ աղաղակեց՝
ըսելով, Զիս ալ գիտէք, և ուրկէ ըլլալս ալ
գիտէք. ու ես ինքիրմէս եկած չեմ, հապա ան
որ զիս ղրկեց՝ ճշմարիտ է, զոր դուք չէք գի-
29 տեր։ Բայց ես գիտեմ զանիկա, վասն զի ես
30 անկէ եմ, և անիկա զիս ղրկեց։ Ուստի կը
փնտռէին զինք բռնել, բայց մէ՛կն ալ իրեն
ձեռք չզարկաւ, վասն զի իր ժամանակը դեռ
31 հասած չէր։ Ու ժողովուրդէն շատ մարդիկ
հաւատացին իրեն, և կ'ըսէին, Քրիստոս երբ
գայ, ասոնցմէ աւելի նշաննե՞ր պիտի ընէ, որ-
չափ ասիկա կ'ընէ։
32 Փարիսեցիները լսեցին ժողովուրդին այս
շշնջիւնը անոր վրայով. ու փարիսեցիները և
քահանայապետները սպասաւորներ ղրկեցին,
33 որպէս զի զանիկա բռնեն։ Իսկ Յիսուս *ըսաւ,
Քիչ մը ժամանակ ալ ձեզի հետ եմ, ու կ'եր-
34 թամ անոր որ զիս ղրկեց։ Զիս պիտի փնտռէք
ու պիտի չգտնէք, և իմ եղած տեղս դուք
35 չէք կրնար գալ։ Այն ատեն Հրեաները ըսին
իրարու, Ո՞ւր պիտի երթայ ասիկա, որ մենք
զինք պիտի չգտնենք. միթէ †Հեթանոսներուն

*Ոմանք, անոնց ըսաւ    †Յուն. Յոյներուն

մէջ ցրուածներո՞ւն պիտի երթայ, և
36 հեթանոսներո՞ւն պիտի սորվեցնէ։ Ի՞նչ է այն
խօսքը զոր զրուցեց, Զիս պիտի փնտռէք ու
պիտի չգտնէք, և իմ եղած տեղս դուք չէք
կրնար գալ։
37 Տօնին վերջին մեծ օրը Յիսուս կայներ էր,
կ՚աղաղակէր ու կ՚ըսէր, Եթէ մէկը ծարաւ է,
38 թող ինծի գայ ու խմէ։ Ան որ ինծի կը հա-
ւատայ, ինչպէս գիրքը կ՚ըսէ, անոր փորէն կեն-
39 դանի ջուրի գետեր պիտի բղխեն։ Զայս ըսաւ
Հոգիին համար զոր իրեն հաւատացողները պիտի
առնէին, վասն զի Սուրբ Հոգին տրուած չէր տա-
կաւին, քանզի Յիսուս դեռ փառաւորուած չէր։
40 Ժողովուրդէն շատ մարդիկ երբ այս խօսքը լսե-
ցին՝ կ՚ըսէին, Իրաւցնէ ասիկա է մարգարէն։
41 Ուրիշները կ՚ըսէին, Ասիկա է Քրիստոսը. ու-
րիշներն ալ կ՚ըսէին, Միթէ Քրիստոսը Գա-
42 լիլեայէ՞ կու գայ։ Չէ՞ որ գիրքը կ՚ըսէ թէ Քրիս-
տոս Դաւիթի սերունդէն ու Դաւիթի եղած գե-
43 ղէն Բեթլեհեմէ կու գայ։ Ուստի ժողովուր-
դին մէջ երկպառակութիւն եղաւ անոր համար։
44 Եւ անոնցմէ ոմանք ուզեցին բռնել զանիկա,
բայց մէ՛կը անոր ձեռք չզարկաւ։
45 Ու սպասաւորները նորէն եկան քահանայա-
պետներուն և փարիսեցիներուն. ու անոնք ըսին
46 անոնց, Ինչո՞ւ զանիկա հոս չբերիք։ Պատասխան
տուին սպասաւորները, Երբեք մէ՛կը այս մար-
47 դուն պէս խօսած չէ։ Այն ատեն փարիսեցի-
ները պատասխան տուին անոնց և ըսին, Միթէ
48 դո՞ւք ալ մոլորեցաք։ Իշխաններէն կամ փա-
49 րիսեցիներէն մէկը հաւատա՞ց անոր. Բայց այս
ռամիկ ժողովուրդը՝ որ օրէնքը չեն գիտեր,
50 նզովուած են։ Նիկոդեմոս ըսաւ անոնց, (որ
առաջուընէ գիշեր ատեն իրեն եկեր էր, և անոնցմէ
51 մէկն էր,) Միթէ մեր օրէնքը մարդ կը դատէ՞,

եթէ առաջ անկէ բան մը չլսէ, և չգիտնայ թէ
52 ի՛նչ կ'ընէ ։ Պատասխան տուին ու ըսին անոր,
Միթէ դո՞ւն ալ Գալիլեացի ես. քննէ ու նայէ
53 որ Գալիլեայէ մարգարէ չելլեր ։ Եւ ամէն մէկը
իր տունը գնաց ։

## ԳԼ. Ը

1 Քրիստոս կ'արձակէ շնութեան յանցանքով բռնուած կինը. 12 կը յայտնէ թէ ինքն է աշխարհիս լոյսը, ու իր վարդապետութիւնը կ'արդարացնէ, 33 Աբրահամի վրայ պարծենցող Հրեաներուն պատասխան կու տայ, 59 և մէկդի կը քաշուի անոնց կատաղութենէն ։

1 Եւ Յիսուս Ձիթենեաց լեռը գնաց ։ (2) Ու առ-
տուանց նորէն տաճարը եկաւ, և բոլոր ժողո-
վուրդը իրեն կու գար. ու ինք նստեր կը սոր-
3 վեցնէր անոնց ։ Եւ դպիրները ու փարիսեցի-
ները շնութեան մէջ բռնուած կին մը բերին
4 անոր, ու զանիկա մէջտեղը կայնեցնելով՝ Ըսին
իրեն, Վարդապետ, այս կինը շնութեան մէջ
5 այս մեղքը գործած ատենը բռնուեցաւ. Եւ
օրէնքին մէջ Մովսէս մեզի պատուիրեց այս-
պիսիները քարկոծել. հիմա դուն ի՞նչ կ'ըսես
6 ասոր համար ։ Զայս կ'ըսէին՝ զանիկա փորձելով,
որպէս զի անոր վրայ ամբաստանութիւն ընելու-
առիթ մը ունենան. բայց Յիսուս դէպ ի վար ծռե-
7 լով՝ մատովը գետնին վրայ կը գրէր. Սակայն
երբ վրան ինկան՝ հարցնելով իրեն, վեր նայեցաւ
ու ըսաւ անոնց, Ձեզմէ անմեղ եղողը՝ առաջ
8 անիկա թող քար ձգէ ատոր վրայ ։ Եւ նորէն
9 դէպ ի վար ծռելով՝ գետնին վրայ կը գրէր ։ Եւ
անոնք այս լսելով ու իրենց խղճմտանքէն յան-
դիմանուելով՝ մէկիկ մէկիկ դուրս կ'ելլէին,
ծերերէն սկսած մինչև յետինները. և Յիսուս
10 միմիակ մնաց, ու կինը մէջտեղը կայնած ։ Եւ
Յիսուս վեր նայելով ու կնոջմէն զատ մէ՛կը չտես-
նելով՝ ըսաւ անոր, Ով կին, ո՞ւր են անոնք որ
քու վրայդ ամբաստանութիւն կ'ընէին. մէ՛կը

11 քեզ չդատապարտե՞ց ։ Եւ անիկա ըսաւ, Ոչ
մէկը, Տէր․ ու Յիսուս ըսաւ անոր, Ես ալ չեմ
դատապարտեր քեզ․ գնա ու ասկէ ետև մեղք
մի գործեր ։
12 Արդ Յիսուս նորէն խօսեցաւ անոնց ու ըսաւ,
Ես եմ աշխարհի լոյսը․ ան որ իմ ետևէս
կու գայ, խաւարի մէջ պիտի չքալէ, հապա
13 կենաց լոյսը պիտի ունենայ ։ Իսկ փարիսեցի-
ները ըսին անոր, Դուն քու անձիդ համար կը
14 վկայես, քու վկայութիւնդ ճշմարիտ չէ ։ Պա-
տասխան տուաւ Յիսուս ու ըսաւ անոնց․ Թէև
ես իմ անձիս համար կը վկայեմ, բայց իմ վկայու-
թիւնս ճշմարիտ է, վասն զի գիտեմ ուրկէ՛ եկայ
և ո՛ւր կ'երթամ․ բայց դուք չէք գիտեր ուրկէ՛
15 կու գամ կամ ո՛ւր կ'երթամ ։ Դուք մարմինին
նայելով դատաստան կ'ընէք, ես բնաւ մէկը չեմ
16 դատեր․ Ու թէև դատելու ալ ըլլամ, իմ դա-
տաստանս ճշմարիտ է․ վասն զի ես մինակ չեմ,
17 հապա ես՝ և Հայրը որ զիս ղրկեց ։ Ու ձեր օ-
րէնքին մէջ ալ գրուած է թէ Երկու մարդու
18 վկայութիւնը ճշմարիտ է ։ Ես եմ որ իմ անձիս
համար կը վկայեմ, ու կը վկայէ ինծի համար
19 Հայրն ալ որ զիս ղրկեց ։ Անոր ատեն ըսին անոր,
Ո՞ւր է քու Հայրդ․ Յիսուս պատասխան տուաւ,
Ոչ զիս գիտէք՝ և ոչ իմ Հայրս․ եթէ զիս գիտ-
նայիք, իմ Հայրս ալ պիտի գիտնայիք ։
20 Յիսուս այս խօսքերը խօսեցաւ գանձատունը՝
երբ տաճարին մէջ կը սորվեցնէր․ ու մէ՛կը
չբռնեց զանիկա, վասն զի դեռ անոր ժամա-
նակը հասած չէր ։
21 Եւ Յիսուս նորէն ըսաւ անոնց, Ես կ'երթամ՝
ու զիս պիտի փնտռէք, և ձեր մեղքերուն մէջ
պիտի մեռնիք․ ուր ես կ'երթամ, դուք չէք
22 կրնար գալ ։ Ասոր վրայ Հրեաները կ'ըսէին,
Միթէ ինքզինք պիտի մեռցնէ՞, որ կ'ըսէ թէ

23 Ուր ես կ'երթամ, դուք չէք կրնար գալ։ Եւ
ըսաւ անոնց, Դուք վարէն էք, ես վերէն եմ.
դուք այս աշխարհէն էք, ես այս աշխարհէն
24 չեմ. Անոր համար ձեզի ըսի թէ Ձեր մեղքե-
րուն մէջ պիտի մեռնիք, վասն զի եթէ չհա-
ւատաք թէ ես եմ, ձեր մեղքերուն մէջ պիտի
25 մեռնիք։ Այն ատեն ըսին անոր, Դուն ո՞վ ես.
և Յիսուս ըսաւ անոնց, Ինչ որ սկիզբէն ձեզի
26 կը խօսիմ։ Շատ բաներ ունիմ ձեզի համար
խօսելու և դատելու. բայց ան որ զիս ղրկեց՝
ճշմարիտ է, և ես ինչ որ իրմէ լսեցի, զանիկա
27 կը խօսիմ աշխարհի մէջ։ Անոնք չիմացան թէ
Հօրը համար կը զրուցէր իրենց։
28 Իսկ Յիսուս ըսաւ անոնց, Երբ Որդին մարդոյ
բարձրացնէք, այն ատեն պիտի գիտնաք թէ
ես եմ, ու ինքնիրմէս բան մը չեմ ըներ, հապա
Հայրս ինչպէս ինծի սորվեցուց՝ անանկ կը խօ-
29 սիմ. Եւ զիս ղրկողը ինծի հետ է. Հայրը զիս
մինակ չթողուց, վասն զի ես միշտ անոր հաճելի
եղած բաները կ'ընեմ։
30 Երբ ասոնք խօսեցաւ, շատ մարդիկ իրեն հա-
31 ւատացին։ Այն ատեն Յիսուս իրեն հաւատա-
ցող Հրեաներուն ըսաւ, Եթէ դուք իմ խօս-
քիս մէջ կենաք, ճշմարտապէս իմ աշակերտա-
32 ներս կ'ըլլաք. Եւ ճշմարտութիւնը պիտի գիտ-
նաք, ու այն ճշմարտութիւնը ձեզ պիտի ա-
33 զատէ։ Պատասխան տուին իրեն, Մենք Ա-
բրահամի սերունդ ենք, ու երբէք մէկուն չծա-
ռայեցինք. դուն ի՞նչպէս կ'ըսես թէ Ազատ
34 պիտի ըլլաք։ Յիսուս պատասխան տուաւ ա-
նոնց, Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի թէ
Ամէն ով որ մեղք կը գործէ, անիկա մեղքի
35 ծառայ է։ Եւ ծառան տանը մէջ յաւիտեան
36 չմնար, բայց որդին յաւիտեան կը մնայ։ Ուստի
եթէ Որդին ձեզ ազատ ընէ, ճշմարտապէս

37 ազատ պիտի ըլլաք ։ Գիտեմ որ Աբրահամի սե-
րունդ էք , բայց կը փնտռէք զիս մեռցնել, վասն
38 զի իմ խօսքս ձեր ներսիդին տեղ չունի ։ Ես
ինչ որ տեսայ իմ Հօրս քով՝ զայն կը խօսիմ,
և դուք ալ ինչ որ տեսաք ձեր հօրը քով՝ զայն
39 կ'ընէք ։ Պատասխան տուին ու ըսին անոր, Մեր
հայրը Աբրահամ է . ըսաւ անոնց Յիսուս, եթէ
Աբրահամի որդիներ ըլլայիք, Աբրահամի գոր-
40 ծերը պիտի գործէիք ։ Բայց հիմա կը փնտռէք
սպաննել զիս, այնպիսի մարդ մը՝ որ ձեզի ճշմար-
տութիւն խօսեցայ, զոր Աստուծմէ լսեցի . Աբ-
41 րահամ այդ բանը չըրաւ ։ Դուք ձեր հօրը գոր-
ծերը կ'ընէք . այն ատեն ըսին անոր, Մենք
պոռնկութենէ չենք ծնած, մենք մէկ Հայր ու-
42 նինք, որ է Աստուած ։ Յիսուս ըսաւ անոնց,
Եթէ Աստուած ձեր Հայրը ըլլար, պիտի սի-
րէիք զիս . վասն զի ես Աստուծմէ ելայ ու եկայ .
և ոչ թէ ես ինքնիրմէս եկայ, հապա անիկա
43 զիս ղրկեց ։ Ինչո՞ւ դուք իմ խօսուածքս չէք
հասկնար . անոր համար որ չէք կրնար իմ խօսքս
44 մտիկ ընել ։ Դուք ձեր հօրմէն Սատանայէ էք,
ու ձեր հօրը բաղձանքը կ'ուզէք ընել . անիկա
սկիզբէն հետէ մարդասպան էր, և ճշմարտու-
թեան մէջ չկեցաւ, վասն զի անոր ներսիդին
ճշմարտութիւն չկայ . երբ անիկա ստութիւն
խօսի, բուն իրեններէն կը խօսի, քանզի անիկա
45 ստախօս է և անոր հայրը ։ Բայց որովհետև ես
ճշմարտութիւն կը խօսիմ, ինծի չէք հաւատար ։
46 Ձեզմէ ո՞վ կրնայ զիս յանդիմանել մեղքի հա-
մար . իսկ եթէ ես ճշմարտութիւն կը խօսիմ,
47 ինչո՞ւ ինծի չէք հաւատար ։ Ան որ Աստուծմէ
է, Աստուծոյ խօսքերը մտիկ կ'ընէ . դուք անոր
համար մտիկ չէք ըներ, որ Աստուծմէ չէք ։
48 Պատասխան տուին Հրեաները ու ըսին անոր,
Աղէկ չէ՞նք ըսեր մենք թէ դուն Սամարացի ես,

49 ու դեւ կայ քու ներսդ ։ Յիսուս պատասխան
տուաւ և ըսաւ, Իմ ներսս դեւ չկայ, հապա ես
իմ Հայրս կը պատուեմ, և դուք զիս կ'անար-
50 գէք ։ Իսկ ես իմ փառքս չեմ փնտռեր . կայ
51 Մէկը որ կը փնտռէ ու կը դատէ ։ Ճշմարիտ ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի, Եթէ մէկը իմ խօսքս պահէ,
52 յաւիտեան մահ պիտի չտեսնէ ։ Այն ատեն
Հրեաները ըսին անոր, Հիմա գիտցանք որ քու
ներսդ դեւ կայ . Աբրահամ մեռաւ, ու մար-
գարէները, և դուն կ'ըսես, Եթէ մէկը իմ
խօսքս պահէ, յաւիտեան մահուան համը պիտի
53 չառնէ ։ Միթէ դուն աւելի՞ մեծ ես մեր հօրմէն
Աբրահամէ, որ մեռաւ, ու մարգարէներն ալ
54 մեռան . դուն քեզ ո՞վ կ'ընես ։ Յիսուս պա-
տասխան տուաւ, Եթէ ես ինքզինքս փառաւո-
րեմ, իմ փառքս բան մը չէ . իմ Հայրս է որ
զիս կը փառաւորէ, որու համար դուք կ'ըսէք
55 թէ *Մեր Աստուածն է . Եւ զանիկա չէք ճանչ-
նար, բայց ես գիտեմ զանիկա . ու եթէ ըսեմ
թէ զանիկա չեմ գիտեր, ձեզի պէս ստախօս
պիտի ըլլամ . հապա ես գիտեմ զանիկա, և
56 անոր խօսքը կը պահեմ ։ Ձեր հայրը Աբրահամ
ցանկացաւ իմ օրս տեսնել, ու տեսաւ և ու-
57 րախացաւ ։ Իսկ Հրեաները ըսին անոր, Դուն
տակաւին յիսուն տարեկան չես, Աբրահա՞մն ալ
58 տեսար ։ Յիսուս ըսաւ անոնց, Ճշմարիտ ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի, Աբրահամի ըլլալէն առաջ
59 եմ ես ։ Այն ատեն քարեր վերցուցին որպէս զի
անոր վրայ նետեն . բայց Յիսուս ծածկուեցաւ
անոնց աչքէն, և անոնց մէջէն անցնելով՝ տաճա-
րէն դուրս ելաւ, ու այսպէս գնաց ։

*Ոմանք, Ձեր

# ԳԼ. Թ

1 Քրիստոս ի ծնէ կոյրին աչքերը կը բանայ ։ 8 Այն բժշկուած մարդը փարիսեցինե-րուն կը տարուի, որոնք բարկանալով դուրս կ'ընեն զանիկա իրենց ժողովարանէն. 35 բայց Յիսուս կ'ընդունի զանիկա. ու ան ալ կը հաւատայ անոր ։ 39 Քրիստոս զո՞րոնք կը լուսաւորէ ։

1 Ու երբ կ'անցնէր, մարդ մը տեսաւ կոյր ծնած.
2 Եւ իր աշակերտները հարցուցին իրեն ու ըսին,
Ռաբբի, ո՞վ է մեղքը, ասո՞ր թէ իր ծնող-
3 քին, որ անիկա կոյր ծնաւ ։ Պատասխան տուաւ
Յիսուս, Ոչ ասոր է մեղքը, ոչ ալ իր ծնող-
քին, հապա որպէս զի Աստուծոյ գործերը ասոր
4 վրայ յայտնի ըլլան ։ Քանի որ ցորեկ է, պէտք
է որ զիս ղրկողին գործերը գործեմ. գիշերը
5 կու գայ երբ մէ՛կը չկրնար գործել ։ Քանի որ
6 ես աշխարհի մէջ եմ, աշխարհի լոյսն եմ ։ Երբ
զայս ըսաւ, թքաւ գետինը և թուքով կաւ շի-
նեց, ու այն կաւը կոյրին աչքերուն վրայ ծե-
7 փեց. Եւ ըսաւ անոր, Գնա, լուացուէ Սելովամի
աւազանին մէջ, (որ ղրկուած կը թարգմանուի.)
ուստի գնաց ու լուացուեցաւ, եկաւ ու կը տես-
8 նէր ։ Իսկ դրացիները և անոնք որ առաջուընէ
տեսած էին զանիկա որ *կոյր էր, կ'ըսէին, Ա-
սիկա չէ՞ր որ կը նստէր և կը մուրար. ոմանք
9 կ'ըսէին, Անիկա է. Ուրիշները կ'ըսէին, Անոր նման
10 ձեւն է. իսկ ինք կ'ըսէր թէ Ես եմ ։ Ուստի ըսին
իրեն, Հապա ի՞նչպէս բացուեցան քու աչքերդ ։
11 Ինք պատասխան տուաւ ու ըսաւ, Յիսուս կոչ-
ուած մարդ մը կաւ շինեց ու աչքերս ծեփեց,
և ըսաւ ինծի, Գնա Սելովամի աւազանը ու
լուացուէ. ես ալ գացի, լուացուեցայ ու կը
12 տեսնեմ ։ Եւ ըսին իրեն, Ո՞ւր է անիկա. ըսա-
ւանոնց, Չեմ գիտեր ։
13 Փարիսեցիներուն տարին զանիկա որ առաջ
14 կոյր էր ։ Եւ շաբաթ օր էր երբ Յիսուս կաւը
15 շինեց, ու անոր աչքերը բացաւ ։ Նորէն փա-

*Ոմանք, մուրացկան

րիսեցիներն ալ կը հարցնէին իրեն, թէ ինչ-
պէս կը տեսնէ. անիկա ալ ըսաւ անոնց, Կաւ
դրաւ աչքերուս վրայ, ու լուացուեցայ և կը
16 տեսնեմ։ Ասոր վրայ փարիսեցիներէն ոմանք
կ՚ըսէին, Այն մարդը Աստուծմէ չէ, վասն զի
շաբաթ օրը չպահեր. ուրիշները կ՚ըսէին, Ի՞նչ-
պէս կրնայ մեղաւոր մարդ մը այսպիսի հրաշք-
ներ ընել. ու անոնց մէջ երկպառակութիւն կար։
17 Նորէն ըսին կոյրին, Դուն ի՞նչ կ՚ըսես անոր
համար որ քու աչքերդ բացաւ. ան ալ ըսաւ
18 թէ Մարգարէ մըն է։ Իսկ Հրեաները չէին հա-
ւատար անոր համար՝ թէ կոյր էր ու բացուե-
ցաւ, մինչև որ այն աչքը բացուածին ծնողքը
19 կանչեցին։ Եւ անոնց հարցուցին ու ըսին, Ա՞յս
է ձեր որդին, որու համար դուք կ՚ըսէք թէ
կոյր ծնաւ. հապա հիմա ի՞նչպէս կը տեսնէ։
20 Անոր ծնողքը պատասխան տուին անոնց ու
ըսին, Գիտենք որ ասիկա է մեր որդին, և որ
21 ինք կոյր ծնաւ. Բայց հիմա ինչպէս կը տեսնէ՝
չենք գիտեր, կամ թէ ով բացաւ անոր աչ-
քերը՝ մենք չենք գիտեր. ինք չափահաս է, ի-
րեն հարցուցէք. թող ինք խօսի իրեն համար։
22 Զայս ըսին անոր ծնողքը՝ Հրեաներէն վախ-
նալնուն համար, քանզի Հրեաները միաբան
հաւանութեամբ որոշեր էին որ եթէ մէկը զա-
նիկա Քրիստոս դաւանի, ժողովարանէն դուրս
23 ձգուի։ Ասոր համար անոր ծնողքը ըսին թէ
24 Ինք չափահաս է, իրեն հարցուցէք։ Ետքը նո-
րէն կանչեցին այն մարդը որ կոյր էր, ու ըսին
անոր, Աստուծոյ փառք տուր. մենք գիտենք
25 որ այն մարդը մեղաւոր է։ Անիկա ալ պա-
տասխան տուաւ ու ըսաւ, Եթէ մեղաւոր է՝
ես չեմ գիտեր. միայն զայս գիտեմ որ կոյր էի
26 և հիմա կը տեսնեմ։ Նորէն ըսին անոր, Ի՞նչ
ըրաւ քեզի, քու աչքերդ ի՞նչպէս բացաւ։

27 Պատասխան տուաւ անոնց, Հիմա ըսի ձեզի ու
չլսեցիք. ինչո՞ւ համար նորէն լսել կ'ուզէք. միթէ
28 դո՞ւք ալ կ'ուզէք անոր աշակերտ ըլլալ։ Անոնք
նախատելով զանիկա ըսին, Դուն ես անոր աշա-
կերտը, իսկ մենք Մովսէսի աշակերտներն ենք։
29 Մենք գիտենք որ Աստուած Մովսէսի հետ խօ-
սեցաւ, բայց ասիկա չենք գիտեր թէ ուրկէ՛ է։
30 Պատասխան տուաւ մարդը եւ ըսաւ անոնց, Ա-
սիկա է զարմանալի բանը՝ որ դուք չէք գիտեր
թէ ուրկէ՛ է, եւ անիկա իմ աչքերս բացաւ։
31 Գիտենք որ Աստուած մեղաւորներուն մտիկ չը-
ներ, բայց եթէ մէկը աստուածապաշտ ըլլայ ու
32 անոր կամքը կատարէ, անոր մտիկ կ'ընէ։ Աշ-
խարհի սկիզբէն ի վեր լսուած չէ որ մարդ մը
33 կոյր ծնածի մը աչքերը բացած է։ Եթէ Ա-
տուծմէ չըլլար այն մարդը, բան մը ալ չէր կրնար
34 ընել։ Պատասխան տուին եւ ըսին անոր, Դուն բո-
լորովին մեղքերու մէջ ծնած ես, ու մեզի վար-
դապետութի՞ւն կ'ընես. եւ դուրս ըրին զանիկա։
35 Յիսուս լսեց որ զանիկա դուրս ըրին, ու երբ
գտաւ զանիկա, ըսաւ անոր, Դուն կը հաւատա՞ս
36 Աստուծոյ Որդին։ Անիկա պատասխան տուաւ
37 ու ըսաւ, Տէր, ո՞վ է՝ որ հաւատամ անոր։ Եւ
Յիսուս ըսաւ անոր, Տեսար ալ զանիկա, եւ քեզի
38 հետ խօսողը ան է։ Անիկա ալ ըսաւ, Կը հա-
ւատամ, Տէր. ու անոր երկրպագութիւն ըրաւ։
39 Եւ Յիսուս ըսաւ, Ես դատաստանի համար եկայ
այս աշխարհը, որպէս զի չտեսնողները տեսնեն
եւ տեսնողները կուրնան։
40 Եւ փարիսեցիներէն անոնք որոնք իրեն հետ
էին, այս բաները լսելով՝ ըսին իրեն, Միթէ
41 մե՞նք ալ կոյր ենք։ Յիսուս ըսաւ անոնց, Եթէ
կոյր ըլլայիք, դուք մեղք չէիք ունենար, բայց
հիմա կ'ըսէք թէ Կը տեսնենք, ասոր համար
ձեր մեղքը ձեր վրայ կը մնայ։

# ԳԼ. Ժ

1 Քրիստոս է կենաց դուռը և բարի հովիւը։ 19 Հրեաներուն տարբեր կարծիքները անոր վրայով։ 24 Յիսուս իր գործերովը կը ցուցնէ թէ ինք է Քրիստոսը՝ Աստուծոյ Որդին. 39 Հրեաներուն ձեռքէն կը փախչի, 40 և դարձեալ կ'երթայ Յորդանանու միւս կողմը, ուր տեղ շատերը կը հաւատան իրեն։

1 Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Ան որ դռնէն
չմտներ ոչխարներուն բակը, հապա ուրիշ տեղէ
2 կ'ելլէ, անիկա գող ու աւազակ է։ Բայց ան որ
դռնէն կը մտնէ, անիկա ոչխարներուն հովիւն
3 է։ Դռնապանը կը բանայ անոր, և ոչխարները
անոր ձայնին կը լսեն, ու իր ոչխարները անուա-
նովին կը կանչէ, և դուրս կը հանէ զանոնք։
4 Ու երբ իր ոչխարները կը հանէ, անոնց առ-
ջևէն կ'երթայ, ու ոչխարները իր ետևէն կ'եր-
5 թան, վասն զի անոր ձայնը կը ճանչնան։ Սա-
կայն օտարի ետևէ չեն երթար, հապա անկէ
կը փախչին, վասն զի օտարներուն ձայնը չեն
ճանչնար։
6 Յիսուս այս առակը ըսաւ անոնց, բայց անոնք
չէին իմանար թէ ի՛նչ էր զոր իրենց կը խօսէր։
7 Եւ Յիսուս նորէն ըսաւ անոնց, Ճշմարիտ ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի, Ես եմ ոչխարներուն դուռը։
8 Ամէն անոնք որ ինծմէ առաջ եկան, գող ու
աւազակ էին, բայց անոնց չլսեցին ոչխարները։
9 Ես եմ դուռը. եթէ մէկը ինծմէ ներս մտնէ,
պիտի փրկուի, ու պիտի մտնէ ու ելլէ և արօտ
10 գտնէ։ Գողը չգար, միայն թէ գողնալու և
սպաննելու ու կորսնցնելու համար. ես եկայ
11 որ կեանք ունենան, և՛ աւելի ունենան։ Ես
եմ բարի հովիւը. բարի հովիւը իր կեանքը ոչ-
12 խարներուն համար կը դնէ։ Բայց վարձկանը որ
հովիւ չէ ու ոչխարները իրը չեն, երբ կը տեսնէ
գայլը որ կու գայ, կը թողու ոչխարները ու
կը փախչի. և գայլը կը յափշտակէ ոչխարները
13 ու զանոնք կը ցրուէ։ Եւ վարձկանը կը փախչի,

վասն զի վարձկան է ու իր հոգը չէ ոչխարնե-
14 րուն համար ։ Ես եմ բարի հովիւը, և կը ճանչ-
նամ իմիններս ու կը ճանչցուիմ իմիններէս ։
15 Ինչպէս Հայրը զիս կը ճանչնայ, ես ալ Հայրը
կը ճանչնամ, ու իմ կեանքս ոչխարներուն հա-
16 մար կը դնեմ ։ Ուրիշ ոչխարներ ալ ունիմ, ո-
րոնք այս բակէն չեն. զանոնք ալ պէտք է որ
բերեմ, ու իմ ձայնիս պիտի լսեն, և պիտի ըլլան
17 մէկ հօտ ու մէկ հովիւ ։ Անոր համար իմ Հայրս
զիս կը սիրէ, որ ես իմ կեանքս կը դնեմ, որ-
18 պէս զի նորէն առնեմ զանիկա ։ Մէ՛կը չհաներ
զանիկա ինծմէ, հապա ես կը դնեմ զանիկա
ինքիրմէս. իշխանութիւն ունիմ զանիկա դնե-
լու, և իշխանութիւն ունիմ զանիկա նորէն
առնելու. այս պատուէրը իմ Հօրմէս առի ։
19 Նորէն երկպառակութիւն ինկաւ Հրէից մէջ
20 այս խօսքերուն համար ։ Եւ անոնցմէ շատերը
կ'ըսէին, Դեւ կայ անոր ներսիդին, ու խելը-
21 առած է. ինչո՞ւ անոր մտիկ կ'ընէք ։ Ուրիշները
կ'ըսէին, Այս խօսքերը դիւահարի խօսքեր չեն.
միթէ դեւը կրնա՞յ կոյրերուն աչքերը բանալ ։
22 Այն ատեն Երուսաղէմ Նաւակատիքի տօնը եղաւ,
23 ու ձմեռ էր ։ Եւ Յիսուս կը պտըտէր տաճա-
24 րին մէջ Սողոմոնի սրահը ։ Եւ Հրեաները անոր
չորս կողմը առին ու ըսին անոր, Մինչեւ ե՞րբ
մեզ տարակուսանքի մէջ կը թողուս. եթէ Քրիս-
25 տոսը դուն ես, մեզի համարձակ ըսէ ։ Յիսուս
պատասխան տուաւ անոնց, Ձեզի ըսի ու չէք
հաւատար. այն գործերը զորոնք ես իմ Հօրս
անունովը կը գործեմ, անոնք կը վկայեն ինծի
26 համար ։ Բայց դուք չէք հաւատար, վասն զի
27 իմ ոչխարներէս չէք, *ինչպէս ձեզի ըսի" ։ Իմ
ոչխարներս իմ ձայնիս կը լսեն, ես ալ զանոնք
28 կը ճանչնամ, ու իմ ետեւէս կու գան. Եւ ես

*Ոմանք չունին

անոնց յաւիտենական կեանք կու տամ, ու յա-
ւիտեան պիտի չկորսուին, և մէ՛կը իմ ձեռքէս
29 պիտի չյափշտակէ զանոնք։ Իմ Հայրս որ զանոնք
ինծի տուաւ, ամէնէն մեծ է, և մէ՛կը չկրնար իմ
30 Հօրս ձեռքէն յափշտակել։ Ես ու Հայրը մէկ ենք։
31 Այն ատեն Հրեաները նորէն քարեր վեր-
32 ցուցին, որպէս զի զանիկա քարկոծեն։ Յիսուս
պատասխան տուաւ անոնց, Շատ բարի գոր-
ծեր ցուցուցի ձեզի իմ Հօրմէս, անոնցմէ ո՞ր
33 գործին համար զիս կը քարկոծէք։ Հրեաները
պատասխան տուին անոր՝ ըսելով, Բարի գործի
համար քեզ չենք քարկոծեր, հապա հայհոյու-
թեան համար, և քանզի դուն որ մարդ ես,
34 ինքզինքդ Աստուած կ'ընես։ Յիսուս պատաս-
խան տուաւ անոնց, Չէ՞ որ ձեր օրէնքին մէջ
գրուած է, Ես ըսի թէ դուք աստուածներ էք։
35 Եթէ աստուածներ կ'անուանէ զանոնք, որոնց
Աստուծոյ խօսքը եղաւ, (ու կարելի չէ որ այն
36 գրուածը աւրուի,) հապա զայն որ Հայրը սրբեց և
աշխարհ ղրկեց, դուք անոր կ'ըսէ՞ք թէ Հայ-
հոյութիւն կ'ընես՝ Աստուծոյ Որդի եմ ըսելուս
37 համար։ Եթէ իմ Հօրս գործերը չեմ գործեր,
38 ինծի մի հաւատաք․ Ապա եթէ կը գործեմ,
թէև ինծի չէք հաւատար, գոնէ գործերուն հա-
ւատացէք, որպէս զի գիտնաք ու *հաւատաք
թէ Հայրը իմ մէջս է, և ես անոր մէջ։
39 Դարձեալ կը փնտռէին զանիկա բռնել, և
40 անոնց ձեռքէն ելաւ․ Ու նորէն գնաց Յորդա-
նանու անդին կողմը, այն տեղը ուր Յովհան-
41 նէս առաջ կը մկրտէր, ու հոն կեցաւ։ Եւ շա-
տերը եկան անոր ու կ'ըսէին, Իրաւ Յովհան-
42 նէս հրաշք մը չըրաւ․ Բայց ինչ որ Յովհաննէս
ըսաւ անոր համար՝ ամէնը ճշմարիտ էր․ և շատ
մարդիկ հոն անոր հաւատացին։

*Ոմանք, ճանչնաք։

## ԳԼ. ԺԱ

1 Քրիստոս կը յարուցանէ չորս օրուան մեռած Ղազարոսը ։ 45 Շատ Հրեաներ կը հաւատան ։ 47 Քահանայապետները և փարիսեցիները ժողով կ'ընեն Քրիստոսի դէմ ։ 49 Կայիափայի մարգարէութիւնը ։ 54 Յիսուս իր անձը կը թագուցանէ ։ 55 Զատկի տօնին կը փնտռեն զանիկա, և պատուէր կու տան բռնելու ։

1 Ու Մարիամի և անոր քրոջ Մարթայի գեղէն,
Բեթանիայէ, Ղազարոս անունով մէկը հիւանդ էր։
2 Ասիկա այն Մարիամն էր որ Տէրը խնկով օծեց,
ու անոր ոտքերը իր մազերովը սրբեց, որուն եղ-
3 բայրը Ղազարոս հիւանդ էր։ Ուստի իր քոյրերը
մարդ ղրկեցին անոր ու ըսին, Տէր, ահա անիկա
4 զոր դուն կը սիրես, հիւանդ է։ Յիսուս երբ
լսեց՝ ըսաւ, Այս հիւանդութիւնը մահուան
համար չէ, հապա Աստուծոյ փառքին համար,
որպէս զի Աստուծոյ Որդին անով փառաւորուի։
5 Արդ Յիսուս կը սիրէր Մարթան և անոր քոյրը
6 ու Ղազարոսը։ Իսկ երբ լսեց թէ հիւանդ է,
7 եղած տեղը երկու օր ալ կեցաւ։ Եւ անկէ ետքը
ըսաւ աշակերտներուն, Եկէք, նորէն Հրէաստան
8 երթանք։ Աշակերտները իրեն ըսին, Ռաբբի,
Հրեաները հիմա քեզ կը փնտռէին քարկոծե-
9 լու, ու նորէն հո՞ն կ'երթաս։ Պատասխան տուաւ
Յիսուս, Չէ՞ որ օրը տասուերկու ժամ է. եթէ
մէկը ցորեկը քալէ՝ չսահիր, վասն զի այս աշ-
10 խարհին լոյսը կը տեսնէ. Բայց եթէ մէկը գիշերը
11 քալէ՝ կը սահի, վասն զի իրեն հետ լոյս չկայ։ Այս
բաները ըսելէն ետև ըսաւ անոնց, Ղազարոս
մեր բարեկամը քնացած է, բայց կ'երթամ
12 որպէս զի զանիկա արթնցնեմ։ Իր աշակերտ-
ները ըսին, Տէր, եթէ քնացած է, պիտի ա-
13 ողջանայ։ Իսկ Յիսուս անոր մեռնելուն համար
կ'ըսէր, բայց անոնք կը կարծէին թէ քուն քնա-
14 նալուն համար կ'ըսէր։ Այն ատեն Յիսուս յայտ-
15 նապէս ըսաւ անոնց, Ղազարոս մեռաւ. Եւ
ես ուրախ եմ ձեզի համար որ հոն չէի, որ-

պէս զի դուք հաւատաք․ բայց եկէք երթանք անոր։
16 Թովմաս, որ Երկուորեակ կ՚ըսուէր, ըսաւ իր ա-
շակերտակիցներուն․ Մենք ալ երթանք, որ-
պէս զի անոր հետ մեռնինք։
17 Յիսուս երբ եկաւ, գտաւ որ անիկա արդէն
18 չորս օրուան գերեզմանը դրուած էր։ Ու Բե-
թանիա Երուսաղէմի մօտ էր տասնըհինգ աս-
19 պարէզի չափ։ Եւ Հրեաներէն շատերը Մար-
թայի ու Մարիամի եկած էին որպէս զի մխի-
20 թարեն զանոնք իրենց եղբօրը համար։ Արդ
երբ լսեց Մարթա թէ Յիսուս կու գայ, զանիկա
դիմաւորելու գնաց, բայց Մարիամ տանը մէջ
21 նստեր էր։ Եւ Մարթա ըսաւ Յիսուսի, Տէր,
եթէ հոս ըլլայիր, իմ եղբայրս չէր մեռներ․
22 Բայց գիտեմ որ հիմա ալ դուն ինչ որ խնդրես
23 Աստուծմէ, Աստուած պիտի տայ քեզի։ Յի-
սուս ըսաւ անոր, Քու եղբայրդ յարութիւն
24 պիտի առնէ։ Մարթա ըսաւ անոր, Գիտեմ որ
յարութեան ժամանակը, վերջին օրը, յարու-
25 թիւն պիտի առնէ։ Յիսուս ըսաւ անոր, Ես եմ
յարութիւնը եւ կեանքը․ ան որ ինծի կը հա-
26 ւատայ, թէեւ մեռնի՝ պիտի ապրի․ Եւ ան ամէնը
որ կենդանի է ու ինծի կը հաւատայ, յաւիտեան
27 պիտի չմեռնի․ դուն կը հաւատա՞ս ասոր։ Ըսաւ
անոր, Այո, Տէր, ես հաւատացեր եմ որ դուն
ես Քրիստոսը, Աստուծոյ Որդին, որ աշխարհ
28 գալու էիր։ Ու երբ զայս ըսաւ, գնաց իր քոյրը
Մարիամը գաղտուկ մը կանչեց՝ ըսելով, Վար-
29 դապետը եկեր է ու քեզ կը կանչէ։ Անիկա
30 լսածին պէս՝ շուտ մը ելաւ ու եկաւ անոր։ Իսկ
Յիսուս դեռ գեղը եկած չէր, հապա այն տեղ
31 էր, ուր Մարթա զանիկա դիմաւորեց։ Բայց
Հրեաները որ անոր հետ տանը մէջ էին ու
կը մխիթարէին զանիկա, երբ տեսան որ Մա-
րիամ շուտ մը ելաւ ու գնաց, իրենք ալ անոր

եռալէն գացին՝ ըսելով Թէ Գերեզմանը կ'երԹայ
32 որպէս զի հոն լայ ։ Իսկ Մարիամ երբ Յիսուսի
եղած տեղը եկաւ ու զանիկա տեսաւ, անոր
ոտքը իյնալով ըսաւ անոր, Տէր, եԹէ հոս ըլ-
33 լայիր՝ իմ եղբայրս չէր մեռներ ։ Յիսուս երբ
տեսաւ զանիկա որ կու լար, և անոր հետ եկող
Հրեաները որոնք կու լային, իր հոգւոյն մէջ
34 հառաչեց ու խռովեցաւ, Եւ ըսաւ, Ո՞ւր դրած
էք զանիկա. ըսին իրեն, Տէր, եկուր ու տես ։
35 Յիսուս լացաւ ։ (36) Ուստի Հրեաները կ'ըսէին,
37 Նայեցէք ո՛րչափ կը սիրէր զանիկա ։ Անոնցմէ
ոմանք ալ կ'ըսէին, Ասիկա որ կոյրին աչքերը
բացաւ, չէ՞ր կրնար ընել որ աս ալ չմեռնէր ։
38 Յիսուս նորէն իր սրտին մէջ հառաչելով գերեզ-
մանը կու գայ. և անիկա քարայր մըն էր, ու
39 անոր վրայ քար մը դրուած էր ։ Յիսուս ըսաւ,
Մէկդի ըրէք այդ քարը. մեռելին քոյրը ՄարԹա
ըսաւ անոր, Տէր, արդէն հոտած պիտի ըլլայ,
40 վասն զի չորս օրուան է ։ Ըսաւ անոր Յիսուս,
Քեզի չըսի՞ որ եԹէ հաւատաս՝ Աստուծոյ փառքը
41 պիտի տեսնես ։ Այն ատեն մէկդի ըրին *քարը.
և Յիսուս իր աչքերը վեր վերցուց ու ըսաւ,
Հայր, շնորհակալ եմ քեզմէ, որ ինծի լսեցիր ։
42 Ու ես գիտէի որ ամէն ատեն ինծի կը լսես.
բայց այս բոլորտիքս կայնող ժողովուրդին հա-
մար ըսի, որպէս զի հաւատան Թէ դուն ղրկե-
43 ցիր զիս ։ Եւ զայս ըսելէն ետքը՝ մեծ ձայնով մը
44 կանչեց, Ղազարոս, դուրս եկուր ։ Մեռելն ալ
ելաւ՝ ոտքերը ու ձեռքերը պատանքով կապած և
երեսը վարշամակով պատած. Յիսուս ըսաւ ա-
նոնց, Արձակեցէք ասիկա ու Թողէք որ երԹայ ։
45 Եւ Հրեաներէն շատերը որոնք Մարիամի եկեր
էին, երբ Յիսուսի ըրածը տեսան, հաւատացին
46 իրեն ։ Բայց անոնցմէ ոմանք գացին փարիսեցի-

*Ոմանք ; քարը, ուր պառկած էր մեռելը

ներուն, ու Յիսուսի ըրածը անոնց պատմեցին ։
47 Ուստի քահանայապետները եւ փարիսեցի-
ները ժողով գումարեցին ու ըսին, Ի՞նչ ընենք,
48 քանզի այս մարդը շատ հրաշքներ կ՚ընէ ։ Եթէ
զանիկա այսպէս թող տանք, ամէնն ալ անոր
պիտի հաւատան, եւ Հռոմայեցիք պիտի գան
49 ու մեր տեղը ու ազգը պիտի վերցնեն ։ Եւ ա-
նոնցմէ մէկը, Կայիափա անունով, որ այն տարուան
50 քահանայապետն էր, ըսաւ անոնց, Դուք բան մը
չէք գիտեր, եւ չէք ալ խորհիր թէ աղէկ է մեզի՝
որ մարդ մը ժողովուրդին համար մեռնի, ու
51 բոլոր ազգը չկորսուի ։ Բայց այս բանը ոչ թէ
ինքնիրմէ գրուցեց, հապա այն տարուան քա-
հանայապետը ըլլալով, մարգարէացաւ թէ Յի-
52 սուս ազգին համար պիտի մեռնէր․ Եւ ոչ թէ
միայն ազգին համար, հապա որ Աստուծոյ
ցիրուցան եղած որդիներն ալ մէկտեղ ժողվէ ։
53 Ալ այն օրէն ետեւ խորհուրդ ըրին որ սպան-
54 նեն զանիկա ։ Ուստի Յիսուս անկէ ետքը հա-
մարձակ չէր պտըտեր Հրէից մէջ, հապա անկէ
անապատին մօտ տեղ մը գնաց, քաղաք մը ո-
րուն անունը Եփրայիմ էր, ու իր աշակերտ-
ներուն հետ մէկտեղ հոն կը կենար ։
55 Եւ Հրէից զատիկը մօտ էր, ու այն տեղէն
շատ մարդիկ զատկէն առաջ Երուսաղէմ ելան,
56 որպէս զի ինքզինքնին մաքրեն ։ Եւ կը փնտռէին
Յիսուսը, ու տաճարին մէջ կեցած ատենին
իրարու կ՚ըսէին, Ձեզի ի՞նչպէս կ՚երեւնայ, թէ
57 այս տօնին բնաւ պիտի չգա՞յ ։ Իսկ քահանայա-
պետները ու փարիսեցիները պատուէր տուեր
էին, որ եթէ մէկը գիտնայ անոր ուր ըլլալը՝
իմացնէ, որպէս զի զանիկա բռնեն ։

# ԳԼ. ԺԲ

1 Յիսուս կը գովէ Մարիամը որ իր ոտքը օծեց ։ 9 Ժողովուրդը կու գայ Ղազարոսը տեսնելու ։ 19 Քահանայապետները խորհուրդ կ՚ընեն զանիկա սպաննել ։ 12 Քրիստոս իշու վրայ հեծած՝ Երուսաղէմ կը մտնէ ։ 20 Քանի մը Յոյներ կը ցանկան զայն տեսնել ։ 23 Քրիստոս իր մահը կը նախաձայնէ ։ 37 Հրէից կուրութիւնը ։ 42 Իշխաններէն շատերը կը հաւատան Յիսուսի. բայց փարիսեցիներէն վախնալով՝ զանիկա յայտնի չեն դաւանիր ։

1 Իսկ Յիսուս զատկէն վեց օր առաջ Բեթանիա
եկաւ, ուր էր Ղազարոս մեռածը, զոր Յիսուս
2 մեռելներէն յարուց ։ Եւ հոն անոր ընթրիք մը
ըրին, ու Մարթա սպասաւորութիւն կ՚ընէր,
և Ղազարոս անոր հետ սեղան նստողներէն
3 մէկն էր ։ Իսկ Մարիամ մէկ լիտր նարդոսի
պատուական մեծագին իւղ առնելով, Յիսուսի
ոտքերը օծեց ու իր մազերովը անոր ոտքերը
սրբեց. և տունը իւղին անուշահոտութիւնովը
4 լեցուեցաւ ։ Այն ատեն աշակերտներէն մէկը,
Իսկարիովտացի Սիմոնեան Յուդա որ զանիկա
5 պիտի մատնէր, ըսաւ, Ինչո՞ւ համար այդ իւղը
չծախուեցաւ երեք հարիւր դահեկանի, որ աղ-
6 քատներուն տրուէր ։ Զայս ըսաւ, ոչ թէ աղ-
քատներուն համար իր հոգն էր. հապա որ գող
էր ու դանձանակը ինք կը պահէր, և ինչ որ
7 ձգուէր՝ ինք կը կրէր ։ Իսկ Յիսուս ըսաւ, Թող
տուր ատոր. այդ բանը իմ թաղմանս օրուանը
8 համար պահեց ։ Վասն զի աղքատները ամէն
ատեն ձեզի հետ ունիք, բայց զիս ամէն ատեն
չունիք ։

9 Ուստի Հրեաներէն շատ ժողովուրդ անոր
հոն ըլլալը իմացան, ու եկան ոչ թէ միայն
Յիսուսի համար, հապա որպէս զի Ղազարոսն ալ
10 տեսնեն, զոր մեռելներէն յարուց ։ Իսկ քա-
հանայապետները խորհուրդ ըրին որ Ղազա-
11 րոսն ալ մեռցնեն. Վասն զի Հրեաներէն շա-
տերը անոր պատճառաւ կ՚երթային ու կը հա-
ւատային Յիսուսի ։

12 Հետեւեալ օրը շատ ժողովուրդ որ տօնին եկած
էին, երբ լսեցին թէ Յիսուս Երուսաղէմ կու գայ,
13 Արմաւենիի ոստեր առին ու ելան զանիկա դի-
մաւորելու, և կ'աղաղակէին, Ովսաննա, օրհ-
նեալ է Իսրայէլի թագաւորը՝ որ Տէրոջը անու-
14 նովը կու գայ։ Եւ Յիսուս աւանակ մը գտնե-
լով՝ անոր վրայ նստաւ, ինչպէս գրուած է,
15 Մի վախնար, ով Սիօնի աղջիկ, ահա քու Թա-
գաւորդ կու գայ իշու աւանակի վրայ նստած։
16 Եւ անոր աշակերտները առաջ չիմացան այս
բաները, բայց երբ Յիսուս փառաւորուեցաւ,
այն ատեն միտքերնին բերին թէ այս բաները
անոր համար գրուած էին, և թէ իրենք այս
17 բաները ըրին անոր։ Եւ իրեն հետ եղող ժողո-
վուրդը վկայութիւն կու տար թէ Ղազարոսը
գերեզմանէն դուրս կանչեց, ու մեռելներէն
18 յարուց զանիկա։ Ասոր համար ալ ժողովուրդը
զանիկա դիմաւորեց, վասն զի լսեցին թէ ա-
19 նիկա այս հրաշքը ըրած էր։ Իսկ փարիսե-
ցիները իրարու կ'ըսէին, Կը տեսնէ՞ք որ օգուտ
մը չէք կրնար ընել. ահա բոլոր աշխարհ անոր
ետեւէն գնաց։
20 Եւ հոն քանի մը Յոյներ կային տօնին եր-
21 կրպագութիւն ընելու եկողներուն մէջ։ Ասոնք
Փիլիպպոսի եկան, որ Գալիլեայի Բեթսայի-
դայէն էր, և կ'աղաչէին անոր ու կ'ըսէին,
22 Տէր, կ'ուզենք Յիսուսը տեսնել։ Փիլիպպոս
եկաւ, ու Անդրէասի ըսաւ, և նորէն Անդրէաս
23 ու Փիլիպպոս [illegible] Յիսուսի ըսին։ Յիսուս ալ
պատասխան տուաւ անոնց ու ըսաւ, Ժամա-
նակը հասաւ որ փառաւորուի Որդին մարդոյ։
24 Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Եթէ ցորե-
նին հատը հողին մէջ իյնալով չմեռնի, ինք մի-
նակ կը մնայ, ապա եթէ մեռնի, շատ պտուղներ
25 կը բերէ։ Ան որ իր անձը կը սիրէ, պիտի կոր-

սնցնէ զանիկա . և ան որ իր անձը այս աշ-
խարհքին մէջ կ'ատէ, յաւիտենական կեանքի
26 համար պիտի պահէ զանիկա ։ Եթէ մէկը ինծի
կը ծառայէ, թող իմ ետևէս գայ . ու ես ուր
որ եմ, իմ ծառաս ալ հոն պիտի ըլլայ . եթէ
մէկը ինծի կը ծառայէ, Հայրը պիտի պատուէ
27 զանիկա ։ Հիմա իմ հոգիս խռոված է, և ի՞նչ
ըսեմ . Հայր, զիս ազատէ այս ժամէն . բայց ես
28 ատոր համար եկայ այս ժամին ։ Հայր, փառա-
ւորէ քու անունդ . այն ատեն ձայն մը եկաւ
երկինքէն, Փառաւորեցի ալ, ու նորէն պիտի
29 փառաւորեմ ։ Եւ ժողովուրդը որ կայներ էր
ու կը լսէր, կ'ըսէին, Որոտում կ'ըլլայ . ոմանք ալ
30 կ'ըսէին, Հրեշտակ խօսեցաւ իրեն հետ ։ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ, Այս ձայնը ինծի
31 համար չեկաւ, հապա ձեզի համար ։ Հիմա է
այս աշխարհքին դատաստանը, հիմա այս աշ-
32 խարհքին իշխանը դուրս պիտի ձգուի ։ Ես ալ
երբ երկրէ բարձրանամ, ամէնն ալ ինծի պիտի
33 քաշեմ ։ Այս բանը կը զրուցէր՝ իմացնելով թէ
34 ինչ կերպ մահով պիտի մեռնէր ։ Ժողովուրդը
անոր պատասխանեց, Մենք օրէնքէն լսեցինք
որ Քրիստոս յաւիտեան կը մնայ . և դուն ի՞նչ-
պէս կ'ըսես թէ պէտք է Որդին մարդոյ բարձրա-
35 նայ . ո՞վ է այդ Որդին մարդոյ ։ Եւ Յիսուս ա-
նոնց ըսաւ, Քիչ մը ատեն ալ լոյսը ձեզի հետ է .
քանի որ լոյսը ունիք, քալեցէք, որ չըլլայ թէ
մութը ձեր վրայ հասնի . վասն զի խաւարի մէջ
36 քալողը չգիտեր թէ ո՛ւր կ'երթայ ։ Քանի որ
լոյսը ունիք, հաւատացէք այն լոյսին, որպէս զի
լուսոյ որդիներ ըլլաք ։ Յիսուս այս բաները
զրուցեց, ու գնաց պահուեցաւ անոնցմէ ։
37 Եւ թէպէտ այնքան հրաշքներ ըրած էր ա-
նոնց առջև, բայց անոնք չէին հաւատար իրեն .
38 Որպէս զի կատարուի Եսայի մարգարէին խօսքը՝

զոր ըսաւ, Տէ՛ր, ո՞վ հաւատաց մեր տուած լու-
րին, և Տէրոջը բազուկը որո՞ւ յայտնուեցաւ։
39 Անոր համար չէին կրնար հաւատալ, որ դարձեալ
40 կ'ըսէ Եսայի, Անոնց աչքերը կուրցուց, և ա-
նոնց սիրտերը թմրեցուց, որ չըլլայ թէ աչ-
քերնին տեսնեն ու սրտերնին իմանան և դարձի
41 գան, ու ես զանոնք բժշկեմ։ Այս խօսքը ըսաւ
Եսայի՝ երբ տեսաւ անոր փառքը, ու խօսեցաւ
42 անոր վրայով։ Այսու ամենայնիւ իշխաններէն
ալ շատերը իրեն հաւատացին, բայց փարիսե-
ցիներուն համար զանիկա չէին դաւաներ, որ-
43 պէս զի ժողովարանէն դուրս չձգուին. Վասն զի
մարդոց փառքը Աստուծոյ փառքէն աւելի սի-
րեցին։
44 Իսկ Յիսուս կ'աղաղակէր ու կ'ըսէր, Ան որ
ինծի կը հաւատայ, ինծի չհաւատար, հապա
45 զիս ղրկողին. Եւ ան որ զիս կը տեսնէ, զիս
46 ղրկողը կը տեսնէ։ Ես լոյս եկայ աշխարհ, որ-
պէս զի ամէն ով որ ինծի հաւատայ, խաւարի
47 մէջ չմնայ։ Եւ եթէ մէկը իմ խօսքերս լսէ ու
չհաւատայ, ես զանիկա չեմ դատեր, քանզի
ես չեկայ որպէս զի աշխարհը դատեմ, հապա
48 որպէս զի աշխարհը փրկեմ։ Ան որ զիս կ'ա-
նարգէ և իմ խօսքերս չընդունիր, կայ մէկը
որ զանիկա կը դատէ. այն խօսքը զոր ես խօ-
սեցայ, ան պիտի դատէ զանիկա վերջին օրը։
49 Վասն զի ես ինքիրմէս չխօսեցայ, հապա Հայրը
որ զիս ղրկեց՝ ինք ինծի պատուիրեց ինչ որ
50 պիտի ըսեմ և ինչ որ պիտի խօսիմ։ Եւ գի-
տեմ որ անոր պատուիրածը յաւիտենական
կեանք է. ուստի ինչ որ ես կը խօսիմ, ինչպէս
Հայրը ինծի ըսաւ, այնպէս կը խօսիմ։

## ԳԼ. ԺԳ

1 Յիսուս իր աշակերտներուն ոտքերը կը լուայ, յորդորելով զանոնք որ խոնարհութեամբ և սիրով վարուին իրարու հետ. 18 կը նախաձայնէ Յուդայի զինք մատնելը, և նշանով մը մատնիչին ո՛վ ըլլալը կը յայտնէ Յովհաննէսի. 31 կը պատուիրէ իր աշակերտներուն մէկզմէկ սիրել, 36 և կ'իմացնէ Պետրոսի թէ պիտի ուրանայ զինք։

1 Զատկի տօնէն առաջ՝ Յիսուս գիտնալով թէ
իր ժամանակը հասեր է որ այս աշխարհէն ելլէ
Հօրը քով, սիրելով իրենները որոնք աշխարհի
մէջ էին, մինչև վերջն ալ սիրեց զանոնք։
2 Եւ երբ ընթրիքը կ'ըլլար, (Սատանայ արդէն
Իսկարիովտացի Սիմոնեան Յուդայի սրտին մէջ
3 դրեր էր, որ զանիկա մատնէ.) Յիսուս գիտնա-
լով թէ Հայրը ամէն բան իր ձեռքը տուաւ, և
թէ ինք Աստուծմէ ելաւ ու Աստուծոյ քով
4 կ'երթայ, Ընթրիքէն ելաւ, և հանդերձները
մէկդի դրաւ ու ղենջակ մը առնելով մէջքը
5 փաթթեց։ Ետքը կոնքին մէջ ջուր լեցուց, ու
սկսաւ աշակերտներուն ոտքերը լուալ, և այն
6 իր փաթթուած ղենջակովը սրբել։ Ուստի եկաւ
Սիմոն Պետրոսի. ան ալ ըսաւ անոր, Տէր, դո՞ւն
7 իմ ոտքերս պիտի լուաս։ Յիսուս պատասխան
տուաւ ու ըսաւ անոր, Ես ինչ որ կ'ընեմ, դուն
հիմա չես իմանար, հապա ետքը պիտի իմանաս։
8 Պետրոս ըսաւ անոր, Բնաւ դուն իմ ոտքերս
պիտի չլուաս. պատասխան տուաւ անոր Յիսուս,
Եթէ քեզ չլուամ, դուն ինծի հետ բաժին չու-
9 նիս։ Սիմոն Պետրոս ըսաւ անոր, Տէր, ոչ թէ
միայն ոտքերս, հապա նաև ձեռքերս ու գլուխս։
10 Յիսուս ըսաւ անոր, Լուացուածին՝ ոտքերը
լուալէն զատ ուրիշ բանի պէտք չէ, այլ բոլորովին
մաքուր է. և դուք մաքուր էք, բայց ոչ թէ
11 ամէնդ։ Վասն զի գիտէր զանիկա որ զինք պիտի
մատնէր. անոր համար ըսաւ, Ոչ թէ ամէնդ ալ
12 մաքուր էք։ Ու երբ անոնց ոտքերը լուաց, և

*իր հանդերձները առնելով նորէն սեղան նստաւ ,*
13 *ըսաւ անոնց , Գիտէ՞ք, ի՛նչ ըրի ձեզի ։ Դուք զիս*
*Վարդապետ ու Տէր կը կոչէք , և աղէկ կ'ըսէք ,*
14 *վասն զի այնպէս եմ ։ Հապա եթէ ես Տէրս ու*
*Վարդապետս ձեր ոտքերը լուացի , պէտք է որ*
15 *դուք ալ իրարու ոտքերը լուաք ։ Վասն զի ձեզի*
*օրինակ մը տուի , որպէս զի ինչպէս ես ձեզի*
16 *ըրի՝ դուք ալ ընէք ։ Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ*
*ձեզի , Ծառան իր տէրոջմէն մեծ չէ , ոչ ալ*
17 *ղրկուածը զինք ղրկողէն մեծ է ։ Եթէ դուք*
*այս բաները գիտէք , երանելի էք եթէ զանոնք*
18 *կատարէք ։ Ոչ թէ ձեր ամէնուն համար կ'ը-*
*սեմ , վասն զի ես կը ճանչնամ զանոնք որ ես ընտ-*
*րեցի , հապա որպէս զի այն գրուածը կատարուի*
*թէ Ան որ ինծի հետ հաց կ'ուտէր , ինծի դէմ*
19 *կրունկ վերցուց ։ Հիմակուընէ կ'ըսեմ ձեզի՝*
*քանի որ չէ եղեր , որպէս զի երբ ըլլայ , հա-*
20 *ւատաք թէ ես անիկա եմ ։ Ճշմարիտ ճշմարիտ կ'ը-*
*սեմ ձեզի , Ով որ կ'ընդունի զանիկա զոր ես*
*կը ղրկեմ , զիս կ'ընդունի . և ով որ զիս կ'ըն-*
*դունի , զիս ղրկողը կ'ընդունի ։*
21 *Յիսուս երբ զայս ըսաւ , իր հոգիին մէջ խռովե-*
*ցաւ , և վկայեց ըսելով , Ճշմարիտ ճշմարիտ կ'ը-*
*սեմ ձեզի, որ ձեզմէ մէկը զիս պիտի մատնէ ։*
22 *Ուստի աշակերտները տարակուսած իրարու*
23 *կը նայէին թէ որու համար կը զրուցէ ։ Ու ա-*
*շակերտներէն մէկը կար Յիսուսի *քով նստած ,*
24 *զոր Յիսուս կը սիրէր ։ Եւ Սիմոն Պետրոս անոր*
*աչք կ'ընէր հարցնելու թէ ո՛վ պիտի ըլլայ ա-*
25 *նիկա՝ որու համար կը զրուցէ ։ Ան ալ Յիսուսի*
*կուրծքին վրայ ինկալով՝ ըսաւ անոր , Տէր , ո՞վ է*
26 *ան ։ Յիսուս պատասխան տուաւ , Անիկա է՝*
*որու պատառը թրջելով կու տամ . և թրջելով*
*պատառը Իսկարիովտացի Սիմոնեան Յուդայի*

---

*Յուն. գոգը

27 տուաւ։ Ու պատառէն ետքը Սատանայ անոր
ներսը մտաւ։ Եւ Յիսուս ըսաւ անոր, Ինչ որ
28 պիտի ընես՝ շուտով ըրէ։ Բայց այս բանը սե-
ղան նստողներէն մէկը չհասկցաւ, թէ ինչու
29 համար ըսաւ անոր։ Վասն զի ոմանք կը խոր-
հէին թէ որովհետեւ դանձանակը Յուդա կը պա-
հէր, Յիսուս անոր կ'ըսէր, Ծախէ առ ինչ որ
մեզի այս տօնին պէտք է, կամ՝ որպէս զի աղ-
30 քատներուն բան մը տայ։ Անիկա ալ պատառը
առածին պէս շուտ մը դուրս ելաւ, ու գիշեր էր։
31 Ու երբ անիկա դուրս ելաւ, Յիսուս ըսաւ․
Հիմա փառաւորուեցաւ Որդին մարդոյ, ու
32 Աստուած փառաւորուեցաւ անով։ Եթէ Աստ-
ուած անով փառաւորուեցաւ, Աստուած ալ
զանիկա իր անձովը պիտի փառաւորէ, և շու-
33 տով պիտի փառաւորէ զանիկա։ Որդեակներ,
քիչ մը ատեն ալ ձեզի հետ եմ, զիս պիտի
փնտռէք․ և ինչպէս Հրեաներուն ըսի թէ Ուր
ես կ'երթամ, դուք չէք կրնար գալ, հիմա ձեզի
34 ալ կ'ըսեմ։ Նոր պատուիրան մը կու տամ ձեզի
որ մէկզմէկ սիրէք, ինչպէս ես ձեզ սիրեցի,
35 որ դուք ալ մէկզմէկ սիրէք։ Ասով ամէնը պիտի
գիտնան թէ իմ աշակերտներս էք, եթէ իրա-
36 րու վրայ սէր ունենաք։ Սիմոն Պետրոս ըսաւ
անոր, Տէր, ո՞ւր կ'երթաս․ Յիսուս պատասխան
տուաւ անոր, Ուր ես կ'երթամ, դուն հիմա
չես կրնար իմ ետեւէս գալ, բայց ետքը պիտի
37 գաս իմ ետեւէս։ Պետրոս ըսաւ անոր, Տէր,
ինչո՞ւ հիմա չեմ կրնար քու ետեւդ գալ․
ես իմ կեանքս ալ քեզի համար պիտի դնեմ։
38 Յիսուս պատասխան տուաւ անոր, Քու կեա՞նքդ
պիտի դնես ինծի համար․ ճշմարիտ ճշմարիտ
կ'ըսեմ քեզի, Հաւը պիտի չխօսի՝ մինչև դուն
երեք անգամ զիս ուրանաս։

## ԳԼ. ԺԴ

*1 Քրիստոս կը մխիթարէ իր աշակերտները՝ երկնային երջանկութեան յոյսը անոնց առջև դնելով. 6 կը ծանուցանէ թէ ինքն է ճանապարհը, ճշմարտութիւնը և կեանքը. և թէ ինք Հօրը հետ մէկ է. 13 կը խոստանայ որ իր անունով եղած աղօթքը պիտի կատարուի. 15 կը պատուիրէ սէր և հնազանդութիւն ունենալ իրեն. 16 կը խոստանայ ղրկել Մխիթարիչ Սուրբ Հոգին. 27 ու իր խաղաղութիւնը կու տայ անոնց ։*

1 Սիրտերնիդ չխռովի. Աստուծոյ հաւատացէք,
2 ինծի ալ հաւատացէք ։ Իմ Հօրս տունը շատ
բնակարաններ կան. ապա թէ ոչ՝ ես ձեզի պիտի
ըսէի, Հիմա կ'երթամ ու ձեզի տեղ կը պատ-
3 րաստեմ ։ Եւ եթէ երթամ ու ձեզի տեղ պատ-
րաստեմ, նորէն կու գամ և ձեզ քովս կ'առ-
նեմ, որպէս զի ուր ես եմ՝ դուք ալ հոն ըլլաք ։
4 Եւ ուր ես կ'երթամ՝ գիտէք, ու ճամբան ալ
գիտէք ։
5 Թովմաս ըսաւ անոր, Տէր, չենք գիտեր ուր
կ'երթաս, և ինչպէս կրնանք ճամբան գիտնալ ։
6 Յիսուս ըսաւ անոր, Ես եմ ճամբան ու ճշմար-
տութիւնը և կեանքը. մէկը Հօրը քով չգար՝
7 եթէ ոչ ինծմով ։ Եթէ զիս ճանչնայիք, իմ
Հայրս ալ կը ճանչնայիք. և ասկէ ետև կը ճանչ-
նաք զանիկա ու տեսաք զանիկա ։
8 Փիլիպպոս ըսաւ անոր, Տէր, Հայրը մեզի
9 ցուցուր, ու հերիք է մեզի ։ Ըսաւ անոր Յիսուս,
Այսքան ժամանակ ձեզի հետ եմ, և զիս չճանչ-
ցա՞ր, Փիլիպպոս. ան որ զիս տեսաւ՝ Հայրը տե-
սաւ, և դուն ինչպէս կ'ըսես թէ Հայրը մեզի
10 ցուցուր ։ Չե՞ս հաւատար թէ ես Հօրը մէջ եմ
ու Հայրը իմ մէջս է. այն խօսքերը զորս ես
ձեզի կը խօսիմ, ոչ թէ ինքնիրմէս կը խօսիմ,
հապա Հայրը որ իմ մէջս բնակած է, անիկա
11 կը գործէ այն գործերը ։ Հաւատացէք ինծի,
թէ ես Հօրը մէջ եմ ու Հայրը իմ մէջս է.
12 Ապա թէ ոչ՝ գոնէ գործերուն համար ինծի հա-

ւատացէք։ Ճշմարիտ ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի թէ
Ան որ ինծի կը հաւատայ, այն գործերը զո-
րոնք ես կը գործեմ, ինք ալ պիտի գործէ, և
անոնցմէ աւելի մեծ գործեր պիտի գործէ, վասն
13 զի ես Հօրս քով կ՚երթամ։ Եւ իմ անունովս
ինչ որ խնդրէք, պիտի կատարեմ զանիկա, որ-
14 պէս զի Հայրը Որդիովը փառաւորուի։ Եթէ
իմ անունովս բան մը խնդրէք, զանիկա պիտի կա-
15 տարեմ։ Եթէ զիս կը սիրէք, իմ պատուիրանք-
16 ներս պահեցէք։ Ես ալ Հօրը պիտի աղաչեմ,
և ուրիշ Մխիթարիչ մը պիտի տայ ձեզի, որ-
17 պէս զի յաւիտեան ձեզի հետ բնակի, Ճշմար-
տութեան Հոգին, զոր այս աշխարհը չկրնար
ընդունիլ, վասն զի չտեսներ զանիկա ու չճանչ-
նար զանիկա. բայց դուք կը ճանչնաք զանիկա,
վասն զի ձեր քով կը բնակի և ձեր մէջ պիտի
18 ըլլայ։ Ձեզ որբ չեմ թողուր, կու գամ ձեզի։
19 Քիչ մը ատենէն ետև ա՛լ աշխարհ զիս չտես-
ներ. բայց դուք պիտի տեսնէք զիս, վասն զի
ես կենդանի եմ, և դուք կենդանի պիտի ըլլաք։
20 Այն օրը պիտի գիտնաք թէ ես իմ Հօրս մէջ
21 եմ, և դուք իմ մէջս, ես ալ ձեր մէջ։ Ան որ
իմ պատուէրներս կը բռնէ ու կը պահէ զա-
նոնք, անիկա է զիս սիրողը. և ան որ զիս կը
սիրէ՝ իմ Հօրմէս պիտի սիրուի. ու ես զանիկա
պիտի սիրեմ, և ինքզինքս անոր պիտի յայտնեմ։
22 Ըսաւ անոր Յուդա, (ոչ Իսկարիովտացին,)
Տէր, ի՞նչպէս կ՚ըլլայ որ դուն ինքզինքդ մեզի
23 պիտի յայտնես, և ոչ թէ աշխարհի։ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ անոր, Եթէ մէկը
զիս կը սիրէ, իմ խօսքս պիտի պահէ. ու իմ Հայրս
զանիկա պիտի սիրէ, և անոր պիտի գանք ու
24 անոր քով օթևան պիտի ընենք։ Ան որ զիս
չսիրեր, իմ խօսքերս չպահեր. ու այն խօսքը
զոր կը լսէք՝ իմս չէ, հապա Հօրը՝ որ զիս ղրկեց։

25 Այս բաները ձեզի խօսեցայ, քանի որ ձեր քով
26 եմ։ Բայց Մխիթարիչը, Սուրբ Հոգին, զոր
Հայրը իմ անունովս պիտի ղրկէ, անիկա ձեզի
բոլորը պիտի սորվեցնէ, և ինչ որ ձեզի ըսի՝
27 միտքերնիդ պիտի բերէ։ Խաղաղութիւն կը թո-
ղում ձեզի, իմ խաղաղութիւնս կու տամ ձեզի.
ոչ թէ ինչպէս աշխարհս կու տայ՝ ես ձեզի
կու տամ. սիրտերնիդ չխռովի ու չվախնայ։
28 Լսեցիք որ ես ըսի ձեզի թէ Կ'երթամ ու ձեզի
կու գամ. եթէ զիս սիրէիք՝ պիտի ուրախա-
նայիք, *թէ ես Հօրը քով կ'երթամ, վասն զի
29 իմ Հայրս ինծմէ մեծ է։ Եւ հիմակուընէ դեռ
չեղած ըսի ձեզի, որպէս զի երբ ըլլայ՝ հաւատաք։
30 Ալ ձեզի հետ շատ պիտի չխօսիմ, վասն զի այս աշ-
խարհին իշխանը կու գայ, և իմ վրաս բան մը
31 չունի. Միայն թէ աշխարհ գիտնայ որ ես Հայրը
կը սիրեմ, ու ինչպէս Հայրը ինծի պատուիրեց,
այնպէս կ'ընեմ. ելէք, ասկէ երթանք։

## ԳԼՈՒԽ ԺԵ

1 Քրիստոսի ու իր անդամներուն մէջ եղած մխիթարութիւնը և փոխադարձ սէրը որթին առակովը բացատրուած։ 18 Քրիստոսի աշակերտներուն մխիթարութիւնը՝ երբոր անոնք աշխարհէն ատելի կ'ըլլան և կը հալածուին։ 26 Սուրբ Հոգին և առաքեալներուն պաշտօնը։

1 Ես եմ ճշմարիտ որթը, և իմ Հայրս մշակն է։
2 Ամէն ճիւղ որ իմ վրաս է ու պտուղ չբերեր,
կը կտրէ զանիկա, և ամէնը որ պտուղ կը բերէ,
կը մաքրէ զանիկա, որպէս զի ալ աւելի պտուղ
3 բերէ։ Դուք հիմակուընէ մաքուր էք այն խօսքով
4 զոր ձեզի խօսեր եմ։ Իմ մէջս կեցէք, ու ես
ձեր մէջ. ինչպէս ճիւղը չկրնար ինքիրմէ պտուղ
բերել, եթէ որթին վրայ հաստատուած չըլլայ,
նոյնպէս դուք չէք կրնար, եթէ իմ վրաս հաս-
5 տատուած չըլլաք։ Ես որթն եմ — դուք ճիւ-
ղերն էք. ան որ իմ վրաս հաստատուած է՝ և

*Ոմանք, որ ըսի թէ

*ես անոր վրայ, անիկա շատ պտուղ կը բերէ,*
*վասն զի առանց ինծի բան մը չէ՛ք կրնար ընել։*
6 *Եթէ մէկը իմ վրաս հաստատուած չէ, անիկա*
*ճիւղի մը պէս դուրս ձգուած ու չորցած է․*
*և կը ժողվեն զանոնք ու կրակը կը նետեն, ու*
7 *կ՚այրին։ Եթէ դուք իմ մէջս կենաք, և իմ*
*խօսքերս ալ ձեր մէջ կենան, ինչ որ ուզէ՛ք*
8 *պիտի խնդրէք, ու պիտի ըլլայ ձեզի։ Ասով*
*իմ Հայրս փառաւորուեցաւ, որպէս զի դուք*
*շատ պտուղ բերէք, ու իմ աշակերտներս ըլլաք։*
9 *Ինչպէս Հայրը զիս սիրեց, ես ալ ձեզ սի-*
10 *րեցի․ իմ սիրոյս մէջ հաստատ կեցէ՛ք։ Եթէ իմ*
*պատուիրանքներս պահէք, իմ սիրոյս մէջ պիտի*
*կենաք․ ինչպէս ես իմ Հօրս պատուիրանքները*
11 *պահեցի, և անոր սիրոյն մէջ կեցեր եմ։ Այս*
*բաները ձեզի խօսեցայ, որպէս զի իմ ուրա-*
*խութիւնս ձեր մէջ մնայ, ու ձեր ուրախու-*
12 *թիւնը լման ըլլայ։ Այս է իմ պատուէրս որ*
13 *մէկզմէկ սիրէք, ինչպէս ես ձեզի սիրեցի։ Ասկէ*
*աւելի մեծ սէր մէ՛կը չկրնար ունենալ, որ մէկը*
14 *իր կեանքը բարեկամներուն համար դնէ։ Դուք*
*իմ բարեկամներս էք, եթէ ընելու ըլլաք ինչ*
15 *որ ես ձեզի կը պատուիրեմ։ Ասկէ ետքը ձեզ*
*ծառայ չեմ անուաներ, վասն զի ծառան չգի-*
*տեր իր տէրը ինչ կ՚ընէ․ հապա ես ձեզ բա-*
*րեկամ անուանեցի, վասն զի այն ամէն բա-*
*ները զորոնք իմ Հօրմէս լսեցի, ձեզի իմացու-*
16 *ցի։ Ոչ թէ դուք զիս ընտրեցիք, հապա ես*
*ձեզ ընտրեցի, ու դրի ձեզ որպէս զի դուք*
*երթաք և պտուղ բերէք, ու ձեր պտուղը մնայ․*
*որպէս զի իմ անունովս ինչ որ Հօրմէն խնդ-*
17 *րէք, ձեզի տայ։ Զայս կը պատուիրեմ ձեզի*
*որ մէկզմէկ սիրէք։*
18 *Եթէ աշխարհ ձեզ կ՚ատէ, գիտցէք որ ձեզ-*
19 *մէ առաջ զիս ատեց։ Եթէ աշխարհէ եղած*

ըլլայիք, աշխարհ իրենները կը սիրէր. բայց
որովհետեւ աշխարհէ չէք, հապա ես ձեզ աշ-
խարհէ ընտրեցի, անոր համար աշխարհ ձեզ
20 կ'ատէ։ Միտքերնիդ բերէք այն խօսքը որ ձեզի
ըսի թէ Ծառան իր տէրոջմէն մեծ չէ. եթէ
զիս հալածեցին, ձեզ ալ պիտի հալածեն. եթէ
իմ խօսքս պահեցին, ձերն ալ պիտի պահեն։
21 Բայց այս ամէն բաները պիտի ընեն ձեզի իմ
անունիս համար, վասն զի չճանչցան զանիկա
22 որ զիս ղրկեց։ Եթէ ես եկած և անոնց խօսած
չըլլայի, անոնք մեղք չէին ունենար. բայց հիմա
23 իրենց մեղքին պատճառանք մը չունին։ Ան որ
24 զիս կ'ատէ, իմ Հայրս ալ կ'ատէ։ Եթէ այն
գործերը իրենց մէջ բրած չըլլայի, զորոնք ու-
րիշ մէկը չէ բրած, անոնք մեղք չէին ունենար.
բայց հիմա տեսան, ու ատեցին զիս ալ իմ
25 Հայրս ալ։ Սակայն այս եղաւ որպէս զի կատարուի
այն խօսքը որ իրենց օրէնքին մէջ գրուած է
26 թէ, Զուր ատեցին զիս։ Բայց երբ Մխի-
թարիչը գայ, զոր ես Հօրմէն ձեզի պիտի ղրկ-
կեմ, ճշմարտութեան Հոգին՝ որ Հօրմէն կ'ելլէ,
27 անիկա ինծի համար պիտի վկայէ. Եւ դուք ալ
կը վկայէք, վասն զի սկիզբէն ի վեր ինծի հետ էք։

## ԳԼ. ԺԶ

1 Քրիստոս կը յիշեցնէ իր աշակերտներուն անոնց կրելու նեղութիւնները, և կը մխիթարէ զանոնք Սուրբ Հոգին ղրկելու խոստմունքովը, և իր յարութիւնը ու երկինք համբառնալը նախաձայնելով. 23 կը հաստատէ թէ իր Հայրը պիտի լսէ անոնց աղօթքը՝ որ իր անունով կ'ընեն. 33 և թէ իրմով խաղաղութիւն պիտի ունենան, թէև աշխարհի մէջ նեղութիւն պիտի կրեն։

1 Այս բաները ձեզի խօսեցայ որպէս զի չգայ-
2 թակղիք։ Իրենց ժողովարաններէն դուրս պիտի
ձգեն ձեզ. ու ժամանակ ալ պիտի գայ որ ա-
մէն ով որ ձեզ սպաննէ, այնպէս պիտի սեպէ
3 թէ Աստուծոյ պաշտօն կը մատուցանէ։ Եւ այս
բաները ձեզ պիտի ընեն՝ անոր համար որ ոչ Հայրը

4 ճանչցան, ոչ ալ զիս ։ Բայց այս բաները ձեզի
խօսեցայ, որպէս զի երբ ժամանակը գայ, միտ-
քերնիդ բերէք թէ ես ըսի ձեզի . և այս բաները
սկիզբէն չըսի ձեզի, վասն զի ես ձեզի հետ էի ։
5 Սակայն հիմա ես կ'երթամ զիս ղրկողին
քով, և ձեզմէ մէ՛կն ալ չհարցներ ինծի թէ
6 Ո՞ւր կ'երթաս ։ Բայց որովհետև այս բաները
ձեզի խօսեցայ, ձեր սրտերը տրտմութիւնով
7 լեցան ։ Բայց ես ճշմարիտը կ'ըսեմ ձեզի . Աղէկ է
ձեզի եթէ ես երթամ . քանզի եթէ ես չեր-
թամ, Մխիթարիչը ձեզի չգար . հապա եթէ
8 երթամ, զանիկա ձեզի կը ղրկեմ ։ Եւ ինք երբ
գայ, աշխարհը պիտի յանդիմանէ մեղքի հա-
մար և արդարութեան համար ու դատաստանի
9 համար ։ Մեղքի համար՝ որ ինծի չեն հաւա-
10 տար . Արդարութեան համար՝ որ ես իմ Հօրս
11 քով կ'երթամ, և ալ զիս չէք տեսներ . Եւ դա-
տաստանի համար՝ որ այս աշխարհին իշխանը
12 դատապարտուած է ։ Ձեզի տակաւին շատ բա-
ներ ունիմ ըսելու, բայց հիմա չէք կրնար տա-
13 նիլ ։ Իսկ երբ ինք ճշմարտութեան Հոգին գայ,
ամէն ճշմարտութեան պիտի առաջնորդէ ձեզի .
վասն զի ոչ թէ ինքիրմէ պիտի խօսի, հապա
ինչ որ լսէ՝ զայն պիտի խօսի ու գալիքները
14 ձեզի պիտի պատմէ ։ Անիկա զիս պիտի փա-
ռաւորէ, վասն զի իմինէս պիտի առնէ ու ձեզի
15 պատմէ ։ Այն ամէն բաները զորոնք Հայրը ունի՝
իմս են . անոր համար ձեզի ըսի թէ իմինէս
16 պիտի առնէ ու ձեզի պատմէ ։ Քիչ մը ատենէն
ա՛լ զիս պիտի չտեսնէք, և դարձեալ քիչ մը
ատենէն զիս պիտի տեսնէք, քանզի ես Հօրը
կ'երթամ ։
17 Ասոր համար աշակերտներէն ոմանք իրարու
կ'ըսէին, Ի՞նչ է այս որ մեզի կ'ըսէ թէ Քիչ մը
ատենէն ա՛լ զիս պիտի չտեսնէք, և դարձեալ

քիչ մը ատենէն զիս պիտի տեսնէք, և, Քանզի
18 ես Հօրը կ'երթամ։ Ու կ'ըսէին, Ի՞նչ պիտի ըլ-
լայ այն Քիչ մըն ալը՝ զոր կ'ըսէ. չենք գիտեր
19 ինչ կը գրուցէ։ Իսկ Յիսուս գիտնալով որ կ'ու-
զէին իրեն հարցնել, ըսաւ անոնց, Անո՞ր համար
իրարու կը հարցնէք, որ ըսի թէ Քիչ մը ատե-
նէն ա՛լ զիս պիտի չտեսնէք, և դարձեալ քիչ մը
20 ատենէն զիս պիտի տեսնէք։ Ճշմարիտ ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի, Դուք պիտի լաք ու ողբաք,
բայց աշխարհ պիտի ուրախանայ. դուք պիտի
տրտմիք, սակայն ձեր տրտմութիւնը ուրախու-
21 թեան պիտի փոխուի։ Կին մը երբ ծնանելու
վրայ է՝ տրտմութիւն կ'ունենայ, վասն զի իր
ժամը հասած է. բայց երբ տղան ծնանի, ալ
նեղութիւնը միտք չբերեր ուրախութենէն՝ որ
22 աշխարհ մարդ մը ծնաւ։ Եւ յիրաւի դուք
հիմա տրտմութիւն ունիք. բայց ես ձեզ նորէն
պիտի տեսնեմ, և ձեր սիրտերը ուրախ պիտի
ըլլան, ու ձեր ուրախութիւնը մէկը ձեզմէ
23 պիտի չհանէ։ Եւ այն օրը ինծի բան մը պիտի
չհարցնէք։ Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
որ իմ անունովս ինչ որ խնդրէք Հօրմէն, պիտի
24 տայ ձեզի։ Մինչև հիմա իմ անունովս բա՛ն մը
չխնդրեցիք. խնդրեցէք ու պիտի առնէք, որ-
25 պէս զի ձեր ուրախութիւնը լման ըլլայ։ Այս
բաները առակներով խօսեցայ ձեզի. բայց ժա-
մանակ պիտի գայ, որ ալ ձեզի առակներով
պիտի չխօսիմ, հապա յայտնապէս Հօրը վրայով
26 պիտի պատմեմ ձեզի։ Այն օրը իմ անունովս
պիտի խնդրէք. և չեմ ըսեր ձեզի թէ ես ձեզի
27 համար պիտի աղաչեմ Հօրը. Քանզի ինք Հայրը
ձեզ կը սիրէ, վասն զի դուք զիս սիրեցիք և հա-
28 ւատացիք թէ ես Աստուծմէ ելայ։ Հօրմէն ելայ
ու աշխարհ եկայ. նորէն կը թողում աշխարհը
և Հօրը կ'երթամ։

29 Ըսին անոր իր աշակերտները, Ահա հիմա
յայտնապէս կը խօսիս, եւ առակ մըն ալ չես
30 ըսեր։ Հիմա գիտցանք որ ամէն բան գիտես,
եւ բա՛ն մըն ալ պէտք չէ որ մէկը քեզի հարցնէ.
31 ասով կը հաւատանք որ Աստուծմէ ելար։ Յիսուս
պատասխան տուաւ անոնց ու ըսաւ, Հիմա կը հա-
32 ւատա՞ք. Ահա ժամանակ պիտի գայ, ու եկած
ալ է, որ ցիրուցան պիտի ըլլաք ամէն մէկը իր
տեղը, ու զիս մինակ պիտի թողուք. բայց ես
33 մինակ չեմ, վասն զի Հայրը ինծի հետ է։ Այս
բաները ձեզի խօսեցայ, որպէս զի ինծմով խա-
ղաղութիւն ունենաք. աշխարհի մէջ նեղու-
թիւն պիտի ունենաք. բայց քաջասիրտ եղէք,
ես աշխարհի յաղթեցի։

## ԳԼ. ԺԷ

*4 Քրիստոս կ'աղաչէ իր Հօրը որ փառաւորէ զինք, 6 որ հաստատ պահէ իր աշակերտները 11 միութեան մէջ 17 և ճշմարտութեան մէջ, 20 որ երկինքին մէջ իրեն հետ փառաւորէ զանոնք և ամէն ուրիշ հաւատացեալները։*

1 Յիսուս երբ ասոնք խօսեցաւ, իր աչքերը դէպ ի
երկինք վերցուց ու ըսաւ, Հայր, ժամանակը
հասեր է, փառաւորէ քու Որդիդ, որպէս զի
2 քու Որդիդ ալ քեզ փառաւորէ. Ինչպէս իրեն
իշխանութիւն տուիր ամէն մարմնի վրայ, որ
յաւիտենական կեանք տայ այն ամէնուն զոր
3 իրեն տուիր։ Եւ այս է յաւիտենական կեանքը,
որ ճանչնան քեզ մի միայն ճշմարիտ Աստուածդ,
4 ու Յիսուս Քրիստոսը զոր դուն ղրկեցիր։ Ես
քեզ երկրի վրայ փառաւորեցի, այն գործը զոր
5 ինծի տուիր ընելու՝ լմնցուցի։ Եւ հիմա, ով
Հայր, փառաւորէ զիս քու քովդ այն փառքովը
6 զոր աշխարհի ըլլալէն առաջ քովդ ունէի։ Քու
անունդ յայտնի ըրի այն մարդոց զորոնք աշ-
խարհէ ինծի տուիր. քուկդ էին, ու ինծի տուիր
7 զանոնք եւ քու խօսքդ պահեցին։ Հիմա գիտ-

ցան թէ այն ամէն բաները զորոնք ինծի տուիր,
8 քեզմէ են. Վասն զի այն խօսքերը զորոնք ինծի
տուիր, ես անոնց տուի, անոնք ալ ընդունե-
ցին, և ճշմարտութեամբ իմացան որ ես քեզմէ
ելայ, ու հաւատացին թէ դուն ղրկեցիր զիս ։
9 Ես անոնց համար կ'աղաչեմ. ոչ թէ աշխարհի
համար կ'աղաչեմ, հապա անոնց համար՝ զո-
րոնք դուն ինծի տուիր, վասն զի քուկդ են ա-
10 նոնք ։ Եւ ինչ որ իմս է՝ այն բոլորը քուկդ է,
և ինչ որ քուկդ է՝ այն իմս է, ու ես անոնցմով
11 փառաւորուած եմ ։ Եւ ես ա՛լ աշխարհի մէջ
չեմ, բայց անոնք աշխարհի մէջ են, ու ես քեզի
կու գամ. ով Սուրբ Հայր, քու անունովդ պահէ
զանոնք որ դուն ինծի տուիր, որպէս զի մէկ
12 ըլլան, ինչպէս մենք մէկ ենք ։ Քանի որ աշխարհի
մէջ անոնց հետ էի, ես կը պահէի զանոնք քու
անունովդ. զորոնք որ դուն ինծի տուիր, ես
պահեցի, և անոնցմէ մէ՛կը չկորսուեցաւ, միայն
թէ այն կորստեան որդին, որպէս զի գրուածը
13 կատարուի ։ Ալ հիմա քեզի կու գամ, ու աշ-
խարհի մէջ այս բաները կը խօսիմ, որպէս զի
իմ ուրախութիւնս իրենց անձերուն մէջ կա-
14 տարեալ ունենան ։ Ես քու խօսքդ անոնց տուի,
ու աշխարհ զանոնք ատեց. վասն զի աշխարհէ
15 չեն, ինչպէս ես աշխարհէ չեմ ։ Չեմ աղաչեր
որ զանոնք աշխարհէ վերցնես, հապա որ զա-
16 նոնք չարէն պահես ։ Անոնք աշխարհէ չեն,
17 ինչպէս ես աշխարհէ չեմ ։ Սրբէ զանոնք քու
ճշմարտութիւնովդ. քու խօսքդ ճշմարտու-
18 թիւն է ։ Ինչպէս դուն զիս աշխարհ ղրկեցիր,
19 ես ալ զանոնք աշխարհ ղրկեցի ։ Եւ անոնց հա-
մար ես իմ անձս կը սրբեմ, որպէս զի իրենք ալ
20 ճշմարտութիւնով սրբուած ըլլան ։ Բայց ոչ թէ
միայն անոնց համար կ'աղաչեմ, հապա անոնց
խօսքովը բոլոր ինծի հաւատացողներուն հա-

21 մար ալ․ Որպէս զի ամէնն ալ մէկ ըլլան, ինչ-
պէս դուն, ով Հայր, իմ մէջս՝ ու ես քու մէջդ,
որպէս զի անոնք ալ մեր մէջ մէկ ըլլան, որ-
պէս զի աշխարհ հաւատայ թէ դուն ղրկե-
22 ցիր զիս ։ Եւ այն փառքը զոր դուն ինծի
տուիր, ես անոնց տուի, որպէս զի մէկ ըլլան՝
23 ինչպէս մենք մէկ ենք․ (Ես անոնց մէջ՝ և դուն
իմ մէջս․) որպէս զի իրենք կատարեալ ըլլան
միութեան մէջ․ ու աշխարհ գիտնայ թէ դուն
ղրկեցիր զիս, ու սիրեցիր զանոնք՝ ինչպէս զիս
24 սիրեցիր ։ Ով Հայր, զանոնք որ դուն ինծի
տուիր, կ'ուզեմ որ ուր որ ես եմ՝ անոնք ալ
ինծի հետ ըլլան, որպէս զի տեսնեն իմ փառքս
զոր ինծի տուիր․ վասն զի դուն զիս սիրեցիր
25 աշխարհի սկիզբէն առաջ ։ Ով արդար Հայր,
աշխարհ քեզ չճանչցաւ, բայց ես քեզ ճանչ-
ցայ, և ասոնք ճանչցան թէ դուն զիս ղրկե-
26 ցիր ։ Եւ քու անունդ անոնց ճանչցուցի, ու
պիտի ճանչցնեմ, որպէս զի այն սէրը որով դուն
զիս սիրեցիր, անոնց մէջ ըլլայ, ու ես ալ ա-
նոնց մէջ ։

## ԳԼ. ԺԸ

1 Յուդա կը մատնէ զՅիսուս ։ 6 Յիսուսի վրայ եկողները գետինը կը զարնուին ։ 10 Պետրոս սուրով կը կտրէ Մաղքոսի ականջը ։ 12 Յիսուս կը բռնուի ու կը տարուի Աննայի և Կայիափայի առջև ։ 15 Պետրոսի ուրացութիւնը ։ 19 Յիսուս կը քննուի Կայիափայի առջև ։ 28 կ'ամբաստանուի Պիղատոսի առջև ։ 36 Քրիստոսի թագաւորութիւնը ։ 40 Հրեաները կ'ուզեն որ Բարաբբա արձակուի ։

1 Յիսուս այս բաները ըսելէն ետև՝ իր աշակերտ-
ներուն հետ մէկտեղ Կեդրոն հեղեղատին ան-
դին կողմը ելաւ, ուր պարտէզ մը կար, որուն
2 մէջ մտաւ ինք ու իր աշակերտները ։ Եւ Յուդա
ալ, որ զանիկա պիտի մատնէր, գիտէր այն տեղը,
վասն զի Յիսուս շատ անգամ իր աշակերտնե-
3 րուն հետ մէկտեղ հոն ժողվուած էր ։ Ուստի
Յուդա զինուորներուն գունդը ու քահանայապետ-

*ներէն և փարիսեցիներէն սպասաւորներ իրեն*
*հետ առնելով՝ այն տեղ եկաւ ջահերով ու լապ-*
4 *տերներով և զէնքերով։ Իսկ Յիսուս իր վրայ գա-*
*լու բոլոր բաները գիտնալով՝ ելաւ ու ըսաւ ա-*
5 *նոնց, Ո՞վ կը փնտռէք։ Պատասխան տուին անոր,*
*Նազովրեցի Յիսուսը․ ըսաւ անոնց Յիսուս, Ես*
*եմ․ Յուդա ալ, որ զանիկա կը մատնէր, անոնց*
6 *հետ կայներ էր ։ Ու երբ ըսաւ թէ Ես եմ,*
7 *ետ ետ գացին ու գետինը ինկան ։ Եւ նորէն*
*հարցուց անոնց, Ո՞վ կը փնտռէք․ անոնք ալ*
8 *ըսին, Նազովրեցի Յիսուսը ։ Յիսուս պատասխան*
*տուաւ, Ձեզի ըսի թէ Ես եմ․ ուստի եթէ զիս*
*կը փնտռէք, թող տուէք ասոնք որ երթան ։*
9 *Որպէս զի կատարուի այն խօսքը զոր ինք ըսեր էր*
*թէ Զանոնք որ ինծի տուիր, անոնցմէ մէ՛կն ալ*
10 *չկորսնցուցի ։ Այն ատեն Սիմոն Պետրոս, որ սուր*
*մը ունէր, քաշեց զանիկա ու քահանայապե-*
*տին ծառային զարնելով՝ անոր աջ ականջը կտրեց*
*հանեց․ և այն ծառային անունը Մաղքոս էր ։*
11 *Իսկ Յիսուս ըսաւ Պետրոսի, Սուրդ իր պատեանը*
*դիր․ այն գաւաթը զոր Հայրը ինծի տուաւ՝*
*պիտի չխմե՞մ զանիկա ։*
12 *Ուստի զինուորներուն գունդը ու հազարապետը*
*և Հրէից սպասաւորները բռնեցին Յիսուսը ու*
13 *կապեցին․ Եւ առաջ զանիկա Աննայի տարին,*
*քանզի ինք այն տարուան քահանայապետին,*
14 *Կայիափայի, աներն էր ։ Եւ այս Կայիափան էր,*
*որ Հրէից խրատ տուաւ թէ Աղէկ է որ մարդ*
15 *մը կորսուի ժողովուրդին համար ։ Ու Յիսուսի*
*ետևէն կ'երթային Սիմոն Պետրոս և ուրիշ ա-*
*շակերտ մը․ և այն աշակերտը քահանայապե-*
*տին ճանչուորը ըլլալով՝ Յիսուսի հետ քահա-*
16 *նայապետին գաւիթը մտաւ ։ Բայց Պետրոս*
*դուրսը դրանը քով կը կենար․ ուստի ելաւ միւս*
*աշակերտը, որ քահանայապետին ճանչուորն էր,*

և ըսաւ դռնապանին, ու ներս մտցուց Պետ-
17 րոսը։ Այն ատեն դռնապան աղջիկը ըսաւ Պետ-
րոսի, Միթէ դո՞ւն ալ այն մարդուն աշակերտ-
18 ներէն ես. ան ալ ըսաւ, Չեմ։ Իսկ ծառաները
ու սպասաւորները հոն կայներ էին, և կրակ վա-
ռած կը տաքնային, քանզի ցուրտ էր։ Պետ-
րոս ալ անոնց հետ կայներ էր ու կը տաքնար։
19 Եւ քահանայապետը Յիսուսի հարցուց անոր ա-
շակերտներուն ու վարդապետութեանը վրայով։
20 Յիսուս պատասխան տուաւ անոր, Ես աշխարհի
յայտնի խօսեցայ. ես ամէն ատեն ժողովա-
րաններուն մէջ ու տաճարին մէջ սորվեցուցի,
ուր բոլոր Հրեաները կը ժողվուին, ու ծածկա-
21 բար բան մը չխօսեցայ։ Ինչո՞ւ ինծի կը հարցնես,
լսողներուն հարցուր թէ ի՛նչ խօսեցայ իրենց.
22 ահա ի՛նչ որ խօսեցայ՝ գիտեն իրենք։ Երբ զայս
ըսաւ, սպասաւորներէն մէկը որ հոն կայներ էր,
Յիսուսի ապտակ մը զարկաւ՝ ըսելով, Այդպէ՞ս
23 պատասխան կու տաս քահանայապետին։ Յի-
սուս անոր պատասխանեց, Եթէ չար խօսեցայ,
վկայէ չարին համար. իսկ եթէ բարի խօսեցայ,
24 ինչո՞ւ կը զարնես ինծի։ Եւ Աննա զանիկա կա-
25 պած՝ Կայիափա քահանայապետին ղրկեց։ Սի-
մոն Պետրոս ալ հոն կայներ էր ու կը տաքնար.
և ըսին իրեն. Միթէ դո՞ւն ալ անոր աշակերտ-
ներէն ես. անիկա ուրացաւ ու ըսաւ թէ Չեմ։
26 Քահանայապետին ծառաներէն մէկն ալ, այն
մարդուն ազգականը որուն ականջը Պետրոս կտրեր
էր, ըսաւ, Չէ՞ որ ես քեզ տեսայ պարտէզին
27 մէջ անոր հետ։ Այն ատեն Պետրոս նորէն ու-
րացաւ, և շուտ մը հաւը խօսեցաւ։
28 Եւ Յիսուսը Կայիափայի տունէն կուսակալին պա-
լատը տարին, և ալ առտու էր. ու իրենք պա-
լատը չմտան, որպէս զի չպղծուին, հապա որ-
29 պէս զի զատիկը ուտեն։ Ուստի Պիղատոս դուրս

ելաւ անոնց ու ըսաւ, Ի՞նչ ամբաստանութիւն
30 կը ներկայացնէք այս մարդուն դէմ։ Պատաս-
խան տուին ու ըսին իրեն, Եթէ ասիկա չա-
րագործ մը չըլլար, քեզի չէինք մատներ զա-
31 նիկա։ Այն ատեն Պիղատոս ըսաւ անոնց, Դուք
առէք զանիկա, ու ձեր օրէնքին համեմատ անոր
դատաստանը տեսէք։ Հրեաները իրեն ըսին,
32 Մեզի օրինաւոր չէ մարդ մը մեռցնել. Որպէս
զի կատարուի Յիսուսի խօսքը, զոր ըսաւ՝ ի-
մացնելով թէ ի՛նչ մահով պիտի մեռնէր։
33 Իսկ Պիղատոս նորէն պալատը մտաւ, կանչեց
Յիսուսը ու ըսաւ անոր, Դո՞ւն ես Հրէից թա-
34 գաւորը։ Յիսուս պատասխան տուաւ անոր,
Ասիկա դուն քեզմէ՞ կ'ըսես, թէ ինծի համար
35 ուրիշները քեզի ըսին։ Պատասխան տուաւ Պի-
ղատոս, Միթէ ես Հրեա՞յ եմ. քու ազգդ և
քահանայապետները քեզ ինծի մատնեցին.
36 ի՞նչ ըրած ես դուն։ Յիսուս պատասխան տուաւ,
Իմ թագաւորութիւնս այս աշխարհէն չէ. եթէ
այս աշխարհէն ըլլար իմ թագաւորութիւնս,
իմ սպասաւորներս կը կռուէին՝ որպէս զի ես
Հրէից ձեռքը չմատնուիմ, բայց հիմա իմ թա-
37 գաւորութիւնս ասկէ չէ։ Այն ատեն Պիղատոս
ըսաւ անոր, Ուրեմն դուն թագաւո՞ր մըն ես.
պատասխան տուաւ Յիսուս, Դուն կ'ըսես, քան-
զի թագաւոր եմ. ես այս բանին համար ծնած եմ,
և ասոր համար աշխարհ եկած, որպէս զի ճշմար-
տութեան համար վկայեմ. այն ամէնը որ ճշմար-
38 տութենէն է՝ իմ ձայնիս ականջ կը դնէ։ Պի-
ղատոս ըսաւ անոր, Ի՞նչ է ճշմարտութիւնը.
և այս ըսելով նորէն դուրս ելաւ Հրեաներուն
և ըսաւ անոնց, Ես յանցանք մը չեմ գտներ
39 անոր վրայ։ Բայց սովորութիւն ունիք որ մարդ մը
արձակեմ ձեզի զատկին. հիմա կ'ուզէ՞ք որ
40 Հրէից թագաւորը արձակեմ ձեզի։ Այն ատեն

ամէնն ալ նորէն աղաղակեցին՝ ըսելով, Մի՛ ար-
ձակեր ատիկա, հապա Բարաբբան. ու Բարաբբա
աւազակ մըն էր։

## ԳԼ. ԺԹ

1 Յիսուս կը ծեծուի, զինուորներն ալ փշեայ պսակ կը դնեն անոր գլուխը, և անոր ապտակներ կը զարնեն։ 4 Պիղատոս կ'ուզէ ազատել զՅիսուս, բայց Հրէից աղաղակներուն զիջանելով՝ ձեռք կու տայ զանիկա որ խաչուի։ 23 Յիսուսի պատմուճանին վրայ վիճակ կը ձգեն։ 26 Յիսուս իր մայրը Յովհաննէսի կը յանձնէ. 28 կը մեռնի։ 34 Զինուոր մը Յիսուսի կողը կը խոցէ։

1 Այն ատեն Պիղատոս առաւ Յիսուսը ու ծեծեց։
2 Զինուորներն ալ փուշերէ պսակ հիւսելով՝ անոր
գլուխը դրին, և անոր ծիրանի հանդերձ մը
3 հագցուցին. Ու կ՚ըսէին, Ողջոյն քեզ, Հրէից
թագաւոր. և ապտակներ կը զարնէին անոր։
4 Պիղատոս նորէն դուրս ելաւ ու ըսաւ անոնց,
Ահա զանիկա դուրս կը բերեմ ձեզի, որպէս զի
գիտնաք թէ ես անոր վրայ յանցանք մը չեմ
5 գտներ։ Այն ատեն Յիսուս դուրս ելաւ՝ փշեղէն
պսակն ու ծիրանի հանդերձը հագած. և Պիղա-
6 տոս ըսաւ անոնց, Ահա այն մարդը։ Քահանայա-
պետները ու սպասաւորները երբ տեսան զա-
նիկա, աղաղակեցին ու ըսին, Խաչը հանէ, խաչը
հանէ [ատիկա]։ Պիղատոս ըսաւ անոնց, Դո՛ւք
առէք ատիկա ու խաչը հանեցէք, վասն զի ես
7 ասոր վրայ յանցանք մը չեմ՝ գտներ։ Հրեա-
ները պատասխան տուին իրեն, Մենք օրէնք
ունինք, և մեր օրէնքին համեմատ պէտք է որ
մեռնի, վասն զի ինքզինք Աստուծոյ Որդի ըրաւ։
8 Երբ Պիղատոս այս խօսքը լսեց, ալ աւելի վախ-
9 ցաւ։ Ու նորէն պալատը մտնելով՝ ըսաւ Յի-
սուսի, Ուրկէ՞ ես դուն. բայց Յիսուս պա-
10 տասխան չտուաւ անոր։ Ուստի Պիղատոս ըսաւ
անոր, Ինծի հետ չե՞ս խօսիր. չե՞ս գիտեր որ
ես իշխանութիւն ունիմ՝ քեզ խաչը հանելու,
11 ու իշխանութիւն ունիմ՝ քեզ արձակելու։ Յի-

ուս պատասխան տուաւ, Դուն իմ վրաս մէկ
իշխանութիւն ալ չէիր ունենար, եթէ քեզի
վերէն տրուած չըլլար. անոր համար՝ ան որ
զիս քեզի մատնեց, անոր մեղքը աւելի մեծ է։
12 Ալ անկէ ետև Պիղատոս կը փնտռէր թէ ինչպէս
զանիկա արձակէ. բայց Հրեաները կ'աղաղակէին
ու կ'ըսէին, Եթէ ասիկա արձակես, Կայսրին
բարեկամը չես. ամէն ով որ ինքզինք թագա-
ւոր կ'անուանէ, անիկա Կայսրին հակառակ
13 կը խօսի։ Իսկ Պիղատոս երբ այս խօսքը լսեց,
դուրս հանեց Յիսուսը, ու նստաւ բեմին վրայ,
այն տեղը որ Քարայատակ կ'ըսուէր, և Եբրայե-
14 ցերէն՝ Կապպաթա. (Զատկին ուրբաթ օրն էր
ու ժամը վեցին ատեններն էր.) և Հրեանե-
15 րուն ըսաւ, Ահա ձեր թագաւորը։ Բայց անոնք
աղաղակեցին, Վերցուր, վերցուր, խաչը հանէ
ասիկա։ Պիղատոս ըսաւ անոնց, Ձեր թագա-
ւորը խա՞չը հանեմ։ Քահանայապետները պա-
տասխան տուին, Մենք Կայսրէն զատ թագա-
16 ւոր չունինք։ Այն ատեն անոնց ձեռքը տուաւ
զանիկա որպէս զի խաչուի։
17 Անոնք ալ առին Յիսուսը ու կը տանէին. և
ինք իր խաչը վերցնելով՝ ելաւ Գագաթ ըսուած
տեղը, որ Եբրայեցերէն Գողգոթա կ'ըսուի։
18 Հոն զանիկա խաչը հանեցին, և անոր հետ ու-
րիշ երկու ալ՝ մէկ դիէն ու միւս դիէն, և մէջ-
19 տեղը Յիսուսը։ Տախտակ մըն ալ գրեց Պիղա-
տոս, ու դրաւ խաչին վրայ, և այսպէս գրուած էր.
20 Յիսուս Նազովրեցի Թագաւոր Հրէից։ Եւ այն
տախտակը Հրեաներէն շատերը կարդացին,
վասն զի քաղաքին մօտ էր այն տեղը՝ ուր Յի-
սուս խաչուեցաւ. ու գրուած էր Եբրայեցե-
21 րէն, Յունարէն և Լատիներէն։ Այն ատեն
Հրէից քահանայապետները Պիղատոսի ըսին,
Մի գրեր Թագաւոր Հրէից, հապա թէ Ինք

22 ըսաւ, Թագաւոր եմ Հրէից։ Պիղատոս պա-
տասխան տուաւ, Ինչ որ գրեցի՝ գրեցի։
23 Եւ զինուորները երբ Յիսուսը խաչը հանե-
ցին, անոր հանդերձները առին ու չորս բա-
ժին ըրին, ամէն մէկ զինուորին բաժին մը.
նաև պատմուճանը. իսկ պատմուճանը առանց
24 կարի էր վերէն վար բոլորը հիւսուած. Ուստի
ըսին իրարու, Ասիկա չպատռենք, հապա վի-
ճակ ձգենք ատոր վրայ թէ որո՛ւ պիտի ըլլայ.
որպէս զի կատարուի այն գրուածը որ կ՚ըսէ,
Իմ հանդերձներս իրենց մէջ բաժնեցին, և
իմ պատմուճանիս վրայ վիճակ ձգեցին. ահա
զինուորները այս բաները ըրին։
25 Եւ Յիսուսի խաչին քով կայներ էին իր մայրը
և իր մօրը քոյրը Մարիամ, Կղէովպասի կինը,
26 ու Մարիամ Մագդաղենացի։ Ուստի Յիսուս
երբ տեսաւ իր մայրը, և այն աշակերտը զոր
կը սիրէր, որ մօտը կայներ էր, ըսաւ իր մօրը,
27 Ով կին, ահա քու որդիդ։ Ետքը ըսաւ աշա-
կերտին, Ահա քու մայրդ. և այն ժամանակէն
աշակերտը զանիկա իր քով առաւ։
28 Անկէ ետև Յիսուս գիտնալով թէ արդէն
ամէն բան լմնցած է, (որպէս զի գրուածը
29 կատարուի,) ըսաւ, Ծարաւ եմ։ Եւ հոն քա-
ցախով լեցուն աման մը կար. անոնք ալ քա-
ցախով սպունգ մը լեցնելով, զոպայի ճիւղի
վրայ փաթթած՝ անոր բերնին մօտեցուցին։
30 Ուստի Յիսուս երբ քացախը առաւ՝ ըսաւ,
Ամէն բան կատարուեցաւ. ու գլուխը ծռելով՝
հոգին աւանդեց։
31 Իսկ Հրեաները, որովհետև ուրբաթ օր էր,
որ չըլլայ թէ այն մարմինները խաչին վրայ մնան
մինչև շաբաթ օրը, (վասն զի այն շաբաթը մեծ
օր էր,) Պիղատոսի աղաչեցին որ անոնց սրունք-
32 ները կոտրեն, ու վերցուին։ Ուստի զինուոր-

ները եկան և առաջինին սրունքները կոտրե-
ցին. նաև միւսինը՝ որ անոր հետ խաչը ելած
33 էր։ Բայց երբ Յիսուսի եկան ու տեսան որ
արդէն մեռած էր, անոր սրունքները չկոտրե-
34 ցին. Հապա զինուորներէն մէկը գեղարդով
անոր կողը խոցեց, և շուտ մը արիւն ու ջուր
35 ելաւ։ Եւ ան որ տեսաւ այս բաները՝ վկայեց, ու
անոր վկայութիւնը ճշմարիտ է, և ինք գիտէ
որ ճշմարիտ կ՚ըսէ, որպէս զի դուք [ալ] հա-
36 ւատաք։ Վասն զի այս բաները եղան որպէս զի
կատարուի այն գրուածը թէ Անոր մէկ ոսկորը
37 պիտի չկոտրուի։ Եւ մէյմըն ալ ուրիշ գրուած մը
կ՚ըսէ թէ Պիտի նային անոր՝ զոր խոցեցին։
38 Անկէ ետև Յովսէփ, որ Արիմաթիացի էր,
(Յիսուսի աշակերտ եղած՝ բայց գաղտուկ Հրեա-
ներուն վախէն,) աղաչեց Պիղատոսի, որ Յի-
սուսի մարմինը վերցնէ. Պիղատոս ալ հրաման
տուաւ. ուստի եկաւ ու վերցուց Յիսուսի մար-
39 մինը։ Նիկոդեմոս ալ եկաւ, (որ առաջուընէ
գիշերով Յիսուսի եկեր էր,) ու բերաւ հարիւր
լիտրի չափ զմուռսի ու հալուէի խառնուրդ մը։
40 Եւ Յիսուսի մարմինը առին, ու խունկերով
փաթթեցին զանիկա կտաւներու մէջ. ինչպէս
41 Հրեաները սովորութիւն ունին թաղելու։ Եւ
այն տեղը ուր խաչուեցաւ, պարտէզ մը կար,
ու այն պարտէզին մէջ նոր գերեզման մը, ո-
42 րուն մէջ ամենեւին մարդ դրուած չէր։ Հրեա-
ներուն ուրբաթին համար հոն դրին Յիսուսը.
վասն զի գերեզմանը մօտ էր։

## ԳԼ. Ի

1 Մարիամ գերեզմանը կ'երթայ. 3 Նմանապէս Պետրոս և Յովհաննէս հոն կ'երթան, չգիտնալով թէ Քրիստոս յարութիւն առած է։ 11 Յիսուս կ'երևնայ Մարիամ Մագդաղենացիին 19 և իր աշակերտներուն։ 24 Թովմասի թերահաւատութիւնը և դաւանութիւնը։ 30 Սուրբ Գիրքը բաւական է փրկութեան համար,

1 Եւ միաշաբթի օրը Մարիամ Մագդաղենացի
առտուանց դեռ չլուսցած գերեզմանը կու գայ,
ու կը տեսնէ որ քարը գերեզմանին դռնէն վեր-
2 ցուած է։ Ետքը կը վազէ կու գայ Սիմոն Պետ-
րոսի և միւս աշակերտին քով Յիսուս կը սիրէր,
և կ'ըսէ անոնց, Տէրը գերեզմանէն վերցուցին,
3 ու չենք գիտեր ո՛ւր դրին զանիկա։ Ուստի ելաւ
Պետրոս և միւս աշակերտը, ու դէպ ի գերեզմանը
4 կու գային։ Ու երկուքն ալ միատեղ կը վազէին.
և միւս աշակերտը Պետրոսէ աւելի շուտ վազե-
5 լով՝ անկէ առաջ գերեզմանը եկաւ։ Եւ ծռելով
նայեցաւ, ու տեսաւ որ կտաւները հոն կը կե-
6 նային. բայց ինք ներս չմտաւ։ Սիմոն Պետրոս ալ
հասաւ, որ անոր ետևէն կու գար, ու գերեզ-
մանը մտաւ, և տեսաւ կտաւները որոնք հոն
7 կը կենային. Ու վարշամակը որ անոր գլուխն էր՝
ուրիշ կտաւներուն հետ չէր, հապա ծալլուած զատ
8 մէկ կողմը դրուած էր։ Այն ատեն ներս մտաւ
միւս աշակերտն ալ՝ որ առաջ գերեզմանը եկեր
9 էր, տեսաւ ու հաւատաց։ Վասն զի դեռ
գրուածը չէին գիտեր, թէ Պէտք է որ անիկա
10 մեռելներէն յարութիւն առնէ։ Ետքը աշա-
կերտները նորէն իրենց տունը գացին։
11 Բայց Մարիամ գերեզմանին դուրսը կայներ
էր և կու լար, ու երբ կու լար՝ դէպ ի գերեզ-
12 մանը ծռեցաւ նայելու. Եւ տեսաւ երկու
հրեշտակներ ճերմակ հանդերձներով, որ նստեր
էին ուր Յիսուսի մարմինը դրուած էր, մէկը
13 գլխուն կողմէն՝ ու միւսը ոտքին կողմէն։ Եւ
անոնք իրեն ըսին, Ո՛վ կին, ինչո՞ւ կու լաս. ըսաւ

անոնց, Անոր համար որ իմ Տէրս գերեզմանէն վեր-
ցուցին, ու չեմ գիտեր ո՛ւր դրին զանիկա ։
14 Զայս որ ըսաւ՝ ետին դարձաւ և տեսաւ Յի-
սուսը որ կայներ էր, ու չէր գիտեր թէ Յի-
15 սուս է ։ Յիսուս անոր ըսաւ, Ով կին, ինչո՞ւ
կու լաս, ո՞վ կը փնտռես ։ Ինք կարծելով թէ
անիկա պարտիզպանն է, ըսաւ անոր, Տէր, եթէ
դուն վերցուցիր զանիկա, ըսէ ինծի, ո՞ւր դրիր
16 զայն, որպէս զի ես զանիկա առնեմ ։ Յիսուս
ըսաւ անոր, Մարիամ. ան ալ դարձաւ ու [Եբ-
րայեցերէն] անոր ըսաւ, Ռաբբունի, որ Վար-
17 դապետ ըսել է ։ Յիսուս ըսաւ անոր, Ինծի
մի դպչիր, վասն զի դեռ Հօրս քով ելած չեմ.
հապա գնա եղբայրներուս և ըսէ անոնց, Ես
կ'ելլեմ իմ Հօրս քով ու ձեր Հօրը քով, և իմ
18 Աստուծոյս քով ու ձեր Աստուծոյն քով ։ Մա-
րիամ Մագդաղենացի եկաւ ու աշակերտնե-
րուն պատմեց թէ ինք Տէրը տեսաւ, և թէ
անիկա այս բաները իրեն զրուցեց ։
19 Եւ նոյն օրը, մէկշաբթի իրիկունը, աշա-
կերտներուն ժողվուած տեղին դռները գոց ըլ-
լալով՝ Հրեաներէն վախնալնուն համար, Յիսուս
եկաւ և անոնց մէջտեղը կայնեցաւ, ու ըսաւ ա-
20 նոնց, Խաղաղութիւն ձեզի ։ Եւ զայս ըսելով՝
իր ձեռքերը ու կողը ցուցուց անոնց. աշա-
կերտներն ալ ուրախացան երբ Տէրը տեսան ։
21 Եւ Յիսուս նորէն ըսաւ անոնց, Խաղաղութիւն
ձեզի. ինչպէս Հայրը զիս ղրկեց, ես ալ ձեզ
22 կը ղրկեմ ։ Եւ զայս ըսելով՝ անոնց վրայ փչեց,
23 ու ըսաւ անոնց, Առէք Հոգի Սուրբ. Որոնց
մեղքերը թողուք, թողուած ըլլայ անոնց, և
որոնց մեղքերը ետ բռնէք, բռնուած ըլլայ ։
24 Բայց տասնըերկուքէն մէկը, Երկուորեակ
ըսուած Թովմաս, անոնց հետ չէր՝ երբ Յիսուս
25 եկաւ ։ Ուստի միւս աշակերտները կ'ըսէին անոր

թէ Տէրը տեսանք. ան ալ ըսաւ անոնց, Եթէ
իր ձեռքերուն վրայ բեւեռներուն նշանը չտես-
նեմ, ու մատս բեւեռներուն տեղը չխոթեմ, և
իմ ձեռքս անոր կողը չխոթեմ՝ չեմ հաւատար։
26 Եւ ութ օրէն ետև դարձեալ աշակերտները
ներսն էին, Թովմաս ալ անոնց հետ. եկաւ
Յիսուս, դռները գոց ըլլալով, ու կայնեցաւ
անոնց մէջտեղը և ըսաւ, Խաղաղութիւն ձեզի։
27 Ետքը ըսաւ Թովմասի, Մատդ հոս բեր և նայէ
իմ ձեռքերս, ու բեր քու ձեռքդ և իմ կողս
խոթէ, ու մի ըլլար անհաւատ, հապա հաւա-
28 տացեալ։ Եւ Թովմաս պատասխան տուաւ ու
29 ըսաւ անոր, Իմ Տէրս և իմ Աստուածս։ Յի-
սուս ըսաւ անոր, *Որովհետև դուն զիս տե-
սար՝ հաւատացիր. երանի՜ անոնց որ տեսած չեն
ու կը հաւատան։
30 Եւ Յիսուս շատ ուրիշ նշաններ ալ ըրաւ իր
աշակերտներուն առջև, որոնք այս գրքին մէջ
31 գրուած չեն։ Բայց ասոնք գրուեցան, որպէս զի
հաւատաք թէ Յիսուսը Քրիստոսն է, Աստու-
ծոյ Որդին, և որպէս զի հաւատալով կեանք
ունենաք անոր անունովը։

## ԳԼ. ԻԱ.

1 Քրիստոս դարձեալ իր աշակերտներուն կ'երեւնայ, ու շատ ձուկ բռնել տալուն հրաշքովը կը ճանչցուի. 12 անոնց հետ ճաշ կ'ընէ. 15 պատուէր կու տայ Պետրոսի որ իր գառները ու ոչխարները արածէ. 18 կ'իմացնէ անոր թէ ի՛նչ կերպով պիտի մեռնի. 22 և կը յանդիմանէ անոր հետաքրքրութիւնը Յովհաննէսի վրայով։ 25 Վերջաբանութիւն։

1 Ասկէ ետև Յիսուս նորէն ինքզինք իր աշակերտ-
ներուն յայտնեց Տիբերիայի ծովուն եզերքը,
2 և այսպէս յայտնեց։ Մէկտեղ էին Սիմոն Պետ-
րոս ու Թովմաս, Երկուորեակ ըսուածը, և Նա-
թանայէլ որ Գալիլեայի Կանա քաղաքէն էր, ու
Զեբեդէոսի որդիները և աշակերտներէն ուրիշ

*Ոմանք, Թովմաս, որովհետև

3 երկուքը ալ։ Սիմոն Պետրոս ըսաւ անոնց, Ես
ձուկ որսալու կ'երթամ. ըսին անոր, Մենք ալ
կու գանք քեզի հետ. ելան և շուտ մը նաւը
4 մտան, ու այն գիշերը բան մը չբռնեցին։ Ու
երբ ա՛լ առտու եղաւ, Յիսուս ծովուն եզերքը
կայներ էր, բայց աշակերտները չճանչցան թէ
5 Յիսուս է։ Իսկ Յիսուս ըսաւ անոնց, Տղաք,
ուտելու բան մը ունի՞ք. պատասխան տուին
6 իրեն, Ոչ։ Եւ ըսաւ անոնց, Ուռկանը նաւին
աջ կողմը ձգեցէք ու պիտի գտնէք. ուստի
ձգեցին, և ձուկերուն շատութենէն՝ ա՛լ չէին
7 կրնար զանիկա քաշել։ Այն ատեն այն աշա-
կերտը զոր Յիսուս կը սիրէր, ըսաւ Պետրոսի,
Անիկա Տէրն է. իսկ Սիմոն Պետրոս երբ լսեց
թէ Տէրն է, վերարկուն վրան առաւ, վասն զի
8 մերկ էր, ու ծովը նետուեցաւ։ Եւ միւս աշա-
կերտները նաւակով եկան, (վասն զի ցամաքէն
հեռու չէին, միայն թէ երկու հարիւր կան-
գունի չափ,) և ուռկանը ձուկերով կը քաշէին։
9 Ու երբ ցամաքը ելան, հոն վառած կրակ տե-
10 սան, ու վրան ձուկ դրուած, և հաց։ Յիսուս
ըսաւ անոնց, Բերէք այդ ձուկերէն զորոնք
11 դուք հիմա բռնեցիք։ Սիմոն Պետրոս նաւը *մտաւ,
և ուռկանը ցամաքը քաշեց հարիւր յիսունե-
րեք խոշոր ձուկերով լեցուն. և այնչափ բան կար
12 ու չպատռեցաւ ուռկանը։ Յիսուս ըսաւ անոնց,
Եկէք ճաշ ըրէք. ու աշակերտներէն մէ՛կն ալ
չէր համարձակեր անոր հարցնել թէ Դուն
13 ո՞վ ես. վասն զի գիտէին թէ Տէրն է։ Այն
ատեն Յիսուս եկաւ ու առաւ հացը և անոնց
14 տուաւ, նոյնպէս ալ ձուկը։ Այս երրորդ ան-
գամն է որ Յիսուս իր աշակերտներուն երևցաւ՝
մեռելներէն յարութիւն առնելէն ետև։
15 Ու երբ ճաշը ըրին, Յիսուս ըսաւ Սիմոն

*Յուն. ելաւ

Պետրոսի, Սիմոն, Յովնանի որդի, զիս ասոնցմէ
աւելի կը սիրե՞ս. անիկա ըսաւ անոր, Այո,
Տէր, դուն գիտես որ քեզ կը սիրեմ. ըսաւ
16 անոր, Արածէ իմ գառնուկներս։ Նորէն երկ-
րորդ անգամ ըսաւ անոր, Սիմոն, Յովնանի
որդի, զիս կը սիրե՞ս. ըսաւ անոր, Այո, Տէր,
դուն գիտես որ քեզ կը սիրեմ. ըսաւ անոր,
17 Արածէ իմ ոչխարներս։ Ըսաւ անոր երրորդ
անգամ, Սիմոն, Յովնանի որդի, զիս կը սիրե՞ս.
Պետրոս տրտմեցաւ որ երեք անգամ իրեն ըսաւ
թէ Զիս կը սիրե՞ս. և ըսաւ անոր, Տէր, դուն
ամէն բան գիտես, դուն գիտես որ ես քեզ
կը սիրեմ. ըսաւ անոր Յիսուս, Արածէ իմ ոչ-
18 խարներս։ Ճշմարիտ ճշմարիտ կ՚ըսեմ քեզի,
որ երբ դուն պատանի էիր, ինքզինքդ գօտի
կը կապէիր ու կ՚երթայիր ուր որ ուզէիր. բայց
երբ ծերանաս, ձեռքերդ վեր պիտի բռնես, և
ուրիշը քեզի գօտի պիտի կապէ ու պիտի տանի
19 ուր չես ուզեր։ Այս բանը ըսաւ՝ ցուցնելով
թէ անիկա ի՛նչ մահով պիտի փառաւորէ
զԱստուած. ու երբ զայս գրուցեց՝ ըսաւ անոր,
20 Եկուր իմ ետևէս։ Եւ Պետրոս դարձաւ ու
տեսաւ այն աշակերտը զոր Յիսուս կը սիրէր,
որ ետևէն կ՚երթար, (որ նաև ընթրիքին ատենը
անոր կուրծքին վրայ ինկեր և ըսեր էր, Տէր,
21 ո՞վ է որ քեզ պիտի մատնէ։) Պետրոս զանիկա
տեսնելով՝ ըսաւ Յիսուսի, Տէր, հապա ասիկա
22 ի՞նչ պիտի ըլլայ։ Յիսուս ըսաւ անոր, Եթէ ես
ուզեմ որ ասիկա կենայ մինչև ես գամ, քու
23 ի՞նչ հոգդ է. դուն իմ ետևէս եկուր։ Ալ այս
խօսքը ելաւ եղբայրներուն մէջ թէ այն աշա-
կերտը պիտի չմեռնի. սակայն Յիսուս չըսաւ
անոր թէ Պիտի չմեռնի, հապա՝ Եթէ ես ու-
զեմ որ ասիկա կենայ մինչև ես գամ, քու
ի՞նչ հոգդ է։

24 Ասիկա այն աշակերտն է՝ որ կը վկայէ այս
բաներուն համար, որ գրեց ալ այս բաները․
ու գիտենք որ անոր վկայութիւնը ճշմարիտ է։
25 Եւ ուրիշ շատ բաներ ալ կան, զորոնք Յիսուս
ըրաւ, որոնք եթէ մէկիկ մէկիկ գրուած ըլ-
լային, կարծեմ թէ աշխարհս ալ բաւական
պիտի չըլլար պարունակելու այն գիրքերը որ
գրուած ըլլային։ Ամէն։



# ԳՈՐԾՔ ԱՌԱՔԵԼՈՑ

## ԳԼՈՒԽ Ա

1 Քրիստոս դեռ երկինք չհամբարձած՝ իր աշակերտներուն կը պատուիրէ Երուսաղէմի մէջ Հոգւոյն Սրբոյ գալստեանը սպասել, խոստանալով որ քիչ օրերէ ետեւ պիտի ղրկէ զանիկա։ 9 Անոր համբարձմանէն ետեւ երկու հրեշտակներ կ'երեւնան անոնց, ու անոր երկրորդ գալստեանը վրայով կը խօսին։ 12 Առաքեալները Երուսաղէմ կը դառնան, ու աղօթքի կը պարապին, և Մատաթիան առաքեալ կ'ընտրեն մատնիչ Յուդային տեղ։

1 Առաջին պատմութիւնը ըրի, ով Թէոփիլոս,
այն ամէն բաներուն վրայ զորոնք Յիսուս սկսաւ
2 ընել և սորվեցնել, Մինչեւ այն օրը որ Հոգւոյն
Սրբոյ միջոցով պատուէր տուաւ իր ընտրած ա-
3 ռաքեալներուն, ու համբարձաւ․ Որոնց ինքզինք
ցուցուց կենդանի իր չարչարանքներէն ետեւ
շատ ապացոյցներով, քառասուն օրուան մէջ
անոնց երեւնալով ու Աստուծոյ թագաւորու-
4 թեանը վրայ խօսելով։ Եւ անոնց հետ մէկտեղ
*գտնուած ատենը կ'ապսպրէր անոնց որ Երու-
սաղէմէ չհեռանան, հապա սպասեն Հօրը խոստ-
5 մունքին, զոր ինծմէ լսեցիք, կ'ըսէր։ Վասն զի

*Կամ, հաց կերած

իրաւ Յովհաննէս ջրով մկրտեց, բայց դուք
ասկէ շատ օրեր չանցած՝ Սուրբ Հոգիով պիտի
6 մկրտուիք։ Անոնք ալ մէկտեղ գալով՝ կը հար-
ցնէին իրեն ու կ'ըսէին, Տէր, Իսրայէլի թա-
գաւորութիւնը այս ժամանակի՞ն մէջ նորէն
7 պիտի հաստատես։ Եւ ըսաւ անոնց, Ձեզի չվե-
րաբերիր ժամերը և ժամանակները գիտնալը,
8 զոր Հայրը իր իշխանութեանը մէջ դրաւ. Բայց
Հոգւոյն Սրբոյ ձեր վրայ եկած ատենը զօրու-
թիւն պիտի առնէք, ու ինծի համար վկաներ
պիտի ըլլաք Երուսաղէմի մէջ և բոլոր Հրէաս-
տանի ու Սամարիայի մէջ ու մինչև երկրի ծայ-
9 րերը։ Եւ երբ այս բաները ըսաւ, մինչ անոնք
կը նայէին, համբարձաւ, և ամպ մը զանիկա
10 անոնց աչքէն առաւ։ Ու քանի որ աչքերնին
տնկած դէպ ի երկինք կը նայէին անոր երթա-
լուն վրայ, ահա երկու մարդ իրենց քով կայ-
11 նեցան ճերմակ հանդերձներով. Որոնք նաև
ըսին, Ով Գալիլեացի մարդիկ, ինչո՞ւ կայներ
դէպ ի երկինք կը նայիք. այս Յիսուսը որ ձեզմէ
երկինք համբարձաւ, այսպէս պիտի գայ՝ ինչ-
12 պէս տեսաք անոր երկինք երթալը։ Այն ատեն
Երուսաղէմ դարձան Ձիթենեաց ըսուած լեռ-
նէն, որ շաբաթ օրուան ճամբու չափ մօտ է
13 Երուսաղէմի։ Ու երբ քաղաքը մտան, ելան վերնա-
տունը, ուր կը բնակէին Պետրոս և Յակոբոս,
Յովհաննէս և Անդրէաս, Փիլիպպոս և Թովմաս,
Բարթողոմէոս և Մատթէոս, Յակոբոս Ալ-
փէոսեան ու Սիմոն Նախանձայոյզ և Յուդա
14 *Յակոբեան։ Ասոնք ամէնը միաբանութեամբ
միշտ աղօթք ու աղաչանք կ'ընէին կիներուն
հետ, և Յիսուսի մօրը Մարիամի ու անոր եղ-
բայրներուն հետ մէկտեղ։
15 Եւ այն օրերը ելաւ Պետրոս աշակերտներուն

*Այսինքն, Յակոբոսի եղբայրը, ըստ ընդհանուր կարծեաց

*մէջ, (ուր հարիւր քսան հոգիի չափ ժողվուած*
16 *բազմութիւն կար,) ու ըսաւ, Մարդիկ եղբայր-*
*ներ, պէտք էր որ կատարուէր այս գրուածը,*
*զոր առաջուընէ Հոգին Սուրբ Դաւիթի բերնով*
*ըսաւ Յուդայի համար, որ Յիսուսը բռնողնե-*
17 *րուն առաջնորդ եղաւ. Վասն զի անիկա մեզի*
*հետ էր մեր համրանքին մէջ, և այս պաշտօ-*
18 *նէն ալ բաժին ունէր։ Ասիկա անիրաւութեան*
*վարձքով ագարակ մը ստացաւ, ու գլխիվար*
*ինկնալով մէջտեղէն ճեղքուեցաւ, և իր ամէն*
19 *փորոտիքը դուրս թափեցաւ։ Ու այս բանը Երու-*
*սաղէմ բնակողներուն ամէնուն յայտնի եղաւ,*
*մինչև իրենց լեզուովը այն ագարակին անունը*
*Ակեղդամա դրուեցաւ, այսինքն Արեան ագա-*
20 *րակ։ Վասն զի Սաղմոսներու գիրքին մէջ*
*գրուած է թէ Անոր բնակարանը աւերակ ըլ-*
*լայ, ու անոր մէջ բնակող մը չըլլայ, և անոր*
21 *պաշտօնը ուրիշը առնէ։ Ուրեմն պէտք է որ*
*այս մարդոցմէն՝ որոնք մեզի հետ եղան այն*
*բոլոր ատենը, երբ Տէր Յիսուս մեր մէջ մտաւ*
22 *ու ելաւ, Յովհաննէսի մկրտութենէն սկսած՝*
*մինչև այն օրը որ մեզմէ համբարձաւ, ասոնցմէ*
*մէկը մեզի հետ վկայ ըլլայ անոր յարութեանը։*
23 *Եւ երկու հոգի կայնեցուցին, Յովսէփը որ*
*Բարսաբա կը կոչուէր, որ Յուստոս ալ մական-*
24 *ուանեցաւ, ու Մատաթիան։ Եւ աղօթք ընե-*
*լով՝ ըսին, Դուն, ով Տէր, որ ամէնուն սիրտը*
*գիտես, այս երկուքէն մէկը, զոր ընտրեցիր,*
25 *Դուն յայտնէ. Որպէս զի այս պաշտօնին և առաքե-*
*լութեանը վիճակը առնէ, որմէ Յուդա ինկաւ*
26 *իր տեղը երթալու։ Եւ անոնց համար վիճակ ձգե-*
*ցին, ու վիճակը Մատաթիայի ելաւ, և անիկա*
*տասնըմէկ առաքեալներուն հետ սեպուեցաւ։*

# ԳԼ. Բ

1 Առաքեալները Սուրբ Հոգիով լեցուած՝ զանազան լեզուներ կը խօսին. ոմանք կը զարմանան անոնց վրայ, և ոմանք ալ ծաղր կ'ընեն զանոնք ։ 14 Պետրոս պատասխան կու տայ անոնց, և կը ցուցնէ թէ առաքեալները Սուրբ Հոգիին զօրութիւնովը կը խօսէին, թէ Յիսուս մեռելներէն յարութիւն առած՝ երկինք համբարձած է, և թէ այն նոյն Սուրբ Հոգին ղրկած է ։ 37 Շատ մարդիկ դարձի գալով կը մկրտուին. 41 որոնք ջերմեռանդութեամբ և սիրով կը միաբանին զԱստուած պաշտել ։ 43 Առաքեալները շատ հրաշքներ և նշաններ կ'ընեն, և Աստուած ամէն օր իր եկեղեցին կ'աճեցնէ ։

1 Եւ երբ Պէնտէկոստէի օրը հասաւ, ամէնն ալ
2 միաբան մէկտեղ էին ։ Ու յանկարծակի եր֊
կինքէն ձայն մը եղաւ սաստկաշունչ հովի մը
յուզմին պէս, և բոլոր տունը լեցուց՝ ուր նստեր
3 էին ։ Եւ բաժնուած լեզուներ երևցան իրենց
որպէս թէ կրակէ, ու ամէն մէկուն վրայ նստաւ ։
4 Եւ ամէնն ալ Հոգւով Սրբով լեցուեցան, ու
սկսան ուրիշ լեզուներով խօսիլ, ինչպէս Հոգին
5 իրենց խօսիլ կու տար ։ Ու Երուսաղէմի մէջ
բնակած Հրեաներ կային, աստուածավախ մար֊
դիկ երկինքի տակ եղած բոլոր ազգերէն ժողվուած ։
6 Ու երբ այս ձայնը եղաւ, բազմութիւնը մէկ֊
տեղ եկաւ ու խռովեցաւ, վասն զի կը լսէին որ
անոնք իրենց ամէն մէկուն լեզուովը կը խօսէին ։
7 Ամէնն ալ կը սքանչանային ու կը զարմանային
և իրարու կ'ըսէին, Չէ՞ որ ասոնք ամէնն ալ
8 որ կը խօսին, Գալիլեացի են. Եւ ի՞նչպէս կը
լսենք մենք մեր ամէն մէկ լեզուովը՝ որուն մէջ
9 ծնած ենք. Պարթևներ և Մարեր ու Եղամացի֊
ներ, և անոնք որ կը բնակին Միջագետքի մէջ,
և Հրէաստանի ու Կապադովկիայի մէջ, Պոն֊
10 տոսի ու Ասիայի մէջ, Փռիւգիայի և Պամփիւ֊
լիայի մէջ, Եգիպտոսի մէջ, և Կիւրենէի մօտ
Լիբէացւոց կողմերուն մէջ, նաև Հռովմայեցի
11 պանդուխտներ, Թէ՛ Հրեաներ և թէ՛ նորահա֊
ւատներ, Կրետացիներ և Արաբացիներ, կը լսենք
անոնցմէ որ մեր լեզուներով կը խօսին Աստուծոյ
12 մեծամեծ բաները ։ Կը սքանչանային ամէնն ալ

*ու տարակուսած իրարու կ՚ըսէին, Ի՞նչ պիտի*
13 *ըլլայ այս ։ Ոմանք ալ ծաղր ընելով՝ կ՚ըսէին թէ*
*Անոնք նոր գինիով լեցուեր են ։*
14 *Բայց Պետրոս ելաւ տասնըմէկին հետ մէկ-*
*տեղ, ձայնը վերցուց ու խօսեցաւ անոնց, Ով*
*Հրեայ մարդիկ և դուք ամէնդ որ Երուսաղէմ*
*կը բնակիք, այս ձեզի յայտնի ըլլայ, ու ականջ*
15 *դրէք իմ խօսքերուս ։ Քանզի ոչ թէ ասոնք*
*գինովցած են, ինչպէս դուք կը կարծէք, վասն զի*
16 *դեռ օրուան երրորդ ժամն է. Հապա ասիկա*
*այն է որ Յովէլ մարգարէին ձեռքով ըսուեցաւ.*
17 *Եւ պիտի ըլլայ որ վերջին օրերը, կ՚ըսէ Աստ-*
*ուած, իմ Հոգիէս ամէն մարմնի վրայ պիտի*
*թափեմ, ու ձեր տղաքը և ձեր աղջիկները*
*պիտի մարգարէանան, ու ձեր երիտասարդները*
*տեսիլքներ պիտի տեսնեն, և ձեր ծերերը ե-*
18 *րազներ պիտի տեսնեն. Եւ իմ ծառաներուս*
*վրայ ու իմ աղախիններուս վրայ ալ այն օրերը*
*իմ Հոգիէս պիտի թափեմ, և պիտի մարգա-*
19 *րէանան ։ Ու վերը երկինքը հրաշքներ պիտի*
*ցուցնեմ, ու վարը երկիրը՝ նշաններ, արիւն*
20 *ու կրակ և ծուխի մառախուղ. Արեւը խաւարի*
*պիտի դառնայ, և լուսինը՝ արիւնի, դեռ Տէ-*
21 *րոջը մեծ ու երեւելի օրը չեկած ։ Եւ պիտի ըլ-*
*լայ որ ամէն ով որ Տէրոջը անունը կանչէ՝ պիտի*
22 *փրկուի ։ Ով Իսրայելացի մարդիկ, լսեցէք այս*
*խօսքերը. Յիսուս Նազովրեցին, Աստուծմէ ձեզի*
*ցուցուած մարդ մը զօրութիւններով ու հրաշք-*
*ներով և նշաններով, զորոնք Աստուած անոր*
*ձեռքով ըրաւ ձեր մէջ, ինչպէս դուք ալ գիտէք,*
23 *Անիկա Աստուծոյ որոշած խորհուրդովը և կան-*
*խագիտութիւնովը մատնուած ըլլալով՝ առիք և*
**անօրէններու ձեռքով փայտի վրայ գամելով*
24 *սպաննեցիք. Զոր Աստուած յարուց՝ մահուան*

---

*կամ, անօրէն

ցաւերը քակելով, քանզի հնար չէր որ ինք
25 անկէ բռնուի ։ Վասն զի Դաւիթ անոր համար
կ'ըսէ, Ամէն ատեն Տէրը կը տեսնէի իմ առջեւս,
քանզի իմ աջ կողմս է, որպէս զի չսասանիմ.
26 Անոր համար ուրախ եղաւ իմ սիրտս, ու իմ
լեզուս ցնծաց. նաեւ իմ մարմինս ալ յուսով
27 պիտի հանգստանայ. Վասն զի իմ անձս *գե-
րեզմանին մէջ պիտի չթողուս, ու քու Սուր-
բիդ ալ ապականութիւն տեսնել պիտի չտաս ։
28 Կենաց ճամբաները ինծի ճանչցուցիր. քու
երեսիդ ուրախութիւնովը զիս պիտի լեցնես ։
29 Մարդիկ եղբայրներ, արժան է համարձակ
դրուցել ձեզի Դաւիթ նահապետին համար,
թէ մեռաւ ու թաղուեցաւ, եւ անոր գերեզ-
30 մանը մինչեւ այսօր մեր մէջ է ։ Արդ որովհետեւ
անիկա մարգարէ էր, եւ գիտէր թէ Աստուած
հաստատ երդում ըրաւ իրեն, թէ իր երիկա-
մունքներուն պտուղէն մարմնի կողմանէ Քրիս-
տոսը պիտի յարուցանէ որ իր աթոռը նստի,
31 Ինք կանխատեսութեամբ խօսեցաւ Քրիստոսի
յարութեանը համար, թէ անոր անձը գերեզ-
մանը չթողուեցաւ, եւ անոր մարմինը ապակա-
32 նութիւն չտեսաւ ։ Այս Յիսուսը Աստուած
33 յարուց, որու մենք ամէնս ալ վկայ ենք ։ Ուստի
Աստուծոյ աջ ձեռքով բարձրանալով, ու Հոգւոյն
Սրբոյ խոստմունքը Հօրմէն առնելով՝ տարածեց
ասիկա, զոր դուք հիմա կը տեսնէք եւ կը լսէք ։
34 Վասն զի Դաւիթ երկինք չելաւ, բայց ինք կ'ըսէ,
35 Տէրը իմ Տէրոջս ըսաւ, Նստէ իմ աջ կողմս,
Մինչեւ քու թշնամիներդ ոտքերուդ պատուան-
36 դան դնեմ ։ Ուստի բոլոր Իսրայէլի տունը
ճշմարտապէս թող գիտնայ, որ Աստուած զա-
նիկա Տէր ալ ըրաւ՝ Օծեալ ալ, այն Յիսուսը
զոր դուք խաչեցիք ։

*կամ, դժոխքին

37 Ու ասոնք երբ լսեցին, իրենց սրտերուն մէջ զղջա-
ցին, եւ ըսին Պետրոսի ու միւս առաքեալնե-
38 րուն, Մարդիկ եղբայրներ, ի՞նչ ընենք։ Եւ
Պետրոս ըսաւ անոնց, Ապաշխարեցէք, ու ձեզմէ
ամէն մէկը թող մկրտուի Յիսուս Քրիստոսի
անունովը մեղքերու թողութեան համար, եւ
39 Հոգւոյն Սրբոյ պարգեւը պիտի ընդունիք։ Վասն
զի խոստումները ձեզի է ու ձեր որդիներուն,
եւ ամէն հեռու եղողներուն՝ զորոնք մեր Տէրը
40 Աստուածը պիտի կանչէ։ Եւ ուրիշ շատ խօս-
քերով վկայութիւն կու տար, ու կը յորդորէր
ըսելով, Այս խոտորած ազգէն ինք-
41 զինքնիդ ազատեցէք։ Եւ անոնք որ սրտանց
ընդունեցին անոր խօսքերը, մկրտուեցան. ու
42 այն օրը երեք հազար հոգի չափ աւելցան։ Եւ
միշտ առաքեալներուն վարդապետութեանը
ետեւէ էին, ու միաբանութեանը եւ հաց կտրե-
լուն ու աղօթքներուն։

43 Եւ ամէն մարդու վրայ վախ ինկաւ. եւ ա-
ռաքեալներուն ձեռքով շատ հրաշքներ ու
44 նշաններ կը գործուէին։ Ու բոլոր հաւատաց-
եալները մէկտեղ էին, եւ ամէն բաներնին հա-
45 սարակաց էր։ Ու ստացուածքնին եւ ունեցած
բաներնին կը ծախէին, ու անոնց գինը կը բաժ-
նէին ամէնուն, որու որ բան մը պէտք ըլլար։
46 Եւ ամէն օր միաբանութեամբ տաճարը երթա-
լու ետեւէ էին, եւ տուներնին հաց կը կտրէին,
ու կերակուրնին կ'ուտէին ուրախութեամբ եւ
47 միամտութեամբ սրտի. Զաստուած կ'օրհնէին,
ու բոլոր ժողովուրդին աչքը շնորհք կը գտա-
նէին. եւ Տէրը օրէ օր փրկուածները կ'աւելցնէր
եկեղեցիին։

## ԳԼ. Գ

1 Պետրոս կը քարոզէ բժշկուած կաղը տեսնելու եկող ժողովուրդներուն. 12 կը խոստովանի որ այն բժշկութիւնը ոչ թէ իրեն կամ Յովհաննէսի զօրութիւնովն եղաւ, այլ Աստուծոյ և անոր Որդւոյն Յիսուսի ձեռքով, ու անոր անուանը հաւատքովը. 13 Նաև կը յանդիմանէ զանոնք Յիսուսը խաչելնուն համար, 19 և կը յորդորէ զանոնք զղջումով ու հաւատքով թողութիւն խնդրել իրենց մեղքերուն, և փրկուիլ նոյն Յիսուսին ձեռքով:

1 Արդ Պետրոս ու Յովհաննէս իններորդ ժամու
աղօթքին ատենը մէկտեղ տաճարը կ'ելլէին։
2 Եւ իր մօրը որովայնէն կաղ ծնած մարդ մը կը
բերուէր, զոր ամէն օր տաճարին Գեղեցիկ
կոչուած դրանը քով կը դնէին, որպէս զի տա-
3 ճարը մտնողներէն ողորմութիւն խնդրէ։ Ասիկա
տեսնելով Պետրոսը և Յովհաննէսը որ տաճարը
մտնելու վրայ էին, կ'աղաչէր որ ողորմութիւն
4 առնէ։ Իսկ Պետրոս Յովհաննէսի հետ մէկտեղ
5 անոր նայեցաւ ու ըսաւ, Մեզի նայէ. Ան ալ
դէպ ի անոնք դարձաւ ու կը յուսար անոնցմէ
6 բան մը առնել։ Եւ Պետրոս ըսաւ, Արծաթ ու
ոսկի չունիմ, հապա ինչ որ ունիմ՝ զայն քեզի
կու տամ. Նազովրեցի Յիսուս Քրիստոսի անու-
7 նովը ելիր ու քալէ։ Եւ անոր աջ ձեռքէն բռնեց
վերցուց զանիկա, ու իսկոյն անոր ոտքին թաթերը
8 ու կոճերը զօրացան։ Եւ վեր ցատկելով կայնե-
ցաւ ու կը քալէր, և անոնց հետ տաճարը մտաւ,
քալելով ու ցատկելով և զԱստուած օրհնելով։
9 Ու բոլոր ժողովուրդը տեսաւ զանիկա որ կը քա-
10 լէր ու կ'օրհնէր զԱստուած. Եւ կը ճանչնային
թէ անիկա էր, որ ողորմութեան համար տա-
ճարին Գեղեցիկ կոչուած դրանը քով կը նստէր.
և զարմանքով ու ապշութեամբ լեցուեցան անոր
եղած բանին համար։
11 Եւ քանի որ *անիկա Պետրոսի ու Յովհան-
նէսի յարեր էր, բոլոր ժողովուրդը զարմացած

*Որն., այն բժշկուած կաղը

մէկտեղ վազեցին անոնց քով այն սրահը որ
12 Սողոմոնին կ'ըսուէր ։ Զայս տեսնելով Պետ-
րոս՝ պատասխան տուաւ ժողովուրդին, Ով Իս-
րայելացի մարդիկ, ինչո՞ւ զարմացեր էք ասոր
վրայ, կամ ինչո՞ւ աչքերնիդ տնկած մեզի կը
նայիք, որպէս թէ մենք մեր զօրութիւնովը կամ
բարեպաշտութիւնովը ասոր քալել տուած ըլ-
13 լանք ։ Աբրահամի ու Իսահակի և Յակոբի Աստ-
ուածը, մեր հայրերուն Աստուածը, փառաւո-
րեց իր *Որդին Յիսուսը, զոր դուք մատնե-
ցիք, և ուրացաք Պիղատոսի առջև՝ երբ ինք
14 վճռեց որ արձակէ ։ Բայց դուք այն Սուրբը և
Արդարը ուրացաք, ու խնդրեցիք որ մարդասպան
15 մարդ մը ձեզի շնորհուի. Եւ կենաց Առաջնորդը
սպաննեցիք, զոր Աստուած մեռելներէն յարուց,
16 որու մենք վկայ ենք. Եւ անոր անուանը հա-
ւատքով՝ անոր անունը հաստատեց ասիկա, զոր
դուք կը տեսնէք ու գիտէք. և այն հաւատքը
որ անով է՝ այս առողջութիւնը տուաւ
17 ձեր ամէնուն առջև ։ Եւ հիմա, եղբայրներ,
գիտեմ որ չգիտնալով ըրիք, ինչպէս ձեր իշ-
18 խաններն ալ ։ Բայց Աստուած ինչ որ առաջուընէ
իր բոլոր մարգարէներուն բերնով յայտներ էր
Քրիստոսի չարչարուելուն վրայով, այսպէս կա-
19 տարեց ։ Ուստի ապաշխարեցէք ու դարձի եկէք,
20 որպէս զի մեղքերնիդ ջնջուի. Որպէս զի սփո-
փանաց ժամանակները գան Տէրոջը երեսէն, և
առաջուընէ †ձեզի քարոզուած" Յիսուս Քրիս-
21 տոսը ղրկէ. Զոր պէտք է որ երկինք ընդունի
մինչև այն ատենները՝ որ ամէն բաները կար-
գադրուին, որոնց համար Աստուած սկիզբէն
ի վեր իր սուրբ մարգարէներուն բերնով խօ-
22 սած է ։ ‡Մովսէս Քր հայրերուն ըսաւ թէ
Ձեր Տէր Աստուածը ձեր եղբայրներէն ինծի

*կամ, ծառան †Ոմն․, ձեզի համար սահմանուած ‡Ոմն․, Քանզի Մովսէս

պէս մարգարէ մը պիտի հանէ ձեզի. անոր
23 մտիկ ըրէք ամէն ինչ որ ձեզի խօսի։ Եւ պիտի
ըլլայ թէ ամէն ով որ այն մարգարէին մտիկ
24 չընէ, ժողովուրդին մէջէն պիտի կորսուի։ Ու
բոլոր մարգարէները որոնք Սամուէլէ ի վեր
խօսեցան, այս օրերուն համար ալ իմացուցին։
25 Դուք էք մարգարէներուն որդիները և այն
ուխտին, զոր Աստուած մեր հայրերուն հետ
ըրաւ, ու ըսաւ Աբրահամի, Եւ քու սերուն-
դովդ պիտի օրհնուին երկրի բոլոր ազգերը։
26 Աստուած իր *Որդին յարուցանելով՝ առաջ
ձեզի ղրկեց զանիկա, որպէս զի ձեզ օրհնէ,
ամէն մէկդ ձեր չարութիւններէն դարձնելով։

## ԳԼ. Դ

1 Հրէից իշխանները Պետրոսի քարոզութեանը վրայ բարկանալով՝ կը բանտարկեն զանիկա Յովհաննէսի հետ, 4 սակայն ամենայնիւ Աստուծոյ խօսքը լսողներէն հազարաւոր անձինք դարձի կու գան։ 5 Ետքը երբ իշխանները զանոնք դատաստանի կը հանեն, Պետրոս համարձակ կը հաստատէ թէ այն կաղը Յիսուսի անունովը բժշկուեցաւ, և թէ միայն նոյն Յիսուսին անունովը կրնանք փրկուիլ. 13 բայց իշխանները սպառնալիքներով կը պատուիրեն Պետրոսի ու Յովհաննէսի որ մէյմըն ալ այն անունով չքարոզեն. 23 ասոր վրայ եկեղեցւոյ անդամները աղօթքի կը պարապին, 31 և Աստուած շարժելով անոնց գտնուած տեղը, վկայութիւն կու տայ թէ անոնց աղօթքը լսած է, ու կը հաստատէ եկեղեցին՝ Սուրբ Հոգիին շնորհքը և միաբանական սէր պարգևելով անոր։

1 Ու երբ անոնք ժողովուրդին կը խօսէին, քա-
հանաները ու տաճարին իշխանը և սադուկեցի-
2 ները անոնց վրայ հասան, Դժուարելով որ ա-
նոնք ժողովուրդին կը սորվեցնէին, և Յիսուսի
միջոցով մեռելներէն յարութիւն առնելը կը
3 քարոզէին. Ու ձեռք զարկին անոնց և բանտ
դրին զանոնք մինչև հետևեալ օրը, վասն զի ալ
4 իրիկուն էր։ Բայց այն խօսքը լսողներէն շա-
տերը հաւատացին, ու մարդոց թիւը հինգ
հազարի չափ եղաւ։
5 Ու եղաւ որ հետևեալ օրը մէկտեղ ժողվուե-

*Ոմն., Որդին Յիսուսը

ցան անոնց իշխանները և ծերերը ու դպիր-
6 ները Երուսաղէմի մէջ, Նաև Աննա քահանայա-
պետը ու Կայիափա և Յովհաննէս ու Աղեք-
սանդրոս և այն ամէնը որ քահանայապետի
7 ցեղէ էին. Եւ զանոնք մէջտեղը կայնեցուցած՝
կը հարցնէին, Ի՞նչ զօրութիւնով կամ ի՞նչ ա-
8 նունով ըրիք դուք այս բանը։ Այն ատեն Պետ-
րոս Հոգւով Սրբով լեցուած՝ ըսաւ անոնց, Ով
ժողովուրդին իշխանները և Իսրայէլի ծերերը,
9 Եթէ մենք այսօր ակար մարդու մը եղած բա-
րիքին համար կը քննուինք, թէ ինչ միջոցով
10 անիկա բժշկուեցաւ, Յայտնի ըլլայ ձեզի ամէ-
նուդ ու բոլոր Իսրայէլի ժողովուրդին, որ Նա-
զովրեցի Յիսուս Քրիստոսի անունովը, զոր դուք
խաչեցիք, և զոր Աստուած մեռելներէն յարոյց,
անոր անով ասիկա ձեր առջև բժշկուած կեցեր է։
11 Անիկա է այն քարը ձեզմէ շինողներէդ անար-
12 գուած, որ անկիւնի գլուխ եղաւ. Եւ ուրիշ
մէկով փրկութիւն չկայ. վասն զի անկէ զատ
ուրիշ անուն մը չկայ երկինքի տակ մարդոց մէջ
13 տրուած, որով կարող ըլլանք փրկուիլ։ Իսկ
անոնք Պետրոսի ու Յովհաննէսի համարձակու-
թեանը նայելով, և հասկնալով որ ագէտ ու
առանց ուսման մարդիկ են, կը զարմանային. և
14 ճանչցան որ անոնք Յիսուսի հետ էին. Ու այն
բժշկուած մարդը տեսնելով որ անոնց հետ
կայներ էր, չէին կրնար անոր դէմ բան մը խօ-
15 սիլ։ Եւ հրամայելով անոնց որ ատեանէն դուրս
16 ելլեն, իրարու հետ խորհուրդ ըրին, Եւ ըսին,
Ի՞նչ ընենք այս մարդոց. վասն զի Երուսաղէմի
բոլոր բնակիչներուն յայտնի է թէ անոնց
ձեռքով երևելի հրաշք մը եղաւ, ու մենք չենք
17 կրնար ուրանալ։ Միայն թէ ժողովուրդին մէջ
ալ աւելի չտարածուելու համար՝ սաստիկ
սպառնանք ըսենք անոնց, որ այն անունով

18 մէյմըն ալ չըլլայ որ մարդու բան խօսին ։ Եւ
զանոնք կանչելով՝ պատուիրեցին անոնց որ ա-
մենեւին չխօսին և չսորվեցնեն Յիսուսի անու-
19 նովը ։ Բայց Պետրոս ու Յովհաննէս պատասխան
տուին անոնց ու ըսին, Եթէ Աստուծոյ առջև
ուղիղ է որ Աստուծմէ աւելի ձեզի մտիկ ընենք,
20 դուք դատեցէք ։ Վասն զի մենք զայն որ տե-
21 սանք ու լսեցինք՝ չենք կրնար չխօսիլ ։ Իսկ ա-
նոնք նորէն սպառնալիք ընելէ ետև արձակե-
ցին զանոնք, բան մը չգտնելով թէ ինչպէս
պատժեն զանոնք, ժողովուրդին համար, քանզի
ամէնն ալ զԱստուած կը փառաւորէին եղած
22 բանին համար ։ Վասն զի այն մարդը քառա-
սուն տարեկանէ աւելի էր, որուն վրայ այս
բժշկութեան հրաշքը եղաւ ։
23 Եւ անոնք արձակուելով՝ իրենցիններուն քով
եկան, ու պատմեցին ինչ որ քահանայապետ-
24 ները և ծերերը իրենց ըսին ։ Անոնք ալ երբ
լսեցին, միաբանութեամբ ձայներնին Աստու-
ծոյ վերցուցին՝ ըսելով, Ով Տէր, դուն ես այն
Աստուածը, որ երկինքը ու երկիրը և ծովը ու
25 բոլոր անոնց մէջ եղածները ստեղծեցիր, Որ
քու ծառայիդ Դաւիթի բերնով խօսեցար, Ին-
չո՞ւ հեթանոսները խռովութիւն ըրին, ու ժո-
26 ղովուրդները պարապ բաներ մտածեցին. Երկրի
թագաւորները պատրաստ կայնեցան, և իշխան-
ները մէկտեղ ժողվուեցան Տէրոջը դէմ և
27 անոր Օծեալին դէմ ։ Քանզի արդարև [այս
քաղաքին մէջ] ժողվուեցան քու սուրբ Որդւոյդ
Յիսուսի վրայ, զոր դուն օծեցիր, Հերովդէս
և Պոնտացի Պիղատոս, ազգերուն հետ ու Իս-
28 րայէլի ժողովուրդներուն հետ, Ընել՝ ինչ որ քու
ձեռքդ և խորհուրդդ սահմանեց առաջուընէ
29 որ ըլլայ ։ Եւ հիմա, ով Տէր, նայէ անոնց
սպառնալիքներուն, ու շնորհէ քու ծառանե-

*րուդ, որպէս զի բոլոր համարձակութիւնով քու*
30 *խօսքդ խօսինք, Քու ձեռքդ երկնցնելով բժշկե-*
*լու, և քու սուրբ Որդւոյդ Յիսուսի անունովը*
31 *Նշաններ ու հրաշքներ ըլլալու ։ Ու երբ անոնք*
*աղօթք ըրին, շարժեցաւ այն տեղը՝ ուր ժող-*
*վուած էին, և ամէնը Հոգւով Սրբով լեցուեցան,*
*ու Աստուծոյ խօսքը համարձակ կը խօսէին ։*
32 *Եւ հաւատացեալներուն բազմութիւնը մէկ*
*սիրտ ու մէկ հոգի ունէին. և անոնցմէ մէ՛կը*
*չէր ըսեր իր ստացուածքներէն մէկուն համար՝*
*թէ իրն է, հապա իրենց ամէն բաները հասա-*
33 *րակաց կը սեպէին ։ Եւ մեծ զօրութիւնով ա-*
*ռաքեալները վկայութիւն կու տային Տէր Յի-*
*սուսի յարութեանը, և անոնց ամէնուն վրայ*
34 *մեծ շնորհք կար ։ Ու անոնց մէջ կարօտութիւն*
*քաշող մը չկար, վասն զի անոնք որ ագարակ-*
*ներու կամ տուներու տէր էին, կը ծախէին և*
35 *ծախուածներուն գիները կը բերէին, Ու ա-*
*ռաքեալներուն ոտքը կը դնէին. և ամէն մէ-*
*կուն իր կարօտութեանը նայելով կը բաժ-*
36 *նուէր ։ Եւ Յովսէս, որ առաքեալներէն Բառ-*
*նաբաս մականուանեցաւ, (որ կը թարգմանուի*
*Մխիթարութեան որդի,) Ղևտացի, ծնունդով*
37 *Կիպրացի, Ագարակ մը ունենալով, ծախեց ու*
*ստակը բերաւ՝ առաքեալներուն ոտքը դրաւ ։*

## ԳԼ. Ե

*1 Անանիա ու իր կինը Սափիրա իրենց կեղծաւորութեանը համար Պետրոսէ յանդիմանուելով՝ կը մեռնին ։ 12 Առաքեալներուն շատ հրաշքներ ընելովը՝ 14 հաւատացեալները կը շատնան . 17 յետոյ առաքեալները վերստին բանտ կը դրուին , 19 բայց Տէրոջը հրեշտակը ազատելով զանոնք՝ կը պատուիրէ որ համարձակ քարոզեն ամէնուն ։ 21 Ուստի անոնք սորվեցնելով թէ՛ տաճարին մէջ 29 և թէ՛ ատեանին առջև , 33 սպաննուելու վտանգի մէջ կ'իյնան , բայց Գամաղիէլի խրատովը ողջ կը մնան , 40 միայն ծեծ կ'ուտեն , որու համար փառք կու տան Աստուծոյ , և ամէն օր չեն դադարիր քարոզելէ ։*

1 *Բայց մարդ մը Անանիա անունով՝ իր կնոջ Սա-*
*փիրայի հետ մէկտեղ ստացուածք մը ծախեց.*
2 *Եւ անոր գինէն խարեց, մինչ կնոջն ալ գիտէր,*

ու մէկ բաժինը բերաւ առաքեալներուն ոտքը
3 դրաւ ։ Եւ Պետրոս ըսաւ, Անանիա, ինչո՞ւ Սա-
տանայ քու սիրտդ լեցուց, որ դուն Հոգւոյն
Սրբոյ սուտ խօսիս, ու ագարակին գինէն խո-
4 րես. Չէ՞ որ քուկդ էր այն՝ քանի որ կեցեր էր,
ու ծախուած ալ՝ քու իշխանութեանդ տակ էր.
Ի՞նչ է որ քու սրտիդ մէջ այս բանը դրիր. ոչ
թէ մարդոց սուտ խօսեցար, հապա Աստուծոյ։
5 Եւ Անանիա այս խօսքերը լսելով՝ ինկաւ ու
հոգի տուաւ. և մեծ վախ ինկաւ ամէնուն վրայ
6 որոնք զայս լսեցին ։ Ու երիտասարդները ելան
ու պատնեցին զանիկա, և դուրս հանելով թա-
7 ղեցին ։ Ու երբ երեք ժամու չափ վրան անցաւ,
անոր կինը չգիտնալով ինչ որ եղեր էր, ներս
8 մտաւ. Եւ Պետրոս ըսաւ անոր, Ըսէ ինծի, ա-
գարակը ա՞յնչափ գնով ծախեցիք. ան ալ ըսաւ,
9 Այո, այնչափ ։ Ու Պետրոս ըսաւ անոր, Այդ
ի՞նչ է որ դուք միաբանեցաք Տէրոջը Հոգին
փորձելու. ահա քու այրդ թաղողներուն ոտ-
քերը դրանը քով են, քեզ ալ դուրս պիտի
10 հանեն ։ Եւ իսկոյն անոր ոտքերուն քով ինկաւ
ու հոգի տուաւ. և երիտասարդները ներս
մտնելով՝ զանիկա մեռած գտան, ու հանեցին
11 իր էրկանը քով թաղեցին ։ Եւ մեծ վախ մը
ինկաւ բոլոր եկեղեցիին վրայ ու ամէնուն վրայ
որոնք այս բաները լսեցին ։
12 Եւ առաքեալներուն ձեռքով շատ նշաններ
ու հրաշքներ կ՚ըլլային ժողովուրդին մէջ. և
ամէնը միաբանութեամբ Սողոմոնի սրահին մէջ
13 էին ։ Եւ ուրիշներէն մէկը չէր համարձակեր
անոնց յարիլ, հապա ժողովուրդը կը մեծա-
14 րէր զանոնք ։ Եւ Տէրոջը հաւատացողները ա՛լ
աւելի կը շատնային, բազմութիւն այրերու ու
15 կիներու. Այնպէս որ հիւանդները հրապա-
րակները կը հանէին, և պատգարակներով ու

մահիճներով կը դնէին, որպէս զի Պետրոսի
անցնելու ատենը՝ գոնէ անոր շուքը անոնց մէ-
16 կուն վրայ համնի ։ Ու շրջակայ քաղաքներուն
բազմութիւնը Երուսաղէմ կը ժողվուէր, հի-
ւանդներ և պիղծ ոգիներէ նեղութիւն կրող-
ներ բերելով, որոնք ամէնն ալ կը բժշկուէին ։
17 Ուստի ելաւ քահանայապետը և բոլոր իրեն հետ
եղողները որոնք սադուկեցւոց աղանդէն էին,
18 նախանձով լեցուած, Ու առաքեալներուն ձեռք
զարկին և հասարակաց բանտը դրին զանոնք ։
19 Բայց Տէրոջը հրեշտակը գիշերով բանտին
դռները բացաւ, ու դուրս հանելով զանոնք՝
20 ըսաւ, Գացէք և տաճարին մէջ կայնելով ժո-
ղովուրդին խօսեցէք այս կենաց բոլոր խօս-
21 քերը, Ու երբ այս լսեցին, տաճարը մտան առ-
տուանց և կը սորվեցնէին. իսկ քահանայապետը
եկաւ ու իրեն հետ եղողները, ու մէկտեղ կան-
չեցին ժողովքը ու Իսրայէլի որդիներուն բոլոր
ծերակոյտը, և մարդ դրկեցին բանտը, որպէս զի
22 զանոնք բերեն ։ Ու երբ սպասաւորները գացին,
զանոնք բանտին մէջ չգտնելով՝ ետ դարձան,
23 պատմեցին, Եւ ըսին թէ Բանտը ամէն զգու-
շութիւնով գոցուած գտանք, ու պահապան-
ները դռներուն առջև կայնած, բայց բանալով՝
24 ներսը մարդ չգտանք ։ Ու երբ [illegible] քահանան և
տաճարին իշխանը ու քահանայապետները լսե-
ցին այս խօսքերը, կը զարմանային անոնց հա-
25 մար թէ ինչ պիտի ըլլայ ասի ։ Եւ մէկը եկաւ
պատմեց անոնց թէ Ահա այն մարդիկը զորոնք
բանտը դրիք, տաճարը կայներ են և ժողովուր-
26 դին կը սորվեցնեն ։ Այն ատեն իշխանը սպա-
սաւորներովը մէկտեղ գնաց զանոնք բերաւ
առանց բռնութեան, քանզի ժողովուրդէն
27 կը վախնային, որ չքարկոծուին ։ Ու բերին զա-
նոնք ատեանը կայնեցուցին. և քահանայա-

28 պէտը անոնց հարցուց՝ Ըսելով, Չէ՞ որ սաստիկ
պատուիրեցինք ձեզի որ այս անունով չսորվե-
ցնէք. և ահա Երուսաղէմը ձեր ուսմունքովը
լեցուցիք, և այն մարդուն արիւնը կ'ուզէք մեր
վրայ բերել:
29 Պատասխան տուաւ Պետրոս և միւս առաքեալ-
ները ու ըսին, Աւելի Աստուծոյ հնազանդիլ
30 պէտք է քան թէ մարդոց: Մեր հայրերուն
Աստուածը Յիսուսը յարուց, զոր դուք փայտէն
31 կախելով սպաննեցիք: Զանիկա Աստուած իր
աջ ձեռքով Առաջնորդ ու Փրկիչ ըլլալու բարձ-
րացուց, Իսրայէլի ապաշխարութիւն և մեղ-
32 քերու թողութիւն տալու: Եւ մենք այս բա-
ներուն համար անոր վկաներ ենք, ու Սուրբ
Հոգին ալ՝ զոր Աստուած իրեն հնազանդ եղող-
33 ներուն տուաւ: Եւ անոնք այս լսելով խիստ
կատղեցան, ու կը խորհէին որ զանոնք մեռցնեն:
34 Եւ ատեանին մէջ փարիսեցի մը ոտքի վրայ
ելաւ, որուն անունը Գամաղիէլ էր, օրինաց
վարդապետ մը, բոլոր ժողովուրդին առջև
պատուաւոր մէկը, ու հրաման ըրաւ որ ա-
35 ռաքեալները քիչ մը դուրս հանեն. Եւ ըսաւ
անոնց, Ով Իսրայելացի մարդիկ, դուք ձեզի
զգուշացէք այս մարդոց համար թէ ինչ պիտի
36 ընէք: Քանզի այս օրերէն առաջ Թևդաս ելաւ,
իրեն համար ըսելով թէ երևելի մէկն է, ու
թուով չորս հարիւրի չափ մարդիկ իրեն յարե-
ցան, ինք սպաննուեցաւ, և այն ամէնը որ իրեն
հնազանդեր էին՝ ցրուեցան ու ոչինչ եղան:
37 Անոր ետևէն Յուդա Գալիլեացի ելաւ աշխար-
հագիր եղած օրերը, և շատ ժողովուրդ իր
կողմը ձգեց. ինք ալ կորսուեցաւ, և այն ամէնք
որոնք իրեն հնազանդեր էին, ցիրուցան եղան:
38 Եւ հիմա ձեզի կ'ըսեմ, Այդ մարդոցմէն մէկդի
կեցէք ու թող տուէք զանոնք, վասն զի եթէ

այդ խորհուրդը կամ գործը մարդոցմէ է՝ պիտի
39 քակուի. Ապա եթէ Աստուծմէ է՝ չէք կրնար
անոնք քակել. չըլլայ թէ Աստուծոյ դէմ
40 մարտնչող ալ գտնուիք։ Եւ անոնք հաւանու-
թիւն տուին անոր. ու առաքեալները կանչե-
լով՝ ծեծեցին, և պատուիրելով որ [illegible] ալ Յի-
սուսի անունով չխօսին, արձակեցին զանոնք։
41 Անոնք ալ ժողովքին առջևէն գացին, ուրախա-
նալով որ Տէրոջը անուանը համար արժանի եղան
42 անարգուելու։ Եւ ամէն օր տաճարը ու տու-
ներուն մէջ չէին դադարեր սորվեցնելէ ու Յի-
սուս Քրիստոսը քարոզելէ։

## ԳԼ. Զ

1 Առաքեալները ուզելով որ աղքատներուն կերակուրին հոգ տարուի, նաև փոյթ ունենալով որ իրենք Աստուծոյ խօսքը, հոգիին կերակուրը, մատակարարեն, 3 սարկաւագութեան պաշտօնը կը յանձնեն եօթը ընտրուած մարդոց, 5 որոնց մէկն էր Ստեփանոս, հաւատքով և Հոգւով Սրբով լեցուն. 12 որու հետ վիճաբանողները չկրնալով պատասխան տալ՝ կը բռնեն զանիկա, 13 և զրպարտութեամբ կ'ամբաստանեն իբրև հայհոյիչ օրինաց և տաճարին։

1 Եւ այն օրերը երբ աշակերտները շատցան,
*Հելլենացելոց կողմէն տրտունջ մը եղաւ Եբ-
րայեցւոց դէմ, վասն զի իրենց որբևայրիները
ամէն օրուան ողորմութեան մատակարարուելուն մէջ
2 անտես կ'ըլլային։ Եւ տասուերկուքը կանչեցին
աշակերտներուն բազմութիւնը ու ըսին, Մեզի
չվայլեր Աստուծոյ խօսքը ձգել ու սեղաններու
3 ծառայութիւն ընել։ Ուստի եղբայրներ, ձեզմէ
եօթը հոգի ընտրեցէք՝ բարի վկայուած, Հոգւով
Սրբով և իմաստութիւնով լեցուն, որպէս զի
4 զանոնք այս գործին վրայ դնենք. Եւ մենք ա-
ղօթքի ու Աստուծոյ խօսքին պաշտօնին պարա-
5 պինք։ Եւ այս խօսքը բոլոր բազմութեան առջև
հաճոյ երևցաւ. ու ընտրեցին Ստեփանոսը, հա-
ւատքով ու Հոգւով Սրբով լեցուն մարդ մը, ու

*Այսինքն, Հելլենախօս Հրեից

Փիլիպպոսը, և Պրոքորոնը, ու Նիկանովրան, և
Տիմոնեան, ու Պարմենան և Նիկողայոս Նորա-
6 հաւատ Անտիոքացին։ Ասոնք առաքեալներուն
առջև կայնեցուցին. անոնք ալ աղօթք ընելով՝
7 ձեռքերնին անոնց վրայ դրին։ Եւ Աստուծոյ
խօսքը կ'աճէր, ու աշակերտներուն թիւը խիստ
կը շատնար Երուսաղէմի մէջ. և քահանաներէն
մեծ բազմութիւն հաւատքին կը հնազանդէին։
8 Եւ Ստեփանոս, որ *հաւատքով ու զօրու-
թիւնով լցուած սուրբ հոգիով էր, մեծ հրաշքներ և
9 նշաններ կ'ընէր ժողովուրդին մէջ։ Բայց ոմանք
այն ժողովարանէն, որ Ազատացելոց և Կիւրե-
նացւոց ու Աղեքսանդրացւոց ժողովարան կ'ըսուէր,
և ոմանք որ Կիլիկիայէ ու Ասիայէ էին, ելան ու
10 Ստեփանոսի հետ վիճաբանութիւն կ'ընէին։ Եւ
չէին կրնար դէմ դնել այն իմաստութեանը ու
11 հոգիին, որով կը խօսէր։ Այն ատեն հրապու-
րեցին քանի մը մարդիկ, որպէս զի ըսեն թէ
Մենք լսեցինք որ ասիկա հայհոյական խօսքեր
12 կը խօսի Մովսէսի ու Աստուծոյ դէմ։ Եւ գրգռե-
ցին ժողովուրդը ու ծերերը և դպիրները, ու
անոր վրայ հասնելով զինք բռնեցին ու ատեանը
13 տարին։ Եւ սուտ վկաներ կայնեցուցին, որոնք
կ'ըսէին, Այս մարդը չդադարիր հայհոյական
բաներ խօսելէ սուրբ տեղիս և օրէնքին դէմ։
14 Քանզի լսեցինք ասկէ որ կ'ըսէր թէ այս Նա-
զովրեցի Յիսուսը պիտի քակէ այս տեղը, ու
պիտի փոխէ Մովսէսի մեզի աւանդած սովո-
15 րութիւնները։ Եւ ատեանը նստողներուն ամէնը
երբ անոր նայեցան, անոր երեսը հրեշտակի
երեսի պէս տեսան։

*Ոմանք, շնորհքով

# ԳԼ. Է

1 Ստեփանոս իրեն դէմ եղած ամբաստանութեանը պատասխան տալով, 2 կը ցուցնէ թէ ի՛նչպէս Աստուած ընտրեր էր իրենց հայրերը, 37 և թէ Մովսէս վկայութիւն բրած էր Քրիստոսի համար. 51 կը յանդիմանէ Հրեաները որ ապստամբ գտնուելով Աստուծոյ դէմ, սպաննեցին զՔրիստոս, այն Արդարը, որուն համար մարգարէները կանխաձայներ էին, թէ աշխարհք պիտի գայ: 54 Ասոր վրայ Հրեաները կը քարկոծեն Ստեփանոսը, որ իր հոգին Յիսուսի յանձնելով՝ խոնարհութեամբ աղօթք կ'ընէ անոնց համար:

1 Այն ատեն քահանայապետը ըսաւ, Իրաւցնէ
2 այդ բաները այդպէ՞ս են: Եւ անիկա ըսաւ,
Մարդիկ եղբայրներ ու հայրեր, մտիկ ըրէք.
Փառաց Աստուածը մեր հօրը Աբրահամի ե-
րեւցաւ, քանի որ Միջագետքի մէջ էր, դեռ
3 Խառանի մէջ չբնակած, և ըսաւ անոր, Ելիր
քու երկրէդ և քու ազգականներէդ, ու եկուր
4 այն երկիրը զոր ես քեզի պիտի ցուցնեմ: Այն
ատեն Քաղդէացւոց երկրէն ելլելով՝ Խառանի
մէջ բնակեցաւ. և անոր հօրը մեռնելէն ետև
անկէ փոխադրեց զանիկա այս երկիրը, ուր
5 դուք հիմա կը բնակիք: Եւ ասոր մէջ անոր
ժառանգութիւն չտուաւ, ոչ ալ ոտքի քայլ մը
տեղ, բայց խոստացաւ որ անիկա իրեն տայ իբրև
կալուածք, և իրմէ ետև իր սերունդին, երբ
6 դեռ ինք որդի չունէր: Եւ Աստուած այսպէս
խօսեցաւ, թէ անոր սերունդը օտար երկրի մէջ
պանդուխտ պիտի ըլլայ, ու պիտի ծառայե-
ցնեն զանիկա և չարչարեն չորս հարիւր տարի:
7 Եւ այն ազգը, որուն պիտի ծառայեն, ես պիտի
դատեմ, ըսաւ Աստուած, և անկէ ետև պիտի
8 ելլեն ու այս տեղ զիս պաշտեն: Եւ անոր թլփա-
տութեան ուխտը տուաւ, ու ետքը Աբրահամ
Իսահակը ծնաւ, և թլփատեց զանիկա ութե-
րորդ օրը. Իսահակ ալ Յակոբը ծնաւ, Յակոբ ալ՝
9 տասներկու նահապետները: Եւ նահապետա-
ները Յովսէփի վրայ նախանձելով՝ Եգիպտոս
վաճառելու ծախեցին. բայց Աստուած անոր հետ

10 էր, Ու փրկեց զանիկա իր ամէն նեղութիւն-
ներէն, և անոր շնորհք ու իմաստութիւն տուաւ
Եգիպտոսի Փարաւոն թագաւորին առջեւ. ան ալ
զանիկա իշխան դրաւ Եգիպտոսի ու իր բոլոր
11 տանը վրայ։ Ու Եգիպտոսի և Քանանու բոլոր
երկրին վրայ սով մը եկաւ ու մեծ նեղութիւն,
12 և մեր հայրերը ուտելիք չէին գտներ։ Եւ Յակոբ
երբ լսեց թէ Եգիպտոսի մէջ ցորեն կը գտնուի,
13 առաջին անգամին մեր հայրերը ղրկեց։ Եւ
երկրորդ անգամին Յովսէփ իր եղբայրներուն
ճանչցուց ինքզինք. ու Յովսէփին ազգը Փարա-
14 ւոնի յայտնի եղաւ։ Եւ Յովսէփ ղրկեց՝ ու
կանչեց իր հայրը Յակոբը ու բոլոր ազգատոհմը,
15 եօթանասունըհինգ հոգի։ Եւ Յակոբ Եգիպ-
տոս իջաւ, ու մեռաւ ինք ու մեր հայրերը.
16 Եւ Սիւքէմ տարուելով՝ այն գերեզմանին մէջ
դրուեցան, զոր Աբրահամ արծաթի գնով
ծախու առեր էր Սիւքէմի հօրը Եմովրի որդի-
17 ներէն։ Ու երբ մօտեցաւ խոստմունքին ատենը,
զոր Աստուած երդումով խոստացեր էր Աբ-
րահամի, ժողովուրդը աճեցաւ ու շատցաւ Ե-
18 գիպտոսի մէջ, Մինչև ուրիշ թագաւոր մը ելաւ,
19 որ Յովսէփը չէր ճանչնար։ Անիկա հնարք բա-
նեցուց մեր ազգին դէմ ու չարչարեց մեր հայ-
րերը, մինչև անգամ անոնց տղաքը դուրս ձգել
20 տալով, որպէս զի չապրին։ Այն ժամանակ Մով-
սէս ալ ծնաւ, և Աստուծոյ առջև գեղեցիկ էր,
21 որ իր հօրը տանը մեծցաւ երեք ամիս։ Ու երբ
անիկա դուրս ձգուեցաւ, Փարաւոնին աղջիկը
զանիկա վերցուց, և իրեն իբրև որդի մեծցուց։
22 Ու Մովսէս Եգիպտացւոց բոլոր իմաստութիւ-
նովը վարժուեցաւ, և զօրաւոր էր իր խօսքե-
23 րովը ու գործերովը։ Ու երբ քառասուն տա-
րեկան եղաւ, իր սիրտը ինկաւ իր եղբայրնե-
րուն, Իսրայէլի որդիներուն, այցելութիւն ընել։

24 Ու Իսրայէլացիներէն մէկը հարստահարուած տես-
նելով պաշտպանեց, և զարկուածին վրէժը առաւ՝
25 այն Եգիպտացին սպաննելով։ Կը կարծէր թէ
իր եղբայրները պիտի իմանային որ Աստուած
իր ձեռքով անոնց ազատութիւն պիտի տար,
26 բայց անոնք չիմացան։ Ու հետևեալ օրը անոնց
դիմաց ելաւ երբ կը կռուէին, և խաղաղու-
թիւն ընելու ստիպեց զանոնք՝ ըսելով, Մար-
դիկ, դուք եղբայրներ էք, ինչո՞ւ մէկզմէկ
27 կը զրկէք։ Բայց ան որ ընկերը կը զրկէր, մեր-
ժեց զանիկա, ու ըսաւ, Ո՞վ քեզ մեր վրայ
28 իշխան ու դատաւոր դրաւ. Զի՞ս ալ սպաննել
կ'ուզես, ինչպէս երէկ Եգիպտացին սպաննե-
29 ցիր։ Եւ Մովսէս այս խօսքին վրայ փախաւ,
ու Մադիանու երկրին մէջ պանդուխտ եղաւ,
30 ուր երկու որդի ծնաւ։ Եւ քառասուն տարի
անցնելէն ետև՝ Սինա լեռանը անապատին մէջ
Տէրոջը հրեշտակը երևցաւ անոր մորենիի կրակի
31 բոցով։ Մովսէս ալ երբ տեսաւ, զարմացաւ
այն տեսիլքին վրայ, ու երբ մօտեցաւ զննե-
32 լու, Տէրոջը ձայնը եկաւ անոր ու ըսէր Ես եմ
քու հայրերուդ Աստուածը, Աբրահամի Աստ-
ուածը, ու Իսահակի Աստուածը, և Յակոբի
Աստուածը. Մովսէս ալ վախէն դողալով՝ չէր հա-
33 մարձակեր զննել։ Եւ Տէրը ըսաւ անոր, Ոտ-
քերուդ կօշիկները հանէ, վասն զի այդ տեղը
34 ուր դուն կայներ ես՝ սուրբ երկիր է։ Յիրաւի
Եգիպտոսի մէջ եղող ժողովուրդիս չարչարանքը
տեսայ, ու լսեցի անոնց հառաչանքը, և իջայ
զանոնք ազատելու. և հիմա եկուր քեզ Եգիպ-
35 տոս ղրկեմ։ Այն Մովսէսը զոր ուրացան ու
կ'ըսէին, Ո՞վ քեզ իշխան ու դատաւոր դրաւ,
Աստուած զանիկա իշխան և փրկիչ ղրկեց այն
հրեշտակին ձեռքով՝ որ մորենիին մէջ անոր
36 երևցաւ։ Անիկա հանեց զանոնք, հրաշքներ

ու նշաններ ընելով Եգիպտոսի երկրին ու Կար-
միր ծովուն մէջ, և անապատին մէջ քառասուն
37 տարի ։ Այս Մովսէսն է որ ըսաւ Իսրայէլի որ-
դիներուն, Ձեր Տէր Աստուածը ձեր եղբայր-
ներէն ինծի պէս մարգարէ մը պիտի հանէ ձեզի,
38 անոր մտիկ ըրէք ։ Ասիկա ան է որ անապատը
ժողովքին մէջ էր՝ Սինա լեռան վրայ իրեն խօ-
սող հրեշտակին հետ ու մեր հայրերուն հետ,
որ կենդանի պատգամներ առաւ մեզի տալու.
39 Որուն մեր հայրերը չուզեցին հնազանդ ըլլալ,
հապա մերժեցին և իրենց սրտերովը Եգիպ-
40 տոս դարձան, Եւ ըսին Ահարոնի, Մեզի աստ-
ուածներ շինէ, որպէս զի մեր առջևէն երթան.
քանզի այն Մովսէսը որ մեզ Եգիպտոսի երկ-
րէն հանեց, չենք գիտեր թէ ինչ եղաւ անոր ։
41 Եւ այն օրերը որթ մը շինեցին, ու կուռքին
զոհ մատուցին, և իրենց ձեռքերուն գործե-
42 րովը կը զուարճանային ։ Աստուած ալ ետև դար-
ձաւ, ու թողուց զանոնք որ երկնքի զօրքը
պաշտեն. ինչպէս գրուած է մարգարէներուն
գրքին մէջ, Միթէ անապատին մէջ քառա-
սուն տարի զոհեր ու պատարագնե՞ր մատուցիք
43 ինծի, ով Իսրայէլի տունը. Եւ Մողոքի վրանը
առիք ու ձեր Հռեմփա աստուծոյն աստղը, այն
պատկերները զորոնք շինեցիք անոնց երկրպա-
գութիւն ընելու. ես ալ ձեզ Բաբելոնէ անդին
44 պիտի փոխադրեմ ։ Վկայութեան խորանը ա-
նապատին մէջ մեր հայրերուն հետ էր, ինչպէս
Մովսէսի հետ խօսողը հրաման ըրաւ որ տե-
45 սած օրինակին պէս շինէ զանիկա. Զոր մեր
հայրերն ալ յաջորդաբար առնելով Յեսուի հետ
բերին զանիկա այն ազգերուն կալուածքը, զո-
րոնք Աստուած վռնտեց մեր հայրերուն առ-
46 ջևէն մինչև Դաւիթի օրերը, Որ Աստուծոյ առջև
շնորհք գտաւ, և ուզեց որ Յակոբի Աստուծոյն

47 բնակարան մը գտնէ ։ Ու Սողոմոն անոր տուն մը
48 շինեց ։ Սակայն Բարձրեալը ձեռքով շինուած
տաճարներու մէջ չբնակիր, ինչպէս մարգարէն
49 կ'ըսէ, Երկինք իմ աթոռս է, ու երկիր իմ
ոտքերուս պատուանդանն է. ո՞րպիսի տուն
պիտի շինէք ինծի, կ'ըսէ Տէրը, կամ ի՞նչ պիտի
50 ըլլայ իմ հանգստութեանս տեղը. Չէ՞ որ այս
51 ամէնը իմ ձեռքս շիներ է ։ Ով խստապարա-
նոցներ ու սրտով և ականջով չթլփատուածներ,
դուք ամէն ատեն Հոգւոյն Սրբոյ հակառակ
կը կենաք, ինչպէս ձեր հայրերը՝ այնպէս ալ
52 դուք ։ Մարգարէներէն ո՞րը չհալածեցին ձեր
հայրերը, ու սպաննեցին զանոնք որ առաջուընէ
պատմեցին այն Արդարին գալուն համար, ո-
րուն դուք հիմա մատնիչները և սպանողները
53 եղաք. Դուք որ օրէնքը առիք հրեշտակներուն
մատակարարութենովը ու չպահեցիք ։
54 Եւ անոնք այս բաները լսելով՝ սրտերնուն
մէջ կը կատղէին ու ակռաներնին անոր վրայ
55 կը կրճտէին ։ Բայց անիկա Հոգւով Սրբով լեց-
ուած՝ երկինք նայեցաւ և տեսաւ Աստուծոյ
փառքը, ու Յիսուսն ալ որ Աստուծոյ աջ կողմը
կայներ էր, և ըսաւ, Ահա կը տեսնեմ երկինքը
բացուած, ու Որդին մարդոյ՝ Աստուծոյ աջ կողմը
56 կայնած ։ Իսկ անոնք մեծաձայն աղաղակելով՝ ա-
կանջներնին գոցեցին, և ամէնը մէկէն վազեցին
57 անոր վրայ. Ու քաղաքէն դուրս հանելով՝ կը
քարկոծէին զանիկա. և վկաները իրենց հանդերձ-
ները ալ կը դնէին երիտասարդի մը ոտքերուն
58 քով, որ Սօղոս կ'ըսուէր ։ Եւ կը քարկոծէին
Ստեփանոսը, որ աղօթք կ'ընէր ու կ'ըսէր, Տէր
59 Յիսուս, ընդունէ իմ հոգիս ։ Ու ծունկի վրայ
գալով բարձրաձայն աղաղակեց, Տէր, այս
մեղքը մի սեպեր ասոնց. և զայս ըսելով ննջեց ։
Սօղոս ալ կամակից էր անոր սպաննուելուն ։

# ԳԼ. Ը

1 Երուսաղէմի հալածումը առիթ կ'ըլլայ որ Սամարիայի մէջ եկեղեցի մը կը հաստատուի 5 Փիլիպպոսի ձեռքով, որ քարոզեց՝ հրաշքներ ըրաւ և շատերը մկրտեց, որոնց մէջ էր Սիմոն մոգը։ 14 Պետրոս ու Յովհաննէս հոն կ'երթան եկեղեցիին հաստատութիւն տալու, ու աղօթքով և ձեռքերնին ժողովուրդներուն վրայ դնելով՝ Սուրբ Հոգին կը տրուի անոնց։ 18 Երբ Սիմոն կ'ուզէ ստակով ծախու առնել անոնց ունեցած իշխանութիւնը, 20 Պետրոս սաստիկ կը յանդիմանէ անոր սրտին չարութիւնը, ու զղջալու կը յորդորէ. ետքը Յովհաննէսի հետ Աստուծոյ խօսքը քարոզելով Երուսաղէմ կը դառնայ։ 26 Տէրոջը հրեշտակը կը ղրկէ Փիլիպպոսը՝ որ երթայ քարոզէ Եթէովպացի ներքինիին, և մկրտէ զանիկա։

1 Եւ այն օրը մեծ հալածում եղաւ Երուսաղէմի
մէջ եղող եկեղեցիին վրայ, և առաքեալներէն
զատ ամէնն ալ ցրուեցան եղան Հրէաստանի ու
2 Սամարիայի երկիրներուն մէջ։ Եւ աստուածա-
վախ մարդիկ Ստեփանոսը վերցուցին, ու անոր
3 վրայ մեծ սուգ ըրին։ Բայց Սօղոս եկեղեցիին
շատ վնաս կու տար, տուները կը մտնէր, այրեր
ու կիներ կը քաշէր՝ բանտ դնել կու տար։
4 Եւ այն ցրուեցան եղածները կը պտըտէին ու
5 խօսքը կը քարոզէին։ Փիլիպպոս ալ Սամարիայի
մէկ քաղաքը իջնելով՝ Քրիստոսը կը քարոզէր
6 անոնց։ Եւ ժողովուրդները միաբան Փիլիպ-
պոսի բառերուն ուշադրութիւն կու տային՝
լսելով ու տեսնելով այն նշանները զորոնք
7 կ'ընէր։ Վասն զի շատ դիւահարներէն պիղծ
ոգիները մեծաձայն աղաղակելով կ'ելլէին։
8 Եւ շատ անդամալոյծներ ու կաղեր կը բժըշ-
9 կուէին. Ու մեծ ուրախութիւն եղաւ այն
քաղաքին մէջ։ Բայց Սիմոն անունով մարդ մը
կար, որ առաջուընէ այն քաղաքին մէջ մո-
գութիւն կ'ընէր, ու Սամարացւոց ազգը կ'ապ-
շեցնէր, իրեն համար ըսելով թէ մեծ մէկն է.
10 Որու ուշադրութիւն կու տային ամէնն ալ,
պզտիկէն մինչև մեծը, և կ'ըսէին, Ասիկա Աս-
11 տուծոյ մեծ [ըսուած] զօրութիւնն է։ Շատ
ժամանակէ ի վեր կախարդութիւններով զա-

նոնք ապշեցնելուն համար՝ իրեն ուշադրութիւն
12 կու տային ։ Բայց երբ Փիլիպպոսի հաւատացին,
որ Աստուծոյ թագաւորութեանը ու Յիսուս
Քրիստոսի անուանը վրայով կը քարոզէր, կը
13 մկրտուէին թէ՛ այրեր և թէ՛ կիներ ։ Եւ Սիմոն
ինք ալ հաւատաց, ու մկրտուելով՝ միշտ Փի-
լիպպոսի հետ էր. և տեսնելով այն նշանները
ու մեծ զօրութիւնները որոնք կ'ըլլային՝ կը զար-
14 մանար ։ Իսկ Երուսաղէմի մէջ եղող առաքեալ-
ները երբ լսեցին թէ Սամարացիք Աստուծոյ
խօսքը ընդուներ են, Պետրոսը ու Յովհաննէսը
15 անոնց ղրկեցին. Որոնք իջնելով՝ աղօթք ըրին
անոնց համար որպէս զի Սուրբ Հոգին առնեն.
16 (Վասն զի դեռ անոնց մէկունը վրայ իջած չէր,
հապա միայն Տէր Յիսուսի անուանը մկրտուած
17 էին.) Այն ատեն ձեռքերնին դրին անոնց վրայ,
18 ու Սուրբ Հոգին կ'առնէին ։ Երբ տեսաւ Սիմոն
թէ առաքեալներուն անոնց վրայ ձեռք դնելովը
Սուրբ Հոգին կը տրուի, անոնց ստակ մատուց
19 ու ըսաւ, Ինծի ալ այս իշխանութիւնը տուէք,
որպէս զի որու վրայ ձեռք դնեմ՝ անիկա Սուրբ
20 Հոգին առնէ ։ Բայց Պետրոս ըսաւ անոր, Քու
արծաթդ քեզի հետ թող կորսուի, վասն զի
Աստուծոյ պարգեւը կարծեցիր թէ ստակով
21 կ'առնուի ։ Դուն այս բանին մէջ մաս ու բա-
ժին չունիս, վասն զի քու սիրտդ Աստուծոյ
22 առջև շիտակ չէ ։ Ուստի այդ քու չարութենէդ
զղջացիր ու Աստուծոյ աղաչէ, թերևս ներուի
23 քեզի քու սրտիդ այդ խորհուրդը ։ Վասն զի ես
քեզ մաղձի դառնութեան մէջ և անիրաւու-
24 թեան կապին մէջ կը տեսնեմ ։ Սիմոն պա-
տասխան տուաւ ու ըսաւ, Դուք ինծի համար
աղօթք ըրէք Տէրոջը, որպէս զի այդ ձեր ըսած-
25 ներէն բան մը իմ վրաս չգայ ։ Անոնք ալ վկայու-
թիւն տալով Տէրոջը խօսքը խօսելէն ետև դար-

ձան Երուսաղէմ, և Սամարացւոց շատ գեղե-
րուն մէջ աւետարանը քարոզեցին ։
26 Եւ Տէրոջը հրեշտակը Փիլիպպոսի խօսեցաւ՝
ըսելով, Ելիր ու գնա դուն հարաւային կողմը,
այն ճամբան, որ Երուսաղէմէ դէպ ի Գազա
27 կ'իջնէ, որ անապատ տեղ մըն է ։ Ան ալ ելաւ
գնաց. և ահա Եթովպացի ներքինի մարդ մը,
Եթովպացւոց Կանդակա թագուհիին մէկ զօ-
րաւորը, որ անոր բոլոր գանձերուն վրայ էր,
որ Երուսաղէմ եկեր էր երկրպագութիւն ը-
28 նելու. Եւ անկէ ետ կը դառնար, ու իր կառքը
նստած Եսայի մարգարէին գիրքը կը կարդար ։
29 Եւ Հոգին ըսաւ Փիլիպպոսի, Մօտեցիր և այդ
30 կառքին քով գնա ։ Փիլիպպոս ալ վազելով մօտ
գնաց, ու մտիկ կ'ընէր որ Եսայի մարգարէին գիրքը
կը կարդար, և ըսաւ, Կարդացածդ կը հասկնա՞ս
31 արդեօք ։ Ան ալ ըսաւ, Ի՞նչպէս կրնամ հասկնալ,
եթէ մէկը ինծի չառաջնորդէ. ու աղաչեց Փի-
32 լիպպոսի, որ ելլէ իր քով նստի ։ Եւ գիրքին մէջ
կարդացած տեղը այս էր. Ոչխարի պէս մոր-
թուելու տարուեցաւ, ու իր խուզողին առջև
մունջ կեցող գառնուկի պէս՝ այնպէս իր բերանը
33 չբանար. Իր խոնարհութեանը մէջ իր դատաս-
տանը վերցուեցաւ, և անոր ազգատոհմը ո՞վ
պիտի պատմէ. վասն զի անոր կեանքը երկրէ
34 կը վերցուի ։ Ներքինին պատասխան տուաւ Փի-
լիպպոսի ու ըսաւ, Կ'աղաչեմ քեզի, մարգարէն
որո՞ւ համար կ'ըսէ զայս. իրե՞ն համար թէ ու-
35 րիշի մը համար ։ Իսկ Փիլիպպոս իր բերանը
բացաւ, և գիրքին այս խօսքէն սկսելով՝ Յիսուսը
36 քարոզեց անոր ։ Ու երբ իրենց ճամբան կ'եր-
թային, ջուրի մը քով եկան. ու ըսաւ ներքի-
նին, Ահա ջուր, ալ ի՞նչ բան զիս կ'արգիլէ մկրը-
37 տուելէ ։ [Եւ Փիլիպպոս ըսաւ անոր, Եթէ քու
բոլոր սրտովդ կը հաւատաս՝ կարելի է. անիկա

*պատասխան տուաւ ու ըսաւ, Կը հաւատամ*
38 *[թէ Յիսուս Քրիստոս Որդի Աստուծոյ է։]* Ու
*հրաման ըրաւ որ կառքը կայնեցնեն. և եր-*
*կուքն ալ ջուրը իջան, Փիլիպպոս ու ներքինին,*
39 *և մկրտեց զանիկա։ Ու երբ ջուրէն դուրս ելան,*
*Տէրոջը Հոգին յափշտակեց Փիլիպպոսը, և ա՛լ*
*ներքինին զանիկա չտեսաւ, ու իր ճամբան կ'եր-*
40 *թար ուրախութեամբ։ Բայց Փիլիպպոս Ազով-*
*տոսի մէջ գտնուեցաւ. ու պտըտելով բոլոր քա-*
*ղաքներուն աւետարան կը քարոզէր, մինչև ինք*
*Կեսարիա եկաւ։*

## ԳԼ. Թ

*1 Սօղոս Դամասկոս երթալու ճամբուն վրայ 4 գետինը կ'իյնայ, և կը տեսնէ զՅիսուս. 10 առաքելական պաշտօնին կը կանչուի, 18 և Անանիայէ կը մկրտուի. 20 համարձակ զՔրիստոս կը քարոզէ։ 23 Հրեաները կը խորհին զանիկա սպաննել. 29 Նմանապէս Յոյները. բայց Սօղոս անոնց ձեռքէն կը փախչի։ 31 Եկեղեցին խաղաղութիւն կը վայելէ. Պետրոս կը բժշկէ Ենեա անուն անդամալոյծը, 36 և Տաբիթան կը յարուցանէ։*

1 *Բայց Սօղոս տակաւին Տէրոջը աշակերտներուն*
*դէմ սպառնալիք ու մահ փչելով՝ քահանայա-*
2 *պետին քով գնաց. Եւ անկէ թուղթեր ուզեց*
*Դամասկոս ժողովարաններուն* համար, *որպէս զի*
*եթէ այն ճամբուն հետեւողներ գտնելու ըլլայ,*
*այրեր կամ կիներ, կապած Երուսաղէմ բերէ։*
3 *Ու երբ կ'երթար ու Դամասկոսի մօտեցաւ,*
*յանկարծ իր բոլորտիքը երկինքէն լոյս մը փայ-*
4 *լատակեց. Եւ ինք գետինը իյնալով՝ ձայն մը*
*լսեց որ կ'ըսէր իրեն, Սաւո՛ւղ, Սաւո՛ւղ, ինչո՞ւ*
5 *զիս կը հալածես։ Եւ անիկա ըսաւ, Ո՞վ ես*
*դուն, Տէր. և Տէրը ըսաւ, Ես եմ Յիսուսը զոր*
*դուն կը հալածես. *դժուար բան է քեզի*
6 *խթանի դէմ կիցը զարնել։ Ան ալ դողալով ու*
*ապշութեամբ ըսաւ, Տէր, ի՞նչ կ'ուզես որ ընեմ։*
7 *Եւ Տէրը* ըսաւ *անոր, Ելիր ու քաղաքը մտիր,*
*և քեզի պիտի ըսուի ինչ որ պարտիս ընել.*

---

*Ոմանք չունին

իսկ այն մարդիկը որոնք իրեն հետ կ'երթային,
ապշած կեցեր էին, ձայնը միայն կը լսէին, բայց
8 մէ'կը չէին տեսներ։ Եւ Սօղոս գետնէն ելաւ,
ու բաց աչքերով՝ մէ'կը չէր տեսներ. ուստի
անոր ձեռքէն բռնեցին ու Դամասկոս մտցու-
9 ցին։ Եւ երեք օր կեցաւ առանց տեսնելու, և
ոչ կերաւ, ոչ ալ խմեց։
10 Ու Անանիա անունով աշակերտ մը կար Դա-
մասկոսի մէջ. և Տէրը տեսիլքի մէջ անոր ըսաւ,
11 Անանիա. ան ալ ըսաւ, Տէր, ահա հոս եմ։ Եւ
Տէրը ըսաւ անոր, Ելիր ու գնա այն փողոցը որ
Ուղիղ կ'ըսուի, և հոն Յուդայի տանը մէջ փնտռէ
Սօղոս անունով Տարսոնացի մը. վասն զի ահա
12 անիկա աղօթք կ'ընէ. Ու տեսիլքի մէջ մարդ մը
տեսաւ Անանիա անունով՝ ներս մտած և ձեռքը
13 իր վրայ դրած, որպէս զի տեսնէ։ Անանիա ալ
պատասխան տուաւ, Տէր, շատերէ լսեցի այն
մարդուն համար թէ ո'րչափ չարիքներ ըրաւ
14 քու սուրբերուդ Երուսաղէմի մէջ. Եւ հոս ալ
քահանայապետներէն իշխանութիւն ունի կա-
պելու այն ամէնը որոնք քու անունդ կը կանչեն։
15 Եւ Տէրը ըսաւ անոր, Գնա դուն, վասն զի ա-
նիկա ինծի ընտիր աման մըն է, իմ անունս կրե-
լու հեթանոսներուն ու թագաւորներուն և
16 Իսրայէլի որդիներուն առջև. Քանզի ես անոր
պիտի ցուցնեմ թէ ո'րչափ պէտք է իրեն իմ
17 անունիս համար նեղութիւն կրել։ Եւ Անանիա
գնաց ու այն տունը մտաւ, և ձեռքերը անոր
վրայ դնելով՝ ըսաւ, Սաւուղ եղբայր, Տէրը զիս
ղրկեց, այն Յիսուսը որ ճամբուն մէջ քեզի ե-
րեցաւ երբ կու գայիր, որպէս զի տեսութիւնդ
18 ստանաս, ու Հոգւով Սրբով լեցուիս։ Եւ շուտ
մը անոր աչքերէն թեփերու պէս բաներ ին-
կան. և իսկոյն տեսաւ ու ելաւ մկրտուեցաւ.
19 Եւ կերակուր ուտելով ույժը վրան եկաւ,

*ու քանի մը օր Դամասկոսի մէջ եղող աշա-
կերտներուն հետ կեցաւ ։
20 Եւ անմիջապէս ժողովարաններուն մէջ կը
քարոզէր †Յիսուսը, թէ անիկա է Աստուծոյ
21 Որդին ։ Եւ ամէն լսողները մեծապէս զարմա-
ցեր էին, ու կ՚ըսէին. Ասիկա ան չէ՞ որ Ե-
րուսաղէմի մէջ կը կործանէր զանոնք որ այս
անունը կը կանչէին. և հոս ալ այն բանին հա-
մար եկած էր, որպէս զի զանոնք կապած՝ քա-
22 հանայապետներուն տանի ։ Բայց Սօղոս ա՛լ
աւելի կը զօրանար, և Դամասկոսի մէջ բնա-
կող Հրեաները կը պապանձեցնէր, ապացուցա-
23 նելով թէ Քրիստոսը ասիկա է ։ Ու շատ օրեր
անցնելէն ետքը Հրեաները խորհուրդ ըրին որ
24 զանիկա սպաննեն ։ Բայց Սօղոսի յայտնուեցաւ
անոնց նենգութիւնը. և ցորեկ ու գիշեր դռները
25 կը սպասէին, որպէս զի զանիկա սպաննեն ։ Իսկ
աշակերտները գիշերով առին զանիկա, ու
զամբիւղով մը կախելով պատէն վար իջեցուցին ։
26 Երբ Սօղոս Երուսաղէմ եկաւ, կը ջանար
աշակերտներուն յարիլ, բայց ամէնն ալ կը
վախնային անկէ, չհաւատալով թէ անիկա
27 աշակերտ էր ։ Բայց Բառնաբաս զանիկա առ-
նելով՝ առաքեալներուն տարաւ, ու պատմեց
անոնց թէ ի՛նչպէս ճամբուն վրայ Տէրը տեսաւ,
և թէ անոր հետ խօսեցաւ, և թէ ի՛նչպէս
Դամասկոսի մէջ համարձակ քարոզեց Յիսուսի
28 անունովը ։ Ու Երուսաղէմի մէջ անոնց հետ
կը մտնէր ու կ՚ելլէր՝ Տէր Յիսուսի անունովը
29 համարձակ քարոզելով ։ Նաև ‡Հելլենացւոց
դէմ կը խօսէր և վիճաբանութիւն կ՚ընէր. ա-
30 նոնք ալ կը փնտռէին զանիկա սպաննել ։ Իսկ
եղբայրները իմանալով՝ զանիկա Կեսարիա
իջեցուցին, և անկէ Տարսոն ղրկեցին զանիկա ։

*Ոմանք, ու Սաւուղ †Ոմանք, Քրիստոսը ‡Այլքն., Հելլենախօս Հրէից

31 Այն ատեն եկեղեցիները բոլոր Հրէաստանի
և Գալիլեայի ու Սամարիայի մէջ խաղաղու-
թիւն ունեցան, և շինութիւն կ'ընդունէին, ու
Տէրոջը երկիւղովը և Հոգւոյն Սրբոյ մխիթա-
րութիւնովը քալելով կ'աճէին ։
32 Ու երբ Պետրոս ամէն տեղ կը պտըտէր,
Լիւդդեա բնակող սուրբերուն քով ալ իջաւ ։
33 Եւ հոն մարդ մը գտաւ, որուն անունը Ենեա
էր, ութ տարիէ ի վեր մահիճը պառկած ան-
34 դամալոյծ ․ Եւ ըսաւ անոր Պետրոս, Ենեա, Յի-
սուս Քրիստոս քեզ կը բժշկէ ․ ելիր ու քու
35 անկողինդ շինէ ․ ան ալ շուտ մը ելաւ ։ Եւ
Լիւդդեայի ու Սարոնի մէջ բնակողներուն ա-
36 մէնը զանիկա տեսան, ու Տէրոջը դարձան ։ Եւ
Յոպպէի մէջ աշակերտ եղած կին մը կար, ա-
նունը Տաբիթա ․ (որ թարգմանուելով Այծեմ-
նիկ կ'ըսուի ․) ասիկա լեցուած էր բարի գործե-
րով ու ողորմութիւններով զորոնք ինք կ'ընէր ։
37 Ու եղաւ որ այն օրերը ինք հիւանդացաւ ու մե-
ռաւ ․ լուացին զանիկա և վերի սենեակ մը դրին ։
38 Ու Լիւդդեա Յոպպէի մօտ էր ․ ուստի աշա-
կերտները լսելով թէ Պետրոս հոն է, անոր
երկու մարդ ղրկեցին, աղաչելով որ չուշանայ
39 իրենց գալու ։ Պետրոս ալ ելաւ անոնց հետ
եկաւ ․ ու երբ եկաւ, վերի սենեակը հանեցին
զանիկա ․ և բոլոր որբևայրիները անոր բոլորտիքը
կայնեցան, կու լային ու կը ցուցնէին այն բաճ-
կոնները և հանդերձները զորոնք կ'ընէր Այ-
40 ծեմնիկ՝ քանի որ իրենց հետ էր ։ Պետրոս ալ
ամէնը դուրս հանելով՝ ծունկի վրայ եկաւ ու
աղօթք ըրաւ, և դէպ ի մարմինը դառնալով՝
ըսաւ, Տաբիթա, ելիր կայնէ ․ ան ալ իր աչ-
քերը բացաւ, ու Պետրոսը տեսնելով՝ ելաւ շիտակ
41 նստաւ ։ Ինք ալ ձեռքը անոր տուաւ, ու վեր-
ցուց զանիկա, և սուրբերը ու որբևայրիները

կանչելով՝ անոնց առջեւ ողջ կայնեցուց զանիկա ։
42 Եւ այս բանը բոլոր Յոպպէի մէջ իմացուեցաւ, ու
43 շատերը Տէրոջը հաւատացին ։ Եւ եղաւ որ ինք
շատ օրեր Յոպպէ կեցաւ Սիմոն անունով կաշի բա-
նողի մը քով ։

## ԳԼ. Ժ

1 Կոռնելիոս անունով բարեպաշտ մարդ մը 3 Աստուծոյ հրեշտակէն հրաման առած՝ կանչել կու տայ Պետրոսը, 11 որ տեսիլքի մը մէջ կը սորվի չզարշիլ հեթանոսներէն ։ 34 Պետրոս զՔրիստոս կը քարոզէ Կոռնելիոսի ու անոր տանը մէջ եղողներուն, 44 և դեռ իր խօսքը չլմնցուցած՝ Սուրբ Հոգին կը հանգչի անոնց վրայ, 48 և կը մկրտուին ։

1 Կեսարիայի մէջ մարդ մը կար Կոռնելիոս անու-
նով, հարիւրապետ՝ Իտալացի ըսուած գունդէն․
2 Բարեպաշտ ու աստուածավախ իր բոլոր տու-
նովը, որ ժողովուրդին շատ ողորմութիւններ
կու տար, և ամէն ատեն Աստուծոյ աղօթք
3 կ'ընէր ։ Անիկա օրուան ժամը իննին ատենները
տեսիլքի մէջ Աստուծոյ հրեշտակը յայտնի տե-
սաւ, որ իր քով մտաւ և իրեն ըսաւ, Կոռնե-
4 լիոս․ Ան ալ անոր նայելով ու խիստ վախնա-
լով՝ ըսաւ, Ի՞նչ է, Տէր․ ան ալ ըսաւ անոր,
Քու աղօթքներդ ու ողորմութիւններդ Աստու-
5 ծոյ առջեւ ելան յիշատակի համար ։ Եւ հիմա
Յոպպէ մարդիկ ղրկէ, ու կանչէ Սիմոն անունով
6 մէկը որ Պետրոս մականուանեալ է․ Անիկա
իբրև հիւր կը կենայ Սիմոն անունով կաշի բանողի
7 մը քով, որուն տունը ծովուն մօտ է ։ *Ու երբ
գնաց այն հրեշտակը որ †իրեն հետ կը խօսէր, իր
ծառաներէն երկուքը կանչեց, ու իր քով սպա-
8 սողներէն ալ բարեպաշտ զինուոր մը, Եւ բո-
լորը անոնց պատմելով՝ Յոպպէ ղրկեց զանոնք ։
9 Ու հետեւեալ օրը երբ անոնք ճամբայ երթա-
լով՝ քաղաքին մօտեցան, Պետրոս ժամը վեցին

*Ոմանք յաւելուն, Անիկա քեզի պիտի զրուցէ ինչ որ պարտիս ընել ։
†Ոմանք, Կոռնելիոսի

10 ատենները տանիքը ելաւ աղօթք ընելու․ Եւ
խիստ անօթեցած ըլլալով՝ կ'ուզէր ճաշ ընել․
ու քանի որ կերակուրը պատրաստութիւն կը տես-
նէին, իր վրայ մտքի յափշտակութիւն մը եկաւ․
11 Եւ տեսաւ երկինքը բացուած, ու չորս ծայրէն
կապուած աման մը մեծ կտաւի մը պէս, որ
12 *իջաւ երկրի վրայ․ Որուն մէջ կային երկրի բո-
լոր չորքոտանիները ու գազանները և սողուն-
13 ները ու երկինքի թռչունները։ Եւ ձայն մը
եկաւ իրեն, Ելիր, Պետրոս, մորթէ ու կեր։
14 Բայց Պետրոս ըսաւ, Քա՛ւ լիցի, Տէր, վասն զի
ես ամենևին պիղծ կամ անմաքուր բան կե-
15 րած չեմ։ Նորէն մէյմըն ալ ձայն եկաւ իրեն,
Զայն որ Աստուած մաքրեց, դուն պիղծ մի
16 սեպեր։ Ասիկա երեք անգամ եղաւ, և աման
17 երկինք վերցուաւ։ Ու Պետրոս երբ իր մտքին մէջ
կը տարակուսէր թէ ի՛նչ պիտի ըլլայ այն իր տե-
սած տեսիլքը, ահա Կոռնելիոսէ ղրկուած մար-
դիկը Սիմոնին տունը հարցուցին, ու դրանը առջե-
18 կայնեցան․ Եւ կանչելով կը հարցնէին թէ Սի-
19 մոն որ Պետրոս կ'ըսուի, հո՞ս կը կենայ։ Ու երբ
Պետրոս այն տեսիլքին վրայով կը մտածէր, Հո-
գին Սուրբ ըսաւ անոր, Ահա երեք մարդիկ քեզ
20 կը փնտռեն․ Ուստի ելիր իջիր, և անոնց հետ
գնա առանց խղճահարութեան, վասն զի ես
21 ղրկեցի զանոնք։ Պետրոս ալ †այն մարդոց քով
իջնելով՝ ըսաւ, Ահա ես եմ անիկա զոր դուք
22 կը փնտռէք․ ի՞նչ բանի համար եկած էք։ Ա-
նոնք ալ ըսին, Կոռնելիոս հարիւրապետը, ար-
դար և աստուածավախ մարդ, բոլոր Հրէից
ազգէն վկայուած, սուրբ հրեշտակէ մը հրաման
առաւ, որ քեզ իր տունը կանչէ և քեզմէ
23 խօսքեր լսէ։ Այն ատեն ներս կանչեց զանոնք
և իր քով վար դրաւ։

*Ոմանք, իրեն իջաւ

†Ոմանք, Կոռնելիոսէ իրեն ղրկուած

Ու հետեւեալ օրը Պետրոս ելաւ, անոնց հետ
գնաց, և քանի մըն ալ Յոպպէէ եղող եղբայր-
24 ները իրեն հետ գացին ։ Ու հետեւեալ օրը Կե-
սարիա մտան ․ Կոռնելիոս ալ իր ազգականները
և մտերիմ բարեկամները կանչած՝ անոնց
25 կը սպասէր ։ Ու երբ Պետրոս ներս կը մտնէր,
Կոռնելիոս անոր դիմաց ելաւ, ու անոր ոտքը
26 ինկալով երկրպագութիւն կ'ընէր ։ Բայց Պետ-
րոս զանիկա կանգնեցուց ու ըսաւ, Ելիր կայնէ ․
27 Ես ինքս ալ մարդ եմ ։ Եւ անոր հետ խօ-
սակցելով ներս մտաւ, ու հոն շատ մարդիկ ժող-
28 վուած գտաւ ․ Եւ ըսաւ անոնց, Դուք գիտէք
թէ ինչպէս ապօրինաւոր բան է Հրեայ մար-
դու մը օտարազգիի հետ հաղորդակցութիւն
ընելը կամ անոր մօտենալը ․ բայց Աստուած
ինծի ցուցուց որ մարդոցմէ մէկուն պիղծ կամ
29 անմաքուր չըսեմ ։ Անոր համար ես ալ որ կան-
չուեցայ, առանց դէմ խօսելու եկայ ․ բայց
հիմա կը հարցնեմ, ի՞նչ բանի համար զիս կան-
30 չեցիք ։ Կոռնելիոս ալ ըսաւ, Չորս օր առաջ
մինչև այս ժամը ծոմ կը պահէի, ու ժամը ին-
նին տանս մէջ աղօթք կ'ընէի ․ և ահա փայլուն
հանդերձներով մարդ մը կայնեցաւ առջևս ու
31 ըսաւ, Կոռնելիոս, քու աղօթքդ լսուեցաւ,
և քու ողորմութիւններդ Աստուծոյ առջև
32 յիշուեցան ․ Ուստի մարդ ղրկէ Յոպպէ, ու կանչէ
Սիմոնը որ Պետրոս ալ կ'ըսուի ․ անիկա ծովուն
մօտ Սիմոն անունով կաշի բանողի մը տանը մէջ
իբրև հիւր կը կենայ ․ որ երբ գայ, քեզի պիտի
33 խօսի ։ Ուստի անմիջապէս մարդիկ ղրկեցի քեզի,
դուն ալ աղէկ ըրիր որ եկար ․ և հիմա մենք
ամէնս Աստուծոյ առջև կեցեր ենք՝ լսելու այն
ամէն բաները որոնք Աստուծմէ հրամայուած
են քեզի ։

34 Պետրոս իր բերանը բացաւ ու ըսաւ, Ճշմար-

տութեամբ կը հասկնամ, որ Աստուծոյ քով
35 աչառութիւն չկայ. Հապա ամէն ազգի մէջ ան
որ անկէ կը վախնայ ու արդարութիւն կը գործէ,
36 անոր ընդունելի է։ Այն խօսքը՝ Իսրայէլի որ-
դիներուն ղրկեց Աստուած խաղաղութիւն քա-
րոզելու Յիսուս Քրիստոսի ձեռքով. (անիկա է
37 ամենուն Տէրը.) Դուք աղէկ գիտէք այն բանը,
որ բոլոր Հրէաստանի մէջ եղաւ Գալիլեայէ
սկսած, այն մկրտութենէն ետեւ զոր Յովհան-
38 նէս քարոզեց. Յիսուսը՝ որ Նազարեթէ էր,
զոր Աստուած օծեց Սուրբ Հոգիով եւ զօրու-
թիւնով, որ պտըտեցաւ բարիք ընելով ու Սա-
տանայէ բոլոր տանջուածները բժշկելով, քան-
39 զի Աստուած իրեն հետ էր։ Եւ մենք վկայ ենք
այն ամէն բաներուն զորոնք ըրաւ Հրէաստանի
երկրին մէջ ու Երուսաղէմի մէջ, զոր փայտէն
40 կախած սպաննեցին ալ։ Աստուած զանիկա եր-
րորդ օրը յարուց, եւ յայտնի ըրաւ զանիկա,
41 Ոչ թէ բոլոր ժողովուրդին, հապա մեզի, ա-
ռաջուընէ Աստուծմէ վկայ ըլլալու ընտրուած-
ներուս, որ իրեն հետ կերանք ու խմե-
ցինք ալ անոր մեռելներէն յարութիւն առնե-
42 լէն ետքը։ Եւ ինք պատուիրեց մեզի՝ որ ժողո-
վուրդին քարոզենք ու վկայութիւն տանք, թէ
անիկա է Աստուծմէ սահմանուած՝ կենդանի-
43 ներուն ու մեռելներուն Դատաւորը։ Անոր
կը վկայեն բոլոր մարգարէները, թէ ամէն իրեն
հաւատացողները իր անունով մեղքերու թո-
ղութիւն կ՚առնեն։
44 Ու երբ Պետրոս այս խօսքերը կը խօսէր, Հո-
գին Սուրբ իջաւ ամենուն վրայ՝ որոնք խօսքը
45 կը լսէին։ Եւ թլփատուածներէն եղող հաւա-
տացեալները, որոնք Պետրոսի հետ եկած էին,
զարմացան որ հեթանոսներուն վրայ ալ Հոգւոյն
46 Սրբոյ պարգեւը կը լեցուէր։ Քանզի կը լսէին

անոնցմէ որ ուրիշ լեզուներով կը խօսէին, և
47 զԱստուած կը փառաւորէին։ Այն ատեն Պետ-
րոս պատասխան տուաւ, Կրնա՞յ մէկը ջուրը
արգիլել որ ասոնք չմկրտուին, որոնք Սուրբ
48 Հոգին ալ ընդունեցին մեզի պէս։ Ու հրաման
ըրաւ որ Տէրոջը անունովը մկրտուին. այն ատեն
իրեն աղաչեցին որ քանի մը օր հոն մնայ։

## ԳԼ. ԺԱ

1 Պետրոս հեթանոսներուն մէջ մտնելուն համար ամբաստանուած ըլլալով՝ 5 իր իրաւունքը կը ցուցնէ, 18 որ ընդունելի կ'ըլլայ։ 19 Աւետարանը կը տարածուի Փիւնիկէ, Կիպրոս և Անտիոք. ու Բառնաբաս կը ղրկուի հաւատացեալները հաստատելու։ 26 Աշակերտները նախ և առաջ Անտիոքի մէջ Քրիստոնեայ կ'անուանին. 27 անոնք օգնութիւն կը ղրկեն Հրէաստան սովի ժամանակ։

1 Եւ առաքեալները ու եղբայրները որ Հրէաս-
տանի կողմերն էին, լսեցին որ հեթանոսներն ալ
2 Աստուծոյ խօսքը ընդուներ են։ Ու երբ Պետ-
րոս Երուսաղէմ ելաւ, թլփատուածներէն ե-
3 ղբայրները անոր հետ կը վիճէին, Ու կ'ըսէին թէ
Դուն անթլփատ մարդոց քով մտար, և անոնց
4 հետ հաց կերար։ Պետրոս ալ սկսաւ բանը կարգով
5 պատմել անոնց, ու ըսաւ, Ես Յոպպէ քաղաքը
աղօթք կ'ընէի, ու մտքի յափշտակութեան մէջ
տեսիլք մը տեսայ. աման մը մեծ կտաւի պէս՝
չորս ծայրերէն երկինքէն կախուած իջաւ, ու
6 մինչև ինծի հասաւ. Որուն վրայ աչքս տնկեր
կը նայէի, և տեսայ երկրի չորքոտանիները ու
գազանները և սողունները ու երկինքի թռչուն-
7 ները։ Եւ ձայն մը լսեցի որ կ'ըսէր ինծի, Ելիր,
8 Պետրոս, մորթէ ու կեր։ Բայց ես ըսի, Քա՛ւ
լիցի, Տէր, վասն զի պիղծ կամ անմաքուր բան
9 մը ամենեւին մտած չէ իմ բերանս։ Պատասխան
տուաւ ինծի երկրորդ անգամ այն ձայնը եր-
կինքէն, Զայն որ Աստուած մաքրեց, դուն պիղծ
10 մի սեպեր։ Այս երեք անգամ եղաւ, ու նորէն
11 բոլորը երկինք քաշուեցաւ։ Եւ ահա իսկոյն

երեք մարդ Կեսարիայէ ինծի ղրկուած՝ եկան
12 իմ եղած տանս առջեւ կեցան։ Հոգին ալ ինծի
ըսաւ որ անոնց հետ երթամ առանց խղձահա-
րութեան. այս վեց եղբայրներն ալ ինծի հետ
13 գացին, ու մտանք այն մարդուն տունը։ Եւ
անիկա մեզի պատմեց թէ ինչպէս իր տանը մէջ
հրեշտակը տեսաւ, որ կայներ էր եւ իրեն կ՚ը-
սէր, Մարդ ղրկէ Յոպպէ, ու կանչէ Սիմոնը որ
14 Պետրոս ալ կը կոչուի. Ան քեզի խօսքեր պիտի
խօսի, որոնցմով փրկուիս դուն եւ քու բոլոր
15 տունդ։ Ու երբ սկսայ խօսիլ, Հոգին Սուրբ
անոնց վրայ իջաւ, ինչպէս առաջուընէ մեր
16 վրայ ալ։ Այն ատեն յիշեցի Տէրոջը խօսքը որ
կ՚ըսէր, Յովհաննէս ջրով մկրտեց, բայց դուք
17 Սուրբ Հոգիով պիտի մկրտուիք։ Ուստի եթէ
Աստուած միենոյն շնորհքը տուաւ անոնց,
ինչպէս մեզի ալ, երբ Տէր Յիսուս Քրիստոսի
հաւատացինք, ես ո՞վ էի որ կարենայի Աստու-
18 ծոյ դէմ դնել։ Այս բաները լսելով՝ ձայներ-
նին կտրեցին, եւ զԱստուած կը փառաւորէին
ու կ՚ըսէին, Ուրեմն Աստուած հեթանոսներուն
ալ կեանքի համար ապաշխարութիւն տուաւ։
19 Եւ Ստեփանոսի մահուանը վրայ եկած նեղու-
թենէն ցրուածները մինչեւ Փիւնիկէ ու
Կիպրոս եւ Անտիոք հասան, ու մէկո՛ւն Աս-
տուծոյ խօսքը չէին խօսեր, միայն թէ Հրեա-
20 ներուն։ Բայց անոնցմէ ոմանք Կիպրացի եւ Կիւ-
րենացի մարդիկ էին, որոնք երբ Անտիոք մտան,
*Հելլենացւոց հետ կը խօսէին՝ Տէր Յիսուսը
21 քարոզելով։ Ու Տէրոջը ձեռքը անոնց հետ էր,
եւ բազմաթիւ մարդիկ հաւատալով Տէրոջը
22 դարձան։ Եւ անոնց վրայով այս լուրը Երու-
սաղէմի եկեղեցիին ականջը հասաւ. ու Բառ-
նաբասը ղրկեցին որպէս զի մինչեւ Անտիոք եր-

*Ոմն., Յոյներուն

23 թայ. Որ երբ եկաւ և Աստուծոյ շնորհքը տե-
սաւ՝ ուրախացաւ, ու կը յորդորէր ամէնն ալ՝
որ յօժար սրտով Տէրոջը հետ կապուած մնան.
24 Քանզի ինք բարի մարդ էր, ու Սուրբ Հոգիով
և հաւատքով լեցուն. ու Տէրոջը շատ ժողո-
25 վուրդ աւելցաւ։ Ետքը Բառնաբաս Տարսոն
ելաւ Սօղոսը փնտռելու, և զանիկա գտնե-
26 լով Անտիոք բերաւ։ Ու եղաւ որ անոնք լման
տարի մը եկեղեցիին հետ մէկտեղ ժողվուելով՝
շատ ժողովուրդի սորվեցուցին. ու ամէնէն ա-
ռաջ Անտիոքի մէջ աշակերտները Քրիստոնեայ
անուանեցան։
27 Այն օրերը Երուսաղէմէ մարգարէներ իջան
28 Անտիոք։ Եւ անոնցմէ մէկը, Ագաբոս անունով,
ելաւ իմացուց Հոգիին զօրութիւնովը, թէ մեծ
սով մը պիտի ըլլայ բոլոր աշխարհ, որ և եղաւ
29 *Կղօդիոսի օրերը։ Եւ աշակերտները որոշեցին
որ իրենցմէ ամէն մէկը ձեռքէն եկածին չափ
Հրէաստանի մէջ բնակող եղբայրներուն օգ-
30 նութիւն ղրկեն. Զոր կատարեցին ալ, երէցնե-
րուն ղրկելով Բառնաբասի ու Սօղոսի ձեռքով։

## ԳԼ. ԺԲ

1 Հերովդէս Թագաւորը կը հալածէ քրիստոնեաները. Յակոբոսը կը սպաննէ, և Պետրոսը բանտը դնել կու տայ. որուն համար եկեղեցին աղօթք ընելով, Տէրոջը հրեշտակը կ'ազատէ զանիկա։ 20 Հերովդէս իր հպարտութեամբը Աստուծոյ վայելուչ եղած պատիւը իրեն առնելով՝ Տէրոջը հրեշտակէն կը զարնուի, և չարաչար կը մեռնի։ 24 Անոր մեռնելէն ետև Աստուծոյ խօսքը յաջողութեամբ կը տարածուի։

1 Այն ատենները Հերովդէս Թագաւորը ձեռք
զարկաւ եկեղեցիէն մէկ քանիները չարչարել։
2 Եւ Յովհաննէսի եղբայրը Յակոբոսը սրով
3 սպաննեց։ Ու տեսնելով որ Հրեաներուն հա-
ճելի է, անոր վրայ Պետրոսն ալ բռնեց. ու բա-
4 ղարջակերքի օրերն էին։ Զանիկա երբ բռնեց,
բանտը դրաւ. և չորս կարգ չորսական զինուոր-

*Ոմանք, Կղօդիոս կայսրին

ներու յանձնեց, որպէս զի պահեն, և կ'ուզէր
զատկէն ետև ժողովուրդին հանել զանիկա ։
5 Ուստի Պետրոս բանտին մէջ պահուած էր,
բայց եկեղեցին անդադար աղօթք կ'ընէր Աս-
6 տուծոյ անոր համար ։ Ու երբ Հերովդէս ու-
զեց զանիկա դուրս բերել, այն գիշերը Պետ-
րոս երկու զինուորներու մէջտեղ կը քնանար
կրկին շղթաներով կապուած. ու պահապան-
7 ներ դրանը առջև բանտը կը պահպանէին ։ Եւ
ահա Տէրոջը հրեշտակը եկաւ վրան կայնեցաւ,
ու տանը մէջ լոյս մը ծագեց, և Պետրոսի կողը
խթելով՝ արթնցուց զանիկա, ու ըսաւ, Շու-
տով ելիր. ու շղթաները անոր ձեռքերէն վար
8 ինկան ։ Եւ հրեշտակը ըսաւ անոր, Գօտիդ
կապէ ու հողաթափներդ ոտքդ հագիր. ա-
նիկա ալ այնպէս ըրաւ. և ըսաւ անոր, Հան-
9 դերձդ վրադ առ ու եկուր իմ ետևէս ։ Ան ալ
ելլելով անոր ետևէն կ'երթար, և չէր գիտեր
թէ այն հրեշտակէն եղած բանը իրաւ է, հապա
10 կը կարծէր թէ տեսիլք կը տեսնէ ։ Ու երբ ա-
նոնք առաջին ու երկրորդ պահապաններէն անց-
ցան, եկան մինչև երկաթի դուռը՝ որ քաղա-
քին մէջ կը հանէր, որ ինքնիրմէ բացուեցաւ
անոնց. և անկէ ելլելով՝ փողոց մը անցան, հրեշ-
11 տակն ալ իսկոյն անկէ զատուեցաւ ։ Ու Պետ-
րոս ինքզինքին գալով՝ ըսաւ, Հիմա ճշմարտա-
պէս գիտեմ որ Տէրը իր հրեշտակը ղրկեց, և
ազատեց զիս Հերովդէսի ձեռքէն ու Հրէից ժո-
12 ղովուրդին բոլոր ակնկալութենէն ։ Եւ մտա-
ծելով՝ եկաւ Մարկոս ըսուած Յովհաննէսի մօրը
Մարիամի տունը, ուր շատեր ժողվուած ա-
13 ղօթք կ'ընէին ։ Եւ տանը դուրսի դուռը երբ
*զարկաւ, Հռոդէ անունով աղախին մը գնաց
14 ականջ դնելու. Ու երբ Պետրոսի ձայնը ճանչ-

*Յոյն., Պետրոս զարկաւ

ցաւ, ուրախութենէն դուռը չբացաւ, հապա
ներս վազելով պատմեց թէ Պետրոս դրանը
15 առջև կայներ է։ Իսկ անոնք ըսին անոր, Խեն-
թեցեր ես. բայց ինք կը պնդէր թէ այնպէս է.
անոնք ալ կ'ըսէին, Անոր հրեշտակը պիտի ըլ-
16 լայ։ Սակայն Պետրոս անդադար կը զարնէր.
17 ու երբ բացին, զինք տեսնելով զարմացան։ Բայց
անիկա ձեռքով նշան կ'ընէր անոնց՝ որ լուռ կե-
նան, ու պատմեց անոնց թէ ինչպէս Տէրը զինք
բանտէն հանեց. և ըսաւ, Ասիկա Յակոբոսի ու
եղբայրներուն պատմեցէք. և ելաւ ուրիշ տեղ
18 գնաց։ Ու երբ առտու եղաւ, մեծ խռովութիւն
կար զինուորներուն մէջ՝ թէ արդեօք ինչ եղաւ
19 Պետրոս։ Հերովդէս ալ երբ աղէկ փնտռեց
ու չգտաւ, պահապաններուն հարցափորձ ը-
նելով՝ հրամայեց որ տարուին. և ինք
Հրէաստանէ Կեսարիա իջաւ, ու հոն կը կենար։
20 Եւ Հերովդէս խիստ թշնամացած էր Տիւ-
րացիներուն ու Սիդոնացիներուն հետ. անոնք
ալ միաբանութեամբ իրեն եկան, ու թա-
գաւորին Բղաստոս սենեկապետը համոզելով՝
հաշտութիւն կը խնդրէին. վասն զի իրենց եր-
կիրը թագաւորին երկրէն ապրուստ կ'առնէր։
21 Եւ որոշուած օր մը Հերովդէս թագաւորական
հանդերձը հագած ու ատեանը նստած՝ անոնց
22 ատենաբանութիւն կ'ընէր։ Ժողովուրդն ալ կ'ա-
ղաղակէր թէ Աստուծոյ ձայն է՝ ու
23 ոչ թէ մարդու։ Եւ իսկոյն Տէրոջը հրեշտակը
զանիկա զարկաւ, Աստուծոյ փառք չտալուն
համար. և որդնալից ըլլալով մեռաւ։
24 Եւ Աստուծոյ խօսքը կ'աճէր ու կը շատնար։
25 Եւ Բառնաբաս ու Սօղոս երբ իրենց յանձնուած
պաշտօնը լմնցուցին, Երուսաղէմէ դարձան,
Մարկոս կոչուած Յովհաննէսն ալ իրենց հետ
առնելով։

## ԳԼ. ԺԳ

*4 Պօղոս ու Բառնաբաս կ'ընտրուին հեթանոսներուն երթալու ։ 7 Սերգիոս Պօղոս ու Եղիմաս մոգ ։ 14 Պօղոս կը քարոզէ Անտիոքի մէջ թէ Յիսուս է աշխարհի փրկիչը ։ 42 Հեթանոսները կը հաւատան . 45 բայց Հրեայք կը հակառակին և հայհոյութիւն կ'ընեն ։ 46 Ասոր վրայ Պօղոս և Բառնաբաս հեթանոսներուն կը դառնան ։ 48 Քրիստոնէական հաւատքը կ'ընդունին անոնք որ յաւիտենական կենաց սահմանուած էին ։*

1 Եւ Անտիոքի մէջ եղած եկեղեցիին քանի մը
մարգարէներ ու վարդապետներ կային, Բառ-
նաբաս ու Շմաւոն, որ Նիգէր կ'ըսուէր, և
Ղուկիոս Կիւրենացի ու Մանայէն, Հերովդէս
2 չորրորդապետին սննդակիցը, և Սօղոս։ Երբ
ասոնք Տէրոջը պաշտօնին մէջ էին, և ծոմ
կը պահէին, Հոգին Սուրբ ըսաւ, Զատեցէք
ինծի Բառնաբասը և Սօղոսը այն գործին հա-
3 մար, որու ես կանչեր եմ զանոնք։ Այն ատեն
ծոմ պահելով և աղօթք ընելով՝ ձեռք դրին
4 անոնց վրայ ու ղրկեցին։ Անոնք ալ Սուրբ Հո-
գիէն ղրկուած՝ Սելեւկիա իջան, ու անկէ նա-
5 ւով Կիպրոս գացին։ Եւ Սաղամինա հասնելով՝
Հրէից ժողովարաններուն մէջ Աստուծոյ խօսքը
կը քարոզէին, ու Յովհաննէսն ալ իբրեւ սպասա-
6 ւոր ունէին։ Եւ պտտելով այն [բոլոր] կղզին
մինչեւ Պափոս, հոն գտան սուտ մարգարէ՝ Հրեայ
7 մոգ մը, որուն անունը Բարյեսու էր. Որ փո-
խանորդ իշխանին հետ էր, որ կ'ըսուէր Սերգիոս
Պօղոս, խելացի մարդ մը. ասիկա Բառնաբասը
և Սօղոսը հրաւիրելով՝ ուզեց Աստուծոյ խօսքը
8 լսել։ Սակայն անոնց դէմ կեցաւ Եղիմաս մոգ,
(քանզի այսպէս կը թարգմանուի անոր անունը,)
որ կ'ուզէր փոխանորդ իշխանը հաւատքէն դար-
9 ձնել։ Բայց Սօղոս, որ Պօղոս ալ կ'ըսուի, Հոգւով
10 Սրբով լեցուած, աչքերը անոր վրայ ակնեց, Ու
ըսաւ, Ով ամէն խաբեբայութիւնով և ամէն խա-
րամանկութիւնով լեցուած՝ Սատանայի որդի,
թշնամի բոլոր արդարութեան, պիտի չդադրիս

11 Տէրոջը շիտակ ճամբաները ծռելէ ։ Եւ հիմա
Տէրոջը ձեռքը ահա քու վրադ է , ու կոյր պիտի
ըլլաս՝ ատեն մը արեւը չտեսնելով ։ Եւ իսկոյն
անոր վրայ մէգ ու խաւար մը իջաւ , ու պտըտե-
12 լով առաջնորդ կը փնտռէր ։ Այն ատեն փո-
խանորդ բդեշխը երբ այս բաները տեսաւ՝ հա-
ւատաց , մեծապէս զարմանալով Տէրոջը վար-
դապետութեանը վրայ ։
13 Եւ Պօղոս ու իր ընկերները Պափոսէ ելան ,
ու եկան Պամփիւլիայի Պերգէն . բայց Յով-
հաննէս անոնցմէ զատուելով՝ Երուսաղէմ
14 դարձաւ ։ Անոնք ալ Պերգէէ գացին ու եկան
Պիսիդիայի Անտիոքը , և շաբաթ օրը ժողովա-
15 րանը մտնելով՝ նստան ։ Ու օրէնքին և մարգա-
րէներուն կարդացուելէն ետեւ՝ ժողովրդապետ-
ները մարդ ղրկեցին իրենց ու ըսին , Մարդիկ եղ-
բայրներ , եթէ դուք ժողովուրդին խօսելու յոր-
16 դորական խօսք մը ունիք՝ խօսեցէք ։ Այն ատեն
Պօղոս ոտքի վրայ կայնելով՝ ձեռքը շարժեց ու
ըսաւ , Ով Իսրայելացի մարդիկ , և դուք որ Աս-
17 տուծմէ կը վախնաք , մտիկ ըրէք ։ Այս Իսրայէլ
ժողովուրդին Աստուածը մեր հայրերը ընտրեց ,
ու ժողովուրդը բարձրացուց Եգիպտոսի երկ-
րին մէջ պանդխտութեան ատենը , և բարձր
18 բազուկով զանոնք հանեց ։ Ու քառասուն
տարուան ժամանակի չափ անապատին մէջ կե-
19 րակրեց զանոնք ։ Եւ Քանանու երկրին մէջ
եօթը ազգ կործանելով՝ անոնց երկիրը իրենց
20 տուաւ որ ժառանգեն ։ Եւ անկէ ետեւ չորս
հարիւր յիսուն տարիի չափ դատաւորներ տուաւ
21 անոնց մինչև Սամուէլ մարգարէն ։ Ու ետքը
թագաւոր ուզեցին . և Աստուած Կիսի որդին
Սաւուղը տուաւ անոնց , Բենիամինի ցեղէն
22 մարդ մը , քառասուն տարի ։ Ու երբ զանիկա
փոխեց , Դաւիթը հանեց իրենց թագաւոր ,

որու համար վկայութիւն տալով՝ ըսաւ, Յեսսէի
որդին Դաւիթը գտայ իմ սրտիս համեմատ
մարդ, որ իմ բոլոր կամքս պիտի կատարէ։
23 Ասոր սերունդէն Աստուած իր խոստմունքին պէս
24 Իսրայէլի՝ Փրկիչ Յիսուսը հանեց. Եւ դեռ ա-
նիկա իր պաշտօնը չսկսած՝ Յովհաննէս առաջուընէ
Իսրայէլի բոլոր ժողովուրդին ապաշխարու-
25 թեան մկրտութիւնը քարոզեց. Ու երբ Յով-
հաննէս իր ընթացքը կը կատարէր՝ ըսաւ, Ո՞վ
կը կարծէք թէ եմ. ես Քրիստոսը չեմ, հապա
անիկա ահա իմ ետեւէս կու գայ, որուն ոտ-
քերուն կօշիկները քակելու արժանի չեմ։
26 Մարդիկ եղբայրներ, Աբրահամի տոհմին որ-
դիները, ու անոնք որ ձեր մէջ աստուածավախ
են, այս փրկութեան խօսքը ձեզի ղրկուեցաւ։
27 Քանզի Երուսաղէմ բնակողները եւ անոնց իշ-
խանները ոչ զանիկա ճանչցան, ոչ ալ մարգա-
րէներուն ձայները՝ որոնք ամէն շաբաթ օրերը
կը կարդացուին, հապա զանոնք կատարեցին՝ զինք
28 դատապարտելով. Եւ մահուան պատճառ մըն ալ
չգտած՝ Պիղատոսէ խնդրեցին որ անիկա սպան-
29 նուի։ Ու երբ անոր համար բոլոր գրուած բա-
ները կատարեցին, փայտէն վար իջեցնելով՝ գե-
30 րեզմանի մէջ դրին. Բայց Աստուած զանիկա
յարուց մեռելներէն. որ շատ օրեր երեւցաւ ա-
31 նոնց Որ իրեն հետ Գալիլեայէ Երուսաղէմ ելեր
էին, որոնք հիմա անոր վկաներն են ժողովուր-
32 դին առջեւ։ Մենք ալ ձեզի կը քարոզենք այն
33 խոստմունքը որ հայրերուն եղած էր, Զոր Աստ-
ուած կատարեց մեզի որ անոնց զաւակներն ենք,
Յիսուսը յարուցանելով, ինչպէս երկրորդ սաղ-
մոսին մէջ ալ գրուած է, Դուն իմ Որդիս ես,
34 ես այսօր քեզ ծնայ։ Եւ որ զանիկա մեռելնե-
րէն յարուց, ու մէյմըն ալ ապականութիւն
պիտի չտեսնէ, այսպէս կ՚ըսէ թէ Ձեզի պիտի

տամ Դաւիթի հաւատարիմ սուրբ խոստմունք֊
35 ները ։ Ուստի ուրիշ սաղմոսի մը մէջ ալ կ՚ըսէ, Քու
Սուրբիդ ապականութիւն տեսնել պիտի չտաս ։
36 Վասն զի Դաւիթ իր դարուն մէջ Աստուծոյ
կամքին ծառայելով՝ մեռաւ, ու իր հայրերուն
քով դրուեցաւ և ապականութիւն տեսաւ ։
37 Բայց ան զոր Աստուած յարոյց՝ ապականու֊
38 թիւն չտեսաւ ։ Ուրեմն յայտնի ըլլայ ձեզի,
մարդիկ եղբայրներ, որ ասոր միջոցաւ ձեզի
39 մեղքերու թողութիւն կը քարոզուի ․ Եւ այն
ամէն բաներէն՝ որոնցմէ Մովսէսի օրէնքովը
չկրցաք արդարանալ, ասով ամէն ով որ հա֊
40 ւատայ, կ՚արդարանայ ։ Արդ զգուշացէք որ
չըլլայ թէ ձեր վրայ գայ այն որ մարգարէնե֊
41 րուն մէջ ըսուած է, Նայեցէք, արհամարհող֊
ներ, և զարմացէք ու ոչնչացէք ․ վասն զի գործ
մը պիտի ընեմ ձեր օրերուն մէջ, այնպիսի
գործ մը՝ զոր եթէ մէկը ձեզի պատմէ, պիտի
չհաւատաք ։
42 Ու երբ անկէ դուրս ելան, *կ՚աղաչէին որ
†հետևեալ շաբաթ ալ նոյն խօսքերը իրենց
43 խօսուին ։ Եւ ժողովուրդը երբ արձակուեցաւ,
Հրեաներէն ու նորահաւատ բարեպաշտներէն
շատերը Պօղոսի ու Բառնաբասի ետևէն կ՚եր֊
թային ․ որոնք կը խօսէին անոնց հետ ու կը յոր֊
դորէին զանոնք, որ միշտ Աստուծոյ շնորհքին
44 մէջ հաստատ կենան ։ Եւ հետևեալ շաբաթ օրը
գրեթէ բոլոր քաղաքը ժողվուեցաւ Աստուծոյ
45 խօսքը լսելու ։ Իսկ Հրեաները երբ տեսան
այն բազմութիւնը, նախանձով լեցուեցան, ու
Պօղոսի զրուցածներուն դէմ կը խօսէին հակա֊
46 ռակելով ու հայհոյութիւն ընելով ։ Այն ատեն
Պօղոս և Բառնաբաս համարձակեցան ու ըսին,
Պէտք էր որ առաջ ձեզի խօսուէր Աստուծոյ

*Ոմանք, հեթանոսները կ՚աղաչէին †Կամ, շաբթու մէջ

խօսքը, բայց որովհետեւ դուք զանիկա կը մեր-
ժէք, ու ինքզինքնիդ յաւիտենական կեանքի
արժանի չէք սեպեր, ահա մենք հեթանոսնե-
47 րուն կը դառնանք ։ Վասն զի Տէրը այսպէս
պատուիրած է մեզի. Քեզ հեթանոսներուն
լոյս դրի, որպէս զի դուն փրկութեան պատճառ
48 ըլլաս մինչեւ երկրի ծայրերը ։ Զայս լսելով հեթա-
նոսները կ'ուրախանային, ու Աստուծոյ խօսքը
կը փառաւորէին. եւ որոնք որ յաւիտենական
49 կեանքի սահմանուած էին, հաւատացին ։ Ու
Տէրոջը խօսքը բոլոր գաւառը կը տարածուէր ։
50 Բայց Հրեաները գրգռեցին բարեպաշտ եւ
պատուաւոր կիները ու քաղաքին մեծերը, եւ
Պօղոսի ու Բառնաբասի վրայ հալածանք հանե-
լով՝ զանոնք իրենց սահմաններէն դուրս բրին ։
51 Անոնք ալ իրենց ոտքերուն փոշին անոնց դէմ
52 թօթուելով՝ Իկոնիոն եկան ։ Ու աշակերտները
ուրախութեամբ եւ Հոգւով Սրբով կը լեցուէին ։

## ԳԼ. ԺԴ

1 Պօղոս եւ Բառնաբաս հալածուելով կը փախչին Իկոնիոնէ ։ 7 Լիւստրայի մէջ Պօղոս կը բժշկէ ի ծնէ կաղ մը, եւ այս պատճառաւ անոնք աստուածներ ըլլալ կը կարծուին ։ 19 Պօղոս կը քարկոծուի ։ 21 Անոնք զանազան եկեղեցիներ կը պտտին, հաստատելով աշակերտները հաւատքի եւ համբերութեան մէջ. 26 ետքը Անտիոք դառնալով՝ կը պատմեն եղբայրներուն ո'րչափ բան որ Աստուած ըրեր էր իրենց ։

1 Ու եղաւ որ Իկոնիոնի մէջ անոնք մէկտեղ
Հրեաներուն ժողովարանը մտան, եւ այնպէս
խօսեցան որ խիստ շատ Հրեաներ եւ Յոյներ
2 հաւատացին ։ Բայց չհաւատացող Հրեաները
դրդեցին ու չարութեամբ գրգռեցին հեթանոս-
3 ներուն սիրտը եղբայրներուն դէմ ։ Իսկ անոնք
շատ ժամանակ հոն կենալով՝ համարձակ կը քա-
րոզէին Տէրոջմով, որ իր շնորհաց խօսքին կը
վկայէր, եւ նշաններ ու հրաշքներ ընել կու տար
4 անոնց ձեռքով ։ Եւ քաղաքին բազմութիւնը

մէջ երկպառակութիւն մը եղաւ. ոմանք Հրէա-
ներուն կողմէն եղան, ոմանք ալ առաքեալնե-
5 րուն։ Ու երբ հեթանոսները և Հրեաները ի-
րենց իշխաններովը վրանին յարձակեցան՝ զանոնք
6 նախատելու ու քարկոծելու, Իրենք իմանալով
Լիկայոնացւոց քաղաքները փախան, Լիւստրա
ու Դերբէ և շրջակայ տեղերը, ու հոն աւե-
տարանը կը քարոզէին։
7 Եւ Լիւստրայի մէջ մարդ մը նստեր էր ոտ-
քերովը տկար՝ իր մօրը որովայնէն կաղ ծնած,
8 որ բնաւ քալած չէր։ Ասիկա Պօղոսի խօսքերը
մտիկ կ'ընէր. ան ալ աչքը անոր տնկելով և
տեսնելով թէ բժշկուելու հաւատք ունի,
9 Բարձր ձայնով մը ըսաւ, Ելիր ոտքերուդ վրայ
10 շիտակ կայնէ. ան ալ ցատկելով կը քալէր։ Եւ
ժողովուրդները երբ Պօղոսի ըրածը տեսան,
ձայներնին վերցնելով Լիկայոներէն ըսին, Աստ-
ուածները մարդոց նմանութիւնով մեզի իջեր
11 են։ Ու Բառնաբասի Դիոս կը կոչէին, և Պօ-
ղոսի՝ Հերմէս, վասն զի անիկա էր գլխաւոր
12 խօսողը։ Իսկ քաղաքին առջև եղած Դիոսի
քուրմը ցուլեր և պսակներ բերելով դռներուն
առջև, բազմութեանը հետ մէկտեղ կ'ուզէր որ
13 զոհ ընէ։ Բայց Բառնաբաս ու Պօղոս առաքեալ-
ները երբ լսեցին, իրենց հանդերձները պատ-
ռելով՝ դուրս ցատկեցին բազմութեանը մէջ,
14 կ'աղաղակէին Ու կ'ըսէին, Մարդիկ, ինչո՞ւ հա-
մար այդ բաները կ'ընէք. մենք ալ ձեզի պէս
կիրքերու ունեցող մարդիկ ենք, ու կը քարոզենք
ձեզի որ այդ փուճ բաներէն կենդանի Աստու-
ծոյն դառնաք, որ ստեղծեց երկինքը ու երկիրը
15 և ծովը ու բոլոր անոնց մէջ եղածները։ Որ
անցած դարերուն մէջ թող տուաւ ամէն ազ-
16 գերուն իրենց ճամբաները երթալու։ Այսու
ամենայնիւ ինքզինք առանց վկայութեան չթո-

ղուց, բարերարութիւնով երկինքէն *մեզի անձ-
րեւներ ու պտղաբեր եղանակներ տալով, կերա-
կուրներով և ուրախութիւնով †մեր սիրտերը
17 լեցնելով ։ Ու այս բաները ըսելով՝ հազիւ կրցան
ժողովուրդները դադրեցնել, որ իրենց զոհ
չընեն ։
18 Սակայն Անտիոքէ ու Իկոնիոնէ Հրեաներ
հասան. ու ժողովուրդները համոզեցին, և Պօ-
ղոսը քարկոծեցին ու քաղաքէն դուրս քաշե-
19 ցին՝ կարծելով թէ մեռած է ։ Բայց աշակերտ-
ները երբ անոր բոլորտիքը պատեցին, ելաւ քա-
ղաքը մտաւ, ու հետեւեալ օրը Բառնաբասի հետ
20 մէկտեղ Դերբէ ելաւ ։ Եւ անոնք այն քաղա-
քին մէջ աւետարանը քարոզելով, ու շատերը
աշակերտ ընելով՝ Լիւստրա և Իկոնիոն և Ան-
21 տիոք դարձան, Աշակերտներուն սիրտերը հաս-
տատելով, և յորդորելով որ հաստատ մնան հա-
ւատքի մէջ. և կ՚ըսէին թէ շատ նեղութիւններով
պէտք է մեզի Աստուծոյ թագաւորութիւնը
22 մտնել ։ Ու երբ անոնց ամէն մէկ եկեղեցիին
երէցներ ձեռնադրեցին, ծոմապահութեամբ
աղօթք ընելով զանոնք յանձնեցին Տէրոջը՝ որուն
23 հաւատացեր էին ։ Եւ Պիսիդիայի մէջէն պտը-
24 տելով՝ եկան Պամփիւլիա ։ Պերգէի մէջ ալ Տէ-
25 րոջը խօսքը խօսելէ ետև Ատալիա իջան ։ Անկէ
ալ նաւով Անտիոք գացին, ուրկէ Աստուծոյ
շնորհքին յանձնուած էին այն գործին համար
26 զոր կատարեցին ։ Ու երբ եկան, եկեղեցին մէկ-
տեղ ժողվելով՝ պատմեցին ինչ որ Աստուած
ըրեր էր իրենց հետ, և որ հեթանոսներուն
27 հաւատքի դուռ բացեր էր ։ Ու հոն շատ ժամա-
նակ աշակերտներուն հետ կեցան ։

---

*Յոյն., ձեզի †Յոյն., ձեր

## ԳԼ. ԺԵ

1 Մեծ հակառակութիւն կը ծագի թլփատութեան վրայով։ 6 Ասոր համար առաքեալները խորհուրդ կ՚ընեն, 22 և նամակ գրելով եկեղեցիներուն, իրենց վճիռը կը ղրկեն անոնց։ 36 Պօղոս և Բառնաբաս կը խորհին որ մէկտեղ երթան եկեղեցիներուն այցելութիւն ընելու, բայց իրենց մէջ վէճ մը ծագելով՝ իրարմէ կը զատուին։

1 Եւ մէկ քանիները Հրէաստանէ իջած՝ եղբայր-
ներուն կը սորվեցնէին որ եթէ Մովսէսի աւան-
դած սովորութեանը համեմատ չթլփատուիք,
2 չէք կրնար փրկուիլ։ Ուստի Պօղոսի և Բառնա-
բասի անոնց դէմ՝ շատ մը հակառակութիւն ու
վէճ ընելէն ետքը, վճռեցին որ Պօղոս ու Բառ-
նաբաս և մէկ քանիներն ալ անոնցմէ՝ Երուսա-
ղէմ երթան առաքեալներուն ու երէցներուն այս
3 խնդրին համար։ Անոնք ալ եկեղեցիէն ճամբայ
դրուած՝ Փիւնիկէէ ու Սամարիայէ անցնելով,
հեթանոսներուն դարձը կը պատմէին, և
մեծ ուրախութիւն կու տային բոլոր եղբայրնե-
4 րուն։ Ու երբ Երուսաղէմ հասան, եկեղեցիէն ու
առաքեալներէն և երէցներէն ընդունուեցան,
և պատմեցին ինչ որ Աստուած ըրեր էր իրենց
5 հետ։ Փարիսեցւոց աղանդէն հաւատացեալ-
ներէն ոմանք ելան, ու կ՚ըսէին թէ Պէտք է
թլփատել զանոնք ու պատուիրել որ Մովսէսի
օրէնքը պահեն։
6 Եւ առաքեալները ու երէցները ժողվուեցան
7 այս բանին վրայով խորհելու։ Եւ շատ վիճա-
բանութիւն ըլլալէ ետև, Պետրոս ոտքի վրայ
ելաւ ու ըսաւ անոնց, Մարդիկ եղբայրներ,
դուք գիտէք որ առաջին օրերէն Աստուած դե-
ընտրեց մեր մէջէն, որպէս զի իմ բերնովս հե-
թանոսները աւետարանին խօսքը լսեն ու հա-
8 ւատան։ Եւ սրտագէտն Աստուած վկայեց ա-
նոնց՝ Սուրբ Հոգին տալով անոնց, ինչպէս
9 մեզի ալ։ Եւ խտրութիւն մը չըրաւ մեր ու
անոնց մէջտեղ, հաւատքով անոնց սիրտերը

10 մաքրելով։ Ուստի հիմա ինչո՞ւ զԱստուած կը
փորձէք, աշակերտներուն պարանոցին վրայ այն-
պիսի լուծ մը դնելով, զոր ոչ մեր հայրերը ոչ ալ
11 մենք կրցանք վերցնել։ Բայց կը հաւատանք որ
Տէր *Յիսուսի շնորհքովը կը փրկուինք մենք,
ինչպէս անոնք ալ։
12 Եւ բոլոր ժողովուրդը լուռ կեցաւ ու մտիկ
կ'ընէր Բառնաբասի ու Պօղոսի, որոնք կը պատ-
մէին թէ Աստուած ո՛րչափ նշաններ ու հրաշքներ
ըրեր էր հեթանոսներուն մէջ իրենց ձեռքով։
13 Եւ անոնք խօսքերնին կտրելէն ետեւ՝ Յակոբոս
պատասխան տուաւ ու ըսաւ, Մարդիկ եղբայր-
14 ներ, ինծի մտիկ ըրէք. Շմաւոն պատմեց թէ
Աստուած ի՛նչպէս առաջ այցելութիւն ըրաւ,
որպէս զի հեթանոսներէն ժողովուրդ առնէ իր
15 անուանը համար։ Եւ ասոր բանին մարգարէնե-
րուն խօսքերն ալ կը միաբանին, ինչպէս գրուած
16 է, Ասկէ ետեւ պիտի դառնամ ու Դաւիթի
ինկած խորանը նորէն պիտի շինեմ, և անոր
կործանուած տեղերը նորէն պիտի շինեմ, և
17 կանգնեմ զանիկա. Որպէս զի մնացած մարդիկը
Տէրը փնտռեն, և բոլոր հեթանոսները՝ որոնց
վրայ իմ անունս կոչուած է, կ'ըսէ Տէրը որ
18 այս ամէն բաները կ'ընէ։ Յայտնի են †Աստու-
ծոյ իր բոլոր գործերը աշխարհի սկիզբէն հետէ։
19 Ասոր համար ես յարմար կը դատեմ նեղու-
թիւն չտալ անոնց որոնք հեթանոսներէն Աս-
20 տուծոյ կը դառնան. Հապա թուղթ մը գրել
անոնց՝ որ ետ կենան կուռքերու պղծութիւն-
ներէն և պոռնկութենէ ու խեղդուածէ և
21 արիւնէ։ Վասն զի Մովսէս հին դարերէն ի վեր
ամէն քաղաքի մէջ զինք քարոզողներ ունի, և
ժողովարաններու մէջ ամէն շաբաթ օր կը կար-
դացուի։

*Ոմանք, Յիսուս Քրիստոսի †Ոմանք, Տէրոջը

22 Այն ատեն առաքեալներուն ու երէցներուն՝
բոլոր եկեղեցիին հետ միասին աղէկ երեւցաւ
որ իրենցմէ մարդիկ ընտրելով Անտիոք ղրկեն
Պօղոսի ու Բառնաբասի հետ, Բարսաբա մական-
ուանեալ Յուդան և Շիղան, որոնք գլխաւոր
23 մարդիկ էին եղբայրներուն մէջ։ Ու անոնց
ձեռքով թուղթ մը ղրկեցին այսպէս գրուած.
Առաքեալներ ու երէցներ և եղբայրներ,
Անտիոքի ու Ասորիքի և Կիլիկիայի մէջ հե-
24 թանոսներէն եղած եղբայրներուդ ողջոյն։ Ո-
րովհետև լսեցինք թէ անոնք մեր մէջէն ելլե-
լով՝ ձեզ խօսքերով խռովեցուցեր և ձեր ան-
ձերը խախտեր են, ըսելով թէ պէտք է թլփատուիլ
ու օրէնքը պահել, որոնց մենք այսպէս չպատուի-
25 րեցինք, Մեզի միաբանութեամբ ժողվուած-
ներուս աղէկ երեւցաւ որ մարդիկ ընտրելով
ձեզի ղրկենք մեր սիրելիներուն, Բառնաբասի
26 ու Պօղոսի, հետ, Որոնք մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսի անուանը համար անձերնին մատնած մար-
27 դիկ են։ Ուստի ղրկեցինք Յուդան և Շիղան,
որպէս զի իրենք ալ բերնով նոյն բաները ձեզի
28 պատմեն. Վասն զի աղէկ երեւցաւ Սուրբ Հո-
գիին ու մեզի ալ ձեր վրայ աւելի բեռ չդնել
29 այս հարկաւոր բաներէն զատ, Որ ետ կենաք
կուռքերու զոհուածէ և արիւնէ ու խեղդուածէ
և պոռնկութենէ. որոնցմէ ինքզինքնիդ պահե-
լով աղէկ պիտի ընէք։ Ողջ եղէք։
30 Անոնք ալ ճամբայ դրուելով՝ Անտիոք գա-
ցին, և ժողովուրդը միասին ժողվելով թուղթը
31 տուին։ Ու երբ կարդացին, ուրախացան այն
32 մխիթարութեանը վրայ։ Իսկ Յուդա ու Շիղա,
որ իրենք ալ մարգարէ էին, շատ խօսքերով
33 յորդորեցին եղբայրները ու հաստատեցին։ Եւ
ատեն մը հոն կենալէ ետև, եղբայրներէն խա-
ղաղութեամբ ճամբայ դրուեցան առաքեալնե-

34 րուն դառնալու ։ Բայց Շիղային աղէկ երեւցաւ հոն
35 մնալ ։ Պօղոս ու Բառնաբաս ալ Անտիոքի մէջ
կը կենային, և ուրիշ շատերու հետ Տէրոջը
խօսքը կը սորվեցնէին ու կը քարոզէին ։
36 Եւ քանի մը օրերէ ետև Պօղոս ըսաւ Բառ-
նաբասի, Դառնանք ու այցելութիւն ընենք եղ-
բայրներուն՝ ամէն մէկ քաղաքները, ուր Տէ-
րոջը խօսքը քարոզեցինք, և տեսնենք թէ ինչպէս
37 են ։ Իսկ Բառնաբաս կ'ուզէր որ Յովհաննէսն ալ
38 առնեն, որ Մարկոս կ'ըսուէր. Բայց Պօղոս ար-
ժան չսեպեց որ Պամփիլիայի մէջ իրենցմէ
զատուողը ու իրենց հետ գործի չեկողը իրենց
39 հետ առնեն ։ Այսպէս անոնց մէջ գժտութիւն մը ե-
ղաւ, մինչև իրարմէ զատուեցան. և Բառնաբաս
40 առաւ Մարկոսը ու նաւով Կիպրոս գնաց ։ Պօ-
ղոս ալ Շիղան ընտրեց ու ելաւ, եղբայրներէն
41 Աստուծոյ շնորհքին յանձնուելով, Եւ Սուրիայի
ու Կիլիկիայի մէջ կը պտըտէր ու եկեղեցիները
կը հաստատէր ։

## ԳԼ. ԺԶ

1 Պօղոս կը թլփատէ Տիմոթէոսը. 7 Սուրբ Հոգիին հրամանովը քաղաքները կը պտըտի. 14 Լիդիան հաւատքի կը բերէ, 16 և հարցուկ ոգի ունեցող աղախին մը կը բժշկէ ։ 19 Այս պատճառաւ Պօղոս ու Շիղա կը ծեծուին և բանտը կը դրուին ։ 26 Բանտին դուները՝ հրաշքով կը բացուին ։ 34 Բանտապետը դարձի կու գայ. 37 և անոնք կ'ազատուին ։

1 Եւ հասաւ Դերբէ ու Լիւստրա. և ահա հոն
աշակերտ մը կար Տիմոթէոս անունով, որ հա-
ւատացեալ Հրեայ կնոջ մը զաւակ էր, և հայրը
2 Յոյն էր. Որ Լիւստրացի ու Իկոնացի եղբայր-
3 ներէն ալ բարի վկայուած էր ։ Պօղոս ուզեց որ
ասիկա իրեն հետ ելլէ, և առաւ թլփատեց զա-
նիկա այն տեղերը եղած Հրեաներուն համար,
վասն զի ամէնն ալ գիտէին թէ անոր հայրը
4 Յոյն էր ։ Եւ քաղաքներէն անցնելով, Երու-
սաղէմ եղած առաքեալներէն ու երէցներէն

ապսպրուած հրամանները կ'աւանդէին անոնց՝
5 որ պահեն ։ Եկեղեցիներն ալ հաւատքի մէջ
կը հաստատուէին, և օրէ օր անոնց թիւը կ'ա-
ւելնար ։
6 Եւ Փռիւգիա ու Գաղատացւոց կողմերը
պտըտեցան․ և Սուրբ Հոգիէն արգիլուելով որ
7 Աստուծոյ խօսքը Ասիոյ մէջ չխօսին, Երբ Միւ-
սիոյ կողմերը եկան, կը ջանային դէպ ի Բիւ-
թանիա երթալ․ և [Յիսուսի] Հոգին թող չտուաւ
8 անոնց։ Եւ Միւսիոյ քովէն անցնելով Տրովադա
9 իջան ։ Եւ հոն գիշերը Պօղոսի տեսիլք մը երև-
ցաւ․ Մակեդոնացի մարդ մը կայներ կ'աղաչէր
անոր ու կ'ըսէր, Մակեդոնիա անցիր և օգնէ
10 մեզի ։ Ու երբ այն տեսիլքը տեսաւ, շուտ մը
ուզեցինք Մակեդոնիա երթալ, հասկնալով որ
Տէրը մեզ կը հրաւիրէ անոնց աւետարան քա-
րոզելու ։
11 Ուստի նաւով Տրովադայէ ելանք ու շիտակ
Սամոթրակէ գացինք, ու հետևեալ օրը Նէա-
12 պոլիս․ Եւ անկէ ալ Փիլիպպէ, որ է Մակեդո-
նիոյ այն մասին գլխաւոր քաղաքը՝ *գաղթնիկ․
13 և այն քաղաքին մէջ քանի մը օր կեցանք․ Ու
շաբաթ օրը քաղաքէն դուրս ելանք գետեզեր-
քին քով՝ ուր սովորութիւն ունէին աղօթք
ընելու, ու նստելով ժողվուած կիներուն կը խօ-
14 սէինք ։ Եւ Թիւատիր քաղաքէն ծիրանավաճա-
ռին մը Լիդիա անուն, որ աստուածպաշտ մէկն
էր, մտիկ կ'ընէր․ որուն սիրտը Տէրը բացաւ
Պօղոսի բաներուն ուշադրութիւն ընելու ։
15 Ու երբ մկրտուեցաւ ինք և իր տունը, աղաչեց
ու ըսաւ, Եթէ զիս Տէրոջը հաւատացեալ կը սե-
պէք, իմ տունս մտէք բնակեցէք․ և ստիպե-
լով տարաւ մեզ ։
16 Ու եղաւ որ երբ մենք աղօթքի կ'երթայինք,

*Այսինքն, գաղթականներու տեղ

աղախին մը պատահեցաւ մեզի որ հարցուկ ոգի
ունէր, որ գուշակութիւն ընելով՝ իր տէրերուն
17 շատ վաստակ կը բերէր։ Ասիկա Պօղոսի և մեր
ետևէն լինալով՝ կը պոռար ու կ'ըսէր, Այս մար-
դիկը Բարձրեալ Աստուծոյ ծառաներն են, ո-
րոնք *մեզի փրկութեան ճամբան կը քարոզեն։
18 Եւ այս բանը շատ օրեր կ'ընէր. իսկ Պօղոս
ձանձրանալով՝ դարձաւ ու ըսաւ այն ոգիին, Յի-
սուս Քրիստոսի անունովը հրաման կ'ընեմ քեզի,
19 Ելիր ատկէ. և նոյն ժամուն ելաւ։ Երբ տեսան
անոր տէրերը որ իրենց վաստակին յոյսը կորե-
ցաւ, Պօղոսը ու Շիղան բռնեցին ու հրապա-
20 րակը քաշեցին իշխաններուն առջև։ Եւ տա-
րին զանոնք զօրագլուխներուն քով ու ըսին;
Այս մարդիկը մեր քաղաքը խիստ կ'աղմկեն.
21 իրենք Հրեայ են, Եւ այնպիսի սովորութիւ-
ններ կը քարոզեն, զորոնք արժան չէ մեզի ըն-
դունիլ, ոչ ալ ընել, վասն զի Հռովմայեցի ենք։
22 Եւ բազմութիւնը անոնց վրայ դիմեցաւ. զօ-
րագլուխներն ալ բռնութեամբ անոնց հան-
դերձները հանեցին, և հրաման ըրին որ զանոնք
23 ծեծեն։ Եւ անոնց շատ վէրքեր տալէ ետև
բանտը դրին, պատուիրելով բանտապետին որ
24 զգուշութեամբ պահէ զանոնք։ Ան ալ այսպէս
հրաման առնելով՝ զանոնք ներսի բանտը դրաւ
ու ոտքերնին կոճղի մէջ ամրցուց։
25 Եւ կէսգիշերին Պօղոս ու Շիղա աղօթք կ'ը-
նէին և զԱստուած կ'օրհնէին, ու բանտար-
26 կեալներն ալ անոնց մտիկ կ'ընէին։ Եւ յան-
կարծակի մեծ շարժ մը եղաւ, այնպէս որ բան-
տին հիմերը սասանեցան, և անմիջապէս բոլոր
դուները բացուեցան, ու ամէնուն կապերը ար-
27 ձակուեցան։ Եւ բանտապետը երբ արթնցաւ
ու բանտին դուները բացուած տեսաւ, թուրը

*Ոմանք, ձեզի

քաշեց և ինքզինք պիտի սպաննէր, կարծելով
28 թէ կապուածները փախեր են ։ Բայց Պօղոս
բարձր ձայնով կանչեց ու ըսաւ, Դուն քու ան-
ձիդ վնաս մը մի ըներ, վասն զի ամէնս ալ հոս
29 ենք ։ Եւ անիկա ճրագ մը ուզեց ու ներս վազեց,
և դողալով Պօղոսի ու Շիղայի առջև ինկաւ.
30 Եւ զանոնք դուրս բերելով՝ ըսաւ, Տէրեր, ինծի
31 ի՞նչ պէտք է ընել որ փրկուիմ ։ Անոնք ալ ըսին,
Հաւատա Տէր Յիսուս Քրիստոսի, ու պիտի
32 փրկուիս դուն և քու տունդ ։ Եւ Տէրոջը խօսքը
խօսեցան անոր, ու այն ամէնուն որոնք իր տանը
33 մէջ էին ։ Եւ առաւ զանոնք գիշերուան նոյն
ժամուն ու անոնց վէրքերը լուաց, և շուտ մը
34 մկրտուեցաւ ինք ու բոլոր իրենները ։ Եւ զա-
նոնք իր տունը տանելով՝ անոնց առջև սեղան
դրաւ, և բոլոր տունովը ուրախ եղաւ՝ Աստու-
35 ծոյ հաւատալով ։ Եւ երբ առտու եղաւ, զօ-
րագլուխները ղրկեցին սպասաւորները ու ըսին,
36 Արձակէ այդ մարդիկը ։ Բանտապետն ալ այն
խօսքերը Պօղոսի պատմեց, թէ Զօրագլուխ-
ները ղրկեցին որ արձակուիք. ուստի հիմա ելէք
37 և խաղաղութեամբ գացէք ։ Բայց Պօղոս ըսաւ
անոնց, Մեզ յայտնապէս ծեծելով՝ որ չդատա-
պարտուած Հռովմայեցի մարդիկ ենք, բանտը
դրին, ու հիմա գաղտո՞ւկ կը հանեն մեզ. ոչ
այդպէս, հապա թող իրենք գան ու մեզ հա-
38 նեն ։ Եւ սպասաւորները զօրագլուխներուն
պատմեցին այն խօսքերը. անոնք ալ երբ լսե-
ցին թէ Հռովմայեցի են՝ վախցան, ու եկան
39 քաղցրութեամբ խօսեցան անոնց հետ. Եւ
դուրս հանելով՝ կ'աղաչէին որ այն քաղաքէն
40 երթան ։ Անոնք ալ բանտէն ելլելով՝ Լիդիայի
տունը մտան, ու եղբայրները տեսնելով՝ մխիթա-
րեցին զանոնք և գացին ։

# ԳԼ. ԺԷ

1 Պօղոս կը քարոզէ Թեսաղոնիկէի մէջ, 4 ուր ոմանք կը հաւատան, և ոմանք կը հալածեն զանիկա։ 10 Պօղոս Բերիա կը ղրկուի, ու հոն ալ կը քարոզէ. 13 Թեսաղոնիկեցիներէն հալածուած՝ 15 Աթէնք կ'երթայ, ուր տեղ կը քարոզէ անոնց չճանչցած կենդանի Աստուածը։ 34 Շատ մարդիկ Քրիստոսի կը հաւատան։

1 Եւ Ամփիպոլիսէ ու Ապողոնիայէ պտըտելով՝
Թեսաղոնիկէ եկան, ուր էր Հրէաներուն ժո-
2 ղովարանը։ Պօղոս ալ իր սովորութեանը պէս
անոնց մէջ մտաւ, և երեք շաբաթ օր խօսեցաւ
3 անոնց հետ գիրքերէն, Մեկնելով և անոնց առջև
դնելով թէ պէտք էր Քրիստոսի չարչարուիլ,
ու մեռելներէն յարութիւն առնել, և թէ Այն
Յիսուսը զոր ես ձեզի կը քարոզեմ, ըսաւ, Քրիս-
4 տոսն է։ Եւ անոնցմէ ոմանք հաւատացին ու
Պօղոսի և Շիղայի հետ միացան. աստուածավախ
Յոյներէն ալ մեծ բազմութիւն, ու երեւելի կի-
5 ներէն ալ հաւատացողները քիչուոր չէին։ Բայց չհա-
ւատացող Հրեաները նախանձեցան, և քանի
մը դատարկապորտ անօրէն մարդիկ առնելով՝
ազմուկ հանեցին ու քաղաքը տակնուվրայ ըրին,
և Յասոնի տանը վրայ յարձակելով՝ կ'ուզէին
6 զանոնք ժողովքին առջև տանիլ։ Ու երբ զա-
նոնք չգտան, Յասոնը ու մէկ քանի եղբայրներ
քաշելով տարին քաղաքապետներուն առջև,
կանչըռտելով թէ Անոնք որ աշխարհը տակնու-
7 վրայ ըրին՝ հոս ալ հասեր են. Զանոնք Յասոն
ընդուներ է. և ասոնք ամէնը Կայսրին հրաման-
ներուն դէմ կը գործեն, ըսելով թէ ուրիշ թա-
8 գաւոր մը կայ Յիսուս։ Եւ խռովեցուցին ժո-
ղովուրդը ու քաղաքապետները, որոնք այս
9 բաները կը լսէին։ Բայց երբ Յասոնէ և ուրիշ-
ներէն երաշխաւորութիւն առին, արձակեցին
10 զանոնք։ Իսկ եղբայրները շուտ մը գիշերով
Պօղոսը և Շիղան Բերիա ղրկեցին. որոնք հոն
11 հասնելով՝ Հրէից ժողովարանը գացին։ Ասոնք
Թեսաղոնիկէի մէջ եղողներէն աւելի ազնիւ

մտքով էին, որոնք Աստուծոյ խօսքը կատարեալ
յօժարութեամբ ընդունեցին, և ամէն օր գիր-
քերը կը քննէին թէ այս բաները այսպէ՞ս են։
12 Ասոր համար շատերը հաւատացին. և պատ-
ուաւոր Յոյն կիներէն ու այրերէն հաւատացողներէն ալ
13 քիչուոր չէին։ Բայց երբ իմացան Թեսաղոնի-
կեցի Հրեաները թէ Բերիայի մէջ ալ Աստու-
ծոյ խօսքը քարոզուեցաւ Պօղոսէ, հոն ալ եկան
14 ու ժողովուրդը գրգռեցին։ Այն ատեն եղբայր-
ները շուտ մը Պօղոսը ղրկեցին՝ որ մինչև ծովե-
զերքը երթայ. բայց Շիղա ու Տիմոթէոս հոն
15 մնացին։ Եւ անոնք որ Պօղոսը կը տանէին, մինչև
Աթէնք բերին զանիկա. և իրմէ հրաման առնե-
լով Շիղայի ու Տիմոթէոսի համար որ շուտով
իրեն գան, գացին։
16 Եւ Պօղոս Աթէնքի մէջ անոնց սպասելով՝
իր հոգին անհանգիստ էր ներսիդին, վասն զի
քաղաքը բոլորովին կռապաշտութեան մէջ ըն-
17 կղմած կը տեսնէր։ Ասոր ժողովարանին մէջ
կը խօսէր Հրեաներուն ու բարեպաշտ մարդոց,
և ամէն օր հրապարակներուն մէջ՝ որոնց պա-
18 տահէր։ Ու Եպիկուրեան և Ստոյիկեան փիլիսո-
փաներէն մէկ քանիները իրեն հետ հակաճառ-
ութիւն կ'ընէին. և ոմանք կ'ըսէին, Այս սեր-
մնաքաղը ի՞նչ ըսել կ'ուզէ. ուրիշներն ալ կ'ը-
սէին, Կերևի թէ օտար աստուածներու քա-
րոզիչ է. վասն զի Յիսուսը ու յարութիւնը
19 կ'աւետարանէր անոնց։ Եւ առին զանիկա Ա-
րիսպագոս տարին ու կ'ըսէին, Կրնա՞նք իմանալ
թէ ինչ է այդ նոր վարդապետութիւնը զոր
20 դուն կը զրուցես. Քանզի մեր ականջներուն
օտար բաներ կը բերես. ուրեմն կ'ուզենք իմա-
21 նալ թէ ինչ պիտի ըլլան անոնք. (Վասն զի
Աթենացիները ամէնն ալ, ու հոն կեցող օ-
տարականները ուրիշ բանի չէին պարապեր,

բայց միայն նոր բան զրուցելու կամ լսելու։)
22 Այն ատեն Պօղոս Արիսպագոսի մէջ կայնեցաւ
ու ըսաւ, Ով Աթենացի մարդիկ, ամէն կող-
23 մանէ խիստ կրօնասէր կը տեսնեմ ձեզ։ Քանզի
ես պտըտելով ու ձեր պաշտամունքը դիտե-
լով՝ սեղան մը գտայ, որուն վրայ գրուած էր,
ԱՆԾԱՆՕԹ ԱՍՏՈՒԾՈՅՆ. ուստի զանիկա զոր
դուք չճանչնալով կը պաշտէք, ես նոյնը ձեզի
24 կը քարոզեմ։ Աստուած որ աշխարհը ստեղ-
ծեց, և անոր մէջի բոլոր բաները, անիկա եր-
կինքի ու երկրի Տէրն ըլլալով՝ ոչ ձեռագործ
25 տաճարներու մէջ կը բնակի, Ոչ ալ մարդոց
ձեռքով կը պաշտուի՝ բանի մը կարօտի պէս.
քանզի ինք կու տայ ամէնուն կեանք ու շունչ
26 և ամէն բան. Ու բոլոր մարդոց ազգերը մէկ
արիւնէ ըրաւ, որպէս զի բոլոր երկրի երեսին
վրայ բնակին. և որոշուած ժամանակները հաս-
տատեց, ու անոնց բնակութեան սահմանները՝
27 զԱստուած փնտռելու. Որ ըլլայ թէ խարխա-
փելով զինք գտնեն. թէպէտև մեր ամէն մէ-
28 կէն ալ հեռու չէ. Վասն զի անով կ'ապրինք և
կը շարժինք ու կանք, ինչպէս ձեր բանաստեղծ-
ներէն մէկ քանիներն ալ ըսին, Քանզի մենք
29 անոր ցեղէն ալ ենք։ Ուստի, որովհետև Աս-
տուծոյ ցեղէն ենք, պէտք չէ որ այնպէս սե-
պենք թէ Աստուածութիւնը նման ըլլայ ոսկիի
կամ արծաթի կամ քարի, որ մարդու ճար-
պետութիւնով ու խելքով քանդակուած է։
30 Արդ Աստուած տգիտութեան ատենները ան-
տես ընելով՝ հիմա ամէն տեղ կը պատուիրէ
31 բոլոր մարդոց որ ապաշխարեն։ Վասն զի ինք
օր մը սահմանեց, որուն մէջ աշխարհս արդա-
րութեամբ պիտի դատէ այն մարդուն ձեռքով՝
զոր որոշեց, ու ամէնուն հաւատացուց՝ զա-
նիկա մեռելներէն յարուցանելով։

32 Երբ մեռելներուն յարութիւնը լսեցին, ո-
մանք ծաղր կ'ընէին, ոմանք ալ կ'ըսէին, Այդ
բանին համար ուրիշ անգամ մտիկ պիտի ընենք
33 քեզի ։ Եւ այսպէս Պօղոս անոնց մէջէն ելաւ ։
34 Սակայն քանի մը մարդիկ իրեն յարելով հա-
ւատացին, որոնց մէջ էր Դիոնեսիոս Արիսպա-
գացի և Դամարիս անունով կին մը, ու անոնց
հետ ուրիշներ ալ ։

## ԳԼ. ԺԸ

1 Պօղոս իր արհեստը կը բանի, և Կորնթոսի մէջ հեթանոսներուն կը քարոզէ ։ 9 Տէրը տեսիլքի մէջ կը քաջալերէ Պօղոսը, 12 որ կ'ամբաստանուի փոխանորդ բդեշխին, Գալիոնի առջև, բայց կ'ազատի . 18 ետքը քաղաքէ քաղաք պտըտելով՝ աշակերտները կը հաստատէ ։ 24 Ապողոս աւելի ճշդիւ սորվելով ճշմարտութիւնը Ակիւղասէ ու Պրիսկիղայէ՝ 28 զՔրիստոս կը քարոզէ մեծ ազդեցութեամբ ։

1 Ասկէ ետև Պօղոս Աթէնքէ դառնալով Կո-
2 րնթոս եկաւ, Եւ Հրեայ մը գտաւ Ակիւղաս
անունով, ծնունդով Պոնտացի, որ իր Պրիս-
կիղա կնոջ հետ նոր եկեր էր Իտալիայէ, (Կղօ-
դիոսի հանած հրամանին համար որ բոլոր Հրեա-
ները Հռոմէ հեռանան,) ու անոնց քով գնաց ։
3 Եւ որովհետև ինք արհեստակից էր, անոնց քով
կեցաւ և կը բանէր, վասն զի արհեստով վրանա-
4 գործ էին ։ Ու ամէն շաբաթ օրերը ժողովա-
րանին մէջ կը խօսէր, և Հրեաները ու Յոյները
5 կը համոզէր ։ Ու երբ Շիղա և Տիմոթէոս Մա-
կեդոնիայէ իջան, Պօղոսի հոգին եռանդով
վառուած ըլլալով, Հրեաներուն վկայութիւ-
նով կը հաստատէր թէ Յիսուսը Քրիստոսն է ։
6 Անոնք ալ երբ դէմ կեցան ու կը հայհոյէին,
ինք հանդերձները թօթուելով՝ ըսաւ անոնց,
Ձեր արիւնը ձեր գլուխը, ես անպարտ եմ.
ասկէ ետև հեթանոսներուն պիտի երթամ ։
7 Եւ անկէ երթալով՝ մտաւ մէկուն տունը, ո-
րուն անունը *Յուստոս էր, աստուածապաշտ

*Ոմանք, Տիտոս Յուստոս

8 մարդ մը, որուն տունը ժողովարանին կից էր։ Եւ
ժողովրդապետը, Կրիսպոս, իր բոլոր տունովը
հաւատաց Տէրոջը. և Կորնթացիներէն շատերը
9 լսելով հաւատացին, ու մկրտուեցան։ Եւ գիշերը
տեսիլքի մէջ Տէրը ըսաւ Պօղոսի, Մի վախնար,
10 հապա խօսէ և լուռ մի կենար, Վասն զի ես
քեզի հետ եմ, և մէ՛կը քեզի դէմ պիտի չելլէ՝
քեզի վնաս մը հասցնելու. քանզի այս քաղա-
11 քին մէջ ես շատ ժողովուրդ ունիմ։ Եւ հոն
տարի մը ու վեց ամիս կեցաւ, ու Աստուծոյ
խօսքը անոնց մէջ կը սորվեցնէր։
12 Եւ Աքայիայի փոխանորդ բդեշխին, Գա-
ղիոնի, օրերը Հրեաները միաբանելով՝ Պօղոսի
13 դէմ ելան, և զանիկա ատեանը տարին, Ըսե-
լով Թէ Ասիկա կը հրապուրէ մարդիկ օրէնքէն
14 դուրս զԱստուած պաշտել։ Ու երբ Պօղոս
իր բերանը բանալու պատրաստ էր, Գաղիոն
ըսաւ Հրեաներուն, Եթէ անիրաւութեան մը
կամ չար գործի մը համար ըլլար, ով Հրեա-
ներ, արժան էր ինծի որ ձեզի մտիկ ընէի։
15 Բայց եթէ վէճը խօսքի ու անուններու և ձեր
օրէնքին վրայով է, դուք ձեզմէ տեսէք. վասն
զի ես այդպիսի բաներու դատաւոր ըլլալ չեմ
16 ուզեր։ Եւ զանոնք ատեանէն վռնտեց։ (17) Այն
ատեն բոլոր Յոյները Սոսթենէս ժողովրդա-
պետը բռնեցին ու ատեանին առջև կը ծեծէին,
և այս բաներուն վրայով Գաղիոն բնաւ հոգ
չէր ըներ։
18 Պօղոս ալ տակաւին շատ մը օրեր հոն մնա-
լէ ետքը, եղբայրներէն հրաժարելով՝ Նաւով
դէպ ի Ասորիա գնաց, ու իրեն հետ ալ Պրիսկիղա
և Ակիւղաս, առաջ Կենքրայի մէջ էր գլուխը փոք-
19 րած, վասն զի ուխտաւոր էր։ Ու երբ Եփեսոս
հասաւ, զանոնք հոն ձգեց, և ինք ժողովա-
րանը մտնելով՝ Հրեաներուն հետ կը խօսէր։

20 Եւ իրեն կ'աղաչէին որ ալ աւելի ժամանակ
իրենց քով մնայ, բայց յանձնառու չեղաւ.
21 Հապա հրաժարեցաւ անոնցմէ՝ ըսելով, *Պէտք է
որ անպատճառ այս առաջիկայ տօնը Երուսա-
ղէմի մէջ ընեմ, բայց Աստուծոյ կամքովը նո-
րէն ձեզի կը դառնամ. ու Եփեսոսէ նաւով
22 ճամբայ ելաւ. Եւ Կեսարիա հասնելով՝ Երուսա-
ղէմ ելաւ, ու եկեղեցիին բարեւ տուաւ, ու ետքը
23 իջաւ Անտիոք. Եւ ատեն մը հոն կենալէ ետեւ
ելաւ, ու կարգաւ Գաղատացւոց երկիրը ու
Փռիւգիա կը պտըտէր, ու բոլոր աշակերտները
կը հաստատէր։
24 Եւ Ապողոս անունով Հրեայ մը, ծնունդով
Աղեքսանդրացի, ճարտասան մարդ մը, եկաւ
հասաւ Եփեսոս, որ զօրաւոր էր սուրբ գիրքե-
25 րով։ Ասիկա Տէրոջը ճամբուն մէջ վարժուած
էր, եւ ջերմեռանդ հոգի ունենալով՝ կը խօսէր
ու կը սորվեցնէր ճշդութեամբ Տէրոջը վրայով.
բայց միայն Յովհաննէսի մկրտութիւնը գի-
26 տէր։ Ասիկա սկսաւ ժողովարանին մէջ համար-
ձակ խօսիլ. ու երբ Ակիւղաս ու Պրիսկիղա
լսեցին անիկէ, զանիկա իրենց քով առին,
եւ աւելի ճշդիւ Աստուծոյ ճամբան անոր հաս-
27 կըցուցին։ Ու երբ անիկա ուզեց Աքայիա եր-
թալ, եղբայրները քաջալերեցին զանիկա, ու գիր
գրեցին այն տեղի աշակերտներուն որ զանիկա ըն-
դունին. որ հոն հասնելով՝ շատ օգտակար եղաւ
28 շնորհքով հաւատացեալներուն. Քանզի հրա-
պարակաւ ստուգիւ կը յանդիմանէր Հրեաները,
սուրբ գիրքերէն ցուցնելով թէ Յիսուս Քրիս-
տոսն է։

*Ոմանք չունին

# ԳԼ. ԺԹ

1 Սուրբ Հոգին կը տրուի հաւատացեալներուն՝ Պօղոսի ձեռքով։ 9 Հրեաները կը հայհոյեն Պօղոսի վարդապետութիւնը՝ որ հրաշքներով կը հաստատուի։ 13 Երդմնեցուցիչ Հրեաները 16 ծեծ կ՚ուտեն դիւահարէն։ 19 կախարդական գիրքերը կ՚այրուին։ 24 Դեմետրիոս իր արծաթագործութիւնովը մեծ աղմուկ կը հանէ Պօղոսի դէմ, 35 զոր ատենադպիրը կը հանդարտեցնէ։

1 Եւ քանի որ Ապողոս Կորնթոսի մէջ էր, Պօ-
ղոս վերի կողմերը պտըտելով Եփեսոս եկաւ,
2 և քանի մը աշակերտներ գտնելով՝ Ըսաւ ա-
նոնց, Երբ հաւատացիք, Սուրբ Հոգին առի՞ք
արդեօք. անոնք ալ ըսին իրեն, Բայց մենք լսած
3 ալ չենք թէ Սուրբ Հոգի կայ։ Եւ ըսաւ անոնց,
Հապա ինչո՞վ մկրտուեցաք. անոնք ալ ըսին,
4 Յովհաննէսի մկրտութիւնովը։ Պօղոս ալ ըսաւ,
Յովհաննէս ապաշխարութեան մկրտութիւնով
մկրտեց, ժողովուրդին ըսելով թէ ան որ իրմէ
ետքը պիտի գայ՝ անոր հաւատան, այսինքն
5 Քրիստոս Յիսուսի։ Ու երբ ասիկա լսեցին, Տէր
6 Յիսուսի անունովը մկրտուեցան։ Եւ Պօղոս երբ
անոնց վրայ ձեռք դրաւ, Սուրբ Հոգին անոնց
վրայ եկաւ, և լեզուներ կը խօսէին ու կը մար-
7 գարէանային։ Եւ այն բոլոր մարդիկը տասուեր-
8 կուքի չափ էին։ Ու ժողովարանը մտնելով՝
երեք ամիս համարձակութեամբ Աստուծոյ
թագաւորութեանը վրայով կը խօսէր ու կը հա-
9 մոզէր։ Իսկ երբ մէկ քանիները կը յամառէին
ու դէմ կը դնէին՝ բազմութեան առջև այն
ճամբան բամբասելով, ինք անոնցմէ հեռացաւ
և աշակերտները զատեց, ու ամէն օր Տիւրան
10 անուն մէկուն դպրատանը մէջ կը խօսէր։ Եւ
ասիկա երկու տարի քշեց, մինչև բոլոր Ասիայի
մէջ բնակող Հրեաները ու Յոյները *Տէրոջը
11 խօսքը լսեցին։ Եւ Աստուած նշանաւոր հրաշք-
12 ներ կ՚ընէր Պօղոսի ձեռքով. Այնպէս որ անոր

*Ոմանք, Տէր Յիսուսի

մարմինէն թաշկինակներ ու գոգնոցներ կը տա-
նէին հիւանդներուն, և իրենց ցաւերէն կը
13 բժշկուէին, ու չար ոգիները կ'ելլէին ։ Բայց
աստանդական Հրեաներէն մէկ քանիները, ո-
րոնք երդմնեցուցիչ էին, *յանդգնեցան Տէր
Յիսուսի անունը կանչել անոնց վրայ որոնք չար
ոգիներ ունէին, և կ'ըսէին, Ձեզ կ'երդմնցնենք
14 Յիսուսով, զոր Պօղոս կը քարոզէ ։ Եւ այս բանը
ընողները Սկևա ըսուած Հրեայ քահանայապետին
15 մը եօթը որդիներն էին ։ Իսկ չար ոգին պա-
տասխան տուաւ ու ըսաւ, Յիսուսը կը ճանչնամ
16 ու Պօղոսը գիտեմ, բայց դուք ո՞վ էք ։ Եւ այն
մարդը որուն ներսիդին էր չար ոգին, անոնց
վրայ ցատկելով՝ բռնեց զանոնք ու յաղթեց,
մինչև որ այն տունէն մերկ ու վիրաւորուած
17 դուրս փախան ։ Եւ այս բանը Եփեսոսի մէջ
բնակող բոլոր Հրեաներուն ու Յոյներուն յայտնի
եղաւ. և անոնց ամէնուն վրայ վախ մը ինկաւ,
18 ու Տէր Յիսուսի անունը կը մեծարուէր ։ Եւ
հաւատացեալներէն շատերը կու գային, ու
կը խոստովանէին ու կը պատմէին իրենց բրած-
19 ները ։ Եւ կախարդութեան հետևողներուն
շատերը գիրքերնին մէկտեղ բերելով՝ ամէնուն
առջև կ'այրէին. և անոնց գինը հաշուեցին ու
20 յիսուն հազար արծաթ դահեկան գտան ։ Այսպէս
Տէրոջը խօսքը մեծապէս կ'աճէր և կը զօրանար ։
21 Ու երբ այս բաները լմնցան, Պօղոս միտքը
դրաւ որ Մակեդոնիայէ ու Աքայիայէ պտըտե-
լով՝ Երուսաղէմ երթայ. ու կ'ըսէր թէ Հոն
երթալէս ետքը պէտք է ինծի որ Հռոմ ալ
22 տեսնեմ ։ Եւ իրեն սպասաւորութիւն ընողնե-
րէն երկուքը, Տիմոթէոսը ու Երաստոսը, ղրկեց
Մակեդոնիա, ու ինք ատեն մըն ալ Ասիայի մէջ
կեցաւ ։

*Յուն. ձեռք զարկին

23 Եւ այն ատենները շատ խռովութիւն եղաւ
24 Տէրոջը ճամբուն համար ։ Քանզի Դեմետրիոս
անունով արծաթագործ մը Արտեմիսի փոքրիկ
տաճարներ կը շինէր արծաթէ, ու քիչ շահ
25 չէր բերեր վարպետներուն ․ Զորոնք ասիկա
մէկտեղ ժողվեց նոյն արհեստին բանուորնե-
րուն հետ, ու ըսաւ, Մարդիկ, դուք գիտէք
26 որ այս գործէն է մեր շահը ․ Եւ կը տեսնէք ու
կը լսէք որ այս Պօղոսը ոչ միայն Եփեսացւոց,
հապա գրեթէ բոլոր Ասիացւոց շատ ժողո-
վուրդները համոզելով՝ միաքերնին դարձուց,
ըսելով թէ Ձեռքով շինուածները աստուած-
27 ներ չեն ։ Ուստի վտանգ կայ որ ոչ միայն այս
մեր *կողմը պիտի նախատուի, հապա մեծ
աստուածուհւոյն, Արտեմիսի, տաճարն ալ ոչինչ
պիտի սեպուի, և անոր մեծափառութիւնը
պիտի խափանուի, զոր բոլոր Ասիա ու աշխարհ
28 կը պաշտեն ։ Ու երբ ասոր լսեցին, բարկութեամբ
լեցուած կը կանչուըռտէին ու կ'ըսէին, Մեծ է
29 Եփեսացւոց Արտեմիսը ։ Եւ բոլոր քաղաքը
խռովութեամբ լեցուեցաւ ․ և յափշտակելով
Գայիոս ու Արիստարքոս Մակեդոնացիները,
Պօղոսի ճամբորդակիցները, ամէնը մէկէն
30 թէատրոնը վազեցին ։ Իսկ Պօղոս երբ ուզեց
ժողովուրդին մէջ մտնել, աշակերտները թող
31 չտուին զինք ։ Ասիապետներէն ալ ոմանք որոնք
իր բարեկամներն էին, մարդ ղրկելով իրեն՝ կ'ա-
ղաչէին որ չհամարձակի թէատրոնը երթալ ։
32 Ուստի մէկը մէկ կերպ ու միւսը ուրիշ կերպ
բան կը կանչուըռտէին, վասն զի ժողովքը շփո-
թութեան մէջ էր, և շատերը չէին գիտեր թէ
33 ինչ բանի համար ժողվուած են ։ Եւ բազմու-
թեանը մէջէն յառաջ բերին Աղեքսանդրոսը,
զոր Հրեաները յառաջ քշեցին ․ Աղեքսանդրոս

*կամ, արհեստը

ալ ձեռքը շարժելով՝ կ'ուզէր որ ժողովուրդին
34 պատասխան տայ ։ Իսկ երբ գիտցան թէ անիկա
Հրեայ է, ամէնը մէկ բերան եղած՝ երկու ժամու
չափ կը կանչըռտէին թէ Մեծ է Եփեսացւոց
35 Արտեմիսը ։ Սակայն ատենադպիրը բազմու-
թիւնը հանդարտեցնելով՝ ըսաւ, Ով Եփեսացի
մարդիկ, ո՞ր մարդն է որ չգիտնայ թէ Եփե-
սացւոց քաղաքը *մեծ Արտեմիսի և Դիոսէ-
36 ինկած կուռքին տաճարին պաշտօնեան է ։ Ու-
րեմն այս որ անժխտելի բան մըն է, պէտք է
ձեզի հանդարտ կենալ, և յանդգնութեամբ
37 բան մը չընել ։ Քանզի դուք այդ մարդիկը հոս
բերիք, որոնք ոչ տաճար կողոպտողներ են, ոչ
ալ ձեր աստուածուհին հայհոյողներ են ։
38 Ուստի եթէ Դեմետրիոս և իրեն հետ եղած
վարպետները մէկուն հետ բան մը ունին, դատի
օրեր կան ու փոխանորդ ըդեշխ կայ․ թող իրա-
39 րու դէմ ամբաստանութիւն ընեն․ Իսկ եթէ
ուրիշ բաներու համար է ձեր պահանջմունքը,
40 օրինաւոր ժողովքի մէջ թող որոշուի ։ Վասն զի
մենք ալ այսօրուան եղածին համար իբրև
խռովայոյզ մարդիկ ամբաստանուելու վտանգի
մէջ ենք, քանզի պատճառ մը չկայ որով կա-
րող ըլլանք այս խառնամբոխ բազմութեանը
համար պատասխան տալ ։ Եւ այսպէս ըսելով
ժողովքը արձակեց ։

## ԳԼ․ Ի

1 Պօղոս Մակեդոնիա կ'երթայ . 7 Տէրունական ընթրիքը կը կատարէ ու կը քարոզէ ։ Եւտիքոս վար իյնալով կը մեռնի , 10 և Պօղոս կը յարուցանէ զանիկա ։ 17 Պօղոս Միլիտոսի մէջ ժողվելով երէցները , կը դրուցէ անոնց՝ իրեն պատահելու անցքերը ․ 28 կը պատուիրէ անոնց՝ Աստուծոյ հօտին հոգ տանիլ , 29 ու կը զգուշացնէ խաբեբայ վարդապետներէն . 32 ապա զանոնք Աստուծոյ յանձնելով՝ 36 աղօթք կ'ընէ անոնց հետ ու կը մեկնի ։

1 Եւ աղմուկին դադարելէն ետև Պօղոս աշա-
կերտները իրեն կանչեց, ու հրաժարական ող-
2 ջոյն տալով՝ ելաւ որ Մակեդոնիա երթայ ։ Եւ

*Յուն․, մեծ աստուածուհւոյն

այն կողմերը պտըտելէ ու շատ խօսքերով զա-
3 նոնք յորդորելէ ետև Յունաստան եկաւ ։ Եւ հոն
երեք ամիս կենալէ ետքը, Հրեաները իրեն դէմ
նենգութեան խորհուրդ ըրին երբ կ՚ուզէր Սի-
րիա ելլել. անոր համար որոշեց Մակեդոնիայի վրայէն
4 դառնալ ։ Ու մինչև Ասիա իրեն հետ կ՚երթար
Բերիացի [Պիւռոսի որդին] Սոպատրոս, և Թեսա-
ղոնիկեցիներէն Արիստարքոս ու Սեկունդոս,
և Գայիոս Դերբեացի ու Տիմոթէոս, և Ասիա-
5 ցիք, Տիւքիկոս ու Տրոփիմոս ։ Ասոնք առաջ
գացին ու Տրովադայի մէջ մեզի կը սպասէին ։
6 Մենք ալ բաղարջակերքի օրերէն ետև Փիլիպ-
պէէ նաւեցինք, և հինգ օրուան մէջ Տրովադա
եկանք անոնց քով, ու հոն եօթը օր կեցանք ։
7 Եւ մէկշաբթի օրը երբ *ժողվուեր էինք" հաց
կտրելու, Պօղոս անոնց կը քարոզէր, վասն զի
հետևեալ օրը ճամբայ պիտի ելլէր. և խօսքը
8 երկնցուց մինչև կէսգիշեր ։ Ու շատ լապտեր-
ներ կային այն վերի սենեակը՝ ուր մենք ժող-
9 վուած էինք ։ Եւ երիտասարդ մը, Եւտիքոս
անուն, պատուհանին վրայ նստած՝ խորունկ
քունի մէջ ինկեր էր. երբ Պօղոս խօսքը եր-
կնցուց, անիկա խորունկ քնով բռնուած՝ եր-
րորդ դստիկոնէն վար ինկաւ, ու զանիկա մե-
10 ռած վերցուցին ։ Եւ Պօղոս վար իջնելով՝ անոր
վրայ ինկաւ ու գրկեց զանիկա ու ըսաւ, Մի
11 խռովիք, վասն զի անոր հոգին իր մէջ է ։ Եւ
վեր ելլելով՝ հացը կտրեց ու կերաւ. ու երկար
12 խօսելով մինչև առտու, ետքը ելաւ գնաց ։ Եւ
այն պատանին ողջ բերին. ու մեծապէս մխի-
13 թարուեցան ։ Իսկ մենք նաւը մտնելով՝ ճամբայ
ելանք դէպ ի Ասոն, ուրկէ Պօղոսը պիտի առ-
նէինք, վասն զի այնպէս ապսպրեր էր, որով-
14 հետև ինք †ցամաքով պիտի երթար ։ Ու երբ

*Ոմանք, աշակերտները ժողվուեր էին †Կամ, քալելով

Ասոնի մէջ մեզի հանդիպեցաւ, առինք զանիկա
15 և Միտիլինէ եկանք ։ Անկէ ալ նաւելով հե-
տևեալ օրը Քիոսի դիմաց հասանք . և միւս օրը
Սամոս հասանք, ու գիշերը Տրոգիլիոն կենալով՝
16 միւս օրը Միլետոս եկանք . Վասն զի Պօղոս
միտքը դրեր էր որ նաւով անցնի Եփեսոսի քա-
մէն, որ չըլլայ թէ Ասիայի մէջ ժամանակ ան-
ցընէ, որովհետև կ'արտորար որ եթէ կարելի է
իրեն, Պէնտէկոստէին օրը Երուսաղէմ ըլլայ ։
17 Եւ Միլետոսէն մարդ ղրկեց Եփեսոս ու եկե-
18 ղեցիին երէցները կանչեց ։ Ու երբ իրեն եկան,
ըսաւ անոնց, Դուք գիտէք որ այն առաջին
օրէն հետէ որ ես Ասիա եկայ, ի՜նչպէս ձեզի
19 հետ փարուեցայ բոլոր ժամանակը . Ամենայն
խոնարհութեամբ Տէրոջը ծառայելով, և շատ
արցունքով ու փորձութիւններով որոնք Հրէից
20 նենգութիւններէն ինծի պատահեցան . Ի՜նչ-
պէս վախնալով ես չկեցայ օգտակար բաներէն
բնաւ մէկը ձեզի զրուցելէ, ու ձեզի հրապա-
21 րակաւ և տան մէջ սորվեցնելէ . Վկայութիւն
տալով Հրէից և Յունաց ալ՝ դէպ ի Աստուած
ապաշխարութեան համար, ու մեր Տէր Յիսուս
22 Քրիստոսի վրայ եղած հաւատքին համար ։ Եւ
հիմա ահա ես հոգիով կապուած՝ Երուսաղէմ
կ'երթամ, և հոն ինչ որ ինծի պիտի պատահի՝
23 չեմ գիտեր . Միայն թէ Հոգին Սուրբ ամէն
քաղաքի մէջ ինծի կը վկայէ ու կ'ըսէ թէ կա-
24 պեր ու նեղութիւններ ինծի կը սպասեն ։ Բայց
ես բանի մը համար հոգ չեմ ըներ, և իմ անձս
պատուական չեմ սեպեր, միայն թէ իմ ըն-
թացքս ուրախութեամբ կատարեմ, և այն
պաշտօնը՝ զոր Տէր Յիսուսէ առի Աստուծոյ
25 շնորհաց աւետարանին վկայ ըլլալու ։ Եւ հիմա
ահա ես գիտեմ որ ա՛լ իմ երեսս պիտի չտես-
նէք դուք ամէնդ, որոնց մէջ պտըտեցայ Աս-

26 տուծոյ թագաւորութիւնը քարոզելով։ Ուստի
այսօր կը վկայեմ ձեզի, որ ես անպարտ եմ
27 ամէնուն արիւնէն։ Վասն զի ես չկեցայ Աս-
28 տուծոյ բոլոր կամքը ձեզի յայտնելէ։ Ուրեմն
զգուշացէք ձեր անձերուն և բոլոր հօտին, ո-
րուն վրայ Հոգին Սուրբ ձեզ տեսուչ դրաւ՝
*Աստուծոյ եկեղեցին հովուելու զոր իր արիւ-
29 նովը ստացաւ։ Քանզի գիտեմ որ իմ գնալէ-
լէս ետքը ձեր մէջ †յափշտակող գայլեր պիտի
30 մտնեն, որոնք պիտի չխնայեն հօտին։ Եւ ձեզմէ
ալ այնպիսի մարդիկ պիտի ելլեն, որոնք ծուռ բա-
ներ պիտի խօսին՝ աշակերտները իրենց ետևէն
31 քաշելու համար։ Ուստի արթուն կեցէք, և
միտքերնիդ բերէք՝ որ երեք տարի գիշեր ու ցո-
րեկ չդադարեցայ ամէն մէկը արցունքով խրա-
32 տելէ։ Եւ հիմա, եղբայրներ, կը յանձնեմ ձեզ
Աստուծոյ ու անոր շնորհաց խօսքին, որ կա-
րող է շինելու և բոլոր սրբուածներուն հետ
33 ձեզի ժառանգութիւն տալու։ Մէկո՛ւն արծա-
թին կամ ոսկիին կամ հագուստին չցանկացայ.
34 Դուք ձեզմէ գիտէք որ ինծի և ինծի հետ ե-
ղողներուն պէտքերը այս ձեռքերս հոգացին։
35 Ամէն բան ձեզի ցուցուցի, թէ այսպէս պէտք է
աշխատիլ ու տկարներուն օգնութիւն ընել,
և միտք բերել Տէր Յիսուսի խօսքը՝ զոր ինք
ըսաւ, Աւելի երանելի է տալը քան թէ առ-
36 նելը։ Եւ երբ զայս ըսաւ, անոնց ամէնուն հետ
37 ծունկի վրայ գալով՝ աղօթք ըրաւ։ Ամէնն ալ
սաստիկ կու լային, ու Պօղոսի պարանոցին վրայ
38 իյնալով՝ զանիկա կը համբուրէին։ Մանաւանդ
կը ցաւէր մանաւանդ այն խօսքին համար՝ որ
կ'ըսէր թէ ա՛լ պիտի չտեսնեն իր երեսը. և զա-
նիկա ճամբայ դրին մինչև նաւը երթալով։

*Ոմանք, Տէրոջը  †Կամ, վնասակար

# ԳԼ. ԻԱ

4 Պօղոս ընաւ չհամոզուիր Երուսաղէմ երթալէն ետ կենալ ։ 9 Փիլիպպոսի մարգարէ աղջիկները ։ 17 Պօղոս Երուսաղէմ կ'երթայ , 27 ուր կը բռնուի , ու մեծ վտանգի մէջ կ'իյնայ . 31 բայց հազարապետը ազատելով զանիկա , հրաման կու տայ որ ժողովուրդին խօսի ։

1 Ու երբ ելանք ու անոնցմէ զատուեցանք , շիտակ
նաւելով Կով եկանք , և միւս օրը Հռոդոս , ու
2 անկէ Պատարա ։ Եւ նաւ մը գտանք որ Փիւ-
նիկէ կ'երթար , ու անոր մէջ մտնելով՝ ճամբայ
3 ելանք ։ Եւ երբ Կիպրոս երևցաւ , զանիկա ձախ
կողմերնիս թողելով՝ դէպ ի Սիւրիա նաւեցինք
և Տիւրոս ելանք , վասն զի նաւը հոն պիտի թա-
4 փէր իր բեռը ։ Եւ աշակերտները գտնելով՝ եօթը
օր հոն կեցանք , որոնք Ս֊րբ Հոգիով կ'ըսէին
5 Պօղոսին որ Երուսաղէմ չելլէ ։ Ու երբ այն օ-
րերը անցուցինք , ելանք ու կ'երթայինք . ա-
մէնն ալ կիներով ու տղաքներով մինչև քա-
ղաքէն դուրս մեզ ճամբայ դրին . և ծովուն ե-
6 զերքը ծունկի վրայ գալով աղօթք ըրինք ։ Ու
իրարու հրաժեշտական ողջոյն տալով՝ մենք նաւը
7 ելանք , անոնք ալ տեղերնին դարձան ։ Իսկ մենք
Տիւրոսէ [illegible] և ծովու ճամբորդութիւնը
լմնցնելով՝ Պտղեմայիս հասանք , ու եղբայր-
8 ները բարևելով օր մը անոնց քով կեցանք ։ Եւ
հետևեալ օրը *անկէ ելանք ու Կեսարիա եկանք ,
և Փիլիպպոս աւետարանիչին տունը մտնելով ,
9 որ եօթնէն մէկն էր , անոր քով կեցանք ։ Ա-
նիկա չորս կոյս աղջիկ ունէր , որոնք մարգա-
10 րէութիւն կ'ընէին ։ Եւ երբ հոն շատ օրեր կե-
ցանք , Հրէաստանէ մարգարէ մը իջաւ Ագաբոս
11 անունով . Ու երբ մեզի եկաւ , Պօղոսի գօտին
առնելով իր ձեռքերը ու ոտքերը կապեց , և
ըսաւ , Այսպէս կ'ըսէ Հոգին Սուրբ . Այն մարդը՝
որունն է այս գօտին , այսպէս պիտի կապեն

*Ոմանք կ'աւելցնեն , մենք որ Պօղոսի ընկերներն էինք՝

Հրեաները Երուսաղէմի մէջ, ու հեթանոսնե-
12 րուն ձեռքը պիտի մատնեն ։ Ու երբ զայս լսե-
ցինք, աղաչեցինք մենք ալ և տեղացիք ալ որ
13 Երուսաղէմ չելլէ ։ Իսկ Պօղոս պատասխան
տուաւ, Ի՞նչ կ'ընէք, ինչո՞ւ – կու լաք ու իմ սիրտս
կը ճմլէք, քանզի ես ոչ թէ միայն Երուսաղէմի
մէջ կապուելու, հապա նաև մեռնելու ալ
պատրաստ եմ Տէր Յիսուսի անուանը համար ։
14 Եւ երբ ինք մտիկ չըրաւ՝ լուռ կեցանք, ու
ըսինք, Տէրոջը կամքը թող ըլլայ ։
15 Եւ այն օրերէն ետև պատրաստուելով Երու-
16 սաղէմ ելանք ։ Կեսարացի աշակերտներէն ալ
մէկ քանիները մեզի հետ եկան, և մեզ տարին
նախնի աշակերտի մը, Կիպրացի Մնասոնի,
17 որուն քով պիտի կենայինք ։ Ու երբ Երուսա-
ղէմ մտանք, եղբայրները ուրախութեամբ մեզ
18 ընդունեցին ։ Եւ հետևեալ օրը Պօղոս մեզի
հետ Յակոբոսի քով գնաց, ու բոլոր երէց-
19 ները ալ եկան ։ Եւ զանոնք բարևելով մի ըստ
միոջէ կը պատմէր ինչ որ Աստուած հեթա-
նոսներուն մէջ ըրաւ իր ծառայութիւնովը ։
20 Անոնք ալ լսելով՝ փառք կու տային *Տէրոջը ·
և ըսին իրեն, Կը տեսնե՞ս, եղբայր, քանի՜ բիւրա-
ւոր հաւատացեալ Հրեաներ կան, ու ամէնն ալ
21 օրէնքին նախանձաւոր են ։ Բայց քու վրայովդ
իմացան թէ դուն բոլոր հեթանոսներուն մէջ
եղած Հրեաներուն Մովսէսէ ապստամբիլ կը
սորվեցնես, ըսելով որ տղաքնին չթլփատեն,
և սովորութիւններուն համեմատ չվարուին ։
22 Արդ ի՞նչ պիտի ըլլայ · անշուշտ բազմութիւն
պիտի ժողվուի, վասն զի պիտի լսեն թէ եկեր ես ։
23 Ուստի այս բանը ըրէ զոր քեզի կ'ըսենք · Մեր
քով չորս մարդ կայ, որոնք իրենց վրայ ուխտ
24 դրած են · Զանոնք առ, իրենց հետ մաքրուէ,

*Ոմանք, Աստուծոյ

*և անոնց համար ծախք ըրէ, որ իրենց գլուխը
ածիլեն. որպէս զի ամէնն ալ գիտնան թէ քու
վրայովդ իմացած բաներնին ոչինչ է, հապա
դուն ալ Ճշդ հետ կը քալես օրէնքը պահելու մէջ։
25 Բայց հաւատքի եկող հեթանոսներուն համար
մենք թուղթ գրկեցինք՝ ինչպէս որոշեցինք, որ
անոնք բնաւ այսպիսի բաներ չպահեն. միայն թէ
զգուշանան կուռքերու զոհուածէ ու արիւնէ
26 և խեղդուածէ ու պոռնկութենէ։ Այն ատեն
Պօղոս այն մարդիկը առաւ, ու հետևեալ օրը
անոնց հետ մաքրուած՝ տաճարը մտաւ, մաք-
րութեան օրերուն լմննալը ցուցնելու համար,
մինչև որ անոնց ամէն մէկուն համար պատարագ
մատուցուեցաւ։
27 Ու երբ եօթը օրերը լմննալու վրայ էին,
Ասիացի Հրեաները զանիկա տաճարին մէջ տես-
նելով՝ բոլոր բազմութիւնը խռովեցուցին, և
28 անոր ձեռք զարկած՝ կը կանչուըռտէին, Իս-
րայելացի մարդիկ, օգնութեան հասէք. աս այն
մարդն է՝ որ ամէն տեղ ժողովուրդին և օրէն-
քին ու այս տեղին դէմ բան կը սորվեցնէ ամէ-
նուն. մինչև տաճարին մէջ Յոյներ ալ մտցուց, և
29 այս սուրբ տեղը պղծեց. (Վասն զի առաջուընէ
Եփեսացի Տրոփիմոսը իրեն հետ քաղաքին մէջ
տեսեր էին, և կը կարծէին թէ Պօղոս զանիկա
30 տաճարը մտցուց.) Ու բոլոր քաղաքը շարժեցաւ
և ժողովուրդը դիզուեցաւ, ու բռնեցին Պօղոսը
տաճարէն դուրս քաշեցին. և շուտ մը դռները
31 գոցուեցան։ Ու երբ անոնք կ'ուզէին զանիկա
սպաննել, լուր հասաւ գունդին հազարապետին
32 թէ բոլոր Երուսաղէմ խռով անցեր է։ Ան ալ
անմիջապէս զինուորներ և հարիւրապետներ
առած՝ անոնց վրայ վազեց. անոնք ալ հազարա-
պետը ու զինուորները տեսնելով՝ Պօղոսը ծեծե-
33 լէն դադարեցան։ Այն ատեն հազարապետը*

մօտենալով բռնեց զանիկա , և հրաման ըրաւ
որ կրկին շղթայով կապեն . ու կը հարցնէր թէ
34 անիկա ո՞վ է ու ի՞նչ ըրեր է ։ Եւ բազմու-
թեանը մէջէն մէկը մէկ կերպ ու միւսը ուրիշ
կերպ բան կը կանչուըռտէին . իսկ երբ չկրցաւ
այն շփոթութենէն ստոյգը գիտնալ , հրաման
35 ըրաւ որ զանիկա բերդը տանին ։ Ու երբ սան-
դուխը հասաւ , այնպէս պատահեցաւ որ զին-
ուորները վեր վերցնեն զանիկա , ժողովուրդին
36 բռնութեանը համար . Վասն զի ժողովուրդին
բազմութիւնը ետևէն կ՚երթար , ու կ՚ըսէին ,
37 Վերցուր ատիկա ։ Ու երբ Պօղոս բերդը մտնե-
լու վրայ էր , հազարապետին ըսաւ , Արդեօք
կարելի՞ է որ քեզի բան մը խօսիմ ։ Ան ալ ըսաւ ,
38 Յունարէն գիտե՞ս . Չէ՞ որ դուն այն Եգիպտա-
ցին ես , որ այս օրերէն առաջ չորս հազար
*սրիկայ մարդիկ ապստամբեցուցիր , ու ա-
39 նապատը հանեցիր ։ Պօղոս ալ ըսաւ , Ես Հրեայ
մարդ մըն եմ Կիլիկիոյ Տարսոնէն , ոչ թէ աննշան
քաղաքի մը քաղաքացի , ու կ՚աղաչեմ քեզի
ինծի հրաման տուր որ ժողովուրդին խօսիմ ։
40 Ու երբ անիկա հրաման տուաւ , Պօղոս սան-
դուխին վրայ կայնելով՝ ձեռքը շարժեց ժողո-
վուրդին , ու երբ աղէկ մը լռութիւն եղաւ ,
Եբրայական լեզուով խօսեցաւ անոնց , ու ըսաւ ,

## ԳԼ. ԻԲ

1 Պօղոս մի ըստ միոջէ կը պատմէ իր դարձի գալը , 17 և իր առաքելութեան կանչուիլը . 22 բայց հեթանոսներուն խօսքը ընելուն պէս՝ ժողովուրդը բարձրաձայն կ՚աղաղակեն անոր դէմ ։ 24 Հազարապետը հրաման կ՚ընէ որ ծեծեն Պօղոսը . 25 բայց անիկա իր Հռովմայեցի ըլլալը իմացնելով՝ կ՚ազատի ։

1 Մարդիկ եղբայրներ և հայրեր , ինծի մտիկ ըրէք
2 որ հիմա ձեզի պատասխան կու տամ . (Երբ լսե-
ցին որ Եբրայական լեզուով կը խօսէր իրենց ,
3 ալ աւելի լուռ կեցան . Եւ անիկա ըսաւ ,) Ես

*Յուն. սիկարեան , [illegible] , դաշնակակիր մարդասպան

Հրեայ մարդ մըն եմ Կիլիկիոյ Տարսոնին մէջ
ծնած, և այս քաղաքին մէջ Գամաղիէլի ոտքը
մեծցած, ու մեր հայրենի օրէնքին ճշդութեամբ
աղէկ կրթուած, նախանձաւոր էի Աստուծոյ,
4 ինչպէս այսօր դուք ամէնդ էք։ Որ այրեր
ու կիներ կապելով, ու բանտերու մատնելով
5 այս ճամբուն հալածեցի մինչև ի մահ. Ինչպէս
քահանայապետն ալ կը վկայէ ինծի համար, և
բոլոր ծերակոյտը. որոնցմէ թուղթեր ալ
առնելով եղբայրներուն Դամասկոս կ՚երթայի,
որպէս զի հոն եղածներն ալ կապուած Երու-
6 սաղէմ բերեմ որ պատժուին։ Ու եղաւ որ
երբ կ՚երթայի ու Դամասկոսի մօտեցայ, կէսօր-
ուան դէմ յանկարծակի երկինքէն մեծ լոյս մը
7 փայլատակեց իմ բոլորտիքս. Եւ գետինը ինկայ,
ու ձայն մը լսեցի որ ինծի կ՚ըսէր, Սաւուղ,
8 Սաւուղ, ինչո՞ւ զիս կը հալածես։ Ես ալ պա-
տասխան տուի թէ Դուն ո՞վ ես, Տէր. ան ալ
ինծի ըսաւ, Ես Յիսուս Նազովրեցին եմ, զոր
9 դուն կը հալածես։ Բայց անոնք որ ինծի հետ
էին, լոյսը տեսան ու վախով լեցուեցան, սա-
10 կայն ինծի խօսողին ձայնը չլսեցին։ Եւ ըսի,
Ի՞նչ ընեմ, Տէր. և Տէրը ինծի ըսաւ, Ելիր գնա
Դամասկոս, ու հոն քեզի պիտի պատմուի այն
ամէն բաներուն համար, որ սահմանուած է որ
11 ընես։ Ու երբ չէի տեսներ այն լոյսին փառքէն,
ինծի հետ եղողները ձեռքէս բռնած՝ Դամասկոս
12 մտայ։ Եւ Անանիա անուն մարդ մը, օրէնքին
համեմատ աստուածավախ, ու Դամասկոս բնակող
13 բոլոր Հրեաներէն բարի վկայուած, ինծի եկաւ,
ու քովս կայնելով՝ ինծի ըսաւ, Սաւուղ եղբայր,
14 վեր նայէ։ Ես ալ նոյն ժամուն վեր նայեցայ
իրեն, և անիկա ըսաւ, Մեր հայրերուն Աստ-
ուածը առաջուընէ քեզ ընտրեց, որպէս զի իր
կամքը ճանչնաս ու այն Արդարը տեսնես, և

15 անոր բերնէն ձայն լսես ։ Քանզի բոլոր մար֊
դոց առջեւ անոր վկայ պիտի ըլլաս այն բանե֊
16 րուն համար, զորոնք տեսար ու լսեցիր ։ Եւ
հիմա, ալ ի՞նչ կ'ուշանաս. ելիր, մկրտուէ ու
17 մեղքերդ լուա *անոր անունը կանչելով ։ Եւ
եղաւ որ երբ Երուսաղէմ դարձայ, ու տաճա֊
րին մէջ աղօթք կ'ընէի, մտքի յափշտակու֊
18 թիւն մը եկաւ վրաս, Եւ զինք տեսայ, որ ինծի
կ'ըսէր, Արտորցիր, շուտով Երուսաղէմէ ելիր,
վասն զի քու ինծի համար ըրած վկայութիւնդ
19 պիտի չընդունին ։ Ես ալ ըսի, Տէր, իրենք աղէկ
գիտեն թէ ես էի որ քեզի հաւատացողները
բանտը կը դնէի, և ժողովարաններուն մէջ կը
20 ծեծէի. Ու երբ քու Ստեփանոս վկայիդ արիւնը
կը թափուէր, ես ինքս ալ ներկայ էի և կա֊
մակից էի †անոր սպաննուելուն". ու զանիկա
սպաննողներուն հանդերձները ես կը պահէի ։
21 Եւ ինծի ըսաւ, Գնա, վասն զի ես քեզ հեռա֊
ւոր հեթանոսներուն պիտի ղրկեմ ։
22 Եւ անոնք մինչեւ այս խօսքը ականջ դրին
իրեն, ետքը ձայներնին վերցուցին ու ըսին,
Վերցուր աշխարհէ այդպիսի մարդը, քանզի
23 չվայլեր ատոր ողջ մնալ ։ Ու երբ կը կանչուըռ֊
տէին ու հանդերձնին կը նետէին և փոշին դէպ ի
24 օդը կը ցանէին, Հազարապետը հրաման ըրաւ
որ զանիկա բերդը մտցնեն, ու ըսաւ որ ծեծով
հարցուփորձ ընեն անոր, որպէս զի գիտնայ
թէ ի՛նչ յանցանքի համար անոր դէմ այնպէս
25 կը կանչուըռտէին ։ Ու երբ կաշի կապերով զինք
կապեցին, Պօղոս վերակացու հարիւրապետին
ըսաւ, Արժա՞ն է ձեզի Հռոմայեցի ու չդատա֊
26 պարտուած մարդ մը ծեծել ։ Հարիւրապետը
երբ այս լսեց, գնաց հազարապետին պատմեց
ու ըսաւ, ‡Ի՞նչ պիտի ընես, վասն զի այս մարդը

*Ոմանք, Տէրոջը †Ոմանք չունին ‡Ոմանք, Նայէ ի՛նչ

27 Հռովմայեցի՞ է։ Հազարապետն ալ քովը գնաց
ու ըսաւ անոր, Ըսէ ինծի, դուն Հռովմայեցի՞ ես.
28 ան ալ ըսաւ, Այո։ Հազարապետը պատասխանե
տուաւ, Ես շատ ստակով ձեռք բերի այս քա-
ղաքացիութեան իրաւունքը. և Պօղոս ըսաւ,
29 Ես բուն ազատ ծնած եմ։ Ու անոնք որ իրեն
հարցուփորձ պիտի ընէին, շուտ մը ետ կեցան
իրմէ. և հազարապետն ալ վախցաւ, երբ ի-
մացաւ թէ Հռովմայեցի է, և որովհետև զա-
նիկա կապեր էր։
30 Ու հետևեալ օրը ուզելով որ ստոյգը գիտ-
նայ թէ ի՛նչ է Հրեաներուն ըրած ամբաստա-
նութիւնը անոր դէմ, *արձակեց զանիկա, և
հրամանն ըրաւ որ քահանայապետներն ու բոլոր
ժողովքը մէկտեղ գան. և Պօղոսը իջեցնելով՝
անոնց առջև կայնեցուց։

## ԳԼ. ԻԳ

1 Երբոր Պօղոս զինք կը պաշտպանէր, 2 Անանիա կը հրամայէ որ անոր բերնին զարնեն։ 7 Երկպառակութիւն կը ծագի Պօղոսի դատախազներուն մէջտեղ։ 11 Աստուած կը քաջալերէ զանիկա։ 12 Հրեաները Պօղոսի համար որոգայթ կը լարեն։ 20 Հազարապետը իմանալով այս բանը, 27 Փելիքս կուսակալին կը ղրկէ Պօղոսը։

1 Եւ Պօղոս իր աչքերը ժողովքին վրայ դարձնե-
լով՝ ըսաւ, Մարդիկ եղբայրներ, ես բոլորովին
բարի խղճմտանքով կեանք վարեր եմ Աստու-
2 ծոյ առջև մինչև այսօր։ Անանիա քահանայա-
պետն ալ հրամանն ըրաւ իր քով կայնողներուն՝
3 որ անոր բերնին զարնեն։ Այն ատեն Պօղոս
ըսաւ անոր, Աստուած քեզի պիտի զարնէ,
ծեփած պատ. և դուն նստեր ես օրէնքին հա-
մեմատ զիս դատելու, և օրէնքէն դուրս հրա-
4 մա՞ն կ՚ընես որ ինծի զարնեն։ Եւ բոլորտիքը
կայնողները ըսին, Աստուծոյ քահանայապե՞տը
5 կը նախատես։ Պօղոս ալ ըսաւ, Եղբայրներ,

*Յուն., կապերէն արձակեց

չէի գիտեր որ քահանայապետ է. վասն զի
գրուած է, Քու ժողովուրդիդ իշխանին դէմ
6 չարախօսութիւն մի՛ ըներ։ Եւ Պօղոս գիտնա-
լով որ մէկ կողմը սադուկեցիներ են ու միւսը
փարիսեցիներ, կ'աղաղակէր ժողովքին մէջ,
Մարդիկ եղբայրներ, ես փարիսեցի եմ, փա-
րիսեցիի որդի. մեռելոց յարութեանը յուսին
7 համար կը դատուիմ։ Ու երբ զայս ըսաւ, փա-
րիսեցւոց և սադուկեցւոց մէջ երկպառակու-
թիւն ինկաւ, և բազմութիւնը բաժնուեցաւ։
8 Քանզի սադուկեցիք կ'ըսեն թէ յարութիւն
չկայ, և ոչ հրեշտակ, ոչ ալ հոգի. բայց փարի-
9 սեցիք երկուքն ալ կը դաւանին։ Եւ մեծ ա-
ղաղակ մը եղաւ. ու փարիսեցւոց կողմէն եղող
դպիրները ոտքի վրայ ելլելով՝ դէմ կը կենային
ու կ'ըսէին, Մենք այս մարդուն վրայ չարու-
թիւն մը չենք գտներ. հապա եթէ հոգի մը
10 կամ հրեշտակ մը անոր խօսած է, *ի՞նչ։ Ու
երբ ամբոխը շատցաւ, հազարապետը, վախնա-
լով որ չըլլայ թէ Պօղոս անոնցմէ պատառուի,
զինուորներուն հրաման ըրաւ որ իջնեն զանիկա
անոնց մէջէն յափշտակեն ու բերդը բերեն։
11 Եւ հետևեալ գիշերը Տէրը անոր քով կայնեցաւ
ու ըսաւ, Քաջասիրտ եղիր, Պօղոս, վասն զի
ինչպէս Երուսաղէմի մէջ ինծի համար վկայե-
ցիր, այնպէս պէտք է քեզի որ Հռոմայ մէջ ալ
վկայես։
12 Ու երբ առտու եղաւ, Հրեաներէն ոմանք
միաբանեցան, ու ինքզինքնին անէծքի տակ
դրին՝ ըսելով որ չուտեն ու չխմեն մինչև որ
13 Պօղոսը սպաննեն։ Եւ քառասունէ աւելի էին
14 որ այս երդումը իրարու հետ ըրին. Որոնք քա-
հանայապետներուն և ծերերուն գացին ու ըսին,
Անէծքով անիծեցինք անձերնիս որ բան մը չու-

*Ոմանք, Աստուծոյ հետ չմարտնչինք

15 տե՛նք մինչև որ Պօղոսը սպաննե՛նք ։ Ուստի դուք
ժողովքին հետ մէկտեղ հազարապետին իմա-
ցուցէք որ վաղը զանիկա ձեզի իջեցնէ, որպէս
թէ դուք աւելի ճիշդ քննութիւն ընել կ՚ուզէք
անոր վրայով. և մենք անոր մօտ գալէն առաջ
16 պատրաստ ենք զանիկա սպաննելու ։ Եւ Պօ-
ղոսի քրոջ որդին երբ այս դաւաճանութիւնը
լսեց, եկաւ բերդը մտաւ ու Պօղոսի պատմեց ։
17 Պօղոս ալ հարիւրապետներէն մէկը իրեն կան-
չելով՝ ըսաւ, Այս պատանին հազարապետին
տար, վասն զի բան մը ունի անոր իմացնելու ։
18 Ան ալ առաւ զանիկա և տարաւ հազարա-
պետին ու ըսաւ, Բանտարկեալ Պօղոս զիս
կանչեց, և աղաչեց որ այս պատանին քեզի բե-
19 րեմ, որ քեզի խօսելիք ունի ։ Եւ հազարա-
պետը անոր ձեռքէն բռնելով՝ մէկդի գնաց,
ու հարցուց թէ Ի՞նչ բան ունիս ինծի իմացնե-
20 լու ։ Եւ անիկա ըսաւ, Հրեաները միաբանեցան
քեզի աղաչելու որ վաղը Պօղոսը ատեանը ի-
ջեցնես, որպէս թէ կ՚ուզեն աւելի ճիշդ քննու-
21 թիւն մը ընել անոր վրայով ։ Բայց դուն անոնց
մտիկ չընես, վասն զի անոնցմէ քառասունէ
աւելի մարդիկ դարանամուտ եղած են անոր հա-
մար, որոնք իրենքզիրենքնին անէծքի տակ դրին որ
չուտեն ու չխմեն մինչև զանիկա սպաննեն. ու
հիմա պատրաստ են, և քու հրամանիդ կը սպա-
22 սեն ։ Այն ատեն հազարապետը պատանին
ճամբեց, պատուիրելով թէ Մարդու մի ըսեր
որ այս բանը ինծի իմացուցիր ։
23 Եւ հարիւրապետներէն երկուքը կանչեց ու
ըսաւ, Երկու հարիւր զինուոր պատրաստեցէք,
ու եօթանասուն ձիաւոր և երկու հարիւր գե-
ղարդաւոր, որպէս զի մինչև Կեսարիա երթան
24 գիշերուան ժամը երեքին. Եւ գրաստներ պատ-
րաստեցէք, որպէս զի Պօղոսը հեծցնեն ու ա-

պահովութեամբ Փելիքս կուսակալին տանին ։
25 Եւ թուղթ մը գրեց այս օրինակին պէս. (26) Կղօ-
դիոս Լիւսիաս, պատուական Փելիքս կուսա-
27 կալին ողջոյն ։ Այս մարդը Հրեաներէն բռնուեր
էր, և անոնցմէ պիտի սպաննուէր, իսկ ես
զինուորներով վրայ հասած՝ ազատեցի զանիկա,
28 իմանալով որ Հռովմայեցի է ։ Եւ ուզելով պատ-
ճառը գիտնալ, որու համար անոր վրայ ամբաս-
տանութիւն կ'ընէին, իջեցուցի ատիկա անոնց
29 ատեանը ․ Զոր գտայ ամբաստանուած իրենց
օրէնքին վերաբերեալ խնդիրներու համար, և մեռ-
նելու կամ կապուելու արժանի յանցանք մը
30 չունէր ։ Ու երբ լուր առի որ Հրեաները այդ
մարդուն համար որոգայթ պիտի լարեն, իսկոյն
քեզի ղրկեցի, հրաման ընելով ամբաստանող-
ներուն ալ՝ որ քու առջևդ խօսին անոր վրայով ։
Ողջ եղիր ։
31 Զինուորներն ալ իրենց հրամայուածին հա-
մեմատ առին Պօղոսը ու գիշերով Անտիպատ-
32 րոս տարին ։ Եւ հետևեալ օրը թողուցին ձիա-
ւորները անոր հետ երթալու, ու իրենք բերդը
33 դարձան ։ Անոնք ալ Կեսարիա մտան, ու թուղթը
կուսակալին տուին, և Պօղոսը անոր առջև կայնե-
34 ցուցին ։ Երբ *կարդաց, հարցուց թէ ո՞ր գա-
35 ւառէն է, և իմանալով որ Կիլիկիայէ է, Ըսաւ,
Պիտի լսեմ քեզի՝ երբ քու ամբաստանողներդ ալ
գան ․ և հրաման ըրաւ որ զանիկա Հերովդէսի
պալատը պահեն ։

## ԳԼ. ԻԴ

1 Պօղոս Տերտիւղոսէ ամբաստանուած՝ 10 պատասխան կու տայ իր վարքին և վարդապետութեանը համար ․ 21 կը քարոզէ զՔրիստոս կուսակալին ու անոր տիկնոջը ։ 26 կուսակալը կը յուսայ կաշառք առնել Պօղոսէ ․ 27 վերջապէս իր պաշտօնէն ելլելով՝ Պօղոսը կապուած կը թողու ։

1 Եւ հինգ օրէ ետքը Անանիա քահանայա-

*Ոմանք, կուսակալը կարդաց

պետը ծերերուն հետ ու Տերտիւղոս անուն
ճարտասանի մը հետ իջաւ. և անոնք կուսա-
կալին իմացուցին իրենց ամբաստանութիւնը Պօղոսի դէմ։
2 Ու երբ կանչեցին զանիկա, Տերտիւղոս սկսաւ
ամբաստանել ու ըսել, Որովհետև քու ձեռքովդ
շատ խաղաղութիւն, ու քու խնամքովդ այս
ազգին բաներուն աղէկ կարգադրութիւնը կը
3 վայելենք, Ամէն կերպով ու ամէն տեղ բոլորո-
վին գոհ ըլլալով, շնորհակալ ենք, ով պատուա-
4 կան Փելիքս։ Բայց չըլլայ որ աւելի ձանձ-
րութիւն տամ քեզի, կ'աղաչեմ որ քու քաղց-
րութիւնովդ մեզի ականջ դնես, որ համառօտա-
5 բար պիտի խօսինք։ Վասն զի մենք այս մարդը գտանք
ապականիչ և խռովարար բոլոր Հրեաներուն
որոնք աշխարհի մէջ են, և Նազովրեցւոց ա-
6 ղանդին առաջնորդ. Որ տաճարն ալ ուզեց
պղծել. զոր բռնեցինք ու մեր օրէնքին հա-
7 մեմատ ուզեցինք դատաստանը ընել. Բայց Լիւ-
սիաս հազարապետը եկաւ մեծ բռնութեամբ
8 մեր ձեռքէն առաւ, Եւ հրաման ըրաւ որ անոր
դատախազները քեզի գան, զոր դուն քննելով՝
կարող պիտի ըլլաս տեղեկանալ այն ամէն բա-
ներուն, որոնց համար մենք ամբաստանութիւն
9 կ'ընենք անոր վրայ։ Հրեաներն ալ ամէնը մէկ
եղած՝ ըսին թէ այդպէս է։

10 Պատասխան տուաւ Պօղոս, (երբ կուսակալը
անոր աչք ըրաւ որ խօսի,) Գիտնալով որ շատ
տարիներէ հետէ դուն այս ազգին դատաւորն
ես, աւելի յօժարութեամբ ինծի վերաբերեալ
11 բաներուն համար պատասխան կու տամ. Որով-
հետև կրնաս գիտնալ որ ես տասուերկու օրէ
աւելի չէ՝ քանի որ Երուսաղէմ ելայ երկրպա-
12 գութիւն ընելու։ Եւ զիս տաճարին մէջ մէ-
կուն հետ վիճաբանութիւն ընելու վրայ, կամ
բազմութիւնը մէկտեղ ժողված չգտան, ոչ ալ

13 ժողովարաններուն մէջ, Եւ ոչ քաղաքին մէջ․
ոչ ալ կրնան ապացուցանել այն բաները, որոնց
համար հիմա ամբաստանութիւն կ՚ընեն ինծի
14 դէմ։ Բայց զայս կը խոստովանիմ քեզի՝ թէ
այն ճամբուն համեմատ զոր անոնք հերձուած
կ՚ըսեն, ես այնպէս կը պաշտեմ իմ հայրենի
Աստուածս, հաւատալով այն ամէն բաներուն
որոնք օրէնքին և մարգարէներուն մէջ գրուած
15 են․ Եւ յոյս ունիմ առ Աստուած, ինչպէս
անոնք ալ ակնկալութիւն ունին, որ մեռելնե-
րու յարութիւն պիտի ըլլայ, թէ՛ արդարնե-
16 րուն և թէ՛ մեղաւորներուն։ Եւ ես այս բա-
նին համար կը ջանամ, որ ամէն ատեն մաքուր
խղճմտանք ունենամ Աստուծոյ առջև ու մար-
17 դոց առջև։ Արդ ես շատ տարիներէ ետև եկայ
իմ ազգիս ողորմութիւններ բերելու ու ընծա-
18 ներ տալու․ Այսպէս քանի մը Ասիացի Հրեաներ
զիս տաճարին մէջ մաքրուած գտան, ոչ բազ-
19 մութիւնով և ոչ ամբոխով, Որոնց պէտք էր
առջևդ գալ ու ամբաստանութիւն ընել, եթէ
20 իմ վրայօք ըսելու բան մը ունէին։ Կամ թէ
անոնք իրենք թող ըսեն, ի՛նչ անիրաւութիւն
գտան իմ վրաս, երբ ատեանը կայներ էի․
21 Միայն թէ այս մէկ խօսքիս համար, որ երբ
իրենց մէջ կայներ էի, կանչեցի թէ Մեռելնե-
րու յարութեանը համար ես այսօր ձեզմէ կը
22 դատուիմ։ Եւ Փելիքս *ուրիշ անգամի թողուց
զանոնք, վասն զի աղէկ տեղեկութիւն ունէր
այն ճամբուն վրայով․ ու ըսաւ, Երբ Լիւսիաս
հազարապետը գայ իջնէ, պիտի քննեմ ձեր
23 գործը։ Եւ հարիւրապետին հրաման ըրաւ որ
զանիկա պահէ, և ընդարձակութիւն տայ, ու
իրեններէն մէկը չարգիլէ անոր սպասաւորու-
թիւն ընելէ կամ անոր քով երթալէ։

*Ոմանք, այս բաները լսելով ուրիշ

24 Եւ քանի մը օրէն ետև Փելիքս եկաւ իր
Դրուսիլլա կնոջ հետ որ Հրեայ էր, ու Պօ-
ղոսը կանչել տուաւ, և լսեց անկէ այն հա-
ւատքին համար որ Քրիստոս Յիսուսի վրայ է։
25 Ու երբ անիկա արդարութեան ու ժուժկալու-
թեան և գալու դատաստանին վրայով կը խօ-
սէր, Փելիքս զարհուրելով պատասխան տուաւ,
Դուն հիմա գնա, ու երբ ժամանակ ունենամ,
26 ես քեզ նորէն կը կանչեմ։ Նաև յոյս ունէր որ
Պօղոսի կողմէն իրեն ստակ *տրուի, անոր հա-
մար շատ անգամ կանչել կու տար զանիկա ու
27 անոր հետ կը խօսակցէր։ Բայց երբ երկու տարի
եղաւ, Փելիքսի տեղ Պորկիոս Փեստոս եկաւ.
Փելիքս ալ Հրեաներուն շնորհք ընել ուզելով
Պօղոսը կապուած թողուց։

## ԳԼ. ԻԵ

1 Հրեաները Պօղոսի դէմ ամբաստանութիւն կ'ընեն Փեստոսի առջև։ 8 Պօղոս պատասխան կու տայ, 11 և կայսրին կը բողոքէ։ 14 Ետքը Փեստոս անոր գործը կը պատմէ Ագրիպպաս թագաւորին, 23 և Պօղոսը անոր առջև բերել տալով, 25 կը ծանուցանէ թէ անիկա մահուան արժանի բան մը ըրած չէ։

1 Արդ երբ Փեստոս իր իշխանութեան գաւառը հա-
սաւ, երեք օրէն ետև Կեսարիայէ Երուսաղէմ
2 ելաւ։ Եւ քահանայապետը ու Հրէից գլխա-
ւորները անոր իմացուցին իրենց ամբաստանութիւնը Պօ-
3 ղոսի դէմ, Եւ կ'աղաչէին իրեն և շնորհք կը
խնդրէին անոր դէմ, որպէս զի զանիկա Երու-
սաղէմ բերել տայ. ու իրենք դարան կը պատ-
րաստէին ճամբուն մէջ զանիկա սպաննելու։
4 Բայց Փեստոս պատասխան տուաւ, որ Պօղոս
Կեսարիայի մէջ պահուի, և որ ինք շատ չանցած
5 հոն պիտի երթայ։ Ուստի ձեզմէ որոնք որ
կարող են, բաւ, ինծի հետ թող իջնեն, և եթէ
այն մարդուն վրայ յանցանք մը կայ, թող անոր
6 դէմ ամբաստանութիւն ընեն։ Եւ հոն †ութ

*Ոմանք, տրուի, որպէս զի զանիկա արձակէ   †Ոմանք, տասը օրէ աւելի կենալով

կամ տասը օրէ աւելի չկենալով", Կեսարիա
իջաւ. ու հետեւեալ օրը ատեանը նստելով՝ հրա-
7 ման ըրաւ որ Պօղոսը բերեն։ Ու երբ անիկա
եկաւ, Երուսաղէմէ իջնող Հրեաները անոր բո-
լորտիքը կայնելով, շատ ու ծանր ամբաստանու-
թիւններ կը բերէին Պօղոսի դէմ, զորոնք չէին
8 կրնար ապացուցանել. Վասն զի Պօղոս պա-
տասխան կու տար թէ Ես ոչ Հրեաներուն օ-
րէնքին, և ոչ տաճարին, ոչ ալ Կայսրին դէմ
9 յանցանք մը ըրած եմ։ Բայց Փեստոս ուզե-
լով որ Հրեաներուն շնորհք ընէ, պատասխան
տուաւ Պօղոսի ու ըսաւ, Կ'ուզե՞ս Երուսաղէմ
ելլել, և հոն այդ բաներուն վրայով իմ առջևս
10 դատուիլ։ Պօղոս ալ ըսաւ, Կայսրին ատեանը
կայներ եմ, ուր պէտք է ինծի դատուիլ. ես
Հրեաներուն անիրաւութիւն մը ըրած չեմ,
11 ինչպէս դուն ալ աղէկ գիտես։ Քանզի եթէ
անիրաւութիւն մը և մահուան արժանի բան մը
ըրած եմ, ես մեռնելէ չեմ քաշուիր, բայց
եթէ չկայ իմ վրաս այն բաներէն մէկն ալ՝ որոնց
համար ասոնք ինծի դէմ ամբաստանութիւն կ'ը-
նեն, մէ՛կը չկրնար զիս ասոնց շնորհել. Կայսրին
12 կը բողոքեմ։ Այն ատեն Փեստոս խորհրդա-
կաններուն հետ խօսելով՝ պատասխան տուաւ
թէ Կայսրին բողոքեցիր, Կայսրին պիտի երթաս։
13 Եւ քանի մը օր անցնելէն ետև՝ Ագրիպպաս
թագաւորը և Բերինիկէ Կեսարիա եկան Փես-
14 տոսը ողջունելու։ Եւ երբ շատ օրեր հոն ան-
ցուցին, Փեստոս Պօղոսի համար թագաւորին
իմացուց ու ըսաւ, Հոս մարդ մը կայ զոր Փելիքս
15 բանտարկուած թողուցեր է, Որուն վրայով,
երբ Երուսաղէմ գացի, քահանայապետները
ու Հրեաներուն ծերերը իմացուցին ինծի, և
կը խնդրէին որ անոր դէմ դատապարտութեան
16 վճիռ տրուի. Որոնց պատասխան տուի թէ Հռով-

մայեցւոց սովորութիւնը չէ մարդ մը կորստեան
շնորհել, մինչև ամբաստանուածը ամբաստա-
նողները դիմացը չունենայ, ու այն ամբաստա-
նութեանը պատասխան տալու պատեհութիւն
17 չառնէ իրեն։ Ուստի երբ անոնք ինծի հետս հոս
եկան, ամենևին չուշացուցի, հապա հետևեալ
օրը ատեանը նստելով՝ հրաման ըրի որ մարդը
18 բերեն. Անոր դատախազներն ալ ներկայանա-
լով, իմ կասկած ըրած յանցանքներէս մէ՛կն ալ
19 յառաջ չէին բերեր. Հապա մէկ քանի խնդիր-
ներ ունէին անոր հետ իրենց կրօնքին վրայ, և
Յիսուս անունով մեռածի մը վրայ, որու համար
20 Պօղոս կ'ըսէր թէ կենդանի է։ Ու երբ տա-
րակուսանքի մէջ էի այս բանին քննութեանը
վրայով, ըսի թէ Կ'ուզե՞ս Երուսաղէմ երթալ,
21 և հոն այս բաներուն համար դատուիլ։ Բայց
Պօղոս երբ բողոքեց որ պահուի Վեհափառ
Կայսրին *դիմաց ելլելու, հրաման ըրի որ զինք
22 պահեն՝ մինչև Կայսրին ղրկեմ։ Եւ Ագրիպպաս
ըսաւ Փեստոսի, Ես ալ կ'ուզէի այդ մարդը
մտիկ ընել. ան ալ ըսաւ, Վաղը մտիկ կ'ընես։
23 Ու հետևեալ օրը երբ Ագրիպպաս ու Բե-
րենիկէ մեծ հանդէսով եկան, ու ատեանը մտան
հազարապետներով և քաղաքին պատուաւոր
մարդոցմովը մէկտեղ, Փեստոս ալ հրաման ընե-
24 լով՝ բերին Պօղոսը։ Եւ ըսաւ Փեստոս, Ագ-
րիպպաս արքայ, և դուք ալ բոլոր մարդիկ որ
մեզի հետ էք, ասիկա կը տեսնէք. ասոր վրայով
Հրեաներուն բոլոր բազմութիւնը ինծի ներ-
կայացան Երուսաղէմի մէջ և հոս ալ, ու կ'ա-
ղաղակէին թէ Պէտք չէ որ ա՛լ ասիկա ողջ մնայ.
25 Բայց ես որ հասկցայ թէ անիկա մեռնելու ար-
ժանի բան մը ըրած չէ, և ինք որ Վեհափառ
Կայսրին բողոքեց, որոշեցի որ ղրկեմ զանիկա.

*Յուն. քննութեանը

26 Որու համար հաստատ բան մը չունիմ գրելու
իմ տէրոջս. ուստի անիկա ձեր առջեւ բերի,
և մանաւանդ քու առջեւդ, ով Ագրիպպաս
արքայ, որպէս զի քննութիւն ըլլալէ ետեւ
27 գրելու բան մը ունենամ. Վասն զի ինծի ան-
վայել կ՚երեւնայ որ բանտարկեալ մը ղրկեմ, և
անոր վրայ դրուած յանցանքները չիմացնեմ։

## ԳԼ. ԻԶ

2 Պօղոս Ագրիպպասի առջեւ կը պատմէ իր վարքը իր տղայութենէն ի վեր, 12 և հրաշքով իր դարձի գալը ու առաքելական պաշտօնին կանչուիլը։ 24 Փեստոս յիմար կը կոչէ զՊօղոս, բայց անիկա պարկեշտութեամբ կը պատասխանէ։ 28 Ագրիպպաս գրեթէ կը համոզուի քրիստոնեայ ըլլալու։ 31 Բոլոր ժողովականները կը խոստովանին Պօղոսի անմեղ ըլլալը։

1 Եւ Ագրիպպաս ըսաւ Պօղոսի, Հրաման է քեզի
որ դուն քեզի համար խօսիս։ Այն ատեն Պօ-
ղոս ձեռքը երկնցնելով՝ իրեն համար պատաս-
2 խան տուաւ. Հրեաներուն իմ վրաս ըրած բո-
լոր ամբաստանութիւններուն համար, ով Ագ-
րիպպաս արքայ, ես զիս երանելի կը սեպեմ,
որ այսօր քու առջեւդ պատասխան պիտի տամ.
3 Մանաւանդ որ դուն Հրեաներուն բոլոր սովո-
րութիւնները և խնդիրները աղէկ գիտես, անոր
համար կ՚աղաչեմ որ երկայնմտութեամբ ինծի
4 մտիկ ընես։ Արդ իմ մանկութենէս ի վեր իմ
ինչպէս ապրելուս, սկիզբէն Երուսաղէմ իմ
ազգիս մէջ ըլլալուս, բոլոր Հրեաները տեղեակ
5 են։ Քանզի առաջուընէ ի վեր զիս գիտեն, (եթէ
ուզեն վկայել,) որ մեր կրօնքին ամէնէն զգու-
շաւոր ճամբուն պէս՝ փարիսեցի ապրեր եմ։
6 Եւ հիմա ատեանը կեցեր կը դատուիմ Աստուծմէ
մեր հայրերուն եղած խոստմունքին յոյսին հա-
7 մար. Որու, մեր տասներկու ցեղը անդադար
գիշեր ու ցորեկ պաշտելով, կը յուսան հաս-
նիլ. ես այս յոյսին համար Հրեաներէն կ՚ամ-
8 բաստանուիմ, ով Ագրիպպաս արքայ։ Ի՞նչ.
չհաւատալո՞ւ բան կ՚երեւնայ ձեզի թէ Աստուած

9 մեռելները կը յարուցանէ։ Ես ինքս ալ ինծի
պարտք կը սեպէի Յիսուս Նազովրեցիի անուան
10 դէմ շատ բաներ ընել. Զոր ըրի ալ Երուսա-
ղէմի մէջ, և քահանայապետներէն իշխանու-
թիւն առած՝ սուրբերէն շատերը բանտարկեցի,
ու անոնց սպաննուած ատենը հաւանութիւն
11 տուի։ Եւ բոլոր ժողովարաններուն մէջ շատ
անգամ պատիժ պատժելով կը բռնադատէի որ
հայհոյեն, և անոնց դէմ սաստիկ կատղած՝
12 մինչև օտար քաղաքները կը հալածէի։ Այս-
պէս երբ Դամասկոս ալ կ'երթայի, քահանայա-
պետներէն իշխանութիւն ու հրաման առած,
13 Կէսօրուան ատենը ճամբուն վրայ, ով արքայ,
երկինքէն լոյս մը տեսայ որ արևին լուսաւորու-
թենէն աւելի՝ բոլորտիքս ծագած, նաև անոնց
14 բոլորտիքը որոնք ինծի հետ կ'երթային։ Ու երբ
մենք ամէնս գետինը ինկանք, ձայն մը լսեցի
որ Եբրայական լեզուով ինծի կ'ըսէր, Սաւուղ,
Սաւուղ, ինչո՞ւ զիս կը հալածես. դժուար բան
15 է քեզի խթանին դէմ կից զարնել։ Ես ալ ըսի,
Դուն ո՞վ ես, Տէր. և անիկա ըսաւ, Ես եմ
16 Յիսուս զոր դուն կը հալածես. Բայց ելիր ու
ոտքիդ վրայ կայնէ. վասն զի ասոր համար քեզի
երևցայ, որ քեզ ձեռք առնեմ պաշտօնեայ և
վկայ ընելու այն բաներուն զորոնք տեսար, ու
այն բաներուն որոնցմով պիտի երևնամ քեզի,
17 Քեզ ազատելով այդ ժողովուրդէն ու հեթա-
18 նոսներէն, որոնց հիմա քեզ կը ղրկեմ, Անոնց
աչքերը բանալու, խաւարէն լոյսի, ու Սատա-
նայի իշխանութենէն Աստուծոյ դարձնելու,
որպէս զի անոնք մեղքերու թողութիւն առ-
նեն, և սուրբերուն հետ մասնակից ըլլան ինծի
19 հաւատալով։ Ուստի, Ագրիպպաս արքայ, այն
երկնային տեսիլքին անհնազանդ չեղայ ես.
20 Հապա առաջ Դամասկոսի ու Երուսաղէմ եղող-

ներուն, և բոլոր Հրէաստանի երկիրը ու հե-
թանոսներուն քարոզեցի որ ապաշխարեն ու
Աստուծոյ դառնան. և ապաշխարութեան ար-
21 ժանաւոր գործեր գործեն։ Այս պատճառաւ
Հրեաները զիս տաճարին մէջ բռնեցին, և
22 կը ջանային որ սպաննեն։ Սակայն Աստուծմէ
օգնութիւն հասնելով մինչև այսօր ալ մնացի՝
պզտիկին ու մեծին վկայութիւն տալով, բան մը
չըսելով այն բաներէն դուրս՝ զորոնք մար-
գարէները և Մովսէս խօսեցան թէ պիտի ըլ-
23 լային. Թէ Քրիստոս պիտի չարչարուէր, և թէ
անիկա ամէնէն առաջ մեռելներէն յարութիւն
առած՝ լոյս պիտի քարոզէր ժողովուրդին ու
հեթանոսներուն։
24 Եւ քանի որ անիկա այսպէս պատասխան
կու տար իրեն համար, Փեստոս բարձր ձայնով
մը ըսաւ, Կը խելագարիս, Պօղոս. շատ կար-
25 դացողութիւնդ քեզ կը յիմարեցնէ։ Պօղոս ալ
ըսաւ, Ես չեմ խելագարիր, ով պատուական
Փեստոս, հապա ճշմարտութեան և զգաստու-
26 թեան խօսքեր կը զրուցեմ։ Քանզի այս բա-
ները թագաւորը գիտէ, որուն առջև ես ալ
համարձակ կը խօսիմ. քանզի չեմ կարծեր թէ
ասոնցմէ բան մը անկէ ծածկուած ըլլայ, վասն
27 զի այս բանը անկիւնի մը մէջ եղած չէ։ Մար-
գարէներուն կը հաւատա՞ս, Ագրիպպաս թագաւոր.
28 գիտեմ որ կը հաւատաս։ Եւ Ագրիպպաս ըսաւ
Պօղոսի, Քիչ մնաց որ զիս համոզես Քրիստոնեայ
29 ըլլալու։ Պօղոս ալ ըսաւ, Աստուծմէ կը խնդրէի
որ թէ՛ քիչով և թէ՛ շատով, ոչ թէ միայն դուն,
հապա ամէնն ալ որոնք այսօր ինծի կը լսեն,
այնպէս ըլլան ինչպէս ես եմ, այս կապե-
րէն զատ։
30 *Ոտքի վրայ ելաւ թագաւորը և կուսակալը

*Ոմանք, Եւ երբ այս բաները ըսաւ, ոտքի

ու Բեռնիկէ, և անոնք որ իրենց հետ նստեր
31 էին ։ Ու դուրս ելլելէն ետեւ, իրարու հետ խօ-
սեցան ու ըսին թէ Այս մարդը մեռնելու կամ
32 կապուելու արժանի բան մը չըներ ։ Ագրիպ-
պաս ալ Փեստոսի ըսաւ, Կարելի էր այս մարդը
արձակել, եթէ Կայսրին բողոքած չըլլար ։

## ԳԼ. ԻԷ

1 Պօղոս նաւով ճամբայ կ'ելլէ Հռոմ երթալու. 10 կը նախազգուշացնէ ճամբուն վտանգները, 11 բայց իր խօսքին չեն հաւատար ։ 14 Սակայն ալեկոծութեան կը պատահին, 41 և նաւաբեկութիւն կը կրեն, 44 բայց ամէնն ալ անվտանգ ցամաք կ'ելլեն ։

1 Երբ որոշուեցաւ որ նաւով Իտալիա երթանք,
Պօղոս և ուրիշ քանի մը կապուածներ յանձ-
նեցին հարիւրապետի մը, որուն անունը Յու-
2 լիոս էր, Սեբաստեան գունդէն ։ Եւ Ադրա-
միտտացի նաւ մը մտնելով ճամբայ ելանք, ու
Ասիայի կողմերէն պիտի նաւէինք. Թեսաղո-
նիկեցի Արիստարքոս Մակեդոնացի ալ
3 մեզի հետ էր ։ Եւ հետեւեալ օրը Սիդոն իջանք.
և Յուլիոս մարդասիրութիւն ցուցնելով Պօղոսի,
հրաման տուաւ որ բարեկամներուն երթայ ու
4 դարման գտնէ ։ Եւ անկէ ելլելով՝ Կիպրոսի
վարի կողմէն նաւեցինք հովին՝ դէմ ըլլալուն
5 համար ։ Ետքը Կիլիկիայի ու Պամփիւլիայի ծո-
վուն մէջտեղէն նաւելով՝ Լիկիայի Միւռա քաղաքը
6 իջանք ։ Եւ հարիւրապետը հոն Աղեքսանդրացի
նաւ մը գտնելով, որ Իտալիա կ'երթար, մեզ
7 անոր մէջ մտցուց ։ Եւ շատ օրեր կամաց կամաց
նաւելով՝ հազիւ թէ Կնիդոսի քովերը հասանք.
և հովը մեզի դէմ ըլլալով՝ Կրետէի վարի կող-
8 մէն Սաղմոնայի քովէն նաւեցինք ։ Եւ դժուա-
րաւ անկէ անցնելով՝ տեղ մը եկանք, որ Գե-
ղեցիկ նաւահանգիստ կ'ըսուէր, որու մօտ էր
Ղասեա քաղաքը ։

9 Ու երբ շատ ժամանակ անցաւ, և նաւին
ճամբայ ելլելն ալ վտանգաւոր էր, ծոմին ա-
տենն ալ արդէն անցած ըլլալով, Պօղոս խրատ
10 կու տար, Եւ կ'ըսէր անոնց, Մարդիկ, ես կը տես-
նեմ որ այս նաւին ճամբայ ընելը տառապանքով
ու շատ վնասով պիտի ըլլայ, ոչ թէ միայն բե-
11 ռին ու նաւին՝ հապա մեր անձերուն ալ։ Բայց
հարիւրապետը աւելի նաւապետին և նաւատի-
րին մտիկ կ'ընէր՝ քան թէ Պօղոսի խօսքերուն։
12 Ու որովհետև այն նաւահանգիստը յարմար չէր
ձմեռը հոն անցընելու, շատերը խորհեցան
անկէ երթալ, որ գուցէ կարող ըլլան Փիւնիկէ
հասնիլ ու ձմեռը հոն կենալ, որ Կրետէի նա-
ւահանգիստ մըն է, ու դէպ ի հարաւ և ա-
13 րևմտեան հիւսիս կը նայի։ Ու երբ հարաւային
մեղմ հով մը փչեց, կարծելով թէ իրենց դի-
տաւորութեանը հասեր են, ճամբայ ելան ու
14 Կրետէի քովերէն կ'անցնէին։ Եւ շատ ատեն
չանցած՝ մրրկալից հով մը ելաւ անոր դէմ, որ
15 Եւրակլիւդոն կ'ըսուի։ Երբ նաւը յափշտակուե-
ցաւ և հովին դէմ չկրցաւ դիմանալ, թող տուած
16 կ'երթայինք կու գայինք. Եւ դէպ ի փոքր կղզի
մը ետևի կողմը դիմելով, որ Կղօդա կ'ըսուէր,
17 հազիւ կրցանք մակոյկը բռնել. Զոր առին ու
օգնութիւններ գործածելով՝ նաւը տակէն կա-
պեցին. և վախնալով որ չըլլայ թէ *յորձանուտը
իյնան, առագաստը իջեցուցած՝ այնպէս կ'եր-
18 թային ու կու գային։ Եւ որովհետև սաստիկ
ալէկոծութեան մէջ էինք, հետևեալ օրը բե-
19 ռերը դուրս նետեցին։ Ու երրորդ օրը նաւին
20 գործիքները ձեռքերնիս դուրս նետեցինք։ Ու
երբ շատ օրեր ոչ արև ոչ ալ աստղեր կ'երև-
նային, և փոթորիկը քիչ չէր մեր վրայ, ալ բո-
21 լորովին մեր ազատուելու յոյսը վերցաւ։ Եւ

*կամ, ծանծաղուտը

որովհետեւ շատ օրերէ ի վեր անօթի էին, այն
ատեն Պօղոս անոնց մէջ կայնելով՝ ըսաւ, Ով
մարդիկ, պէտք էր ձեզի որ ինծի մտիկ ընէիք
ու Կրետէէ չելլէիք, և այս տառապանքը ու
22 վնասը չքաշէիք։ Ու հիմա ձեզ կը յորդորեմ
որ սիրտ առնէք, քանզի ձեզմէ մէկուն անձին
վնաս մը պիտի չըլլայ, բայց միայն նաւին.
23 Վասն զի այս գիշեր երեւցաւ ինծի հրեշտակը
այն Աստուծոյն, որունն եմ ես և զոր կը պաշ-
24 տեմ, Եւ ըսաւ Մի վախնար, Պօղոս, Կայսրին
դիմաց պէտք է որ ելլես դուն. և ահա Աստ-
ուած քեզի շնորհեց այն ամէնը, որոնք քեզի
25 հետ նաւին մէջ են։ Ուստի, մարդիկ, սիրտ
առէք, վասն զի ես կը հաւատամ Աստուծոյ՝ որ
այնպէս պիտի ըլլայ, ինչպէս ինծի զրուցուեցաւ.
26 Միայն թէ պէտք է որ կղզի մը իյնանք։
27 Ու երբ տասնըչորսերորդ գիշերն էր որ Ադ-
րիականի ծովուն մէջ կը տարուբերէինք, կէսգի-
շերին նաւաստիները կը կարծէին թէ երկիրի մը
28 մօտեցեր են. Եւ գնտակը ձգելով՝ քսան գրկա-
չափ գտան. ու քիչ մըն ալ յառաջ երթալով՝
նորէն ձգեցին, և տասնըհինգ գրկաչափ գտան.
29 Ու վախնալով որ չըլլայ թէ քարոտ տեղեր իյ-
նան, ետեւի կողմէն չորս խարիսխ ձգեցին, և
30 առտու ըլլալուն կը փափաքէին։ Իսկ նաւա-
վարները նաւէն փախչիլ ուզելով՝ մակոյկը ծովը
իջեցուցին, պատճառելով որպէս թէ առջեւի
31 կողմէն ալ խարիսխներ պիտի ձգեն։ Բայց Պօ-
ղոս ըսաւ հարիւրապետին ու զինուորներուն,
Եթէ ասոնք նաւին մէջ չկենան՝ դուք չէք կրնար
32 ազատիլ։ Այն ատեն զինուորները մակոյկին
չուանները կտրեցին, և թողուցին որ գայ
33 իյնայ։ Ու երբ առտու ըլլալու վրայ էր, Պօղոս
կ՚աղաչէր ամէնուն որ կերակուր ուտեն, ըսե-
լով, Այսօր տասնըչորս օր է որ դուք սպասե-

լով անօթի մնացեր էք, ու բան մը կերած չէք.
34 Ուստի կ'աղաչեմ ձեզի որ կերակուր ուտէք,
վասն զի այս ալ ձեր ազատութեանը համար է.
քանզի ձեզմէ մէկո՛ւն գլխէն մազ մը պիտի
35 չկորսուի ։ Եւ այսպէս ըսելով՝ հաց առաւ, ու
ամէնուն առջև Աստուծմէ գոհացաւ, և կտրե-
36 լով սկսաւ ուտել ։ Եւ ամէնն ալ սիրտ առին,
37 ու իրենք ալ կերակուր կերան ։ Եւ նաւին մէջ
ամէնս երկու հարիւր եօթանասունըվեց հոգի
38 էինք ։ Երբ կշտացան կերակուրով, նաւը թե-
թևցուցին՝ ցորենը ծովը թափելով ։
39 Ու երբ առտու եղաւ, ցամաքը չէին ճանչ-
նար, միայն թէ ծոց մը կը նշմարէին որ ծովե-
զերք ունէր, ու կը խորհէին որ եթէ կարելի է
40 նաւը անոր մէջ մխեն ։ Եւ խարիսխները կտրե-
լով՝ ծովը ձգեցին, ու ղեկերուն կապերը թուլ-
ցուցին, և առագաստը հովին բանալով՝ դէպ ի
41 այն ծովեզերքը կ'երթային ։ Եւ այնպիսի տեղ մը
իյնալով որուն երկու կողմը ծով էր, նաւը նստե-
ցուցին. և նաւին առջևի կողմը խրելով՝ ան-
շարժ մնաց, ու ետևի կողմը ալիքներուն սաստ-
42 կութենէն կը քակուէր ։ Զինուորներն ալ խոր-
հուրդ ըրին որ կապուածները սպաննեն, որ
43 չըլլայ թէ մէկը լողայ ու փախչի ։ Բայց հարիւ-
րապետը, որ Պօղոսը ազատել կ'ուզէր, արգիլեց
զանոնք այն խորհուրդէն, և հրաման ըրաւ թէ
անոնք որ կրնան լողալ, թող անոնք առաջ
44 նետուին ու ցամաքը ելլեն. Եւ մնացածները,
ոմանք տախտակներով և ոմանք նաւին ուրիշ
բաներովը. և այսպէս ամէնը ազատեցան, ցա-
մաք ելան ։

## ԳԼ. ԻԸ

1 Պօղոս և իր ընկերները նաւաբեկութենէն ետքը մարդասիրութիւն կը տեսնեն բարբարոսներէն ։ 3 իժ մը Պօղոսի ձեռքը կը բռնէ, բայց չվնասեր ։ 8 Պօղոս շատ հիւանդներ կը բժշկէ կղզիին մէջ. 11 ճամբայ կ'ելլէ Հռոմ երթալու. 17 կ'իմացնէ Հրեաներուն իր գալուն պատճառը. 24 իր քարոզութիւնով ոմանք կը հաւատան Քրիստոսի, ոմանք ալ չեն հաւատար. այսու ամենայնիւ երկու տարի կը քարոզէ Հռոմայ մէջ ։

1 Ու երբ ազատեցանք, գիտցանք որ այն կղզիին
անունը Մելիտէ էր. և բարբարոսները քիչ
2 մարդասիրութիւն չցուցուցին մեզի. Վասն զի
կրակ վառեցին, և մեզ ամէնս ալ ընդունեցին՝
մեր վրայ հասած անձրևին համար ու ցուրտին
3 համար ։ Ու երբ Պօղոս շատ մը խուխ ժողվեց և
կրակին վրայ դրաւ, տաքութենէն իժ մը ելաւ,
4 անոր ձեռքը բռնեց ։ Բարբարոսներն ալ երբ
այն գազանը տեսան անոր ձեռքէն կախուած՝
իրարու կ'ըսէին, Անշուշտ ասիկա մարդասպան
մըն է, որ թէպէտ ծովէն ազատեցաւ, բայց ի-
5 րաւունքը թող չտուաւ որ ապրի ։ Իսկ անիկա
գազանը կրակին մէջ թօթվելով՝ իրեն վնաս մը
6 չեղաւ ։ Ու անոնք կը սպասէին որ անիկա ու-
ռենայ, կամ յանկարծակի մեռած իյնայ. բայց
երբ շատ մը սպասեցին, ու տեսան որ իրեն
վնաս մը չեղաւ, կարծիքնին փոխելով՝ կ'ըսէին
7 թէ աստուած մըն է ։ Եւ այն տեղին բոլորտիքը
կղզիին գլխաւոր մարդուն ագարակները կային,
որուն անունը Պոպղիոս էր, որ մեզ ընդունեց և
երեք օր հիւրասիրութեամբ իրեն քով պահեց ։
8 Ու եղաւ որ Պոպղիոսի հայրը ջերմով և թանչքով
հիւանդացած պառկած էր. ու Պօղոս անոր քով
մտաւ, և աղօթք ընելով ձեռքերը անոր վրայ
9 դրաւ ու բժշկեց զանիկա ։ Ու երբ ասիկա եղաւ,
ուրիշ հիւանդներ, որոնք այն կղզիին մէջ էին,
10 կու գային և կը բժշկուէին. Որոնք շատ պա-
տիւներով ալ մեզ պատուեցին, ու մեր երթա-
լու ատենը պէտք եղած բաները տուին ։

11 Եւ երեք ամիսէն ետև Աղեքսանդրացի նաւ-
ւով մը ճամբայ ելանք, որ ձմեռը այն կղզին
անցուցեր էր, ու Դիոսկուրացւոց նշանը ունէր։
12 Եւ Սիրակուսա իջնելով՝ երեք օր հոն կեցանք։
13 Անկէ ալ պտոյտ մը ընելով՝ Հռեգիոն հասանք.
և մէկ օրէն ետև երբ հարաւ փչեց, երկրորդ
14 օրը Պոտիողոս եկանք։ Ու հոն եղբայրներ
գտանք, որոնք աղաչեցին որ եօթը օր իրենց
15 քով մնանք. ու այսպէս Հռոմ եկանք։ Եւ անկէ
եղբայրները, երբ մեր վրայով լսեցին, մեզ դի-
մաւորելու ելան մինչև Ապփիոսի վաճառա-
նոցը ու Երեք պանդոկները. և Պօղոս զանոնք
տեսնելով՝ գոհութիւն տուաւ Աստուծոյ և
սիրտ առաւ։
16 Ու երբ Հռոմ մտանք, հարիւրապետը կապ-
ուածները զօրապետին յանձնեց. իսկ Պօղոսի
հրաման եղաւ որ իր պահապան զինուորին հետ
17 դատ կենայ։ Ու եղաւ որ երեք օրէն ետև ա-
նիկա Հրէից գլխաւորները կանչեց. ու երբ
մէկտեղ եկան, ըսաւ անոնց, Մարդիկ եղբայր-
ներ, ես ժողովուրդին կամ հայրենական սո-
վորութիւններու դէմ բան մը չըրած, Երու-
սաղէմէ կապուած՝ Հռոմայեցւոց ձեռքը մատ-
18 նուեցայ. Որոնք երբ զիս քննեցին, ուզեցին որ
արձակեն, վասն զի իմ վրաս մեռնելու յան-
19 ցանք մը չկար։ Բայց երբ Հրեաները հակառակ
կեցան, պէտք եղաւ որ Կայսրին բողոքեմ, ոչ
թէ իմ ազգիս դէմ ամբաստանութիւն մը ու-
20 նեցողի պէս։ Ուստի այս պատճառաւ աղաչեցի
որ ձեզ տեսնեմ ու ձեզի խօսիմ. վասն զի Իս-
րայէլի յոյսին համար ես այս շղթան վրաս ու-
21 նիմ։ Անոնք ալ ըսին իրեն, Մենք քու վրայովդ
Հրէաստանէ ոչ թուղթեր առինք, և ոչ եղ-
բայրներէն մէկը հոս գալով՝ քու վրայովդ չա-
22 րութիւն մը պատմեց կամ խօսեցաւ։ Բայց

կ'աղաչենք որ քեզմէ լսենք թէ դուն ինչ մտքի
վրայ ես. վասն զի մենք այդ աղանդին վրայով
տեղեկացած ենք՝ որ ամէն տեղ անոր դէմ
23 կը խօսին։ Ու օր մը որոշելով անոր, շատերը
անոր գացին իր բնակած տեղը, որոնց Աստու-
ծոյ թագաւորութիւնը կը ծանուցանէր վկայու-
թիւնով, և կը համոզէր զանոնք Յիսուսի վրայով
Մովսէսի օրէնքէն ու մարգարէներէն՝ առ-
24 տուընէ մինչև իրիկուն։ Եւ ոմանք կը հաւա-
տային ըսածներուն, ու ոմանք չէին հաւատար։
25 Եւ իրարու հետ չմիաբանած՝ գացին, երբ Պօ-
ղոս խօսք մը ըսաւ, թէ Հոգին Սուրբ աղէկ
խօսեցաւ մեր հայրերուն, Եսայի մարգարէին
26 ձեռքով, Եւ ըսաւ, Գնա այս ժողովուրդին ու
ըսէ, Լսելով պիտի լսէք՝ ու չիմանաք, և տես-
27 նելով պիտի տեսնէք՝ ու չտեսնէք. Վասն զի
այս ժողովուրդին սիրտը թանձրացաւ, և իրենց
ականջներովը ծանր լսեցին, ու աչքերնին գո-
ցեցին, որ չըլլայ թէ իրենց աչքերովը տեսնեն,
ու ականջներովը լսեն, և սրտերովը իմանան,
28 ու դարձի գան, և ես բժշկեմ զանոնք։ Ուստի
յայտնի ըլլայ ձեզի որ Աստուծոյ փրկութիւնը
հեթանոսներուն ղրկուեցաւ, և անոնք մտիկ
29 պիտի ընեն։ *Ու երբ զայս զրուցեց, Հրեա-
ները դուրս ելան, շատ վիճաբանութիւն ու-
նենալով իրենց մէջ"։
30 Եւ լման երկու տարի իր վարձքով բռնած
31 տունը կեցաւ։ Եւ իրեն եկողներուն ամէնը
32 կ'ընդունէր։ Կը քարոզէր Աստուծոյ թագաւո-
րութիւնը, և Տէր Յիսուս Քրիստոսի վրայով
առանց արգելուելու կը սորվեցնէր ամենայն
համարձակութեամբ։

*Ոմանք չունին այս 29 համարը

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՀՌՈՎՄԱՅԵՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա

*1 Պօղոս առաքեալ կը ծանուցանէ Հռովմայեցիներուն իր առաքելական պաշտօնին կանչուիլը, 9 Նաև իր սրտին փափաքը՝ անոնց երթալու, 16 և թէ ինչ է իր քարոզած աւետարանը, ու աւետարանին ցուցուցած արդարութիւնը. 18 Թէ Աստուած բարկացած է ամէն տեսակ մեղքի դէմ, 21 և թէ հեթանոսներուն մեղքերը ինչ են։*

1 Պօղոս, Յիսուսի Քրիստոսի ծառայ, առաքեալ
ըլլալու կանչուած, Աստուծոյ աւետարանին
2 համար որոշուած, (Որ առաջուընէ իր մարգարէ-
ներուն ձեռքով սուրբ գիրքերով խոստացաւ,)
3 Իր Որդւոյն մեր Տէր Յիսուս Քրիստոսի վրայով,
որ մարմնի կողմանէ Դաւիթի սերունդէն եղաւ,
4 Որ սրբութեան Հոգիին կողմանէ Որդի Աստու-
ծոյ յայտնուեցաւ զօրութեամբ՝ մեռելներէն
5 յարութիւն առնելով. Որով շնորհք և առաքե-
լութիւն առինք՝ հաւատքի հնազանդութեան
համար բոլոր ազգերուն մէջ, անոր անուանը
6 համար. Որոնց մէջ դուք ալ Յիսուս Քրիստոսի
7 կանչուածներն էք. Ձեր ամէնուն որ Հռովմայ
մէջ էք, Աստուծոյ սիրելիներուդ, սուրբ ըլլա-
լու կանչուածներուդ, շնորհք և խաղաղու-
թիւն ձեզի Աստուծմէ մեր Հօրմէն ու Տէր
Յիսուս Քրիստոսէ։
8 Նախ կը գոհանամ իմ Աստուծմէս Յիսուս
Քրիստոսի ձեռքով ձեր ամէնուն համար, որ
ձեր հաւատքը բոլոր աշխարհ կը պատմուի։
9 Քանզի վկայ է ինծի Աստուած, զոր ես կը պաշ-

*տեմ իմ հոգիովս անոր Որդւոյն աւետարանին*
10 *մէջ, Թէ ինչպէս անդադար ձեզ կը յիշեմ,*
*ամէն ատեն իմ աղօթքներուս մէջ խնդրելով՝*
*որ թերեւս անգամ մը Աստուծոյ կամքովը ինծի*
11 *յաջողութիւն մը ըլլայ ձեզի գալու։ Քանզի*
*կը փափաքիմ ձեզ տեսնել, որ ձեզի հոգե-*
*ւոր շնորհք մը հաղորդեմ, որպէս զի հաս-*
12 *տատուիք. Այսինքն ձեզի հետ ես ալ մխիթա-*
*րակից ըլլամ իմ ու ձեր փոխադարձ հաւատա-*
13 *քին միջոցով։ Սակայն չեմ ուզեր որ չգիտցող*
*ըլլաք, եղբայրներ, որ շատ անգամ ուզեցի գալ*
*ձեզի, (և մինչև հիմա արգիլուեցայ,) որպէս զի*
*ձեր մէջ ալ պտուղ մը ունենամ. ինչպէս ու-*
14 *րիշ հեթանոսներու մէջ ալ։ Յոյներուն ու Բար-*
*բարոսներուն, իմաստուններուն ու անմիտնե-*
15 *րուն ալ պարտական եմ։ Ուստի որչափ որ*
*ձեռքէս կու գայ, յօժարութիւն ունիմ ձեզի ալ,*
*որ Հռոմայ մէջ էք, աւետարանը քարոզելու։*
16 *Վասն զի ես ամօթ չեմ սեպեր *աւետա-*
*րանը, քանզի Աստուծոյ զօրութիւնն է այն՝*
*բոլոր հաւատացեալներուն փրկութեան հա-*
17 *մար, առաջ Հրէային ու ետքը Յոյնին։ Վասն զի*
*անով Աստուծոյ արդարութիւնը, որ է հաւատա-*
*քէն, հաւատքի համար կը յայտնուի. ինչպէս*
*գրուած է թէ Արդարը հաւատքէն պիտի ապրի։*
18 *Քանզի Աստուծոյ բարկութիւնը երկինքէն*
*կը յայտնուի մարդոց բոլոր ամբարշտութեանը*
*և անիրաւութեանը վրայ, որոնք ճշմարտու-*
19 *թիւնը անիրաւութեամբ բռներ են։ Վասն զի*
*Աստուծոյ վրայով գիտնալու բանը իրենց մէջ*
*յայտնի է, որովհետև Աստուած անոնց յայտ-*
20 *նեց։ Քանզի աներևոյթ բաները աշխարհի*
*սկիզբէն ստեղծուածներովը կ՚իմացուին, կը*
*տեսնուին, այսինքն է իր մշտնջենաւոր զօրու-*

---

*Ոմանք, Քրիստոսի աւետարանը ։

թիւնը ու աստուածութիւնը, որպէս զի ան-
21 պատասխանի մնան։ Վասն զի իրենք զԱստուած
ճանչնալով՝ Աստուծոյ պէս չփառաւորեցին կամ
շնորհակալ չեղան, հապա իրենց խորհուրդնե-
րուն մէջ ունայնացան, և *սիրտերնին անմտու-
22 թենով" խաւարեցաւ։ Իրենք Իմաստուն ենք՝
23 ըսելով յիմարեցան. Եւ անեղծ Աստուծոյ
փառքը փոխեցին, նմանցնելով եղծանելի մար-
դու և թռչուններու ու չորքոտանիներու և
24 սողուններու պատկերին։ Անոր համար Աստ-
ուած ալ պղծութեան մատնեց զանոնք իրենց
սիրտերուն ցանկութիւններովը՝ իրենց մարմին-
25 ները իրենց մէջ խայտառակելու. Որոնք Աս-
տուծոյ ճշմարտութիւնը սուտի հետ փոխե-
ցին, ու երկրպագութիւն և պաշտօն մատուցին
ստեղծուածներուն քան թէ Ստեղծողին, որ
26 յաւիտեան օրհնեալ է։ Ամէն։ Անոր համար
Աստուած զանոնք անարգ կիրքերու մատնեց,
որ իրենց էգերը անգամ՝ բնական պէտքը բնու-
27 թեան դէմ եղող պէտքի փոխեցին։ Նոյնպէս ալ
արուները կնոջ բնական պէտքը թողուցած՝ ի-
րենց ցանկութիւնովը իրարու հետ վառուե-
ցան. արուները արուներու հետ խայտառակու-
թիւն կը գործէին, և իրենց մոլութեանը վայլած
28 հատուցումը իրենց վրայ կ'ընդունէին։ Եւ ո-
րովհետև չուզեցին զԱստուած իրենց գիտու-
թեանը մէջ պահել, Աստուած ալ զանոնք անարգ
խորհուրդներու մատնեց անվայել բաներ ընե-
29 լու. Որոնք լեցուած էին ամէն անիրաւութիւ-
նով, պոռնկութիւնով, անզգամութիւնով, ա-
գահութիւնով, չարութիւնով, նախանձով լե-
ցուն, մարդասպանութիւնով, հակառակու-
թիւնով, նենգութիւնով, չարասրտութիւնով.
30 և էին քսուներ, Զարախօսներ, զԱստուած ա-

*Յուն. անմիտ սիրտերնին

*տողներ, Նախատողներ, Հպարտներ, ամբար-*
*տաւաններ, չար բաներ հնարողներ, ծնողաց*
31 *անհնազանդներ, Անմիտներ, ուխտ չպահող-*
*ներ, անգութներ, անհաշտներ, անողորմներ.*
32 *Որոնք գիտնալով Աստուծոյ դատաստանը, թէ*
*անոնք որ այսպիսի բաներ կ'ընեն՝ մահուան*
*արժանի են, ոչ թէ միայն այն բաները կ'ընեն,*
*հապա ընողներուն հաւանութիւն ալ կու տան։*

## ԳԼ. Բ

*1 Անոնք որ ուրիշները կը դատապարտեն իբրև մեղաւորներ, եթէ իրենք ալ այն մեղքերը կը գործեն, չեն կրնար ինքզինքնին արդարացնել. 6 ո՛չ ալ կրնան ազատ մնալ Աստուծոյ դատաստանէն, 9 թէ՛ Հրեայ ըլլան՝ թէ՛ հեթանոս. 14 քանզի ինչպէս որ հեթանոսները չեն կրնար ազատ մնալ, 17 այնպէս ալ Հրեաները. 25 որոնց թլփատութիւնը օգուտ մը պիտի չընէ, եթէ օրինազանց գտնուին։*

1 *Ուստի, ով մարդ, ով որ ըլլաս դուն որ կը դա-*
*տես, պատասխան չունիս տալու. քանզի ինչ*
*բանով որ ուրիշը կը դատես, անով քու անձդ*
*կը դատապարտես. վասն զի դուն ալ որ կը դա-*
2 *տես՝ նոյն բաները կ'ընես։ Բայց գիտենք որ*
*Աստուծոյ դատաստանը ճշմարտութիւնով կ'ըլ-*
*լայ անոնց վրայ՝ որ այնպիսի բաներ կը գործեն։*
3 *Արդ, ով մարդ, դուն որ այսպիսի բաներ ընող-*
*ները կը դատես, և դուն նոյն բաները կ'ընես,*
*զայս միտքէդ կ'անցնէ՞ս թէ դուն Աստուծոյ*
4 *դատաստանէն ազատ պիտի մնաս. Կամ թէ*
*անոր անչափ քաղցրութիւնը և համբերու-*
*թիւնը ու երկայնմտութիւնը կ'արհամարհե՞ս,*
*չգիտնալով որ Աստուծոյ քաղցրութիւնը քեզ*
5 *դէպ ի ապաշխարութիւն կ'առաջնորդէ։ Բայց*
*դուն քու խստութիւնովդ և անզեղջ սրտովդ*
*քու անձիդ բարկութիւն կը դիզես՝ բարկու-*
*թեան և Աստուծոյ արդար դատաստանին յայտ-*
6 *նուելու օրուանը համար. Որ ամէն մէկուն իր*
7 *գործերուն փոխարէնը պիտի հատուցանէ. Յա-*

յաւիտենական կեանք՝ անոնց որոնք բարի գործե-
րու մէջ համբերութեամբ յարատեւելով փառք
8 ու պատիւ և անմահութիւն կը խնդրեն․ Բայց
անոնց որ հակառակ են, և ճշմարտութեան
անհնազանդ ու անիրաւութեան հնազանդած՝
9 պիտի ըլլայ բարկութիւն և սրտմտութիւն, Նե-
ղութիւն և տառապանք ամէն մարդու վրայ որ
չար կը գործէ, առաջ Հրէային ու ետքը Յոյնին․
10 Իսկ փառք ու պատիւ և խաղաղութիւն այն
ամէնուն որ բարի կը գործէ, առաջ Հրէային
11 ու ետքը Յոյնին։ Վասն զի Աստուծոյ քով
12 աչառութիւն չկայ։ Քանզի անոնք որ առանց
օրէնքի մեղք գործեցին, առանց օրէնքի պիտի
կորսուին, և անոնք որ օրէնքի տակ մեղք գոր-
13 ծեցին, օրէնքով պիտի դատուին, (Վասն զի
ոչ թէ օրէնքը լսողները Աստուծոյ առջև ար-
դար են, հապա օրէնքը կատարողները պիտի
14 արդարանան։ Քանզի հեթանոսները, որոնք
օրէնք չունին, երբ բնականապէս օրէնքին գոր-
ծերը կը գործեն, օրէնք չունենալով՝ իրենց ան-
15 ձերուն օրէնքը բուն իրենք կ՚ըլլան, Որոնք օ-
րէնքին գործը իրենց սրտին մէջ գրուած կը ցու-
ցունեն իրենց խղճմտանքին վկայութիւնովը, և
իրենց խորհուրդներուն իրար յանդիմանելովը
16 կամ՝ իրաւունք տալովը,) Այն օրը երբ Աստուած
մարդոց ծածուկ բաները պիտի դատէ Յիսուս
Քրիստոսի ձեռքով՝ իմ քարոզած աւետարանիս
համեմատ։
17 Ահա դուն Հրեայ ըսուեր ես, և օրէնքին
18 կռթներ ես, ու Աստուծով կը պարծենաս, Եւ
անոր կամքը գիտես, ու տարբեր բաները կը զա-
19 նազանես՝ օրէնքէն խրատուած ըլլալով․ Եւ
քու անձիդ վրայ վստահութիւն ունիս՝ թէ
կոյրերուն առաջնորդ ես, խաւարածներուն
20 լոյս, Անմիտներուն խրատ տուող, տղայոց վար-

ժապետ, և թէ գիտութեան ու ճշմարտու-
21 թեան կերպարանքը օրէնքէն ունիս ։ Իսկ արդ՝
դուն որ ընկերիդ կը սորվեցնես, քու անձիդ
չե՞ս սորվեցներ. որ կը քարոզես գողութիւն
22 չընել, կը գողնա՞ս. Որ կ'ըսես շնութիւն չընել,
շնութի՞ւն կ'ընես. որ կը զզուիս կուռքերէն,
23 սրբապղծութի՞ւն կ'ընես. Որ օրէնքով կը պար-
ծենաս, օրինազանց ըլլալով՝ զԱստուած կ'ա-
24 նարգե՞ս ։ Վասն զի Աստուծոյ անունը ձեր
պատճառաւ հեթանոսներուն մէջ կը հայհոյուի,
ինչպէս գրուած է ։
25 Արդ թլփատութիւնը շահ կ'ունենայ, եթէ
օրէնքը պահես. իսկ եթէ օրէնքին դէմ յան-
ցաւոր ես, քու թլփատութիւնդ անթլփատու-
26 թիւն եղաւ ։ Ուստի եթէ անթլփատութիւնը
օրէնքին իրաւունքները պահէ, չէ՞ որ անոր ան-
թլփատութիւնը թլփատութիւն պիտի սեպուի.
27 Եւ ի բնէ եղած անթլփատութիւնը օրէնքը
կատարելով՝ պիտի դատապարտէ քեզ, որ գի-
րով ու թլփատութիւնով օրէնքին յանցաւոր
28 ես ։ Վասն զի Հրեայ չէ ան որ դրսուանց է,
և թլփատութիւն չէ այն որ դրսուանց մարմի-
29 նով է. Հապա Հրեայ ան է որ ներսուանց է,
և թլփատութիւն՝ սրտինը հոգիով, ու ոչ թէ
գրով, որուն գովութիւնը ոչ թէ մարդոցմէ է,
հապա Աստուծմէ ։

## ԳԼ. Գ

1 Հրէից արտօնութիւնը, 3 զոր բնաւ չկորսնցուցին. 9 բայց օրէնքը կը ցուցնէ թէ անոնք ալ մեղքի տակ են. 20 ուստի բնաւ մարմին մը չարդարանար օրէնքով, 28 այլ ամէն մարդիկ առանց խտրութեան միայն հաւատքով կ'արդարանան. 31 սակայն ասով օրէնքը չխափանուիր ։

1 Ուրեմն Հրեան ի՞նչ աւելի բան ունի, կամ
2 թլփատութենէն ի՞նչ շահ կայ ։ Շատ՝ ամէն
կերպով. ամէնէն առաջ այն՝ որ Աստուծոյ

3 պատգամները անոնց հաւատացուեցան ։ Քանզի
եթէ անոնցմէ ոմանք չհաւատացին , ի՞նչ . միթէ
անոնց անհաւատութիւնը Աստուծոյ հաւա-
4 տարմութիւնը կը խափանէ՞ր . քա՛ւ լիցի ։ Սա-
կայն Աստուած ճշմարիտ թող ըլլայ , և բոլոր
մարդիկ՝ սուտ . ինչպէս գրուած է , Որպէս զի
քու խօսքերուդ մէջ արդար ըլլաս , և դատուե-
5 լու ատենդ դուն յաղթես ։ Ուրեմն եթէ մեր
անիրաւութիւնը Աստուծոյ արդարութիւնը
յայտնի կը ցուցնէ , ի՞նչ ըսենք . միթէ անի-
րա՞ւ է Աստուած որ իր բարկութիւնը մեր վրայ
6 կը բերէ . (Մարդկօրէն կ'ըսեմ .) քա՛ւ լիցի .
ապա թէ ոչ՝ ի՞նչպէս Աստուած պիտի դատէ
7 աշխարհը ։ Վասն զի եթէ Աստուծոյ ճշմար-
տութիւնը իմ ստութիւնովս կ'աւելնայ իր
փառքին համար , ալ ես ինչո՞ւ մեղաւորի մը պէս
8 կը դատուիմ ։ Եւ ինչո՞ւ համար պէտք չէ ըսել , ինչպէս
ոմանք մեր վրայ չարախօսութիւն ընելով՝ կ'ը-
սեն թէ մենք կ'ըսենք , Չարը գործենք որպէս
զի բարին գայ . որոնց դատապարտութիւնը ի-
րաւունքով է ։
9 Ուստի ալ ի՞նչ ըսենք . բանով մը աւելի՞ ենք
հեթանոսներէն . իրաւ որ բանով մըն ալ չենք . վասն զի
առաջ մեղադրեցինք Հրեաները և հեթանոս-
10 ները թէ ամէնը մեղքի տակ են . Ինչպէս
գրուած է թէ Արդար մը չկայ , և ոչ մէկ .
11 Մէկը չկայ որ հասկնայ , մէկը չկայ որ զԱստ-
12 ուած փնտռէ ։ Ամէնը խոտորեցան , մէկտեղ
անպիտան եղան . աղէկութիւն ընող մը չկայ ,
13 մէկ ալ չկայ ։ Անոնց կոկորդը բաց գերեզման է ,
իրենց լեզուովը նենգաւոր եղան , իժերու թոյն
14 կայ անոնց շրթունքներուն տակ . Անոնց բե-
րանը անէծքով ու դառնութիւնով լեցուն է .
15 Անոնց ոտքերը շուտ են արիւն թափելու .
16 Կործանում և թշուառութիւն կայ իրենց

17 ճամբաներուն մէջ. Եւ խաղաղութեան ճամբան
18 չճանչցան։ Աստուծոյ վախը չկայ անոնց աչքե-
19 րուն առջեւ։ Սակայն գիտենք որ օրէնքը ինչ որ
կըսէ, անոնց կըսէ՝ որոնք օրէնքին տակ են.
որպէս զի ամէն բերան գոցուի, եւ բոլոր աշխարհ
20 դատապարտուած ըլլայ Աստուծոյ առջեւ։ Վասն
զի անոր առջեւ մարմին մը պիտի չարդարանայ
օրէնքին գործերովը, քանզի օրէնքով է մեղքը
ճանչնալը։
21 Բայց հիմա առանց օրէնքի Աստուծոյ ար-
դարութիւնը յայտնուած է, օրէնքէն եւ մար-
22 գարէներէն վկայուած ըլլալով. Այսինքն Աս-
տուծոյ արդարութիւնը, որ Յիսուս Քրիստոսի
հաւատքէն է, ամէն հաւատացողներուն ու ա-
նոնց ամէնուն վրայ կըլլայ. քանզի խտրու-
23 թիւն չկայ։ Վասն զի ամէնը մեղք գործեցին,
24 եւ Աստուծոյ փառքէն պակաս են։ Եւ անոր
շնորհքովը ձրի կարդարանան Քրիստոս Յիսու-
25 սով եղած փրկութիւնովը. Զոր առաջուընէ
սահմանեց Աստուած՝ քաւութիւն ըլլալու անոր
արիւնին հաւատքով, Աստուծոյ երկայնմտու-
թեան առեններ առաջուընէ գործուած մեղ-
քերուն թողութիւն տալովը՝ իր արդարու-
26 թիւնը ցուցնելու համար. Այսինքն իր արդա-
րութիւնը այս ժամանակին մէջ ցուցնելու հա-
մար, որպէս զի ինք արդար ըլլայ, եւ արդա-
27 րացնէ Յիսուսի հաւատքէն եղողը։ Ուրեմն ո՞ւր
մնաց պարծենալը. խափանեցաւ. ո՞ր օրէնքէն,
գործերո՞ւ օրէնքէն. ոչ, հապա հաւատքի օրէնքէն։
28 Վասն զի կը սեպենք թէ մարդ հաւատքով
կարդարանայ առանց օրէնքին գործերուն։
29 Միթէ Աստուած միայն Հրեաներո՞ւն է ու
հեթանոսներուն չէ՞. այո, հեթանոսներուն ալ։
30 Որովհետեւ Աստուած մէկ է՝ որ թլփատու-
թիւնը հաւատքէն կարդարացնէ, եւ անթլփա-

31 տութիւնը՝ նոյն հաւատքով։ Ուստի մենք հա-
ւատքով օրէնքը կը խափանե՞նք. քա՛ւ լիցի.
հապա օրէնքը կը հաստատենք։

## ԳԼ. Դ

1 Աբրահամի հաւատքը իրեն արդարութիւն սեպուեցաւ 10 իր թլփատուելէն առաջ։ 13 Միայն հաւատքով ինք ու իր սերունդը խոստմունք առին։ 16 Աբրահամ բոլոր հաւատացեալներուն հայրն է։ 24 Մեր հաւատքն ալ մեզի արդարութիւն պիտի սեպուի։

1 Ուրեմն ի՞նչ պիտի ըսենք թէ գտաւ Աբրահամ
2 մեր նախահայրը մարմնի կողմանէ։ Վասն զի
եթէ Աբրահամ գործով արդարացած ըլլար,
էրա—ջընէ պարծանք կ'ունենար, բայց ոչ թէ Աս-
3 տուծոյ առջև։ Քանզի գիրքը ի՞նչ կ'ըսէ. Աբ-
րահամ Աստուծոյ հաւատաց, և այն իրեն ար-
4 դարութիւն սեպուեցաւ։ Բայց ան որ գործ մը
կ'ընէ, վարձքը շնորհ.քէ եղած չսեպուիր անոր,
5 հապա պարտքէ։ Իսկ ան որ չգործեր, բայց
կը հաւատայ անոր որ ամբարիշտը կ'արդա-
րացնէ, անոր հաւատքը իրեն արդարութիւն
6 կը սեպուի։ Ինչպէս Դաւիթ ալ կը գովէ այն
մարդուն երանութիւնը, որու Աստուած ար-
7 դարութիւն կը սեպէ առանց գործերու։ Երանի՜
անոնց, կ'ըսէ, որոնց անօրէնութիւնները ներուե-
8 ցան, և որոնց մեղքերը ծածկուեցան։ Երանի՜
9 այն մարդուն որու մեղք չսեպեր Տէրը։ Ուստի
այս երանութիւնը թլփատութեա՞ն վրայ է,
թէ անթլփատութեան վրայ ալ. քանզի կ'ը-
սենք թէ Հաւատքը Աբրահամի արդարութիւն
10 սեպուեցաւ։ Ուրեմն ի՞նչպէս սեպուեցաւ.
թլփատութեա՞ն մէջ եղած ատեն, թէ ան-
թլփատութեան մէջ. ոչ թէ թլփատութեան
11 մէջ, հապա անթլփատութեան։ Ու ետքը թլփա-
տութեան նշանը առաւ՝ կնիք անթլփատութեան
ատենէն ունեցած հաւատքին արդարութեանը

*կնիք մը, որպէս զի ինք հայր ըլլայ այն բոլոր հա-
ւատացողներուն որոնք անթլփատութենէ են,
(անոնց ալ արդարութիւն սեպուելու համար,)
12 Եւ հայր թլփատութեան՝ ոչ թէ միայն թլփա-
տութենէ եղողներուն, հապա անոնց ալ՝ որոնք
մեր հօրը Աբրահամի անթլփատութեան ատենի
13 հաւատքին շաւիղներուն մէջ կը քալեն։ Վասն
զի Աբրահամի և անոր սերունդին՝ աշխարհը
ժառանգելու համար տրուած խոստմունքը ոչ թէ
օրէնքով եղաւ, հապա հաւատքին արդարու-
14 թիւնովը։ Քանզի եթէ օրէնքէն եղողները ժա-
ռանգ ըլլային, հաւատքը փուճ պիտի ըլլար, և
15 խոստմունքը պիտի խափանուէր։ Վասն զի օ-
րէնքը բարկութիւն կը գործէ. քանզի ուր օ-
16 րէնք չկայ, օրինազանցութիւն ալ չկայ։ Ասոր
համար ժառանգ ըլլալը հաւատքէն է, որպէս զի
շնորհքով եղած ըլլայ, խոստմունքը հաստա-
տուն ըլլալու համար բոլոր սերունդին, ոչ թէ
միայն անոր որ օրէնքէն է, հապա անոր ալ՝ որ
Աբրահամի հաւատքէն է, որ մեր ամենուն
17 հայրն է, (Ինչպէս գրուած է թէ Քեզ շատ
ազգերու հայր ըրի,) Աստուծոյ առջև, որու
ինք հաւատաց, ան որ մեռելները կ'ողջնցնէ,
և չեղած բաները եղածներու պէս կը կանչէ։
18 Որ չյուսացուելու բանին յուսով հաւատաց՝
թէ ինք շատ ազգերու հայր պիտի ըլլայ, (ինչ-
պէս ըսուեցաւ ալ, թէ Քու սերունդդ այսպէս
19 պիտի ըլլայ.) Եւ ինք հաւատքի մէջ չտկարացած՝
չնայեցաւ իր մարմինին արդէն մեռածի պէս
ըլլալուն, (որովհետև ինք հարիւր տարեկանի
չափ էր,) ոչ ալ Սառայի արգանդին մեռած ըլ-
20 լալուն. Եւ անհաւատութիւնով չտարակու-
սեցաւ Աստուծոյ խոստմունքէն, հապա հա-
ւատքով զօրացած՝ Աստուծոյ փառք տուաւ,
21 Եւ իր մտքին մէջ հաստատ պահեց թէ ան որ*

22 *խօսք տուաւ, կարող է ընելու ալ։ Ասոր համար*
*իրեն արդարութիւն սեպուեցաւ։*
23 *Բայց ոչ թէ միայն անոր համար գրուեցաւ*
24 *որ իրեն սեպուեցաւ. Հապա մեզի համար ալ՝*
*որոնց պիտի սեպուի, որ կը հաւատանք անոր*
25 *որ մեռելներէն յարուց մեր Տէր Յիսուսը, Որ*
*մեր յանցանքներուն համար մատնուեցաւ, և*
*մեզ արդարացնելու համար յարութիւն առաւ։*

## ԳԼ. Ե

*1 Հաւատքով արդարացած՝ խաղաղութիւն ունինք Աստուծոյ հետ, 2 և պարծանք՝ մեր յուսոյն մէջ. 8 վասն զի եթէ Քրիստոսի արիւնովը հաշտուեցանք՝ մեր թշնամի եղած ատենը, 10 ալ աւելի պիտի ապրինք հաշտուած ըլլալով։ 12 Ինչպէս որ մեղքը ու մահը աշխարհ մտան Ադամով, 17 ալ աւելի արդարութիւնը և կեանքը՝ Յիսուս Քրիստոսով։ 20 Ո՛ւր որ մեղքը շատցաւ, հոն շնորհքը աւելի առատացաւ։*

1 *Ուստի մենք հաւատքով արդարացած ըլլալով՝*
*խաղաղութիւն ունինք Աստուծոյ հետ մեր Տէ-*
2 *րոջը Յիսուս Քրիստոսի ձեռքով. Որուն միջոցով*
*ընդունեցինք հաւատքով այս շնորհքին մօտե-*
*նալն ալ, որուն մէջ կեցեր ենք, և Աստուծոյ*
3 *փառքին յուսովը կը պարծինք։ Եւ ոչ միայն*
*այսքան՝ հապա նաև նեղութիւններու մէջ*
*կը պարծինք. վասն զի գիտենք թէ նեղութիւնը*
4 *համբերութիւն կը գործէ, Եւ համբերութիւնը՝*
5 *փորձառութիւն, ու փորձառութիւնը՝ յոյս. Եւ*
*յոյսը ամօթով չձգեր. վասն զի Աստուծոյ սէրը*
*մեր սրտերուն մէջ տարածուած է Հոգւոյն*
6 *Սրբոյ ձեռքով, որ մեզի տրուեցաւ։ Վասն զի*
*երբ մենք դեռ տկար էինք, յարմար ժամա-*
*նակին Քրիստոս ամբարիշտներուն համար մե-*
7 *ռաւ։ Վասն զի արդարի մը համար հազիւ կ'ըլ-*
*լայ որ մէկը մեռնի. (բայց բարի մարդու մը*
*համար՝ կարելի է որ մէկը համարձակի մեռ-*
8 *նիլ.) Սակայն Աստուած իր սէրը ուր մեր վրայ*
*ունէր՝ յայտնեց, որ երբ դեռ մեղաւոր էինք,*
9 *Քրիստոս մեզի համար մեռաւ. ուրեմն հիմա*

որ իր արիւնով արդարացանք, ո՜րչափ աւելի
10 անով պիտի ազատինք բարկութենէն։ Վասն զի
եթէ մեր թշնամի եղած ատենը Աստուծոյ հետ
հաշտուեցանք իր Որդւոյն մահովը, ո՜րչափ ա-
ւելի մեր հաշտուած ատենը պիտի ազատինք անոր
11 կեանքովը։ Եւ ոչ միայն այս, հապա Աստուծմով
կը պարծենանք ալ մեր Տէրոջը Յիսուս Քրիս-
տոսի ձեռքով, որով հիմա հաշտութիւնը ըն-
դունեցինք։
12 Վասն զի ինչպէս մարդէ մը մեղքը աշխարհ
մտաւ, և այն մեղքէն մահը, և այնպէս ամէն
մարդոց վրայ տարածուեցաւ մահը, *քանզի
13 ամէնը մեղանչեցին։ (Վասն զի մինչև օրէնքին
ատենը աշխարհի մէջ մեղք կար. բայց մեղք
14 չսեպուիր՝ ուր օրէնք չկայ։ Սակայն մահը
Ադամէ մինչև Մովսէս թագաւորեց, նաև
Ադամի յանցանքին նման չմեղանչողներուն
վրայ ալ, որ օրինակ էր անոր որ ետքը պիտի
15 գար։ Բայց ոչ թէ ինչպէս յանցանքը՝ այնպէս
շնորհքն է. վասն զի եթէ մէկուն յանցանքովը
շատեր մեռան, ալ ո՜րչափ աւելի Աստուծոյ
շնորհքը և այն պարգեւը որ Յիսուս Քրիստոս
մէկ մարդուն շնորհքովն է, շատերուն վրայ ա-
16 ւելցաւ։ Եւ ոչ թէ այս պարգեւը այնպէս է՝ ինչ-
պէս մէկէն որ մեղանչեց. վասն զի դատաս-
տանը մէկ մեղքէն դատապարտութեան մէջ ձգեց,
բայց շնորհքը շատ մեղքերէ արդարութեան
17 տարաւ։ Վասն զի եթէ մէկ մարդուն մեղքովը
մահը թագաւորեց այն մէկովը, ո՜րչափ աւելի
անոնք որ շնորհքին ու արդարութեան պար-
գեւին առատութիւնը կ'առնեն, կեանքի մէջ
պիտի թագաւորեն մէկ Յիսուս Քրիստոսի
18 ձեռքով։) Ուրեմն ինչպէս մէկուն յանցանքովը
բոլոր մարդոց դատապարտութեան վճիռ եղաւ,

*կամ, որով

այնպէս մէկուն արդարութիւնովը բոլոր մար-
19 դոց կեանքի արդարութեան շնորհք եղաւ. Վասն զի
ինչպէս մէկ մարդուն անհնազանդութիւնովը
շատերը մեղաւոր եղան, այնպէս մէկուն հնա-
զանդութիւնովը շատերը արդար պիտի ըլլան։
20 Սակայն օրէնքը մէջտեղ իյնալ որպէս զի յան-
ցանքը շատնայ. բայց ուր աւելի եղաւ մեղքը,
21 ալ աւելի եղաւ շնորհքը. Որպէս զի ինչպէս
մեղքը թագաւորեց մահուամբ, այնպէս շնորհքը
թագաւորէ արդարութիւնով մինչեւ յաւիտե-
նական կեանքը մեր Տէրոջը Յիսուս Քրիստոսի
ձեռքով։

## ԳԼ. Զ

1 Պէտք չէ մեղքի մէջ մնալ, 2 քանի որ մեռած ենք մեղքին, 3 ինչպէս մկրտութիւնը կը ցուցնէ. 12 ուստի ա՛լ մեղքը թող չթագաւորէ մեր վրայ. 18 վասն զի մենք մեր մարմինները պատրաստեցինք արդարութեան ծառաներ ըլլալու, 23 և վասն զի մեղաց վարձքը մահ է։

1 Ալ հիմա ի՞նչ պիտի ըսենք. մեղքի մէջ մնա՞նք
2 արդեօք, որպէս զի շնորհքը շատնայ։ Քա՛ւ լիցի.
մենք որ մեղքին մեռանք, ի՞նչպէս դեռ անոր
3 մէջ կենանք։ Չէ՞ք գիտեր, թէ մենք որ Յիսուս
Քրիստոսով մկրտուեցանք, անոր մահուանը
4 մկրտուեցանք։ Անոր հետ թաղուեցանք մկրտ-
ութիւնով մահուան համար, որպէս զի ինչպէս
Քրիստոս Հօրը փառքովը յարութիւն առաւ
մեռելներէն, այնպէս մենք կեանքի նորոգու-
5 թեան մէջ պտըտինք։ Վասն զի եթէ մենք
անկակից եղանք անոր մահուանը նմանութիւ-
նովը, նաեւ անոր յարութեանը նմանութեանը ալ
6 կցորդ պիտի ըլլանք։ Զայս գիտնանք որ մեր հին
մարդը անոր հետ խաչուեցաւ, որ մեղքի մար-
մինը փճանայ, որպէս զի ասկէ ետեւ մեղքի չծառ-
7 այենք։ Վասն զի ան որ մեռեր մեռած է, մեղքէ
8 արդարացած է։ Արդ եթէ մենք Քրիստոսի հետ
մեռանք, կը հաւատանք որ անոր հետ պիտի

9 ապրինք ալ ։ Քանզի գիտենք որ Քրիստոս մե-
ռելներէն յարութիւն առած ըլլալով՝ նորէն
չմեռնիր, ալ մահը անոր վրայ իշխանութիւն
10 չունի ։ Վասն զի քանի որ մեռաւ՝ մեղքի մե-
ռաւ մէկ անգամ, և որ կենդանի է՝ Աստուծոյ
11 կենդանի է ։ Այսպէս դուք ձեր անձերը մեղքի
մեռած սեպեցէք, բայց Աստուծոյ կենդանի՝
12 մեր Տէրոջը Քրիստոս Յիսուսի ձեռքով ։ Ուստի
թող մեղքը չթագաւորէ ձեր մահկանացու մարմի-
նին վրայ, որ անոր ցանկութիւններուն հնա-
13 զանդիք ։ Եւ ձեր անդամները անիրաւութեան
գործիք ըլլալու մի ընծայէք մեղքի, հապա ձեր
անձերը Աստուծոյ ընծայեցէք, որպէս թէ մե-
ռելներէն ողջնցած ․ և ձեր անդամները արդա-
14 րութեան գործիքներ՝ Աստուծոյ ։ Քանզի մեղքը
ձեր վրայ պիտի չիշխէ ․ վասն զի օրէնքի տակ
չէք, հապա շնորհքի տակ ։
15 Ուրեմն ի՞նչ ․ մե՞ղք գործենք վասն զի օրէնքի
տակ չենք, հապա շնորհքի տակ ․ քա՛ւ լիցի ։
16 Չէ՞ք գիտեր թէ ուրու որ անձերնիդ ծառայ
կ'ընծայէք հնազանդելու, ծառայ էք անոր՝ ուրու
որ կը հնազանդիք, թէ՛ մեղքի՝ որ մահուան
կը տանի, և թէ՛ հնազանդելու՝ որ արդարութեան ։
17 Բայց գոհութիւն Աստուծոյ, որ թէև դուք մեղքի
ծառայ էիք, սակայն սրտանց հնազանդեցաք
այն վարդապետութեան օրինակին որ ձեզի
18 յանձնուեցաւ ։ Ուստի դուք մեղքէ ազատ ըլ-
19 լալով՝ արդարութեան ծառայ եղաք ․ (Մարդա-
սիրութեան պէս կ'ըսեմ՝ ձեր մարմինին տկա-
րութեանը համար ․) քանզի ինչպէս ձեր ան-
դամները անօրէնութեան համար ընծայեցիք՝
պղծութեան և անօրէնութեան ծառաներ ըլ-
լալու, այնպէս հիմա ձեր անդամները սրբու-
թեան համար ընծայեցէք՝ արդարութեան ծա-
20 ռաներ ըլլալու ։ Վասն զի երբ դուք մեղքի

*ծառաներ էիք, արդարութենէ ազատ էիք։*
21 *Ուրեմն այն ժամանակ ի՞նչ պտուղ ունէիք այն*
*բաներէն՝ որոնցմով հիմա կ՚ամչնաք. վասն զի*
22 *անոնց վերջը մահ է։ Բայց հիմա մեղքէ ա-*
*զատուած և Աստուծոյ ծառաներ եղած՝ ձեր*
*պտուղը ունիք սրբութիւնով, ու վերջը յաւի-*
23 *տենական կեանք։ Քանզի մեղքին վարձքը մահ*
*է, բայց Աստուծոյ ձրի պարգևը յաւիտենա-*
*կան կեանք՝ մեր Տէրոջը Յիսուս Քրիստոսի*
*ձեռքով։*

## ԳԼ. Է

*1 Օրէնքը մարդուն վրայ կ՚իշխէ՝ քանի որ անիկա ողջ է. 4 սակայն մենք մեռանք օրէնքին. 7 այսու ամենայնիւ օրէնքը մեղք չէ, 12 հապա սուրբ, արդար և բարի է։ 16 Պօղոս կը վկայէ այսպէս ըլլալուն, բայց կը ցաւի որ ինք կարող չէ զանիկա պահել։*

1 *Միթէ չէ՞ք գիտեր, եղբայրներ, (քանզի ես*
*օրէնքը գիտցողներուն կը խօսիմ,) որ օրէնքը*
*մարդուս վրայ կ՚իշխէ՝ որչափ ժամանակ որ ողջ*
2 *է։ Վասն զի այր ունեցող կինը իր ողջ էրկանը*
*կապուած է օրէնքով. բայց եթէ այրը մեռնի,*
3 *արձակուած է էրկանը օրէնքէն։ Ուրեմն քանի*
*որ այրը ողջ է, շուն պիտի ըսուի՝ եթէ ուրիշ*
*էրկան մը ըլլայ. բայց եթէ այրը մեռնի, այն*
*օրէնքէն ազատ կ՚ըլլայ, այնպէս որ շնացող չըլ-*
4 *լար՝ եթէ ուրիշ էրկան մը ըլլայ։ Ուստի դուք*
*ալ, իմ եղբայրներս, Քրիստոսի մարմնովը օ-*
*րէնքին մեռաք. որպէս զի ուրիշի մը ըլլաք,*
*անոր՝ որ մեռելներէն յարութիւն առեր է,*
*որպէս զի Աստուծոյ պտուղ բերող ըլլանք։*
5 *Քանզի քանի որ մենք մարմնով էինք՝ մեղքե-*
*րու կիրքերը որոնք օրէնքով կ՚ըլլային, մեր ան-*
*դամներուն մէջ կը ներգործէին, որպէս զի մենք*
6 *մահուան պտուղ բերենք։ Բայց հիմա այն օ-*
*րէնքէն արձակուեցանք. վասն զի մեռանք անոր՝*
*որով բռնուած էինք, որպէս զի մենք ծառայենք*

հոգիին նորոգութիւնովը, և ոչ թէ գրին հնու-
թիւնովը։
7 Ուրեմն ի՞նչ ըսենք. օրէնքը մե՞ղք է. քա՛ւ
լիցի. բայց ես մեղքը չէի ճանչնար, եթէ ոչ՝
օրէնքով. ինչպէս ցանկութիւնն ալ չէի գիտեր,
8 եթէ օրէնքը ըսած չըլլար, Մի ցանկար։ Բայց
մեղքը պատուիրանքէն առիթ առնելով՝ իմ
մէջս բոլոր ցանկութիւնները գործեց. վասն զի
9 առանց օրէնքի մեղքը մեռած է։ Ես ալ ա-
ռանց օրէնքի ատեն մը կենդանի էի. բայց երբ
պատուիրանքը վրայ հասաւ, մեղքը ողջնցաւ,
10 Ու ես մեռայ. ու այն պատուիրանքը որ կեանքի
համար էր, նոյնը ինծի մահուան համար եղաւ։
11 Վասն զի մեղքը պատուիրանքէն առիթ առ-
12 նելով՝ զիս խաբեց, ու անով մեռցուց։ Ուստի
օրէնքը սուրբ է, ու պատուիրանքը սուրբ և
արդար ու բարի։
13 Ուրեմն բարին ինծի մա՞հ եղաւ. քա՛ւ լիցի.
հապա մեղքը, որպէս զի երեւնայ մեղքը որ այն
բարի բանով ինծի մահ գործեց, որպէս զի
մեղքը պատուիրանքով աւելի մեղաւոր ըլլայ։
14 Վասն զի գիտենք որ օրէնքը հոգեւոր է, բայց
ես մարմնաւոր եմ՝ մեղքի տակ ծախուած։
15 Քանզի ինչ որ կ'ընեմ՝ չեմ ճանչնար. ոչ թէ
ինչ որ կ'ուզեմ՝ զայն կ'ընեմ, հապա ինչ որ
16 կ'ատեմ՝ զայն կ'ընեմ։ Բայց եթէ չուզածս
կ'ընեմ, հաւանութիւն կու տամ օրէնքին թէ
17 բարի է։ Իսկ արդ ոչ թէ ես կ'ընեմ զանիկա,
հապա մեղքը՝ որ իմ ներսիդիս կը բնակի։
18 Քանզի գիտեմ որ իմ ներսիդիս, այսինքն իմ
մարմնիս մէջ, բարի բա՛ն մը չբնակիր. վասն զի
կամեցողութիւն կայ քովս, բայց բարին ի գործ
19 դնելը չեմ գտներ։ Քանզի ոչ թէ բարին զոր
կ'ուզեմ, կ'ընեմ, հապա չարը զոր չեմ ուզեր,
20 զայն կ'ընեմ։ Իսկ եթէ չուզած բանս կ'ընեմ,

ալ ոչ թէ ես կ'ընեմ զանիկա, հապա մեղքը՝ որ
21 իմ ներսիդիս բնակած է։ Ուստի ես կը գտնեմ
օրէնք մը, որ երբ բարին ընելը կը կամենամ,
22 չարը իմ քովս է։ Վասն զի ներսի մարդուն
23 նայելով՝ Աստուծոյ օրէնքին կը հաւնիմ. Բայց
ուրիշ օրէնք մը կը տեսնեմ իմ անդամներուս
մէջ, որ իմ մտքիս օրէնքին դէմ կը պատե-
րազմի, և զիս գերի կ'ընէ մեղքի օրէնքին որ
24 իմ անդամներուս մէջ է։ Ի՜նչ խղճալի մարդ
եմ ես. ո՞վ զիս պիտի ազատէ այս մահուան
25 մարմինէն։ Գոհութիւն Աստուծոյ մեր Տէրոջը
Յիսուս Քրիստոսի ձեռքով։ Ուրեմն ես ինքնիս
մտքով Աստուծոյ օրէնքին կը ծառայեմ, ու
մարմնով՝ մեղքի օրէնքին։

## ԳԼ. Ը

Անոնք որ Քրիստոսի մէջ են, և Հոգիին ուզածին պէս կ'ապրին, ազատ են դատապարտութենէ։ 5, 13 Թէ ի՛նչ վնաս կը ծագի մարմինէն, 6, 14 և ի՛նչ շահ՝ Հոգիէն, 17 և ի՛նչ՝ Աստուծոյ որդիք ըլլալէն, 19 որոնց փառաւոր ազատութիւնը՝ որու ամէն արարածները մեծ փափաքով կը սպասեն, 29 յառաջագոյն սահմանուած է Աստուծմէ։ 38 Ո՞վ կրնայ զատել մեզ Քրիստոսի սէրէն։

1 Իսկ արդ դատապարտութիւն չկայ Քրիստոս
Յիսուսով եղողներուն, որոնք մարմնաւոր կեր-
2 պով չեն վարուիր*։ Քանզի Քրիստոս Յիսուսով
կեանքի Հոգիին օրէնքը զիս ազատեց մեղքի
3 և մահուան օրէնքէն։ Վասն զի այն որ անկա-
րելի էր օրէնքին, որովհետև տկար էր մարմ-
նով, Աստուած իր Որդին ղրկեց մեղանչական
մարմինի նմանութեամբ ու մեղքի համար, և
4 դատապարտեց մեղքը այն մարմինին մէջ. Որ-
պէս զի օրէնքին արդարութիւնը կատարուի մեր
մէջ, որ մարմնաւորապէս չենք քալեր, հապա
5 Հոգևորապէս։ Քանզի մարմնաւոր եղողները
մարմինին բաները կը մտածեն, ու Հոգևոր ե-
6 ղողները՝ Հոգիին բաները։ Վասն զի մարմնաւոր

*Ոմանք կ'աւելցնեն, այլ Հոգևոր կերպով

*խորհուրդը մահ է, և հոգևոր խորհուրդը*
7 *կեանք ու խաղաղութիւն։ Քանզի մարմնաւոր*
*խորհուրդը Աստուծոյ դէմ թշնամութիւն է.*
*վասն զի Աստուծոյ օրէնքին չհնազանդիր, մա-*
8 *նաւանդ չկրնար ալ։ Վասն զի մարմինով եղող-*
9 *ները չեն կրնար Աստուծոյ հաճոյ ըլլալ։ Բայց*
*դուք մարմինով չէք՝ հապա հոգիով, եթէ Աս-*
*տուծոյ Հոգին ձեր մէջ բնակած է. իսկ եթէ*
*մէկը Քրիստոսի Հոգին չունի, անիկա անոր չէ։*
10 *Եւ եթէ Քրիստոս ձեր մէջ է, ալ մարմինը մե-*
*ռած է մեղքի համար, ու հոգին կենդանի է*
11 *արդարութեան համար։ Իսկ եթէ Յիսուսը մե-*
*ռելներէն յարուցանողին Հոգին ձեր մէջ բնա-*
*կած է, ալ անիկա որ Քրիստոսը մեռելներէն*
*յարոյց, պիտի կենդանացնէ ձեր մահկանացու*
*մարմինները իր Հոգիովը որ ձեր մէջ կը բնակի։*
12 *Ապա ուրեմն, եղբայրներ, պարտապան ենք,*
*ոչ թէ մարմինին՝ մարմնաւորապէս ապրելու.*
13 *Վասն զի եթէ մարմնաւորապէս ապրելու ըլ-*
*լաք, պիտի մեռնիք. բայց եթէ Հոգիով մար-*
14 *մինին գործերը սպաննէք, պիտի ապրիք։ Վասն*
*զի որոնք որ Աստուծոյ Հոգիովը կ'առաջնոր-*
15 *դուին, անոնք Աստուծոյ որդիներն են։ Քանզի*
*դուք ծառայութեան հոգին չառիք կրկին վախ-*
*նալու, հապա որդեգրութեան հոգին առիք,*
16 *որ անով կը կանչենք Աբբա Հայր։ Նոյն ինքն*
*Հոգին վկայութիւն կու տայ մեր հոգիին հետ,*
17 *թէ մենք Աստուծոյ որդիներն ենք. Եւ եթէ*
*որդիներ, ուրեմն ժառանգներ, Աստուծոյ ժա-*
*ռանգներ ու Քրիստոսի ժառանգակիցներ. որ-*
*պէս զի, եթէ իր չարչարանքներուն կցորդ ըլ-*
*լանք, իր փառքին ալ հաղորդ ըլլանք։*
18 *Վասն զի ես այսպէս կը գատեմ որ այս ժա-*
*մանակին չարչարանքները բան մը չեն գալու*
19 *փառքին քով՝ որ մեզի պիտի յայտնուի։ Քանզի*

ստեղծուածներուն եռանդուն ակնկալութիւնը
Աստուծոյ որդիներուն յայտնուելուն կը սպասէ։
20 Վասն զի ունայնութեան հնազանդեցան ստեղ-
ծուածները, (ոչ թէ իրենց կամքով՝ հապա
21 անոր համար որ հնազանդեցուց,) Այն յուսով,
որ ստեղծուածներն իրենք ալ ապականութեան
ծառայութենէն ազատուելով, Աստուծոյ որ-
դիներուն փառաւոր ազատութեանը հասնին։
22 Քանզի գիտենք որ ամէն ստեղծուածները մինչև
հիմա մէկտեղ կը հառաչեն ու ծնանելու ցաւ
23 կը քաշեն։ Եւ ոչ միայն այսչափ, հապա մենք ալ որ
Հոգիին առաջին պտուղը ունինք, մենք մեզմէ
մեր անձերուն մէջ կը հառաչենք որդեգրու-
թեան, այսինքն մեր մարմինին ազատութեանը,
24 սպասելով։ Վասն զի յուսով փրկուեցանք.
բայց յոյսը որ կը տեսնուի, յոյս չէ. վասն զի
այն բանին զոր կը տեսնէ մէկը, ալ ինչո՞ւ պիտի
25 յուսայ։ Իսկ եթէ չտեսած բաներնուս կը յու-
սանք, ալ համբերութիւնով կը սպասենք անոր։
26 Նոյնպէս Հոգին ալ օգնութեան կը հասնի մեր
տկարութիւններուն. քանզի ինչ բանի համար աղօ-
թելու ենք ըստ արժանւոյն՝ չենք գիտեր. բայց
նոյն Հոգին բարեխօս կ՚ըլլայ մեզի համար ան-
27 բարբառ հառաչանքներով։ Եւ սրտերը Քննողը
գիտէ Հոգիին ինչ խորհիլը, քանզի Աստուծոյ
կամքին համեմատ բարեխօսութիւն կ՚ընէ սուրբե-
րուն համար։
28 Սակայն գիտենք որ ամէն բաները բարիի
գործակից կ՚ըլլան անոնց որ զԱստուած կը սի-
րեն, որոնք անոր նախասահմանութիւնովը կան-
29 չուած են։ Վասն զի զանոնք որ առաջ կը ճանչ-
նար, առաջուընէ ալ սահմանեց իր Որդւոյն
պատկերին կերպարանակից ըլլալու. որպէս զի
անիկա անդրանիկ ըլլայ շատ եղբայրներու մէջ։
30 Եւ զորոնք առաջուընէ սահմանեց, նաև կանչեց

զանոնք. և զորոնք կանչեց, նաև արդարացուց
զանոնք. և զորոնք արդարացուց, նաև փառա-
31 ւորեց զանոնք։ Արդեմն ի՞նչ ըսենք այս բանե-
րուն համար. եթէ Աստուած մեր կողմն է,
32 ո՞վ պիտի ըլլայ մեզի հակառակ։ Ան որ իր
Որդւոյն չխնայեց, հապա մեր ամէնուն համար
մատնեց զանիկա, ալ ի՞նչպէս անոր հետ ամէն
33 բաները մեզի չպարգևեր։ Ո՞վ է որ Աստուծոյ
ընտրածներուն դէմ մեղադիր ըլլայ. Աստուած
34 է որ կ'արդարացնէ։ Ուրեմն ո՞վ է որ կը դատա-
պարտէ. Քրիստոս է որ մեռաւ, մանաւանդ
թէ յարութիւն ալ առաւ, ու Աստուծոյ աջ
կողմն է, որ նաև մեզի համար բարեխօսու-
35 թիւն կ'ընէ։ Ուրեմն ո՞վ պիտի զատէ մեզ Քրիս-
տոսի սէրէն. տառապա՞նքը, կամ նեղութի՞ւնը,
կամ հալածա՞նքը, կամ սո՞վը, կամ մերկու-
36 թի՞ւնը, կամ վտա՞նգը, կամ սո՞ւրը. (Ինչպէս
գրուած է, Ամէն օր քեզի համար կը սպան-
նուինք. մորթուելու ոչխարի պէս կը սեպուինք։)
37 Հապա այս ամէն բաներուն մէջ ա՛լ աւելի
38 յաղթող կ'ըլլանք անով որ մեզ սիրեց։ Վասն
զի ես հաստատ գիտեմ թէ ոչ մահը, և ոչ
կեանքը, ու ոչ հրեշտակները, և ոչ իշխանու-
թիւնները, ու ոչ զօրութիւնները, և ոչ ներկայ
39 բաները, ու ոչ գալու բաները, Եւ ոչ բարձրու-
թիւնը, ու ոչ խորունկութիւնը, և ոչ ուրիշ
արարած մը կրնայ մեզ զատել Աստուծոյ սէրէն՝
որ Քրիստոս Յիսուս մեր Տէրոջմով է։

## ԳԼ. Թ

1 Պօղոս կը յայտնէ իր տրտմութիւնը Հրէից ազգին համար։ 7 Ոչ թէ Աբրահամի բոլոր սերունդը խոստմունքի որդիներ էին։ 18 Աստուած որու որ կ'ուզէ կ'ողորմի։ 21 Բրուտը կրնայ կաւը իր ուզածին պէս գործածել։ 25 Հեթանոսաց կոչումը և Հրէից անարգութիւնը մարգարէները նախաձայնած էին։ 32 Ի՞նչ պատճառաւ այնքան քիչ Հրեաներ ընդունեցին հաւատքով արդարութիւնը։

1 Ստոյգը կ'ըսեմ Քրիստոսով — չեմ ստեր, (իմ
2 խիղճս ալ ինծի կը վկայէ Հոգւով Սրբով,) Որ

մեծ տրտմութիւն է ինծի, ու իմ սրտիս ան-
3 պակաս ցաւ։ Քանզի ես ինքս կը խնդրէի
նզովուած ըլլալ Քրիստոսէ, իմ մարմնի կող-
մանէ եղբայրներուս ու ազգականներուս հա-
4 մար, Որոնք Իսրայելացի են. որոնցն է որդե-
գրութիւնը ու փառքը և ուխտերը ու օրինա-
դրութիւնը և պաշտօնը ու խոստմունքները.
5 Իրենցն են նահապետները, իրենցմէ էլաւ Քրիս-
տոս ալ մարմնի կողմանէ, որ է ամէնուն վրայ
6 Աստուած օրհնեալ յաւիտեանս։ Ամէն։ Բայց
ոչ իբր թէ Աստուծոյ խօսքը գետին ինկած է.
քանզի ոչ թէ ամէն Իսրայէլէ եղողները Իս-
7 րայելացի են. Եւ ոչ թէ Աբրահամի սերունդ
ըլլալնուն համար ամէնը որդիներ են. հապա
8 Իսահակով քեզի սերունդ պիտի կոչուի։ Այսի-
նքն՝ ոչ թէ անոնք որ մարմնին որդիներ են՝
Աստուծոյ որդիներ ալ են, հապա խոստմունքի
9 որդիները սերունդ կը սեպուին։ Վասն զի
խոստմունքին խօսքը այս էր, Թէ Այս ատեն
պիտի գամ, ու Սառա որդի պիտի ունենայ։
10 Եւ ոչ միայն այսքան, հապա Ռեբեկայէ ալ
յայտնի է որ յղացաւ մէկէն, այսինքն մեր Իսա-
11 հակ հօրմէն. Վասն զի տղաքը դեռ չծնած, և
դեռ աղէկ կամ գէշ բան մը չգործած, (որ-
պէս զի Աստուծոյ նախասահմանութիւնը հաս-
12 տատ մնայ ընտրութեանը պէս, Ոչ թէ գործե-
րէն, հապա անկէ որ կանչեց,) իրեն ըսուեցաւ
13 թէ, Մեծը պզտիկին պիտի ծառայէ. ինչպէս
գրուած է թէ Յակոբը սիրեցի, բայց Եսաւը
ատեցի։
14 Ուրեմն ի՞նչ ըսենք. միթէ Աստուծոյ քով
15 անիրաւութի՞ւն կայ. քա՛ւ լիցի։ Վասն զի
Մովսէսի կ՚ըսէ, Որու որ պիտի ողորմիմ՝ կ՚ո-
ղորմիմ, ու որու վրայ որ պիտի գթամ՝ կը գթամ։
16 Ուրեմն ոչ անկէ է որ կը կամի, ու ոչ անկէ՝ որ

17 կը վազէ, հապա Աստուծմէ՝ որ կ'ողորմի։ Քանզի
գիրքը Փարաւոնին կ'ըսէ, Անոր համար քեզ
վերցուցի, որ իմ զօրութիւնս քեզմով ցուցնեմ,
ու բոլոր երկրի մէջ իմ անունս պատմուի։
18 Ուստի որուն որ կ'ուզէ՝ կ'ողորմի, և զոր կ'ուզէ՝
19 կը խստացնէ։ Ուրեմն ինծի պիտի ըսես թէ
Ալ ինչո՞ւ մեղադիր կ'ըլլայ. վասն զի ո՞վ անոր
20 կամքին դէմ դրաւ։ Բայց դուն ո՞վ ես, ով
մարդ, որ Աստուծոյ դէմ պատասխան կու տաս.
միթէ ստեղծուածը իր Ստեղծողին կրնա՞յ ըսել
21 թէ Զիս ինչո՞ւ այդպէս շինեցիր։ Բրուտը իշխա-
նութիւն չունի՞ կաւին վրայ՝ նոյն շաղուածքէն
աման շինելու, մէկը պատուի՝ և միւսը անար-
22 գանքի համար։ Հապա ի՞նչ ըսելիք ունի մէկը, եթէ
Աստուած իր բարկութիւնը ցուցնել՝ ու իր զօ-
րութիւնը յայտնել ուզելով, շատ երկայնմտու-
թեամբ համբերեց կորսուելու պատրաստուած
23 բարկութեան ամաններուն. Եւ կամ որպէս զի
իր փառքին մեծութիւնը յայտնի ընէ ողորմե-
լու ամաններուն վրայ, զորոնք փառքի համար
24 առաջուընէ պատրաստեց. Այսինքն մեզ զո-
րոնք կանչեց, ոչ թէ միայն Հրեաներէն, հապա
25 հեթանոսներէն ալ. Ինչպէս Ովսէէի մէջ ալ
կ'ըսէ, Իմ ժողովուրդս չեղողին իմ ժողովուրդս
26 պիտի կանչեմ, ու սիրելի չեղողին՝ սիրելի։ Եւ
պիտի ըլլայ թէ այն տեղ ուր անոնց ըսուեցաւ
թէ Դուք իմ ժողովուրդս չէք, հոն անոնք
Կենդանի Աստուծոյն որդիները պիտի ըսուին։
27 Եսայի ալ Իսրայէլի համար կ'աղաղակէ, Թէև
Իսրայէլի որդիներուն թիւը ծովու աւազին պէս
28 ըլլայ, միայն մնացորդ մը պիտի ազատի։ Քանզի
Տէրը համառօտ և կարճ բան մը կ'ընէ արդա-
րութեամբ. վասն զի Տէրը կարճ բան մը պիտի
29 ընէ երկրի վրայ։ Եւ ինչպէս Եսայի առաջուընէ
ըսաւ, Եթէ զօրաց Տէրը մեզի սերունդ մը

թողուցած չըլլար, մենք Սոդոմի պէս պիտի
ըլլայինք, ու Գոմորի պիտի նմանէինք ։
30 Ուրեմն ի՞նչ ըսենք. թէ հեթանոսները ո-
րոնք արդարութեան չէին հետեւեր՝ արդարու-
թեան հասան, այն արդարութեան՝ որ հա-
31 ւատքէն է. Բայց Իսրայէլ որ արդարութեան
օրէնքին կը հետեւէր, արդարութեան օրէնքին
32 չհասաւ ։ Ինչո՞ւ համար. վասն զի ոչ թէ հա-
ւատքէն, հապա որպէս թէ օրէնքին գործերէն
ուզէց արդարանալ. վասն զի գայթակղութեան վէմին
33 վրայ գլորեցան. Ինչպէս գրուած է, Ահա Սիոնի
մէջ գայթակղութեան քար մը կը դնեմ ու
գլորելու վէմ մը. և ամէն ով որ անոր հա-
ւատայ, պիտի չամչնայ ։

## ԳԼ. Ժ

5 Սուրբ Գիրքը կը ցուցնէ օրէնքէն եղած արդարութեան և հաւատքէն եղած ար-
դարութեան մէջտեղի տարբերութիւնը. 11 կը հաստատէ թէ ամէնն ալ, Հրեայ
և հեթանոս, երբ հաւատան, պիտի չամչնան, 18 և թէ հեթանոսները պիտի ըն-
դունին Աստուծոյ խօսքը ու հաւատան ։ 19 Իսրայէլ այս բաներուն անտեղեակ չէր ։

1 Եղբայրներ, իմ սրտիս փափաքը ու աղօթքը
առ Աստուած *Իսրայէլի փրկուելուն համար է ։
2 Վասն զի ես կը վկայեմ անոնց համար, թէ Աս-
տուծոյ նախանձաւորութիւնը ունին, բայց ոչ
3 թէ գիտութեամբ ։ Վասն զի անոնք Աստուծոյ
արդարութիւնը չգիտնալով, ու իրենց արդա-
րութիւնը հաստատել ուզելով, Աստուծոյ ար-
4 դարութեանը չհնազանդեցան ։ Քանզի օրէնքին
վախճանը Քրիստոս է ամէն հաւատացեալի ար-
դարութեան համար ։
5 Վասն զի Մովսէս օրէնքէն եղած արդարու-
թիւնը կը ստորագրէ թէ, Զանոնք կատարող
6 մարդը անոնցմով պիտի ապրի ։ Բայց հաւատքէն
եղած արդարութիւնը այսպէս կ'ըսէ, Մի ըսեր
քու սրտիդ մէջ, Ո՞վ պիտի ելլէ երկինք, (այսինքն

*Ոմանք, անոնց

7 Քրիստոսը իջեցնելու.) Կամ թէ Ո՞վ պիտի իջնէ
անդունդը, (այսինքն Քրիստոսը մեռելներէն
8 հանելու։) Հապա ի՞նչ կ'ըսէ. Խօսքը քեզի մօտ
է, քու բերնիդ մէջ և քու սրտիդ մէջ է.
այսինքն հաւատքին խօսքը զոր մենք կը քարո-
9 զենք։ Վասն զի եթէ քու բերնովդ Յիսուսը
Տէր խոստովանիս, ու քու սրտիդ մէջ հաւատաս
թէ Աստուած զանիկա մեռելներէն յարոյց,
10 պիտի փրկուիս. (Վասն զի սրտով կը հաւատայ
մէկը արդարանալու, ու բերնով կը խոստովանի
11 փրկուելու։) Քանզի գիրքը կ'ըսէ, Ամէն ով որ
12 անոր հաւատայ, պիտի չամչնայ։ Վասն զի
խտրութիւն չկայ Հրեային ու Յոյնին մէջտեղ.
վասն զի ամենուն Տէրը նոյնն է, առատ ամե-
13 նուն որոնք իրեն կը կանչեն։ Քանզի ով որ Տէ-
րոջը անունը կանչէ, պիտի փրկուի։
14 Ուրեմն ի՞նչպէս պիտի կանչեն անոր՝ որու
չհաւատացին. կամ ի՞նչպէս պիտի հաւատան
անոր՝ որուն վրայով չլսեցին. կամ ի՞նչպէս
15 պիտի լսեն՝ առանց մէկուն քարոզելուն։ Կամ
ի՞նչպէս պիտի քարոզեն՝ եթէ չղրկուին. ինչ-
պէս գրուած է, Ի՜նչպէս գեղեցիկ են խաղա-
ղութիւն աւետարանողներուն — բարի բանե-
16 րու աւետիս տուողներուն ոտքերը։ Բայց ամէնը
հնազանդ չեղան աւետարանին. քանզի Եսայի
կ'ըսէ, Տէր, ո՞վ հաւատաց մեր [illegible] լուրին։
17 Ուրեմն հաւատքը լսելէն է, ու լսելը Աստու-
18 ծոյ խօսքէն։ Բայց կ'ըսեմ, Միթէ չլսեցի՞ն.
մանաւանդ Բոլոր երկիր ելաւ անոնց հնչիւնը,
ու անոնց խօսքը՝ մինչև աշխարհի ծայրերը։
19 Բայց կ'ըսեմ, Միթէ Իսրայէլ չգիտցա՞ւ. առաջ
Մովսէս կ'ըսէ, Ես ձեզ նախանձի պիտի գրգռեմ
*անպիտան ժողովուրդով մը, ու անմիտ ազգով
20 մը ձեզ պիտի բարկացնեմ։ Բայց Եսայի կը հա-

*Յուն. ոչ

մարձակի ու կ՚ըսէ, Ես անոնց գտնուեցայ՝ ու-
րոնք զիս չէին փնտռեր, յայտնի եղայ անոնց՝
21 որոնք զիս չէին հարցներ։ Սակայն Իսրայէլի
վրայ կ՚ըսէ, Բոլոր օրը իմ ձեռքերս երկնցուցի
անհնազանդ ու հակառակող ժողովուրդի մը։

## ԳԼ. ԺԱ.

1 Առաքեալը կը յայտնէ թէ Աստուած բոլոր Իսրայէլը մերժած չէր, 7 և թէ ոմանք ընտրուած էին, թէեւ ուրիշները խստացած էին։ 16 Անոնց դարձի գալուն յոյս կայ։ 18 կը ցուցնէ թէ հեթանոսները պիտի չկրնան պարծենալ անոնց դէմ. 26 վասն զի անոնց փրկուելուն համար խոստմունք մը եղած է։ 33 Ո՛րչափ անքննելի են Աստուծոյ դատաստանները։

1 Ուրեմն կ՚ըսեմ, Միթէ Աստուած իր ժողո-
վուրդը մերժե՞ց. քա՛ւ լիցի. վասն զի ես ալ
Իսրայելացի եմ, Աբրահամի սերունդէն, Բե-
2 նիամինի ցեղէն։ Չմերժեց Աստուած իր ժո-
ղովուրդը զոր նախ առաջուընէ ճանչցաւ. միթէ
չէ՞ք գիտեր Եղիայի պատմութեանը մէջ գիրքը ի՛նչ
կ՚ըսէ. ի՛նչպէս անիկա Իսրայէլի համար գան-
3 գատ կ՚ընէ Աստուծոյ, ըսելով, Տէր, քու մար-
գարէներդ մեռցուցին ու քու սեղաններդ
փլցուցին, ու միայն ես մնացեր եմ, և իմ անձս
4 կը փնտռեն։ Բայց ի՛նչ կ՚ըսէ անոր՝ աստուա-
ծային պատասխանը. Ինծի թողուցի, ըսէ, եօթը
հազար մարդիկ՝ որոնք Բահաղի ծնրադրութիւն
5 չըրին։ Նոյնպէս ալ այս ատեն շնորհքի ընտ-
6 րութեամբ համեմատ մնացորդ մը կայ, Եւ եթէ
շնորհքով, ուրեմն ա՛լ գործերէն չէ. ապա թէ
ոչ՝ շնորհքը ա՛լ շնորհք չըլլար. *իսկ եթէ գոր-
ծերէն է, ա՛լ շնորհք չէ. ապա թէ ոչ՝ գործը
7 ա՛լ գործ չըլլար։" Ուրեմն ի՛նչ. Իսրայէլ չհա-
սաւ այն բանին զոր կը փնտռէր. բայց ընտ-
րուածները հասան, ու մնացածները կուրցան,
8 (Ինչպէս գրուած է, Աստուած անոնց թմրու-
թեան ոգի տուաւ, աչքեր՝ որոնցմով պիտի
չտեսնեն, ու ականջներ՝ որոնցմով պիտի չլսեն,)

*Ոմանք չունին

9 մինչև այսօր։ Եւ Դաւիթ կ՚ըսէ, Անոնց սե-
ղանը իրենց որոգայթ ու որս և գայթակղու-
10 թիւն ու հատուցում ըլլայ. Անոնց աչքերը
մթնան, որպէս զի չտեսնեն, ու անոնց կռնակը
11 միշտ վար ծռէ։ Ուրեմն կ՚ըսեմ, Միթէ անո՞ր
համար անոնք յանցանք ըրին որ կործանին.
Քաւ լիցի. հապա իրենց յանցանքովը հեթա-
նոսներուն փրկութիւն եղաւ, որպէս զի զիրենք
12 նախանձի գրգռէ։ Ուստի եթէ անոնց յան-
ցանքը աշխարհի մեծութիւն եղաւ, ու անոնց
նուաստութիւնը՝ հեթանոսներուն մեծութիւն,
13 ալ ո՜րչափ աւելի անոնց լրութիւնը։ Բայց ձեզի
կ՚ըսեմ հեթանոսներուդ, Որովհետև հեթա-
նոսներուն առաքեալ եմ, իմ պաշտօնս կը մե-
14 ծարեմ. Որպէս զի թերևս իմ մարմինս եղող-
ները նախանձի գրգռեմ, ու անոնցմէ մէկ քա-
15 նիները ապրեցնեմ։ Վասն զի եթէ անոնց մեր-
ժուիլը աշխարհի հաշտութիւն է, հապա անոնց
ընդունուիլը ի՞նչ պիտի ըլլայ, բայց եթէ՝ մե-
16 ռելներէն կենդանի ըլլալ։ Արդ եթէ երա-
խայրին սուրբ է, նաև զանգուածը. և եթէ
17 արմատը սուրբ է, ուրեմն ճիւղերն ալ։ Եթէ այն
ճիւղերէն մէկ քանիները կտրեցան, ու դուն
որ վայրենի ձիթենի էիր՝ անոնց մէջ պատուա-
տուեցար, ու ձիթենիին արմատին և պարար-
18 տութեանը հաղորդ եղար, ճիւղերուն դէմ
մի պարծենար. իսկ եթէ պարծենաս, ոչ թէ
դուն արմատը վեր բռներ ես, հապա արմատը
19 քեզ։ Ուրեմն պիտի ըսես, Ճիւղերը կտրեցան
20 որպէս զի ես պատուաստուիմ։ Աղէկ, անոնք
անհաւատութիւնով կտրեցան, ու դուն հա-
ւատքով հաստատուեցար. մի հպարտանար,
21 հապա վախցիր. Վասն զի եթէ Աստուած բնա-
կան ճիւղերուն չխնայեց, դուցէ քեզի ալ
22 չխնայէ։ Ուստի տես Աստուծոյ քաղցրութիւնը

ու խստութիւնը. կործանուածներուն վրայ
խստութիւնը, և քու վրադ քաղցրութիւնը,
եթէ այն քաղցրութեանը մէջ կենաս. ապա
23 թէ ոչ՝ դուն ալ պիտի կտրուիս։ Եւ անոնք ալ
եթէ իրենց անհաւատութեանը մէջ չկենան,
պիտի պատուաստուին, վասն զի կարող է Աստ-
24 ուած զանոնք նորէն պատուաստել։ Քանզի
եթէ դուն ճիւղ բնական եղող վայրենի ձիթե-
նիէն կտրուեցար, ու այն բարի ձիթենիին վրայ,
որ ճիւղ բնական չէր, պատուաստուեցար, ալ
ո՛րչափ աւելի անոնք որ բնական ճիւղեր են, պիտի
25 պատուաստուին իրենց ձիթենիին վրայ։ Վասն
զի չեմ ուզեր, եղբայրներ, որ չգիտնաք այս
խորհուրդը, (որպէս զի ինքզինքնիդ իմաստուն
չսեպէք,) որ ըստ մասին կուրութիւն եղաւ
Իսրայէլի, մինչեւ հեթանոսներուն լրութիւնը
26 մտնէ. Եւ այսպէս բոլոր Իսրայէլ պիտի փրկուի.
ինչպէս գրուած է, Սիօնէ պիտի գայ Փրկիչը,
ու Յակոբէ ամբարշտութիւնները մէկդի պիտի
27 դարձնէ. Եւ այս է իմ ուխտս անոնց, երբ ա-
28 նոնց մեղքերը վերցնեմ։ Աւետարանին նայե-
լով՝ անոնք թշնամի են ձեր սիրոյն համար.
բայց ընտրութեանը նայելով՝ սիրելի են իրենց
29 հայրերուն սիրոյն համար։ Վասն զի Աստուծոյ
պարգեւները ու կոչումը առանց զղջանալու են։
30 Վասն զի ինչպէս դուք ալ ատեն մը Աստուծոյ
չէիք հաւատար, ու հիմա ողորմութիւն գտաք
31 *անոնց անհաւատութիւնովը, Նոյնպէս անոնք
ալ հիմա անհաւատ եղան, որպէս զի ձեր ո-
ղորմութիւն գտնելովը՝ անոնք" ալ ողորմութիւն
32 գտնեն։ Վասն զի Աստուած ամէնն ալ անհա-
ւատութեան մէջ արգիլեց, որպէս զի ամէնուն
ողորմի։

---

*Կամ, անոնց անհաւատութեան ատեն, Նոյնպէս անոնք ալ հիմա անհաւատ եղան ձեր ողորմութիւն գտած ատենը՝ որպէս զի անոնք

33 Ո՜վ Աստուծոյ մեծութեան ու իմաստու-
թեան և գիտութեան խորունկութիւնը. ինչ-
պէս անքննելի են իր դատաստանները, ու ան-
34 զննելի են իր ճամբաները։ Վասն զի ո՞վ գիտցաւ
Տէրոջը միտքը, կամ ո՞վ անոր խորհրդակից
35 եղաւ. Կամ ո՞վ առաջուընէ անոր բան մը տուաւ,
36 որ փոխարէնը իրեն տրուի։ Վասն զի ամէն
բաները անկէ ու անով և անոր համար են.
իրեն փառք յաւիտեանս։ Ամէն։

## ԳԼ. ԺԲ

1 Պէտք է որ մենք Աստուծոյ ողորմութիւններէն շարժուած՝ ջանանք Աստուծոյ հաճոյ ըլլալ։ 3 Պէտք չէ որ մէկը իր վրայ բարձր գաղափար ունենայ, 6 հապա ամէն մարդ պարտի կատարել ան պաշտօնը, որու կանչուած է։ 9 Հրամայուած է մեզի սէր ունենալ՝ և ուրիշ շատ պարտականութիւններ կատարել։ 19 Վրէժխնդրութիւնը յատկապէս արգիլուած է։

1 Արդ կ՚աղաչեմ ձեզի, եղբայրներ, Աստուծոյ
ողորմութիւնովը, որ ձեր մարմինները ընծայէք
կենդանի զոհ մը՝ սուրբ, Աստուծոյ հաճելի,
2 որ է ձեր բանաւոր պաշտօնը։ Եւ մի կերպա-
րանիք այս աշխարհին կերպարանքովը, հապա
ձեր մտքին նորոգութիւնովը նորոգուեցէք, որ-
պէս զի քննէք թէ ինչ է Աստուծոյ կամքը,
3 որ բարի ու հաճելի և կատարեալ է։ Քանզի
ինծի տրուած *շնորհքովը կ՚ըսեմ ձեր մէջ
եղող ամէն մէկուն, որ արժան եղածը մտածե-
լէն աւելի բան չմտածէ, հապա զգաստ կենալ
մտածէ, ինչպէս Աստուած ամէն մէկուն բաժնեց
4 հաւատքին չափը։ Վասն զի ինչպէս մէկ մարմնի
մէջ շատ անդամներ ունինք, ու այն ամէն ան-
5 դամները միևնոյն գործը չունին. Նոյնպէս մենք
շատուորներս մէկ մարմին ենք Քրիստոսով. և
6 ամէն մէկերնիս իրարու անդամներ ենք։ Ուստի
մենք զանազան պարգևներ ունենալով այն
շնորհքին համեմատ որ մեզի տրուած է, եթէ

*Ոմանք, Աստուծոյ շնորհքով

մարգարէութիւն՝ հաւատքին չափովը գործածենք.
7 Եթէ սպասաւորութիւն՝ սպասաւորութեան
մէջ ըլլանք. եթէ ան որ կը սորվեցնէ՝ սոր-
8 վեցնելու ետեւէ ըլլայ. Եթէ ան որ կը յորդորէ՝
յորդորելու ետեւէ, ան որ կը բաշխէ՝ պարզ-
մտութեամբ թող ընէ, ան որ վերակացու է՝ ջան-
9 քով, ան որ կ'ողորմի՝ յօժարութեամբ. Սէրը
առանց կեղծաւորութեան ըլլայ, չարէն զզուե-
10 լով, բարիին յարելով. Եղբայրսիրութեան մէջ
իրարու վրայ գորովալից եղէք. պատուելու մէջ
11 իրարմէ անցէք. Ջանքի մէջ թուլամիտ չըլլաք.
հոգւով բորբոքեցէք. Տէրոջը ծառայեցէք.
12 Յուսով ուրախ եղէք. նեղութեան մէջ համբե-
13 րեցէք. սաէպ աղօթքի կեցէք. Սուրբերուն
պէտքերուն հաղորդ եղէք. հիւրասիրութեան
14 ետեւէ եղէք. Ձեզ հալածողները օրհնեցէք,
15 օրհնեցէք ու մի անիծէք. Խնդացողներուն հետ
16 խնդացէք, և լացողներուն հետ լացէք. Իրա-
րու վրայ միեւնոյն խորհուրդը ունեցէք. ամբար-
տաւանութիւն մի ընէք, հապա խոնարհներուն
հետ խոնարհեցէք. Ինքզինքնիդ իմաստունի
17 տեղ մի դնէք. Չարութեան փոխարէն մէկո՛ւն
չարութիւն մի հատուցանէք. ամէն մարդոց
18 առջև բարի բաներ ընելու հոգ տարէք: Որչափ
կարելի է ձեզի՝ ամէն մարդոց հետ խաղաղու-
19 թիւն ունեցէք: Սիրելիներ, վրէժխնդրութիւն
մի ընէք ձեր անձերուն համար, հապա բար-
կութեան տեղ տուէք. վասն զի գրուած է,
Վրէժխնդրութիւնը իմս է, ես պիտի հատու-
20 ցանեմ, կ'ըսէ Տէրը: Ուստի եթէ քու թշնա-
միդ անօթեցեր է՝ հաց տուր անոր, և եթէ
ծարաւ է՝ ջուր տուր անոր. քանզի զայս ընե-
լով՝ անոր գլխուն վրայ կրակի կայծեր պիտի
21 դիզես: Չարէն մի յաղթուիր, հապա բարիով
յաղթէ չարին:

## ԳԼ. ԺԳ

1 Պարտիմք հնազանդ ըլլալ իշխանաւորներուն, և անոնց վերաբերեալ մեր ամէն պարտականութիւնները կատարել։ 8 Օրէնքին լրումը սէր է։ 11 Ջեղխութիւն, զինովութիւն և խաւարին գործերը անվայել են քրիստոնեաներուն։

1 Ամէն մարդ իր վրայ եղած իշխանութիւններուն
թող հնազանդի. վասն զի չկայ իշխանութիւն մը
որ Աստուծմէ չըլլայ. և *անոնք որ կան՝ Աս-
2 տուծմէ կարգուած են։ Ուրեմն ով որ իշխա-
նութեան դէմ կը կենայ, Աստուծոյ հրամա-
նին դէմ կը կենայ. և անոնք որ դէմ կը կե-
նան, անձերնուն դատապարտութիւն կ՚ընդու-
3 նին։ Վասն զի իշխանները բարի գործերու
վախ տալու չեն, հապա չարերու. կ՚ուզե՞ս չվախ-
նալ իշխանութենէն. բարի գործէ, ու անկէ
4 գովութիւն պիտի ընդունիս. Վասն զի անիկա
Աստուծոյ սպասաւորն է քեզի բարիի համար.
բայց եթէ դուն չար կը գործես՝ վախցիր.
վասն զի դատարկ տեղ մէջքը թուր չէ կապեր,
քանզի Աստուծոյ սպասաւորն է, ու վրէժխնդիր՝
բարկութիւն հասցնելու անոր վրայ որ չար կը
5 գործէ։ Ասոր համար պէտք է հնազանդ ըլլալ,
ոչ թէ միայն բարկութեանը համար, հապա
6 խղճմտանքի համար ալ։ Այս պատճառաւ է որ
տուրք ալ կու տաք. վասն զի Աստուծոյ սպա-
սաւորներն են այն նոյն բանին հոգ տանելու։
7 Ուստի հատուցէք պէտք եղածը ամէնուն. որու
որ տուրք պարտելու է՝ տուրքը, որու որ մաքս՝
մաքսը, որու որ վախ՝ վախնալը, որու որ պատիւ՝
պատիւը։
8 Բնաւ մէկուն պարտական մի գտնուիք, միայն
թէ մէկզմէկ սիրելու. վասն զի ով որ ընկերը
9 կը սիրէ՝ օրէնքը կը կատարէ. Վասն զի այն
Մի՛ շնար, Մի՛ սպաններ, Մի՛ գողնար,

*Ոմանք, այն իշխանութիւնները

Սուտ վկայութիւն մի ըներ, Մի ցանկար, և
ուրիշ ինչ պատուէր որ կայ՝ բոլորը այս խօսքին
մէջ կը բովանդակուի, թէ Քու ընկերդ սիրես
10 քու անձիդ պէս ։ Սէրը ընկերին գէշութիւն
չըներ . ուրեմն օրէնքին լրումը սէր է ։
11 Եւ այսպէս ըրէք, գիտնալով այս ատենը, որ
որ հիմա ժամանակ է մեզի քունէ արթննալու .
վասն զի հիմա մօտ է մեզի փրկութիւնը՝ քան
12 թէ այն ատեն որ հաւատացինք ։ Գիշերը շատ
անցած է ու ցորեկը մօտեցած . ուստի մէկդի
ընենք խաւարին գործերը, ու մեր վրայ հագնինք
13 լուսոյ զէնքերը ։ Որպէս թէ ցորեկ ատեն՝ պար-
կեշտութեամբ պտըտինք, ոչ թէ անառակու-
թիւններով ու գինովութիւններով, և ոչ թէ
խառնակ անկողիններով ու պղծութիւններով, և
ոչ թէ հակառակութիւնով ու նախանձով .
14 Հապա ձեր վրայ հագէք Տէր Յիսուս Քրիստոսը, ու
մարմնի խնամք մի տանիք ցանկութիւններու
համար ։

## ԳԼ. ԺԴ

1 Պէտք չէ որ մարդիկ անտարբեր բաներու համար մէկզմէկ անարգեն և մէկզմէկ դատեն . 13 հապա զգուշանան որ անոնցմով գայթակղութիւն չտան իրենց եղբայրներուն ։ 15 Առաքեալը շատ պատճառներով կը ցուցնէ այս վարմունքին անվայել ըլլալը ։

1 Հաւատքի մէջ տկար եղողը ընդունեցէք՝ ոչ
2 թէ *տարակուսական որոշմունքներով ։ Մէկը
կը հաւատայ որ ամէն բան կրնայ ուտել, և ան
3 որ տկար է՝ կանանչեղէն կ'ուտէ ։ Ան որ կ'ուտէ՝
չուտողը թող չանարգէ, ու ան որ չուտեր՝ ու-
տողը թող չդատէ, վասն զի Աստուած զանիկա
4 ընդուներ է ։ Դուն ո՞վ ես որ ուրիշին ծառան
կը դատես . իր Տէրոջը կը կանգնի կամ կ'իյնայ .
բայց պիտի կանգնի, վասն զի †Աստուած կա-
5 րող է զանիկա կանգնեցնել ։ Մէկը մէկ օրը

*Յուն. կարծեաց

†Օրին., Տէրը

ուրիշ օրէ աւելի կը սեպէ, մէկն ալ ամէն օրը
մէկ կը սեպէ. Թող ամէն մարդ իր միտքը հա-
6 ճեցնէ։ Ան որ կը հոգայ օրը, Տէրոջը կը հոգայ,
և ան որ չհոգար օրը, Տէրոջը չհոգար. ու ան
որ կ'ուտէ, Տէրոջը կ'ուտէ, քանզի Աստուծմէ
կը գոհանայ. և ան որ չուտեր, Տէրոջը չուտեր,
7 ու Աստուծմէ կը գոհանայ։ Վասն զի մեզմէ
մէկը իր անձին համար չապրիր, ու մէկը իր
8 անձին համար չմեռնիր։ Քանզի եթէ ապրինք,
Տէրոջը համար կ'ապրինք, և եթէ մեռնինք,
Տէրոջը համար կը մեռնինք. ուրեմն թէ՛ ապ-
9 րինք և թէ՛ մեռնինք, մենք Տէրոջն ենք։ Վասն
զի Քրիստոս ալ անոր համար մեռաւ *ու ապ-
րեցաւ, որ ու — Հաւասարապէս մեռելներուն ու կենդանի-
10 ներուն իշխէ։ Իսկ դուն ինչո՞ւ քու եղբայրդ
կը դատես, կամ դուն ինչո՞ւ քու եղբայրդ կ'ա-
նարգես. վասն զի ամէնս ալ Քրիստոսի ատեա-
11 նին առջև պիտի կայնինք։ Վասն զի գրուած է,
Ես կենդանի եմ, կ'ըսէ Տէրը, որ ամէն ծունկ
ինծի պիտի ծալի, և ամէն լեզու Աստուծոյ
12 պիտի խոստովանի։ Ուրեմն մեզմէ ամէն մէկը
Աստուծոյ հաշիւ պիտի տայ իր անձին համար։
13 Ուստի ալ զիրար չդատենք, հապա աւելի այս
որոշումը ըրէք միտքերնուդ մէջ՝ խոչ կամ
14 գայթակղութիւն չդնել եղբօրը։ Զայս գիտեմ
ու հաստատուած եմ Տէր Յիսուսով, որ բա՛ն մը
ինքնիրմէ պիղծ չէ, բայց ան որ պիղծ կը սեպէ
15 բան մը, անոր պիղծ է այն։ Իսկ եթէ կերա-
կուրի համար քու եղբայրդ տրտմի, ալ դուն
սիրով չվարուիր. քու կերակուրովդ մի կոր-
սնցըներ զանիկա՝ որուն համար Քրիստոս մե-
16 ռաւ։ Արդ չըլլայ որ ձեր բարիքին համար չար
17 խօսին։ Վասն զի Աստուծոյ արքայութիւնը կե-
րակուր ու խմելիք չէ, հապա արդարութիւն և

*Ոմանք, ու յարութիւն առաւ, և նորէն

արդարութիւն ու խնդութիւն Հոգւով Սրբով։
18 Քանզի եթէ մէկը այս բաներով Քրիստոսի
կը ծառայէ, անիկա Աստուծոյ հաճելի է՝ ու
19 մարդոց գովելի։ Ասոր ուրեմն խաղաղութեան
20 և իրարու շինութեան ետևէ ըլլանք։ Չըլլայ
որ կերակուրի պատճառաւ Աստուծոյ գործը
քակես. ամէն բան մաքուր է. միայն թէ այն
մարդուն է գէշ, որ ուտելէ գայթակղութիւն
21 տալով կ'ուտէ։ Աղէկ է միս չուտել և գինի
չխմել, ոչ ալ բան մը ընել՝ որով քու եղբայրդ
կը գլորի կամ կը գայթակղի կամ կը տկարանայ։
22 Դուն հաւատք ունի՞ս. զանիկա քեզի պահէ
Աստուծոյ առջև. երանի՜ անոր որ իր անձը
չդատապարտեր անով, զոր *կ'ընդունի։
23 Բայց ան որ խիղճ կ'ընէ, եթէ ուտէ՝ կը դա-
տապարտուի, վասն զի ոչ թէ հաւատքով կ'ուտէ,
քանզի ինչ բան որ հաւատքով չէ՝ մեղք է։

## ԳԼ. ԺԵ

1 Հաւատքի մէջ զօրաւորները պէտք է որ տկարներուն համբերեն։ 2 Մենք մեր անձին հաճոյ ըլլալու չենք, 3 վասն զի Քրիստոս ալ իր անձին հաճոյ չեղաւ. 7 հապա մէկզմէկ ընդունելու ենք, ինչպէս որ Քրիստոս ալ մեզ ամէնս ընդունեց, 8 թէ՛ Հրեաները 9 և թէ՛ հեթանոսները։ 15 Պօղոս իր գրած թուղթին պատճառը կը ցուցնէ, 28 կը յուսայ զանոնք տեսնել, 30 և անոնց աղօթքը կը խնդրէ։

1 Պէտք է մեզի որ կարող ենք՝ տկարներուն
տկարութիւնը վերցնել, և ոչ թէ միայն մեր անձին
2 հաճոյ ըլլալ. հապա մեզմէ ամէն մէկը շինու-
թեան համար իր ընկերին հաճոյ ըլլայ բարի
3 բաներու մէջ։ Քանզի Քրիստոս ալ ոչ թէ իր
անձին հաճոյ եղաւ, հապա ինչպէս գրուած է,
Քեզ նախատողներուն նախատինքները իմ վրաս
4 ինկան։ Վասն զի ինչ որ առաջուընէ գրուեցաւ,
մեր սորվելուն համար գրուեցաւ, որպէս զի
համբերութիւնով ու Գիրքերուն մխիթարու-
5 թիւնովը յոյս ունենանք։ Եւ համբերութեան

*կամ, կը փորձէ

ու մխիթարութեան Աստուածը տայ ձեզի ի-
րարու հետ մի և նոյն խորհուրդը ունենալ Քրիս-
6 տոս Յիսուսի ուղղութեան պէս. Որպէս զի մէկ սրտով
ու մէկ բերնով փառաւորէք զԱստուած ու մեր
7 Տէրոջը Յիսուս Քրիստոսի Հայրը։ Ասոր համար
մէկզմէկ ընդունեցէք, վասն զի Քրիստոս ալ
*մեզ ընդունեց Աստուծոյ փառքին համար։
8 Բայց կ'ըսեմ թէ Յիսուս Քրիստոսի թլփա-
տութեան պաշտօնեայ ըլլալը Աստուծոյ ճշմար-
տութեանը համար էր, որպէս զի նախահայրե-
9 րուն տրուած խոստմունքները հաստատէ. Սակայն
հեթանոսները ողորմութեան համար զԱստ-
ուած փառաւորեն. ինչպէս գրուած է, Ասոր
համար ազգերուն մէջ քեզ պիտի գովեմ, և
10 քու անուանդ սաղմոս պիտի երգեմ։ Եւ
դարձեալ կ'ըսէ թէ, Ով ազգեր, անոր ժողո-
11 վուրդին ուրախակից եղէք։ Եւ դարձեալ թէ,
Օրհնեցէք Տէրը, ով բոլոր ազգեր, ու գովեցէք
12 զանիկա, ով բոլոր ժողովուրդներ։ Եւ դարձեալ
Եսայի կ'ըսէ, Յեսսէի մէկ արմատը պիտի ըլլայ,
ու ան որ ազգերուն իշխան պիտի կայնի, ազ-
13 գերը անոր պիտի յուսան։ Արդ յուսոյ Աստ-
ուածը ձեզ լեցնէ բոլոր ուրախութիւնով ու
խաղաղութիւնով հաւատալու մէջ, որպէս զի
առատանաք յուսով Հոգւոյն Սրբոյ զօրու-
թիւնովը։
14 Ես ինքնս ալ հաստատուած եմ ձեզի համար,
իմ եղբայրներս, որ դուք լեցուն էք բարու-
թիւնով, լեցուած էք ամէն գիտութիւնով, և
15 կրնաք մէկզմէկ խրատել։ Սակայն մէկ կողմանէ
համարձակաբար գրեցի ձեզի, իմ եղբայրներս,
որպէս թէ միտքերնիդ ձգելով այս բաները այն
շնորհքին պատճառաւ որ Աստուծմէ ինծի
16 տրուած է, Որպէս զի ես Յիսուս Քրիստոսի

*Ոմանք, ձեզ

սպասաւորը ըլլամ հեթանոսներուն մէջ, և
Աստուծոյ աւետարանը մատակարարեմ, որ-
պէս զի հեթանոսներուն ընծայուիլը ընդունելի
17 ըլլայ՝ Սուրբ Հոգիով սրբուելով։ Ուստի Ա-
տուծոյ քով պարծանք ունիմ Քրիստոս Յի-
18 սուսով։ Վասն զի չեմ համարձակիր խօսիլ
այն բաներէն մէկը, զոր Քրիստոս իմ ձեռքովս
գործած չէ հեթանոսները հնազանդեցնելու
19 համար՝ խօսքով ու գործով, Նշաններու ու
հրաշքներու զօրութիւնով, *Աստուծոյ Հոգւոյն
զօրութիւնովը. այնպէս որ ես Երուսաղէմէ-
սկսած՝ և շրջան ընելով մինչև Իլիւրիկեցւոց կող-
20 մերը Քրիստոսի աւետարանը լեցուցի։ Այնպէս
ջանացի աւետարանը քարոզել, ոչ թէ ուր որ
Քրիստոսի անունը յիշուած էր, որ չըլլայ թէ
ուրիշի մը դրած հիմին վրայ շինեմ. հապա ինչ-
21 պէս գրուած է թէ, Որոնց չպատմուեցաւ անոր
վրայով՝ պիտի տեսնեն, ու որոնք չլսեցին՝ պիտի
22 իմանան։ Անոր համար ալ շատ արգիլուեցայ
23 ձեզի գալէ։ Բայց հիմա որ այս կողմերը ալ
ինծի տեղ չկայ, ու շատ տարիներէ ի վեր խիստ
24 կը փափաքիմ ձեզի գալ, Երբ դէպ ի Սպանիա
երթամ, †կը յուսամ որ անցնելու ատեն ձեզ
տեսնեմ, ու ձեզմէ յուղարկուիմ հոն երթալու,
25 եթէ առաջ քիչ մը ձեզմով լեցուիմ։ Բայց
հիմա Երուսաղէմ կ'երթամ սուրբերուն սպա-
26 սաւորելու։ Վասն զի Մակեդոնիայիք և Աքայե-
ցիք յօժարեցան որ Երուսաղէմի մէջ եղած
աղքատ սուրբերուն քիչ մը հաղորդութիւն
27 ընեն։ Յօժարեցան, քանզի անոնց պարտական ալ
են. վասն զի եթէ անոնց հոգևոր բաներուն
հաղորդ եղան հեթանոսները, կը պարտաւորին
որ հաղորդութիւն ընեն անոնց՝ մարմնաւոր բա-
28 ներու մէջ ալ։ Ուրեմն ասիկա կատարելով, ու

*Ոմանք, Սուրբ

†Ոմանք, ձեզի պիտի գամ. վասն զի կը յուսամ

կնքելով անոնց այս պտուղը, ձեզմէ Սպանիա
29 պիտի անցնիմ։ Եւ գիտեմ որ իմ ձեզի
գալս ատենը՝ Քրիստոսի *աւետարանին լեցուն
օրհնութիւնովը պիտի գամ։
30 Ձեզի կ՚աղաչեմ, եղբայրներ, մեր Տէր Յիսուս
Քրիստոսով ու Հոգւոյն սիրովը, որ ինծի հետ
պատերազմակից ըլլաք ձեր աղօթքներուն մէջ
31 առ Աստուած ինծի համար, Որպէս զի Հրէաս-
տանի մէջ հաւատքի չհնազանդողներէն ա-
զատուիմ, ու իմ Երուսաղէմ ընելու սպասաւո-
32 րութիւնս սուրբերուն ընդունելի ըլլայ, Որ-
պէս զի Աստուծոյ կամքովը ուրախութեամբ
ձեզի գալով ձեզի հետ հանգչիմ։ Եւ խաղա-
ղութեան Աստուածը ձեր ամենուդ հետ ըլլայ։
Ամէն։

## ԳԼ. ԺԶ

1 Պօղոս կը խնդրէ եղբայրներէն՝ շատերուն բարև տալ, 17 և կը խրատէ զանոնք զգուշ ըլլալ հերձուածողներէն ու գայթակղութիւն տուողներէն. 21 զանազան բարևներէ ետև կը վերջացնէ իր թուղթը՝ փառք և գոհութիւն տալով Աստուծոյ։

1 Ձեզի կը յանձնեմ մեր Փիբէ քոյրը, որ Կենք-
2 րայի եկեղեցւոյն սպասաւորն է. Որպէս զի
զանիկա ընդունիք Տէրոջմով՝ ինչպէս սուրբե-
րուն արժան է. և անոր խնամք տանիք ինչ
բանի մէջ որ ձեր օգնութեանը կարօտի. քանզի
ինք ալ շատերու խնամք տարաւ, ու ինծի ալ։
3 Բարև ըրէք Պրիսկէի ու Ակիւղասի՝ Քրիստոս
4 Յիսուսով իմ գործակիցներուս. (Որոնք իմ
կեանքիս համար իրենց պարանոցները տուին.
որոնցմէ ոչ թէ միայն ես շնորհակալ կ՚ըլլամ,
հապա հեթանոսներուն բոլոր եկեղեցիներն ալ.)
5 Եւ անոնց տանը մէջի եկեղեցիին ալ։ Բարև
ըրէք Եպենետոս իմ սիրելիիս, որ †Աքայիայէ
6 առաջին պտուղ մըն է Քրիստոսի։ Բարև ըրէք

*Ոմանք չունին.

†Կամ, Ասիայէ

Մարիամի, որ մեր վրայ շատ աշխատեցաւ։
7 Բարեւ ըրէք Անդրոնիկոսի ու Յունիայի, իմ
ազգականներուս եւ գերութեան ընկերներուս,
որոնք առաքեալներուն մէջ երեւելիներ են, ու-
8 րոնք ինծմէ առաջ Քրիստոսի եղան։ Բարեւ
9 ըրէք Ամպղիա իմ սիրելիիս Տէրոջմով։ Բարեւ
ըրէք Ուրբանոս մեր գործակցին Քրիստոսով,
10 ու Ստաքէս իմ սիրելիիս։ Բարեւ ըրէք Ապե-
11 ղէսի որ ընտրեալ է Քրիստոսով։ Բարեւ ըրէք
անոնց որոնք Արիստաբուղոսի տունէն են։
Բարեւ ըրէք Հերովդիոնի իմ ազգականիս։ Բարեւ
ըրէք անոնց որոնք Նարկիսոսի տունէն են, Տէ-
12 րոջմով։ Բարեւ ըրէք Տրիփինէի ու Տրիփոսէի,
Տէրոջմով աշխատողներուն։ Բարեւ ըրէք Պեր-
սիդէ սիրելիին, որ շատ աշխատեցաւ Տէրոջմով։
13 Բարեւ ըրէք Ռուփոսի, Տէրոջմով ընտրուածին,
14 ու անոր մօրը եւ իմին։ Բարեւ ըրէք Ասինկրի-
տոսի, Փլեգոնի, Երմասի, Պատրոբասի, Երմէսի
15 ու անոնց հետ եղող եղբայրներուն։ Բարեւ ըրէք
Փիղողոգոսի ու Յուլիայի, Ներէոսի ու անոր
քրոջը, եւ Ողիմպասի ու անոնց հետ եղող բո-
16 լոր սուրբերուն։ Բարեւ ըրէք իրարու սրբու-
թեան համբուրով։ Բարեւ կ՚ընեն ձեզի Քրիս-
տոսի [բոլոր] եկեղեցիները։
17 Կ՚աղաչեմ ձեզի, եղբայրներ, որ զգուշանաք այն-
պիսիներէ որոնք ձեր սորված վարդապետու-
թենէն դուրս հերձուածողութիւններ ու գայ-
թակղութիւններ կ՚ընեն, եւ անոնցմէ ետ կե-
18 ցէք։ Վասն զի այնպիսիները մեր Տէրոջը *Քրիս-
տոսի չեն ծառայեր, հապա իրենց որովայնին.
եւ անոյշ խօսքերով ու գովութիւններով պար-
19 զամիտներուն սիրտերը կը խաբեն։ Քանզի ձեր
հնազանդութիւնը ամէնուն հասած է. ուստի
ձեր վրայ ուրախ եմ. բայց կ՚ուզեմ որ դուք

*Ոմանք, Յիսուս Քրիստոսի

իմաստուն ըլլաք բարիին, ու միամիտ՝ չարին ։
20 Եւ խաղաղութեան Աստուածը խորտակէ Սա-
տանան շուտով ձեր ոտքերուն տակ ։ Մեր Տէր
Յիսուս Քրիստոսին շնորհքը ձեզի հետ ըլլայ ։*
21 Բարեւ կ'ընէ ձեզի Տիմոթէոս իմ գործակիցս,
եւ Ղուկիոս ու Յասոն եւ Սոսիպատրոս, իմ ազ-
22 գականներս ։ (Բարեւ կ'ընեմ ձեզի Տէրոջմով
ես ալ Տերտիոսս, որ այս թուղթը գրեցի ։)
23 Բարեւ կ'ընէ ձեզի Գայիոս, իմ ու բոլոր եկե-
ղեցիին հիւրընկալը ։ Բարեւ կ'ընէ ձեզի Երաս-
տոս, քաղաքին գանձապետը, ու Կուարտոս
24 եղբայրը ։ Մեր Տէր Յիսուս Քրիստոսին շնորհքը
ձեր ամենուն հետ ըլլայ ։ Ամէն ։
25 Արդ անոր, որ կարող է ձեզ հաստատել իմ
աւետարանիս պէս ու Յիսուս Քրիստոսին քա-
րոզութեանը պէս, այն խորհուրդին յայտնուե-
լուն պէս՝ որ յաւիտենական ատեններէն ի վեր
26 ծածկուած էր, Եւ հիմա յայտնուեցաւ, ու
մարգարէական գիրքերով յաւիտենական Աս-
տուծոյ հրամանով բոլոր հեթանոսներուն ճանչ-
27 ցուեցաւ հաւատքի հնազանդելու համար, Մի
միայն իմաստուն Աստուծոյն, Յիսուս Քրիստոսի
ձեռքով, փառք յաւիտեանս ։ Ամէն ։

---

*Ոմնք, չ'ունենին, Ամէն ։



# ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա

*1 Պօղոս առաքեալ իր բարեւ տալէ և Աստուծոյ շնորհակալ ըլլալէ ետեւ՝ 10 կը յորդորէ Կորնթացիները միաբան ըլլալ, 12 և կը յանդիմանէ անոնց երկպառակութիւնները։ 18 Աստուած իմաստուններուն իմաստութիւնը կը կորսնցնէ 21 քարոզութեան յիմարութիւնովը, 26 և չկանչեր իմաստունները, զօրաւորները ու ազնուականները. 27 բայց յիմարները, տկարները և անարգները։*

1 Պօղոս, Աստուծոյ կամքովը Յիսուս Քրիստոսի
առաքեալ ըլլալու կանչուած, ու Սոսթենէս
2 եղբայրը, Կորնթոսի մէջ եղած Աստուծոյ ե-
կեղեցիին, Քրիստոս Յիսուսով սրբուածներուն,
սուրբեր ըլլալու կանչուածներուն, այն ամէ-
նուն հետ՝ որոնք ամէն տեղ մեր Տէր Յիսուս
Քրիստոսի անունը կը կանչեն, իրենցը ու մերը.
3 Ձեզի շնորհք և խաղաղութիւն Աստուծմէ մեր
Հօրմէն ու Տէր Յիսուս Քրիստոսէ։
4 Ամէն ատեն իմ Աստուծմէս ձեզի համար
կը գոհանամ Աստուծոյ շնորհքին վրայ, որ
5 ձեզի տրուած է Քրիստոս Յիսուսով. Որ դուք
անով ամէն բանի մէջ հարստացաք ամէն խօսքով
6 և ամէն գիտութիւնով. Ինչպէս Քրիստոսի
7 վկայութիւնը ձեր մէջ հաստատուեցաւ. Որ-
պէս զի դուք բնաւ շնորհքով մը ալ չնուազիք՝
մեր Տէր Յիսուս Քրիստոսի յայտնուելուն սպա-
8 սելով. Որ նաև ձեզ պիտի հաստատէ մինչև
վերջը՝ անմեղադրելի ըլլալու մեր Տէր Յիսուս
9 Քրիստոսի օրը։ Հաւատարիմ է Աստուած,
որով կանչուեցաք հաղորդ ըլլալու իր Որդւոյն,
մեր Տէր Յիսուս Քրիստոսի։

10 Ձեզի կ'աղաչեմ, եղբայրներ, մեր Տէր Յի-
սուս Քրիստոսի անունովը, որ միևնոյն խօսքը
ունենաք ամէնդ, ու երկպառակութիւններ չըլ-
լան ձեր մէջ. հապա դուք մէկ միտքի ու մէկ
11 խորհուրդի վրայ *հաստատուած ըլլաք: Վասն
զի ձեզի համար ինծի լուր հասաւ, եղբայրներ,
Քղուէի տունէն եղողներէն, թէ ձեր մէջ հակա-
12 ռակութիւններ կան: Հիմա զայս կը զրուցեմ,
որ ձեզմէ ամէն մէկը կ'ըսէ եղեր թէ Ես Պօ-
ղոսեան եմ, ու մէկը՝ թէ Ես Ապողոսեան, և
ուրիշը՝ թէ Ես Կեփասեան, ու մէկը՝ թէ Ես
13 Քրիստոսեան: Միթէ Քրիստոս բաժնուա՞ծ է.
միթէ Պօղո՞ս խաչը ելաւ ձեզի համար, կամ
14 թէ Պօղոսի՞ անունով մկրտուեցաք: Կը գոհա-
նամ Աստուծմէ որ ձեզմէ մէ՛կը չմկրտեցի,
միայն թէ Կրիսպոսը ու Գայիոսը. որպէս զի
15 մէկը չըսէ թէ իմ անունովս մկրտեցի:
16 Իրաւ, Ստեփանէսի ընտանիքն ալ մկրտեցի.
ալ ուրիշ մէ՛կը չեմ գիտեր ամենևին թէ
մկրտեցի:
17 Վասն զի Քրիստոս զիս մկրտելու չղրկեց,
հապա աւետարանը քարոզելու, ոչ թէ խօսքե-
րու ճարտարութիւնով, որպէս զի Քրիստոսի
18 խաչը ոչինչ չըլլայ: Քանզի խաչին քարոզու-
թիւնը կորսուածներուն յիմարութիւն է, բայց
մեզի փրկուածներուս Աստուծոյ զօրութիւնն
19 է: Վասն զի գրուած է, Իմաստուններուն ի-
մաստութիւնը պիտի կորսնցնեմ, ու հանճա-
20 րեղներուն հանճարը պիտի խափանեմ: Ո՞ւր է
իմաստունը, ո՞ւր է դպիրը, ո՞ւր է այս աշխարհին
քննողը. չէ՞ որ Աստուած յիմարեցուց այս աշ-
21 խարհին իմաստութիւնը: Քանզի որովհետև
Աստուծոյ իմաստութիւնովը աշխարհ չճանչցաւ
զԱստուած իր իմաստութիւնովը, Աստուած հա-

*Յուն. կատարելագործուած

ձեւոյն քարոզութեան յիմարութիւնովը հա-
22 ւատացեալները ապրեցնել ։ Վասն զի Հրեա-
ները նշան կ'ուզեն, և Յոյները իմաստութիւն
23 կը փնտռեն ․ Իսկ մենք կը քարոզենք խաչեալ
Քրիստոսը, Հրեաներուն գայթակղութիւն, ու
24 Յոյներուն յիմարութիւն ։ Բայց անոնց որ կան-
չուած են, թէ՛ Հրեաներուն և թէ՛ Յոյներուն,
Քրիստոսը՝ Աստուծոյ զօրութիւնը և Աստուծոյ
25 իմաստութիւնը ։ Վասն զի Աստուծոյ յիմարը
մարդոցմէ աւելի իմաստուն է, և Աստուծոյ
26 տկարը մարդոցմէ աւելի զօրաւոր է ։ Արդարև
դուք ձեր կոչումը կը տեսնէք, եղբայրներ, որ
ոչ թէ մարմնի կողմանէ շատ իմաստուններ, և
ոչ թէ շատ զօրաւորներ, և ոչ թէ շատ ազ-
27 նուականներ կանչուեցան ․ Բայց Աստուած աշխար-
հիս յիմարները ընտրեց, որպէս զի ամօթով ընէ
իմաստունները ․ ու աշխարհիս տկարները ընտ-
րեց Աստուած, որպէս զի ամօթով ընէ զօրա-
28 ւորները ․ Եւ աշխարհիս ցածազգիները ու ա-
նարգները ընտրեց Աստուած, և ոչինչները, որ-
29 պէս զի բան մը եղողները խափանէ ․ Որպէս զի
30 մարմին մը չպարծի Աստուծոյ առջև ։ Իսկ դուք
անկէ էք Քրիստոս Յիսուսով, որ մեզի Աս-
տուծմէ իմաստութիւն, արդարութիւն, սրբու-
31 թիւն և փրկութիւն եղաւ ․ Որպէս զի, ինչպէս
գրուած է, Ան որ կը պարծենայ, Տէրոջմով
թող պարծենայ ։

## ԳԼ․ Բ

1 Առաքեալը կը ծանուցանէ թէ իր քարոզութիւնը խօսքերու ճարտարութիւնով կամ մարդկային իմաստութիւնով չէ, 4 հապա Աստուծոյ զօրութիւնովն է․ և այնքան գերազանց է 6 այս աշխարհի իմաստութենէն 9 ու մարդկային գիտութենէն, 14 որ մարմնաւոր մարդը կարող չէ զանիկա իմանալ ։

1 Եւ ես, եղբայրներ, որ ձեզի եկայ, ոչ թէ
խօսքի կամ իմաստութեան գերազանցութիւ-
նով մը Աստուծոյ վկայութիւնը ձեզի յայտնե-

2 լու եկայ։ Վասն զի ես միտքս չդրի ձեր մէջ
ուրիշ բան մը գիտնալ, բայց միայն Յիսուս
3 Քրիստոսը, ու զայն՝ խաչը ելած։ Եւ ես տկա-
րութիւնով ու վախով և շատ դողով ձեր քով
4 կեցայ. Ու իմ խօսքս և քարոզութիւնս ոչ թէ
*մարդկային իմաստութեան համոզիչ խօսքե-
րով էր, հապա Հոգւոյն և զօրութեան ապա-
5 ցուցութիւնովը. Որպէս զի ձեր հաւատքը մար-
դոց իմաստութիւնովը չըլլայ, հապա Աստուծոյ
6 զօրութիւնովը։ Սակայն կատարեալներուն հետ
իմաստութիւն կը խօսինք, բայց ոչ թէ այս
աշխարհի իմաստութիւնը, և ոչ այս աշխարհի
7 ոչնչանալու իշխաններունը. Հապա Աստուծոյ
ծածուկ իմաստութիւնը կը խօսինք խորհրդով,
զոր աշխարհէ առաջ սահմանեց Աստուած մեր
8 փառքին համար. Զոր այս աշխարհի իշխաննե-
րէն մէ՛կը չճանչցաւ. քանզի եթէ ճանչցած
ըլլային, ալ փառաց Տէրը խաչը չէին հաներ.
9 Հապա ինչպէս գրուած է, Ա՛յն բաները զորոնք
աչք չէ տեսեր և ականջ չէ լսեր ու որոնք մար-
դու սրտին մէջ չեն ինկեր, Աստուած զինք սի-
10 րողներուն պատրաստեց։ Բայց Աստուած մեզի
յայտնեց իր Հոգիովը, վասն զի Հոգին ամէն բան
11 կը քննէ, Աստուծոյ խորունկ բաներն ալ։ Վասն
զի մարդոցմէ ո՞վ գիտէ մարդուն բաները, բայց
միայն մարդուն հոգին որ իր մէջ է. Նոյնպէս ալ
Աստուծոյ բաները մէ՛կը չգիտեր, բայց միայն
12 Աստուծոյ Հոգին։ Իսկ մենք ոչ թէ այս աշ-
խարհի հոգին առինք, հապա այն Հոգին որ
Աստուծմէ է. որպէս զի մենք ճանչնանք այն
13 բաները որոնք Աստուծմէ տրուեցան մեզի. Զո-
րոնք նաև կը խօսինք, ոչ թէ մարդկային իմաս-
տութեան սորվեցուցած խօսքերովը, հապա
†Հոգիին սորվեցուցածներովը, և հոգևոր բա-

*Ոմանք չունին

†Ոմանք, Սուրբ Հոգիին

14 ները հոգեւորի հետ կը յարմարցնենք։ Իսկ շնչա-
ւոր մարդը Աստուծոյ Հոգիին բաները չընդու-
նիր, վասն զի անոնք իրեն յիմարութիւն են,
ու չկրնար ալ գիտնալ, վասն զի հոգեւոր կեր-
15 պով կը քննուին։ Բայց ան որ հոգեւոր է՝ ամէն
16 բան կը քննէ, ու ինք մէկէն չքննուիր։ Քանզի
ո՞վ գիտցաւ Տէրոջը միտքը, որ անոր խրատ
տուող ու ըլլայ․ բայց մենք Քրիստոսի միտքը
ունինք։

## ԳԼ․ Գ

2 Տղայոց առաջ կաթ կը տրուի՝ և ոչ թէ կերակուր ։ 3 Կռիւը ու նախանձը մարմնաւոր մտքի պտուղներ են ։ 7 Տնկողը ու ջուր տուողը բան մը չեն ։ 9 Աւետարանի պաշտօնեաները Աստուծոյ գործակիցներն են ։ 11 Քրիստոս է մի միայն հիմը ։ 16 Մարդիկ Աստուծոյ տաճարներն են, որոնք պարտին սուրբ պահուիլ ։ 19 Այս աշխարհի իմաստութիւնը Աստուծոյ առջև յիմարութիւն է ։

1 Եւ ես, եղբայրներ, չկրցայ խօսիլ ձեզի՝ որպէս
թէ հոգեւորներու, հապա որպէս թէ մարմնա-
2 ւորներու, Որպէս թէ Քրիստոսով տղայոց․
ձեզի կաթ կերցուցի և ոչ թէ կերակուր,
վասն զի դեռ կարող չէիք, ու հիմա ալ տակա-
ւին կարող չէք, վասն զի դեռ մարմնաւոր էք։
3 Որովհետեւ տակաւին ձեր մէջ նախանձ ու հա-
կառակութիւն և բաժանումներ կան, չէ՞ որ
4 մարմնաւոր էք, ու մարդկօրէն կը քալէք։ Քանզի
երբ ձեզմէ մէկը կ'ըսէ թէ Ես Պօղոսեան եմ, և
միւսը՝ թէ ես Ապողոսեան, չէ՞ որ մարմնաւոր
5 էք։ Ուրեմն ո՞վ է Պօղոս կամ ո՞վ է Ապողոս․
պաշտօնեաներ են, որոնցմով հաւատացիք, և
6 ինչպէս Տէրը տուաւ անոնց ամէն մէկուն։ Ես
տնկեցի, Ապողոս ջուր տուաւ, բայց Աստուած
7 աճեցուց։ Ուստի ոչ տնկողը բան մըն է, և ոչ
ջուր տուողը, հապա Աստուած՝ որ աճեցուց։
8 Տնկողը ու ջուր տուողը մէկ են, և ամէն մէկը
իր վարձքը պիտի առնէ իր աշխատութեան չա-
9 փովը։ Վասն զի մենք Աստուծոյ գործակից ենք․

դուք Աստուծոյ մշակութիւնն էք, Աստուծոյ
10 շինութիւնն էք։ Աստուծոյ շնորհքին չափովը,
որ ինծի տրուեցաւ, իմաստուն ճարտարապետի
մը պէս հիմ դրի, բայց անոր վրայ շինողը ուրիշ է.
միայն թէ ամէն մէկը թող զգուշանայ թէ ինչ-
11 պէս կը շինէ։ Վասն զի մէկը ա՛լ ուրիշ հիմ
չկրնար դնել դրուածէն զատ, որ է Յիսուս
12 Քրիստոս։ Եթէ մէկը այս հիմին վրայ կը շինէ
ոսկի, արծաթ, պատուական քարեր, փայտ,
13 խոտ, եղէգ, Ամէն մէկուն գործը յայտնի պիտի
ըլլայ. քանզի օրը երեւան պիտի հանէ, վասն զի
կրակով պիտի յայտնուի. և ամէն մէկուն գոր-
ծին ինչ տեսակ ըլլալը կրակը պիտի փորձէ։
14 Եթէ մէկուն շինած գործը մնալու ըլլայ, ինք
15 վարձք պիտի առնէ. Եւ եթէ մէկուն շինածը
այրելու ըլլայ, անիկա վնաս պիտի քաշէ. բայց
ինք պիտի ազատի, սակայն այնպէս՝ իբր թէ
16 կրակի մէջէ։ Չէ՞ք գիտեր որ Աստուծոյ տաճար
էք դուք, և Աստուծոյ Հոգին ձեր մէջ բնա-
17 կած է։ Եթէ մէկը Աստուծոյ տաճարը կ՚ա-
պականէ, Աստուած զանիկա պիտի ապականէ,
վասն զի Աստուծոյ տաճարը սուրբ է, որ
դուք էք։
18 Զըլլայ որ մէկը ինքզինք խաբէ. եթէ ձեզմէ
մէկը զինք իմաստուն կը սեպէ այս աշխարհի
մէջ, թող յիմար ըլլայ՝ որպէս զի իմաստուն
19 ըլլայ։ Վասն զի այս աշխարհի իմաստութիւնը
Աստուծոյ առջև յիմարութիւն է. վասն զի
գրուած է թէ Անիկա իմաստունները իրենց
20 խորամանկութեան մէջ կը բռնէ։ Եւ դարձեալ՝
թէ Տէրը գիտէ իմաստուններուն խորհուրդ-
21 ները, որոնք ունայն են։ Ուրեմն մէ՛կը թող
22 չպարծենայ մարդոցմով. Վասն զի ամէն բան
ձերն է. թէ՛ Պօղոս, թէ՛ Ապողոս, թէ՛ Կեփաս,
թէ՛ աշխարհ, թէ՛ կեանք, թէ՛ մահ, թէ՛ ներ-

կայ բաները և թէ՛ գալիքները․ ամէն բան
23 ձերն է․ Դուք ալ Քրիստոսի էք, և Քրիստոս՝
Աստուծոյ։

## ԳԼ․ Դ

1 Քրիստոսի պաշտօնեաները ինչ համարում ունենալու են։ 7 Բան մը չունինք որ առած չըլլանք։ 8 Առաքեալները տեսարան եղան աշխարհի, հրեշտակներուն և մարդոց, 13 աշխարհի աղտեղութիւնը և ամենուն անարգը․ 15 այսու ամենայնիւ Քրիստոսով մեր հայրերն են, 16 որոնց օրինակին հետևելու ենք։

1 Թող մարդիկ մեզ այսպէս սեպեն, որպէս թէ
Քրիստոսի սպասաւորները ու Աստուծոյ խոր-
2 հուրդներուն տնտեսները։ Ուստի տնտեսնե-
րուն մէջ կը փնտռուի որ մէկը հաւատարիմ
3 գտնուի։ Բայց ինծի շատ պզտիկ բան մըն է,
որ ձեզմէ դատուիմ, կամ մարդոց *դատաւորու-
թենէն, մանաւանդ որ ես ալ իմ անձս չեմ
4 դատեր․ (Վասն զի ես իմ անձիս վրայօք բան մը
չեմ գիտեր․ բայց ոչ թէ ասով կ՚արդարանամ․)
5 Հապա զիս դատողը Տէրն է։ Ուրեմն ժամանա-
կէն առաջ դատողութիւն մի ընէք, մինչև գայ
Տէրը՝ որ խաւարին գաղտնիքը ի լոյս պիտի
հանէ, ու սրտերուն խորհուրդները յայտնի
պիտի ընէ․ և այն ատեն ամէն մէկուն գովու-
թիւնը Աստուծմէ պիտի ըլլայ։
6 Ասոնք օրինակ բերի, եղբայրներ, իմ վրաս
ու Ապողոսի վրայ ձեզի համար, որպէս զի դուք
մեզմէ սորվիք մարդոց վրայով գրուածէն աւելի բան
մը չխորհիլ, որ չըլլայ թէ ձեզմէ մէկը հպար-
7 տանայ մէկուն համար ուրիշի մը դէմ։ Քանզի
ո՞վ է ան որ քեզ տարբեր կ՚ընէ ուրիշներէն․ և
ի՞նչ ունիս զոր չես առեր դուն․ և եթէ առիր,
ինչո՞ւ չառածի պէս կը պարծենաս։
8 Արդէն կշտացած էք, արդէն հարուստցաք,
առանց մեզի թագաւորեցիք․ և երանի՜ թէ

*Յուն․, օրուընէն

թագաւորէիք. որպէս զի մենք ալ ձեզի հետ
9 թագաւորէինք։ Քանզի կարծեմ թէ Աստուած
յետիններ ըրաւ մեզ առաքեալներս մահա-
պարտներու նման. վասն զի տեսարան եղանք
10 աշխարհի և հրեշտակներուն ու մարդոց։ Մենք
յիմարներ ենք Քրիստոսի համար, և դուք ի-
մաստուններ՝ Քրիստոսով. մենք տկար՝ և դուք
զօրաւոր. դուք փառաւորեալ՝ ու մենք անար-
11 գեալ։ Մինչև այսօրուան ատեն կ'անօթենանք
ալ, կը ծարաւինք ալ, մերկ ալ կը մնանք, կը
ծեծուինք ալ, աստանդական ալ կը պտըտինք,
12 Եւ մեր ձեռքերով գործելով կ'աշխատինք. երբ
մեզ կը նախատեն՝ կ'օրհնենք. երբ կը հալածեն՝
13 կը համբերենք. Երբ գէշ կը խօսին՝ կ'աղաչենք.
իբրև աշխարհի աղտեղութիւնք՝ ամէնուն ա-
14 նարգը ըլլալով մինչև հիմա։ Այս բաները կը
գրեմ՝ ոչ թէ ձեզ ամչցնելու համար, հապա
15 կը խրատեմ ձեզ սիրելի որդիներուս պէս։ Վասն
զի թէև դուք տասը հազար վարժապետներ
ունենաք Քրիստոսով, բայց ոչ թէ շատ հայրեր
ունիք, վասն զի Քրիստոս Յիսուսով ես ձեզ ծնայ
16 աւետարանովը։ Ուրեմն կ'աղաչեմ ձեզի, ինծի
17 նմանող եղէք։ Ասոր համար ձեզի ղրկեցի Տի-
մոթէոսը, որ իմ սիրելի որդիս է, ու Տէրոջմով
հաւատարիմ. որ ձեր միտքը պիտի ձգէ Քրիս-
տոսով իմ ըրած ճամբաներս, ինչպէս ամէն տեղ
18 ամէն եկեղեցիներուն մէջ կը սորվեցնեմ։ Մէկ
քանիները հպարտացան, որպէս թէ ես պիտի
19 չգամ ձեզի։ Բայց շուտով պիտի գամ ձեզի,
եթէ Տէրը կամենայ, և պիտի հասկնամ ոչ թէ
հպարտացողներուն խօսքերը, հապա զօրու-
20 թիւնը։ Վասն զի Աստուծոյ թագաւորութիւնը
21 ոչ թէ խօսքով է, հապա զօրութիւնով։ Ի՞նչ-
պէս կ'ուզէք. գաւազանո՞վ գամ ձեզի, թէ սի-
րով և հեզութեան հոգիով։

# ԳԼ. Ե

1 Պօղոս կ'իմացնէ կորնթացւոց թէ ազգապիղծ անձը 6 յաւէտ ամօթոյ պատճառ մըն է իրենց՝ քան թէ պարծանքի. 7 կ'իմացնէ թէ պէտք է հին խմորը մէկդի ձգել. 10 թէ պէտք է եղեռնագործները ամչցնել, և անոնցմէ ետ քաշուիլ։

1 Առհասարակ կը լսուի ձեր մէջ պոռնկութիւն
ըլլալ. և այնպիսի պոռնկութիւն՝ որ հեթա-
նոսներուն մէջ ալ *չկայ, որպէս թէ մէկը իր
2 հօրը կինը ունենայ։ Ու դուք հպարտացեր էք,
և ոչ մանաւանդ սուգ ըրիք, որ ձեր մէջէն վեր-
3 ցուի այս բանը։ Վասն զի թէպէտ ես մարմնով
հեռու եմ, բայց հոգիով ներկայ եմ. ուստի
հիմա որպէս թէ ներկայ ըլլալով՝ որոշեցի, որ
4 այս բանը ընողը, Երբ մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսի անունովը մէկտեղ ժողվուիք դուք ու իմ
հոգիս մեր Տէր Յիսուս Քրիստոսի զօրութիւ-
5 նովը, Այնպիսին Սատանայի մատնէք, մարմ-
նին կորսուելուն համար, որպէս զի հոգին
6 փրկուի Տէր Յիսուսի օրը։ Այդ ձեր պար-
ծանքը աղէկ չէ. չէ՞ք գիտեր որ քիչ մը
7 խմորը բոլոր զանգուածը կը խմորէ։ Մաքրե-
ցէք հին խմորը մէկդի, որպէս զի ըլլաք նոր
զանգուած, ինչպէս անխմոր էք. վասն զի Քրիս-
տոս մեր զատիկը մեզի համար զոհուեցաւ։
8 Ուստի տօն կատարենք, ոչ թէ հին խմորով և
ոչ թէ չարութեան ու անզգամութեան խմո-
րով, հապա անկեղծութեան ու ճշմարտու-
9 թեան անխմոր հացով։ Գրեցի ձեզի թուղ-
թին մէջ, որ պոռնիկներուն հետ չխառնուիք։
10 Եւ գրածս՝ ոչ թէ այս աշխարհի պոռնիկներուն
հետ, կամ ագահներուն հետ, կամ յափշտա-
կողներուն հետ, կամ կռապաշտներուն հետ.
ապա թէ ոչ՝ պէտք էր որ դուք աշխարհէ դուրս
11 ելլէիք։ Բայց հիմա ձեզի գրեցի չխառնուիլ,
այսինքն եթէ մէկը եղբայր ըսուած՝ կա՛մ պոռ-

*Ոմանք, չյիշուիր

նիկ ըլլայ, կամ ագահ, կամ կռապաշտ, կամ
նախատող, կամ գինով, կամ յափշտակող,
12 այնպիսիին հետ հաց ալ չուտել ։ Վասն զի ի՞նչ
պէտք է ինծի դուրսիններն ալ դատել. չէ՞ որ
13 դուք ներսիինները կը դատէք. Իսկ դուրսինները
Աստուած պիտի դատէ. ուստի չարը ձեր մէջէն
վերցուցէք ։

## ԳԼ. Զ

1 Առաքեալը կը ծանուցանէ թէ պէտք չէ որ իրենց եղբայրները նեղեն՝ զանոնք դատի կանչելով, 6 մանաւանդ անհաւատներուն առջև. 9 թէ անիրաւները Աստուծոյ արքայութիւնը չեն ժառանգեր. 15 թէ մեր մարմինները Քրիստոսի անդամներ են, 19 և Սուրբ Հոգիին տաճարները, 16 ուրեմն պէտք չէ որ զանոնք պղծենք ։

1 Ձեզմէ մէկը, եթէ բան մը ունենայ իր ընկե-
րին հետ, կը համարձակի՞ անիրաւներուն առջև
2 դատուիլ, ու ոչ թէ սուրբերուն առջև ։ Չէ՞ք
գիտեր որ սուրբերը պիտի դատեն աշխարհը.
ու եթէ աշխարհ ձեզմէ կը դատուի, ուրեմն
3 արժանի չէ՞ք դուք չնչին դատեր որոշելու ։ Չէ՞ք
գիտեր որ մենք հրեշտակներ պիտի դատենք.
4 ո՞ւր կը մնան հապա աշխարհային բաները ։ Ու-
րեմն եթէ ձեր մէջ աշխարհային դատեր ունիք,
եկեղեցիին անարգները ձեզի դատաւոր դրէք ։
5 Ձեզ ամչցնելու համար կը գրուցեմ. այնչափ
եղաւ որ ձեր մէջ իմաստուն մը չկա՞յ, որ կա-
րող ըլլայ իրաւունքը որոշել իր եղբայրներուն
6 մէջ. Հապա եղբայր եղբօր հետ դատի կը
7 մտնէ, այն ալ անհաւատներուն առջև ։ Ար-
դարև բոլորովին յանցանք մըն է այս ձեր մէջ,
որ իրարու հետ դատեր ունիք. ինչո՞ւ մա-
նաւանդ դուք անիրաւութիւն չէք կրեր.
ինչո՞ւ մանաւանդ դուք զրկանք չէք քաշեր ։
8 Հապա դուք անիրաւութիւն ու զրկանք կ՚ը-
9 նէք, և այն ալ եղբայրներուն ։ Չէ՞ք գիտեր որ
անիրաւները Աստուծոյ արքայութիւնը պիտի
չժառանգեն. մի խաբուիք. ոչ պոռնիկները,

10 *ոչ կռապաշտները, ոչ շնացողները, Ոչ իգացեալ-*
*ները, ոչ արուագէտները, ոչ գողերը, ոչ ա-*
*գահները, ոչ գինովները, ոչ նախատողները ու*
*ոչ յափշտակողները Աստուծոյ թագաւորու-*
11 *թիւնը պիտի չժառանգեն։ Եւ դուք մէկ քանի-*
*ներդ այնպիսիներ էիք. բայց լուացուեցաք,*
*բայց սրբուեցաք, բայց արդարացաք Տէր Յի-*
*սուսի անուանովը ու մեր Աստուծոյն Հոգիովը։*
12 *Ամէն բան ինծի օրինաւոր է, բայց ոչ թէ*
*ամէն բան օգտակար. ամէն բան ինծի օրինա-*
*ւոր է, բայց ես բանի մը իշխանութեան տակ*
13 *պիտի չըլլամ։ Կերակուրները փորին համար են,*
*փորն ալ կերակուրներուն. բայց Աստուած*
*զայս ալ, զանոնք ալ պիտի խափանէ։ Իսկ*
*մարմինը պոռնկութեան համար չէ, հապա Տէ-*
14 *րոջը, ու Տէրը՝ մարմինին համար։ Եւ Աստուած*
*որ Տէրը յարուց, մեզ ալ պիտի յարուցանէ*
15 *իր զօրութիւնովը։ Չէ՞ք գիտեր որ ձեր մար-*
*մինները Քրիստոսի անդամներն են. ուստի Քրիս-*
*տոսի անդամները առնելով՝ պոռնիկի անդամ-*
16 *նե՞ր ընեմ. քաւ լիցի։ Չէ՞ք գիտեր թէ ան որ*
*պոռնիկի կը մօտենայ, անոր հետ մէկ մարմին կ'ըլ-*
*լայ. քանզի գիրը կ'ըսէ, Երկուքը մէկ մարմին*
17 *պիտի ըլլան։ Իսկ ան որ Տէրոջը կը մօտենայ,*
18 *անոր հետ մէկ հոգի կ'ըլլայ։ Պոռնկութենէ փա-*
*խեցէք. ամէն մեղք զոր մարդ կը գործէ, իր մար-*
*մինէն դուրս է. բայց ան որ կը պոռնկի, իր*
19 *մարմինին դէմ կը մեղանչէ։ Չէ՞ք գիտեր որ*
*ձեր մարմինները տաճար են Սուրբ Հոգիին որ*
*ձեր մէջ է, զոր Աստուծմէ ունիք, ու դուք*
20 *ձեր անձին տէրը չէք. Քանզի գնով ծախու առ-*
*նուեցաք. ուստի փառաւորեցէք զԱստուած*
*ձեր մարմիններուն ու հոգիներուն մէջ, որոնք*
*Աստուծոյ են։*

## ԳԼ. Է

*1 Առաքեալը կը խօսի ամուսնութեան վրայով, 4 ցուցնելով թէ անիկա դարման մըն է պոռնկութեան դէմ. 10 թէ ամուսնութեան կապը պէտք չէ որ դիւրաւ լուծուի. 18 թէ ամէն մարդ պարտի գոհ ըլլալ իր վիճակէն. 25 թէ կուսութիւնը ի՛նչ դիտաւորութեամբ կրնայ պահուիլ, 35 և թէ ի՛նչ պատճառաւ կրնանք ամուսնանալ՝ կամ անկէ ետ կենալ։*

1 Արդ այն բաներուն համար որ դուք ինծի գրե-
2 ցիք, աղէկ է մարդուս որ կնոջ չմօտենայ։ Բայց
պոռնկութիւնը չըլլալու համար ամէն մարդ
թող իր կինը ունենայ, ու ամէն կին իր այրը
3 թող ունենայ։ Այրը իր կնոջ թող պարտքը
4 վճարէ, նոյնպէս կինն ալ իր էրկան։ Կինը իր
մարմինին չիշխեր, հապա այրը. նոյնպէս այրն
5 ալ իր մարմինին չիշխեր, հապա կինը։ Մէկզմէկ
մի զրկէք, եթէ ոչ՝ միաբանութեամբ ատեն մը,
աղօթքի պարապելու համար, ու նորէն իրա-
րու դարձէք, որպէս զի Սատանայ ձեզ չփորձէ
6 ձեր անժուժկալութեան համար։ Զայս կը զրու-
7 ցեմ թոյլ տալով՝ և ոչ թէ հրամայելով։ Քանզի
կ՚ուզէի որ ամէն մարդիկ ինծի պէս ըլլային.
բայց ամէն մէկը իր պարգևը ունի Աստուծմէ,
8 մէկը այսպէս ու միւսը այնպէս։ Բայց չամուս-
նացածներուն ու որբևայրիներուն կ՚ըսեմ, Աղէկ
9 է անոնց՝ եթէ ինծի պէս կենան։ Հապա եթէ
ժուժկալութիւն չունին՝ թող ամուսնանան,
վասն զի աղէկ է ամուսնանալ քան թէ բոր-
10 բոքիլ։ Բայց ամուսնացածներուն կը պատուի-
րեմ ոչ թէ ես, հապա Տէրը, որ կինը այրէն
11 չզատուի։ (Իսկ եթէ զատուի ալ՝ առանց ա-
մուսնանալու մնայ, կամ իր էրկան հետ հաշ-
12 տուի,) ու այրը իր կինը թող չձգէ։ Բայց ու-
րիշներուն ես կ՚ըսեմ, ոչ թէ Տէրը. Եթէ եղ-
բայր մը անհաւատ կին ունենայ, ու անոր հա-
ճելի ըլլայ իրեն հետ բնակիլ, թող չձգէ զա-
13 նիկա։ Եւ կին մը որ անհաւատ այր ունենայ,

*ու անոր հաճելի ըլլայ իրեն հետ բնակիլ, թող*
14 *չձգէ զանիկա։ Վասն զի անհաւատ այրը*
*սրբուած է կնոջմովը, և անհաւատ կինը*
*սրբուած է այրովը. ապա թէ ոչ՝ ձեր որդի-*
*ները պիղծ պիտի ըլլային, բայց հիմա սուրբ են։*
15 *Իսկ եթէ անհաւատը զատուի՝ թող զատուի.*
*եղբայր մը կամ քոյր մը այնպիսի պարագանե-*
*րու մէջ գերի չէ. սակայն Աստուած խաղա-*
16 *ղութեան կանչեց մեզ։ Քանզի ի՞նչ գիտես*
*դուն, ով կին, թերևս քու այրդ պիտի ապ-*
*րեցնես. կամ դուն ի՞նչ գիտես, ով այր, թե-*
17 *րևս քու կինդ պիտի ապրեցնես։ Միայն թէ*
*ամէն մէկուն ինչպէս Տէրը բաժնեց, ամէն մէկը*
*ինչպէս Աստուած կանչեց, այնպէս թող եր-*
*թայ, ու ամէն եկեղեցիներուն մէջ ես այսպէս*
*պատուէր կու տամ։*
18 *Եթէ թլփատուած մէկը* հաւատքէ *կանչուեցաւ,*
*թող նորէն անթլփատ չըլլայ. չթլփատուած-*
*ներէն մէկը կանչուեցաւ, թող չթլփատուի։*
19 Վասն զի *թլփատութիւնը բան մը չէ, ու ան-*
*թլփատութիւնը բան մը չէ. հապա Աստուծոյ*
*պատուիրանքներուն պահպանութիւնը* պէտք *է։*
20 Բայց *ամէն մէկը ի՞նչ կոչումի մէջ որ կանչուե-*
21 *ցաւ, թող անոր մէջ կենայ։ Ծառա՞յ կանչուե-*
*ցար, հոգ չըլլայ քեզի. բայց եթէ կրնաս ազատ*
22 *ըլլալ, զայն ընտրէ։ Վասն զի այն ծառան որ*
*Տէրոջմով կանչուած է, Տէրոջը ազատեալն է*
*անիկա. նմանապէս այն ազատը որ կանչուած է,*
23 *Քրիստոսի ծառան է։ Դուք գնով ծախու առ-*
24 *նուեցաք, մարդոց ծառայ մի ըլլաք։ Եղբայր-*
*ներ, ամէն մէկը ի՞նչ* կոչումի *մէջ որ կանչուեցաւ,*
*թող անոր մէջ կենայ Աստուծոյ առջև։*
25 *Բայց կոյսերուն համար Տէրոջմէն հրաման մը*
*չունիմ, միայն թէ Տէրոջմէն հաւատարիմ ըլ-*
*լալու ողորմութիւն գտածի մը պէս խրատ*

26 կու տամ։ Ուրեմն ես կը սեպեմ որ ասիկա
աղէկ է հիմակուան նեղութեան համար,
այսինքն աղէկ է մարդուս որ այսպէս ըլլայ։
27 Կապուա՞ծ ես կնոջ, մի փնտռեր արձակուիլ.
28 արձակուա՞ծ ես կնոջմէ, մի փնտռեր կին։ Իսկ
եթէ ամուսնանաս՝ չմեղանչեցիր, և եթէ կոյսը
ամուսնանայ՝ չմեղանչեց. բայց այնպիսիները
մարմնի նեղութիւն պիտի ունենան. սակայն ես
29 ձեզի կը խնայեմ։ Բայց զայս կ'ըսեմ, եղբայր-
ներ, որ ժամանակը կարճցած է. ալ անոնք որ
կին ունին՝ այնպէս ըլլան որպէս թէ չունին,
30 Եւ անոնք որ կու լան՝ որպէս թէ չեն լար, ու
անոնք որ կը խնդան՝ որպէս թէ չեն խնդար,
և անոնք որ ծախու կ'առնեն՝ որպէս թէ բան մը
31 չունին, Եւ անոնք որ աշխարհս կը գործածեն՝
որպէս թէ գէշ կերպով չեն գործածեր. վասն
32 զի այս աշխարհի կերպարանքը կ'անցնի։ Բայց
ես կ'ուզեմ որ դուք անհոգ ըլլաք. վասն զի չա-
մուսնացած մարդը Տէրոջը բաները կը հոգայ,
33 թէ ինչպէս Տէրոջը հաճելի ըլլայ։ Իսկ ամուս-
նացածը աշխարհիս բաները կը հոգայ, թէ ինչ-
34 պէս իր կնոջ հաճելի ըլլայ։ Եւ ամուսնացած
կինը ու կոյսը կը տարբերին իրարմէ. վասն զի կոյսը
Տէրոջը բաները կը հոգայ, որպէս զի ինք սուրբ
ըլլայ հոգւով ու մարմնով. իսկ ամուսնացած
կինը աշխարհիս բաները կը հոգայ, թէ ինչ-
35 պէս իր էրկան հաճելի ըլլայ։ Բայց այս բանը
ձեր օգտութեան համար կը զրուցեմ, ոչ թէ ձեր
վրայ վարմ մը ձգելու, հապա պարկեշտու-
թեան համար ու առանց զբաղմունքի Տէրոջը
36 ծառայելու համար։ Իսկ եթէ մէկը ամօթ
կը սեպէ իր կոյսին համար՝ եթէ չափը անցեր է,
ու պէտք է այնպէս ըլլալ, ինչ որ կ'ուզէ՝ թող
37 ընէ, մեղք չգործեր. թող ամուսնանան։ Բայց
ան որ իր սրտին մէջ հաստատ կը կենայ, ու

*իր վրայ հարկ մըն ալ չկայ, հապա իր կամքին
վրայ իշխանութիւն ունի, ու իր սրտին մէջ
այսպէս որոշեր է որ իր կոյսը պահէ, աղէկ
38 կ'ընէ։ Ուստի ան որ իր կոյսը կ'ամուսնացնէ, աղէկ
կ'ընէ. ու ան որ չամուսնացներ, աւելի աղէկ
39 կ'ընէ։ Կինը *կապուած է՝ որչափ ժամանակ
որ իր այրը ողջ է. ապա եթէ իր այրը մեռնի,
ազատ է ամուսնանալու որու որ ուզէ, միայն
40 թէ Տէրոջմով։ Բայց իմ դատումիս նայելով՝
աւելի երանելի է եթէ այնպէս կենայ. և կար-
ծեմ թէ ես ալ Աստուծոյ Հոգին ունիմ։*

## ԳԼ. Ը

1 Կուռքերուն զոհուած միսէն ետ կենալու վրայով։ 8 Պէտք չէ որ մեր քրիստոնէական ազատութիւնը այն կերպով գործածենք՝ որ գայթակղութիւն տանք մեր եղբայրներուն, 11 հապա մեր գիտութիւնը սիրով սանձելու ենք։

*1 Բայց կուռքերու զոհերուն վրայով՝ գիտենք որ
ամէնս ալ գիտութիւն ունինք. գիտութիւնը
կը հպարտացնէ, բայց սէրը շինութիւն կ'ընէ։
2 Եւ եթէ մէկը կը կարծէ թէ բան մը գիտէ,
դեռ բնաւ բան մը չգիտեր՝ ինչպէս պէտք է
3 գիտնալ։ Իսկ եթէ մէկը զԱստուած կը սիրէ,
4 ինք անկէ ճանչցուած է։ Ուստի կուռքերու
զոհուածները ուտելու վրայով՝ գիտենք որ
կուռքը ոչինչ է աշխարհի մէջ, և որ մէկէն
5 զատ ուրիշ Աստուած մը չկայ։ Քանզի թէև
ըլլան ալ անունով աստուածներ, թէ՛ երկինքը
և թէ՛ երկրի վրայ, (ինչպէս կան շատ աստ-
6 ուածներ ու շատ տէրեր,) Բայց մենք մէկ
Աստուած ունինք, Հայրը, որմէ են ամէն բա-
ները, և մենք ալ †անոր. ու մէկ Տէր Յիսուս
Քրիստոս, որմէ են ամէն բաները, ու մենք ալ
7 անով։ Բայց ամէնուն քով գիտութիւն չկայ.
և ոմանք կուռքի վրայով խղճմտանք ունենա-*

*Որմն. օրէնքով կապուած †Կամ, անոր համար

լով՝ մինչև հիմա կ'ուտեն կուռքերու զոհուածի
պէս, և իրենց խղճմտանքը, որովհետև տկար է,
8 կը պղծուի ։ Սակայն կերակուրը մեզ Աստու-
ծոյ առջև չկեցներ. քանզի ոչ եթէ ուտենք՝
կ'աւելնանք. և ոչ եթէ չուտենք՝ կը պակսինք ։
9 Բայց զգուշ կեցէք, որ չըլլայ թէ այդ ձեր
իշխանութիւնը տկարներուն գայթակղութիւն
10 ըլլայ ։ Քանզի եթէ մէկը տեսնէ քեզ, որ գի-
տութիւն ունիս, կռատունի մէջ սեղան նստած,
չէ՞ որ այն տկար մարդուն խղճմտանքը համար-
ձակութիւն պիտի առնէ կուռքերու զոհուածը
11 ուտելու, Եւ քու գիտութիւնովդ այն տկար
եղբայրը կորսուի, որուն համար Քրիստոս մե-
12 ռաւ ։ Եւ այսպէս եղբայրներուն դէմ մեղան-
չելով՝ ու անոնց տկար խղճմտանքը վիրաւորե-
13 լով՝ Քրիստոսի դէմ կը մեղանչէք ։ Ուստի եթէ
կերակուրը կը գայթակղեցնէ իմ եղբայրս, միս
պիտի չուտեմ յաւիտեան՝ որպէս զի իմ եղ-
բայրս չգայթակղեցնեմ ։

## ԳԼ. Թ

1 Առաքեալը կը ցուցնէ թէ ինք ազատ է, 7 և թէ աւետարանի պաշտօնեաները աւետարանէն պիտի ապրին. 15 սակայն ինք կամաւ հրաժարած է, 18 որպէս զի անոնց ծանրութիւն մը չըլլայ, 22 կամ որ և իցէ մէկուն գայթակղութիւն չտայ անտարբեր բաներու մէջ ։ 24 Մեր կեանքը ասպարէզի մը կը նմանի ։

1 Չէ՞ որ ես առաքեալ եմ. չէ՞ որ ես ազատ եմ.
չէ՞ որ մեր Տէր Յիսուս Քրիստոսը աչօք տեսայ.
2 չէ՞ որ դուք էք իմ գործս Տէրոջմով ։ Թէպէտ
ուրիշներուն առաքեալ չըլլամ ալ, բայց անտարակոյս
տարակոյս ձեզի եմ. վասն զի իմ առաքելու-
3 թեանս կնիքը դուք էք Տէրոջմով ։ Իմ պա-
տասխանս անոնց որ զիս կը քննեն, այս է.
4 Միթէ մենք իշխանութիւն չունի՞նք ուտելու
5 և խմելու ։ Միթէ մենք իշխանութիւն չու-
նի՞նք Քրիստոնեայ քոյր եղող կին մը մեզի հետ պտըտ-

ցընելու, ինչպէս ուրիշ առաքեալները ու Տէ-
6 րոջը եղբայրները ու Կեփաս կ'ընեն ։ Միթէ ես
ու Բառնաբա՞ս միայն իշխանութիւն չունինք
7 չգործելու ։ Ո՞վ իր ապրուստով զինուորու-
թիւն կ'ընէ. ո՞վ այգի կը տնկէ ու անոր պտու-
ղէն չուտեր. կամ ո՞վ ոչխարներ կ'արածէ ու
8 ոչխարներուն կաթէն չուտեր ։ Միթէ մարդկօ-
րէ՞ն կը գրուցեմ այս բաները, կամ չէ՞ որ օ-
9 րէնքն ալ նոյնը կը գրուցէ ։ Քանզի Մովսէսի
օրէնքին մէջ ալ գրուած է, Կալի մէջ աշխա-
տող եզին դունչը չկապես ։ Միթէ եզերո՞ւն
10 համար Աստուծոյ հոգն էր. Չէ՞ որ մանաւանդ
մեզի համար կ'ըսէ. վասն զի մեզի համար
գրուեցաւ. որովհետև ան որ կը հերկէ՝ պէտք է
որ յուսով հերկէ, և ան որ ցորենը կը ծեծէ՝
11 պէտք է որ *վայելելու յուսով" ընէ ։ Եթէ մենք
ձեզի հոգևոր բաներ սերմանեցինք, մե՞ծ բան
մըն է՝ եթէ ձեզմէ մարմնաւոր բաներ հնձենք ։
12 Եթէ ուրիշները ձեր վրայ այս իշխանութիւնը
ունին, չէ՞ որ ալ աւելի մենք. բայց մենք այս
իշխանութիւնը չգործածեցինք, հապա ամէն
բանի կը համբերենք, որպէս զի Քրիստոսի ա-
13 ւետարանին արգելք մը չըլլանք ։ Չէ՞ք գիտեր
որ տաճարին մէջ աշխատողները տաճարէն
կ'ուտեն, ու անոնք որ սեղանին պաշտօնեաներն
14 են՝ սեղանէն բաժին կ'առնեն ։ Նոյնպէս ալ
Տէրը հրաման տուաւ, որ աւետարանը քարո-
15 զողները աւետարանէն ապրին ։ Բայց ես այս
բաներուն մէ՛կը չգործածեցի, ոչ ալ այդ բա-
ները գրեցի որ ինծի այսպէս ըլլայ. քանզի
աւելի աղէկ է ինծի որ մեռնիմ, քան թէ մէկը
16 իմ պարծանքս պարապ հանէ ։ Վասն զի եթէ
ես աւետարանը քարոզեմ, ինծի պարծանք մը
չկայ, վասն զի իմ վրաս հարկ մըն է. մանա-

*Ոմանք, իր յոյսը վայելելու համար

*ւանդ վայ է ինծի՛ եթէ աւետարանը չքարո-*
17 *զեմ ։ Քանզի եթէ ասիկա կամաւ ընեմ, վարձք*
*կ՚ունենամ. իսկ եթէ ակամայ՝ այն ինծի յանձ-*
18 *նուած տնտեսութիւն մըն է ։ Ուրեմն ի՞նչ վարձք*
*կ՚ըլլայ ինծի.* այս կ՚ըլլայ *որ քարոզելու ատենս*
*Քրիստոսի աւետարանը ձրի տամ, որ չըլլայ թէ*
*աւետարանին մէջ իմ իշխանութիւնս գէշ կեր-*
19 *պով գործածեմ ։ Քանզի թէեւ ես ամէնէն*
*ազատ էի, իմ անձս ամէնուն ծառայ ըրի, որ-*
20 *պէս զի շատերը շահիմ ։ Հրեաներուն հետ*
*Հրեայի պէս եղայ՝ որպէս զի Հրեաները շահիմ.*
21 *Օրէնքի տակ եղողներուն հետ օրէնքի տակ*
*եղողի պէս եղայ, [ոչ թէ ես օրէնքի տակ էի,]*
*որպէս զի օրէնքի տակ եղողներն* ալ *շահիմ. օ-*
*րէնքի տակ չեղողներուն հետ օրէնքի տակ չե-*
*ղողի պէս եղայ, (ոչ թէ ես Աստուծմէ օրէնք*
*չունէի, հապա Քրիստոսի օրէնքին տակ էի,)*
22 *որպէս զի օրէնք չունեցողներն* ալ *շահիմ. Տկար-*
*ներուն հետ տկարի պէս եղայ, որպէս զի տկար-*
*ները շահիմ. ամէնուն հետ ամէն բան եղայ,*
23 *որ ըլլայ թէ մէկ քանիները ապրեցնեմ ։ Եւ*
*ասիկա աւետարանին համար կ՚ընեմ, որպէս զի*
24 *անոր կցորդ ըլլամ ։ Չէ՞ք գիտեր որ ասպարէ-*
*զին մէջ վազողները իրաւ կը վազեն ամէնը,*
*բայց մէկը կ՚առնէ մրցանակը. այնպէս վազե-*
25 *ցէք որ հասնիք ։ Եւ ամէն ով որ կը մրցի, ամէն*
*բանի մէջ չափաւորութիւն կը պահէ. անոնք*
*եղծանելի պսակը առնելու համար, ու մենք՝*
26 *անեղծանելին ։ Ուստի ես այնպէս կը վազեմ,*
*ոչ թէ որպէս թէ անստուգութեամբ. ես այն-*
*պէս բռնամարտութիւն կ՚ընեմ, ոչ թէ որպէս*
27 *թէ հովը ծեծելով. Բայց իմ մարմինս կը ճնշեմ*
*ու կը նուաճեմ, որպէս զի չըլլայ թէ ուրիշ-*
*ներուն քարոզելէս ետեւ՝ ես ինքս խոտելի*
*գտնուիմ ։*

## ԳԼ. Ժ

*1 Հրէից եղած բաները մեզի օրինակներ էին ։ 14 կռապաշտութենէ փախչելու ենք ։ 21 Պէտք չէ որ Տէրոջը սեղանը դեւերու սեղան ընենք ։ 24 Զգոյշ կենանք որ անտարբեր բաներու մէջ մեր եղբայրներուն գայթակղութիւն չտանք ։*

1 Չեմ ուզեր որ չգիտնաք, եղբայրներ,
որ մեր հայրերը ամէնն ալ ամպին տակ էին,
2 ու ամէնն ալ ծովէն անցան, Եւ ամէնն ալ
Մովսէսով մկրտուեցան ամպին ու ծովին մէջ,
3 Եւ ամէնն ալ նոյն հոգեւոր կերակուրը կերան,
4 Ու ամէնն ալ նոյն հոգեւոր խմելիքը խմեցին,
վասն զի կը խմէին այն հոգեւոր վէմէն որ անոնց
հետ կ'երթար. ու այն վէմը Քրիստոս էր ։
5 Բայց ոչ թէ անոնցմէ շատերուն հաճեցաւ
Աստուած, վասն զի անապատին մէջ փռուած
6 ինկան ։ Ու այն բաները մեզի օրինակ եղան,
որպէս զի չար բաներու ցանկացող չըլլանք,
7 ինչպէս անոնք ցանկացան ։ Ոչ ալ կռապաշտ
ըլլաք, ինչպէս անոնցմէ ոմանք. ինչպէս գրուած
է, Ժողովուրդը նստաւ ուտելու և խմելու, ու
8 ելան խաղալու ։ Եւ պոռնկութիւն չընենք,
ինչպէս անոնցմէ ոմանք պոռնկեցան, ու մէկ
օրուան մէջ քսանուերեք հազար հոգի ինկան ։
9 Եւ Քրիստոսը չփորձենք, ինչպէս անոնցմէ ո-
10 մանք փորձեցին, ու օձերէն ջարդուեցան ։ Եւ
տրտունջ չընէք, ինչպէս անոնցմէ ոմանք
տրտունջ ըրին, ու սատակիչէն ջարդուեցան ։
11 Բայց այս ամէն բաները իբրև օրինակ կը պա-
տահէին անոնց. իսկ մեզի, որոնց դարերուն
վերջը հասաւ, խրատ ըլլալու համար գրուեցան ։
12 Ուստի ան որ կը սեպէ թէ հաստատուն կեցած է,
13 թող զգուշանայ որ չըլլայ թէ իյնայ ։ Ձեզի
մարդկային փորձութենէ զատ ուրիշ չէ պա-
տահած. բայց Աստուած հաւատարիմ է, որ
ձեզ պիտի չթողու ձեր կարողութենէն աւելի
փորձուիլ, հապա փորձութեանը հետ ազա-

տութեան միջոց մըն ալ պիտի տայ, որպէս զի
կարող ըլլաք համբերել։
14 Անոր համար, իմ սիրելիներս, կռապաշտու-
15 թենէ փախէք։ Որպէս թէ իմաստուններու հետ
կը խօսիմ. դուք դատեցէք ինչ որ կը զրուցեմ։
16 Օրհնութեան գաւաթը զոր մենք կ'օրհնենք,
չէ՞ որ Քրիստոսի արեանը հաղորդութիւնն է.
հացը զոր մենք կը կտրենք, չէ՞ որ Քրիստոսի
17 մարմնին հաղորդութիւնն է։ Քանզի մենք շա-
տերս մէկ հաց մէկ մարմին ենք, վասն զի ա-
18 մենս ալ այն մէկ հացէն կը վայելենք։ Նայե-
ցէք մարմնաւոր Իսրայէլի. չէ՞ որ այն զոհուած-
19 ները ուտողները սեղանին հաղորդ են։ Ուրեմն
ի՞նչ կ'ըսեմ, թէ կուռքը բա՞ն մըն է, կամ թէ
20 կուռքերու զոհուածը բա՞ն մըն է։ Բայց այս
կ'ըսեմ թէ այն բաները զորոնք հեթանոսները
զոհ կ'ընեն, դեւերուն կը զոհեն ու ոչ թէ Աս-
տուծոյ. ու չեմ ուզեր որ դուք դեւերուն հա-
ղորդ ըլլաք. չէք կրնար խմել Տէրոջը գաւաթը
21 ու դեւերուն գաւաթը. Չէք կրնար վայելել Տէ-
22 րոջը սեղանէն ու դեւերուն սեղանէն։ Նախանձի՞
գրգռենք Տէրը. միթէ մենք անկէ զօրաւո՞ր ենք։
23 Ամէն բան ինծի օրինաւոր է, բայց ոչ թէ
ամէն բան օգտակար. ամէն բան ինծի օրինա-
ւոր է, բայց ոչ թէ ամէն բան շինութիւն կ'ընէ։
24 Զըլլայ որ մէկը միայն իր անձին օգուտը փնտռէ,
25 հապա իր ընկերինն ալ։ Ամէն ինչ որ սպանդա-
նոցին մէջ կը ծախուի՝ կերէք, ու քննութիւն
26 մի ընէք խղճմտանքի համար. Վասն զի երկիր
27 իր լիութիւնովը Տէրոջն է։ Եւ եթէ անհա-
ւատներէն մէկը ձեզ կերակուրի հրաւիրէ, և ու-
զէք երթալ, ամէն ինչ որ ձեր առջև դրուի՝ կե-
րէք, ու քննութիւն մի ընէք խղճմտանքի հա-
28 մար։ Այս եթէ մէկը ձեզի ըսէ թէ Ասիկա
կուռքի զոհուած է, մի ուտէք իրեն համար որ

յեղը իմացուց՝ ու խղճմտանքի համար մի ուտէք.*
29 Սակայն խղճմտանք կ'ըսեմ՝ ոչ թէ ձերը, հապա
ընկերինը ։ Բայց ինչո՞ւ իմ ազատութիւնս պիտի
30 դատուի ուրիշին խղճմտանքէն ։ Եթէ ես †շնոր-
հակալութեամբ կը վայելեմ՝ ինչո՞ւ հայհոյուիմ,
31 որու համար կը գոհանամ ։ Արդ թէ՛ ուտէք,
թէ՛ խմէք և թէ ինչ գործ որ ընէք, ամէն բան
32 Աստուծոյ փառքին համար ըրէք ։ Գայթակ-
ղութեան պատճառ մի ըլլաք՝ ոչ Հրեաներուն,
ոչ ‡Հեթանոսներուն և ոչ Աստուծոյ եկեղե-
33 ցիին ։ Ինչպէս ես ալ ամէն կերպով ամէնուն
հաճոյ կ'ըլլամ, ու չեմ փնտռեր իմ անձիս օ-
գուտը, հապա շատերունը՝ որպէս զի փրկուին ։

## ԳԼ. ԺԱ

1 Պօղոս կը յանդիմանէ Կորնթացիները որ իրենց հոգեւոր ժողովներուն մէջ այր մարդիկ գլուխնին գոց աղօթք կ'ընէին, 6 և կիները բաց գլխով, 17 և որ ընդհանրապէս իրենց ժողովները չէ թէ աղէկին՝ այլ գէշին կ'երթային, 21 ինչպէս իրենց ընթրիքներովը Տէրունական ընթրիքը կ'անարգէին ։ 25 Վերջը կը յիշեցնէ անոնց Տէրունական ընթրիքին սահմանադրութիւնը ։

1 Ինծի նմանող եղէք, ինչպէս ես ալ Քրիստոսի ։
2 Արդ ձեզ կը գովեմ, եղբայրներ, որ ամէն բանի
մէջ զիս կը յիշէք, ու ապսպրածներս կը բռնէք՝
3 ինչպէս ես ձեզի աւանդեցի ։ Բայց կ'ուզեմ որ
գիտնաք թէ ամէն այր մարդու գլուխը Քրիս-
տոս է, ու կնոջ գլուխը՝ այր մարդը, և Քրիս-
4 տոսի գլուխը՝ Աստուած ։ Ամէն այր մարդ որ
գլուխը գոց աղօթքի կը կայնի կամ մարգա-
րէութիւն կ'ընէ, անպատիւ կ'ընէ իր գլուխը ։
5 Եւ ամէն կին որ գլուխը բաց աղօթքի կը կայնի
կամ մարգարէութիւն կ'ընէ, անպատիւ կ'ընէ
իր գլուխը. վասն զի միևնոյն բան կը սեպուի որ-
6 պէս թէ ածիլուած էր ։ Վասն զի եթէ կինը
չծածկուիր, թող իր մազերն ալ կտրէ. իսկ
եթէ ամօթ է կնոջ մը իր մազերը կտրել կամ

*Ոմանք կ'աւելցնեն, վասն զի երկիր իր լիութիւնովը Տէրոջն է ։ †Կամ, շնորհքով ‡Յուն. Յոյներուն

7 ածկուիլ, թող ծածկուի։ Այր մարդու պէտք
չէ իր գլուխը ծածկել, վասն զի Աստուծոյ
պատկերը ու փառքն է. բայց կինը իր էրկանը
8 փառքն է։ Քանզի ոչ թէ այր մարդը կնոջմէն
9 է, հապա կինը՝ այր մարդէն։ Վասն զի այր
մարդը չստեղծուեցաւ կնոջը համար, հապա
10 կինը՝ էրկանը համար։ Այս պատճառաւ պէտք
է որ կինը իր գլխուն *շուք դնէ հրեշտակնե-
11 րուն համար։ Բայց ոչ կինը առանց այր մարդու
կ՚ըլլայ, ու ոչ այր մարդը առանց կնոջ՝ Տէրոջ-
12 մով։ Վասն զի ինչպէս կինը այր մարդէն է,
նոյնպէս այր մարդը կնոջ միջոցաւ, բայց ամէնը
13 Աստուծմէ։ Դուք ձեզմէ դատեցէք. կը վայլէ՞
կին մարդու գլուխը բաց աղօթքի կայնիլ Աս-
14 տուծոյ առջեւ. Չէ՞ որ բնութիւնն ալ կը սոր-
վեցնէ ձեզի որ այր մարդ մը եթէ երկար մա-
15 զերով է, իրեն անարգանք է. Բայց կինը եթէ
երկար մազերով է, իրեն փառք է. վասն զի
16 մազերը ծածկոցի տեղ տրուած են իրեն։ Սա-
կայն եթէ մէկը հակառակող ըլլալ կ՚ուզէ,
մենք այնպիսի սովորութիւն չունինք, ոչ ալ
Աստուծոյ եկեղեցիները։
17 Բայց զայս պատուիրելով ձեզ չեմ գովեր,
վասն զի ձեր ժողվուիլը ոչ թէ աղէկ՝ հապա
18 գէշ արդիւնք կ՚ունենայ։ Քանզի նախ՝ երբ
մէկտեղ կը ժողվուիք եկեղեցիին մէջ, կը լսեմ
որ բաժանմունքներ կան ձեր մէջ, և ըստ
19 մասին կը հաւատամ։ Վասն զի հարկաւ ձեր
մէջ հերձուածողութիւններ ալ պիտի ըլլան,
որպէս զի ձեր մէջ եղող ընտիրները երեւան։
20 Ուստի դուք որ մէկտեղ կը ժողվուիք, անիկա
21 Տէրունական ընթրիքը ուտել չէ. Վասն զի ու-
տելու ատեն ամէն մէկը առաջ իր ընթրիքը
կ՚առնէ. ու մէկը անօթի կը մնայ ու միւսը

*Յուն. իշխանութիւն

22 կը գինովնայ։ Մի՞թէ ուտելու և խմելու համար
տուն չունի՞ք, կամ թէ Աստուծոյ եկեղեցի՞ն
կ'անարգէք, և ամօթով կ'ընէք չքաւորները.
ձեզի ի՞նչ ըսեմ, ձեզ գովե՞մ. այդ բանին մէջ
23 չեմ գովեր։ Վասն զի ես Տէրոջմէն ընդունեցի
զայն որ ձեզի ալ աւանդեցի՝ թէ Տէր Յիսուս
24 իր մատնուած գիշերը հաց առաւ. Եւ գոհա-
նալով՝ կտրեց ու ըսաւ, Առէ՛ք — կերէ՛ք, այս է
իմ մարմինս որ ձեզի համար կը կտրուի. ասիկա
25 ըրէ՛ք զիս յիշելու համար։ Նոյնպէս ալ գա-
ւաթը ընթրիքէն ետև —— ու ըսաւ, Այս գա-
ւաթը նոր ուխտ է իմ արիւնովս. ասիկա ըրէ՛ք
քանի անգամ որ խմելու ըլլաք՝ զիս յիշելու
26 համար։ Վասն զի քանի անգամ որ այս հացը
ուտէ՛ք ու այս գաւաթը խմէ՛ք, Տէրոջը մահը
27 կը պատմէ՛ք՝ մինչև ինք գայ։ Ուստի ով որ այս
հացը ուտէ կամ Տէրոջը գաւաթը խմէ անար-
ժանաբար, պարտական պիտի ըլլայ Տէրոջը
28 մարմնին և արիւնին։ Ուրեմն թող մարդ իր
անձը փորձէ, ու այնպէս այն հացէն ուտէ և
29 այն գաւաթէն խմէ։ Վասն զի ան որ անար-
ժանաբար կ'ուտէ ու կը խմէ, իր անձին դա-
տապարտութիւնը կ'ուտէ ու կը խմէ, վասն զի
30 Տէրոջը մարմինը չորոշեր։ Ասոր համար ձեր մէջ
շատ հիւանդներ ու ցաւագարներ կան, և շա-
31 տեր ալ կը ննջեն։ Վասն զի եթէ ինքզինքնիս
32 դատելու ըլլայինք, պիտի չդատուէինք։ Իսկ
երբ կը դատուինք, Տէրոջմէ կը խրատուինք,
որպէս զի աշխարհի հետ չդատապարտուինք։
33 Ուստի, իմ եղբայրներս, երբ մէկտեղ կը ժող-
34 վուիք ուտելու, իրարու սպասեցէք։ Իսկ եթէ
մէկը անօթի է՝ թող իր տունը մէջ ուտէ, որ
չըլլայ թէ դատապարտութեան համար ժող-
վուիք։ Եւ ուրիշ բաները յետոյ եկած ատենս
պիտի պատուիրեմ։

## ԳԼ. ԺԲ

1 Հոգեւոր պարգեւները 4 զանազան են, 7 բայց ամէնն ալ օգուտի համար են. 8 Եւ միեւնոյն վախճանի համար զանազան պարգեւներ տրուած են։ 12 Ինչպէս որ բնական մարմնի մը անդամները այն նոյն մարմնին 16 վայելչութեանը, 22 ծառայութեանը 26 և օգուտին համար իրարու հետ միացած՝ իրարու օգնութիւն կ'ընեն, 27 նմանապէս մենք ալ իրարու ընելու ենք՝ Քրիստոսի խորհրդաւոր մարմինը կազմելու համար։

1 Բայց Հոգեւոր պարգեւներուն վրայով չեմ ուզեր,
2 եղբայրներ, որ չգիտցող ըլլաք։ Դուք գիտէք
որ երբ հեթանոս էիք, մունջ կուռքերուն կը
3 տարուէիք՝ ինչպէս կ'առաջնորդուէիք։ Ուստի
ըսյս ձեզի կ'իմացնեմ թէ մէկը չըլլար որ Աս-
տուծոյ Հոգիովը խօսի՝ ու Յիսուսը նզովեալ
կոչէ. և մէկն ալ չկրնար Յիսուսը Տէր կոչել՝
4 եթէ ոչ Հոգւով Սրբով։ Եւ պարգեւները զա-
5 նազան են, բայց նոյն Հոգին է։ Նաև պաշտօն-
6 ները զանազան են, բայց նոյն Տէրն է։ Նոյն-
պէս ներգործութիւնները զանազան են, բայց
նոյն Աստուածն է՝ որ կը ներգործէ ամէնը
7 ամէն բանի մէջ։ Բայց ամէն մէկուն Հոգւոյն
յայտնութիւնը տրուած է օգուտի համար։
8 Մէկուն՝ Հոգիով իմաստութեան խօսք տրուած
է, ուրիշին գիտութեան խօսք՝ նոյն Հոգիին
9 տրուած չափովը. Միւսին հաւատք՝ նոյն Հոգիով.
ուրիշին բժշկութեան պարգեւներ՝ նոյն Հոգիով.
10 Ուրիշին՝ հրաշագործութիւններ, ուրիշին՝ մար-
գարէութիւն, ուրիշին՝ հոգիներու ընտրու-
թիւն, ուրիշին՝ զանազան լեզուներ, ուրիշին՝
11 լեզուներու թարգմանութիւն։ Բայց զայս
ամէնը միեւնոյն Հոգին կը ներգործէ, և ամէն
մէկուն զատ զատ կը բաժնէ՝ ինչպէս կ'ուզէ։
12 Քանզի ինչպէս մարմինը մէկ է ու շատ ան-
դամներ ունի, և *այն մարմինին բոլոր անդամ-
ները, որոնք շատ են, մէկ մարմին են, նոյն-

*Ոմանք, այն մէկ

13 պէս Քրիստոս ալ ։ Վասն զի մենք ամէնս մէկ
Հոգիով մէկ մարմին ըլլալու մկրտուեցանք,
թէ՛ Հրեաներ, թէ՛ հեթանոսներ, թէ՛ ծառա-
ներ, թէ՛ ազատներ, և ամէնս ալ մէկ Հոգիէ
14 խմեցինք ։ Վասն զի մարմինը մէկ անդամ չէ,
15 հապա շատ ։ Եթէ ոտքը ըսէ, Որովհետև ես
ձեռք չեմ՝ մարմինէն չեմ, ոչ թէ անով այն
16 մարմինէն չէ ։ Եւ եթէ ականջը ըսէ, Որովհետև
ես աչք չեմ՝ մարմինէն չեմ, ոչ թէ անով այն
17 մարմինէն չէ ։ Եթէ բոլոր մարմինը աչք ըլլար,
լսելիքը ո՞ւր պիտի ըլլար ․ և եթէ բոլորը լսելիք
18 ըլլար, ո՞ւր պիտի ըլլար հոտոտելիքը ։ Բայց
հիմա Աստուած անդամները դրաւ՝ անոնց ամէն
19 մէկը մարմինին մէջ, ինչպէս ինք ուզեց ։ Արդ
եթէ ամէնը մէկ անդամ ըլլար, մարմինը ո՞ւր
20 պիտի ըլլար ։ Բայց հիմա անդամները շատ են,
21 ու մարմինը՝ մէկ ։ Չկրնար աչքը ըսել ձեռքին
թէ Դուն ինծի պէտք չես ․ և ոչ դարձեալ
22 գլուխը ոտքերուն՝ թէ Ինծի պէտք չէք ։ Մա-
նաւանդ մարմինին այն անդամները որոնք շատ
23 տկար կ'երևան, աւելի հարկաւոր են ․ Ու մարմի-
նին այն անդամները զորոնք յաւէտ անպատիւ ըլլալ
կը սեպենք, անոնց վրայ աւելի պատիւ կը դնենք ․
ու այպանելի մեր անվայելուչ անդամները աւելի վայել-
24 չութիւն ունին ։ Ու մեր վայելուչ անդամներուն
բան մը պէտք չէ ․ բայց Աստուած մարմինը
բարեխառնեց, ու պակասութիւն ունեցողին
25 աւելի պատիւ տուաւ, Որպէս զի մարմինին մէջ
երկպառակութիւն չըլլայ, հապա անդամները
26 միևնոյն հոգը ունենան իրարու վրայ ։ Եւ եթէ
մէկ անդամը նեղութիւն կրէ, բոլոր անդամ-
ները կը նեղուին անոր հետ ․ և եթէ փառա-
ւորուի մէկ անդամը, բոլոր անդամները կ'ու-
27 րախանան անոր հետ ։ Արդ, դուք Քրիստոսի
մարմինն էք, ու մասնաւորապէս անոր անդամ-

28 ները ։ Եւ Աստուած եկեղեցիին մէջ դրաւ մէկ
քանիները, նախ՝ առաքեալներ, երկրորդ՝ մար-
գարէներ, երրորդ՝ վարդապետներ, ետքը
հրաշքներ, ետքը բժշկութիւններու պարգե-
ւներ, օգնութիւններ, կառավարութիւններ, լե-
29 զուներու տեսակներ ։ Միթէ ամէնը առաքեալ-
նե՞ր են. միթէ ամէնը մարգարէնե՞ր են. միթէ
ամէնը վարդապետնե՞ր են. միթէ ամէնը
30 հրաշքնե՞ր կը գործեն. Միթէ ամէնը բժշկութեան
պարգեւնե՞ր ունին. միթէ ամէնը լեզունե՞ր
կը խօսին. միթէ ամէնը թարգմանութի՞ւն
կ'ընեն ։
31 Բայց դուք նախանձաւոր եղէք այն շնորհք-
ներուն որոնք լաւագոյն են. և ես՝ ալ աւելի
աղէկ ճամբայ մը կը ցուցնեմ ձեզի ։

## ԳԼ. ԺԳ

1 Առաքեալը կը ցուցնէ թէ ամէն տեսակ պարգեւները 2 ո՛րչափ ազնիւ և գերազանց ըլլան, առանց սիրոյ ոչինչ են ։ 4 Սիրոյ գովութիւնները, 13 և յոյսէն ու հաւատքէն նախամեծար ըլլալը ։

1 Եթէ մարդոց ու հրեշտակներուն լեզուները
խօսիմ, և սէր չունենամ, ես ձայն տուող
պղինձ մը եղայ, կամ հնչեցող ծնծղաներու
2 պէս ։ Եւ եթէ մարգարէութիւն ունենամ, ու
հասկնամ ամէն խորհուրդները ու ամէն գի-
տութիւնը, և եթէ ունենամ ամէն հաւատքը
մինչեւ լեռները տեղափոխելու, ու սէր չունե-
3 նամ, ոչինչ եմ ։ Եւ եթէ իմ բոլոր ստացուածքս
աղքատներուն կերցնեմ, ու իմ մարմինս այրուելու
տամ, և սէր չունենամ, օգուտ մը չեմ ունե-
4 նար ։ Սէրը երկայնամիտ է, քաղցր է. սէրը
չնախանձիր, սէրը չգոռոզանար, չհպարտանար,
5 Անվայել վարմունք չունենար, իրենը չփնտռեր,
բարկութեան չգրգռուիր, չարութիւն չխոր-
6 հիր, Անիրաւութեան վրայ չխնդար, հապա

7 ճշմարտութեան խնդակից կ՚ըլլայ։ Ամէն բանի
կը զիջանի, ամէն բանի կը հաւատայ, ամէն
բանի կը յուսայ, ամէն բանի կը համբերէ։
8 Սէրը բնաւ չիյնար. բայց եթէ մարգարէու-
թիւններ ըլլան՝ պիտի խափանուին, եթէ լեզու-
ներ՝ պիտի դադարին, եթէ գիտութիւն՝ պիտի
9 խափանուի։ Վասն զի շատէն քիչը գիտենք, ու
10 շատէն քիչը կը մարգարէանանք. Բայց երբ կա-
տարեալը գայ, այն ատեն շատէն քիչը պիտի
11 խափանուի։ Երբ տղայ էի, տղայի պէս կը խօսէի,
տղայի պէս կը խորհէի, տղայի պէս համարում
ունէի. բայց երբ այր եղայ, տղայութեան բա-
12 ները մէկդի ձգեցի։ Քանզի հիմա մենք որ-
պէս թէ հայելիի մէջ կը տեսնենք անյայտ կեր-
պով, բայց այն ատեն երես առ երես. հիմա
շատէն քիչ մը տեղեակ եմ, բայց այն ատեն
այնպէս պիտի ճանչնամ՝ ինչպէս ճանչցուեցայ։
13 Ուստի հիմա կը մնայ հաւատք, յոյս, սէր, այս
երեքը. ու անոնց մեծագոյնը սէրն է։

## ԳԼ. ԺԴ

1 Պօղոս կը գովէ մարգարէութիւն ընելը, 2 և լեզուներ խօսելէն աւելի յարգի կը համարի զանիկա՝ 6 նուագարանի ձայնը օրինակ բերելով. 12 կը ցուցնէ թէ երկուքն ալ պէտք է որ եկեղեցիին օգուտին համար ըլլան, 22 որ է իրենց ճշմարիտ և սեպհական վախճանը. 26 կը սորվեցնէ թէ անոնց ամէն մէկը ի՛նչպէս պէտք է գործածել։ 34 կանանց հրաման չկայ եկեղեցւոյ մէջ խօսելու։

1 Սիրոյ ետեւէն գացէք, ու հոգեւոր պարգեւներուն
նախանձաւոր եղէք, մանաւանդ մարգարէու-
2 թիւն ընելու։ Վասն զի ան որ օտար լեզուով
կը խօսի՝ ոչ թէ մարդոց կը խօսի, հապա Աս-
տուծոյ. վասն զի մէկը չկայ որ իմանայ, բայց
3 անիկա հոգիով խորհուրդներ կը խօսի։ Սակայն
ան որ կը մարգարէանայ, մարդոց կը խօսի՝ շի-
նութիւն ու յորդորանք և մխիթարութիւն տա-
4 լու։ Ան որ օտար լեզուով կը խօսի՝ իր անձին շի-
նութիւն կ՚ընէ, ու ան որ կը մարգարէանայ՝

5 եկեղեցիին շինութիւն կ'ընէ ։ Կ'ուզեմ որ դուք
ամէնդ լեզուներ խօսիք , բայց մանաւանդ որ
մարգարէութիւն ընէք , վասն զի աւելի աղէկ է
ան՝ որ կը մարգարէանայ , քան թէ ան՝ որ լե-
զուներ կը խօսի ․ միայն եթէ թարգմանելու
ըլլայ , որպէս զի եկեղեցին շինութիւն առնէ ։
6 Եւ հիմա , եղբայրներ , եթէ ես ձեզի գամ
լեզուներ խօսելով , ի՞նչ օգուտ պիտի ընեմ
ձեզի՝ եթէ չխօսիմ ձեզի կա՛մ յայտնութիւ-
նով , կա՛մ գիտութիւնով , կա՛մ մարգարէու-
7 թիւնով , կա՛մ վարդապետութիւնով ։ Եւ ձայն
տուող անկենդան բաները անգամ , թէ՛ սրինգ
և թէ՛ քնար , եթէ ձայներու զանազանութիւն
չընեն , ի՞նչպէս պիտի ճանչցուի սրինգով կամ
8 քնարով հնչուածը ։ Վասն զի եթէ փողն ալ
անորոշ ձայն հանէ , ո՞վ պիտի պատրաստուի
9 պատերազմի ։ Նոյնպէս դուք ալ եթէ լեզուով
բացայայտ խօսք չըրուցէք , խօսուածը ի՞նչպէս
պիտի հասկցուի ․ վասն զի օդին խօսողներ պիտի
10 ըլլաք ։ Աշխարհի մէջ այնքան տեսակ
ձայներ կան , և անոնց մէ՛կը առանց նշանակու-
11 թեան չէ ։ Ուստի եթէ այն ձայնին զօրու-
թիւնը չգիտնամ , ես խօսողին բարբարոս մը
պիտի ըլլամ , խօսողն ալ ինծի բարբարոս մը
12 պիտի ըլլայ ։ Նոյնպէս դուք ալ որովհետև հո-
գևոր պարգևներու նախանձաւոր էք , եկեղեցիին
շինութեանը համար խնդրեցէք որ աւելնաք
13 նոյն պարգևներովը ։ Անոր համար ան որ օտար լեզուով
կը խօսի , աղօթք թող ընէ որ թարգմանէ ալ ։
14 Քանզի եթէ ես աղօթք ընեմ օտար լեզուով ,
իմ հոգիս աղօթք կ'ընէ , բայց միտքս անպտուղ
15 է ։ Ուրեմն ի՞նչ է ․ աղօթք ընեմ հոգիով , ա-
ղօթք ընեմ մտաւորութեամբ ալ ․ սաղմոս եր-
գեմ հոգիով , սաղմոս երգեմ մտաւորութեամբ
16 ալ ։ Ապա թէ ոչ՝ եթէ դուն հոգիով օրհնու-

թիւն ընես, անիկա որ տգէտի տեղ կայներ է,
ի՞նչպէս Ամէն պիտի ըսէ քու գոհութիւն տա-
լու ատենդ. վասն զի ան քու ըսածդ չիմա-
17 նար: Թէպէտ դուն աղէկ գոհութիւն կ՚ընես,
18 բայց միւսը շինութիւն չառներ: *Աստուծմէ
կը գոհանամ որ ձեր ամէնէն աւելի լեզունե-
19 րով կը խօսիմ. Բայց եկեղեցիին մէջ կ՚ուզեմ
հինգ խօսք մտաւորութեամբ խօսիլ, որպէս զի
ուրիշներուն ալ սորվեցնեմ, քան թէ բիւրա-
ւոր խօսքեր օտար լեզուով:
20 Եղբայրներ, միտքով տղաք մի ըլլաք, հապա
չարութիւն գիտնալու կողմէ տղաք եղէք, ու միտքով
21 չափահաս եղէք: Օրէնքին մէջ գրուած է թէ
Օտար լեզուներով ու օտար շրթունքներով այս
ժողովուրդին հետ պիտի խօսիմ, սակայն և
այնպէս ինծի մտիկ պիտի չընեն, կ՚ըսէ Տէրը:
22 Ուրեմն լեզուները նշանի համար են՝ ոչ թէ հա-
ւատացեալներուն, հապա անհաւատներուն,
բայց մարգարէութիւնը ոչ թէ անհաւատնե-
23 րուն, հապա հաւատացեալներուն: Արդ եթէ
բոլոր եկեղեցին մէկտեղ գայ, ու ամէնն ալ
օտար լեզուներով խօսելու ըլլան, և հոն մտնեն
տգէտներ կամ անհաւատներ, պիտի չըսե՞ն թէ
24 դուք խենթեցեր էք: Իսկ եթէ ամէնն ալ մար-
գարէանան, ու հոն անհաւատ մը կամ տգէտ մը
մտնէ, ամէնէն ալ կը յանդիմանուի, ամէնէն ալ
25 կը քննուի, Ու անոր սրտին ծածուկ բաները
յայտնի կ՚ըլլան, և այսպէս երեսի վրայ ինկած՝
Աստուծոյ երկրպագութիւն պիտի ընէ, ու խոս-
տովանի թէ իրաւցընէ Աստուած ձեր մէջ է:
26 Ուստի ի՞նչ է, եղբայրներ. երբ մէկտեղ
կը ժողվուիք, ձեզմէ ամէն մէկը սաղմոս ունի,
վարդապետութիւն ունի, լեզու ունի, յայտ-
նութիւն ունի, թարգմանութիւն ունի. ամէնը

*Ոմանք, Իմ Աստուծմէս

27 շինութեան համար թող ըլլայ։ Եթէ մէկը
օտար լեզու կը խօսի, երկու հոգի, և թէ շատը՝
երեք թող ըլլան, և այն ալ՝ մէկիկ մէկիկ, ու
28 մէկը թող թարգմանէ։ Բայց եթէ թարգմա-
նող չըլլայ, եկեղեցիին մէջ լուռ թող կենայ,
29 և ինքնիրեն ու Աստուծոյ թող խօսի։ Իսկ
մարգարէները երկու կամ երեք հոգի թող
խօսին, ու միւսները թող քննութիւն ընեն։
30 Իսկ եթէ նստողներէն ուրիշ մէկուն ալ բան մը
31 յայտնուելու ըլլայ, առաջինը թող լռէ։ Վասն
զի ամէնքդ ալ կրնաք մէկիկ մէկիկ մարգարէա-
նալ, որպէս զի ամէնն ալ սորվին ու ամէնն ալ
32 մխիթարուին։ Եւ մարգարէներուն հոգիները
33 մարգարէներուն հնազանդ են։ Վասն զի Աստ-
ուած խռովութեան Աստուած չէ, հապա խա-
ղաղութեան, ինչպէս սուրբերուն բոլոր եկե-
ղեցիներուն մէջ։
34 Ձեր կիները եկեղեցիներուն մէջ լուռ կե-
նան, վասն զի անոնց հրաման չկայ խօսելու,
հապա հնազանդ ըլլալու, ինչպէս օրէնքն ալ
35 կ՚ըսէ։ Բայց եթէ բան սորվիլ կ՚ուզեն, տունը
իրենց այրերուն թող հարցնեն. քանզի կիներ-
36 րուն անվայել է եկեղեցիի մէջ խօսիլ։ Միթէ
Աստուծոյ խօսքը ձեզմէ՞ ելաւ, կամ թէ միայն
37 ձեզի՞ հասաւ։ Եթէ մէկը կը կարծէ թէ ինք
մարգարէ է, կամ հոգևոր, թող հաստատ գիտ-
նայ թէ ինչ որ ձեզի գրեցի՝ Տէրոջը պատուէր-
38 ներն են. Բայց եթէ մէկը տգէտ է՝ թող տգէտ
39 ըլլայ։ Ուստի, եղբայրներ, մարգարէութիւն
ընելու նախանձաւոր եղէք, ու լեզուներ խօ-
40 սելն ալ մի արգիլէք։ Եւ ամէն բան վայելչու-
թեամբ և կարգաւ թող ըլլայ։

## ԳԼ. ԺԵ

1 Առաքեալը Քրիստոսի յարութեամբ 12 կը ցուցնէ մեր յարութեան ստուգութիւնը, մարմինին յարութեան չհաւատացողներուն դէմ. 21 կը ցուցնէ յարութեան պտուղը 35 ու եղանակը, 51 և թէ ի՛նչպէս պիտի փոխուին անոնք որ կենդանի կը մնան վերջին օրը։

1 Եղբայրներ, ձեզի կ՚իմացնեմ այն աւետարանը
զոր ես ձեզի քարոզեցի, զոր նաև ընդունե-
2 ցիք ու անոր վրայ հաստատուած էք. Որով
կը փրկուիք ալ, եթէ ամուր բռնէք այն խօսքը
զոր ես ձեզի քարոզեցի, միայն եթէ պարապ
3 տեղ հաւատացած չէք։ Վասն զի ամենէն առաջ
ես ձեզի աւանդեցի զանիկա, զոր ես ալ ըն-
դունեցի, թէ Քրիստոս մեր մեղքերուն համար
4 մեռաւ, գիրքերուն գրածին համեմատ, Եւ թէ
թաղուեցաւ ու յարութիւն առաւ երրորդ օրը,
5 գիրքերուն գրածին համեմատ, Եւ թէ երևցաւ
6 Կեփասի, ու ետքը տասներկուքին. Ետքը
հինգ հարիւրէ աւելի եղբայրներուն մէկտեղ
երևցաւ, որոնցմէ շատերը մինչև հիմա կան,
7 և ոմանք ալ ննջեցին. Ու ետքը երևցաւ Յակո-
8 բոսի, ետքը բոլոր առաքեալներուն։ Ամենէն
ետքը որպէս թէ վիժածի մը՝ ինծի ալ երևցաւ։
9 Վասն զի ես առաքեալներուն ամենէն յետինն
եմ, որ արժանի ալ չեմ առաքեալ ըսուելու,
10 վասն զի Աստուծոյ եկեղեցին հալածեցի։ Միայն
թէ Աստուծոյ շնորհքովն եմ՝ ինչ որ եմ. և
անոր շնորհքը որ իմ վրաս է, պարապ բան մը
չեղաւ, հապա ես անոնց ամենէն աւելի աշխա-
տեցայ. և ոչ թէ ես, հապա Աստուծոյ շնորհքը
11 որ ինծի հետ էր։ Ուստի թէ՛ ես և թէ՛ անոնք
այսպէս կը քարոզենք, ու դուք այսպէս հա-
ւատացիք։
12 Ուրեմն եթէ Քրիստոս կը քարոզուի, որ մե-
ռելներէն յարութիւն առած է, ի՞նչպէս ձեզմէ
մէկ քանիները կ՚ըսեն թէ Մեռելներու յա-

13 րութիւն չկայ։ Եթէ մեռելներու յարութիւն
չկայ, ուրեմն Քրիստոս ալ յարութիւն առած
14 չէ։ Եւ եթէ Քրիստոս յարութիւն առած չէ,
ուրեմն մեր քարոզութիւնը պարապ է, ու ձեր
15 հաւատքն ալ պարապ է. Եւ մենք ալ Աստու-
ծոյ սուտ վկաները գտնուած կ՚ըլլանք. որով-
հետեւ Աստուծոյ համար վկայութիւն տուինք,
թէ Ինք մեռելներէն յարուց Քրիստոսը. որ իրաւ
չյարուց զանիկա, եթէ մեռելները յարութիւն
16 չեն առներ. Քանզի եթէ մեռելները յարու-
թիւն չեն առներ, Քրիստոս ալ յարութիւն
17 առած չէ. Եւ եթէ Քրիստոս յարութիւն ա-
ռած չէ, ձեր հաւատքը պարապ է, ու տակա-
18 ւին ձեր մեղքերուն մէջ էք. Նոյնպէս Քրիս-
19 տոսով ննջողներն ալ կորսուած են։ Եթէ միայն
այս կեանքին համար Քրիստոսի յուսացած ենք,
մենք բոլոր մարդոցմէն աւելի խղճալի ենք։
20 Բայց հիմա Քրիստոս մեռելներէն յարութիւն
առած է, ննջեցեալներուն առաջին պտուղը։
21 Քանզի որովհետեւ մարդով եղաւ մահը, մար-
22 դով ալ մեռելներու յարութիւնը։ Վասն զի
ինչպէս Ադամով ամէնը կը մեռնին, նոյնպէս ալ
23 Քրիստոսով ամէնը կենդանի պիտի ըլլան. Բայց
ամէն մէկը իր կարգովը, առաջին պտուղը Քրիս-
տոս, ետքը Քրիստոսինները՝ իր գալու ատենը.
24 Անկէ ետեւ հոն գայ վախճանը, երբ թագաւորու-
թիւնը պիտի տայ Աստուծոյ ու Հօրը ձեռքը,
երբ խափանէ ամէն իշխանութիւնը եւ ամէն
25 պետութիւնը ու զօրութիւնը։ Վասն զի անոր
պէտք է թագաւորութիւն ընել՝ մինչեւ բոլոր
26 թշնամիները իր ոտքերուն տակ դնէ։ Վերջին
թշնամին որ պիտի խափանի՝ մահն է. վասն զի
Գիրքը կ՚ըսէ, Ամէն բան անոր ոտքերուն տակ հնա-
27 զանդեցուց. Բայց երբ կ՚ըսէ թէ Ամէն բան
անոր հնազանդած է, յայտնի է թէ բաց ի

28 *անկէ՝ որ ամէնը անոր հնազանդեցուց ։ Ու երբ*
*ամէնը անոր հնազանդ ըլլայ, այն ատեն Որդին*
*ինք ալ պիտի հնազանդի անոր՝ որ իրեն հնա-*
*զանդեցուց ամէնը, որպէս զի Աստուած ըլլայ*
29 *ամէնը ամէն բանի մէջ ։ Ապա թէ ոչ՝ ի՞նչ պիտի*
*ընեն անոնք որ մեռելներուն համար կը մկրը-*
*տուին, եթէ մեռելները բնաւ յարութիւն*
*չառնեն. ինչո՞ւ ուրեմն անոնց համար կը մկրը-*
30 *տուին. Ինչո՞ւ համար մենք ալ վտանգի մէջ*
31 *կը մտնենք ամէն ժամ ։ Վկայ կը բերեմ այն*
*պարծանքը՝ զոր ձեր վրայ ունիմ Քրիստոս Յի-*
*սուս մեր Տէրոջմով, որ ես ամէն օր կը մեռնիմ ։*
32 *Եթէ Եփեսոսի մէջ մարդոց նման գազաններու*
*հետ մարտնչեցայ, ի՞նչ օգուտ է *ինծի, եթէ*
*մեռելները յարութիւն չառնեն. ուտենք ու*
33 *խմենք, վասն զի վաղը կը մեռնինք ։ Մի խաբուիք.*
*չար ընկերակցութիւնները աղէկ բարքը կ'ա-*
34 *պականեն ։ Արդարութիւնով զգաստացէք ու*
*մեղք մի գործէք, վասն զի ձեզմէ ոմանք Աստու-*
*ծոյ գիտութիւնը չունին. ձեզ ամչցնելու հա-*
*մար կը զրուցեմ ։*
35 *Բայց պիտի ըսէ մէկը թէ Ի՞նչպէս մեռել-*
*ները յարութիւն կ'առնեն, կամ թէ ի՞նչ մարմ-*
36 *նով կու գան ։ Անմիտ, անիկա զոր դուն կը սեր-*
37 *մանես, եթէ չմեռնի՝ չկենդանանար. Ու այն*
*զոր կը սերմանես, ոչ թէ այն մարմինը որ պիտի*
*բուսնի՝ կը սերմանես, հապա մերկ հատ մը՝*
38 *թէ՛ ցորենի ըլլայ և թէ՛ մէկ ուրիշ սերմի. Ու*
*Աստուած անոր մարմին կու տայ ինչպէս կ'ուզէ,*
39 *և ամէն մէկ սերմին իր յատուկ մարմինը ։ Ամէն*
*մարմին մէկ մարմին չէ. հապա մարդոց մար-*
*մինը ուրիշ է, ու անասուններուն մարմինը ու-*
*րիշ, ձուկերունն ալ ուրիշ, և թռչուններունը*
40 *ուրիշ ։ Երկնաւոր մարմիններ ալ կան, երկրա-*

*կամ, ինծի. եթէ մեռելները յարութիւն չառնեն, ուտենք, ևն.

ւոր մարմիններ ալ, բայց երկնաւորներուն փառքը
41 ուրիշ է, ու երկրաւորներունը ուրիշ։ Արեւուն
փառքը ուրիշ է, ու լուսնին փառքը ուրիշ, և
աստղերուն փառքը ուրիշ. ու մէկ աստղը միւս
42 աստղէն տարբեր է փառքով։ Այսպէս է մե֊
ռելներուն յարութիւնն ալ. մարմինը ապականու֊
թիւնով կը սերմանուի, ու անապականութիւ֊
43 նով յարութիւն կ՚առնէ. Անարգութիւնով
կը սերմանուի, ու փառքով յարութիւն կ՚առնէ.
տկարութիւնով կը սերմանուի, ու զօրութիւ֊
44 նով յարութիւն կ՚առնէ. Կը սերմանուի շնչա֊
ւոր մարմին, և յարութիւն կ՚առնէ հոգեւոր
մարմին. շնչաւոր մարմին կայ, հոգեւոր մարմին
45 ալ կայ։ Եւ այսպէս գրուած է, Առաջին մարդը
Ադամ կենդանի շունչ եղաւ, վերջին Ադամը՝
46 կենդանարար հոգի։ Բայց ոչ թէ առաջ հոգե֊
47 ւորը, հապա շնչաւորը, ու ետքը հոգեւորը։ Առա֊
ջին մարդը երկրէ է՝ հողեղէն, բայց երկրորդ
48 մարդը Տէր է՝ երկինքէ։ Ինչպէս էր հողեղէնը՝
նոյնպէս ալ հողեղէնները, ու ինչպէս երկնա֊
49 ւորը՝ նոյնպէս ալ երկնաւորները. Եւ ինչպէս
հողեղէնին կերպարանքը հագեր ենք, երկնա֊
50 ւորին կերպարանքն ալ պիտի հագնինք։ Բայց
զայս կ՚ըսեմ, եղբայրներ, որ մարմին ու արիւն
Աստուծոյ թագաւորութիւնը չեն կրնար ժա֊
ռանգել. ոչ ալ ապականութիւնը կը ժառանգէ
անապականութիւն։

51 Ահա ձեզի խորհուրդ մը կը գրուցեմ. Ամէնս
պիտի չննջենք, բայց ամէնս ալ պիտի փոխուինք,
52 Յանկարծակի աչքի գոցել բանալու մէջ՝ վերջին
փողին հնչուելու ատենը. որովհետև փողը պիտի
հնչուի, ու մեռելները յարութիւն պիտի առ֊
նեն առանց ապականութեան, և մենք ալ պիտի
53 փոխուինք։ Վասն զի պէտք է որ այս ապակա֊
նացու մարմինը անապականութիւն հագնի, ու այս

54 մահկանացուն անմահութիւն հագնի ։ Բայց երբ
այս ապականացու մարմինը անապականութիւն
հագնի, և այս մահկանացուն անմահութիւն
հագնի, այն ատեն պիտի կատարուի այն խօսքը
որ գրուեցաւ թէ Մահը յաղթութեան մէջ
55 ընկղմեցաւ ։ Ո՞ւր է, ով մահ, քու խայթոցդ.
ո՞ւր է, ով գերեզման, քու յաղթութիւնդ ։
56 Մահուան խայթոցը մեղքն է, ու մեղքին ոյժը՝
57 օրէնքը ։ Բայց գոհութիւն Աստուծոյ, որ մեզի
յաղթութիւն կու տայ մեր Տէր Յիսուս Քրիս-
58 տոսի ձեռքով ։ Ուստի, իմ սիրելի եղբայրներս,
հաստատ եղէք, անշարժ կեցէք և ամէն ատեն
աւելցէք Տէրոջը գործին մէջ, գիտնալով որ
ձեր աշխատութիւնը պարապ չէ Տէրոջմով ։

## ԳԼ. ԺԶ

1 Առաքեալը կը յորդորէ Կորնթացիները որ Երուսաղէմի եղբայրներուն կարօտութիւնը լեցնեն. 10 բարի վկայութիւն կու տայ Տիմոթէոսի վրայով, 13 և բարեկամական խրատներէ ետև՝ 16 իր թուղթը կը վերջացնէ զանազան բարևներով։

1 Բայց սուրբերուն համար ողորմութիւն ժողվելու
վրայով, ինչպէս պատուէր տուի Գաղատացւոց
2 եկեղեցիներուն, դուք ալ այնպէս ըրէք ։ Ամէն
մէկշաբթի օրերը ձեզմէ ամէն մէկը իր քով թող
3 դիզէ ինչ որ կը յաջողի, Որ չըլլայ թէ երբ գամ,
այն ատեն ժողվուիներ ըլլան. ու երբ գամ,
որոնց որ դուք *հաճիք, ես զանոնք թուղթե-
րով״ պիտի ղրկեմ ձեր պարգևները Երուսա-
4 ղէմ տանելու ։ Եւ եթէ իմ երթալս ալ արժան
5 սեպուի, ինծի հետ թող երթան ։ Սակայն ես
ձեզի պիտի գամ՝ երբ Մակեդոնիայէ անցնիմ.
6 (քանզի Մակեդոնիայէ կ'անցնիմ.) Եւ կարելի է
որ ձեր քով մնամ, կամ ձմեռն ալ անցնեմ.
որպէս զի դուք զիս ճամբայ դնէք, ուր որ ես
7 պիտի երթամ ։ Վասն զի չեմ ուզեր ձեզ հիմա

*կամ, յանձնարարութիւն ընէք թուղթերով, ես զանոնք

հարեւանցի մը տեսնել, բայց յոյս ունիմ որ
ատեն մը ձեր քով կենամ, եթէ Տէրը հրաման
8 տայ ։ Սակայն հիմա ես Եփեսոս պիտի մնամ
9 մինչեւ Պենտեկոստէ ․ Վասն զի ինծի մեծ ու
արդիւնաւոր դուռ մը բացուած է, ու շատ
հակառակորդներ կան ։
10 Արդ եթէ Տիմոթէոս գայ, նայեցէք որ ձեր
քով առանց վախի ըլլայ․ քանզի անիկա Տէ-
11 րոջը գործը կը գործէ, ինչպէս ես ալ ։ Ուստի
չըլլայ որ մէկը զանիկա արհամարհէ, հապա
խաղաղութեամբ զանիկա ճամբայ դրէք, որ-
պէս զի ինծի գայ․ վասն զի անոր կը սպասեմ
12 եղբայրներով մէկտեղ ։ Իսկ Ապողոս եղբօրը
համար, շատ աղաչեցի անոր, որ ձեզի գայ
եղբայրներուն հետ մէկտեղ․ ու բնաւ կամք
չունեցաւ որ հիմա գայ, բայց պիտի գայ՝ երբ
յարմար ժամանակ գտնէ ։
13 Արթուն կեցէք, հաւատքի մէջ հաստատ կե-
14 ցէք, ժիր եղէք, զօրացէք ։ Ձեր ամէն բաները
սիրով ըլլան ։
15 Կ՚աղաչեմ ձեզի, եղբայրներ, (գիտէք դուք
Ստեփանէսի ընտանիքը թէ Աքայիայի առաջին
պտուղն է, ու անձերնին սուրբերուն սպասա-
16 ւորութեան նուիրեցին․) Որ հնազանդ ըլլաք
այնպիսիներուն, եւ ամէնուն որ մեզի հետ մէկտեղ
17 կը գործեն ու կ՚աշխատին ։ Ուրախ եմ ես
Ստեփանէսի ու Փորտունատոսի ու Աքայիկոսի
գալուն վրայ, որ ձեր պակսութիւնը անոնք
18 լեցուցին․ Քանզի հանգստացուցին իմ հոգիս
ու ձերը․ ուստի այնպիսիները ճանչցէք ։
19 Բարեւ կ՚ընեն ձեզի Ասիայի եկեղեցիները․
շատ բարեւ կ՚ընեն ձեզի Տէրոջմով Ակիւղաս ու
Պրիսկիղա՝ իրենց տանը մէջի եկեղեցիով մէկ-
20 տեղ ։ Բարեւ կ՚ընեն ձեզի բոլոր եղբայրները․
բարեւ տուէք իրարու սուրբ համբուրով ։

21 Այս բարևը իմ ձեռքիս՝ Պօղոսին է ։
22 Եթէ մէկը Տէր Յիսուս Քրիստոսը չսիրեր,
23 նզովեալ ըլլայ *“մեր Տէրը գայ”։ Տէր Յիսուս
24 Քրիստոսի շնորհքը ձեզի հետ. Իմ սէրս ձեր
ամէնուն հետ ըլլայ Քրիստոս Յիսուսով։ Ամէն ։



ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԿՈՐՆԹԱՑԻՍ

## ԳԼՈՒԽ Ա

3 Առաքեալը կը յորդորէ Կորնթացիները համբերող ըլլալ նեղութեան մէջ, ցուցնելով անոնց՝ թէ ի՛նչպէս Աստուած մխիթարեց զինք իր ամէն փորձերուն մէջ՝ և ազատեց, 8 մանաւանդ Ասիայի մէջ իր վերջին նեղութեան ատենը. 12 և վկայ բերելով իր ու անոնց խղճմտանքը՝ իր անկեղծութեամբ աւետարանին անփոփոխ ճշմարտութիւնը քարոզելուն, 15 կը ցուցնէ թէ իր անոնց չերթալը ոչ թէ թեթևամտութենէ կը ծագի, հապա անոնց վրայ ունեցած իր կարեկցութենէն ։

1 Պօղոս, առաքեալ Յիսուսի Քրիստոսի Աստուծոյ կամքովը, ու Տիմոթէոս եղբայրը. Կորնթոսի մէջ եղած Աստուծոյ եկեղեցիին, և բոլոր Աքայիայի մէջ եղող ամէն սուրբերուն.
2 Շնորհք և խաղաղութիւն ձեզի Աստուծմէ մեր Հօրմէն ու Տէր Յիսուս Քրիստոսէ ։
3 Օրհնեալ ըլլայ Աստուած ու մեր Տէր Յիսուս
Քրիստոսի Հայրը, գթութեան Հայրը և ամէն
4 մխիթարութեան Աստուածը. Որ մեզ կը մխիթարէ մեր ամէն նեղութիւններուն մէջ, որպէս զի մենք կարող ըլլանք մխիթարել զանոնք՝ որ ամէն նեղութիւններու մէջ են, այն մխիթարութիւնովը՝ որով մենք Աստուծմէ կը մխի-
5 թարուինք. Քանզի ինչպէս Քրիստոսի չարչարանքները մեր վրայ շատ եղան, նմանապէս

*Յուն. (Ասորերէնէն) Մարան աթա

Քրիստոսի ձեռքով մեր մխիթարութիւնն ալ
6 շատ կ՚ըլլայ։ Եւ եթէ նեղութիւն քաշենք՝ ձեր
մխիթարութեանը ու փրկութեանը համար է,
և եթէ մխիթարուինք՝ ձեր մխիթարութեանը
ու փրկութեանը համար է, որ կը յաջողի
համբերելով այն չարչարանքներուն՝ որոնցմով
7 մենք ալ կը չարչարուինք. Եւ մեր յոյսը հաս-
տատուն է ձեզի համար, վասն զի գիտենք թէ
ինչպէս չարչարանքներուն հաղորդ էք, նոյն-
8 պէս ալ մխիթարութեանը պիտի ըլլաք։ Վասն
զի Ասիայի մէջ մեզի պատահած նեղութիւն-
ներուն վրայով՝ չեմ՝ ուզեր որ չգիտցող ըլլաք,
եղբայրներ, թէ մեր կարողութենէն շատ աւելի
ծանրաբեռնեցանք. մինչև կեանքերնէս ալ ան-
9 յոյս եղանք։ Բայց մահուան վճիռը մենք մեր
վրայ պահեցինք, որպէս զի ինքզինքնուս չապա-
ւինինք, հապա Աստուծոյ՝ որ մեռելները կը յա-
10 րուցանէ. Որ այնպիսի մեծ մահուանէ մեզ
11 փրկեց ու կը փրկէ. Որու կը յուսանք թէ տա-
կաւին պիտի փրկէ, մեզի համար ձեր ըրած ա-
ղօթքին օգնականութիւնովը. որպէս զի շատե-
րուն աղօթքին պատճառաւ մեզի եղած շնորհքին
համար՝ շատերէն գոհութիւն տրուի մեզի
համար։

12 Վասն զի մեր պարծանքը այս է, մեր խղճմը-
տանքին վկայութիւնը, թէ մենք Աստուծոյ տուած
պարզմտութեամբ ու անկեղծութեամբ, և ոչ
թէ մարմնաւոր իմաստութիւնով մը, հապա Աս-
տուծոյ շնորհքովը աշխարհի մէջ վարուեցանք,
13 բայց աւելի դէպ ի ձեզ։ Քանզի ուրիշ բան
չենք գրեր ձեզի, հապա զայն որ դուք կը կար-
դաք ու կը ճանչնաք. և կը յուսամ թէ մինչև
14 վերջը պիտի ճանչնաք. Ինչպէս քիչ շատ ճանչ-
ցաք մեզ, որ ձեր պարծանքն ենք, ինչպէս
դուք ալ մերը՝ Տէր Յիսուսի օրը։

15 Եւ այս վստահութիւնով կ՚ուզէի առաջ ձեզի
գալ, որպէս զի դուք երկրորդ անգամ շնորհք
16 ընդունիք. Ու ձեզմէ անցնիլ դէպ ի Մակեդո-
նիա, և դարձեալ Մակեդոնիայէ ձեզի գալ,
ու ձեզմէ ճամբայ դրուիլ դէպ ի Հրէաստան։
17 Ուստի զայս որ ես մտածեցի, միթէ թեթևու-
թիւնո՞վ շարժեցայ. կամ թէ զայն որ ես
կը խորհիմ, մարմնաւորապէ՞ս կը խորհիմ, *որ-
պէս զի իմ կողմանէս այո այո և ոչ ոչ ըլլայ"։
18 Սակայն հաւատարիմ է Աստուած, որ մեր
19 խօսքը ձեզի որ հաստատ՝ այո և ոչ չէր։ Վասն զի
Աստուծոյ Որդին Յիսուս Քրիստոս, որ մեզմով
ձեզի քարոզուեցաւ, (ինծմով և Սիղուանոսով
ու Տիմոթէոսով,) այո ու ոչ չեղաւ, հապա իր
20 մէջ եղաւ այոն։ Քանզի որչափ որ Աստուծոյ
խոստմունքները կան՝ իր մէջ Այո են, ու իր
մէջ Ամէն են Աստուծոյ փառքին համար մեր
21 ձեռքով։ Բայց ան որ մեզ ձեզի հետ մէկտեղ
Քրիստոսով հաստատեց, ու մեզ օծեց, Աստ-
22 ուած է. Որ մեզ կնքեց ալ, և Ֆդէ տուաւ
23 Հոգւոյն գրաւը մեր սրտերուն մէջ։ Բայց ես
զԱստուած վկայ կը կանչեմ իմ անձիս, որ ձեզի
խնայելուս համար տակաւին Կորնթոս չեկայ.
սակայն ոչ թէ ձեր հաւատքին վրայ կը տիրապե-
տենք, հապա գործակից ենք ձեր ուրախու-
թեանը. վասն զի դուք հաւատքով կը կենաք։

## ԳԼ. Բ

1 Պօղոս ցուցնելով իր անոնց չերթալուն պատճառը, 6 կը խնդրէ որ եկեղեցիին հաղորդակցութենէն կտրուած անձին ներեն ու մխիթարեն զանիկա, 10 ինչպէս որ ինք ալ անոր անկեղծ զղջմանը նայելով՝ ներած է։ 12 կը ծանուցանէ Տրովադայէ Մակեդոնիա անցնելուն պատճառը, 14 և ամէն տեղ Աստուծմէ իր քարոզութեան տրուած բարի յաջողութիւնը։

1 Սակայն ես ինծմէ զայս որոշեցի, որ նորէն
2 տրտմութիւնով չգամ ձեզի։ Վասն զի եթէ

*կամ, ուղ. հաստ. որպէս զի իմ կողմանէս այոն այո ըլլայ, ու ոչը ոչ

ես ձեզ տրտմեցնեմ, ալ ո՞վ է որ զիս պիտի
ուրախացնէ, եթէ ոչ անի՝ որ ինծմէ կը տրտմի։
3 Ու զայս *գրեցի, որ չըլլայ թէ երբ գամ՝
տրտմութիւն մը կրեմ անոնցմէ, ուրկէ պէտք է
ինծի ուրախ ըլլալ. քանզի ձեր ամէնուն վրայ
վստահ եմ, որ իմ ուրախութիւնս ձեր ամէ-
4 նունն է։ Վասն զի շատ նեղութենէ և սրտի
տագնապէ ես ձեզի գրեցի շատ արցունքով.
ոչ թէ՝ որպէս զի դուք տրտմիք, հապա որպէս
զի գիտնաք այն սէրը զոր ես ունիմ աւելի
ձեր վրայ։
5 Բայց եթէ մէկը տրտմեցուց, ոչ թէ զիս
տրտմեցուց, հապա †ըստ մասին (որպէս զի խօսքս
6 ծանր չընեմ) ձեզ ամէնքդ։ Հերիք է այնպիսի
մարդուն այն պատիժը, որ շատերէ եղաւ։
7 Ուստի ընդհակառակն պէտք է աւելի ներել
անոր ու մխիթարել, որ չըլլայ թէ այնպիսին
8 աւելի տրտմութենէն ընկղմի։ Ուստի կ'աղա-
չեմ ձեզի, որ անոր վրայ ձեր սէրը հաստատէք.
9 (Քանզի ասոր համար ալ գրեցի, որպէս զի ձեզ
փորձելով գիտնամ թէ ամէն բանի մէջ հնա-
10 զա՞նդ էք։ Եւ որու դուք բան մը կը ներէք,
ես ալ կը ներեմ. վասն զի եթէ ես ալ ներեմ, որու
որ ներեմ՝ ձեզի համար է Քրիստոսի ‡կողմանէ.)
11 Որ չըլլայ թէ զրկանք մը կրենք Սատանայէ.
քանզի անոր խորհուրդները չգիտցող չենք։
12 Արդ երբ ես Տրովադա հասայ Քրիստոսի ա-
ւետարանը քարոզելու, և ինծի դուռ մը բաց էր
13 Տէրոջմով, Իմ հոգւոյս մէջ հանգստութիւն
չունէի, վասն զի իմ Տիտոս եղբայրս հոն չգտայ.
հապա անոնցմէ հրաժարելով՝ Մակեդոնիա
գացի։
14 Բայց գոհութիւն Աստուծոյ, որ միշտ յաղ-

*Ոմանք, գրեցի ձեզի †Կամ, ըստ մասին, որ ձեր ամէնուն վրայ ծանրութիւն չձգեմ
‡Կամ, առջև

*թող կ'ընէ մեզ Քրիստոսով, ու զինք ճանչնա-*
*լուն հոտը մեզմով յայտնի կ'ընէ ամէն տեղ։*
15 *Վասն զի մենք Աստուծոյ առջեւ Քրիստոսի*
*անոյշ հոտն ենք փրկուածներուն մէջ եւ կոր-*
16 *սուածներուն մէջ. Ոմանց մահուան հոտ դէպ ի*
*մահ, եւ ոմանց կենդանութեան հոտ դէպ ի*
*կեանք. եւ այս բաներուն ո՞վ բաւական է։*
17 *Քանզի մենք շատերուն պէս չենք, որոնք Աս-*
*տուծոյ խօսքին խարդախութիւն կ'ընեն. հապա*
*որպէս թէ անկեղծութեամբ, հապա որպէս*
*թէ Աստուծմէ՝ Աստուծոյ առջեւ Քրիստոսով*
*կը խօսինք։*

## ԳԼ. Գ

*1 Առաքեալը կը ցուցնէ թէ կորնթացւոց հաւատքը եւ շնորհքները բաւական վկայութիւն են իր պաշտօնին, որ սուտ վարդապետները անապարծութեան յանցանքով չամբաստանեն զինք. 6 Եւ օրէնքին ու աւետարանին պաշտօնեաներուն մէջտեղ բաղդատութիւն մը ընելով՝ 12 փաստերով կը հաստատէ որ իր պաշտօնը խիստ գերազանց է, ճիշդ ինչպէս որ կենաց եւ ազատութեան օրէնքը գերազանց է դատապարտութեան օրէնքէն։*

1 *Կը սկսի՞նք նորէն անձերնիս յանձն ընել. կամ*
*թէ ոմանց պէս պէ՞տք է մեզի յանձնարարու-*
2 *թեան թուղթեր ձեզի կամ ձեզմէ։ Հապա*
*մեր թուղթը դուք էք մեր սիրտերուն մէջ*
*գրուած, ճանչցուած ու կարդացուած ամէն*
3 *մարդոցմէ. Յայտնի ըլլալով որ դուք Քրիստոսի*
*թուղթն էք մեր սպասաւորութիւնովը, ոչ թէ*
*մելանով գրուած, հապա կենդանի Աստուծոյ*
*Հոգիովը, ոչ թէ քարեղէն տախտակներու վրայ,*
*հապա սրտին մարմնեղէն տախտակներուն վրայ։*
4 *Եւ այսպիսի վստահութիւն ունինք մենք Աս-*
5 *տուծոյ վրայ Քրիստոսի ձեռքով. Ոչ թէ մենք*
*ինքնիրեննիս բաւական ենք բան մը խորհելու՝*
*որպէս թէ մեզմէ, հապա մեր բաւականու-*
6 *թիւնը Աստուծմէ է. Որ մեզ բաւական ալ*
*ըրաւ նոր կտակարանին պաշտօնեաներ ըլլալու,*

ոչ թէ գիրին, հապա Հոգիին. վասն զի գիրը
7 կը սպաննէ, բայց Հոգին կ՚ապրեցնէ։ Իսկ եթէ
քարերու վրայ գրով փորուած մահուան պաշ-
տօնը փառքով եղաւ, որ Իսրայէլի որդիները
կարող չեղան Մովսէսի երեսը նայելու՝ անոր
երեսին փառքին համար, որ պիտի խափանուէր.
8 Ուրեմն Հոգիին պաշտօնը ի՜նչպէս աւելի փառքով
9 պիտի չըլլայ։ Վասն զի եթէ դատապարտու-
թեան պաշտօնը փառքով էր, ո՜րչափ աւելի
արդարութեան պաշտօնը փառքով պիտի ըլլայ։
10 Վասն զի այն որ փառաւոր էր՝ այս մասին փա-
ռաւոր չէ գերազանց փառքին պատճառաւ։
11 Քանզի եթէ այն որ պիտի խափանուէր՝ փառ-
քով էր, ո՜րչափ աւելի այն որ կը կենայ՝ փառ-
12 քով պարտի ըլլալ։ Ուստի այսպիսի յոյս որ ու-
նինք, շատ համարձակութեամբ կը վարուինք
13 մեր խօսքին մէջ. Եւ ոչ թէ ինչպէս Մովսէս իր ե-
րեսին վրայ ծածկոց կը ձգէր, որպէս զի Իս-
րայէլի որդիները չնայէին այն խափանուելու
14 բաներուն վախճանին։ Սակայն անոնց միտքերը
կուրցան. վասն զի մինչեւ այսօր նոյն ծածկոցը
ձգուած է հին կտակարանին ընթերցմունքին
վրայ, ու չվերնար, (վասն զի Քրիստոսով կը
15 խափանուի,) Հապա մինչեւ այսօր, երբ Մովսէսի
գիրքը կը կարդան, անոնց սրտին վրայ ծածկոց մը
16 կը կենայ։ Բայց երբ Տէրոջը դառնան, այն ատեն
17 պիտի վերնայ այն ծածկոցը։ Արդ Տէրը Հոգին
է. և ուր Տէրոջը Հոգին կայ, հոն ազատու-
18 թիւն կայ։ Բայց մենք ամէնս, բաց երեսով Տէ-
րոջը փառքը որպէս թէ հայելիի մէջ տեսնե-
լով, նոյն պատկերին կը նորոգուինք փառաց
ի փառս, որպէս թէ Տէրոջը Հոգիէն։

## ԳԼ. Դ

1 Կը ծանուցանէ թէ ինչպէս անկեղծութեամբ և հաւատարիմ եռանդով քարոզեց աւետարանը, 7 և թէ ինչպէս աւետարանին համար իր ամէն օր կրած նեղութիւնները և հալածանքները պատճառ եղան աւելցնելու Աստուծոյ զօրութեան փառքը, 12 եկեղեցւոյ օգուտը, 16 և իր անձին յաւիտենական փառքը։

1 Ուստի այս պաշտօնը ունենալով՝ ինչպէս ողոր-
2 մութիւն գտանք, չենք ձանձրանար · Հապա
հրաժարեցանք ամօթալի ծածուկ բաներէն,
ու խորամանկութիւնով չենք վարուիր, և խար-
դախութիւն չենք ըներ Աստուծոյ խօսքին մէջ ·
Հապա ճշմարտութիւնը յայտնելով՝ անձերնիս
մարդոց ամէն խղճմտանքին կ՚ընծայենք Աս-
3 տուծոյ առջև ։ Իսկ եթէ մեր աւետարանը
ծածկուած ալ է, կորսուածներուն մէջ ծած-
4 կուած է · Որոնց մէջ այս աշխարհի աստուածը
անհաւատներուն միտքերը կուրցուց, որպէս
զի Քրիստոսի փառաց աւետարանին լոյսը ա-
նոնց վրայ չծագէ, որ է Աստուծոյ պատկերը ։
5 Վասն զի ոչ թէ անձերնիս կը քարոզենք, հապա
Քրիստոս Յիսուս Տէրը, ու մեզ՝ ձեր ծառա-
6 ները Յիսուսի համար ։ Վասն զի Աստուած որ
հրաման ըրաւ խաւարէն լոյս ծագել՝ ինք մեր
սիրտերուն մէջ ծագեց՝ Աստուծոյ փառաց գի-
տութեան լոյսը տալու համար Յիսուս Քրիս-
7 տոսի անձովը ։ Արդ մենք այս գանձը հողէ ա-
մաններու մէջ ունինք, որպէս զի զօրութեան
առաւելութիւնը Աստուծմէ ըլլայ, ու ոչ թէ
8 մեզմէ ։ Ամէն կողմանէ վշտացած ենք, բայց
նեղը ինկած չենք · կարօտեալ ենք, բայց յու-
9 սահատած չենք · Հալածուած ենք, բայց երեսէ
ձգուած չենք · վար ձգուած ենք, բայց կոր-
10 սուած չենք · Ամէն ատեն *Յիսուսի մահը մեր
մարմիններուն մէջ կը կրենք, որպէս զի Յիսուսի
կեանքն ալ մեր մարմիններուն մէջ յայտնուի ։

---

*Ոմանք, Տէր Յիսուսի

11 Վասն զի մենք որ կենդանի ենք՝ Յիսուսի հա-
մար միշտ մահուան կը մատնուինք, որպէս զի
Յիսուսի կեանքն ալ մեր մահկանացու մարմնի-
12 ներուն մէջ յայտնի ըլլայ։ Ուստի մահը մեր
13 մէջ կը ներգործէ, և կեանքը՝ ձեր մէջ։ Բայց
հաւատքին նոյն հոգին ունինք, ինչպէս գրուած
է, Հաւատացի, անոր համար խօսեցայ. մենք ալ
կը հաւատանք, ու անոր համար կը խօսինք.
14 Զայս գիտնալով թէ ան որ Տէր Յիսուսը յա-
րոյց՝ մեզ ալ Յիսուսով պիտի յարուցանէ, ու
անոր առջև պիտի կայնեցնէ ձեզմով մէկտեղ։
15 Վասն զի ամէն բան ձեզի համար է, որպէս զի
այն շնորհքը առատացած՝ շատերուն գոհու-
թիւն ընելովը աւելնայ Աստուծոյ փառքին
համար։
16 Վասն որոյ չենք ձանձրանար. բայց թէպէտ
այս մեր դուրսի մարդը կ'ապականի, սակայն
17 մեր ներսի մարդը օրէ օր կը նորոգուի։ Վասն զի
մեր վայրկենական թեթև նեղութիւնը առա-
ւել քան զառաւել փառաց յաւիտենական գե-
18 րազանցութիւն կը գործէ մեզի։ Վասն զի մենք
երևցած բաներուն չենք նայիր, հապա չերև-
ցածներուն. քանզի երևցած բաները ժամանա-
կաւոր են, բայց չերևցածները՝ յաւիտենական։

## ԳԼ. Ե

1 Կը ծանուցանէ թէ ինք հաստատուն յոյս ունենալով անմահ փառքի, 9 և սպասելով այն փառքին և ընդհանուր դատաստանին, կը ջանայ մաքուր խղճմտանք ունենալ, 12 ոչ թէ անով պարծենալու համար, 14 այլ իբրև Քրիստոսէ կենդանութիւն ունեցող մէկը՝ կ'աշխատի որ միայն Քրիստոսի կենդանի ըլլայ իբրև նոր արարած մը, 18 ու իր հաշտութեան պաշտօնովը ուրիշներն ալ Աստուծոյ հետ հաշտեցնէ։

1 Վասն զի գիտենք որ եթէ մեր վրանի նման երկ-
րաւոր տունը քակուի, շինուածք մը ունինք
Աստուծմէ, անձեռագործ յաւիտենական տուն
2 մը երկինքի մէջ։ Եւ յիրաւի ասոր մէջ կը հա-

ռաչենք՝ մեր երկնաւոր բնակութիւնը հագնե-
3 նելու փափաքելով. Միայն թէ երբ զայն հագ-
4 նելու ըլլանք, մերկ չգտնուինք։ Վասն զի մենք
որ այս վրանին տակ ենք, կը հառաչենք ծան-
րութիւն քաշելով. վասն զի չենք ուզեր մեր
վրայէն հանել, հապա զանիկա ասոր վրայէն հագնիլ,
որպէս զի մահկանացութիւնը ընկղմի կեանքէն։
5 Իսկ ան որ մեզ այս բանին կը պատրաստէ,
Աստուած է, որ նաև մեզի տուաւ Հոգւոյն
6 գրաւը։ Ուստի ամէն ատեն վստահութիւն ու-
նինք, և գիտենք թէ որչափ մարմնի մէջ կը կե-
7 նանք, Տէրոջմէ հեռու ենք. (Վասն զի հա-
ւատքով կը քալենք, ու ոչ թէ երևութով.)
8 Ուստի վստահութիւն ունինք՝ և ալ աւելի կ'ու-
զենք մարմինէն հեռանալ ու Տէրոջը քով կե-
9 նալ։ Ասոր համար կը ջանանք ալ, որ թէ՛ կե-
նանք և թէ՛ հեռանանք՝ անոր հաճոյ ըլլանք։
10 Վասն զի պէտք է որ ամէնս ալ Քրիստոսի
ատեանին առջև ներկայանանք, որպէս զի ա-
մէն մէկը իր մարմնովը ըրածներուն փոխարէնը
առնէ՝ ինչ որ գործեր է, թէ՛ բարի և թէ՛ չար։
11 Ուստի Տէրոջը վախը գիտնալով՝ մարդոց
միտքը կը հաճեցնենք. սակայն մենք Աստուծոյ
առջև յայտնի ենք, և կը յուսամ որ ձեր
12 խղճմտանքին մէջ ալ յայտնի ենք։ Ոչ թէ նո-
րէն անձերնիս ձեզի կ'ընծայենք. հապա առիթ
կու տանք ձեզի՝ մեր վրայով պարծենալու. որ-
պէս զի բան մը ունենաք պարծենալու անոնց՝ որ
աչքի երևցածով կը պարծենան, ու ոչ թէ
13 սրտով։ Վասն զի եթէ խելառած ենք՝ այն Աս-
տուծոյ համար է, և եթէ զգաստ ենք՝ այն
14 ձեզի համար է. Վասն զի Քրիստոսի սէրը մեզ
կը ստիպէ. քանզի մեր դատումը այս է որ եթէ
մէկը ամէնուն համար մեռաւ, ուրեմն ամէնն
15 ալ մեռան. Եւ ամէնուն համար մեռաւ, որ-

պէս զի կենդանի եղողները ա՛լ իրենց անձե-
րուն կենդանի չըլլան, հապա անոր՝ որ իրենց
16 համար մեռաւ ու յարութիւն առաւ։ Ուստի
ասկէ ետև մենք մէ՛կը մարմնով չենք գիտեր.
ու թէև Քրիստոսը մարմնով ճանչցանք, բայց
17 հիմա ա՛լ այնպէս չենք ճանչնար։ Ուրեմն եթէ
մէկը Քրիստոսի մէջ է, անիկա նոր ստեղծուած
մըն է. հիները անցան, և ահա ամէն բան նոր
18 եղաւ։ Սակայն ամէն բան Աստուծմէ է, որ
մեզ իրեն հետ հաշտեցուց Յիսուս Քրիստոսի
ձեռքով, ու տուաւ մեզի հաշտութեան պաշ-
19 տօնը. Այսինքն Աստուած էր, որ Քրիստոսով
աշխարհս իրեն հետ հաշտեցուց, և անոնց յան-
ցանքները իրենց չսեպեց, ու հաշտութեան
20 խօսքը մեր մէջ դրաւ։ Ուրեմն Քրիստոսի կող-
մանէ դեսպանութիւն կ՚ընենք, իբրև թէ Աստ-
ուած կը բարեխօսէր մեզմով. կ՚աղաչենք ձեզ
Քրիստոսի կողմանէ, հաշտուեցէք Աստուծոյ
21 հետ։ Վասն զի Աստուած զանիկա որ մեղք չէր
գիտեր, մեզի համար *մեղաւոր սեպեց", որ-
պէս զի մենք անոր միջոցով Աստուծոյ արդար-
ներն ըլլանք։

## Գլ. Զ

1 Առաքեալը կը ծանուցանէ որ իր անձը ընծայած է՝ իբրև Քրիստոսի հաւատարիմ պաշտօնեայ, թէ՛ իր յորդորանքներովը, 3 թէ՛ իր անարատ վարքովը, 4 և թէ՛ աւետարանին համար համբերութեամբ տանելով ամէն տեսակ վիշտերու ու նեղութիւններու ։ 14 Կը յորդորէ զանոնք որ ետ կենան կռապաշտական ընկերութիւններէն և պղծութիւններէն՝ մտածելով որ իրենց անձերը կենդանի Աստուծոյ տաճարներ են ։

1 Ուստի մենք ալ գործակից ըլլալով՝ կ՚աղաչենք
որ Աստուծոյ շնորհքը պարապ տեղ ընդունած
2 չըլլաք։ Վասն զի՝ Ընդունելի ժամանակի մը մէջ
լսեցի քեզի, կ՚ըսէ, և փրկութեան օրը օգնու-
թիւն ըրի քեզի. ահա հիմա է ընդունելի ժա-

*Յուն. մեղք ըրաւ

3 ժամանակը, ահա հիմա է փրկութեան օրը։ Բնաւ
բանով մը գայթակղութիւն չենք տար, որպէս
4 զի Քր պաշտօնը չարատաւորի. Բայց ամէն բանի
մէջ մեր անձը կ՚ընծայենք Աստուծոյ սպասա-
ւորներու պէս՝ շատ համբերութիւնով վիշտե-
րու մէջ, տառապանքներու, նեղութիւններու,
5 ծեծերու, բանտերու, խռովութիւններու, աշ-
խատութիւններու, հսկումներու, ծոմերու մէջ,
6 Մաքրութիւնով, գիտութիւնով, երկայնմտու-
թիւնով, քաղցրութիւնով, Սուրբ Հոգիով,
7 անկեղծ սիրով, ճշմարտութեան խօսքով, Աս-
տուծոյ զօրութիւնով, արդարութեան զէնքե-
8 րով՝ որ աջ կողմէն ու ձախ կողմէն է. Փառքով
ու անարգութիւնով, պարսաւանքով և գովու-
թիւնով. մոլորեցնողներու պէս՝ ու ճշմարիտներ.
9 Անծանօթներու պէս՝ և ծանօթներ. մեռնողնե-
րու պէս՝ և ահա կենդանի ենք. պատժուած-
10 ներու պէս՝ ու չսպաննուածներ. Տրտմածներու
պէս՝ ու միշտ ուրախ ենք. աղքատներու պէս՝
ու շատերը կը հարստացնենք. բան մը չունե-
ցողներու պէս՝ և ամէն բան ստացած ենք։
11 Մեր բերանը ձեզի բացուած է, ով Կորնթա-
12 ցիք, և մեր սիրտը լայնցած։ Դուք մեր կողմէն
չէք նեղուիր, հապա *ձեր ունեցած գութին կողմէ"
13 կը նեղուիք։ Ուստի անոր հատուցումը ընելու
համար (իբրև որդիներուս կը խօսիմ ձեզի,) դուք ալ
դէպ յիս լայնցէք։
14 Անհաւատներուն հետ օտարախառն լծակից
մի ըլլաք. քանզի ի՞նչ մասնակցութիւն ունի
արդարութիւնը անօրէնութեան հետ, և ի՞նչ
15 հաղորդութիւն ունի լոյսը խաւարին հետ, Եւ
ի՞նչ միաբանութիւն ունի Քրիստոս Բելիարի
հետ, կամ ի՞նչ բաժին ունի հաւատացեալը
16 անհաւատին հետ. Եւ ի՞նչ յարմարութիւն ունի

*Կամ, ձեր ներսիդին

Աստուծոյ տաճարը կուռքերու հետ. վասն զի
դուք կենդանի Աստուծոյ տաճարն էք. ինչպէս
Աստուած ըսաւ, Թէ Անոնց մէջ պիտի բնակիմ,
ու անոնց մէջ պիտի քալեմ, և անոնց Աստուած
պիտի ըլլամ, ու անոնք ինծի ժողովուրդ պիտի
17 ըլլան։ Ասոր համար ելէք անոնց մէջէն ու
զատուեցէք, կ'ըսէ Տէրը, և պիղծ բանի մի
18 դպչիք. Ու ես ձեզ պիտի ընդունիմ, և ես
ձեզի Հայր պիտի ըլլամ, ու դուք ինծի տղաք-
ներ ու աղջիկներ պիտի ըլլաք, կ'ըսէ Ամենակալ
Տէրը։

## ԳԼ. Է

1 Իր խօսքը շարունակելով՝ կը յորդորէ զանոնք սուրբ վարք ունենալու, 2 և իրեն ցուցնելու այն նոյն սէրը որ ինք անոնց վրայ ունէր. 3 կը ծանուցանէ թէ իր նեղութիւններուն մէջ ո՛րչափ մխիթարութիւն ունեցաւ՝ երբ Տիտոս իրեն պատմեց անոնց անկեղծ ապաշխարութիւնը որ իր առաջին նամակը պատճառեր էր. 13 և թէ անոնց Տիտոսի ցուցած սէրը ու հնազանդութիւնը արդարացուցին իր պարծանքը անոնց վրայ։

1 Ուստի, սիրելիներ, որովհետև մենք այս խոստա-
մունքները ունինք, մեր անձերը մարմնի ու
հոգիի ամէն կեղտ պղծութենէ մաքրենք, և
սրբութիւնը կատարելագործենք Աստուծոյ
վախովը։
2 *Ընդունեցէք մեզ". մարդո՛ւ վնաս չտուինք,
3 ոչ մէկը եղծեցինք, և ոչ մէկը զրկեցինք։ Ոչ թէ
ձեզ դատապարտելու համար այս կը զրուցեմ. ո-
րովհետև ես առաջուընէ ըսեր եմ որ դուք
մեր սիրտերուն մէջ էք՝ մեռնելու և ապրելու
4 ձեզի հետ։ Շատ է իմ համարձակութիւնս ձեր
վրայ. շատ է իմ պարծանքս ձեզի համար. լե-
ցուն եմ մխիթարութիւնով, աւելցած եմ ու-
րախութիւնով մեր ամէն նեղութիւններուն
5 մէջ։ Վասն զի երբ մենք Մակեդոնիա հասանք,
բնաւ մեր մարմինը հանգստութիւն չունեցաւ,

*Կամ, Համբերեցէք մեզի

հապա ամէն կողմանէ նեղութիւն կը քաշէինք.
դուրսէն պատերազմներ կային, — ներսէն՝ վա-
6 խեր։ Բայց Աստուած, որ խոնարհները կը մխի-
7 թարէ, մեզ մխիթարեց Տիտոսի գալովը։ Եւ
ոչ թէ միայն անոր գալովը, հապա այն մխի-
թարութիւնովն ալ՝ որով ինք մխիթարուեր էր
ձեզմով, երբ մեզի պատմեց ձեր բաղձանքը,
ձեր ողբը, ձեր ինծի համար ունեցած նախանձա-
ւորութիւնը, այնպէս որ ալ աւելի ուրախ եղայ։
8 Վասն զի եթէ ձեզ տրտմեցուցի այն թուղթով,
չեմ զղջար, (թէև զղջացեր էի,) քանզի կը տես-
նեմ որ այն թուղթը ձեզ տրտմեցուց, թէև
9 քիչ մը ատեն։ Արդ ուրախ եմ, ոչ թէ՝ որ
տրտմեցաք, հապա որ ապաշխարութեան հա-
մար տրտմեցաք. որովհետև դուք Աստուծոյ
ուզածին պէս տրտմեցաք, այնպէս որ բանով
10 մըն ալ մեզմէ վնաս չքաշէք։ Վասն զի Աս-
տուծոյ ուզածին պէս եղած տրտմութիւնը փրկու-
թեան համար ապաշխարութիւն կը գործէ, որ
զղջալու բան չէ. բայց աշխարհի տրտմու-
11 թիւնը մահ կը գործէ։ Քանզի ահա այս բանը
որ դուք Աստուծոյ ուզածին պէս տրտմեցաք, ձեր
մէջ ո՜րչափ ջանք գործեց, ո՜րչափ չքմեղու-
թիւն, ո՜րչափ սրտմտութիւն, ո՜րչափ վախ,
ո՜րչափ բաղձանք, ո՜րչափ նախանձաւորութիւն,
ո՜րչափ վրէժխնդրութիւն. ամէն կերպով ինք-
զինքնիդ ցուցուցիք թէ այդ բանին մէջ մաքուր
12 էք։ Ուրեմն այն զոր ես ձեզի գրեցի, ոչ թէ
զրկանքը ընողին համար էր, և ոչ թէ զրկանքը
կրողին համար, հապա որպէս զի ձեր վրայ մեր
ունեցած հոգը յայտնի ըլլայ ձեզի Աստուծոյ
13 առջև։ Ուստի այն ձեր մխիթարութեանը հա-
մար մենք մխիթարուեցանք. շատ աւելի ալ
ուրախացանք Տիտոսի ուրախութեանը համար,
վասն զի անոր հոգին ձեր ամէնէն հանգստու-

14 թիւն գտներ էր ։ Վասն զի ինչ որ ես անոր
առջեւ ձեզի համար պարծենցայ՝ ամօթով չեղայ․
հապա ինչպէս ամէն բան ճշմարտութիւնով
խօսեցանք ձեզի , նոյնպէս Տիտոսի առջեւ պար-
15 ծենալնիս ալ ճշմարիտ եղաւ ։ Նաեւ անոր սէրը
աւելի է ձեր վրայ , երբ կը յիշէ ձեր ամէնուն
հնազանդութիւնը , թէ ինչպէս վախով ու դո-
16 ղով զանիկա ընդուներ էք ։ Ուստի ուրախ եմ
որ ամէն բանի մէջ ձեր վրայ վստահութիւն
ունիմ ։

## ԳԼ․ Ը

1 Առաքեալը օրինակ բերելով Մակեդոնացիները՝ կը յորդորէ կորնթացիները որ առատաձեռնութեամբ օգնութիւն ընեն Երուսաղէմի աղքատ սուրբերուն․ 7 կը յիշեցնէ իրենց առաջուան ջանքը , 9 Քրիստոսի օրինակը , 14 եւ այն հոգեւոր օգուտը զոր ունենալու էին այն օգնութիւնը ընելով․ 16 գովութեամբ կը խօսի Տիտոսի եւ ուրիշ եղբայրներուն յօժարամտութեանը վրայով՝ որոնք իր խնդրանքով եւ իր յորդորանքով անոնց գացեր էին-բուն այս գործին համար ։

1 Արդ , եղբայրներ , ձեզի կը ծանուցանենք Աս-
տուծոյ շնորհքը , որ Մակեդոնիացւոց եկեղեցի-
2 ներուն տրուած է ․ Որ նեղութեան մեծ փորձին
մէջ իրենց ուրախութեանը առատութիւնը
երեւցաւ , եւ իրենց ծանր աղքատութիւնը աւելի
3 մեծ առատաձեռնութիւն եղաւ ։ Վասն զի ես
կը վկայեմ որ իրենց կարողութեան չափովը՝ ու
կարողութենէն ալ աւելի յօժարակամ ըլլա-
4 լով , Շատ աղաչանքով կ՚աղաչէին որ տուրքերը
ու սուրբերուն համար եղած պաշտօնին մաս-
5 նակցութիւնը ընդունինք ։ Եւ ոչ թէ որչափ
մենք կը յուսայինք , հապա անձերնին ալ տուին
առաջ Տէրոջը ու ետքը մեզի՝ Աստուծոյ կամքովը․
6 Որ Տիտոսի աղաչեցինք թէ ինչպէս անիկա ա-
ռաջուընէ սկսեց , նոյնպէս ալ ձեր մէջ կատարէ
7 այդ շնորհքն ալ ։ Բայց ինչպէս ամէն բանով
առատացած էք դուք , (հաւատքով ու խօսքով
ու գիտութիւնով եւ ամէն ջանքով ու ձեզմէ

մեր վրայ եղած սիրովը,) նոյնպէս որ այս շնորհ-
8 քով ալ առատանաք. Ոչ թէ հրամայելով մը
կը զրուցեմ, հապա ուրիշներուն ջանքին պատ-
ճառաւ, և որպէս զի փորձեմ ձեր սիրոյն հա-
9 րազատութիւնը։ Քանզի դուք գիտէք մեր Տէր
Յիսուս Քրիստոսին շնորհքը, թէ ինք ձեզի հա-
մար աղքատ եղաւ՝ ան որ հարուստ էր, որ-
պէս զի դուք անոր աղքատանալովը հարստա-
10 նաք։ Եւ այս բանին մէջ խրատ մը կու տամ.
վասն զի ասիկա ձեր օգտին համար է, դուք
որ ոչ թէ միայն ընելը, հապա կամենալն ալ
առաջուընէ սկսեցիք անցած տարուընէ հետէ.
11 Ուստի հիմա ընելն ալ կատարեցէք, որպէս զի
ինչպէս կամքի յօժարութիւն կայ, նոյնպէս ալ
12 ընելը ունեցածներնուդ չափովը ըլլայ։ Վասն
զի եթէ առաջ յօժարութիւնը ըլլայ՝ մարդ ու-
նեցածին չափովը ընդունելի է, ու ոչ թէ չու-
13 նեցածին չափովը։ Վասն զի ոչ թէ ես ուրիշ-
ներուն հանգստութիւն կ'ուզեմ ու ձեզի նեղու-
14 թիւն. Հապա հաւասարութիւնով՝ հիմակուան
ատենը ձեր աւելին անոնց պակսութիւնը լեցնէ,
որպէս զի անոնց աւելին ալ օր մը օգնութիւն ըլլայ
ձեր պակսութեանը, որպէս զի հաւասարու-
15 թիւն ըլլայ. Ինչպէս գրուած է, թէ Ան որ
շատ ժողվեց՝ չաւելցաւ, ու ան որ քիչ՝ չպակ-
16 սեցաւ։ Բայց գոհութիւն Աստուծոյ, որ նոյն
17 հոգը ձեր վրայ Տիտոսի սրտը ձգեց. Վասն զի
մեր աղաչանքը ընդունեց, և իր յօժարամտու-
թիւնը շատ ըլլալով՝ իր կամքովը ելաւ ձեզի
18 գալու։ Ու անոր հետ ղրկեցինք այն եղբայրը,
որուն գովութիւնը աւետարանին մէջ է՝ բոլոր
19 եկեղեցիներուն մէջ։ Եւ ոչ միայն այսքան,
հապա նաև եկեղեցիներէն ընտրուեցաւ մեզի
ճամբորդութեան ընկեր ըլլալու այս շնորհքե-
րուն մէջ, որ մենք կը ծառայենք Տէրոջը փառ-

20 *քին համար, ու *ձեր յօժարութիւնը։ Բայց*
*այս մասին զգուշութիւն կ՚ընէինք, որ չըլլայ*
*թէ մէկը պարսաւ մը դնէ մեր վրայ այս առա-*
*տութեանը մէջ, որու մենք կը ծառայենք։*
21 *Քանզի ոչ միայն Տէրոջը առջեւ, հապա մարդոց*
*առջեւ ալ բարի բաներ ընելու հոգ կը տանինք։*
22 *Եւ անոնց հետ մեր եղբայրը ղրկեցինք, զոր*
*շատ բաներու մէջ փորձելով՝ շատ անգամ յօ-*
*ժարամիտ գտեր ենք, ու հիմա ա՛լ աւելի յօ-*
*ժարամիտ՝ այն մեծ վստահութիւնը ըր ձեր*
23 *վրայ ունի։ Բայց եթէ Տիտոսի համար կը հարցնէք,*
*անիկա իմ ընկերս է, և ձեր մէջ իմ գործա-*
*կիցս. իսկ եթէ մեր եղբայրներուն համար՝*
*անոնք եկեղեցիներուն ղրկածներն են, ու Քրիս-*
24 *տոսի փառքը։ Ուստի ձեր սիրոյն և մեր ձեր*
*վրայով պարծենալուն ապացոյցը անոնց վրայ*
*ցուցուցէք եկեղեցիներուն առջեւ։*

## ԳԼ. Թ

1 Առաքեալը կը ցուցնէ պատճառը թէ ինչո՛ւ համար, (թէեւ ինք գիտէր անոնց յօժարամտութիւնը,) առաջ ղրկեց Տիտոսը և միւս եղբայրները. 6 կը յորդորէ որ առատ ողորմութիւն տան, իբր թէ այն տուածնին տեսակ մը սերմ ցանել էր՝ 10 որ առատօրէն պտուղ պիտի տար իրենց, 13 և պատճառ պիտի ըլլար որ մեծ շնորհակալութիւն մատուցուի Աստուծոյ։

1 *Քանզի սուրբերուն ըլլալու պաշտօնին վրայով*
2 *ինծի աւելորդ է ձեզի գրել։ Վասն զի գիտեմ*
*ես ձեր յօժարամտութիւնը, որուն վրայով*
*կը պարծենամ ձեզի համար Մակեդոնացւոց*
*մէջ, թէ Աքայեցիք անցած տարուընէ հետէ*
*պատրաստ են. ու ձեր բարի նախանձը շատերը*
3 *գրգռեց։ Եւ ահա եղբայրները ղրկեցի, որպէս զի*
*մեր ձեզի համար պարծենալը այդ մասին մէջ*
*պարապ չելլէ, հապա պատրաստ գտնուիք, ինչ-*
4 *պէս ըսեր եմ. Որ չըլլայ թէ երբ Մակեդոնացիք*
*ինծի հետ գան ու ձեզ անպատրաստ գտնեն,*

*Ոմանք, մեր

ալ մենք (որ չըսենք թէ դուք,) ամօթով մնանք
5 այս *պարծանքին վստահութեանը մէջ ։ Ուստի
հարկաւոր սեպեցի եղբայրներուն աղաչել, որ
առաջուընէ ձեզի գան, ու առաջուընէ կարգի
դնեն այն ձեր առաջուընէ ծանուցուած ընծան,
որպէս զի պատրաստ ըլլայ, այնպէս որ ընծայի
պէս ըլլայ, ու ոչ թէ ագահութեան պէս ։
6 Բայց ասիկա կը ծանուցանեմ թէ ան որ խնայելով
կը սերմանէ՝ խնայելով պիտի հնձէ, ու ան որ
առատութիւնով կը սերմանէ՝ առատութիւնով
7 պիտի հնձէ ։ Ամէն մէկը ինչպէս իր սրտովը
կը յօժարի՝ թող այնպէս տայ, ոչ թէ տրտմութեամբ
կամ ստիպմամբ. վասն զի Աստուած յօժարա-
8 կամ տուողը կը սիրէ ։ Բայց կարող է Աստուած
բոլոր շնորհքները ձեզի առատօրէն տալ, որ-
պէս զի ամէն բանի մէջ ամէն ատեն բոլոր
ձեզի պէտք եղածը ունենալով՝ ամէն բարի
9 գործերով առատանաք. Ինչպէս գրուած է,
Տարածեց ու աղքատներուն տուաւ. անոր ար-
10 դարութիւնը յաւիտեան կը մնայ ։ Եւ անիկա
որ սերմ ցանողին սերմ կը պարգեւէ, †և կե-
րակուրի համար հաց, ձեր սերմանիքը պարգեւէ
և աւելցնէ՚՚, ու ձեր արդարութեան պտուղ-
11 ները ‡շատցնէ. Որպէս զի ամէն բանի մէջ հա-
րստանաք ամէն կերպ առատութիւնով, որ
մեր ձեռքով կը պատճառէ գոհութիւն դէպ Աս-
12 տուծոյ ։ Վասն զի այս պաշտօնին մատակարա-
րութիւնը ոչ թէ միայն սուրբերուն պակսու-
թիւնը լեցնելու համար է, հապա նաև աւելի
13 շատցնելու Աստուծոյ գոհութիւն տալը. Երբ
այս ձեր պաշտօնին փորձովը փառաւորեն զԱստ-
ուած՝ Քրիստոսի աւետարանը խոստովանել-
նուդ հնազանդութեանը համար, և այն առա-

*Ոմանք՝ ցանկին †Ոմանք՝, կերակուրի համար հաց ալ պիտի պարգեւէ, և ձեր սերմանիքը պիտի աւելցնէ ‡Ոմանք՝, պիտի շատցնէ

տաձեռնութեան համար՝ որով հաղորդակցու-
14 թիւն կ'ընէք անոնց ու ամէնուն. Եւ իրենց
աղօթքը ձեզի համար մատուցանեն, փափաք ունե-
նալով ձեր վրայ՝ Աստուծոյ գերազանց շնորհ-
15 քին համար որ ձեր մէջ է։ Ալ գոհութիւն Աս-
տուծոյ՝ անոր անպատում պարգևին համար։

## ԳԼ. Ժ

*1 Առաքեալը իր անձը և մարմինին երևոյթը արհամարհող սուտ առաքեալներուն դէմ յառաջ կը բերէ իր հոգևոր իշխանութիւնը, 7 հաստատելով որ իր գալու ատենը այնչափ զօրաւոր պիտի ըլլայ իր խօսքովը, որչափ իր նամակովն է իր հեռաւորութեան ատենը. 12 կը յանդիմանէ զանոնք՝ չափէ դուրս առաջ անցնելնուն և ուրիշին աշխատանքովը պարծենալնուն համար։*

1 Բայց ես Պօղոս ձեզի կ'աղաչեմ Քրիստոսի
հեզութիւնովը ու քաղցրութիւնովը, որ ե-
րես առ երես գտնուած ատենս խոնարհ եմ ձեր
մէջ, բայց հեռուէն կը համարձակիմ ձեզի.
2 Կ'աղաչեմ որ չըլլայ թէ մօտէն ալ համարձա-
կիմ այն վստահութիւնովը՝ որով միտք ունիմ
յանդգնիլ մէկ քանիներուն վրայ, որոնք մեր
վրայով այնպէս կը կարծեն թէ մարմնաւորա-
3 պէս կը քալենք։ Քանզի թէպէտ մարմնի մէջ
կը քալենք, բայց ոչ թէ մարմնաւորապէս
4 զինուորութիւն կ'ընենք. Վասն զի մեր զինուո-
րութեան զէնքերը մարմնաւոր չեն, հապա Աս-
տուծմէ զօրութիւն առած՝ ամրոցներ քակե-
5 լու. մենք խորհուրդներ կը քակենք, Եւ Աս-
տուծոյ գիտութեանը դէմ բոլոր հպարտացած
բարձր բաները, ու բոլոր միտքերը Քրիստոսի
6 հնազանդութեանը գերի կ'ընենք. Եւ պատ-
րաստութիւն ունինք վրէժ առնելու ամէն ան-
հնազանդութենէ, երբ ձեր հնազանդութիւնը
7 կատարեալ ըլլայ։ Դուրսի երևութի՞ն կը նայիք.
եթէ մէկը վստահ ըլլայ իր անձին վրայ՝ թէ
ինք Քրիստոսին է, թող նորէն ինքիրմէ խորհի՝

որ ինչպէս ինք Քրիստոսին է, նոյնպէս ալ մենք*։
8 Քանզի եթէ աւելի ալ պարծենալու ըլլամ այս
մեր իշխանութեանը վրայով՝ զոր Տէրը մեզի
տուաւ՝ ձեզ շինելու եւ ոչ թէ քակելու համար,
9 պիտի չամչնամ. Որպէս զի այնպէս չսեպուիմ՝
որպէս թէ ես թուղթերովս ձեզի վախ մը
10 կը ձգեմ. Քանզի՝ Անոր թուղթերը, կ՚ըսէ մէկը,
ծանր ու զօրաւոր են, բայց անոր մարմինին ե-
11 րեւոյթը տկար է, ու խօսքը՝ անարգ. Այնպիսի
մարդը զայս թող խորհի, որ մենք հեռուէն
ինչպէս ենք խօսքով մեր թուղթերովը, մօ-
12 տէն ալ այնպէս պիտի ըլլանք գործով։ Վասն զի
մենք չենք համարձակիր մեր անձը կշիռքի դնել
ու բաղդատել անոնց հետ, որ ինքզինքնին
կը գովեն. բայց անոնք իրենցմով իրենց անձերը
չափելով, եւ զիրենք իրենց հետ բաղդատելով՝
13 չեն հասկնար։ Բայց մենք չափէ դուրս բանե-
րով պիտի չպարծենանք, հապա այն կանոնին
չափովը՝ զոր Աստուած մեզի բաժին տուաւ
14 մինչեւ ձեզի հասնելու. Ոչ թէ որպէս թէ մենք
ձեզի հասած չենք, ու ինքզինքնիս չափէն ա-
ւելի կ՚երկնցնենք. վասն զի Քրիստոսի աւետա-
15 րանովը մինչեւ ձեզի հասանք։ Եւ ոչ թէ չափէ
դուրս բաներով՝ ուրիշներուն աշխատանքովը
կը պարծենանք, հապա յոյս ունինք որ ձեր
հաւատքը աւելնալուն՝ մեր կանոնին չափովը
16 ձեզմով աւելի ընդարձակինք, Ձեզմէ անդին
կողմերը աւետարանը քարոզելու, եւ ոչ թէ
պատրաստ բաներու վրայ պարծենալու ուրիշի
17 մը կանոնով։ Բայց ան որ կը պարծենայ՝ թող
18 Տէրոջմով պարծենայ։ Վասն զի ոչ թէ ան որ
իր անձը կը գովէ՝ անիկա է ընտրուածը, հապա
ան զոր Տէրը կը գովէ։

*Ոմանք յաւելցնեն, Քրիստոսին ենք

## ԳԼ. ԺԱ

1 Նախանձով լեցուած՝ կորնթացւոց վրայ, որոնք կ'երևնայ թէ սուտ առաքեալները աւելի պատուաւոր կը համարէին, կը ստիպուի իր անձին վրայ պարծենալ, 5 թէ ինք հաւասար է երևելի առաքեալներուն, 7 և թէ ինք աւետարանը ձրի քարոզեց անոնց՝ ընաւ մէկուն նեղութիւն չտալով իր ապրուստին համար. 13 կը ցուցնէ թէ ինք օրէնքին կողմանէ ստոր չէ այն խաբեբայ գործաւորներէն, 23 և Քրիստոսի ծառայութեանը ու իր պաշտօնին համար իր կրած նեղութիւններուն մէջ շատ գերազանց է անոնցմէ։

1 Երանի՜ թէ քիչ մը ներէիք իմ անմտութեանս.
2 և իրաւցընէ համբերեցէք ինծի։ Վասն զի ձեր
վրայ նախանձաւոր եմ Աստուծոյ նախանձովը.
վասն զի ես ձեզ էրկան մը նշանեցի՝ մաքուր
3 կոյսի մը պէս Քրիստոսի դիմաց հանելու։ Միայն
թէ կը վախնամ՝ չըլլայ թէ ինչպէս օձը Եւան
խաբեց իր խորամանկութիւնովը, նոյնպէս ալ
ձեր միտքերը ապականին Քրիստոսի վրայ եղած
4 միամտութենէն։ Վասն զի եթէ մէկը գալու
ըլլայ և ուրիշ Յիսուս քարոզէ՝ զոր մենք չքա-
րոզեցինք, կամ ուրիշ հոգի առնէք՝ զոր չա-
ռիք, կամ ուրիշ աւետարան՝ զոր չէք ընդու-
5 նած, այնպիսիներուն աղէկ կը համբերէիք։ Քանզի
ես այսպէս կը սեպեմ՝ որ ամէնէն երևելի ա-
6 ռաքեալներէն բանով մըն ալ պակաս չեմ։ Եւ
թէպէտ խօսքի կողմէ անկիրթ եմ, բայց ոչ թէ
գիտութեան կողմէ. սակայն ամէն բանի մէջ
բոլորովին անձերնիս ձեզի յայտնի ըրինք։
7 Միթէ յանցա՞նք գործած եղայ՝ որ Աստուծոյ
աւետարանը ձեզի ձրի քարոզելով իմ անձս
խոնարհեցուցի, որպէս զի դուք բարձրանաք։
8 Ուրիշ եկեղեցիները կողոպտեցի, անոնցմէ թոշակ
9 առնելով ձեզի ծառայելու համար։ Ու ձեր քով
գտնուած ատենս երբ պակասութիւն մը ունե-
ցայ, ձեզմէ մէկո՛ւն ծանրութիւն չտուի. վասն
զի իմ պակասութիւնս լեցուցին Մակեդոնիայէ
եկող եղբայրները. և ամէն կերպով ձեզի ծան-
րութիւն տալէ իմ անձս պահեցի ու պիտի պա-

10 Հեմ ալ։ Քրիստոսի ճշմարտութիւնը իմ ներ֊
սիդիս է, որ այս իմ պարծենալս պիտի չխա֊
11 փանուի ինծմէ Աքայիայի կողմերը։ Ինչո՞ւ.
որպէս թէ չե՞մ սիրեր ձեզ. զայն Աստուած գիտէ։
12 Բայց ինչ որ կ՚ընեմ՝ պիտի ընեմ ալ, որպէս զի
կտրեմ անոնց պատճառը՝ որոնք պատճառ
կը փնտռեն, որպէս զի ի՛նչ բանով որ կը պարծե֊
13 նան, իրենք ալ մեզի պէս գտնուին։ Վասն զի
այնպիսիները սուտ առաքեալներ, խաբեբայ
բանուորներ, ըլլալով, Քրիստոսի առաքեալ֊
14 ներուն կերպարանքը իրենց վրայ կ՚առնեն։ Եւ
զարմանք մը չէ. վասն զի ինք Սատանայ ալ լու֊
15 սաւոր հրեշտակի կերպարանք կ՚առնէ. Ալ մեծ
բան մը չէ, որ անոր պաշտօնեաներն ալ ար֊
դարութեան պաշտօնեաներու նման կերպա֊
րանք կ՚առնեն. որոնց վերջը իրենց գործերուն
16 համեմատ պիտի ըլլայ։ Դարձեալ կ՚ըսեմ,
Չըլլայ որ մէկը զիս անմիտ սեպէ, ապա թէ ոչ՝
գոնէ անմիտի մը պէս զիս ընդունեցէք, որ֊
17 պէս զի ես ալ քիչ մը պարծենամ։ Ինչ որ ես
կը խօսիմ, ոչ թէ Տէրոջը կամքին պէս կը խօսիմ,
հապա որպէս թէ անմտութիւնով մը՝ այդ
18 պարծենալուն վստահութիւնովը։ Որովհետեւ
շատերը մարմնի կողմանէ կը պարծենան, ես ալ
19 պիտի պարծենամ։ Քանզի դուք իմաստուն
ըլլալով, յօժարութեամբ կը համբերէք ան֊
20 միտներուն։ Վասն զի կը համբերէք, եթէ մէկը
ձեզ ծառայեցնէ, եթէ մէկը ձեր ստացուածքը
ուտէ, եթէ մէկը ձեզմէ բան մը առնէ, եթէ մէկը
ձեր վրայ հպարտանայ, եթէ մէկը ձեր երեսին
21 զարնէ։ Քամահրանքի ձեւով կը խօսիմ, իբր թէ
մենք տկար էինք. բայց ինչ բանով որ մէկը
պարծենալու կը համարձակի, (անմտութեամբ կը
22 խօսիմ,) ես ալ կը համարձակիմ։ Անոնք Եբ֊
րայեցի՞ են, ես ալ. Իսրայելացի՞ են, ես ալ.

23 Աբրահամի՞ սերունդ են, ես ալ. Քրիստոսի՞
պաշտօնեաներ են, (յիմարաբար կը խօսիմ,)
ալ աւելի ես. աշխատանքներով՝ աւելի, ծե-
ծերով՝ ալ աւելի, բանտարկութիւններով՝ ա-
24 ւելի, մահուան վտանգներով՝ շատ անգամ. Հրեա-
ներէն հինգ անգամ քառասունէն մէկ պակաս
25 ծեծ կերայ. Երեք անգամ ձաղկով ծեծուեցայ.
մէկ անգամ քարկոծուեցայ. երեք անգամ
նաւաբեկութեան հանդիպեցայ. գիշեր մը ու
26 ցորեկ մը ծովուն անդունդը մնացի. Շատ անգամ
ճամբորդութիւններու մէջ շրջագայեցայ. գետե-
րէն վտանգներ, աւազակներէն վտանգներ, իմ
ազգէս վտանգներ, հեթանոսներէն վտանգ-
ներ, քաղաքի մէջ վտանգներ, անապատի մէջ
վտանգներ, ծովու վրայ վտանգներ, սուտ եղ-
27 բայրներու մէջ վտանգներ կրեցի. Ջանքի ու աշ-
խատանքի մէջ, շատ անգամ քնահատութեան
մէջ, անօթութեան ու ծարաւութեան մէջ,
շատ անգամ ծոմ կենալու մէջ, ցուրտի ու
28 մերկութեան մէջ էի. Զատ արտաքին նեղութիւն-
ները, ամէն օրուան զբաղմունքը, բոլոր եկե-
29 ղեցիներուն հոգը, վրաս կը դիզուէր։ Ո՞վ
կը տկարանայ, ու ես չեմ տկարանար. ո՞վ
30 կը գայթակղի, ու իմ սիրտս չայրիր։ Եթէ
պարծենալ պէտք ըլլայ, տկարութեանս բա-
31 ներուն վրայ պարծենամ։ Աստուած և մեր
Տէր Յիսուս Քրիստոսի Հայրը, որ յաւիտեան
32 օրհնեալ է, գիտէ որ սուտ չեմ զրուցեր։ Դա-
մասկոսի մէջ Արետա թագաւորին ազգապետը
զիս բռնել ուզելով՝ Դամասկացւոց քաղաքը
33 պահապաններ դրեր էր. Եւ ես պատուհանէ մը
զամբիւղով պարսպէն վար թող տրուեցայ, ու
անոր ձեռքէն փախայ։

## ԳԼ. ԺԲ

*1 Պօղոս իր առաքելութիւնը գովելու համար՝ թէև կրնար պարծենալ իրեն եղած յայտնութիւններուն վրայ, 9 բայց աւելի աղէկ կը համարի իր տկարութիւններուն վրայ պարծենալ, 11 յանդիմանելով զանոնք որ ստիպեցին զինք այսպէս պարծենալու. 14 կը խոստանայ նորէն իրենց երթալ հայրական սիրով մը. 20 բայց կը վախնայ որ ինք պիտի ցաւի՝ շատ գայթակղութիւններ և անկարգութիւններ գտնելով անոնց մէջ։*

1 Պարծենալ *իրաւցընէ ինծի անօգուտ է. միայն
թէ Տէրոջը տեսիլքներուն ու յայտնութիւն-
2 ներուն գամ։ Մարդ մը գիտեմ Քրիստոսով
տասնըչորս տարի առաջ, (եթէ մարմինով էր՝
չեմ գիտեր, և եթէ առանց մարմինի՝ չեմ գի-
տեր, Աստուած գիտէ,) որ այնպիսի մէկը
3 յափշտակուեցաւ մինչև երրորդ երկինքը։ Ու
գիտեմ այնպիսի մարդ մը, (եթէ մարմինով և
եթէ առանց մարմինի՝ չեմ գիտեր, Աստուած
4 գիտէ,) Որ դրախտը յափշտակուեցաւ ու լսեց
չպատմուելու խօսքեր, զորոնք մարդու արժան
5 չէ խօսիլ։ Ես այնպիսիին համար պիտի պար-
ծենամ. բայց իմ անձիս համար պիտի չպար-
ծենամ, հապա միայն տկարութեանս վրայ։
6 Վասն զի եթէ պարծենալ ալ ուզեմ, անմիտ
պիտի չըլլամ, որովհետև շիտակը պիտի զրու-
ցեմ. բայց կը խնայեմ խօսելու՝ որ չըլլայ թէ մէկը
իմ վրաս աւելի համարում ունենայ, քան որ-
չափ իմ վրաս կը տեսնէ կամ ինծմէ կը լսէ։
7 Եւ որ չըլլայ թէ ես հպարտանամ խիստ շատ
յայտնութիւններուն համար, ինծի մարմինի
խայթոց մը տրուեցաւ, Սատանայի հրեշտակ մը,
զիս նեղելու համար, որ չըլլայ թէ հպարտա-
8 նամ։ Ասոր համար երեք անգամ աղաչեցի
9 Տէրոջը, որ մէկդի ընէ ինծմէ։ Ու ըսաւ ինծի,
Իմ շնորհքս հերիք է քեզի, վասն զի իմ զօ-
րութիւնս տկարութեան մէջ կը կատարուի.
ուստի մեծ յօժարութեամբ աւելի իմ տկա-

*Յուն. պէտք է, բայց

ութիւններուս վրայ պիտի պարծենամ, որ֊
պէս զի Քրիստոսի զօրութիւնը իմ վրաս հանգչի։
10 Անոր համար հաճեր եմ ես տկարութիւննե֊
րու, նախատինքներու, տառապանքներու, հա֊
լածանքներու և նեղութիւններու՝ Քրիստոսի
համար. վասն զի երբ կը տկարանամ, այն ատեն
11 զօրաւոր եմ։ Ես անմիտ եղայ *պարծենալով.
դուք ստիպեցիք զիս. վասն զի ինծի պէտք էր
ձեզմէ վկայութիւն առնել, քանզի ես երևելի
առաքեալներէն բանով մը պակաս չգտնուեցայ,
12 թէև ես ոչինչ եմ։ Յիրաւի ձեր մէջ առաքեալի
նշաններ գործուեցան ամէն համբերութիւնով,
նշաններով և սքանչելիքներով ու զօրութիւն֊
13 ներով։ Վասն զի ալ ի՞նչ կայ, որով պակաս
գտնուեցաք ուրիշ եկեղեցիներէն, միայն թէ
անով՝ որ ես ձեզի ձանձրութիւն չտուի. նե֊
րեցէք ինծի այդ յանցանքը։
14 Ահա այս երրորդ անգամ է որ կը պատրաս֊
տուիմ ձեզի գալու. և ես ձեզի ձանձրութիւն
պիտի չտամ, վասն զի ձեր ունեցածը չեմ փնտռեր,
հապա ձեզ. որովհետև որդիները պարտաւոր
չեն ծնողքներուն համար բան դիզել, հապա
15 ծնողքները՝ որդիներուն համար։ Եւ ես մեծ
յօժարութեամբ ծախք պիտի ընեմ, ու ծախք
պիտի ըլլամ ալ ձեր անձերուն համար, թէ֊
պէտև ձեզ աւելի սիրելովս ձեզմէ քիչ սիրուիմ ալ։
16 Սակայն թող ըլլայ որ ես ձեզի ծանրութիւն
մը չտուի, բայց գուցէ մէկը ըսէ թէ խորամանկ ըլլա֊
17 լով նենգութեամբ ձեզ բռնեցի։ Միթէ իմ
ձեզի ղրկածներէս մէկուն ձեռքով ձեզմէ բան
18 մը քաշեցի՞։ Տիտոսի աղաչեցի, ու անոր հետ
այն եղբայրը ղրկեցի. միթէ Տիտոս ձեզմէ բան
մը քաշե՞ց. չէ՞ որ երկուքս ալ նոյն հոգիով քալե֊
ցինք, չէ՞ որ նոյն ճամբով պտըտեցանք։

*Ոմանք [illegible]

19 Դարձեալ, կը կարծէ՞ք որ ձեր առջև ջատա-
գովութի՞ւն կ'ընենք մեր անձերուն. Աստուծոյ
առջև Քրիստոսով կը խօսինք. և ամէն բան,
20 սիրելիներ, ձեր շինութեանը համար է. Քանզի
կը վախնամ որ չըլլայ թէ երբ գամ՝ ձեզ ուզա-
ծիս պէս չգտնեմ, և ես ալ ձեզի ձեր չուզածին
պէս գտնուիմ. չըլլայ թէ ձեր մէջ գտնուին վէճեր,
նախանձներ, սրտմտութիւններ, գրգռութիւն-
թիւններ, չարախօսութիւններ, բանսարկու-
թիւններ, ամբարտաւանութիւններ, խռովու-
21 թիւններ. Չըլլայ թէ երբ նորէն գամ, իմ
Աստուածս զիս նկուն ընէ ձեր քով, ու սուգ
ընեմ շատերուն համար, որոնք առաջուընէ
մեղք գործեցին, ու չապաշխարեցին իրենց
գործած պղծութեանը և պոռնկութեանը ու
գիճութեանը վրայ ։

## ԳԼ. ԺԳ

1 Կը ծանուցանէ թէ ինք անաչառ պիտի ըլլայ, և իր առաքելական իշխանութիւնը պիտի բանեցնէ յամառեալ մեղաւորներուն դէմ. 5 և յորդորելով որ իրենց հաւատքը փորձեն, 7 ու իրենց մեղքերէն դառնան՝ դեռ ինք անոնց չգացած՝ 11 իր թուղթը կը վերջացնէ ընդհանուր յորդորանքով մը և աղօթքով ։

1 Այս երրորդ անգամ է որ ձեզի կու գամ. եր-
կու կամ երեք վկաներու բերնէ պիտի հաս-
2 տատուի ամէն բան ։ Առաջուընէ ըսեր եմ՝ և
նորէն առաջուընէ կը զրուցեմ (որպէս թէ երկ-
րորդ անգամ ներկայ կը գտնուիմ՝ թէև հիմա
հեռուէն կը գրեմ) առաջուան մեղանչողներուն
և ուրիշ ամէնուն, որ եթէ նորէն գամ՝ պիտի
3 չխնայեմ. Որովհետև Քրիստոսի ինծմով խօսե-
լուն ապացոյցը կը փնտռէք, որ ձեր վրայ տկա-
4 րացած չէ, հապա ձեր մէջ զօրացած է. Որ
թէպէտ խաչուեցաւ տկարութիւնով, բայց
կենդանի է Աստուծոյ զօրութիւնով. քանզի
մենք ալ թէպէտ կը տկարանանք անով, բայց

կենդանի պիտի ըլլանք անոր հետ Աստուծոյ
5 զօրութիւնովը ձեր մէջ։ Փորձեցէք ձեր ան-
ձերը թէ հաւատքին մէ՞ջ էք. քննեցէք ձեր
անձերը. չէ՞ք գիտեր ինքզինքնիդ, որ Յիսուս
Քրիստոս ձեր մէջ է, միայն եթէ խոտելի չըլ-
6 լաք։ Բայց կը յուսամ որ պիտի գիտնաք թէ
7 մենք խոտելի չենք։ Եւ կը խնդրեմ Աստուծմէ
որ դուք չարութիւն մը չընէք. ոչ թէ՝ որպէս
զի մենք ընտիր երեւինք, հապա որպէս զի դուք
բարին գործէք, թէեւ մենք իբրեւ խոտելի ըլ-
8 լանք։ Վասն զի ճշմարտութեան դէմ կարո-
ղութիւն մը չունինք, հապա ճշմարտութեան
9 համար։ Քանզի ուրախ ենք՝ երբ մենք կը տկա-
րանանք ու դուք զօրաւոր կ'ըլլաք, և մենք ալ
այդ ձեր հաստատութեանը համար կ'աղօթենք։
10 Ուստի զայս կը գրեմ ձեզի հեռուէն, որ չըլ-
լայ թէ երբ գամ՝ սաստկութեամբ վարուիմ
այն իշխանութեանը համեմատ, զոր Տէրը ինծի
տուաւ շինելու և ոչ թէ քակելու համար։
11 Վերջապէս, եղբայրներ, ողջ եղէք, հաս-
տատ կեցէք, մխիթարուեցէք, միաբան եղէք,
խաղաղութիւն ըրէք. և սիրոյ ու խաղաղու-
12 թեան Աստուածը ձեզի հետ պիտի ըլլայ։ Բարեւ
տուէք իրարու սուրբ համբուրով. բարեւ կ'ը-
13 նեն ձեզի բոլոր սուրբերը։ Տէր Յիսուս Քրիս-
տոսի շնորհքը և Աստուծոյ սէրը ու Հոգւոյն
Սրբոյ հաղորդութիւնը ձեր ամէնուն հետ ըլլայ։
Ամէն։

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԳԱՂԱՏԱՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա

*6 Առաքեալը կը զարմանայ որ Գաղատացիք այնքան շուտով թող տուին զինք, ու իր քարոզած աւետարանը, 8 և կը նզովէ ան մարդիկը որ իր քարոզած աւետարանէն զատ ուրիշ աւետարան մը կը քարոզեն. 11 կը ցուցնէ թէ ինք ոչ թէ մարդոցմէ, այլ Աստուծմէ սորված է աւետարանը. 14 թէ ինք ինչ էր իր կոչումէն առաջ, 17 և թէ ինչ ըրաւ անմիջապէս ետքը։*

1 Պօղոս, առաքեալ եղած, ոչ թէ մարդոցմէ ու
ոչ թէ մարդու ձեռքով, հապա Յիսուս Քրիս-
տոսի ձեռքով, և Հօր Աստուծոյ՝ որ զանիկա
2 մեռելներէն յարուց, Եւ բոլոր եղբայրները
որոնք ինծի հետ են, Գաղատիոյ եկեղեցինե-
3 րուդ. Շնորհք և խաղաղութիւն ձեզի Հօր
Աստուծմէ ու մեր Տէր Յիսուս Քրիստոսէ,
4 Որ իր անձը տուաւ մեր մեղքերուն համար,
որպէս զի մեզ փրկէ հիմակուան չար աշխար-
հէն՝ Աստուծոյ ու մեր Հօրը կամքին համեմատ,
5 Որուն փառք յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։
6 Կը զարմանամ որ այդպէս շուտով ուրիշ ա-
ւետարանի կը փոխուիք անկէ՝ որ ձեզ Քրիս-
7 տոսի շնորհքին կանչեց. Որ չկայ ուրիշ աւետա-
րան. միայն թէ կան ոմանք՝ որոնք ձեզ կը խռովե-
ցնեն, ու կ՚ուզեն Քրիստոսի աւետարանը
8 խանգարել։ Բայց եթէ մենք կամ երկինքէն
հրեշտակ մը գայ, աւետարանէ ձեզի անկէ ու-
րիշ՝ զոր մենք աւետարանեցինք ձեզի, նզովեալ
9 ըլլայ։ Ինչպէս առաջ ըսինք, հիմա ալ նորէն
կ՚ըսեմ, Եթէ մէկը ձեր ընդունածէն ուրիշ ա-
ւետարան քարոզելու ըլլայ ձեզի, նզովեալ ըլ-

10 լոյ։ Քանզի հիմա մարդի՞կ կը հաճեցնեմ թէ
զԱստուած. կամ մարդո՞ց հաճելի ըլլալ կը
փնտռեմ. քանզի եթէ ես տակաւին մարդոց
հաճելի ըլլայի, ալ Քրիստոսի ծառայ չէի ըլլար։
11 Կը ծանուցանեմ ձեզի, եղբայրներ, այն ա-
ւետարանը որ ինծմէ քարոզուեցաւ, թէ ա-
12 նիկա մարդու բան չէ։ Որովհետև ես ալ մարդէ
չառի զանիկա, և մէկէ՛ն ալ սորվեցայ, հապա
13 Յիսուս Քրիստոսի յայտնութենէն։ Վասն զի
լսած էք դուք իմ առաջուան ժամանակի վար-
մունքս Հրէութեան մէջ, ինչպէս չափէ դուրս
կը հալածէի Աստուծոյ եկեղեցին, ու կը կոր-
14 ծանէի զանիկա. Եւ իմ հայրենի աւանդու-
թիւններուս խիստ նախանձաւոր ըլլալով՝ իմ
ազգիս մէջ եղած շատ հասակակիցներէս աւելի
15 յառաջադէմ էի Հրէութեան մէջ։ Բայց երբ
ուզեց Աստուած, (որ որոշեց զիս իմ մօրս ո-
16 րովայնէն, և իր շնորհքովը զիս կանչեց,) *Ինծի
իր Որդին յայտնել, որպէս զի զանիկա հեթա-
նոսներուն մէջ քարոզեմ, մէկէն ի մէկ բան մը
17 չխմացուցի մարմինին ու արիւնին, Ոչ ալ Երու-
սաղէմ ելայ ինծմէ առաջ առաքեալ եղողնե-
րուն քով, հապա Արաբիա գացի, ու նորէն
18 Դամասկոս դարձայ։ Ետքը երեք տարիէն ետև
Երուսաղէմ ելայ Պետրոսը տեսնելու, և տաս-
19 նըհինգ օր անոր քով կեցայ. Սակայն առաք-
եալներէն ուրիշ մէկը չտեսայ, բայց միայն Յա-
20 կոբոս, Տէրոջը եղբայրը։ Բայց գալս որ կը գրեմ
ձեզի՝ ահա Աստուծոյ առջև կը հաստատեմ, որ սուտ
21 չեմ գրուցեր։ Անկէ ետքը եկայ Սիւրիայի ու
22 Կիլիկիայի կողմերը. Եւ զիս դէմ առ դէմ
չէին ճանչնար այն եկեղեցիները՝ որոնք Հրէաս-
23 տանի մէջ էին Քրիստոսով. Միայն թէ անոնք
լսած էին թէ Ան որ առենօք մեզ կը հալածէր,

*Կամ, ինծմով

հիմա ինք այն հաւատքը կը քարոզէ՝ զոր ատեն
24 մը կը կործանէր։ Ու ինծմով զԱստուած կը փա-
ռաւորէին։

## ԳԼ. Բ

1 Առաքեալը կը ծանուցանէ թէ ե՛րբ ինք վերստին Երուսաղէմ ելաւ, և ի՛նչ նպատակով, 3 թէ Տիտոս չթլփատուեցաւ, 11 թէ ինք Պետրոսի դէմ կեցաւ, պատճառը անոր իմացնելով 14 թէ ինչո՛ւ ինք և ուրիշ Հրեաները Քրիստոսի կը հաւատան՝ որ հաւատքով արդարանան, և ոչ թէ գործով. 20 կը հաստատէ թէ մեղքի մէջ պիտի չմնան անոնք՝ որ այսպէս արդարացած են։

1 Ետքը տասնըչորս տարիէն նորէն Երու-
սաղէմ ելայ Բառնաբասի հետ՝ Տիտոսն ալ
2 մէկտեղ առնելով։ Ու ելայ յայտնութիւնով,
և անոնց իմացուցի այն աւետարանը՝ զոր հե-
թանոսներուն մէջ կը քարոզեմ, բայց առանձին
անոնց՝ որոնք երևելիներ էին, որ չըլլայ թէ
3 պարապ տեղ վազեմ կամ վազած ըլլամ։ Բայց
ոչ թէ ինծի հետ եղող Տիտոսն ալ, որ Յոյն էր,
4 պարտաւորեցաւ թլփատուիլ. Մանաւանդ ներս
սպրդող սուտ եղբայրներուն համար՝ որոնք սա-
հելով ներս մտան Քրիստոս Յիսուսով մեր
ունեցած ազատութիւնը լրտեսելու համար,
5 որպէս զի մեզ ծառայեցնեն. Որոնց քիչ մը
ատեն անգամ մտիկ չըրինք հնազանդելու, որ-
պէս զի աւետարանին ճշմարտութիւնը հաս-
6 տատուն մնայ ձեր մէջ։ Բայց անոնք որ կը կար-
ծուէին բան մը ըլլալ, ինչ որ էին՝ այն իմ հոգս
չէ. Աստուած մարդոց աչառութիւն չըներ.
վասն զի այնպէս կարծուածները բան մը չիմացու-
7 ցին ինծի։ Հապա անոր հակառակը՝ երբ տե-
սան որ անթլփատներուն աւետարանը ինծի
յանձնուած է, ինչպէս Պետրոսի ալ՝ թլփատ-
8 ուածներունը, (Վասն զի ան որ Պետրոսի յա-
ջողեց թլփատուածներուն առաքելութիւն ը-
նել, ինծի ալ յաջողեց հեթանոսներունը,)
9 Ու երբ ինծի տրուած շնորհքը գիտցան Յա-

*կոբոս ու Կեփաս և Յովհաննէս, որոնք սիւներ
սեպուած էին, աջ ձեռքերնին տուին ինծի ու
Բառնաբասի ի նշան հաղորդակցութեան, որպէս
զի մենք հեթանոսներուն մէջ երթանք, ու անոնք՝
10 թլփատուածներուն. Միայն թէ կը յանձնէին որ աղ-
քատները յիշենք. զոր ես ալ փոյթ ունեցայ
11 այն բանը ընելու։ Բայց երբ Պետրոս Անտիոք
եկաւ, ես անոր դէմ կեցայ. որովհետև ինք
12 մեղադրուելու էր։ Վասն զի դեռ Յակոբոսի
քովէն մէկ քանի հոգի չեկած, ինք հեթա-
նոսներուն հետ անխտրաբար կ'ուտէր. բայց երբ
եկան՝ մէկդի կը քաշուէր, և ինքզինք կը զա-
տէր, վախնալով անոնցմէ՝ որոնք թլփատուած-
13 ներէն էին։ Եւ անոր հետ կեղծաւորեցան
միւս Հրեաներն ալ, այնպէս որ Բառնաբաս ալ
14 անոնց կեղծաւորութեանը ծռեցաւ։ Բայց ես
երբ տեսայ որ աւետարանին ճշմարտութեանը
մէջ շիտակ չեն քալեր, ամէնուն առջև Պետ-
րոսի զրուցեցի, Եթէ դուն, որ Հրեայ ես, հե-
թանոսի պէս ու ոչ թէ Հրեայի պէս կ'ապրիս,
ի՞նչպէս հեթանոսները կը ստիպես Հրեայի պէս
15 վարուելու։ Մենք որ բուն Հրեայ ենք, և ոչ
16 թէ հեթանոսներէն մեղաւորներ, Զայս գիտ-
նալով՝ որ մարդ օրէնքին գործերէն չկրնար
արդարանալ, հապա Յիսուս Քրիստոսի հա-
ւատքէն, մենք ալ Քրիստոս Յիսուսի հաւա-
տացինք՝ որպէս զի արդարանանք Քրիստոսի
հաւատքէն, և ոչ թէ օրէնքին գործերէն, ո-
րովհետև օրէնքին գործերէն մարմին մը պիտի
17 չարդարանայ։ Իսկ եթէ մենք, որ կ'ուզենք
Քրիստոսով արդարանալ, մեղաւոր գտնուինք,
ուրեմն Քրիստոս մեղքի պաշտօնեա՞յ եղաւ.
18 քա՛ւ լիցի։ Քանզի եթէ իմ քակած բաներս
նորէն կը շինեմ, իմ անձս յանցաւոր կը ցու-
19 ցնեմ։ Վասն զի ես օրէնքով մեռայ օրէնքին,*

20 որպէս զի Աստուծոյ կենդանի ըլլամ։ Քրիս-
տոսի հետ խաչը ելայ. և ալ կենդանի եմ ոչ
թէ ես, հապա Քրիստոս կենդանի է իմ մէջս.
բայց ես որ հիմա մարմինով կ'ապրիմ՝ Աս-
տուծոյ Որդւոյն հաւատքովը կ'ապրիմ, որ զիս
21 սիրեց ու իր անձը ինծի համար մատնեց։ Ես
Աստուծոյ շնորհքը չեմ խափաներ. վասն զի
եթէ արդարութիւնը օրէնքէն էր, ուրեմն
Քրիստոս պարապ տեղ մեռաւ։

## ԳԼ. Գ

1 կը հարցնէ թէ ի՛նչ պատճառաւ հաւատքը կը թողուն և օրէնքին կը դառնան. 6 կը ցուցնէ թէ անոնք որ կը հաւատան՝ կ'արդարանան, 9 և կ'օրհնուին Աբրահամի հետ. ու շատ փաստերով կը հաստատէ զայս։

1 Ով անմիտ Գաղատացիներ, ո՞վ ձեզ հրապու-
րեց*. որոնց աչքերուն առջև Յիսուս Քրիստոս
2 ձեր մէջ խաչը ելած նկարագրուեցաւ։ Ասիկա
միայն կ'ուզեմ ձեզմէ սորվիլ. Օրէնքի՞ն գոր-
ծերովը դուք Հոգին առիք՝ թէ հաւատքին լսե-
3 լովը։ Այդչափ անմի՞տ էք. հոգիով սկսեցիք,
4 ու հիմա մարմինո՞վ կը վերջանաք։ Այնչափ
դիպուածները պարա՞պ տեղ ձեր վրայէն անցան,
5 (եթէ պարապ ըլլայ ալ)։ Ուստի ան որ ձեզի
Հոգին բաշխեց և ձեր մէջ զօրութիւններ գոր-
ծեց, օրէնքի՞ն գործերովն էր՝ թէ հաւատքին
6 լսելովը։ Ինչպէս Աբրահամ Աստուծոյ հաւա-
տաց, ու անոր արդարութիւն սեպուեցաւ։
7 Ուրեմն գիտցէք թէ անոնք որ հաւատքէն են՝
8 անոնք են Աբրահամի որդիները։ Եւ գիրքը
առաջուընէ գիտնալով թէ Աստուած հեթա-
նոսները հաւատքով կ'արդարացնէ, առաջուընէ
աւետիս տուաւ Աբրահամի, թէ Քեզմով պիտի
9 օրհնուին բոլոր ազգերը։ Ուստի անոնք որ հա-
ւատքէն են, կ'օրհնուին հաւատացեալ Աբրա-

*Ոմանք չ'աւելցնեն, . ճշմարտութեանը չհնազանդիլ

10 համի հետ ։ Վասն զի անոնք որ օրէնքին գոր-
ծերէն են, անէծքի տակ են. վասն զի գրուած է
թէ Անիծեալ ըլլայ ամէն մարդ՝ որ օրէնքին
գիրքը ամէն գրուածներուն մէջ չկենար՝ որ
11 զանոնք կատարէ ։ Եւ թէ օրէնքով մէ՛կը չկրնար
արդարանալ Աստուծոյ առջեւ, այն յայտնի է.
12 քանզի Արդարը հաւատքէն պիտի ապրի ։ Բայց
օրէնքը հաւատքէն չէ, հապա Ան որ կը կա-
տարէ այն բաները՝ անոնցմով պիտի ապրի ։
13 Քրիստոս մեզ ծախու առաւ օրէնքին անէծքէն՝
ինք մեզի համար անէծք ըլլալով. (վասն զի
գրուած է թէ Անիծեալ է ան ամէնը՝ որ փայտէ
14 կը կախուի.) Որպէս զի Աբրահամի օրհնութիւնը
հեթանոսներուն վրայ ըլլայ Քրիստոս Յիսուսով.
որպէս զի մենք ալ Հոգւոյն խոստմունքը առ-
15 նենք հաւատքով ։ Մարդու սովորութեան պէս կը
զրուցեմ. եղբայրներ, իրաւ որ մարդու մը հաս-
տատած կտակը մէ՛կը չխափաներ, ոչ ալ անոր
16 վրայ ուրիշ պատուէր մը կ'աւելցնէ ։ Արդ
խոստմունքները Աբրահամի ու անոր սերուն-
դին եղան. չըսեր, Եւ քու սերունդներուդ՝ որ-
պէս թէ շատերու համար, հապա որպէս թէ
մէկի համար, Եւ քու սերունդիդ, որ Քրիս-
17 տոս է ։ Բայց զայս կը զրուցեմ. Այն կտակը,
որ առաջուընէ Աստուծմէ հաստատուեցաւ
Քրիստոսով, օրէնքը չորս հարիւր երեսուն տա-
րիէն ետեւ որ գրուեցաւ, չկրնար անվաւեր ընել
18 խոստմունքը խափանելու համար ։ Վասն զի
եթէ ժառանգութիւնը օրէնքէն կ'ըլլայ, ու-
րեմն ա՛լ խոստմունքէն չէ. բայց Աբրահամի
խոստմունքով շնորհեց Աստուած ։
19 Հապա ինչո՞ւ համար է օրէնքը. յանցանքի
համար վրայ աւելցաւ, (մինչեւ գայ այն սե-
րունդը՝ որուն խոստացուեր էր,) հրեշտակնե-
20 րով տրուած՝ միջնորդի մը ձեռքով ։ Բայց միջ-

նորդը մէկու միջնորդ չէ . սակայն Աստուած մէկ
21 է ։ Ուրեմն օրէնքը հակառա՞կ բան մըն է Աստու-
ծոյ խոստումներուն . քա՛ւ լիցի . քանզի եթէ
տրուած ըլլար այնպիսի օրէնք մը, որ կարող ըլ-
լար կենդանի ընել, այն ատեն իրաւցնէ արդա-
22 րութիւնը օրէնքէն կ՚ըլլար ։ Բայց գիրքը ամէնը
մեղքի տակ գոցեց, որպէս զի խոստումնքը
Յիսուս Քրիստոսի հաւատքովը տրուի հաւա-
23 տացեալներուն ։ Բայց քանի որ հաւատքը չէր
եկած, օրէնքին տակ գոցուած կը պահուէինք,
պատուելով այն հաւատքին որ պիտի յայտնուէր ։
24 Ուրեմն օրէնքը մեր դաստիարակը եղաւ՝ մեզ
Քրիստոսի բերելու, որպէս զի մենք հաւատքով
25 արդարանանք ։ Բայց երբ հաւատքը եկաւ, ալ
26 դաստիարակի տակ չենք ։ Վասն զի ամէնդ ալ
Աստուծոյ որդիներ էք, Քրիստոս Յիսուսի վրայ
27 եղած հաւատքով ։ Քանզի դուք ամէնդ որ
Քրիստոսով մկրտուեցաք, Քրիստոսը վրանիդ
28 հագած էք . Այսուհետեւ ոչ Հրեայ կայ, ոչ ալ Յոյն,
ոչ ծառայ կայ, ոչ ալ ազատ . ոչ արու կայ, ոչ ալ
էգ . վասն զի դուք ամէնդ ալ մէկ էք Քրիստոս
29 Յիսուսով ։ Ապա եթէ դուք Քրիստոսին էք,
ուրեմն Աբրահամի սերունդն էք, ու խոստ-
մունքին նայելով ժառանգներ ։

## ԳԼ. Դ

1 Առաքեալը կը ծանուցանէ թէ մենք օրէնքին տակ էինք մինչեւ Քրիստոսի աշխարհ գալը, ճիշդ ինչպէս որ ժառանգը խնամակալներու տակ է մինչեւ իր չափահաս ըլլալը . 5 բայց Քրիստոս մեզ ազատեց օրէնքէն . 7 ուստի ալ այսուհետեւ օրէնքին ծառաները չենք ։ 14 կը յիշեցնէ անոնց սէրը իր վրայ, ու իրենը անոնց վրայ, 22 և կը ցուցնէ թէ մենք Աբրահամու որդիքն ենք ազատ կնոջմէն ծնած ։

1 Բայց այս կը զրուցեմ, որչափ ժամանակ որ ժա-
ռանգը տղայ է, ծառայէ տարբերութիւն մը
2 չունի, թէեւ ամէնուն տէրն է . Հապա խնամա-
կալներու ու հոգաբարձուներու տակ է, մինչեւ
3 հօրը որոշած ժամանակը ։ Նոյնպէս մենք ալ

երբ տղայ էինք, աշխարհի սկզբունքներուն տակ
4 ծառայ եղած էինք։ Բայց երբ ժամանակը
լեցուեցաւ, ղրկեց Աստուած իր Որդին՝ որ
5 կնոջմէ եղաւ, ու օրէնքին տակ մտաւ. Որպէս զի
օրէնքին տակ եղողները փրկէ, որպէս զի մենք
6 որդեգրութիւնը ընդունինք։ Եւ որովհետեւ
դուք որդիներ էք, Աստուած իր Որդւոյն Հո-
գին *ձեր սրտերուն մէջ ղրկեց, որ կ'աղա-
7 ղակէ Աբբա Հայր։ Ուստի ա՛լ ծառայ չես,
հապա որդի. և եթէ որդի, ա՛լ Աստուծոյ ժա-
8 ռանգը Քրիստոսով։ Բայց այն ատեն որ չէիք
գիտեր զԱստուած, կը ծառայէիք անոնց՝ որոնք
9 բնէ Աստուածներ չէին։ Սակայն հիմա որ
ճանչցաք զԱստուած, մանաւանդ որ դուք Աս-
տուծմէ ճանչցուեցաք, ի՞նչպէս նորէն կը դառ-
նաք այն տկար ու չքաւոր սկզբունքներուն,
որոնց նորէն կ'ուզէք ծառայութիւն ընել։
10 Օրերը կը զանազանէք, ու ամիսները և ժա-
11 մանակները ու տարիները։ Կը վախնամ ձեզմէ,
որ դուցէ պարապ տեղ ձեր վրայ աշխատած
ըլլամ։
12 Ինծի պէս եղէք, վասն զի ես ալ ձեզի պէս
եղայ, եղբայրներ, ձեզի կ'աղաչեմ. դուք ինծի
13 վնաս մը հասուցած չէք։ Գիտէք դուք որ
մարմնիս տկարութիւնովը ձեզի առաջին ան-
գամ աւետարանը քարոզեցի. և իմ մարմնիս
14 վրայ եղած փորձութիւնս Զանարգեցիք ու չար-
համարհեցիք, հապա Աստուծոյ հրեշտակի մը
պէս զիս ընդունեցիք՝ Քրիստոս Յիսուսի պէս։
15 Ուրեմն †ի՞նչ էր" այն ձեր երանութիւնը. քանզի
ես կը վկայեմ ձեզի, որ եթէ կարելի էր, ձեր
16 աչքերը պիտի հանէիք ու ինծի տայիք։ Ուստի
ձեր թշնամի՞ն եղայ ձեզի ճշմարիտը խօսելուս
17 համար։ Ձեզի նախանձաւոր են անոնք՝ ոչ թէ

*Ոմանք, մեր

†կամ, ո՞ւր է

բարիին, և կ՚ուզեն *ձեզ արգիլել, որպէս զի
18 իրենց նախանձաւոր ըլլաք։ Սակայն աղէկ է
ամէն ատեն բարիին նախանձաւոր ըլլալ, ու
19 ոչ թէ միայն երբ ձեր մէջ ըլլամ։ Իմ որդեակ-
ներս, որ ձեզմով նորէն ծննդական ցաւ կը քա-
շեմ, մինչև Քրիստոս ձեր մէջ ձևակերպի։
20 Կ՚ուզէի հիմա ձեր մէջ ներկայ ըլլալ, ու փոխել
իմ ձայնս. վասն զի ես ձեր վրայով տարակու-
սած եմ։
21 Ըսէք ինծի, դուք որ օրէնքին տակ կ՚ուզէք
22 ըլլալ, օրէնքը չէ՞ք լսեր։ Վասն զի գրուած է
թէ Աբրահամ երկու որդի ունէր, մէկը՝ ա-
23 ղախինէն, ու միւսը՝ ազատ կնոջմէն։ Բայց ան
որ աղախինէն էր, մարմնի կողմանէ ծնած էր,
իսկ ան որ ազատ կնոջմէն՝ խոստմունքին հա-
24 մեմատ։ Այս բաները այլաբանօրէն կը մեկ-
նուին. վասն զի ասոնք են երկու կտակարան-
ները, մէկը Սինա լեռնէն՝ որ ծառայութեան
25 համար կը ծնանի, որ է Հագար. Վասն զի Հա-
գար Արաբիայի մէջ Սինա լեռն է, և կը հա-
մեմատի հիմակուան Երուսաղէմի, որ իր զա-
26 ւակներով մէկտեղ կը ծառայէ։ Բայց վերի
Երուսաղէմը ազատ է, որ մեր †ամէնուն մայրն
27 է։ Վասն զի գրուած է, Ով չծնանող ամուլ,
ցնծա. ով ծննդական ցաւ չքաշող, գոչէ և ա-
ղաղակէ. քանզի երեսէ ձգուածին տղաքները
28 այր ունեցողին տղաքներէն շատ պիտի ըլլան։ Ուստի
մենք, եղբայրներ, Իսահակի պէս խոստմուն-
29 քին որդիներն ենք։ Բայց ինչպէս այն ատեն
մարմնի կողմանէ ծնածը կը հալածէր զանիկա
որ հոգիին կողմանէ էր, նոյնպէս հիմա ալ։
30 Սակայն գիրքը ի՞նչ կ՚ըսէ. Դուրս հանէ այդ
աղախինը ու անոր որդին, վասն զի աղախինին
որդին ազատ կնոջը որդւոյն հետ ժառանգու-

*Ոմանք, մեզ

†Ոմանք չունին

31 *թիւն պիտի չառնէ ։ Ուստի , եղբայրներ , մենք*
*աղախինին զաւակները չենք , հապա ազատին ։*

## ԳԼ. Ե

1 *Կը յորդորէ զանոնք հաստատ կենալ իրենց ազատութեանը մէջ ,* 3 *և թլփատութիւնը չպահել ,* 13 *այլ մանաւանդ իրարու վրայ սէր ունենալ , որ օրէնքին բովանդակութիւնն է .* 19 *կը թուէ մարմինին գործերը ,* 22 *և Հոգիին պտուղները .* 25 *ու կը յորդորէ Գաղատացիները որ Հոգիով քալեն ։*

1 *Ուստի ամուր կեցէք այն ազատութիւնով ,*
*որով Քրիստոս մեզ ազատեց . և նորէն ծա-*
2 *ռայութեան լուծի տակ մի մտնէք ։ Ահա ես*
*Պօղոս կը զրուցեմ ձեզի որ եթէ թլփատուիք ,*
3 *Քրիստոս ձեզի օգուտ մը չըներ ։ Եւ դարձեալ*
*ամէն թլփատուող մարդու կը վկայեմ թէ*
4 *պարտական է բոլոր օրէնքը կատարել ։ Խա-*
*փանուած էք դուք Քրիստոսէ , որ օրէնքով*
*արդարանալ կ՚ուզէք , ու շնորհքէն ինկած էք ։*
5 *Վասն զի մենք Հոգիով կը սպասենք արդարու-*
6 *թեան յոյսին՝ հաւատքով ։ Վասն զի Քրիստոս*
*Յիսուսի քով ոչ թլփատութիւնը բանի մը կա-*
*րող է , ոչ ալ անթլփատութիւնը , հապա հա-*
7 *ւատքը , որ սիրով ի գործ կը դրուի ։ Դուք*
*աղէկ կը վազէիք . ո՞վ ձեզ ետ կեցուց՝ որ*
8 *ճշմարտութեան չհնազանդիք ։ Այս դրդումը*
9 *անկէ չէ՝ որ ձեզ կանչեց ։ Քիչ մը խմորը բո-*
10 *լոր զանգուածը կը խմորէ ։ Բայց ես յոյս ունիմ*
*ձեր վրայ Տէրոջմով , որ ուրիշ կերպ բան մը պիտի*
*չխորհիք . և ան որ ձեզ կը խռովեցնէ , դատա-*
11 *պարտութիւն պիտի կրէ՝ ով որ ըլլայ ։ Սակայն ,*
*եղբայրներ , եթէ ես տակաւին թլփատութիւն*
*կը քարոզեմ , ալ ինչո՞ւ կը հալածուիմ . ուրեմն*
*խաչին գայթակղութիւնը խափանուած է ։*
12 *Երանի թէ բոլորովին կտրուէին անոնք որ*
*ձեզ կը խռովեցնեն ։*
13 *Վասն զի դուք ազատութեան կանչուած էք ,*

*եղբայրներ. միայն թէ ձեր ազատութիւնը մարմնի*
*ցանկութիւններուն պատճառ չըլլայ, հապա սիրով ի-*
14 *րարու ծառայութիւն ըրէք։ Վասն զի բոլոր*
*օրէնքը այս մէկ խօսքին մէջ կը կատարուի, Թէ*
15 *Քու ընկերդ սիրես քու անձիդ պէս։ Ապա*
*եթէ իրար խածնէք ու ուտէք, զգոյշ կեցէք*
16 *որ չըլլայ թէ իրարմէ սպառիք։ Միայն թէ*
*այս կը զրուցեմ. Հոգիով գացէք, ու մարմինին*
17 *ցանկութիւնը պիտի չկատարէք։ Վասն զի մար-*
*մինը կը ցանկայ Հոգիին հակառակ, ու Հոգին՝*
*մարմինին հակառակ. և ասոնք իրարու հակա-*
*ռակ են, որ չըլլայ թէ ինչ որ կ'ուզէք՝ զայն*
18 *ընէք։ Բայց եթէ Հոգիէն կ'առաջնորդուիք,*
19 *ալ օրէնքին տակ չէք։ Արդ մարմինին գործերը*
*յայտնի են, որ ասոնք են. շնութիւն, պոռնկու-*
20 *թիւն, պղծութիւն, գիճութիւն, Կռապաշտու-*
*թիւն, կախարդութիւն, թշնամութիւններ,*
*կռիւներ, նախանձներ, բարկութիւններ, հա-*
*կառակութիւններ, երկպառակութիւններ, բա-*
21 *ժանումներ, Չար նայուածքներ, մարդասպա-*
*նութիւններ, գինովութիւններ, անառակու-*
*թիւններ, ու ինչ որ ասոնց նման են. զոր հի-*
*մակուընէ ես ձեզի կը զրուցեմ, ինչպէս ա-*
*ռաջուընէ ալ կը զրուցէի, որ այսպիսի բաներ*
*գործողները Աստուծոյ արքայութիւնը պիտի*
22 *չժառանգեն։ Բայց Հոգիին պտուղը այս է.*
*սէր, խնդութիւն, խաղաղութիւն, երկայն-*
23 *մտութիւն, Քաղցրութիւն, բարութիւն, հա-*
*ւատարմութիւն, հեզութիւն, ժուժկալութիւն.*
24 *այսպիսի բաներու դէմ օրէնք չկայ։ Եւ անոնք*
*որ Քրիստոսիններն են՝ իրենց մարմինը խաչ հա-*
*նեցին բնական կիրքերով ու ցանկութիւններով*
25 *մէկտեղ։ Եթէ Հոգիով կ'ապրինք, Հոգիին*
26 *համեմատ քալենք։ Մնապարծ չըլլանք՝ մէկզմէկ*
*գրգռելով ու իրարու վրայ նախանձելով։*

# ԳԼ. Զ

1 Պօղոս կը յորդորէ Գաղատացիները որ հեզութեամբ վարուին յանցանքի մէջ գըտնուող եղբայրներուն հետ, 2 և իրարու բեռերը վերցնեն. 6 առատաձեռն ըլլան դէպ իրենց վարդապետները, 9 և բարի գործելէն ետ չկենան. 12 կը ցուցնէ թէ թլփատութիւն քարոզողներուն միտքը ինչ է. 14 թէ ինք ուրիշ բանով չպարծենար, բայց միայն Քրիստոսի խաչովը:

1 Եղբայրներ, եթէ մէկը յանկարծ ինչևիցէ յան-
ցանքով բռնուելու ըլլայ, դուք որ հոգևոր էք,
այնպիսին հեզութեան հոգիով ուղղութեան
բերէք. քու անձիդ ալ զգուշութիւն ըրէ որ
2 չըլլայ թէ փորձութեան մէջ իյնաս: Իրարու
նեղութիւնները կրեցէք, և այնպէս Քրիստոսի
3 օրէնքը կատարեցէք: Քանզի եթէ մէկը ինք-
զինք բան մը ըլլալ կը սեպէ ու չէ, անիկա իր
4 անձը կը խաբէ: Բայց ամէն մարդ իր գործը
թող կշռէ, ու ետքը միայն իր անձին վրայ
պարծանք ունենայ, և ոչ թէ ուրիշին վրայ:
5 Վասն զի ամէն մէկը իր բեռը պիտի կրէ:
6 Խօսքին աշակերտութիւն ընողը իր վարդա-
7 պետը ամէն բարի բաներու մասնակից ընէ: Մի
8 խաբուիք, Աստուած ծաղր չըլլար: Վասն զի
ինչ որ մարդ մը կը սերմանէ, նոյնը պիտի հնձէ.
ան որ իր մարմինին կը սերմանէ, այն մարմինէն
ապականութիւն պիտի հնձէ. ու ան որ Հո-
գիին կը սերմանէ, այն Հոգիէն յաւիտենական
9 կեանք պիտի հնձէ: Բայց բարի գործելէն
չձանձրանանք, քանզի յարմար ժամանակին
10 պիտի հնձենք՝ եթէ չթուլնանք: Ուստի քանի որ
ժամանակը ձեռքերնիս է, բարիք ընենք ա-
մէնուն, մանաւանդ հաւատքին ընտանիներուն:
11 Նայեցէք՝ ինչպիսի գիրերով գրեցի ձեզի իմ
12 ձեռքովս: Անոնք որ կ'ուզեն մարմնի կողմանէ
բարի երևնալ, անոնք ձեզ կը ստիպեն որ
թլփատուիք, միայն որ Քրիստոսի խաչին համար
13 չհալածուին: Քանզի անոնք ալ որ թլփատուած

են, իրենք օրէնքը չեն պահեր, հապա կ'ուզեն
որ դուք թլփատուիք, որպէս զի իրենք ձեր
14 մարմինով պարծենան ։ Բայց ես՝ քաւ լիցի որ
պարծենամ, հապա միայն մեր Տէր Յիսուս
Քրիստոսի խաչովը, որով աշխարհ ինծի խաչը
15 ելած է, ես ալ աշխարհի ։ Վասն զի Քրիստոս
Յիսուսով ոչ թլփատութիւնը բան մըն է, ոչ ալ
անթլփատութիւնը, հապա նոր ստեղծուած
16 ըլլալն է բանը ։ Եւ ան ամէնը որ այս կանոնին հա-
մեմատ կը քալեն, խաղաղութիւն ու ողորմու-
թիւն ըլլայ անոնց վրայ, ու Աստուծոյ Իսրայէ-
17 լին վրայ ։ Ասկէ ետև մէ՛կը զիս թող չյոգ-
նեցնէ. վասն զի ես Տէր Յիսուսի վէրքերի նշան-
18 ները իմ մարմնիս վրայ կը կրեմ ։ Եղբայրներ,
մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը ձեր հո-
գիին հետ ըլլայ ։ Ամէն ։



ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԵՓԵՍԱՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա.

1 Առաքեալը Եփեսացիները բարևելէն 3 և անոնց համար գոհութիւն տալէն ետև, կը խօսի շնորհքով եղած մեր ընտրութեանը 6 և որդեգրութեանը վրայ, 11 որ է մարդկային փրկութեան ճշմարիտ աղբիւրը. 13 և որովհետև այս խորհուրդին գերազանցութիւնը դիւրաւ չհասկցուիր, 16 աղօթք կ'ընէ որ անոնք 18 կատարելապէս հասկնան, 20 և ունենան զանիկա Քրիստոսով ։

1 Պօղոս, Յիսուս Քրիստոսի առաքեալը Աստու-
ծոյ կամքովը, Եփեսոսի մէջ եղած սուրբե-
րուն և Քրիստոս Յիսուսի հաւատացողներուն.
2 Շնորհք և խաղաղութիւն ձեզի՝ Աստուծմէ
մեր Հօրմէն ու Տէր Յիսուս Քրիստոսէ ։

3 Օրհնեալ է Աստուած և մեր Տէր Յիսուս
Քրիստոսի Հայրը, որ մեզ օրհնեց ամէն հո-
գևոր օրհնութիւններով երկնաւորներուն մէջ
4 Քրիստոսով. Ինչպէս մեզ անով աշխարհի սկիզ-
բէն առաջ ընտրեց, որպէս զի մենք սուրբ ու
5 անարատ ըլլանք իր առջև սիրով. Եւ առաջուընէ
մեզ սահմանեց իրեն որդեգիր ըլլալ Յիսուս
Քրիստոսի ձեռքով իր կամքին հաճութեանը
6 պէս, Իր փառաւոր շնորհքին գովութեանը
համար, որով մեզ զարդարեց Սիրելիին ձեռքով.
7 Որով փրկութիւն ունինք մենք իր արեանը մի-
ջոցով, մեղքի թողութիւնը՝ իր շնորհքին ճո-
8 խութեան չափովը. Զոր մեր վրայ աւելցուց
9 բոլոր իմաստութեամբ ու գիտութեամբ, Մեզի
յայտնելով իր կամքին խորհուրդը իր հաճու-
թեանը պէս, զոր *իր մէջ" նախասահմաներ էր.
10 Որպէս զի ժամանակներուն լրմանուն տնտե-
սութեանը մէջ ամէն բան բովանդակէ Քրիս-
տոսով, ինչ որ երկինքը ու ինչ որ երկրի վրայ
11 կայ, անով՝ Որով մենք ալ ժառանգութիւն
առինք, առաջուընէ որոշուած ըլլալով անոր
նախասահմանութիւնովը, որ ամէն բան իր
12 կամքին խորհրդովը ի գործ կը դնէ. Որպէս զի
մենք անոր փառքին գովութիւն ըլլանք՝ ա-
13 ռաջուընէ Քրիստոսի վրայ յուսացողներս. Որուն
վրայ դուք ալ յուսացիք՝ երբ լսեցիք ճշմարտու-
թեան խօսքը, ձեր փրկութեան աւետարանը,
որու նաև հաւատալով՝ խոստացեալ Սուրբ
14 Հոգւոյն շնորհիւը կնքուեցաք. Որ մեր ժառանգ
ըլլալուն գրաւն է մինչև ստացուածքին փրկու-
թիւնը՝ իր փառքին գովութեանը համար։
15 Ուստի ես ալ երբ լսեցի Տէր Յիսուսի վրայ
ունեցած հաւատքնիդ, ու բոլոր սուրբերուն
16 վրայ ձեր ունեցած սէրը, Չեմ դադարիր ձեզի

*Ոմանք, անով

համար գոհութիւն ընելէ՝ ձեզ իմ աղօթքնե-
17 րուս մէջ յիշելով. Որպէս զի մեր Տէր Յիսուս
Քրիստոսի Աստուածը, փառաց Հայրը, տայ
ձեզի իմաստութեան ու յայտնութեան Հոգին
18 իր գիտութիւնովը. Որպէս զի սրտերնուդ աչ-
քերը լուսաւորուելով՝ գիտնաք թէ ի՛նչ է անոր
ձեզ կանչելուն յոյսը, ու ի՛նչ է անոր ժառան-
գութեանը փառքին ճոխութիւնը սուրբերուն
19 մէջ, Եւ ի՛նչ է իր զօրութեան գերազանց մե-
ծութիւնը հաւատացեալներուս մէջ՝ իր կարող
20 զօրութեանը գործադրութիւնովը, Զոր Քրիս-
տոսի վրայ ի գործ դրաւ, երբ զանիկա մեռել-
ներէն յարուց, ու նստեցուց իր աջ կողմը եր-
21 կինքի մէջ Ամէն իշխանութեան ու պետու-
թեան և զօրութեան ու տէրութեան վրայ, և
ամէն անունի վրայ որ կ'անուանի, ոչ թէ միայն
այս աշխարհին մէջ, հապա գալիքին մէջ ալ.
22 Եւ ամէն բան անոր ոտքերուն տակ հնազան-
դեցուց, և զանիկա ամէն բաներու վրայ եկե-
23 ղեցիին գլուխ դրաւ, Որ անոր մարմինն է, անոր
լրումը՝ որ կը լեցնէ ամէնը ամէն բանի մէջ։

## ԳԼ. Բ

1 Առաքեալը մեր բնական վիճակը՝ շնորհքով եղած մեր հիմակուան վիճակին հետ բաղդատելով, 10 կը ծանուցանէ թէ մենք բարի գործերու համար ստեղծուած ենք, 13 և Քրիստոսով մօտեցած ըլլալով՝ 11 հեթանոսներու և օտարներու վարմունք ունենալու չենք ինչպէս որ ատեն մը ունէինք. 19 այլ իբրև սուրբերուն քաղաքակիցները և Աստուծոյ ընտանիքը։

1 Եւ դուք որ յանցանքներու ու մեղքերու մէջ
2 մեռած էիք, ինք ձեզ կենդանացուց. Որոնց մէջ ատե-
նօք կը քալէիք այս աշխարհին բռնած ճամբովը,
այս օդին իշխանութեանը իշխանին ուզածին պէս,
այն ոգիին՝ որ հիմա ապստամբութեան որդի-
3 ներուն ներսիդին կը ներգործէ. Որոնց մէջ ա-
տենօք մենք ամէնս ալ կը պտըտէինք մեր մար-
մինին ցանկութիւններովը, և մարմինին ու

*մտքին ուզածը կը կատարէինք. և բնութեամբ*
*բարկութեան որդիներ էինք՝ ինչպէս ուրիշ-*
4 *ները. Բայց Աստուած, որ մեծ է ողորմութիւ-*
*նով, իր առատ սիրոյն համար, որով մեզ սի-*
5 *րեց, Երբ յանցանքներու մէջ մեռած էինք,*
*մեզ Քրիստոսի հետ կենդանացուց, (դուք*
6 *շնորհքով փրկուած էք,) Եւ անոր հետ մեզ յա-*
*րուց, ու անոր հետ նստեցուց երկնաւորներուն*
7 *մէջ Քրիստոս Յիսուսով, Որպէս զի գալու դա-*
*րերուն մէջ ցուցնէ իր շնորհքին գերազանց*
*մեծութիւնը՝ Քրիստոս Յիսուսով մեզի ցուցուած*
8 *քաղցրութիւնովը։ Վասն զի շնորհքով փըր-*
*կուած էք դուք հաւատքի միջոցով. և այս ոչ*
9 *թէ ձեզմէ է, հապա Աստուծոյ պարգևն է. Ոչ*
10 *թէ գործերէն, որ մէկը չպարծի. Վասն զի*
*մենք անոր ձեռագործն ենք, Քրիստոս Յիսուսով*
*ստեղծուած՝ բարի գործերու համար, որոնց*
*Աստուած առաջուընէ պատրաստեց մեզ, որպէս*
*զի անոնց մէջ քալենք։*
11 *Ուստի միտքերնիդ բերէք որ դուք ատեն մը*
*մարմնով հեթանոսներ ըլլալով, (որոնք ան-*
*թլփատութիւն կ'ըսուին անոնցմէ՝ որ թլփա-*
*տութիւն կ'ըսուին մարմնի մէջ ձեռքով եղած,)*
12 *Որ այն ատեն դուք առանց Քրիստոսի էիք, ու*
*հեռացած էիք Իսրայէլի քաղաքակցութենէն,*
*և օտարացած՝ խոստմունքին ուխտերէն, ու*
*յոյս մըն ալ չունէիք, և աշխարհի մէջ անաստ-*
13 *ուած էիք։ Բայց հիմա Քրիստոս Յիսուսով*
*դուք որ ատեն մը հեռաւոր էիք, մերձաւոր*
14 *եղաք Քրիստոսի արիւնովը։ Վասն զի անիկա է*
*մեր խաղաղութիւնը, որ երկուքը մէկ ըրաւ,*
*ու մէջտեղի բաժանող պատը, այսինքն իրարու-*
*հետ եղած թշնամութիւնը, իր մարմնովը քակեց,*
15 *Եւ հրամաններով եղած պատուիրանքներուն*
*օրէնքը խափանեց. որպէս զի իրմով այն եր-*

կուքը նոր մարդ մը հաստատէ, ու այսպէս խա-
16 ղաղութիւն ընէ. Եւ երկուքն ալ մէկ մարմնի
եղած հաշտեցնէ Աստուծոյ հետ իր խաչովը.
17 վասն զի անով սպաննեց թշնամութիւնը. Եւ
եկաւ խաղաղութիւն քարոզեց ձեզի որ հեռուն
18 էիք, ու անոնց՝ որ մօտ էին։ Քանզի անոր
ձեռքով մենք երկուքս ալ մէկ Հոգիով՝ Հօրը
19 մօտենալու արտօնութիւնը ունինք։ Ուրեմն ա՛լ ասկէ
ետև դուք օտար ու պանդուխտ չէք, հապա
սուրբերուն քաղաքակիցները և Աստուծոյ ըն-
20 տանիքը՝ Առաքեալներուն ու մարգարէներուն
հիման վրայ շինուած, որուն անկիւնին գլուխը
21 Յիսուս Քրիստոս է. Որով բոլոր շէնքը մէկտեղ
յարմարութեամբ կազմուած՝ կ'աճի սուրբ
22 տաճար մը կ'ըլլայ Տէրոջմով. Որով դուք ալ
մէկտեղ կը շինուիք՝ Աստուծոյ բնակարան ըլլա-
լու Հոգւով Սրբով։

## ԳԼ. Գ

1 Առաքեալը կը ծանուցանէ՝ թէ յայտնութեամբ իրեն ցուցուած է 5 այն ծածկուած խորհուրդը՝ 6 թէ հեթանոսները պիտի փրկուին, 8 և թէ իրեն տրուած է 9 զանիկա քարոզելու շնորհքը։ 13 Կը խնդրէ որ անոնք իր նեղութիւններուն պատճառաւ չձանձրանան, 14 և աղօթք կ'ընէ որ 19 անոնք կարող ըլլան Քրիստոսի իրենց վրայ ունեցած մեծ սէրը հասկնալ։

1 Ասոր համար ես Պօղոս, Յիսուս Քրիստոսի կապուածը
2 ձեզի հեթանոսներուդ համար. Դուք անշուշտ
լսած էք Աստուծոյ շնորհքին տնտեսութիւնը,
3 որ ինծի տրուած է ձեզի համար, Թէ ինծի
այն խորհուրդը յայտնութիւնով ցուցուեցաւ.
(ինչպէս առաջուընէ ալ ձեզի համառօտաբար
4 գրեցի, Որով կրնաք կարդալ ու միտք առնել
իմ տեղեակ ըլլալս Քրիստոսի խորհուրդին
5 վրայով.) Որ ուրիշ դարերուն մէջ մարդոց որ-
դիներուն չերևցաւ, ինչպէս հիմա Հոգւով Սրբով
յայտնուեցաւ իր սուրբ առաքեալներուն ու
6 մարգարէներուն. Որպէս զի հեթանոսները

*Քրիստոսով ժառանգակից ու մարմնակից և*
*անոր խոստմունքին հաղորդ ըլլան աւետարա-*
7 *նով. Որուն ես սպասաւոր եղայ՝ Աստուծոյ*
*շնորհաց պարգևին համեմատ՝ որ ինծի տրուե-*
8 *ցաւ իր զօրութեան ներգործութիւնովը, (Ինծի՝*
*որ ամէն սուրբերուն փոքրագոյնն եմ, այս*
*շնորհքը տրուեցաւ,) հեթանոսներուն մէջ*
*Քրիստոսի անքննելի ճոխութիւնը քարոզելու,*
9 *Եւ ամէնը լուսաւորելու,* որպէս զի գիտնան *թէ ինչ է*
*այն խորհուրդին տնօրէնութիւնը՝ որ ի յաւի-*
*տենից ծածկուած էր Աստուծոյ քով, որ ամէն*
10 *բանը *ստեղծեց. Որպէս զի հիմա Աստուծոյ*
*բազմատեսակ իմաստութիւնը եկեղեցիին ձեռ-*
*քով յայտնի ըլլայ երկինքը եղող իշխանու-*
11 *թիւններուն ու պետութիւններուն, Իր յաւի-*
*տենական նախասահմանութեանը համեմատ,*
*զոր ըրաւ մեր Տէրոջը Քրիստոս Յիսուսի ձեռքով.*
12 *Որով մենք ալ համարձակութիւն ու մօտենալու*
արտօնութիւն *ունինք վստահութեամբ՝ իրեն հա-*
*ւատալով։*
13 *Ուստի կ՚աղաչեմ որ չձանձրանաք իմ նեղու-*
*թիւններուս պատճառաւ, որոնք ձեզի համար*
14 *են, և որոնք ձեր փառքն են։ Ասոր համար*
*ծունկի վրայ գալով մեր Տէր Յիսուս Քրիստոսի*
15 *Հօրը առջև, Ուրկէ ամէն ազգատոհմ երկինքի*
16 *մէջ ու երկրի վրայ անուն կ՚առնէ, Կ՚*աղաչեմ *որ*
*տայ ձեզի իր փառքին ճոխութեանը չափովը՝*
*զօրութիւնով հաստատուիլ իր Հոգիովը ներսի*
17 *մարդուն մէջ. Որպէս զի Քրիստոս հաւատքով*
*ձեր սիրտերուն մէջ բնակի, և դուք սիրով*
18 *արմատացած ու հաստատուած ըլլաք, Որպէս*
*զի կարենաք հասկնալ բոլոր սուրբերուն հետ*
*մէկտեղ, թէ ինչ է լայնութիւնը ու երկայնու-*
*թիւնը և խորութիւնը ու բարձրութիւնը.*

---

*Ոմանք, *Յիսուս Քրիստոսով ստեղծեց*

19 Այսինքն ճանչնալ Քրիստոսի սէրը, որ գիտու-
թենէ գերազանց է, որպէս զի լցուիք Աստու-
20 ծոյ ամէն լրութիւնովը։ Արդ անոր որ կարող է
առատութեամբ ընել ամէն բաներէն աւելի՝
զոր մենք կը խնդրենք կամ կը խորհինք, այն
21 զօրութիւնովը որ մեր մէջ կը ներգործուի, Իրեն
փառք եկեղեցիին մէջ Քրիստոս Յիսուսով բոլոր
դարերուն մէջ յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։

## ԳԼ. Դ

1 Առաքեալը կը յորդորէ զանոնք միաբան ըլլալ, 7 և կը ծանուցանէ թէ Աստուած անոնց զանազան պարգևներ տուաւ, 13 որպէս զի իր եկեղեցին շինութիւն առնէ 16 ու աճի Քրիստոսով. 18 կը պատուիրէ անոնց մէկդի ձգել հեթանոսական պիղծ գործերը, 24 Նոր մարդը հագնիլ, 25 ստութիւնը 29 և ամէն ապականեալ խօսքերը մէկդի ձգելով։

1 Ուստի կ'աղաչեմ ձեզի ես որ Տէրոջը համար
կապուած եմ, որ դուք այնպէս քալէք՝ ինչպէս
2 կը վայլէ այն կոչումին որով կանչուեցաք, Բոլոր
խոնարհութիւնով ու հեզութիւնով, երկայն-
մտութեամբ. սիրով իրարու ներողամիտ ըլլա-
3 լով. Ջանալով Հոգւոյն Սրբոյ միաբանութիւնը
4 խաղաղութեան կապովը պահել. Մէկ մարմին
ու մէկ հոգի, ինչպէս կանչուեցաք ձեր կոչու-
5 մին մէկ յուսովը. Տէրը մէկ է, հաւատքը մէկ,
6 մկրտութիւնը մէկ. Մէկ է Աստուած և ամէ-
նուն Հայրը, որ ամէնուն վրայ ու ամէնուն հետ
7 և *ձեր ամէնուն մէջ է։ Բայց մեր ամէն մէ-
կուն ալ շնորհք տրուած է Քրիստոսի պարգևին
8 չափովը։ Անոր համար կ'ըսէ թէ Բարձրը ելաւ,
գերութիւնը գերի բռնեց ու մարդոց պարգև-
9 ներ տուաւ։ Այն ելաւ ըսելը ի՞նչ է, միայն թէ՝
10 որ ինք առաջ երկրի վարի կողմերը իջաւ։ Ան
որ իջաւ՝ նոյն ինքն է, որ բոլոր երկինքներէն
11 վեր ելաւ, որպէս զի ամէն բան լեցնէ։ Եւ ինք

*Ոմանք, մեր

մէկ քանին տուաւ առաքեալներ ըլլալու, մէկ
քանին մարգարէներ, մէկ քանին աւետարա-
նիչներ, մէկ քանին հովիւներ ու վարդապետ-
12 ներ. Սուրբերուն կատարելութեանը համար,
պաշտօնին գործին համար, Քրիստոսի մարմնին
13 շինութեանը համար. Մինչև ամէնս ալ հաս-
նինք հաւատքին ու Աստուծոյ Որդին ճանչնա-
լուն միաբանութեանը, կատարեալ մարդ ըլ-
լալու, Քրիստոսի լման հասակին չափը ունե-
14 նալու. Որպէս զի ա՛լ ասկէ ետև տղաք չըլլանք,
երերած ու վարդապետութեան ամէն հովերէն
ասդին անդին տարուբերուած՝ մարդոց խա-
բէութիւնովը, որոնք խորամանկութեամբ կը
15 խաբեն մոլորեցնելու. Հապա սիրով ճշմարտու-
թեան հետևելով՝ ամէն բան Անով աճեցնենք
16 որ գլուխ է, այսինքն Քրիստոս. Որմէ բոլոր
մարմինը մէկտեղ կազմուած, և ամէն յօդուած-
ները իրարու հաղորդուելով կցուած՝ ամէն մէկ
մասին չափով ներգործելով՝ մարմինին աճում
կու տայ իրեն շինութեանը համար սիրով։
17 Ուստի զայս կ'ըսեմ ու Տէրոջմով վկայու-
թիւն կ'ընեմ, որ դուք մէյմըն ալ «այնպէս» չքա-
լէք, ինչպէս ուրիշ հեթանոսները կը քալեն
18 իրենց մտքին ունայնութեանը մէջ. Որոնց իմա-
ցողութիւնը խաւարած է, ու օտարացած են
Աստուծոյ կեանքէն, իրենց մէջ եղած տգիտու-
թեան պատճառաւ իրենց սրտին *կուրութեանը
19 համար. Որոնք անզգայ ըլլալով, ինքզինքնին
անառակութեան տուին, ամէն կերպ պղծու-
20 թիւն գործելու †ագահութիւնով։ Բայց դուք
21 այսպէս չսորվեցաք Քրիստոսը, Եթէ անոր
վրայով լսեցիք ու անկէ սորված էք, ինչպէս
22 ճշմարտութիւնը Յիսուսի մէջ է. Որպէս զի ձեր
վրայէն մէկդի հանէք այն յեր առաջուան վար-

*Յուն. բթութեանը †կամ, անյագութիւնով

մանքին պէս եղած հին մարդը, խաբեբայ
23 ցանկութիւններով ապականուածը. Եւ ձեր
24 միտքին հոգիովը նորոգուիք, Եւ նոր մարդը
ձեր վրայ հագնիք, որ Աստուծոյ պատկերին պէս
ստեղծուած է արդարութիւնով ու ճշմարիտ
25 սրբութիւնով։ Ուստի ստութիւնը մէկդի ձգե-
լով՝ ճշմարտութիւն խօսեցէք ամէն մէկդ իր
ընկերին հետ, վասն զի մենք իրարու անդամ-
26 ներ ենք։ Եթէ բարկանաք՝ մեղք մի գործէք.
27 արեւը ձեր բարկութեանը վրայ մարը չմտնէ։ Ու
28 Սատանայի տեղ մի տաք։ Ան որ գողութիւն
կ'ընէր, ալ թող չգողնայ. այլ մանաւանդ աղէկ
գործի մը պարապելով՝ իր ձեռքերովը աշխատի,
որպէս զի կարող ըլլայ *տալ կարօտ եղողին։
29 Բնաւ ձեր բերնէն ապականեալ խօսք մը չելլէ,
հապա ինչ որ աղէկ է՝ պէտք եղած շինու-
թեանը համար, որպէս զի լսողներուն շնորհք
30 տայ։ Եւ Աստուծոյ Սուրբ Հոգին մի տրտմե-
ցնէք, որով դուք կնքուեցաք փրկութեան
31 օրուանը համար։ Ամէն դառնութիւն և բար-
կութիւն ու սրտմտութիւն և աղաղակ ու հայ-
հոյութիւն վերցուի ձեզմէ ամէն չարութիւն-
32 ներով մէկտեղ։ Եւ իրարու հետ քաղցր եղէք,
գթած, ներելով իրարու, ինչպէս Աստուած
Քրիստոսով ներեց ձեզի։

## ԳԼ. Ե

1 Նախ ընդհանուր կերպով մը կը յորդորէ սէր ունենալ, 3 պոռնկութենէ 4 և ամէն տեսակ պիղծ գործքերէ ետ կենալ, 7 չարերուն հետ հաղորդակցութիւն չընել, 15 ուղղութեամբ քալել, 18 և Հոգիով լեցուիլ. 22 ետքը կը խօսի մասնաւոր պարտաւորութիւններու վրայով, թէ կիները պարտին հնազանդիլ իրենց այրերուն, 25 և այրերը պարտին սիրել իրենց կիները, 32 ինչպէս Քրիստոս սիրեց եկեղեցին։

1 Արդ Աստուծոյ նմանող եղէք սիրելի զաւակ-
2 ներու պէս. Եւ սիրով վարուեցէք, ինչպէս

*Յուն. հաղորդել

*Քրիստոս ալ մեզ սիրեց, ու իր անձը մեզի
համար մատնեց՝ անուշահոտ պատարագ ու զոհ
3 ըլլալով Աստուծոյ։ Բայց պոռնկութեան և
ամէն կերպ պղծութեան կամ ագահութեան
անունը անգամ չյիշուի ձեր մէջ, (ինչպէս
4 կը վայլէ սուրբերուն,) Եւ գարշելի բաներ կամ
յիմարական խօսքեր կամ խեղկատակութիւն,
5 որ չվայլեր, այլ մանաւանդ գոհութիւն. *Քանզի
զայս գիտէք", որ ամէն պոռնիկ կամ պիղծ
կամ ագահ, որ կռապաշտ է, Քրիստոսի ու
Աստուծոյ թագաւորութեանը մէջ ժառան-
6 գութիւն չունի։ Զըլլայ որ մէկը ձեզ խաբէ
փուճ խօսքերով. վասն զի այս բաներուն համար
Աստուծոյ բարկութիւնը կու գայ անհնազան-
7 դութեան որդիներուն վրայ։ Ուստի անոնց
8 հաղորդ մի ըլլաք։ Քանզի բէւ ատեն մը դուք
խաւար էիք, բայց հիմա լոյս էք Տէրոջմով.
9 լուսոյ որդիներու պէս քալեցէք. Վասն զի
†Հոգւոյն պտուղը ամէն կերպ բարութիւնով,
և արդարութիւնով ու ճշմարտութիւնով է։
10 Քննեցէք ինչ է Տէրոջը հաճելին. (11) Ու կցորդ
մի ըլլաք խաւարին անպտուղ գործերուն, այլ
12 մանաւանդ ըսելն յանդիմանեցէք։ Վասն զի
անոնց մէջ գաղտուկ գործուած բաները խօ-
13 սիլն ալ ամօթ է։ Բայց ամէն բան յանդի-
մանուած՝ լուսով յայտնի կ'ըլլայ. վասն զի ամէն
14 բան որ յայտնի կ'ըլլայ՝ լոյս է։ Անոր համար
կ'ըսէ, Արթնցիր դուն որ կը քնանաս, և կանգնէ
մեռելներէն, ու Քրիստոս քեզի լոյս պիտի տայ։
15 Ուստի նայեցէք թէ ինչպէս զգուշութեամբ
16 պիտի քալէք, ոչ թէ անմիտներու պէս, հապա
իմաստուններու պէս. ժամանակը ծախու ա-
17 ռէք, վասն զի օրերս չար են։ Անոր համար
անմիտ մի ըլլաք; հապա իմացէք թէ ինչ է*

*Կամ, Զայս իմանալով գիտնաք

†Ոմանք, Լուսոյ

18 Տէրոջը կամքը։ Եւ մի՛ գինովնաք գինիով, ո-
րուն մէջ անառակութիւն կայ, հապա Հոգիով
19 լեցուեցէք. Եւ սաղմոսներով ու օրհնութիւն-
ներով և հոգևոր երգերով ձեր մէջ խօսակցե-
լով՝ երգեցէք ու սաղմոս ըսէք Տէրոջը ձեր
20 սրտերուն մէջ։ Ամէն ատեն ամէն բանի համար
գոհութիւն տուէք Աստուծոյ ու Հօրը՝ մեր
Տէր Յիսուս Քրիստոսի անունովը։
21 Իրարու հնազանդ եղէք *Աստուծոյ վախովը։
22 Կիները իրենց այրերուն հնազանդ ըլլան՝ որ-
23 պէս թէ Տէրոջը. Վասն զի այրը կնոջ գլուխն
է, ինչպէս Քրիստոս ալ եկեղեցիին գլուխն է,
24 ու ինք մարմինին Փրկիչն է։ Ուստի ինչպէս ե-
կեղեցին հնազանդ կ'ըլլայ Քրիստոսի, նոյն-
պէս ալ կիները ամէն բանի մէջ իրենց այրե-
25 րուն։ Այրեր, սիրեցէք ձեր կիները, ինչպէս
Քրիստոս ալ սիրեց եկեղեցին, ու իր անձը
26 մատնեց անոր համար. Որպէս զի զանիկա սրբէ
27 ու մաքրէ աւազանին ջրովը՝ խօսքով. Որպէս զի
ինք իր դիմաց փառաւոր կեցնէ եկեղեցին, որ
արատ մը կամ խորշոմութիւն կամ ուրիշ ա-
սոնց պէս բան մը չունենայ, հապա որ սուրբ
28 ու անարատ ըլլայ։ Նոյնպէս ալ պէտք է որ
այրերը իրենց կիները սիրեն իրենց մարմիննե-
րուն պէս. ան որ իր կինը կը սիրէ, իր անձը
29 կը սիրէ. Վասն զի մէկը բնաւ իր անձը չատեր,
հապա կը սնուցանէ ու կը խնամէ զանիկա,
30 ինչպէս †Տէրն ալ եկեղեցին. Վասն զի մենք
անոր մարմինին անդամներն ենք, անոր մարմի-
31 նէն ու անոր ոսկորներէն։ Ասոր համար մարդը
պիտի ձգէ իր հայրը ու մայրը, և իր կնոջ պիտի
յարի, ու երկուքը մէկ մարմին պիտի ըլլան։
32 Այս խորհուրդը մեծ է, բայց ես կը զրուցեմ
33 Քրիստոսի ու եկեղեցիին վրայով։ Սակայն

*Ոմանք, Քրիստոսի †Ոմանք, Քրիստոս

ձեզմէ ամէն մէկն ալ իր կինը այնպէս սիրէ՝
որպէս թէ իր անձը, ու կինը իր այրէն ակնա-
ծութիւն ընէ ։

## ԳԼ. Զ

1 Կը ծանուցանէ տղայոց պարտականութիւնը դէպ իրենց ծնողները, 5 ծառաներուն պարտականութիւնը դէպ իրենց տէրերը. 10 թէ մեր կեանքը զինուորութիւն մըն է, 12 ոչ միայն մարմինի ու արիւնի դէմ, հապա նաև հոգևոր թշնամիներու դէմ. 13 քրիստոնեային զէնքերը ինչ են, 18 և ինչպէս գործածել պէտք է զանոնք ։ 21 Տիւքիկոսի վրայով յանձնարարութիւն ։

1 Որդիներ, ձեր ծնողներուն հնազանդ եղէք Տէ-
2 րոջմով, վասն զի այն է արժանը ։ Պատուէ քու
հայրդ ու մայրդ, (որ առաջին պատուիրանքն է
3 խոստմունքով,) Որպէս զի քեզի աղէկ ըլլայ,
4 ու երկար կեանք ունենաս երկրի վրայ ։ Եւ
դուք, հայրեր, ձեր որդիները մի բարկացնէք,
հապա զանոնք մեծցուցէք Տէրոջը վարժութիւ-
5 նովը ու խրատովը ։ Ծառաներ, հնազանդ եղէք
ձեր մարմնաւոր տէրերուն ահով ու դողով՝ ձեր
սրտին միամտութիւնովը, որպէս թէ Քրիս-
6 տոսի. Ոչ թէ մարդահաճոյի պէս աչքի առջև
ծառայելով, հապա Քրիստոսի ծառաներու պէս՝
7 սրտանց Աստուծոյ կամքը ընելով. Յօժարու-
թեամբ ծառայելով որպէս թէ Տէրոջը, ու
8 ոչ թէ մարդոց. Գիտնալով որ ամէն մէկը ինչ
բարիք որ ընէ, նոյնը Տէրոջմէն պիտի ընդունի,
9 թէ՛ ծառայ ըլլայ և թէ՛ ազատ ։ Դուք ալ,
տէրեր, նոյնը ըրէք անոնց, ու սպառնալիքը
թող տուէք, գիտնալով որ անոնց ալ ձեր ալ Տէրը
երկինքն է. ու անոր քով աչառութիւն չկայ ։
10 Ալ ասկէ ետև, եղբայրներս, զօրացէք Տէ-
րոջմով ու անոր զօրութեան կարողութիւնովը ։
11 Ձեր վրայ հագէք Աստուծոյ սպառազինու-
թիւնը, որպէս զի կարող ըլլաք Սատանայի
12 հնարքներուն դէմ դնել ։ Վասն զի մեր պա-

տերազմը արիւնի ու մարմինի հետ չէ, հապա
իշխանութիւններու ու պետութիւններու հետ,
և այս *խաւար աշխարհին" իշխաններուն հետ,
երկնաւորներուն մէջ եղող չար ոգիներուն հետ։
13 Ասոր համար ձեր վրայ առէք Աստուծոյ սպառա-
զինութիւնը, որպէս զի կարող ըլլաք չարու-
14 թեան օրը դէմ դնել, Ու ամէն բանը լմնցնելէ
ետև՝ հաստատուն կայնիլ։ Ուստի յեր տեղը կայնե-
ցէք, մէջքերնիդ ճշմարտութեամբ ամուրցնե-
15 լով, ու արդարութեան զրահը հագնելով. Ու
ոտքերնուդ հագցնելով խաղաղութեան աւե-
16 տարանին պատրաստութիւնը. Եւ ամէն բանին
վրայ հաւատքին վահանը առէք, որով կարող
պիտի ըլլաք չարին ամէն կրակոտ նետերը մա-
17 րել. Եւ փրկութեան սաղաւարտը առէք, ու
18 Հոգիին սուրը՝ որ Աստուծոյ խօսքն է. Ամէն
աղօթքով ու խնդրուածքով ամէն ատեն աղօթք
ըրէք Հոգիով, ու այս բանին վրայ հսկեցէք
կատարեալ յարատևութեամբ ու աղաչանքով՝
19 բոլոր սուրբերուն համար; Ինծի համար ալ,
որպէս զի ինծի խօսք տրուի որ բերանս բանամ
համարձակութեամբ աւետարանին խորհուրդը
20 յայտնելու. Որու համար ես դեսպանութիւն
կ'ընեմ կապանքովս, որպէս զի անով համար-
ձակութիւն ունենամ խօսելու՝ ինչպէս պէտք է։
21 Բայց որպէս զի դուք ալ գիտնաք իմ վրայովս՝
թէ ինչ կ'ընեմ ես, ամէն բանը պիտի ցուցնէ
ձեզի Տիւքիկոս սիրելի եղբայրը ու հաւատա-
22 րիմ պաշտօնեան Տէրոջմով. Զոր յատկապէս
այդ բանին համար ձեզի ղրկեցի, որպէս զի
գիտնաք դուք մեր վրայով, ու ինք ձեր սիր-
տերը մխիթարէ։
23 Խաղաղութիւն եղբայրներուն և սէր հա-
ւատքով մէկտեղ Հօր Աստուծմէ ու Տէր Յիսուս

‡Յուն. աշխարհիս խաւարին

24 Քրիստոսէ։ Շնորհք այն ամէնուն հետ՝ որոնք
մեր Տէր Յիսուս Քրիստոսը անկեղծութեամբ
կը սիրեն։ Ամէն։



ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՓԻԼԻՊՊԵՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա

3 Պօղոս կը յայտնէ իր գոհութիւնը առ Աստուած, և իր սէրը որ ունի փիլիպպեցւոց վրայ՝ իրենց հաւատքի պտուղին համար, և իր չարչարանքներուն հաղորդ ըլլալնուն համար. 9 Թէ ամէն օր աղօթք կ'ընէ որ անոնք շնորհքով աճին։ 12 Կը պատմէ թէ Հռովմայ մէջ իր կրած նեղութիւններովը Քրիստոսի հաւատքը մեծ յաջողութիւն ունեցաւ, 21 և թէ ինք միշտ պատրաստ է Քրիստոսը փառաւորելու թէ՛ իր ապրելովը և թէ՛ մեռնելովը։ 27 Կը յորդորէ զանոնք որ միաբան ըլլան, 28 և քաջասիրտ՝ հալածման ժամանակ։

1 Պօղոս և Տիմոթէոս, Յիսուս Քրիստոսի ծառա-
ները, Քրիստոս Յիսուսով բոլոր սուրբերուն
որոնք Փիլիպպեցւոց կողմերն են՝ եպիսկոպոս-
2 ներով ու սարկաւագներով. Շնորհք ու խա-
ղաղութիւն ձեզի Աստուծմէ մեր Հօրմէն ու
Տէր Յիսուս Քրիստոսէ։
3 Կը գոհանամ իմ Աստուծմէս ամէն անգամ
4 որ ձեզ կը յիշեմ, (Միշտ իմ ամէն խնդրուած-
քիս մէջ ձեր ամէնուն համար ուրախութեամբ
5 աղօթք կ'ընեմ,) Աւետարանին հաղորդ ըլլալ-
նուդ համար առաջին օրուընէ մինչև հիմա.
6 Այս մասին վստահ ըլլալով՝ թէ ան որ ձեր մէջ
բարի գործ մը սկսեց, մինչև Յիսուս Քրիստոսի
7 օրը պիտի կատարէ. Ինչպէս ինծի արժան ալ է
ձեր ամէնուն վրայ այս բանը խորհիլ՝ *ձեզ
իմ սրտիս մէջ ունենալուս" համար իմ կապե-

*կամ, զիս ձեր սիրտերուն մէջ ունենալնուդ

րուս մէջ, և աւետարանին ջատագովութեանը
ու հաստատութեանը մէջ, և ամէնդ ինծի ե-
ղած շնորհքին հաղորդ ըլլալնուդ համար։
8 Քանզի վկայ է ինծի Աստուած, որ ինչպէս
փափաք ունիմ ձեր ամէնուն վրայ Քրիստոս
9 Յիսուսի գութովը։ Եւ այս աղօթքը կ'ընեմ,
որ ձեր սէրը հետզհետէ աւելի շատնայ գիտու-
10 թիւնով ու բոլոր ըմբռնողութիւնով, Որպէս զի
դուք տարբեր բաները զանազանէք, որպէս զի
մինչև Քրիստոսի օրը անկեղծ և առանց գայթակ-
11 ղութեան ըլլաք. Արդարութեան պտուղներով
լեցուած Յիսուս Քրիստոսի ձեռքով՝ Աստուծոյ
փառքին ու գովեստին համար։
12 Կ'ուզեմ որ գիտնաք, եղբայրներ, թէ ինչ որ
ինծի պատահեցաւ՝ ա՛լ աւելի աւետարանին յա-
13 ռաջդիմութեանը պատճառ եղաւ. Մինչև իմ
կապերս, որոնք Քրիստոսի համար են, բոլոր
պալատին մէջ և ուրիշ ամէնուն ալ յայտնի
14 եղան. Եւ Տէրոջմով եղբայրներուն շատերը
սիրտ առին իմ կապերէս՝ ա՛լ աւելի համար-
ձակիլ Աստուծոյ խօսքը խօսելու առանց վախի։
15 Ոմանք նախանձէ ու հակառակութենէ և ո-
մանք բարեսիրութենէ շարժեալ՝ Քրիստոսը կը քա-
16 րոզեն. *Անոնք հակառակութեան համար
Քրիստոսը կը պատմեն, ոչ թէ անկեղծու-
թեամբ, կարծելով միշտ աւելցնել իմ կապե-
17 րուս վրայ. Իսկ ասոնք սիրոյ համար, վասն զի
գիտեն թէ ես աւետարանին համար պատաս-
18 խան տալու կեցեր եմ։ Բայց ի՞նչ է. ո՛ր կերպով
որ ըլլայ, թէ՛ պատճառանքով և թէ՛ ճշմարտու-
թիւնով, Քրիստոս կը պատմուի, ու ասոր վրայ
19 ուրախ եմ և ուրախ ալ պիտի ըլլամ։ Քանզի
գիտեմ որ ասոր վախճանը իմ փրկութեանս
համար պիտի ըլլայ ձեր խնդրուածքովը, ու

---

*Ոմանք 17երորդ տունը 16երորդէն առաջ կը դնեն

Յիսուս Քրիստոսի Հոգւոյն օգնականութիւ-
20 նովը, Իմ եռանդուն ակնկալութեանս ու իմ
յոյսիս համեմատ, որ բանով մը ամօթով պիտի
չըլլամ. հապա կատարեալ համարձակութիւ-
նով ինչպէս ամէն ատեն՝ նոյնպէս ալ հիմա Քրիս-
տոս իմ մարմինիս մէջ պիտի փառաւորի՝ թէ՛
21 ապրելովս և թէ՛ մեռնելովս։ Վասն զի ինծի
համար՝ ապրիլը Քրիստոս է, ու մեռնիլը՝ օգուտ։
22 Այս եթէ մարմինի մէջ ապրիլս իմ գործիս
պտուղ կը բերէ, ալ չեմ գիտեր ո՛րը ընտրեմ։
23 Երկու կողմանէ ալ նեղը մնացած եմ, մեկնե-
լու ու Քրիստոսի հետ ըլլալու փափաք ունե-
24 նալով. քանզի ան շատ աւելի աղէկ է, Բայց
մարմինի մէջ կենալը ձեզի համար աւելի հար-
25 կաւոր է։ Եւ այս բանին համոզուած ըլլալով՝
գիտեմ որ ձեր ամէնուն հետ պիտի կենամ
ու մնամ, որպէս զի դուք զարգանաք և ուրախ
26 ըլլաք հաւատքով. Որպէս զի ձեր պարծանքը
իմ վրայովս աւելի ըլլայ Քրիստոս Յիսուսով՝
իմ նորէն ձեզի գալուս պատճառաւ։
27 Միայն թէ Քրիստոսի աւետարանին ինչպէս
կը վայլէ՝ այնպէս վարուեցէք. որպէս զի եթէ
գամ ու ձեզ տեսնեմ, և կամ հեռու ըլլամ,
ձեր վրայովը լսեմ որ դուք հաստատուն կը կե-
նաք մէկ հոգիով, ու մէկ շունչով պատերազ-
մակից կ'ըլլաք աւետարանին հաւատքին համար.
28 Եւ բանով մըն ալ մի զարհուրիք հակառակորդ-
ներէն, որ անոնց կորուստին ապացոյց մըն է,
29 ու ձեզի՝ փրկութեան. Ան ալ Աստուծմէ է.
վասն զի ձեզի տրուեցաւ Քրիստոսի համար՝
ոչ թէ միայն անոր հաւատալ, հապա անոր
30 համար չարչարուիլ ալ, Նոյն պատերազմը ու-
նենալով՝ որ իմ վրաս տեսաք ու հիմա իմ
վրայովս կը լսէք։

## Գլ. Բ

1 Կը խրատէ զանոնք միաբան և խոնարհամիտ ըլլալ, ցուցնելով անոնց Քրիստոսի խոնարհութիւնը և բարձրութիւնը։ 12 Կը յորդորէ որ ջանք ընեն փրկութեան ճամբուն մէջ յառաջանալ, որպէս զի լուսաւորներու պէս ըլլան այս չար աշխարհին մէջ, 16 և մխիթարութիւն տան իրեն՝ որ անոնց առաքեալն է, ու պատրաստ կը կենայ Աստուծոյ զոհ ըլլալու։ 19 Կը յուսայ որ Տիմոթէոսը ղրկէ անոնց, որուն վրայով բարի վկայութիւն կու տայ. 25 Նմանապէս Եպափրոդիտոսի վրայով ալ՝ զոր նոյն ատեն անոնց կը ղրկէ։

1 Ուստի եթէ Քրիստոսով մխիթարութիւն մը
կայ, եթէ սիրոյ սփոփանք մը, եթէ Հոգիի
հաղորդութիւն մը, եթէ գթութիւն ու ողոր-
2 մութիւն մը, Իմ ուրախութիւնս դուք լեցու-
ցէք, նոյն խորհուրդը ունեցէք, միևնոյն սէրը
ձեր մէջ ունենալով, մէկ շունչ, մէկ մտածմունք։
3 Բան մը գրգռութիւնով կամ սնապարծութիւ-
նով մի՛ ընէք. Հապա խոնարհութիւնով մէկզմէկ
4 ձեր անձէն լաւ սեպեցէք. Միայն անձերնուդ
շահը մի՛ նայիք. հապա ամէն մէկը իր ընկերինն ալ։
5 Ձեզմէ ամէն մէկը նոյն միտքը թող ունենայ,
6 որ Քրիստոս Յիսուսի մէջ էր. Որ Աստուծոյ
կերպարանքը ունենալով, *յափշտակութիւն մը
7 չսեպեց Աստուծոյ հաւասար ըլլալը. Հապա
անձը ունայնացուց ծառայի կերպարանք առ-
նելով՝ մարդոց նման ըլլալով. և կերպարանքովը
8 մարդու պէս գտնուելով, Ինքզինք խոնարհե-
ցուց, մինչև մահուան հնազանդ եղաւ, ու այն ալ
9 խաչին մահուանը։ Ասոր համար Աստուած ալ
զանիկա խիստ բարձրացուց, ու անոր անուն մը
10 տուաւ՝ որ ամէն անունէ վեր է. Որպէս զի Յի-
սուսի անունին ամէն ծունկ ծռի, երկնաւոր-
ներուն ու երկրաւորներուն և սանդարամետա-
11 կաններուն, Եւ ամէն լեզու դաւանի թէ Յի-
սուս Քրիստոս Տէր է Հօր Աստուծոյ փառքին
12 համար։ Ուստի, իմ սիրելիներս, ինչպէս ամէն
ատեն հնազանդ եղաք՝ ոչ միայն իմ ներկայու-

*Կամ, յափշտակելու բան

*թեանս, հապա ա՛լ աւելի հիմա, իմ բացա-*
*կայութեանս ատեն, ահով ու դողով անձեր-*
13 *նուդ փրկութիւնը գործեցէք. Վասն զի Աստ-*
*ուած է որ ձեր մէջ կը ներգործէ կամենալը*
14 *ու ընելը իր հաճութեանը համար։ Ամէն բան*
*առանց տրտունջներու ու վիճաբանութիւննե-*
15 *րու ըրէք. Որպէս զի ըլլաք անբիծ ու անարատ,*
*Աստուծոյ որդիներ առանց մեղադրանքի, կա-*
*մակոր ու խոտորեալ ազգին մէջ, որոնց մէջ*
*դուք լուսաւորներու պէս կը փայլիք աշխարհի*
16 *մէջ, Կենաց խօսքը ամուր բռնելով՝ ինծի պար-*
*ծանք ըլլալու համար Քրիստոսի օրը, թէ պա-*
*րապ տեղ չվազեցի, և պարապ տեղ չաշխա-*
17 *տեցայ։ Բայց թէպէտև ձեր հաւատքին պա-*
*տարագին ու պաշտօնին վրայ ընծայուիմ, կ՚ու-*
*րախանամ և ձեր ամէնուն ուրախակից կ՚ըլ-*
18 *լամ. Նոյնպէս ալ դուք ուրախացէք ու ինծի*
*ուրախակից եղէք։*
19 *Արդ կը յուսամ Տէր Յիսուսով որ Տիմոթէոսը*
*շուտով ձեզի ղրկեմ, որպէս զի իմ սիրտս ալ*
20 *հանգչի, երբ ձեր վիճակը գիտնամ։ Վասն զի*
*անոր նման սրտակից մէկը չունիմ, որ մտերմաբար*
21 *ձեզի համար հոգ տանի։ Քանզի ամէնը իրենցը*
*կը փնտռեն՝ ու ոչ թէ Յիսուս Քրիստոսինը։*
22 *Բայց դուք անոր փորձը գիտէք, որ ինչպէս*
*որդի մը հօրը հետ՝ այնպէս ինծի հետ ծառայու-*
23 *թիւն ըրաւ աւետարանին մէջ։ Ուստի կը յու-*
*սամ զանիկա ղրկել շուտ մը՝ իմ ինչպէս ըլ-*
24 *լալիքս տեսածիս պէս։ Բայց վստահութիւն*
*ունիմ Տէրոջմով՝ որ ես ալ քիչ ատենէն պիտի*
25 *գամ։ Միայն թէ հարկաւոր սեպեցի հիմա ձեզի*
*ղրկել Եպափրոդիտոս իմ եղբայրս և գործա-*
*կիցս ու զինուորակիցս, ձեր ղրկածը ու իմ*
26 *պիտոյքիս ծառայողը։ Որովհետև ինք ալ շատ*
*փափաք ունէր ձեզ ամէնդ ալ [տեսնելու]. ու*

կը տրտմէր, որ դուք լսած էիք թէ ինք հի-
27 ւանդացաւ ։ Եւ արդարեւ ինք հիւանդացաւ
մահուան մօտ, բայց Աստուած ողորմեցաւ
անոր. ոչ թէ միայն անոր՝ հապա ինծի ալ,
որպէս զի տրտմութեան վրայ տրտմութիւն չու-
28 նենամ ։ Ասոր համար աւելի փութով ղրկեցի,
որպէս զի դուք զանիկա տեսնելով նորէն
ուրախ ըլլաք, ու ես առանց տրտմութեան
29 ըլլամ ։ Ուրեմն ընդունեցէք զանիկա Տէրոջմով
ամէն ուրախութեամբ, ու այնպիսիները պատ-
30 ուականներու կարգը բռնեցէք. Քանզի Քրիս-
տոսի գործին համար մինչեւ մահուան մօտեցաւ՝
իր կեանքը վտանգի մէջ ձգելով, որպէս զի ձեր
ինծի ծառայելու պակասութիւնը ինք լեցնէ ։

## ԳԼ. Գ

1 Առաքեալը կը պատուիրէ որ հեռու կենան թլփատութիւն քարոզող սուտ վարդապետներէն, 4 ցուցնելով թէ ինք անոնցմէ աւելի իրաւունք ունէր օրէնքին արդարութիւնովը պարծենալու, 7 բայց սակայն ինք վնաս և աղտեղութիւն կը համարի զայն, որ Քրիստոսը ու անոր արդարութիւնը շահի. 12 այսու ամենայնիւ կը խոստովանի իր անկատարութիւնը. 15 կը յորդորէ զանոնք իրեն պէս խորհիլ, 17 իրեն նմանող ըլլալ, 18 և մարմնաւոր քրիստոնեաներուն չար ճամբէն հեռանալ ։

1 Ուստի, իմ եղբայրներս, ուրախ եղէք Տէրոջ-
մով. Նոյն բաները ձեզի գրել ինծի ձանձրու-
2 թիւն չէ, ու ձեզի ապահովութիւն է ։ Զգու-
շացէք շուներէն, զգուշացէք չար մշակներէն,
3 զգուշացէք կրճատութենէն ։ Վասն զի թլփա-
տութիւնը մենք ենք, որ հոգիով զԱստուած
կը պաշտենք, ու կը պարծենանք Քրիստոս Յի-
սուսով, և մարմնի վրայ չէ վստահութիւննիս ։
4 Թէպէտ ես ալ նոյն վստահութիւնը ունիմ
մարմնի վրայ. եթէ ուրիշ մէկը կը կարծէ թէ
վստահութիւն ունի մարմնի վրայ, ալ աւելի
5 ես. Ութ օրուան թլփատուած, Իսրայէլի ազ-
գէն, Բենիամինի ցեղէն, Եբրայեցի՝ Եբրայե-

6 ցիներէ, օրէնքին նայելով փարիսեցի. Նախան-
ձաւոր ըլլալու կողմանէ՝ եկեղեցին կը հալածէի.
օրէնքին արդարութեանը կողմանէ անարատ
7 էի։ Բայց ինչ որ ինծի շահ էր, զանիկա Քրիս-
8 տոսի համար վնաս սեպեցի։ Եւ իրաւ բոլոր
բաներն ալ վնաս կը սեպեմ իմ Տէրոջս Քրիս-
տոս Յիսուսի գերազանց գիտութեանը համար.
որուն համար ամէն բանէն զրկուեցայ, և աղ-
տեղութիւն կը սեպեմ, որպէս զի Քրիստոսը
9 շահիմ, Ու իր մէջ գտնուիմ, ոչ թէ իմ ար-
դարութիւնս ունենամ որ օրէնքէն է, հապա
Քրիստոսի հաւատքովը եղած արդարութիւնը՝
10 որ Աստուծմէ է հաւատքով. Ճանչնալու զա-
նիկա և անոր յարութեանը զօրութիւնը ու
անոր չարչարանքներուն հաղորդ ըլլալը, անոր
11 մահուան կերպարանքը առնելով. Որ ըլլայ թէ
12 մեռելներուն յարութեանը հասնիմ։ Ոչ թէ
ես արդէն առեր եմ, կամ արդէն կատարեալ
եղեր եմ, հապա ետևէ ինկած եմ որ բռնեմ
մրցանակը, որուն համար ալ բռնուեցայ Քրիստոս
13 Յիսուսէ։ Եղբայրներ, ես չեմ սեպեր որ բռներ
եմ. բայց բան մը կայ, որ ետևի եղածները
մոռցած եմ, ու առջևի եղածներուն կը դիմեմ.
14 Նպատակը դիտելով՝ Քրիստոս Յիսուսով եղած
Աստուծոյ վերին կոչումին մրցանակին կը վա-
15 զեմ։ Ուստի մենք ամէնս որ կատարեալ ենք՝
ասիկա խորհինք, և եթէ բան մը ուրիշ կեր-
պով խորհելու ըլլաք, զանիկա ալ ձեզի պիտի
16 յայտնէ Աստուած։ Միայն թէ ինչ աստիճանի որ
հասեր ենք, նոյն կանոնին համեմատ քալենք,
17 նոյն խորհուրդը ունենանք։ Ինծի նմանող եղէք,
եղբայրներ, ու նայեցէք անոնց որ այնպէս
կը քալեն, ինչպէս մեզ ձեզի օրինակ ունիք։
18 Վասն զի շատերը կը քալեն, որոնց համար շատ
անգամ ձեզի կ՚ըսէի, և հիմա լալով ալ կը զրու-

ցեմ , այսինքն Քրիստոսի խաչին թշնամինե-
19 րուն համար . Որոնց վերջը կորուստ է , որոնց
աստուածը իրենց որովայնն է , ու անոնց փառքը
իրենց ամօթն է , որոնք միայն երկրաւոր բաները
20 կը մտածեն ։ Բայց մեր *քաղաքականութիւնը
երկինքն է , ուրկէ ալ Փրկչին կը սպասենք , Տէր
21 Յիսուս Քրիստոսի . Որ պիտի նորոգէ մեր խո-
նարհ մարմինը՝ իր փառաւոր մարմնին կերպա-
րանակից ըլլալու , այն զօրութիւնովը որ կա-
րող է ամէնը իրեն տակ հնազանդեցնելու ։

## ԳԼ. Դ

1 Մանաւոր խրատներէն ետև 4 ընդհանուր յորդորանքներ կ'ընէ , ցուցնելով թէ ինչպէս ինք ուրախացաւ անոնց առատասրտութեանը վրայ որ ցուցուցին իրեն՝ իր բանտարկուած ատենը , ոչ այնքան իր պիտոյքը լեցնելնուն համար , հապա անոնց մէջ եղած Աստուծոյ շնորհքին համար . 19 և այսպէս իր թուղթը կը վերջացնէ աղօթքով և բարևներով ։

1 Ուստի , իմ սիրելի ու բաղձալի եղբայրներս ,
իմ ուրախութիւնս ու պսակս , այսպէս հաս-
տատուն կեցէք Տէրոջմով , սիրելիներս ։
2 Եւոդիային կ'աղաչեմ ու Սինտիքէի կ'աղաչեմ ,
որ միեւնոյն խորհուրդը ունենան Տէրոջմով ։
3 Իրաւ .քեզի ալ կ'աղաչեմ , իմ հարազատ լծա-
կիցս , դուն ալ օգնական եղիր անոնց , որոնք
ինծի հետ աշխատեցան աւետարանին մէջ Կղե-
մէսի և իմ ուրիշ գործակիցներուս հետ , ո-
4 րոնց անունները կենաց գիրքին մէջ են . Ուրախ
եղէք Տէրոջմով ամէն ատեն . դարձեալ կ'ըսեմ ,
5 ուրախ եղէք ։ Ձեր .քաղցրութիւնը ամէն մար-
6 դոց յայտնի ըլլայ . Տէրը մօտ է ։ Բանի մը
համար հոգ մի ընէք . հապա ամէն բանի մէջ
աղօթքով ու աղաչանքով , գոհութիւնով մէկ-
տեղ , ձեր խնդրուածքը Աստուծոյ յայտնի ըլ-
7 լայ ։ Եւ Աստուծոյ խաղաղութիւնը , որ ամէն
միտքէ վեր է , ձեր սիրտերը ու միտքերը Քրիս-

*կամ , կենցաղավարութիւնը

8 տոս Յիսուսով պիտի պահպանէ ։ Վերջապէս,
եղբայրներ, ինչ որ ճշմարտութիւնով է, ինչ որ
պարկեշտութիւնով, ինչ որ արդարութիւնով,
ինչ որ մաքրութիւնով, ինչ որ սիրով, ինչ որ
բարի համբաւով, ինչ առաքինութիւն և ինչ
գովութիւն որ կայ, այն բաները խորհեցէք ։
9 Ինչ որ սորվեցաք ու առիք և լսեցիք ու տեսաք
իմ վրաս, զայն ըրէք. և խաղաղութեան Աստ-
ուածը ձեզի հետ պիտի ըլլայ ։
10 Մեծապէս ուրախացայ Տէրոջմով, որ իմ
վրաս ունեցած հոգերնիդ հիմա նորոգուեցաւ,
ինչպէս կը հոգայիք ալ, միայն թէ պատեհու-
11 թիւն չունէիք ։ Ոչ թէ կարօտութեան համար
կ'ըսեմ. վասն զի ես սորվեցայ գոհ ըլլալ իմ
12 գտնուած վիճակիս մէջ ։ Գիտեմ չքաւորու-
թիւն քաշելը, գիտեմ շատ ունենալը. ամէն
բանի մէջ ամէն կերպով աղէկ սորվեր եմ թէ՛
կշտանալը, թէ՛ անօթենալը, թէ՛ շատ ունե-
13 նալը և թէ՛ պակսութիւն քաշելը ։ Ամէն բանի
14 կարող եմ *անով՝ որ զիս զօրացուց ։ Բայց
աղէկ ըրիք որ իմ նեղութեանս մէջ ինծի հա-
15 ղորդ եղաք ։ Դուք ալ գիտէք, Փիլիպպեցիներ,
որ աւետարանին սկիզբը երբ ես Մակեդոնիայէ
ելայ, եկեղեցի մըն ալ ինծի հետ հաղորդու-
թիւն չըրաւ տալու և առնելու կողմէ, հապա
16 միայն դուք. Որ Թեսաղոնիկէի մէջ ալ մէկ
երկու անգամ ինծի պէտք եղածը ղրկեցիք ։
17 Ոչ թէ ես տուրք կը փնտռեմ, հապա պտուղ
կը փնտռեմ՝ որ ձեր հաշւին վրայ աւելնայ ։
18 Բայց ես ամէն բան առած եմ ու առատօրէն
ունիմ. լցուած եմ՝ Եպափրոդիտոսի ձեռքով
ձեր ղրկածները ընդունելով, որ անոյշ հոտ մըն է,
19 ընդունելի պատարագ, Աստուծոյ հաճելի ։ Եւ
իմ Աստուածս ձեր ամէն պէտքը պիտի լեցնէ

*Ոմանք, Քրիստոսով

իր ճոխութեանը չափովը փառքով՝ Քրիստոս
20 Յիսուսի ձեռքով։ Արդ Աստուծոյ ու մեր Հօրը
փառք յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։
21 Բարև ըրէք բոլոր սուրբերուն Քրիստոս Յի-
22 սուսով։ Ձեզի բարև կ'ընեն ինծի հետ եղող
23 եղբայրները։ Ձեզի բարև կ'ընեն բոլոր սուր-
բերը, մանաւանդ անոնք որ Կայսրին տունէն
24 են։ Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը ձեր ա-
մէնուն հետ ըլլայ։ Ամէն։

---

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԿՈՂՈՍԱՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա.

1 Առաքեալը իր բարևը տալէն ետև՝ կը գոհանայ Աստուծմէ կողոսացի քրիստոնէից հաւատքին համար. 7 կը հաստատէ Եպափրասի վարդապետութիւնը. 9 Նաև աղօթք կ'ընէ որ անոնք շնորհքով աճին. 14 կը նկարագրէ ճշմարիտ Քրիստոսը. 21 կը քաջալերէ զանոնք Յիսուս Քրիստոսը ընդունելու, և կը յիշեցնէ իր պաշտօնը։

1 Պօղոս, Յիսուս Քրիստոսի առաքեալ Աստուծոյ
2 կամքովը, և Տիմոթէոս եղբայրը, Կողոսայի մէջ
եղող սուրբ ու հաւատացեալ եղբայրներուն
3 Քրիստոսով. Շնորհք և խաղաղութիւն ձեզի
Աստուծմէ մեր Հօրմէն *և Տէր Յիսուս Քրիս-
տոսէ"։
Ամէն ատեն ձեզի համար աղօթք ընելով՝
կը գոհանանք Աստուծմէ ու մեր Տէր Յիսուս
4 Քրիստոսի Հօրմէն, Լսելով ձեր հաւատքը՝ որ
Քրիստոս Յիսուսի վրայ, և այն սէրը՝ զոր բո-
5 լոր սուրբերուն վրայ ունիք. Այն յոյսին համար
որ երկինքը կը պահուի ձեզի, որուն վրայով

*Ոմանք չունին

առաջուընէ լսեցիք աւետարանին ճշմարտու-
6 թեան խօսքովը․ Որ ձեզի հասաւ՝ ինչպէս բո-
լոր աշխարհ, ու պտղաբեր ըլլալով [կ'աճի],
ինչպէս ձեր մէջ ալ, այն օրուընէ որ դուք լսե-
ցիք ու ճանչցաք Աստուծոյ շնորհքը ճշմար-
7 տութիւնով․ Ինչպէս սորվեցաք մեր սիրելի ծա-
ռայակցէն Եպափրասէ, որ ձեզի համար հա-
8 ւատարիմ պաշտօնեայ մըն է Քրիստոսի․ Որ
ինք ալ մեզի պատմեց ձեր սէրը Հոգիով։
9 Անոր համար մենք ալ, այն օրուընէ որ լսե-
ցինք, չենք դադարիր ձեզի համար աղօթք ընելէ
ու խնդրուածք մատուցանելէ, որ կատարեալ
ըլլաք անոր կամքին գիտութիւնովը բոլոր ի-
10 մաստութիւնով ու հոգեւոր հանճարով․ Որ-
պէս զի դուք Տէրոջը արժանի կերպով քալէք
ամէն բանի մէջ զինք հաճեցնելով, ամէն բարի
գործերու մէջ պտղաբեր ըլլալով, ու աճեցուն՝
11 Աստուծոյ գիտութիւնովը․ Իր փառաւոր զօ-
րութեանը համեմատ ամենայն ուժով ու-
ժովցած՝ բոլոր համբերութեան ու երկայն-
12 մտութեան համար ուրախութեամբ․ Գոհա-
նալով Հօր Աստուծոյ, որ մեզ լուսոյ մէջ բնակող
սուրբերուն վիճակին մասնակից ըլլալու արժա-
13 նացուց․ Որ մեզ ազատեց խաւարին իշխանու-
թենէն, ու իր սիրելի Որդւոյն թագաւորու-
14 թեանը փոխադրեց․ Որով մենք փրկութիւն
ունինք իր արիւնովը, այսինքն մեղքերու թողու-
15 թիւն․ Որ աներեւոյթ Աստուծոյ պատկերն է,
16 բոլոր ստեղծուածներուն անդրանիկը․ Վասն զի
անով ամէն բան ստեղծուեցաւ, ինչ որ երկինքը
ու ինչ որ երկրի վրայ, անոնք որ կ'երեւնան և
անոնք որ չեն երեւնար, թէ՛ աթոռները, թէ՛
տէրութիւնները, թէ՛ պետութիւնները, թէ՛
իշխանութիւնները․ բոլոր բաները անով ու
17 անոր համար ստեղծուեցան․ Ու անիկա ամէն

բանէ առաջ է, և ամէն բան անով հաստատ
18 կը կենայ. Եւ անիկա է մարմնին, այսինքն ե-
կեղեցւոյն, գլուխը. որ սկիզբն է, մեռելներէն
անդրանիկը, որպէս զի ինք ըլլայ ամէն բանի
19 մէջ նախապատիւ. Վասն զի Հայրը հաճեցաւ
որ Աստուածութեան բոլոր լեցունութիւնը անոր մէջ
20 բնակի. Եւ անով ամէնը հաշտեցնէ իրեն հետ,
խաղաղութիւն ընելով անոր խաչին վրայ թափած
արիւնովը, թէ՛ երկրի վրայ և թէ՛ երկինքի մէջ
եղողները։
21 Եւ ձեզ ալ, որ ատեն մը օտարացած էիք,
ու չար գործերով թշնամիներ՝ ձեր խորհուրդ-
22 ներովը, Հիմա հաշտեցուց բուն իր մարմնովը՝
մահուամբ, որպէս զի ձեզ անոր դիմաց սուրբ
23 ու անբիծ և անպարսաւ կայնեցնէ. Եթէ կենաք
հաւատքին մէջ հիմնուած ու հաստատ և ա-
ռանց խախտելու աւետարանին յոյսէն զոր
լսեցիք, որ երկինքի տակ եղած բոլոր ստեղծ-
ուածներուն քարոզուեցաւ, որու ես Պօղոս
24 սպասաւոր եղայ։ Հիմա ուրախ եմ ձեզի հա-
մար կրած չարչարանքներուս վրայ, ու Քրիստոսի
կրած նեղութիւններուն պակասութիւնը իմ
մարմնիս մէջ կը լեցնեմ անոր մարմնին հա-
25 մար, որ եկեղեցին է. Որուն ես սպասաւոր եղայ
Աստուծոյ տնտեսութիւնովը՝ որ ինծի տրուե-
ցաւ ձեզի համար՝ Աստուծոյ խօսքը լման քա-
26 րոզելու, Այն խորհուրդը՝ որ ծածկուած էր
առաջուան դարերէն ու ազգերէն հետէ, ու հիմա
27 իր սուրբերուն յայտնուեցաւ. Որոնց ուզեց
Աստուած գիտցնել, թէ ինչ է այս խորհուր-
դին փառաւոր ճոխութիւնը հեթանոսներուն
մէջ. որ է Քրիստոս ձեր մէջ, փառաց յոյսը.
28 Զոր մենք կը քարոզենք, ու ամէն մարդ կը խրա-
տենք, և կը սորվեցնենք ամէն մարդ բոլոր ի-
մաստութիւնով, որպէս զի ամէն մարդ կա-

29 տարեալ կեցնենք Քրիստոս Յիսուսով. Որու
համար ես ալ կ'աշխատիմ, ջանք ընելով իր
ներգործութեանը համեմատ, որ զօրութիւնով
իմ մէջս ի գործ կը դրուի ։

## ԳԼ. Բ

1 Դարձեալ կը յորդորէ զանոնք Քրիստոսի հաւատքին մէջ հաստատ կենալ. 8 կը զգուշացնէ հեթանոսական փիլիսոփայութենէ և փուճ աւանդութիւններէ, 18 հրեշտակաց կրօնքէն, 20 և օրինական ծէսերէն, որոնք Քրիստոսով վերջացած են ։

1 Քանզի կ'ուզեմ որ գիտնաք թէ ինչպէս մեծ
անձկութիւն ունիմ ձեզի համար ու Լաւոդի-
կեցւոց համար, ու ամէն անոնց համար՝ որոնք
2 իմ երեսս մարմինով չեն տեսեր. Որպէս զի ա-
նոնց սրտերը մխիթարուին՝ սիրով միացած,
ու կատարեալ իմացութեան բոլոր ճոխու-
թեանը հասնին, այսինքն Հօր Աստուծոյ և Քրիս-
3 տոսի խորհուրդին գիտութեանը. Որուն մէջ
իմաստութեան ու գիտութեան բոլոր գանձերը
4 պահուած են ։ Եւ զայս կ'ըսեմ, որ չըլլայ թէ
մէկը հրապուրական խօսքերով ձեզ մոլորեցնէ ։
5 Որ թէպէտ մարմինով հեռու եմ, բայց հոգւով
ձեզի հետ եմ, և կ'ուրախանամ երբ ձեր բա-
րեկարգութիւնը կը տեսնեմ, ու ձեր հաւատ-
6 քին հաստատութիւնը՝ Քրիստոսի վրայ ։ Ուստի
ինչպէս ընդունեցիք Քրիստոս Յիսուս Տէրը,
7 անով քալեցէք, Արմատ կապած ու անոր վրայ
շինուած, ու հաւատքին մէջ հաստատուած՝
ինչպէս սորվեցաք, և անոր մէջ աճեցէք գո-
8 հութիւնով ։ Զգուշացէք, չըլլայ որ մէկը ձեզ
գերի վարէ փիլիսոփայութիւնով ու փուճ խա-
բէութիւնով, որ մարդոց աւանդութեան պէս է
ու աշխարհի սկզբունքներուն պէս, և ոչ թէ
9 Քրիստոսի վարդապետութեանը պէս. Վասն զի անոր
մէջ կը բնակի Աստուածութեան բոլոր լեցու-
10 նութիւնը մարմնապէս ։ Եւ դուք ալ անով

լցուած էք, որ գլուխ է բոլոր իշխանութեան
11 ու պետութեան. Որով դուք անձեռագործ
թլփատութիւնով թլփատուեցաք *մեղաց մար-
մինը մերկանալով, Քրիստոսի թլփատութիւ-
12 նովը. Թաղուելով անոր հետ մկրտութիւնով,
որով նաև անոր հետ յարութիւն առիք Աստու-
ծոյ զօրութեանը հաւատալով, որ զանիկա մե-
13 ռելներէն յարուց։ Եւ ձեզ, որ ատեն մը յան-
ցանքներու մէջ ու ձեր մարմնին անթլփատու-
թեանը մէջ մեռած էիք, կենդանացուց անոր
14 հետ. Ու ամէն յանցանքները ներեց մեզի, Ու-
հրամաններով եղած մեզի հակառակ եղող ձե-
ռագիրը, որ մեզի դէմ կը կենար, ջնջեց, զա-
նիկա մէջտեղէն վերցուց, ու խաչափայտին վրայ
15 գամեց. Եւ իշխանութիւնները ու պետութիւն-
ները մերկացուց, ու յայտնապէս խայտառա-
կեց՝ յաղթելով անոնց †անով։
16 Ուստի ալ մէկը թող չդատէ ձեզ ուտելու
կամ խմելու, կամ տօներու կամ ամսագլուխ-
17 ներու կամ շաբաթներու կողմանէ, Որոնք
գալու բաներուն շուքն են, բայց բունը մարմինը
18 Քրիստոսինն է։ Զլլայ որ մէկը զրկէ ձեզ մրցա-
նակէն, որ ուզէ խոնարհութիւնով ու հրեշտակ-
ներու կրօնքով չտեսած բաներուն միջամուխ
ըլլալ, իր մարմնին միտքովը փուճ տեղ հպար-
19 տանալով. Եւ չբռնէ Գլուխը՝ ուրկէ բոլոր մար-
մինը յօդուածներով ու խաղերով հաղորդուած
ու մէկտեղ կցուած՝ Աստուծոյ աճումովը կ'աճի։
20 Իսկ եթէ դուք Քրիստոսի հետ այս աշխարհին
սկզբունքներէն մեռաք, ալ ինչո՞ւ համար աշ-
խարհի մէջ կենդանի եղողներու պէս այսպիսի
21 կանոններու կը հնազանդիք, ըսելով, Մի մօտե-
22 նար, համը մի առներ, մի դպչիր, (Որոնց ամէնը
ապականութեան համար են գործածութեամբ,)

*Յուն. մարմնի մեղաց   †Կամ, իր անձովը

մարդոց պատուիրանքներուն ու սորվեցուցած-
23 ներուն համեմատ, Որոնք իմաստութեան կեր-
պարանք մը ունին ինքնակամ կրօնքով ու խո-
նարհութիւնով և մարմինի չխնայելով, բայց ոչ
թէ պատիւի մը արժանի են, հապա մարմինը յագե-
ցընելու կը ծառայեն ։

## ԳԼ. Գ

1 Առաքեալը կը ցուցնէ թէ ո՛ւր փնտռելու ենք զՔրիստոս. 5 կը յորդորէ երկրաւոր անդամները սպաննել, 10 հին մարդը վրայէ հանել և Քրիստոսը հագնիլ. 12 սիրոյ, խոնարհութեան և ուրիշ պարտականութեանց վրայով խրատ կու տայ ։

1 Արդ եթէ Քրիստոսի հետ յարութիւն առիք,
ուրեմն վերի բաները փնտռեցէ՛ք, ուր Քրիստոս
2 կը նստի Աստուծոյ աջ կողմը ։ Վերի բաները
մտածեցէ՛ք, ոչ թէ այս երկրին վրայինները ։
3 Վասն զի դուք մեռաք, ու ձեր կեանքը պահ-
4 ուած է Աստուծոյ քով Քրիստոսի հետ ։ Երբ
Քրիստոս, մեր կեանքը, յայտնուի, այն ատեն
դուք ալ անոր հետ փառքով պիտի յայտնուիք ։
5 Ուստի ձեր երկրաւոր անդամները սպան-
նեցէ՛ք. պոռնկութիւնը, պղծութիւնը, անառակ
կիրքը, չար ցանկութիւնը և ագահութիւնը,
6 որ կռապաշտութիւն է. Որոնց համար Աստու-
ծոյ բարկութիւնը անհնազանդութեան որդի-
7 ներուն վրայ կու գայ. Որոնց մէջ ատեն մը
դուք ալ կը քալէիք, երբ անոնց մէջ կ'ապրէիք ։
8 Բայց հիմա մէկդի ձգեցէ՛ք դուք ալ այն ամէնը.
բարկութիւնը, սրտմտութիւնը, չարութիւնը,
հայհոյութիւնը, անհամեստ խօսքերը ձեր բե-
9 րաններէն ։ Իրարու սուտ մի՛ զրուցէ՛ք. Հին
մարդը իր գործերովը ձեր վրայէն հանեցէ՛ք.
10 Եւ հագէ՛ք այն նորը գիտութիւնով նորոգուած՝
11 իր Ստեղծողին պատկերին պէս. Ուր Յոյն ու
Հրեայ, թլփատութիւն ու անթլփատութիւն,
Բարբարոս, Սկիւթացի, ծառայ կամ ազատ չկայ.

հապա Քրիստոս է ամէնը՝ և ամէն բանի մէջ։
12 Ուստի Աստուծոյ ընտրեալ սուրբերու և սի-
րելիներու պէս ձեր վրայ հագէք գութը, ողոր-
մութիւնը, քաղցրութիւնը, խոնարհութիւնը,
13 հեզութիւնը, երկայնմտութիւնը, Իրարու համ-
բերելով և իրարու ներելով՝ եթէ մէկը մէ-
կուն դէմ տրտունջ մը ունենայ. ինչպէս Քրիս-
14 տոս ձեզի ներեց, նոյնպէս ալ դուք։ Եւ այս
ամէն բաներուն վրայ սէրը հագէք, որ կատարե-
15 լութեան կապն է։ Ու *Աստուծոյ խաղաղու-
թիւնը ձեր սրտերուն մէջ թագաւորէ, որու
դուք կանչուեցաք մէկ մարմնով. ու գոհացող
16 եղէք։ Քրիստոսի խօսքը ձեր մէջ բնակի ա-
ռատապէս ամէն իմաստութիւնով՝ իրար սոր-
վեցնելու ու խրատելու՝ սաղմոսներով և օրհ-
նութիւններով ու հոգևոր երգերով ձեր սիր-
տերուն մէջ շնորհքով զԱստուած օրհնելու։
17 Եւ ամէն ինչ որ կ'ընէք թէ խօսքով և թէ
գործով՝ բոլորը Տէր Յիսուսի անունովը ըրէք,
Աստուծոյ ու Հօրը գոհութիւն մատուցանելով
անոր ձեռքով։
18 Կիներ, հնազանդ եղէք ձեր այրերուն, ինչ-
19 պէս կը վայլէ Տէրոջմով։ Այրեր, սիրեցէք ձեր
20 կիները, ու դառն մի ըլլաք անոնց։ Որդիներ,
ամէն բանի մէջ հնազանդ եղէք ձեր ծնող-
ներուն, վասն զի այն է Տէրոջը առջև հաճելի։
21 Հայրեր, ձեր որդիները մի բարկացնէք, որ-
22 պէս զի չվհատին։ Ծառաներ, ամէն բանի մէջ
հնազանդ եղէք ձեր մարմնաւոր տէրերուն, ոչ
թէ աչքի առջև ծառայելով մարդահաճոներու
պէս, հապա սրտի միամտութեամբ՝ Տէրոջմէ
23 վախնալով. Ինչ որ կ'ընէք՝ սրտանց ըրէք, որ-
24 պէս թէ Տէրոջը ու ոչ թէ մարդոց, Գիտնա-
լով որ ժառանգութեան հատուցումը Տէրոջմէ

*Որ. Քրիստոսի

պիտի առնէք․ վասն զի Տէր Քրիստոսի կը ծա-
25 ռայէք․ Բայց անօրէնը իր անօրէնութեան
պատիժը պիտի ընդունի, և աչառութիւն չկայ։

## ԳԼ. Դ

*1 կը յորդորէ ջերմեռանդութեամբ աղօթք ընել, 5 խելացութեամբ վարուիլ անոնց հետ՝ որոնք դեռ Քրիստոսի կատարեալ գիտութիւնը չունին. 10 իր բարեւը կը մատուցանէ անոնց, և ամէն կերպ յաջողութիւն կը մաղթէ։*

1 Տէրեր, ձեր ծառաներուն իրաւունք ու հա-
ւասարութիւն տուէք, գիտնալով որ դուք ալ
Տէր ունիք երկինքը։
2 Շարունակ աղօթքի նուէր եղէք, անոր մէջ
3 արթուն մնալով գոհութեամբ։ Աղօթք ըրէք
նաև մեզի համար, որպէս զի Աստուած խօս-
քին դուռը բանայ մեզի Քրիստոսի խորհուրդը
4 խօսելու, որու համար կապուած ալ եմ, Որ-
պէս զի յայտնի ընեմ զանիկա՝ ինչպէս ինծի
5 կը վայլէ խօսիլ։ Խոհեմութեամբ վարուեցէք
դուրսիններուն հետ՝ ժամանակը ծախու առ-
6 նելով։ Ձեր խօսքը ամէն ատեն շնորհքով,
որպէս իբր աղով, համեմուած ըլլայ, ու գիտնաք
թէ ինչպէս կը վայլէ ձեզի ամէն մէկուն պա-
տասխան տալ։
7 Ալ իմ վրայօքս բոլորը պիտի իմացնէ ձեզի
Տիւքիկոս սիրելի եղբայրը և հաւատարիմ
8 պաշտօնեան ու ծառայակիցը Տէրոջմով․ Զոր
այդ բանին համար ձեզի ղրկեցի, որպէս զի
*գիտնայ ձեր վրայով, ու ձեր" սիրտերը մխի-
9 թարէ, Ոնեսիմոս հաւատարիմ ու սիրելի եղ-
բօր հետ մէկտեղ, որ ձեզմէ մէկն է․ իրենք
ամէն բանը ձեզի պիտի իմացնեն՝ ինչ որ հոս
10 կայ։ Բարեւ կ'ընէ ձեզի Արիստարքոս, իմ գե-
րութեան ընկերս, և Մարկոս, Բառնաբասի
եղբօրորդին, (որու համար պատուէր առիք․

*Ոմն․ գիտնաք մեր վրայով, ու ինք ձեր

եթէ ձեզի գալու ըլլայ, ընդունեցէք զանիկա.)
11 Եւ Յիսուս՝ որ Յուստոս կոչուած է, որոնք
թլփատութենէն են. ասոնք միայն՝ ինծի գործա-
կից եղան Աստուծոյ թագաւորութեանը մէջ,
12 որոնք ինծի մխիթարութիւն եղան։ Բարեւ կ՚ընէ
ձեզի Եպափրաս, Քրիստոսի ծառան, որ ձեզմէ
մէկն է, ամէն ատեն աղօթքի մէջ ձեզի համար
ջանք ընելով, որպէս զի դուք կատարեալ ու
լման կենաք Աստուծոյ բոլոր կամքին մէջ։
13 Քանզի անոր վրայով ես կը վկայեմ, թէ շատ
նախանձաւորութիւն ունի ձեզի համար ու
Լաւոդիկէի եւ Յերապօլիսի մէջ եղողներուն
14 համար։ Բարեւ կ՚ընէ ձեզի սիրելի Ղուկաս
15 բժիշկը ու Դեմաս։ Բարեւ ըրէք եղբայրնե-
րուն, որոնք Լաւոդիկիա են, եւ Նիմփասի ու
16 անոր տանը մէջի եկեղեցիին։ Ու երբ այս
թուղթը ձեր մէջ կարդացուի, Լաւոդիկեցւոց
եկեղեցիին մէջ ալ կարդալ տուէք. եւ դուք ալ
17 Լաւոդիկիայէ եկած թուղթը կարդացէք։ Ու ըսէք
Արքիպպոսի, Զգոյշ եղիր քու սպասաւորու-
թեանդ, զոր Տէրոջմով առիր, որ զանիկա կա-
18 տարես։ Այս բարեւը իմ ձեռքովս՝ Պօղոսին է.
իմ կապերս միտքերնիդ թող ըլլան։ Շնորհքը
ձեզի հետ։ Ամէն։



ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա

*1 Առաքեալը կը ծանուցանէ Թեսաղոնիկեցւոց՝ թէ ինք ամէն ատեն կը յիշէ զանոնք իր գոհութեանը ու աղօթքին մէջ, 5 և թէ ինք աղէկ համոզուած է թէ անոնց հաւատքը ճշմարիտ ու անկեղծ է, և թէ Աստուծոյ դարձած են։*

1 Պօղոս և Սիղուանոս ու Տիմոթէոս, Թեսաղո-
նիկեցւոց եկեղեցիին՝ Հայր Աստուծով ու Տէր
2 Յիսուս Քրիստոսով. Շնորհք և խաղաղութիւն
ձեզի *Աստուծմէ մեր Հօրմէն ու Տէր Յիսուս
Քրիստոսէ"։
Կը գոհանանք Աստուծմէ ամէն ատեն ձեր
ամէնուն համար՝ ձեզ յիշելով մեր աղօթքնե-
3 րուն մէջ. Անդադար յիշելով ձեր հաւատքին
գործը ու սիրոյ աշխատութիւնը և մեր Տէր
Յիսուս Քրիստոսի յոյսին համբերութիւնը՝ Աս-
4 տուծոյ ու մեր Հօրը առջև. Եւ գիտնալով,
Աստուծմէ սիրուած եղբայրներ, ձեր ընտրու-
5 թիւնը. Որ մեր աւետարանը ոչ թէ միայն
խօսքով եղաւ ձեզի, հապա զօրութիւնով ալ
և Հոգւով Սրբով ու շատ ապացուցութիւնով,
ինչպէս գիտէք թէ ինչպէս կեցանք ձեր մէջ
6 ձեզի համար։ Դուք ալ մեզի ու Տէրոջը նմա-
նող ըլլալով՝ ընդունեցիք խօսքը շատ նեղու-
թեան մէջ Հոգւոյն Սրբոյ ուրախութիւնովը.
7 Այնպէս որ դուք օրինակ եղաք բոլոր հաւա-
տացեալներուն, որոնք Մակեդոնիայի ու Ա-
8 քայիայի մէջ են։ Վասն զի ձեզմէ հնչակուեցաւ
Տէրոջը խօսքը, ոչ թէ միայն Մակեդոնիայի

---

*Ոմանք չունին

ու Աքայիայի մէջ, հապա նաև ամէն տեղ ձեր
հաւատքը, որ դէպ ի Աստուած է, տարածուե-
ցաւ, այնպէս որ ա՛լ պէտք չէ մեզի բան մը
9 խօսիլ։ Քանզի իրենք կը պատմեն մեզի համար,
թէ ի՛նչպէս եղաւ մեր ձեր քով մտնելը, և
ի՛նչպէս դուք կուռքերէն Աստուծոյ դարձաք՝
կենդանի ու ճշմարիտ Աստուծոյ ծառայելու,
10 Եւ սպասելու անոր Որդւոյն՝ երկինքէն. զոր
ինք մեռելներէն յարուց, այսինքն Յիսուսը,
որ կ'ազատէ մեզ գալու բարկութենէն։

## ԳԼ. Բ

1 Առաքեալը կը ցուցնէ թէ ի՛նչպէս աւետարանը Թեսաղոնիկէ մտաւ ու քարոզուեցաւ, և ի՛նչպէս անոնք ալ ընդունեցին. 18 պատճառը կ'իմացնէ թէ ինք ինչո՛ւ այնքան երկար ատեն հեռու մնաց անոնցմէ, և թէ ինչո՛ւ այնքան մեծ փափաք ունէր զանոնք տեսնելու։

1 Քանզի, եղբայրներ, դուք ինքնիրեննիդ գիտէք
ձեր մէջ մտնելնիս՝ որ պարապ տեղ չեղաւ.
2 Հապա առաջ Փիլիպպէի մէջ չարչարանք կրե-
լով ու անարգուելով, ինչպէս գիտէք, համար-
ձակութիւն ըրինք մեր Աստուծովը ձեզի պատ-
մել Աստուծոյ աւետարանը մեծ հակառա-
3 կութեան մէջ։ Վասն զի մեր յորդորանքը ոչ
մոլորութենէ է ու ոչ պղծութենէ և ոչ խա-
4 բէութեամբ. Հապա ինչպէս մենք Աստուծմէ
ընտրուեցանք ու աւետարանը մեզի հաւատացուե-
ցաւ, այնպէս կը խօսինք, ոչ թէ մարդոց հաճոյ
ըլլալու համար, հապա Աստուծոյ՝ որ մեր սիր-
5 տերը կը քննէ. Վասն զի մենք բնաւ շողոքոր-
թութեան խօսքեր չգործածեցինք, ինչպէս գի-
տէք, ոչ ալ ագահութեան պատճառանք, Աստ-
6 ուած վկայ է, Եւ մարդոցմէ փառք չփնտռե-
7 ցինք, ոչ ձեզմէ՝ ոչ ալ ուրիշներէն, Թէև կըր-
նայինք իբրև Քրիստոսի առաքեալներ ծանրու-
թիւն տալ. բայց մենք հեզ եղանք ձեր մէջ,

ինչպէս դայեակ մը իր երախաները կը խնամէ։
8 Նոյնպէս ալ մենք ձեր վրայ փափաք ունենալով՝
կը յօժարէինք, ոչ միայն Աստուծոյ աւետա-
րանը ձեզի տալ, հապա մեր անձերն ալ, վասն
9 զի դուք մեզի սիրելիներ եղաք։ Քանզի կը յի-
շէք, եղբայրներ, մեր աշխատութիւնը ու ջանքը,
որ ձեզմէ մէկուն ծանրութիւն չտալու համար
գիշեր ու ցորեկ գործելով՝ ձեզի Աստուծոյ ա-
10 ւետարանը քարոզեցինք։ Դուք վկայ էք, և
Աստուած ալ՝ թէ ինչպէս սրբութիւնով ու
արդարութիւնով և անարատութիւնով վար-
11 ուեցանք ձեզի հետ՝ որ հաւատացիք. Ինչպէս
գիտէք ալ, որ ձեզմէ ամէն մէկը, ինչպէս հայր մը
12 իր որդիները՝ Այնպէս կը յորդորէինք ու կը մխի-
թարէինք և վկայութիւն կը դնէինք, որպէս զի
դուք Աստուծոյ վայելածին պէս քալէք, որ ձեզ
իր թագաւորութեանը ու փառքին կանչեց։
13 Ասոր համար մենք ալ անդադար կը գոհանանք
Աստուծմէ, որ մեզմէ Աստուծոյ խօսքը լսելով
ընդունեցիք, ոչ թէ իբրև մարդոց խօսք, հապա,
ինչպէս ճշմարտապէս է, Աստուծոյ խօսք, որ
նաև կը ներգործէ ձեր մէջ որ կը հաւատաք։
14 Քանզի դուք, եղբայրներ, նմանող եղաք Ա-
ստուծոյ եկեղեցիներուն, որոնք Հրէաստանի մէջ
են Քրիստոս Յիսուսով. վասն զի դուք ալ նոյն
չարչարանքները կրեցիք ձեր համազգիներէն, ինչպէս
15 անոնք ալ՝ Հրեաներէն. Որոնք Տէր Յիսուսն ալ
մեռցուցին՝ *մարգարէներն ալ, և մեզ հալա-
ծեցին, ու Աստուծոյ անհաճոյ՝ և բոլոր մարդոց
16 հակառակ են. Ու մեզ կ'արգիլեն հեթանոս-
ներուն խօսելէ անոնց փրկութեանը համար,
որպէս զի իրենց մեղքերուն չափը լեցնեն ամէն
ատեն. և բարկութիւնը անոնց վրայ հասեր է
մինչև վերջը։

*Ոմանք, իրենց մարգարէներն

17 Իսկ մենք, եղբայրներ, կրած քիչ մը ատեն
ձեզմէ որբ մնացինք երեսով ու ոչ թէ սրտով,
բայց աւելի ջանացինք ձեր երեսը տեսնել մեծ
18 փափաքով։ Անոր համար ես Պօղոս մէկ երկու
անգամ ուզեցի ձեզի գալ, բայց Սատանան
19 մեզ արգիլեց։ Քանզի ո՞վ է մեր յոյսը կամ
ուրախութիւնը կամ ո՞ր պարծանքին պսակը,
եթէ ոչ դուք՝ մեր Տէր Յիսուս Քրիստոսին առջեւ
20 անոր գալու ատենը։ Որովհետեւ դուք էք մեր
փառքը և ուրախութիւնը։

## ԳԼ. Գ

1 Պօղոս կը յայտնէ իր մեծ սէրը զոր ունէր Թեսաղոնիկեցւոց վրայ, թէ՛ Տիմոթէոսը անոնց ղրկելով՝ որպէս զի հաստատէ և մխիթարէ զանոնք, թէ՛ անոնց բարեգործութիւններուն վրայ ուրախանալով, 10 և թէ՛ աղօթք ընելով անոնց համար, և անվտանգ անոնց երթալու փափաքելով։

1 Ուստի ա՛լ չկրնալով աւելի համբերել, աղէկ
2 երեւցաւ մեզի մինակ Աթէնք մնալ. Եւ Տիմո-
թէոս մեր եղբայրը ու Աստուծոյ պաշտօնեան
և մեր գործակիցը Քրիստոսի աւետարանին մէջ,
ղրկեցինք ձեզ հաստատելու ու մխիթարելու
3 ձեր հաւատքին համար. Որպէս զի այս նեղու-
թիւններուն մէջ ձեզմէ մէ՛կը չխախտի. վասն զի
դուք ինքնիրեննիդ գիտէք որ մենք այդ բանե-
4 րուն համար կեցեր ենք։ Քանզի երբ մենք
ձեր քով էինք, առաջուընէ ձեզի կը զրուցէինք
թէ նեղութիւններու պիտի հանդիպինք, ինչ-
5 պէս եղաւ ալ, ու գիտէք։ Ասոր համար ես ալ
չկրնալով աւելի համբերել, մարդ ղրկեցի ձեր
հաւատքը գիտնալու, որ չըլլայ թէ փորձողը
ձեզ փորձած ըլլայ, և մեր աշխատութիւնը
6 պարապ ըլլայ։ Բայց հիմա երբ Տիմոթէոս
ձեզմէ մեզի եկաւ, ու ձեր հաւատքին և սի-
րոյն աւետիսը մեզի տուաւ, որ ամէն ժամանակ
մեր բարի յիշատակը միտքերնիդ ունիք, և կը փա-

փաքիք մեզ տեսնել, ինչպէս մենք ալ ձեզ,
7 Ասոր համար, եղբայրներ, ձեր վրայ մխիթար-
ուեցանք մեր բոլոր վիշտերուն ու նեղութիւն-
8 ներուն վրայ ձեր հաւատքովը. Վասն զի կեն-
դանի ենք մենք, եթէ դուք հաստատուն կե-
9 նաք Տէրոջմով. Քանզի ի՞նչ գոհութիւն կրնանք
մատուցանել Աստուծոյ ձեր վրայով, այն ամէն
ուրախութեանը համար զոր կ՚ուրախանանք
10 ձեզի համար մեր Աստուծոյն առջև, Եւ գիշեր
ու ցորեկ խիստ շատ աղաչանք կ՚ընենք ձեր
երեսը տեսնելու, ու ձեր հաւատքին պակսու-
11 թիւնները լեցնելու։ Բայց Աստուած ինք ու
մեր Հայրը և մեր Տէրը Յիսուս Քրիստոս մեր
12 ճամբան դէպ ի ձեզ յաջողէ։ Եւ Տէրը աճեցնէ
ու աւելցնէ ձեր սէրը իրարու վրայ ու ամէ-
նուն վրայ, ինչպէս մենք ալ ձեր վրայ ունինք,
13 Հաստատելով ձեր սիրտերը անարատ, սրբու-
թեան մէջ Աստուծոյ և մեր Հօրը առջև, մեր
Տէրոջը Յիսուս Քրիստոսի գալու ատենը իր
բոլոր սուրբերուն հետ մէկտեղ։

## ԳԼ. Դ

1 Կը յորդորէ զանոնք որ ամէն կերպով յառաջ երթան աստուածպաշտութեան մէջ, 6 որ սուրբ ու արդար վարմունք ունենան, 9 որ մէկզմէկ սիրեն, 11 որ ամէն մէկը խաղաղութեամբ իր գործը գործէ, 13 ու վերջապէս ննջեցեալներուն վրայով իրենց տրտմութիւնը չափաւոր ըլլայ։ 17 Առաքեալը այս վերջին յորդորանքին վրայ համառօտ կերպով մը կը նկարագրէ մեռելոց յարութիւնը, և Քրիստոսի երկրորդ գալուստը՝ դատաստանի համար։

1 Ալ հիմա, եղբայրներ, ձեզի կ՚աղաչենք ու
կը յորդորենք Տէր Յիսուսով, որ ինչպէս մեզմէ
առիք՝ թէ ինչպէս պէտք է ձեզի քալել ու
Աստուծոյ հաճոյ ըլլալ, ալ աւելի անոր մէջ շատ-
2 նաք։ Քանզի գիտէք թէ ինչ պատուէրներ
3 տուինք ձեզի Տէր Յիսուսով։ Վասն զի Աս-
տուծոյ կամքը այս է, այսինքն ձեր սուրբ ըլ-
լալը, որ դուք ետ կենաք պոռնկութենէ.

4 Ձեզմէ ամէն մէկը գիտնայ իր անօթը սրբու-
5 թիւնով ու պատուով ստանալ. Ոչ թէ ցանկու-
թեան կիրքով՝ ինչպէս հեթանոսները, որոնք
6 զԱստուած չեն ճանչնար։ Չըլլայ որ *այդ բա-
նին" մէջ չափէ անցնի ու իր եղբայրը զրկէ,
վասն զի Տէրը այդ բոլոր բաներուն համար
վրէժխնդիր է. ինչպէս առաջուընէ ըսինք ձեզի
7 ու վկայութիւն տուինք։ Վասն զի Աստուած
մեզ պղծութեան չկանչեց, հապա սրբութեան։
8 Ուստի ան որ կ'անարգէ՝ ոչ թէ մարդ մը կ'ա-
նարգէ, հապա զԱստուած՝ որ իր Սուրբ Հոգին
ալ †մեզի տուաւ։
9 Բայց եղբայրսիրութեան վրայով պէտք չէ
ձեզի բան գրել, վասն զի դուք ինքնիրենիդ
10 Աստուծմէ սորված էք մէկզմէկ սիրել. Եւ
իրաւ այդ բանը կ'ընէք դուք բոլոր Մակեդո-
նիայի մէջ եղող ամէն եղբայրներուն. սակայն
կ'աղաչենք ձեզի, եղբայրներ, որ ա՛լ աւելի
11 առատանաք. Եւ ջանք ընէք որ հանդարտ կե-
նաք, ու ամէն մէկդ իր գործը գործէ, ու ձեր
ձեռքերովը աշխատիք, (ինչպէս ձեզի պատուի-
րեցինք,) որպէս զի դուրսիններուն հետ պար-
կեշտութեամբ վարուիք, ու ‡բանի մը" կա-
րօտ չըլլաք։
12 Չենք ուզեր, եղբայրներ, որ անգէտ ըլլաք
ննջեցեալներուն վրայով, որպէս զի չտրտմիք
13 ինչպէս ուրիշները՝ որոնք յոյս չունին։ Քանզի
եթէ կը հաւատանք թէ Յիսուս մեռաւ ու յա-
րութիւն առաւ, նոյնպէս ալ Աստուած ննջե-
ցեալները Յիսուսով պիտի բերէ անոր հետ։
14 Վասն զի զայս կը զրուցենք ձեզի Տէրոջը խօս-
քովը, թէ մենք որ մինչեւ Տէրոջը գալուստը
ողջ կը մնանք, բնաւ ննջեցեալներէն առաջ
15 պիտի չանցնինք։ Վասն զի Տէրը ինք ազդարա-

*կամ, բանի մը †Ոմանք, ձեզի ‡կամ, մէկու՛ն

*րութեան հրամանով, հրեշտակապետին ձայ-
նովը ու Աստուծոյ փողովը երկինքէն պիտի իջնէ,
և Քրիստոսով մեռածները առաջ յարութիւն
16 պիտի առնեն։ Ետքը մենք ալ որ ողջ մնացած
ենք՝ անոնցմով մէկտեղ պիտի յափշտակուինք
ամպերով Տէրոջը առջև ելլելու օդին մէջ, և
այնպէս յաւիտեան Տէրոջը հետ պիտի ըլլանք։
17 Ուստի մէկզմէկ մխիթարեցէք այս խօսքերով։*

## ԳԼ. Ե

*1 Կը շարունակէ իր նկարագրութիւնը Քրիստոսի դատաստանի գալուն վրայով, 6 և զանազան խրատներ տալով՝ 23 իր թուղթը կը վերջացնէ։*

*1 Բայց այն ժամերուն ու ժամանակներուն հա-
մար, եղբայրներ, պէտք չէ բան մը գրել ձեզի.
2 Քանզի դուք ինքնիրեննիդ աղէկ գիտէք՝ թէ
Տէրոջը օրը գիշերուան գողի պէս այնպէս
3 կը հասնի։ Երբ ըսելու ըլլան թէ խաղաղու-
թիւն ու ապահովութիւն է, այն ատեն կո-
րուստը յանկարծակի անոնց վրայ պիտի հասնի
յղիին երկունքին պէս, ու պիտի չազատին։
4 Բայց դուք, եղբայրներ, խաւարի մէջ չէք, որ
5 այն օրը գողի մը պէս ձեր վրայ հասնի. Վասն
զի դուք ամէնդ լուսոյ որդիներ էք, ու ցու-
րեկուան որդիներ. գիշերուանը չենք, խաւա-
6 րինը չենք։ Ուրեմն չքնանանք ինչպէս ուրիշ-
ները, հապա արթուն ու զգաստ ըլլանք։
7 Քանզի անոնք որ կը քնանան, գիշերը կը քնա-
նան, և անոնք որ կ'արբենան, գիշերը կ'արբե-
8 նան։ Բայց մենք, որովհետև ցորեկուան ենք,
զգաստ ըլլանք, և հաւատքի ու սիրոյ զրահը
մեր վրայ հագնինք, ու փրկութեան յոյսին սա-
9 ղաւարտը գլուխնիս դնենք։ Վասն զի Աստուած մեզ
բարկութեան համար չորոշեց, հապա փրկու-
թիւն ստանալու համար մեր Տէր Յիսուս Քրիս-
10 տոսի ձեռքով. Որ մեզի համար մեռաւ. որ-*

պէս զի թէ՛ արթուն ըլլանք և թէ՛ քնանանք,
11 իրեն հետ մէկտեղ ապրինք ։ Անոր համար
մէկզմէկ մխիթարեցէք և իրարու շինութիւն
տուէք, ինչպէս կ՚ընէք ալ ։
12 Եւ ձեզի կ՚աղաչենք, եղբայրներ, որ ճանչ-
նաք ձեր աշխատաւորները ու վերակացուները
13 Տէրոջմով, ու ձեզի խրատ տուողները ․ Եւ զա-
նոնք մեծապէս պատուեցէք սիրով իրենց գոր-
ծերին համար ․ իրարու հետ խաղաղութիւն ունե-
14 ցէք ։ Եւ ձեզի կ՚աղաչենք, եղբայրներ, անկարգ-
վարմունք ունեցողները խրատեցէք, փոքրա-
սիրտները մխիթարեցէք, տկարներուն ձեռնտու
15 եղէք, ամէնուն ալ երկայնամիտ եղէք ։ Զգու-
շացէք, չըլլայ որ մէկը չարութեան փոխարէն
չարութիւն հատուցանէ մէկուն ․ հապա ամէն
ատեն բարիք ընելու ետևէ եղէք թէ՛ իրարու
16 և թէ՛ ամէնուն ։ Ամէն ատեն ուրախ եղէք ։
17 Անդադար աղօթք ըրէք ։ (18) Ամէն բանի մէջ
գոհութիւն տուէք ․ վասն զի այս է Աստուծոյ
19 կամքը Քրիստոս Յիսուսով ձեր վրայ ։ Ս–րբ
20 Հոգին մի մարէք ։ Մարգարէութիւնները մի
21 արհամարհէք ։ Ամէն բան փորձեցէք, բարին
22 ամուր բռնեցէք ։ Ամէն տեսակ գէշ բանէ
23 ետ կեցէք ։ Եւ ինք խաղաղութեան Աստուածը
ձեզ բոլորովին սուրբ ընէ, ու ձեր բոլոր հոգին
և շունչը ու մարմինը անարատ պահուի մնչև
24 մեր Տէր Յիսուս Քրիստոսի գալու ատենը ։ Հա-
ւատարիմ է ան որ ձեզ կանչեց, որ պիտի կա-
տարէ ալ ։
25 Եղբայրներ, աղօթք ըրէք մեզի համար ։
26 Բարև տուէք բոլոր եղբայրներուն սուրբ համ-
27 բուրով ։ Կ՚երդմնցնեմ ձեզ Տէրոջմով, որ այս
թուղթը բոլոր սուրբ եղբայրներուն կար-
28 դացուի ։ Մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը
ձեզի հետ ըլլայ ։ Ամէն ։

ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ

---

## ԳԼՈՒԽ Ա

*1 Պօղոս առաքեալ կը յայտնէ Թեսաղոնիկեցւոց իր բարի գաղափարը զոր ունէր ա-
նոնց հաւատքին, սիրոյն և համբերութեանը վրայ. 11 և միանգամայն հալածանքի
ժամանակ մխիթարութիւն ունենալու զանազան պատճառներ յառաջ կը բերէ,
որոնց գլխաւորը Աստուծոյ արդար դատաստանէն կ'առնէ ։*

1 Պօղոս և Սիղուանոս ու Տիմոթէոս, Թեսաղո-
նիկեցւոց եկեղեցւոյդ մեր Հայր Աստուծով
2 ու Տէր Յիսուս Քրիստոսով ։ Շնորհք և խա-
ղաղութիւն ձեզի Աստուծմէ մեր Հօրմէն ու
Տէր Յիսուս Քրիստոսէ ։
3 Պարտիմք ամէն ատեն Աստուծմէ գոհանալ
ձեզի համար, եղբայրներ, ինչպէս կը վայլէ.
քանզի ձեր հաւատքը շատ աճելու վրայ է, և
ձեր ամէն մէկուն սէրը իրարու վրայ կը շատնայ.
4 Այնպէս որ մենք ալ ձեզմով կը պարծենանք
Աստուծոյ եկեղեցիներուն մէջ՝ ձեր համբերու-
թեանը ու հաւատքին համար ձեր բոլոր հա-
լածանքներուն ու նեղութիւններուն մէջ՝ որոնց
5 դուք կը համբերէք. Որ է Աստուծոյ արդար
դատաստանին ապացոյցը՝ որպէս զի դուք ար-
ժանանաք Աստուծոյ թագաւորութեանը, որու
6 համար ալ նեղութիւն կը կրէք. Քանզի Աս-
տուծոյ առջև իրաւունք է՝ ձեզի նեղութիւն
7 տուողներուն նեղութիւն հատուցանել, Եւ
ձեզի նեղութիւն կրողներուդ՝ մեզի հետ հան-
գիստ, Տէր Յիսուսի երկինքէն յայտնուելու
8 ատենը իր զօրաւոր հրեշտակներովը. Բորբոքած
կրակով վրէժ առնելու անոնցմէ՝ որ զԱստուած

չեն ճանչնար, և որ մեր Տէր Յիսուս Քրիստոսի
9 աւետարանին չեն հնազանդիր. Որոնք պիտի
պատժուին յաւիտենական սատակումով՝ Տէ-
րոջը երեսէն ու անոր զօրութեանը փառքէն,
10 Երբ ինք գայ փառաւորուիլ իր սուրբերուն մէջ,
և հիանալի ըլլալ բոլոր հաւատացեալներուն
մէջ, (վասն զի մեր վկայութիւնը ձեր մէջ հա-
11 ւատացուեցաւ,) այն օրը։ Այս պատճառաւ ալ
ամէն ատեն ձեզի համար աղօթք կ'ընենք, որ
մեր Աստուածը ձեզ արժանի ընէ իր կոչումին,
և իր բարութեան բոլոր հաճութիւնը կատարէ,
12 ու հաւատքին գործը՝ զօրութիւնով. Որպէս զի
մեր Տէր Յիսուս Քրիստոսի անունը փառա-
ւորուի ձեր մէջ, և դուք ալ անոր մէջ՝ մեր
Աստուծոյն ու Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքին
համեմատ։

## ԳԼ. Բ

1 Կը խնդրէ անոնցմէ որ հաստատ կենան իրենց ընդունած ճշմարտութեանը մէջ. 3 կը ցուցնէ թէ ոմանք հաւատքէն պիտի ապստամբին, 9 և Նեռը պիտի յայտնուի Տէրոջը օրուան գալէն առաջ. 15 իր առաջուան յորդորանքները կը կրկնէ, ու աղօթք կ'ընէ անոնց համար։

1 Կ'աղաչենք ձեզի, եղբայրներ, մեր Տէր Յիսուս
Քրիստոսի գալուստին ու մեր անոր քով ժող-
2 վուելուն համար, Չըլլայ որ շուտ մը խախտիք
իր միտքէն, ու չըլլայ որ խռովիք՝ ոչ հոգիով
ու ոչ խօսքով, ոչ ալ թուղթով մը իբր թէ
մեզմէ գրուած, որպէս թէ Քրիստոսի օրը եկած
3 հասած ըլլայ։ Չըլլայ որ մէկը ձեզ խաբէ կեր-
պով մը. վասն զի այն օրը պիտի չգայ՝ եթէ ապստամ-
բութիւնը առաջ չգայ, ու յայտնուի մեղաց
4 մարդը, կորստեան որդին, Ան հակառակորդը
հպարտացած ամէնուն վրայ, որ Աստուած
կ'ըսուի կամ կը պաշտուի, մինչև անիկա Աս-
տուծոյ տաճարին մէջ *պիտի նստի, և ինքզինք

*Որմէ, Աստուծոյ պէս պիտի

5 ցուցնէ թէ Աստուած է։ Չէ՞ք յիշեր որ երբ
6 ձեր քով էի, այս բաները կ'ըսէի ձեզի։ Եւ
հիմա դուք ինքնիրեննիդ գիտէք ինչ է ան որ կ'ար-
գիլէ, որպէս զի ինք իր ատենին յայտնուի։
7 Վասն զի անօրէնութեան խորհուրդը հի-
մակուընէ կը զօրանայ. բայց ան որ հիմա կ'ար-
գիլէ, պիտի արգիլէ՝ մինչև ինք մէջտեղէն վերնայ։
8 Ու երբոր պիտի յայտնուի այն անօրէնը, զոր
Տէր [Յիսուս] իր բերնին հոգիովը պիտի սպառէ,
ու իր գալուն յայտնուելովը պիտի կորսնցնէ.
9 Որուն գալը Սատանայի ազդեցութիւնովն է
բոլոր զօրութիւնով և նշաններով ու սուտ
10 հրաշքներով, Եւ կորսուածներուն վրայ անի-
րաւութեան բոլոր խաբէութիւնովը. որով-
հետև անոնք ճշմարտութեան սէրը չընդունե-
ցին՝ որ փրկուին, անոր համար Աստուած ալ
պիտի ղրկէ անոնց ուժով մոլորութիւն մը՝ որ
11 ստութեան հաւատան, Որպէս զի դատապար-
տուին ամէն անոնք որ չհաւատացին ճշմարտու-
թեան, հապա անօրէնութեան յօժարեցան։
12 Բայց մեզի պէտք է միշտ Աստուծմէ գոհա-
նալ ձեզի համար, Տէրոջմէ սիրուած եղբայր-
ներ, վասն զի Աստուած առաջուընէ ձեզ ընտ-
րեց փրկուելու՝ Հոգիին սրբելովը ու ճշմարտու-
13 թեան հաւատքովը. Որու ձեզ կանչեց մեր ա-
ւետարանելովը՝ մեր Տէր Յիսուս Քրիստոսի
փառքը ստանալու։
14 Ուստի, եղբայրներ, հաստատ կեցէք, ու
պինդ բռնեցէք այն աւանդութիւնները զորոնք
սորվեցաք թէ՛ խօսքով ու թէ՛ մեր թուղթովը։
15 Եւ ինք մեր Տէր Յիսուս Քրիստոս ու մեր Հայրը
Աստուած, որ մեզ սիրեց ու տուաւ մեզի յա-
ւիտենական մխիթարութիւն և բարի յոյս
16 շնորհքով, Ձեր սիրտերը մխիթարէ և ձեզ հաս-
տատէ ամէն բարի խօսքերու և գործերու մէջ։

# ԳԼ. Գ

1 Կը խնդրէ որ անոնք աղօթք ընեն իրեն համար, 3 անոնց վրայ իր ունեցած վստահութիւնը կը յայտնէ, 5 անոնց համար Աստուծոյ աղօթք կ'ընէ, 6 զանազան պատուէրներ կու տայ, մանաւանդ ծուլութենէ և անառակ ընկերներէ հեռու կենալու վրայով, 16 և իր թուղթը աղօթքով ու բարևներով կը վերջացնէ։

1 Վերջապէս, եղբայրներ, մեզի համար աղօթք
ըրէք, որպէս զի Տէրոջը խօսքը յառաջանայ
2 ու փառաւոր ըլլայ, ինչպէս ձեր մէջ. Եւ որ-
պէս զի անիրաւ ու չար մարդոցմէ ազատինք.
3 վասն զի ամէնը *հաւատք չունին. Բայց Տէրը
հաւատարիմ է, որ ձեզ պիտի հաստատէ, ու
4 չարէն պահէ։ Եւ ձեր վրայ վստահութիւն
ունինք Տէրոջմով, թէ ինչ որ ձեզի պատուի-
5 րեցինք՝ կ'ընէք, ու պիտի ընէք ալ։ Եւ Տէրը
ձեր սիրտերը Աստուծոյ սիրոյն ու Քրիստոսի
համբերութեանը ուղղէ։
6 Եւ ձեզի կը պատուիրենք, եղբայրներ, մեր
Տէր Յիսուս Քրիստոսի անունովը, որ ետ
քաշուիք ամէն եղբօրմէ՝ որ անկարգութեամբ
կը վարուի, ու ոչ թէ այն աւանդութեանը պէս՝
7 զոր մեզմէ առաւ։ Վասն զի դուք ինքնիրեն-
նիդ գիտէք թէ ինչպէս պարտիք մեզի նմանող
ըլլալ. քանզի մենք ձեր մէջ անկարգութեամբ
8 չվարուեցանք, Ոչ ալ մէկուն հացը ձրի կերանք.
հապա ջանքով և աշխատանքով գիշեր ու ցորեկ
կը գործէինք՝ ձեզմէ մէկո՛ւն ծանրութիւն չտա-
9 լու համար. Ոչ թէ՝ որ մենք իշխանութիւն չու-
նէինք, հապա որ անձերնիս ձեզի օրինակ ընենք
10 որպէս զի մեզի նմանող ըլլաք։ Վասն զի երբ
մենք ձեր քով էինք՝ զայս ձեզի կը պատուի-
րէինք, թէ Ան որ չուզեր գործ գործել, հաց ալ
11 թող չուտէ։ Արդ կը լսենք որ ձեր մէջէն ո-
մանք անկարգութեամբ կը վարուին, ու գործ մը
չեն գործեր, հապա հետաքրքիր կը պտըտին։

*կամ, հաւատարմութիւն

12 *Այնպիսիներուն պատուէր կու տանք ու կ'ա-
ղաչենք մեր Տէր Յիսուս Քրիստոսով, որ հան-
դարտութեամբ գործեն և իրենց հացը ուտեն։
13 Բայց դուք, եղբայրներ, մի ձանձրանաք բա-
14 րիք գործելէ։ Իսկ եթէ մէկը չհնազանդիր մեր
խօսքին այս թուղթով, դուք նշանակեցէք զա-
նիկա, ու անոր հետ մի խառնուիք, որպէս զի
15 ամչնայ։ Բայց չըլլայ թէ թշնամիի պէս սեպէք
16 զանիկա, հապա եղբօր պէս խրատեցէք։ Եւ ինք
խաղաղութեան Տէրը ամէն կերպով ձեզի խա-
ղաղութիւն տայ ամէն ատեն. Տէրը ձեր ա-
մէնուն հետ ըլլայ։*
17 *Այս ողջոյնը իմ ձեռքիս՝ Պօղոսին է, որ
ամէն թուղթերուն մէջ նշան է. այսպէս կը
18 գրեմ։ Մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը
ձեր ամէնուն հետ ըլլայ։ Ամէն։*

---

### ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

### ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ

---

## ԳԼՈՒԽ Ա

*1 Առաքեալը Տիմոթէոսի միտքը կը ձգէ այն պատուէրը որ ինք Մակեդոնիա գացած ատենը տուեր էր անոր. 5 կը խօսի օրէնքին ուղիղ գործածութեանը և նպատակին վրայով, 11 իր առաքելական պաշտօնին կանչուելուն վրայով, 20 և Հիմենոսի ու Աղեքսանդրոսի վրայով։*

1 *Պօղոս, Յիսուս Քրիստոսի առաքեալ, մեր Փրկիչ
Աստուծոյ և մեր յոյսը եղող *Քրիստոս Յի-
2 սուսի" հրամանովը, Տիմոթէոսի, իմ հարազատ
որդւոյս հաւատքով, շնորհք, ողորմութիւն ու-*

---

*Ոմն., Տէր Յիսուս Քրիստոսի

*խաղաղութիւն Աստուծմէ մեր Հօրմէն և Քրիս-
տոս Յիսուս մեր Տէրոջմէն ։*
3 *Ինչպէս քեզի աղաչեցի Եփեսոս մնալ, երբ
ես Մակեդոնիա կ՚երթայի, որ պատուիրես
մէկ քանիներուն օտար ուսմունք չսորվեցնել,*
4 *Եւ չնայիլ առասպելներու ու ազգաբանութիւնե-
րու՝ որոնք վերջ չունին, որոնք աւելի վէճեր
կը պատճառեն քան թէ Աստուծոյ հաւէքի *շի-*
5 *նութիւնը՝ որ կ՚ըլլայ հաւատքով ։ Իսկ պատուի-
րանքին վախճանը սէր է սուրբ սրտով ու բարի*
6 *խղճմտանքով և անկեղծ հաւատքով ․ Որոնցմէ
խոտորելով ոմանք փուճ խօսքերու ետևէ գա-*
7 *ցին ․ Օրինաց վարդապետ ըլլալ կ՚ուզեն, բայց
իրենք չեն հասկնար ինչ որ կը խօսին, ոչ ալ*
8 *այն բաները՝ որոնց համար ոտք կը կոխեն ։ Արդ
գիտենք որ օրէնքը աղէկ է, եթէ մէկը զա-
նիկա օրինաւոր կերպով գործածելու ըլլայ ։*
9 *Բայց զայս թող գիտնայ որ արդարներուն հա-
մար չէ օրէնքը, հապա անօրէններուն ու ան-
հնազանդներուն համար, ամբարիշտներուն և
մեղաւորներուն, անսուրբներուն և պղծերուն,
հայր ու մայր զարնողներուն, մարդասպաննե-*
10 *րուն, Պոռնիկներուն, արուագէտներուն, մարդ-
գողցողներուն, սուտղրուցներուն, սուտ եր-
դում ընողներուն, և թէ ուրիշ ինչ որ հակա-*
11 *ռակ է ողջամիտ վարդապետութեան, Որ ե-
րանելի Աստուծոյ փառաւոր աւետարանին հա-*
12 *մեմատ է, որ ինծի յանձնուեցաւ ։ Եւ շնոր-
հակալ եմ անոր՝ որ զիս զօրացուց, այսինքն
Քրիստոս Յիսուս մեր Տէրոջը, որ հաւատարիմ
սեպելով զիս՝ այս սպասաւորութեան մէջ դրաւ ․*
13 *Որ առաջ հայհոյիչ էի ու հալածող և թշնա-
մանող ․ բայց ողորմութիւն գտայ, վասն զի*
14 *անհաւատութեան մէջ չգիտնալով ըրի ․ Եւ մեր*

**կամ, կենցաղավարութիւնը*

Տէրոջը շնորհքը խիստ շատ եղաւ ինծի հաւատքով
15 ու սիրով՝ որ Քրիստոս Յիսուսով է։ Այս խօսքը
հաւատարիմ է ու բոլորովին ընդունելութեան
արժանի, որ Քրիստոս Յիսուս աշխարհ եկաւ
մեղաւորները փրկելու, որոնց գլուխը ես եմ.
16 Բայց անոր համար ողորմութիւն գտայ, որ ա-
մենէն առաջ Յիսուս Քրիստոս իմ վրաս ցուցնէ
բոլոր երկայնմտութիւնը՝ օրինակ ըլլալու անոնց
որոնք պիտի հաւատային իրեն յաւիտենական
17 կեանքի համար։ Արդ յաւիտենական Թագա-
ւորին, որ անեղծ ու աներևոյթ է, մի *միայն
Աստուծոյն փառք ու պատիւ յաւիտեանս յա-
ւիտենից։ Ամէն։
18 Այս պատուէրը կ'աւանդեմ քեզի, իմ որ-
դեակս Տիմոթէոս, քու վրայովդ առաջուընէ
եղած մարգարէութիւններուն համեմատ, որ
անոնցմով պատերազմիս այն բարի պատերազմը,
19 Եւ ունենաս հաւատք ու մաքուր խղճմտանք,
զոր մէկ քանիները իրենցմէ մէկդի ձգելով՝
նաւաբեկութիւն կրեցին հաւատքին կողմանէ.
20 Որոնցմէ են Հիմենոս ու Աղեքսանդրոս, զորոնք
ես Սատանայի մատնեցի, որպէս զի սորվին
հայհոյութիւն չընել։

## Գլ. Բ

1 Կը յորդորէ աղօթք ու գոհութիւն մատուցանել ամէն մարդոց համար, և ասոր պատճառն ալ յառաջ կը բերէ. 9 կը ցուցնէ թէ կիները ինչո՛վ զարդարուելու են. 12 թէ անոնց թոյլտուութիւն չկայ սորվեցնելու, 15 և թէ պիտի փրկուին եթէ հաւատքի մէջ կենան։

1 Արդ կ'աղաչեմ ամէն բանէ առաջ աղօթք ընել,
խնդրուածք, աղաչանք, գոհութիւն ամէն մար-
2 դոց համար, Մանաւանդ թագաւորներուն և բո-
լոր իշխանաւորներուն համար. որպէս զի խա-
ղաղ ու հանդարտ կեանք վարենք բոլորովին

*Ոմանք, միայն իմաստուն

աստուածպաշտութիւնով ու պարկեշտութիւ-
3 նով ։ Վասն զի այն է աղէկը ու ընդունելին
4 մեր Փրկիչ Աստուծոյն առջև, Որ կ'ուզէ թէ
ամէն մարդիկ փրկուին ու ճշմարտութիւնը
5 ճանչնալու գան ։ Քանզի մէկ Աստուած կայ,
ու մէկ միջնորդ Աստուծոյ ու մարդոց մէջտեղ,
6 Քրիստոս Յիսուս մարդը, Որ իր անձը ամէնուն
տեղ փրկանք տուաւ՝ իր ատենին վկայութիւն
7 ըլլալու, Որուն ես քարոզիչ ու առաքեալ դրուե-
ցայ, (ճշմարիտ կ'ըսեմ *Քրիստոսով և սուտ
չեմ խօսիր,) հեթանոսներուն վարդապետ եղայ
8 հաւատքով ու ճշմարտութիւնով ։ Արդ կ'ու-
զեմ որ այր մարդիկ ամէն տեղ աղօթք ընեն՝
սուրբ ձեռքեր վերցնելով առանց բարկութեան
9 ու երկմտութեան ։ Նոյնպէս ալ կիները վայե-
լուչ հագուստով, ամօթխածութեամբ և պար-
կեշտութեամբ ինքզինքնին զարդարեն, ոչ թէ
հիւսուածքներով կամ ոսկիով կամ մարգա-
րիտներով կամ մեծածախս հանդերձներով,
10 Հապա բարի գործերով՝ ինչպէս կը վայլէ աստ-
11 ուածպաշտութիւնը դաւանող կիներուն ։ Կին
մարդը թող սորվի լռութեամբ՝ ամենայն հնա-
12 զանդութիւնով ։ Բայց կին մարդու հրաման
չեմ տար սորվեցնելու, ոչ ալ այր մարդուն
13 իշխելու, հապա լուռ կենալու ։ Վասն զի առաջ
14 Ադամ ստեղծուեցաւ, — ետքը Եւա ։ Եւ
Ադամ չխաբուեցաւ, հապա կինը խաբուեցաւ
15 ու յանցանք գործեց ․ Սակայն պիտի փրկուի
անիկա որդեծնութեամբ, եթէ կենան հա-
ւատքի և սիրոյ ու սրբութեան մէջ պարկեշ-
տութիւնով ։

*Ոմանք չունին

## ԳԼ. Գ

1 Կը ցուցնէ թէ եպիսկոպոսները, սարկաւագները ու անոնց կիները ի՛նչ վարմունքի տէր ըլլալու են, 14 և թէ ի՛նչ նպատակով ինք այս բաները գրեց Տիմոթէոսի․ 15 կը խօսի եկեղեցիին վրայով և անոր մէջ քարոզուած ու ընդունուած սուրբ վարդապետութեանը վրայով։

1 Այս խօսքը հաւատարիմ է․ Եթէ մէկը եպիս-
կոպոսութեան կը ցանկայ, աղէկ գործի կը ցան-
2 կայ։ Ուստի պէտք է եպիսկոպոսին անարատ
ըլլալ, մէկ կնոջ այր, զգաստ, խոհեմ, պար-
3 կեշտ, հիւրասէր, սորվեցնելու յարմար, Ոչ
գինեմոլ, ոչ զարնող, *հապա հանդարտ, ոչ
4 կռուող, ոչ արծաթասէր, Որ իր տանը աղէկ
վերակացութիւն ընող ըլլայ, իր զաւակները
հնազանդութեան մէջ պահելով՝ բոլոր ծանրա-
5 բարոյութեամբ․ (Այս եթէ մէկը իր տանը
վերակացութիւն ընել չգիտնայ, ի՞նչպէս Աս-
տուծոյ եկեղեցիին հոգաբարձու պիտի ըլլայ․)
6 Ոչ ալ նորահաւատ ըլլայ, որ չըլլայ թէ հպար-
տանալով Սատանայի դատապարտութեանը մէջ
7 իյնայ։ Հապա պէտք է անոր դուրսէն եղողնե-
րէն ալ բարի վկայութիւն ունենալ, որ չըլլայ
թէ նախատինքի մէջ ու Սատանայի որոգայթին
մէջ իյնայ։
8 Նոյնպէս ալ սարկաւագները ըլլան ծանրա-
բարոյ, ո՛չ երկլեզու, ո՛չ գինեսէր, ո՛չ անարգ
9 շահախնդրութեան ետևէ եղող․ Հապա հաւատ-
քին խորհուրդը պահեն մաքուր խղճմտանքով։
10 Եւ ասոնք ալ առաջ թող փորձուին, ետքը՝
եթէ անմեղադրելի գտնուին, սարկաւագու-
11 թեան պաշտօնը կատարեն։ Նոյնպէս ալ անոնց
կիները ծանրաբարոյ ըլլան, ոչ չարախօս, հապա
12 զգաստ, ամէն բանի մէջ հաւատարիմ։ Սարկա-
ւագները մէկ կնոջ այր ըլլան, և իրենց զաւակ-
ները ու իրենց տանը աղէկ վերակացութիւն

*Ոմանք, ոչ անարգ շահախնդրութեան ետևէ եղող, հապա

13 նող ըլլան։ Քանզի անոնք որ սարկաւագու-
թեան պաշտօնը աղէկ կը կատարեն, բարի աս-
տիճան մը իրենց կը շահին, ու Քրիստոս Յի-
սուսի վրայ եղած հաւատքին մէջ շատ համար-
ձակութիւն։
14 Այս բաները կը գրեմ քեզի, յուսալով մօ-
15 տերս քեզի գալ։ Բայց եթէ ուշանալու ըլլամ,
որպէս զի գիտնաս թէ ինչպէս պէտք է քեզի
Աստուծոյ տանը մէջ պտըտիլ, որ կենդանի
Աստուծոյ եկեղեցին է, ճշմարտութեան սիւնը
16 ու հաստատութիւնը։ Եւ յայտնապէս մեծ է
աստուածպաշտութեան խորհուրդը. Աստուած
մարմինով յայտնուեցաւ, Հոգիով արդարացաւ,
հրեշտակներուն երեւցաւ, հեթանոսներուն մէջ
քարոզուեցաւ, աշխարհի մէջ հաւատացուեցաւ
ու փառքով համբարձաւ։

## ԳԼ. Դ

1 Առաքեալը կը նախաձայնէ թէ վերջին ատենները ոմանք հաւատքէն պիտի մոլորին. 6 զանազան պատուէրներ կու տայ Տիմոթէոսի, որ իրեն յանձնուած պաշտօնին մէջ թերութիւն մը չցուցնէ։

1 Բայց Հոգին յայտնի կ'ըսէ թէ վերջին ատեն-
ները մէկ քանիները հաւատքէն պիտի ապստամ-
բին, և մոլորեցուցիչ ոգիներու ու դեւերու ուս-
2 մունքներու ուշադրութիւն պիտի տան, Ստա-
խօսներուն կեղծաւորութիւնովը, որոնց խղճմը-
3 տանքը խանձուած է. Որոնք ամուսնանալէ
պիտի արգիլեն, ու ետ պիտի պահեն կերա-
կուրներէն՝ զորոնք Աստուած ստեղծեր է որ-
պէս զի հաւատացեալները և ճշմարտութիւնը
4 ճանչցողները գոհութեամբ վայելեն։ Վասն զի
Աստուծոյ ամէն ստեղծածը բարի է, ու մերժե-
լու բան մը չկայ, եթէ գոհութեամբ ընդունուի.
5 Քանզի Աստուծոյ խօսքովը ու աղօթքով կը
6 սրբուի։ Այս բաները եղբայրներուն յիշեցնե-

լով՝ Յիսուս Քրիստոսի բարի պաշտօնեայ մը
պիտի ըլլաս, ու պիտի սնանիս հաւատքին խօս֊
քերովը և այն բարի վարդապետութիւնովը՝
7 որու հետևող եղար։ Բայց պիղծ ու պառաւա֊
կան առասպելներէն ետ կեցիր, և քու անձդ
8 աստուածպաշտութեան վարժեցուր. Վասն զի
մարմնին վարժութիւնը քիչ բանի օգտակար
է, բայց աստուածպաշտութիւնը ամէն բանի
օգտակար է, որ թէ՛ ներկայ և թէ՛ ապառնի
9 կեանքին խոստմունքը ունի։ Այս խօսքը հա֊
ւատարիմ է և բոլորովին ընդունելու ար֊
10 ժանի։ Վասն զի բուն ասոր համար կ՚աշխա֊
տինք ու նախատինք կը կրենք, քանզի կեն֊
դանի Աստուծոյ յուսացեր ենք, որ ամէն մար֊
դոց Փրկիչն է, մանաւանդ հաւատացեալնե֊
11 րուն։ Այս բաները պատուիրէ ու սորվեցուր։
12 Չըլլայ որ մէկը քու մանկութիւնդ անարգէ.
հապա դուն օրինակ եղիր հաւատացեալներուն՝
խօսքով, վարմունքով, սիրով, *հաւատքով և
13 մաքրութեամբ։ Մինչև ես գամ՝ միտք դիր կար֊
14 դալու, յորդորելու, սորվեցնելու։ Անհոգ մի ըլ֊
լար քու վրադ եղած պարգևին վրայով, որ մար֊
գարէութեամբ քեզի տրուեցաւ՝ երէցներուն
15 ձեռքերը քու վրադ դրուելովը։ Ատոնց վրայ
խորհէ ու ատոնց մէջ պարապէ, որպէս զի քու
յառաջադիմութիւնդ †ամէնուն յայտնի ըլլայ։
16 Զգուշացիր քու անձիդ ու վարդապետութեանը,
ու միշտ ատոնց մէջ կեցիր. քանզի այդպէս ընե֊
լով՝ քեզ ալ պիտի ապրեցնես, ու զանոնք ալ
որոնք քեզի մտիկ կ՚ընեն։

---

*Ոմանք, հոգւով, հաւատքով

†Կամ, ամէն բանի մէջ

# ԳԼ. Ե

1 կանոններ կու տայ յանդիմանելու վրայով. 3 որբեւարիներու 17 և ծերերու վրայով. 22 յատուկ պատուէր մըն ալ կու տայ Տիմոթէոսի առողջութեանը վրայով. 24 կը ծանուցանէ թէ ոմանց մեղքերը իրենցմէ առաջ դատաստանի կ'երթան, և ոմանց մեղքերը իրենց ետևէն կու գան ։

1 Ծերը սաստիկ մի յանդիմաներ, հապա հօր պէս
յորդորէ զանիկա. երիտասարդները՝ եղբայրներու
2 պէս, Պառաւները՝ մայրերու պէս, դեռահա-
սակ կիները՝ քոյրերու պէս ամէն կերպ մաքրու-
3 թիւնով ։ Որբեւարիները պատուէ՝ զանոնք որ
4 ճշմարտապէս որբեւարի են ։ Իսկ եթէ որբեւարի
մը զաւակներ կամ թոռներ ունենայ, թող
անոնք առաջ սորվին իրենց տանը մէջ որդիա-
կան գութ ցուցնել, ու փոխարէն հատուցա-
նել իրենց ծնողներուն. վասն զի այն է բարի
5 և ընդունելի Աստուծոյ առջև ։ Բայց ան որ
ճշմարտապէս որբեւարի է ու մինակ մնացած,
իր յոյսը Աստուծոյ վրայ դրած է, և գիշեր
6 ցորեկ աղօթքի ու աղաչանքի կը պարապի ։ Բայց
7 փափկասէր որբեւարին կենդանւոյն մեռած է ։ Եւ
այս բաները պատուիրէ որպէս զի անարատ ըլ-
8 լան ։ Բայց եթէ մէկը իրեններուն ու մանա-
ւանդ իր ընտանիքին հոգ չտանիր, անիկա հա-
ւատքը ուրացած է, ու անհաւատէ մըն ալ
9 գէշ է ։ Որբեւարին որբեւարիներուն կարգը թող
սեպուի, որ վաթսուն տարուընէ պակաս չէ,
10 մէկ էրկան կին եղած, Բարի գործերով վկայ-
ուած. եթէ զաւակներ մեծցուցած ըլլայ, եթէ
հիւրեր ընդունած ըլլայ, եթէ սուրբերուն ոտ-
քերը լուացած ըլլայ, եթէ նեղեալներուն օգ-
նութիւն ըրած ըլլայ, եթէ ամէն տեսակ բարե-
11 գործութեան մէջ յարատևած ըլլայ ։ Բայց
դեռահասակ որբեւարիները մերժէ. քանզի
երբ Քրիստոսի դէմ յանդգնելով հեշտասիրութեան
12 անձնատուր կ'ըլլան, ամուսնանալ կ'ուզեն ։ Եւ

դատապարտութիւն կ՚ընդունին, վասն զի ա-
13 ռաջուան հաւատքնին մէկդի ձգեցին ։ Նաև
ծոյլ ըլլալ կը սորվին, տունէ տուն պտըտողներ․
և ոչ միայն ծոյլ, հապա շատախօսներ ու հե-
տաքրքիրներ, և անպատեհ բաներ կը խօսին ։
14 Ուստի կ՚ուզեմ որ դեռահասակ կիները ա-
մուսնանան, զաւակներ ծնանին, տնաշէն ըլլան
ու նախատինքի պատճառ չտան հակառակոր-
15 դին ։ Քանզի արդէն ոմանք Սատանայի ետևէն
16 երթալու խոտորեցան ։ Եթէ հաւատացեալ այր
մարդ մը կամ կին մը որբևայրիներ ունենայ,
թող օգնութիւն ընէ անոնց, և եկեղեցին
չծանրաբեռնի, որպէս զի ճշմարտապէս որբևա-
րիներուն օգնութիւն ընէ ։
17 Աղէկ վերակացութիւն ընող երէցները կրկին
պատուոյ արժանի թող սեպուին, մանաւանդ
անոնք որ կ՚աշխատին խօսքը քարոզելով ու սորվե-
18 ցնելով ։ Վասն զի գիրքը կ՚ըսէ թէ Կալի մէջ
աշխատող եզին դունչը չկապես․ և թէ Մշակը
19 իր վարձքին արժանի է ։ Երէցի վրայ ամբաս-
տանութիւն մի ընդունիր, բայց միայն երկու
20 կամ երեք վկաներով ։ Անոնք որ մեղք կը գոր-
ծեն, ամէնուն առջև յանդիմանէ, որպէս զի
21 ուրիշներն ալ վախնան ։ Վկայութիւն կը դնեմ
Աստուծոյ առջև և *Յիսուս Քրիստոսի ու ընտ-
րեալ հրեշտակներուն, որ այս բաները պահես
առանց նախապաշարման, բան մը աչառու-
22 թեամբ չընելով ։ Շուտով մէկուն վրայ ձեռք
չդնես, և ուրիշներուն մեղքերուն հաղորդ
չըլլաս․ դուն քեզ մաքուր պահէ ։
23 Ասկէ ետև լոկ ջուր չխմես, հապա քիչ մըն ալ
գինի գործածէ քու ստամոքսիդ ու յաճախ հի-
ւանդութիւններուդ համար ։
24 Կան մարդիկ՝ որոնց մեղքերը յայտնի են,

*Ոմանք, Տէր Յիսուս

ու առաջուընէ դատաստանի հասած . և կան՝
25 որոնց ետևէն կ'երթան ։ Նոյնպէս ալ ոմանց բարի
գործերը յայտնի են . ու անոնք որ ուրիշ կերպ
բան մըն են, չեն կրնար ծածուկ մնալ ։

## Գլ. Զ

1 կը սորվեցնէ թէ ծառաները ի՛նչ պարտականութիւն ունին . 3 և թէ պէտք չէ նորաձև վարդապետներուն հետևիլ . 6 թէ աստուածպաշտութիւնը մեծ շահ մըն է, 10 և արծաթսիրութիւնը ամէն չարիքներուն արմատն է . 11 թէ Տիմոթէոս ի՛նչ բանէ փախչելու էր, և ի՛նչ բանի ետևէ երթալու էր, 17 և ի՛նչ բանի վրայով հարուստներուն պատուէր տալու էր . 20 կը պատուիրէ Տիմոթէոսի որ ճշմարիտ վարդապետութիւնը մաքուր պահէ, և պիղծ խօսքերէն ու հակառակութիւններէն հեռու կենայ ։

1 Այն ամէնը որ ծառայութեան լուծի տակ են,
իրենց տէրերը ամէն պատուոյ արժանի սեպեն,
որպէս զի Աստուծոյ անունը ու վարդապետու-
2 թիւնը չհայհոյուի ։ Եւ անոնք որ հաւատացեալ
տէրեր ունին, թող չարհամարհեն՝ եղբայրներ
ըլլալնուն պատճառաւ, հապա աւելի ծառայու-
թիւն ընեն, վասն զի անոնք հաւատացեալ են
ու սիրելի, որոնք բարերարութիւն ընելու մէջ
մասնակից են . այս բաները սորվեցուր ու յոր-
3 դորէ ։ Եթէ մէկը ուրիշ կերպ բան մը սոր-
վեցնէ, ու մօտիկ չընէ մեր Տէրոջը Յիսուս Քրիս-
տոսի ողջամիտ խօսքերուն, և այն վարդապե-
տութեանը որ աստուածպաշտութեան հա-
4 մեմատ է, Այնպիսին հպարտացած է ու բան մը
չգիտեր, հապա վէճերով ու հակառակութիւն-
ներով ախտացած է . որոնցմէ կ'ըլլայ նախանձ,
կռիւ, հայհոյութիւններ, դէշ կասկածներ,
5 Միտքով ապականած ու ճշմարտութենէն հե-
ռացած մարդոց գրգռութիւնները, որոնք
աստուածպաշտութիւնը շահաւետութիւն
մը կը սեպեն . այնպիսիներէն մէկդի կեցիր ։
6 Սակայն աստուածպաշտութիւնը գոհունակու-
թիւնով մէկտեղ մեծ շահաւետութիւն մըն

7 է ։ Վասն զի բան մը չբերինք աշխարհ, ու
յայտնի է որ չենք կրնար անկէ բան մը տանիլ։
8 Հապա կերակուր ու հանդերձ ունենալով՝ ա-
9 նոցմով բաւականանանք ։ Բայց անոնք որ հա-
րըստանալ կ'ուզեն, կ'իյնան փորձութեան ու
որոգայթի և շատ յիմարական ու վնասակար
ցանկութիւններու մէջ, որոնք սատակումի ու
10 կորուստի մէջ կ'ընկղմեն մարդիկ ։ Վասն զի
ամէն չարութիւններուն արմատը արծաթսի-
րութիւնն է. որու մէկ քանիները անձնատուր
ըլլալով՝ հաւատքէն մոլորեցան, ու ինքզինքնին
շատ ցաւերով խոցեցին ։
11 Բայց դուն, ով մարդ Աստուծոյ, փախիր
այս բաներէն, ու գնա արդարութեան, աստ-
ուածպաշտութեան, հաւատքի, սիրոյ, համբե-
12 րութեան ու հեզութեան ետեւէն ։ Պատերազմէ
հաւատքին բարի պատերազմը, բռնէ յաւի-
տենական կեանքը՝ որու կանչուեցար, և շատ
վկաներու առջև դաւանեցար բարի դաւանու-
13 թիւնը։ Կը պատուիրեմ քեզի Աստուծոյ առջև,
որ կենդանի կ'ընէ բոլորը, և Քրիստոս Յիսուսի
առջև, որ Պոնտացի Պիղատոսի առջև վկայեց
14 բարի դաւանութիւնը, Որ դուն այն պատուէրը
անբիծ, անարատ պահես՝ մինչև մեր Տէրոջը
15 Յիսուս Քրիստոսի յայտնութիւնը. Զոր իր ա-
տենին պիտի ցուցնէ Երանելին ու միմիայն
Հզօրը, թագաւորներուն Թագաւորը ու տէրե-
16 րուն Տէրը. Որ միայն ունի անմահութիւն՝ ան-
մերձենալի լոյսի մէջ բնակած, զոր մարդոցմէ
մէ՛կը չտեսաւ, ոչ ալ տեսնելու կարող է, որու
պատիւ և զօրութիւն յաւիտենից ։ Ամէն ։
17 Այս աշխարհքին մէջ հարուստ եղողներուն
պատուէր տուր որ չհպարտանան, և անստոյգ
հարստութեան վրայ յոյսերնին չդնեն, հապա
կենդանի Աստուծոյ վրայ, որ ամէն բան մեզի

18 առատօրէն կու տայ վայելելու, Բարիք գործեն,
բարի գործերով հարստանան, առատաձեռն,
19 և ուրիշին պիտոյքներուն հաղորդ ըլլան. Բարի հիմ
գանձեն անձերնուն հանդերձեալին համար,
որպէս զի *յաւիտենական կեանքը ձեռք ձգեն։
20 Ով Տիմոթէոս, քեզի տրուած աւանդը պահէ,
փախչելով պիղծ ունայնաբանութիւններէն և
սուտանուն գիտութեան հակառակութիւննե-
21 րէն, Զորոնք մէկ քանիները դաւանելով՝ հա-
ւատքէն մոլորեցան։ Շնորհքը քեզի հետ ըլլայ։
Ամէն։



ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

ԱՌ ՏԻՄՈԹԷՈՍ

## ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս կը յիշէ իր սէրը Տիմոթէոսի վրայ, և այն զուտ հաւատքը զոր Տիմոթէոս, իր մայրը ու մեծ մայրը ունէին. 6 կը յորդորէ Տիմոթէոսը որ իր վրայ եղած Աստուծոյ շնորհքը արծարծէ, 8 որ հալածման մէջ հաստատ ու համբերող ըլլայ, 13 ու ամուր բռնէ իրմէ սորված վարդապետութեան եղանակը ու ճշմարտութիւնը. կը յիշէ Փիգեղոսը և Հերմոգինէսը՝ և լն., ու Ոնեսիփորոսի վրայով բարի վկայութիւն կու տայ։

1 Պօղոս, Յիսուս Քրիստոսի առաքեալ, Աստուծոյ
կամքովը կենաց խոստմունքին պէս՝ որ Քրիս-
2 տոս Յիսուսով է, Տիմոթէոսի, իմ սիրելի որդիիս,
շնորհք, ողորմութիւն և խաղաղութիւն Հօր
Աստուծմէ ու Քրիստոս Յիսուս մեր Տէրոջմէն։
3 Շնորհակալ եմ Աստուծոյ, զոր կը պաշտեմ
իմ նախնիքներէս՝ մաքուր խղճմտանքով, (երբ
անդադար քեզ իմ աղօթքներուս մէջ կը յիշեմ

*Ոմանք, ճշմարիտ

4 *գիշեր ու ցորեկ, Ցանկալով քեզ տեսնել, ու*
*միտք բերելով քու արցունքներդ, որպէս զի*
5 *ուրախութիւնով լեցուիմ,) Մտածելով քու*
*վրադ եղած անկեղծ հաւատքը, որ առաջ քու*
*մեծ մօրդ Լաւոդեայի ու քու մօրդ Եւնիկէի*
*վրայ բնակեցաւ, և համոզուած եմ որ քու*
6 *վրադ ալ կայ։ Անոր համար քու միտքդ կը ձգեմ*
*որ արծարծես Աստուծոյ պարգևը, որ քեզի*
*տրուած է իմ ձեռքերուս քու վրադ դրուելովը։*
7 *Վասն զի Աստուած մեզի երկչոտութեան հոգի*
*չտուաւ, հապա զօրութեան ու սիրոյ և զգաս-*
8 *տութեան։ Ուստի ամօթ մի սեպեր մեր Տէ-*
*րոջը վկայութիւնը, ոչ ալ զիս անոր համար կապ-*
*ուածս. հապա մասնակից եղիր աւետարանին*
*չարչարանքներուն, Աստուծոյ զօրութեանը հա-*
9 *մեմատ. Որ մեզ փրկեց ու սուրբ կոչումով*
*կանչեց, ոչ թէ մեր գործերուն նայելով, հապա*
*իր նախասահմանութեանը ու շնորհքին նայե-*
*լով, որ Քրիստոս Յիսուսով մեզի տրուեցաւ*
10 *յաւիտենական դարերէն առաջ. Բայց հիմա*
*յայտնուեցաւ մեր Փրկչին Յիսուս Քրիստոսի*
*երևնալովը. որ մահը խափանեց, և ի լոյս հանեց*
*կեանքը ու անմահութիւնը աւետարանին մի-*
11 *ջոցաւ։ Որուն ես քարոզիչ ու առաքեալ դրուե-*
12 *ցայ ու հեթանոսներուն վարդապետ։ Անոր*
*համար այս չարչարանքներն ալ կը կրեմ. բայց*
*ամօթ չեմ սեպեր, վասն զի գիտեմ թէ որո՛ւ*
*եմ հաւատացեր, և համոզուած եմ որ իմ*
*իրեն աւանդած բանս կրնայ պահել մինչև այն*
13 *օրը։ Ամուր բռնէ այն ողջամիտ խօսքերուն օ-*
*րինակը զորոնք ինծմէ լսեցիր, հաւատքով ու*
*սիրով՝ որ Քրիստոս Յիսուսով է։*
14 *Այն բարի աւանդը պահէ Հոգւոյն Սրբոյ*
15 *ձեռքով որ մեր մէջ բնակած է։ Զայս գիտես*
*որ ինծմէ երես դարձուցին այն ամէնը որոնք*

Ասիա էին, որոնցմէ են Փիգեղոս ու Հերմոգի-
16 նէս։ Տէրը ողորմութիւն տայ Ոնեսիփորոսի
տանը, վասն զի շատ անգամ զիս հանգստացուց
17 ու իմ շղթաս ամօթ չսեպեց. Հապա երբ Հռոմ
եկաւ, շատ ջանքով փնտռեց զիս ու գտաւ։
18 (Տէրը իրեն տայ որ այն օրը Տէրոջմէն ողորմու-
թիւն գտնէ.) և Եփեսոսի մէջ ալ որչափ սպա-
սաւորութիւն որ ըրաւ ինծի, դուն զանիկա շատ
աղէկ գիտես։

## ԳԼ. Բ

1 Պարձեալ կը յորդորէ զՏիմոթէոս հաստատուն ու համբերող ըլլալ, և Տէրոջը հաւատարիմ պաշտօնեայի մը պէս իր պարտականութիւնը կատարել՝ ճշմարտութիւնը ուղիղ բացատրելով, և պիղծ ու պարապ խօսքերէն հեռու կենալով։ 17 Հիմենոս ու Փիղէտոս։ 19 Աստուծոյ հիմը հաստատուն կը կենայ։ 22 Կը սորվեցնէ թէ ի՛նչ բանէ փախչելու է, և ի՛նչ բանի հետևելու է, և թէ Տէրոջը ծառան ի՛նչ վարք ունենալու է։

1 Արդ դուն, իմ որդեակս, զօրացիր այն շնորհ-
2 քովը որ Քրիստոս Յիսուսով է։ Եւ այն բա-
ները զորոնք ինծմէ լսեցիր շատ վկաներով՝ հա-
ւատարիմ մարդոց յանձնէ, որոնք կարող ըլլան
3 ուրիշներն ալ սորվեցնել։ Արդ դուն նե-
ղութիւններու համբերէ Յիսուս Քրիստոսի
4 բարի զինուորի մը պէս։ Զինուորեալ մը այս
կեանքին գործառնութիւններովը չզբաղիր, որ-
5 պէս զի զօրավարին հաճոյ ըլլայ։ Եւ եթէ մէկը
6 մրցի, չպսակուիր՝ եթէ ըստ օրինի չմրցի։ Աշ-
խատող երկրագործին պէտք է առաջ պտուղ-
7 ներէն վայելել։ Իմացիր ինչ որ կ՚ըսեմ. Տէրը
քեզի իմաստութիւն տայ ամէն բանի մէջ։
8 Միտքդ բեր Դաւիթի ցեղէն եղող Յիսուս
Քրիստոսը մեռելներէն յարութիւն առած, իմ
9 քարոզած աւետարանիս համեմատ. Որուն մէջ չա-
րագործի մը պէս կը չարչարուիմ մինչև անգամ
կապերով. բայց Աստուծոյ խօսքը կապուած չէ։
10 Ուստի ամէն բանի կը համբերեմ ընտրեալնե-

*րուն համար, որպէս զի անոնք ալ հասնին այն
փրկութեանը որ Քրիստոս Յիսուսով է յաւի-
11 տենական փառքով։ Այս խօսքը հաւատարիմ
է. վասն զի եթէ անոր հետ մեռանք, անոր հետ
12 պիտի ապրինք ալ. Եթէ համբերենք, անոր հետ
պիտի թագաւորենք ալ. եթէ զինք ուրանանք,
13 ինք ալ մեզ պիտի ուրանայ. Եթէ չհաւատանք,
ինք հաւատարիմ կը մնայ, իր անձը չկրնար ու-
14 րանալ։ Այս բաները անոնց միտքը ձգէ՝ Տէրոջը
առջև վկայութիւն դնելով, խօսքերու վրայ
վէճ չընել՝ որ բանի մը օգտակար չէ, հապա միայն
15 լսողներուն կործանումին համար է։ Ջանք ըրէ
քու անձդ ընտիր ցուցնել Աստուծոյ առջև,
այնպիսի բանուոր մը ըլլալով որ պիտի չամչնայ,
ճշմարտութեան խօսքը շիտակ բացատրելով։
16 Բայց պիղծ ու փուճ խօսքերէն մէկդի կեցիր,
քանզի անոնք աւելի յառաջ կ'երթան ամբա-
17 րըշտութեան մէջ. Եւ անոնց խօսքը քաղցկեղի
պէս կը ճարակէ. որոնց կարգէն են Հիմենոս ու
18 Փիղետոս. Որոնք ճշմարտութենէն մոլորեցան,
ու կ'ըսեն թէ մեռելներուն յարութիւնը արդէն
եղած է, և կը կործանեն մէկ քանիներուն հա-
19 ւատքը։ Բայց Աստուծոյ հիմը հաստատուն
կը կենայ, ու այս կնիքը ունի, թէ Տէրը կը
ճանչնայ զանոնք որ իրն են. և՝ Անիրաւութենէ
մէկդի թող կենայ այն ամէնը որ *Քրիստոսի
20 անունը կ'անուանէ։ Սակայն մեծ տան մը մէջ
ոչ թէ միայն ոսկիէ ու արծաթէ ամաններ կան,
հապա փայտէ ու հողէ ամաններ ալ կան. և ոմանք
պատուոյ համար են ու ոմանք անարգանքի հա-
21 մար։ Ուստի եթէ մէկը իր անձը այնպիսի բա-
ներէն մաքրէ, անիկա պատուական անօթ մը
պիտի ըլլայ, սրբուած ու իր Տէրոջը պիտանի,
ամէն բարի գործերու համար պատրաստուած։*

---

*Ոմանք, Տէրոջը

22 Երիտասարդական ցանկութիւններէն ալ փա-
խիր, ու գնա արդարութեան, հաւատքի, սիրոյ,
խաղաղութեան ետեւէ անոնց հետ որ Տէրոջը
23 անունը կը կանչեն մաքուր սրտով։ Բայց յիմարա-
կան ու անխմաստ վէճերէն մէկդի քաշուէ,
24 գիտնալով որ անոնցմէ կռիւներ կը ծնանին։ Ու
Տէրոջը ծառային պէտք չէ կռիւ ընել, հապա
հեզահոգի ըլլալ ամէնուն, սորվեցնող, ոխ
25 չպահող. Քաղցրութեամբ խրատել հակառակ
կեցողները, որ ըլլայ թէ Աստուած ապաշխա-
րութիւն տայ անոնց՝ ճշմարտութիւնը ճանչ-
26 նալու համար, Եւ Սատանայի որոգայթէն
զգաստանան, որմէ բռնուած են իր կամքին
ծառայելու։

## ԳԼ. Գ

1 կը ծանուցանէ գալու ժամանակներուն վրայով. 6 կը նկարագրէ ճշմարտութեան թշնամիները. 10 կ'առաջարկէ անոր՝ իր օրինակին հետեւիլ, 16 և կը գովէ սուրբ գիրքերը։

1 Եւ զայս գիտցիր որ վերջին օրերը չար ժամա-
2 նակներ պիտի գան. Վասն զի մարդիկ պիտի
ըլլան անձնասէր, արծաթասէր, ամբարտաւան,
հպարտ, հայհոյիչ, ծնողներու անհնազանդ,
3 ապերախտ, անսուրբ, Անգութ, անհաշտ,
բանսարկու, անժուժկալ, դաժանաբարոյ, բա-
4 րին չսիրող, Մատնիչ, յանդուգն, գոռոզ, ա-
5 ւելի հեշտասէր քան թէ աստուածասէր. Որոնք
աստուածպաշտութեան կերպարանքը ունին,
բայց անոր զօրութիւնը ուրացած են. և դուն
6 ասոնցմէ մէկդի կեցիր։ Վասն զի ասոնցմէ են
որ տուներէն ներս կը մտնեն, ու գերի կ'ընեն
մեղքով բեռնաւորուած տկարամիտ կիները
7 զանազան ցանկութիւններէ վարուած, Որ միշտ
կը սորվին, ու բնաւ ճշմարտութիւնը ճանչնա-
8 լու չեն կրնար հասնիլ։ Հապա ինչպէս Յանէս

ու Յամբրէս հակառակ կեցան Մովսէսի, նոյն-
պէս ասոնք ալ ճշմարտութեանը հակառակ
կը կենան. ապականած միտքով մարդիկ, հա-
9 ւատքի մէջ անպիտաններ են։ Բայց աւելի յա-
ռաջ պիտի չերթան, վասն զի ասոնց անմտու-
թիւնը ամէնուն յայտնի պիտի ըլլայ, ինչպէս
10 անոնցը եղաւ։ Իսկ դուն տեղեակ եղար իմ
վարդապետութեանս, վարմունքիս, դիտաւո-
րութեանս, հաւատքիս, երկայնմտութեանս,
11 սիրոյս, համբերութեանս, Հալածանքներուս,
չարչարանքներուս, ինչպէս ինծի եղան Անտիոքի
և Իկոնիոնի ու Լիւստրայի մէջ. ի՜նչպէս հա-
լածանքներու համբերեցի, ու ամէնէն ալ
12 ազատեց Տէրը։ Եւ ամէն անոնք որ կ՚ուզեն
աստուածպաշտութեամբ ապրիլ Քրիստոս Յի-
13 սուսով՝ հալածանք պիտի կրեն։ Բայց չար ու
խաբեբայ մարդիկ չարութեան մէջ պիտի յա-
14 ռաջանան՝ մոլորեցնելով ու մոլորելով։ Սակայն
դուն հաստատուն կեցիր այն բաներուն մէջ
զորոնք սորվեցար ու հաւատացիր, վասն զի
15 գիտես թէ որմէ՛ սորված ես. Նաեւ — ման-
կութենէդ ի վեր սուրբ գիրքերը գիտես, որոնք
կրնան իմաստուն ընել քեզ փրկութեան՝ Քրիս-
16 տոս Յիսուսի վրայ եղած հաւատքով։ *Բոլոր
Գիրքը Աստուծոյ շունչն է, և օգտակար" է
սորվեցնելու, յանդիմանելու, շիտկելու և ար-
17 դարութեան խրատելու համար, Որպէս զի Աս-
տուծոյ մարդը կատարեալ ըլլայ՝ ամէն բարի
գործերու պատրաստուած։

*Կամ, Բոլոր աստուածաշունչ Գիրքը օգտակար ալ

## ԳԼ. Դ

Պօղոս կը յորդորէ Տիմոթէոսը բոլոր ջանքով ու արթնութեամբ իր պաշտօնը կատարել. 6 կը յայտնէ անոր թէ իր մահը մօտ է. 9 կ'ուզէ որ անիկա շուտով իրեն գայ, ու իրեն հետ բերէ Մարկոսը և քանի մը բաներ. 14 կը պատուիրէ որ զգուշանայ դարբին Աղեքսանդրոսէ. 16 կը ծանուցանէ անոր՝ ինչ որ պատահեր էր իրեն՝ առաջին անգամ ատեանին ներկայանալուն, 19 և ապա կը վերջացնէ իր թուղթը։

1 Այս վկայութիւնը կը դնեմ Աստուծոյ առջև
և Յիսուս Քրիստոսի, որ պիտի դատէ կենդա-
նիները ու մեռեալները իր յայտնուելուն ու
2 թագաւորութեանը ատենը։ Խօսքը քարոզէ,
մտադրութեամբ գործէդ պարապէ, ատենին ու
ատենէ դուրս, յանդիմանէ, սաստէ, յորդորէ
ամենայն երկայնմտութեամբ ու վարդապետու-
3 թեամբ։ Վասն զի ժամանակ պիտի գայ որ
ողջամիտ վարդապետութիւնը պիտի չհամբե-
րեն, հապա իրենց լսելիքին եռքալը իրենց
ցանկութիւններուն համեմատ վարդապետներ
4 պիտի դիզեն իրենց. Եւ ճշմարտութենէն ա-
կանջնին պիտի դարձնեն, ու առասպելնե-
5 րու ետեւէ պիտի մոլորին։ Բայց դուն ամէն
բանի մէջ արթուն կեցիր, նեղութիւններու
համբերէ, աւետարանիչի գործ գործէ, քու
6 պաշտօնդ կատարէ։ Վասն զի ես արդէն զոհ
ըլլալու նուիրուած եմ, ու իմ մեկնելուս ա-
7 տենը հասեր է։ Բարի պատերազմը պատե-
րազմեցայ, ընթացքը կատարեցի, հաւատքը
8 պահեցի։ Ասկէ ետեւ կայ կը մնայ ինծի արդա-
րութեան պսակը, զոր Տէրը, արդար Դատա-
ւորը, պիտի հատուցանէ ինծի այն օրը. ու ոչ
թէ միայն ինծի, հապա այն ամէնուն ալ՝ որ
անոր յայտնուիլը սիրեցին։

9 Ջանք ըրէ շուտով ինծի գալ. (10) Վասն զի
Դեմաս զիս թողուց ու այս աշխարհը սիրեց, և
գնաց Թեսաղոնիկէ. Կրեսկէս գնաց Գաղատիա,
11 Տիտոս՝ Դաղմատիա. Միայն Ղուկաս ինծի հետ

է. Մարկոսը առնես՝ քեզի հետ բերես, վասն
զի ինծի օգտակար է սպասաւորութեան հա-
12 մար։ Եւ ես Տիւքիկոսը Եփեսոս ղրկեցի։
13 Այն վերարկուն՝ զոր Տրովադա թողուցի Կար-
պոսի քով, երբ գաս՝ բեր, գիրքերն ալ՝ մա-
14 նաւանդ մագաղաթները։ Դարբին Աղեքսանդ-
րոս շատ չարութիւն ըրաւ ինծի. Տէրը անոր
15 *հատուցանէ իր գործերուն համեմատ։ Դուն
ալ անկէ զգուշանաս, վասն զի մեր խօսքերուն
16 շատ դէմ կեցաւ։ Առաջին անգամ ատեանին
առջև պատասխան տալուս՝ իմ կողմանէս մէ՛կը
չկայնեցաւ ինծի հետ, հապա ամէնն ալ զիս
17 թողուցին. այս իրենց չսեպուի։ Բայց Տէրը
իմ քովս կայնեցաւ ու զիս զօրացուց, որպէս զի
քարոզութիւնը իմ միջոցովս լման ըլլայ, ու
բոլոր հեթանոսները լսեն. և ես առիւծին բեր-
18 նէն ազատեցայ։ Եւ Տէրը ամէն չար գործէ
պիտի ազատէ զիս, և ապահովութեամբ իր
երկնային թագաւորութեանը պիտի հասցնէ.
իրեն փառք յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։
19 Բարև տուր Պրիսկէի և Ակիւղասի, ու Ոնե-
20 սիփորոսի տանը։ Երաստոս Կորնթոսի մէջ
մնաց. և Տրոփիմոսը Մելիտոսի մէջ թողուցի
21 հիւանդացած։ Ջանք ըրէ ձմեռէն առաջ գալ։
Բարև կ՚ընեն քեզի Եւբուղոս ու Պուդէս և Լի-
22 նոս ու Կղօդիա և բոլոր եղբայրները։ Տէր Յի-
սուս Քրիստոս քու հոգիիդ հետ ըլլայ. շնորհքը
ձեզի հետ։ Ամէն։

*Ոմանք, պիտի հատուցանէ



# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՏԻՏՈՍ

---

## ԳԼՈՒԽ Ա.

*1 Առաքեալը կը ծանուցանէ թէ ի՛նչ բանի համար զանիկա Կրետէ թողուց, 6 թէ քարոզչութեան պաշտօնին ընտրուելու մարդիկը ի՛նչ վարմունքի տէր ըլլալու են։ 11 կը պատուիրէ չար վարդապետներուն բերանը պապանձեցնել. 12 և անոնց բնութիւնը կը ստորագրէ։*

1 Պօղոս, Աստուծոյ ծառայ և Յիսուս Քրիստոսի
առաքեալ, Աստուծոյ ընտրեալներուն հաւատ-
քին ու աստուածպաշտութեան հետ կից եղող
2 ճշմարտութեան գիտութեանը համեմատ, Յա-
ւիտենական կեանքի յուսովը, զոր ինք անսուտն
Աստուած խոստացաւ յաւիտենական դարերէն
3 առաջ, Բայց իր խօսքը իր ժամանակին յայտ-
նեց քարոզութիւնով, որ ինծի յանձնուեցաւ
4 մեր Փրկիչ Աստուծոյ հրամանովը, Տիտոսի իմ
հարազատ որդւոյս հասարակաց հաւատքովը՝
շնորհք *և խաղաղութիւն Հօր Աստուծմէն ու
մեր Փրկչէն, Տէր Յիսուս Քրիստոսէ։
5 Ասոր համար ես քեզ Կրետէ թողուցի, որ
ինչ պակաս բան որ կայ, շիտկես, ու ամէն մէկ
քաղաքի մէջ երէցներ կարգես, ինչպէս ես
6 քեզի պատուիրեցի. Եթէ մէկը անմեղադրելի
ըլլայ, մէկ կնոջ այր, հաւատացեալ զաւակ-
ներ ունենայ, որոնք անառակութեան համար
ամբաստանուած կամ անհնազանդ չըլլան։
7 Վասն զի եպիսկոպոսին պէտք է անմեղադրելի
ըլլալ Աստուծոյ տնտեսին պէս. ոչ յանդուգն,

---

*Ոմանք, ողորմութիւն և

ոչ բարկացող, ոչ գինեմոլ, ոչ զարնող, ոչ
8 անարգ շահախնդրութեան ետեւէ եղող, Հապա
հիւրասէր, բարեսէր, խոհեմ, արդար, սուրբ,
9 ժուժկալ, Հաստատ բռնելով վարդապետու-
թեան հաւատարիմ խօսքը, որպէս զի կարող
ըլլայ ողջամիտ վարդապետութիւնով յորդորել,
10 և հակառակ կեցողները յանդիմանել։ Քանզի
շատ են անհնազանդները, ունայնութիւն խօ-
սողները ու միտք խաբողները, մանաւանդ ա-
11 նոնք որ թլփատութենէն են. Զորոնք պէտք է
պապանձեցնել, որոնք ամբողջ տուներ կը կոր-
ծանեն, ու անպատեհ բաներ կը սորվեցնեն
12 անարգ շահախնդրութեան համար. Անոնցմէ
մէկը գրուեց, որ իրենց բուն մարգարէն էր,
Կրետացիները միշտ սուտղրոյց են, չար գազան-
13 ներ, դատարկապորտներ։ Այս վկայութիւնը
ճշմարիտ է. անոր համար սաստիկ յանդիմանէ
զանոնք, որպէս զի առողջանան հաւատքին մէջ.
14 Ու չնային Հրէական առասպելներուն և ճշմար-
տութենէ հեռացող մարդոց պատուէրներուն։
15 Ամէն բան մաքուր է մաքուրներուն, բայց պիղ-
ծերուն ու անհաւատներուն բա՛ն մը մաքուր
չէ, հապա անոնց միտքն ալ խղճմտանքն ալ
16 պղծուած են։ Կը խոստովանին թէ զԱստուած
կը ճանչնան, և իրենց գործերովը կ'ուրանան,
պիղծ ու անհնազանդ ըլլալովնին, և ամէն
բարի գործի անպիտան։

## ԳԼ. Բ

1 Պատուէրներ կու տայ Տիտոսի՝ անոր վարդապետութեանը և անոր վարքին վրայով. 9 կը խօսի ծառաներուն և ընդհանրապէս բոլոր քրիստոնեաներուն պարտականութեանց վրայով։

1 Բայց դուն խօսէ ինչ որ կը վայլէ ողջամիտ
2 վարդապետութեանը. Ծերերուն զգաստ ըլլալ,
ծանրաբարոյ, խոհեմ, ողջամիտ՝ հաւատքով,

3 սիրով, համբերութիւնով։ Նոյնպէս ալ պա-
ռաւներուն այնպիսի վարմունք ունենալ, ինչ-
պէս կը վայլէ սրբութեան. ոչ բանսարկու ըլ-
4 լալ, ոչ *գինեմոլ, հապա բարի խրատ տուող. Որ
խրատեն նորահասակ կիները՝ այրերնին սիրող,
5 զաւակներնին սիրող ըլլալ, Խոհեմ, ողջախոհ,
տնաշէն, բարեգործ, իրենց այրերուն հնա-
զանդ, որ չըլլայ թէ Աստուծոյ խօսքը հայ-
6 հոյուի։ Նոյնպէս ալ երիտասարդները յորդորէ
7 խոհեմ ըլլալ։ Ամէն կողմէ քու անձդ բարի
գործերու օրինակ ցուցնելով, վարդապետու-
թեան մէջ անեղծութիւն, պարկեշտութիւն,
8 Ողջամիտ ու անմեղադրելի խօսք, որպէս զի
հակառակ կեցողը ամչնայ, ու մեր վրայով գէշ
9 բան մը չունենայ ըսելու։ Ծառաներուն յորդորէ
իրենց տէրերուն հնազանդ ըլլալ, և ամէն բանի
10 մէջ հաճելի. ոչ հակառակախօսներ, Ոչ խորող-
ներ, հապա բոլորովին բարի հաւատարմութիւն
ցուցնեն, որպէս զի մեր Փրկիչ Աստուծոյ վար-
դապետութիւնը ամէն բանի մէջ զարդարեն։
11 Քանզի Աստուծոյ փրկարար շնորհքը բոլոր
12 մարդոց երևցաւ. Որ մեզ կը խրատէ՝ որ ամբա-
րըշտութիւնը ու աշխարհային ցանկութիւն-
ները ուրանանք, և զգաստութիւնով ու ար-
դարութիւնով և բարեպաշտութիւնով ապրինք
13 այս աշխարհքիս մէջ։ Ու սպասենք այն երջա-
նիկ յոյսին, և մեծ Աստուծոյ ու մեր Փրկիչ
14 Յիսուս Քրիստոսի փառքին յայտնուելուն. Որ
իր անձը մեզի համար տուաւ, որպէս զի մեզ
ամէն անօրէնութենէ ազատէ, ու մաքրէ իրեն
սեպհական ժողովուրդ մը՝ բարի գործերու
15 նախանձաւոր։ Այդ բաները խօսէ և յորդորէ
ու յանդիմանէ բոլորովին սաստելով. չըլլայ որ
մէկը քեզ անարգէ։

*Յուն. շատ գինիի ծառայ եղած

## ԳԼ. Գ

1 Դարձեալ պատուէրներ կու տայ Տիտոսի թէ՛ սորվեցնելու և թէ՛ չսորվեցնելու բաներուն համար. 10 կը խրատէ նաև յամառեալ հերետիկոսներէն ետ քաշուիլ. 12 և կը պատուիրէ որ իրեն գայ, նշանակելով անոր՝ թէ ե՛րբ և թէ ո՛ւր պիտի գտնէ զինք. ու այսպէս իր թուղթը կը վերջացնէ։

1 Անոնց միտքը ձգէ իշխանութիւններուն և պե֊
տութիւններուն հնազանդիլ ու հպատակ ըլլալ,
ու ամէն բարի գործերու պատրաստ գտնուիլ.
2 Մէկո՛ւն հայհոյութիւն չընել, կռուարար չըլ֊
լալ, հապա հեզահոգի, ամէն մարդոց բոլորովին
3 քաղցրութիւն ցուցնել։ Վասն զի մենք ալ
ատեն մը անմիտ էինք, անհնազանդ, մոլորեալ,
և զանազան ցանկութիւններու ու հեշտու֊
թիւններու կը ծառայէինք. չարութիւնով ու
նախանձով կը վարուէինք, ատելի էինք և մէկ֊
4 զմէկ կ'ատէինք։ Բայց երբ մեր Փրկիչ Աստու֊
ծոյն քաղցրութիւնը ու մարդասիրութիւնը
5 յայտնուեցաւ, Ոչ թէ արդարութեան գործե֊
րէն՝ զորոնք մենք ըրինք, հապա իր ողորմու֊
թեանը համեմատ մեզ փրկեց նորէն ծնանելու
աւազանին միջոցաւ ու Սուրբ Հոգիին նորոգե֊
6 լովը, Զոր առատօրէն թափեց մեր վրայ Յիսուս
7 Քրիստոս մեր Փրկչին ձեռքով, Որպէս զի անոր
շնորհքովը արդարացած՝ յաւիտենական կեանքի
8 յուսով ժառանգ ըլլանք։ Այս խօսքը հաւա֊
տարիմ է. և կ'ուզեմ որ ասոնք հաստատես,
որպէս զի Աստուծոյ հաւատացողները հոգ տա֊
նին բարի գործեր ընելու վրայ ըլլալ. ասոնք են
9 բարի ու մարդոց օգտակար բաները։ Բայց դուն
յիմարական վէճերէն ու ազգահամարներէն ու
հակառակութիւններէն և օրէնքի վրայով եղած
կռիւներէն մէկդի կեցիր, վասն զի անօգուտ են
10 ու սնոտի։ Հերձուածող մարդէ՝ առաջին ու
երկրորդ անգամ խրատելէ ետև ետ քաշուէ,
11 Գիտնալով որ այնպիսին խոտորած է, և մեղք
կը գործէ ինքզինք դատապարտելով։

12 Երբ Արտեման կամ Տիւքիկոսը քեզի ղրկեմ,
ջա՛նք ըրէ ինծի գալ Նիկոպոլիս, վասն զի
13 միտքս դրի ձմեռը հոն անցնել։ Զենաս օրինա-
կանը ու Ապողոսը փութով ճամբայ դիր, հոգ
14 տանելով որ անոնց բա՛ն մը չպակսի։ Եւ մերին-
ներն ալ թող սորվին բարի գործեր ընելու վրայ
ըլլալ հարկաւոր պարագաներու մէջ, որպէս զի
15 անպտուղ չըլլան։ Բարեւ կ՚ընեն քեզի ամէնն ալ
որ ինծի հետ են. բարեւ տուր անոնց որ մեզ
կը սիրեն հաւատքով. շնորհքը ձեր ամէնուն
հետ ըլլայ։ Ամէն։



## ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՓԻԼԻՄՈՆ

4 Պօղոս իր ուրախութիւնը կը յայտնէ՝ Փիլիմոնի հաւատքը ու սէրը լսած ըլլալով. 9 կը խնդրէ անկէ ներել Ոնեսիմոսի որ իր ծառան էր, ու դարձեալ սիրով ընդունիլ զանիկա։

1 Պօղոս, Յիսուս Քրիստոսի կապեալը, և Տիմո-
թէոս եղբայրը, Փիլիմոնի, մեր սիրելիին ու
2 գործակցին, Եւ Ափփիա սիրելիին, ու Արքիպպոս
մեր զինուորակցին, ու քու տանդ մէջի եկե-
3 ղեցիին. Շնորհք և խաղաղութիւն ձեզի Աս-
տուծմէ մեր Հօրմէն և Տէր Յիսուս Քրիստոսէ։
4 Կը գոհանամ միշտ իմ Աստուծմէս՝ քեզ
5 իմ աղօթքներուս մէջ յիշելով, Երբ կը լսեմ
քու սէրդ ու հաւատքդ՝ զոր ունիս Տէր Յիսուսի
6 վրայ և բոլոր սուրբերուն վրայ, Որպէս զի քու
հաւատքիդ հաղորդակցութիւնը պտղաբեր ըլ-

լայ՝ Քրիստոս Յիսուսով *ձեր վրայ եղած ամէն
7 բարութեանը ճանչցուելովը ։ Քանզի շատ ու-
րախութիւն և մխիթարութիւն ունինք քու
սիրոյդ վրայ, որ սուրբերուն սիրտերը քեզմով
հանգստացած են, եղբայր ։
8 Ասոր համար թէև շատ համարձակութիւն
ունիմ Քրիստոսով՝ վայելուչ եղածը քեզի հրա-
9 մայելու, Բայց յաւէտ սիրոյ համար կ՚աղաչեմ,
այնպիսի մէկը ըլլալով՝ ինչպէս եմ ես Պօղոս
ծերացած, ու հիմա Յիսուս Քրիստոսի համար
10 կապուած ալ ։ Կ՚աղաչեմ քեզի իմ որդւոյս
Ոնեսիմոսի համար, զոր իմ կապանքներուս մէջ
11 ծնայ, Որ ատեն մը անպիտան էր քեզի, բայց
12 հիմա քեզի ալ ինծի ալ պիտանի է ։ Զանիկա
ետ ղրկեցի ։ դուն ալ ընդունէ զանիկա, որ է
13 իմ աղիքս ։ Զոր կ՚ուզէի իմ քովս պահել, որ-
պէս զի քու տեղդ ինծի սպասաւորութիւն ընէ
14 աւետարանին կապանքներուն մէջ ։ Բայց ա-
ռանց քու կամքիդ չուզեցի բան մը ընել, որ-
պէս զի քու բարերարութիւնդ իբր թէ ստիպ-
15 մամբ եղած չըլլայ, հապա կամաւ ։ Քանզի
թերևս այս պատճառաւ անիկա քիչ մը ատեն
զատուեցաւ, որպէս զի զանիկա յաւիտեան ու-
16 նենաս, Ոչ թէ ալ ծառայի մը պէս, հապա
ծառայէ վեր, սիրելի եղբօր պէս ։ և մանաւանդ ինծի
այսպէս սիրելի է, ո՜րչափ աւելի պիտի ըլլայ քեզի՝
17 թէ՛ մարմինի կողմանէ ու թէ՛ Տէրոջը ։ Ուստի
եթէ զիս ընկեր հաղորդ կը սեպես, ընդունէ զա-
18 նիկա՝ որպէս թէ զիս ։ Եւ եթէ քեզի անիրա-
ւութիւն մը ըրած է կամ պարտք մը ունի,
19 զայն իմ հաշիւիս անցուր ։ Ես Պօղոս իմ
ձեռքովս գրեցի, ես կը վճարեմ ։ որ չըսեմ
քեզի թէ դուն ալ քու անձդ ինծի պարտա-
20 կան ես ։ Այո, եղբայր, թող քեզմէ ունենամ

*Ոմանք, մեր

այս օգուտը Տէրոջմով. հանգչեցուր իմ աղիքս
21 *Տէրոջմով։ Քու հնազանդութեանդ վստահա-
նալով քեզի գրեցի, քանզի գիտեմ որ ըսա-
ծէս ալ աւելի պիտի ընես։
22 Անկէ զատ ինծի բնակարան մըն ալ պատ-
րաստէ, վասն զի կը յուսամ թէ ձեր աղօթք-
23 ներուն միջոցաւ ձեզի պիտի շնորհուիմ։ Բարեւ
կ'ընէ քեզի Եպափրաս, իմ գերութեան ըն-
24 կերս Քրիստոս Յիսուսով. Նաեւ Մարկոս, Արիս-
տարքոս, Դեմաս, Ղուկաս, իմ գործակիցներս։
25 Մեր Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը ձեր հո-
գիին հետ ըլլայ։ Ամէն։



ԹՈՒՂԹ

# [ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ]

## ԱՌ ԵԲՐԱՅԵՑԻՍ

## ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը կը ցուցնէ թէ Քրիստոս այս վերջին ատեններս հօրմէն մեզի գալով՝
4 հրեշտակներէն գերագոյն եղաւ՝ թէ՛ անձամբ եւ թէ՛ պաշտօնով։

1 Շատ մասերով ու շատ կերպերով առաջուընէ
խօսելով Աստուած հայրերուն հետ մարգարէ-
2 ներով, Այս վերջին օրերս իր Որդիով խօսեցաւ
մեզի հետ, զոր ամէն բանի ժառանգ դրաւ,
3 որով աշխարհն ալ ստեղծեց. Որ իր փառաց
լոյսն է եւ իր էութեան բուն պատկերը. որ իր
զօրութեան խօսքովը ամէն բան կը բռնէ, իր
անձով մեր մեղքերը սրբելով՝ բարձրերը, Ա-
4 ստուծոյ մեծութեան աջ կողմը, նստաւ։ Եւ այն-
չափ աւելի եղաւ հրեշտակներէն, որչափ ա-

---

*Ոմանք, Քրիստոսով

5 Նոյնչափ աւելի աղէկ անուն ժառանգեց։ Վասն
զի հրեշտակներէն որո՞ւ ըսաւ երբէք, Դուն
իմ Որդիս ես, ես այսօր քեզ ծնայ. և դարձեալ՝
Ես անոր Հայր պիտի ըլլամ, ու անիկա ինծի
6 Որդի պիտի ըլլայ. Եւ դարձեալ՝ երբ Անդրա-
նիկը աշխարհ կը մտցնէ՝ կ'ըսէ, Աստուծոյ բո-
լոր հրեշտակներն ալ անոր երկրպագութիւն
7 թող ընեն։ Եւ հրեշտակներուն վրայով կ'ըսէ,
Որ իր հրեշտակները հոգիներ կ'ընէ, ու իր
8 պաշտօնեաները՝ կրակի բոց, Սակայն Որդիին
կ'ըսէ, Քու աթոռդ, ով Աստուած, յաւիտեանս
յաւիտենից է. քու թագաւորութեան գաւա-
9 զանդ ուղղութեան գաւազան է. Արդարու-
թիւնը սիրեցիր ու անօրէնութիւնը ատեցիր.
անոր համար, ով Աստուած, քու Աստուածդ
ուրախութեան իւղով օծեց քեզ քու ընկեր-
10 ներէդ աւելի։ Եւ՝ Դուն, ով Տէր, սկիզբէն
երկրի հիմերը դրիր, ու երկինք քու ձեռքե-
11 րուդ գործն է. Անոնք պիտի կորսուին, բայց
դուն կը կենաս ու կը մնաս. ու ամէնը լաթի պէս
12 պիտի մաշին, Ու վերարկուի պէս պիտի գալա-
րես զանոնք, և պիտի փոխուին. բայց դուն
նոյն ինքն ես, ու քու տարիներդ պիտի չպակ-
13 սին։ Եւ հրեշտակներէն որո՞ւ ըսաւ երբէք,
Իմ աջ կողմս նստէ, մինչև քու թշնամիներդ
14 ոտքերուդ պատուանդան դնեմ։ Չէ՞ որ անոնք
ամէնը սպասաւորող հոգիներ են, որոնք սպա-
սաւորութեան կը ղրկուին անոնց համար՝ որ
փրկութիւն պիտի ժառանգեն։

## ԳԼ. Բ

1 կը սորվեցնէ թէ պարտինք հնազանդ ըլլալ Քրիստոս Յիսուսի, 5 վասն զի մեր բնութիւնը իր վրայ առնելու խոնարհեցաւ, 14 ճիշդ ինչպէս հարկաւոր էր։

1 Անոր համար պէտք է մեզի ա՛լ աւելի ուշադրու-
թիւն տալ մեր լսած բաներուն, որ չըլլայ թէ

2 երբէք պակսինք ։ Վասն զի եթէ այն խօսքը որ
հրեշտակներուն ձեռքով զրուցուեցաւ, հաս-
տատուն եղաւ, և ամէն յանցաւորութիւն ու
անհնազանդութիւն արդար հատուցում առաւ,
3 Հապա մենք ինչպէս պիտի ազատինք՝ եթէ ան-
հոգ ըլլանք այնպիսի մեծ փրկութենէ մը, որ
խօսելուն սկիզբը Տէրոջմէն առաւ, ու լսողնե-
4 րուն ձեռքով մեզի հաստատուեցաւ. Աստուած
ալ վկայեց նշաններով ու հրաշքներով և զանա-
զան զօրութիւններով ու Սուրբ Հոգիին պար-
գեներովը, ինչպէս ինք կամեցաւ ։
5 Վասն զի ոչ թէ հրեշտակներուն հնազան-
դեցուց այն գալու աշխարհը, որուն վրայով
6 մենք կը խօսինք. Հապա մէկը տեղ մը վկայեց
ու ըսաւ, Մարդը ինչ է՝ որ զանիկա կը յիշես,
կամ մարդու որդին՝ որ անոր այցելութիւն կ՚ը-
7 նես. Քիչ մը վար ըրիր զանիկա հրեշտակնե-
րէն. փառքով ու պատուով պսակեցիր զանիկա,
և քու ձեռքերուդ գործերուն վրայ կեցուցիր
8 զանիկա. Ամէն բան անոր ոտքերուն տակ հնա-
զանդեցուցիր. ուստի ամէնը որ անոր հնազան-
դեցուց, անոր չհնազանդած բան մը չձգեց.
բայց հիմա դեռ չենք տեսներ ամէնը անոր
9 հնազանդած. Սակայն Յիսուսը փառքով ու
պատուով պսակուած կը տեսնենք՝ որ հրեշտակ-
ներէն քիչ մը վար եղած էր մահուան չարչա-
րանքին համար, որպէս զի Աստուծոյ շնորհքովը
10 ամէնուն համար մահ ճաշակէ ։ Որովհետև
կը վայլէր Անոր, (որու համար ամէնը, և անով
ամէն բաները եղած են,) շատ որդիներ փառքին
մէջ մտցնելու ատենը՝ անոնց փրկութեան
Առաջնորդը չարչարանքով կատարել ։
11 Վասն զի ան որ կը սրբէ ու ան որ կը սրբուի,
ամէնն ալ մէկէ են. անոր համար ինք ամօթ
12 չսեպեր եղբայր կոչել զանոնք՝ ըսելով, Քու

*անունդ եղբայրներուս պիտի պատմեմ, ժո-*
13 *ղովքին մէջ քեզ պիտի գովեմ։ Եւ դարձեալ՝*
*Ես անոր պիտի յուսամ. ու դարձեալ՝ Ահա ես*
*ու այն զաւակները զորոնք Աստուած ինծի*
14 *տուաւ։ Ուստի որովհետեւ զաւակները մարմի-*
*նին ու արիւնին հաղորդ եղան, ինք ալ նմանա-*
*պէս անոնց բաժանորդ եղաւ, որպէս զի իր*
*մահովը փճացնէ զանիկա որ մահուան իշխա-*
15 *նութիւնը ունէր, այսինքն է Սատանան. Եւ*
*ազատէ զանոնք որ մահուան վախովը միշտ*
16 *ծառայութեան մէջ կ'ապրէին։ Քանզի բնաւ*
*հրեշտակներուն ձեռք չբռներ, հապա Աբ-*
17 *րահամի սերունդին ձեռք կը բռնէ։ Անոր*
*համար պէտք էր անոր բոլորովին եղբայրնե-*
*րուն նման ըլլալ, որպէս զի ինք ողորմած ըլլայ*
*ու հաւատարիմ քահանայապետ՝ Աստուծոյ*
*կողմանէ, ժողովուրդին մեղքերը քաւելու*
18 *համար։ Քանզի ինչ բանով որ ինք չարչարուե-*
*ցաւ փորձութիւն կրելով, կրնայ փորձանա-*
*ւորներուն ալ օգնական ըլլալ։*

## ԳԼ. Գ

*1 Քրիստոս Մովսէսէ աւելի փառքի արժանաւոր է. 7 ուստի եթէ մենք իրեն չհաւատանք՝ աւելի պատժի արժանի պիտի ըլլանք, քան թէ խստասիրտ Իսրայէլացիները։*

1 *Ուստի, սուրբ եղբայրներ, երկնային կոչումին*
*մասնակիցներ, նայեցէք մեր դաւանութեանը*
*Առաքեալին ու Քահանայապետին, Քրիստոս*
2 *Յիսուսի. Որ հաւատարիմ է անոր՝ որ զինք*
*դրաւ, ինչպէս Մովսէս ալ՝ անոր բոլոր տանը*
3 *մէջ։ Վասն զի ինք Մովսէսէ այնչափ աւելի փառքի*
*արժանացաւ, որչափ աւելի պատիւ կ'ունենայ*
4 *տանը շինողը քան թէ տունը։ Քանզի ամէն տուն*
*մէկէ մը շինուի. բայց ան որ ամէն բաները*
5 *ըրաւ՝ Աստուած է։ Եւ յիրաւի Մովսէս անոր*
*բոլոր տանը մէջ հաւատարիմ էր ծառայի մը*

պէս՝ զրուցուելու բաներուն վկայ ըլլալու հա-
6 մար. Բայց Քրիստոս որդիի մը պէս իր տանը
վրայ, որուն տունը մենք ենք, միայն թէ այն
համարձակութիւնը և յոյսին պարծանքը մինչև
վերջը հաստատ բռնենք։
7 Ուստի ինչպէս կ'ըսէ Հոգին Սուրբ, Այսօր
8 եթէ անոր ձայնին պիտի լսէք, Ձեր սրտերը
մի խստացնէք բարկացնելու ատենին պէս ա-
9 նապատին մէջ փորձութեան օրը, Ուր ձեր
հայրերը զիս փորձեցին, քննեցին զիս, [illegible]
10 քառասուն տարի իմ գործերս տեսան։ Անոր
համար զզուեցայ այն ազգէն ու ըսի, Միշտ
մոլորած են սրտովնին, և իմ ճամբաներս չճանչ-
11 ցան անոնք. Ուստի երդում ըրի իմ բարկու-
թեանս մէջ թէ Իմ հանգիստս պիտի չմտնեն։
12 Նայեցէք, եղբայրներ, չըլլայ որ ձեզմէ մէկուն
ներսիդին անհաւատութեան չար սիրտ ըլլայ՝
13 ապստամբ ըլլալու կենդանի Աստուծմէն. Հապա
ամէն օր մէկզմէկ յորդորեցէք, քանի որ Այսօր
կ'ըսուի, որ չըլլայ թէ ձեզմէ մէկը խստանայ
14 մեղքին խաբէութիւնովը։ Քանզի մենք Քրիս-
տոսի մասնակից եղած ենք, միայն թէ այն
հաստատութեան սկիզբը մինչև վերջը պինդ
15 բռնենք. Քանի որ կ'ըսուի, Այսօր եթէ անոր
ձայնին պիտի լսէք, ձեր սրտերը մի խստացնէք
16 բարկացնելու ատենին պէս։ Քանզի *ոմանք
լսեցին ու բարկացուցին, բայց ոչ թէ" ամէնը
որ Եգիպտոսէ ելած էին Մովսէսի ձեռքով։
17 Որոնցմէ՞ զզուեցաւ այն քառասուն տարին.
չէ՞ որ մեղանչողներէն, որոնց ոսկորները ա-
18 նապատին մէջ ինկան։ Եւ որո՞նց համար երդում
ըրաւ իր հանգիստը չմտնել, եթէ ոչ՝ անհա-
19 ւատներուն համար։ Եւ կը տեսնենք որ չկրցան
մտնել իրենց անհաւատութեանը համար։

*Կամ, որո՞նք լսեցին ու բարկացուցին. չէ՞ որ

## ԳԼ. Դ

1 Քրիստոնեաները հաւատքով ձեռք պիտի բերեն իրենց հանգիստը: 12 Աստուծոյ խօսքին ազդեցութիւնը: 14 Որովհետև մենք մեծ քահանայապետ ունինք Յիսուսը, Աստուծոյ Որդին, որ մեր տկարութիւններուն հաղորդ եղաւ, բայց առանց մեղքի, 16 կարող ենք և պարտիմք անոր միջոցով համարձակօրէն երթալ շնորհաց աթոռին առջև:

1 Ուրեմն ա՛լ վախնանք, որ չըլլայ թէ անոր
հանգիստը մտնելու խոստմունքէն, որ դեռ մնա-
2 ցեր է, ձեզմէ մէկը զրկուած գտնուի: Վասն զի
մենք ալ անոնց պէս աւետիս առած ենք. բայց
անոնց շահ մը չըրաւ այն խօսքը լսելը, քանզի
հաւատքով խառնուած չէր լսողներուն մէջ:
3 Իսկ մենք որ հաւատացինք, հանգիստը կը մըտ-
նենք. ինչպէս ըսաւ, Ուստի երդում ըրի իմ
բարկութեանս մէջ թէ Իմ հանգիստս պիտի
չմտնեն. թէև իր գործերը աշխարհի սկիզբէն
4 եղած էին: Վասն զի գիրը այսպէս կ'ըսէ տեղ մը
եօթներորդ օրուան համար, Եւ Աստուած եօթ-
ներորդ օրը հանգչեցաւ իր բոլոր գործերէն.
5 Ու հոս նորէն կ'ըսէ թէ Իմ հանգիստս պիտի
6 չմտնեն: Ուստի որովհետև ոմանց կը մնայ հոն
մտնել, և անոնք որ առաջուընէ աւետիսը առած
7 էին, անհաւատութեան համար չմտան, Նորէն
օր մը կը սահմանէ՝ ու կ'ըսէ Այսօր Դաւիթի
բերնով այնքան ժամանակէ ետև, ինչպէս
ըսուեցաւ, Այսօր եթէ անոր ձայնին պիտի
8 լսէք, ձեր սրտերը մի խստացնէք: Վասն զի
եթէ Յեսու հանգչեցուցած ըլլար զանոնք, ալ
անկէ ետքը ուրիշ օրուան համար չէր գրուեր:
9 Ուրեմն Աստուծոյ ժողովուրդին դեռ հանգիստ մը
10 կը մնայ: Վասն զի ան որ անոր հանգիստը մտաւ,
ալ հանգչեցաւ իր գործերէն, ինչպէս Աստուած
11 ալ իրեններէն: Ուրեմն ջանանք այն հանգիստը
մտնել, որ չըլլայ թէ մէկը նոյն անհաւատու-
12 թեան օրինակին պէս իյնայ: Վասն զի Աս-
տուծոյ խօսքը կենդանի է ու զօրեղ, և ամէն

երկսայրի սուրէ կտրուկ , որ կը թափանցէ
մինչև շունչը ու ոգին և յօդուածները ու ծուծը
բաժնելու , և կը քննէ սրտին խորհուրդները
13 ու մտածմունքները ․ Եւ չկայ արարած մը անոր
դիմաց չերևցած , հապա ամէն բան բաց ու
յայտնի է անոր աչքերուն առջև , որու պիտի տրուի
մեր հաշիւը ։
14 Արդ մենք որ մեծ Քահանայապետ մը ու-
նինք երկինքը անցած , Յիսուսը , Աստուծոյ Որ-
15 դին , ամուր բռնենք մեր դաւանութիւնը ։ Քանզի
ոչ թէ այնպիսի քահանայապետ մը ունինք՝ որ
կարող չըլլայ մեր տկարութիւններուն կարեկից
ըլլալ , հապա ինք ամէն կերպով փորձը առած է
16 մեզի նման , բայց առանց մեղքի ։ Ուստի ա՛լ հա-
մարձակութիւնով մօտենանք շնորհաց աթոռին
առջև , որպէս զի ողորմութիւն ընդունինք ու
շնորհք գտնենք պէտք եղած ատեն մեզի օգնելու ։

## ԳԼ․ Ե

1 Մեր փրկչին քահանայական իշխանութիւնը և պատիւը ։ 11 Առաքեալը կը յանդիմանէ այս բանին գիտութեանը վրայով անհոգ եղողները ։

1 Վասն զի ամէն քահանայապետ մարդոց մէջէն
առնուած՝ մարդոց համար կը կենայ Աստուծոյ
կողմը , որպէս զի պատարագներ ու զոհեր մա-
2 տուցանէ մեղքերու համար ․ Եւ կարող է կա-
րեկից ըլլալ անոնց՝ որ տգէտ ու մոլորեալ են ,
վասն զի ինք ալ տկարութիւնով պաշարուած է ․
3 Եւ այս պատճառաւ պարտաւոր է ինչպէս ժո-
ղովուրդին համար՝ նոյնպէս ալ իր անձին հա-
4 մար մեղքի պատարագ մատուցանել ։ Եւ ոչ թէ
մէկը ինքիրմէ այս պատիւը կ'առնէ , հապա ան՝
որ Աստուծմէ կանչուած է , ինչպէս Ահարոն ։
5 Նոյնպէս ալ Քրիստոս ոչ թէ իր անձը մեծարեց
քահանայապետ ըլլալու , հապա անիկա՝ որ
զրուցեց անոր թէ Դուն իմ Որդիս ես , ես

6 այսօր քեզ ծնայ. Ինչպէս ուրիշ տեղ մըն ալ
կ'ըսէ, Դուն յաւիտեան քահանայ ես Մելքի-
7 սեդեկի կարգին պէս: Որ իր մարմնին օրերը
սաստիկ գոչումով ու արցունքով աղօթք և ա-
ղաչանք մատուց անոր որ կարող էր զինք
մահուանէ ազատել, ու լսուեցաւ իր *բարե-
8 պաշտութեանը պատճառաւ. Թէպէտ ինք
Որդի է, բայց իր չարչարանքներէն հնազանդու-
9 թիւն սորվեցաւ. Ու երբ կատարուեցաւ, բո-
լոր իրեն հնազանդողներուն յաւիտենական
10 փրկութեան պատճառ եղաւ. Ու Աստուծմէ
կոչուեցաւ Քահանայապետ Մելքիսեդեկի կար-
11 գին պէս: Որուն վրայով շատ ըսելիք ունինք,
որ դժուարին ալ է մեկնել, վասն զի ձեր լսե-
12 լիքները բթացած են. Վասն զի թէպէտ պէտք
էր ձեզի ժամանակին նայելով սորվեցնող ըլլալ,
բայց նորէն պէտք է ձեզի սորվիլ թէ ինչ են
Աստուծոյ պատգամներուն առաջին սկզբունք-
ները. ու դուք կաթի կարօտ եղաք՝ և ոչ թէ
13 հաստատուն կերակուրի: Քանզի այն ամէնը
որ կաթնկեր է՝ արդարութեան խօսքին ան-
14 հմուտ է, որովհետև տղայ է: Բայց հաստա-
տուն կերակուրը կատարեալներուն է, որոնց
զգայարանքները սովորութեամբ կրթուած են
բարին ու չարը զանազանել:

## ԳԼ. Զ

1 Կը յորդորէ որ հաւատքէն չիյնան, 11 հապա հաստատուն 12 և ջանացող ըլլան, ու համբերութեամբ Աստուծոյ ապաւինին, 13 վասն զի Աստուած հաստատուն է իր խոստումներուն մէջ:

1 Ուստի Քրիստոսի վրայով առաջին սորվելիք-
ները ձգելով՝ կատարեալին դանք, առանց նո-
րէն հիմ ձգելու մեռած գործերէն ապաշխա-
րելու, ու առ Աստուած հաւատք ունենալու,

*Կամ, երկիւղէն ազատուելով

2 Եւ մկրտութիւններուն վարդապետութեանը,
ու ձեռք դնելուն, և մեռելներուն յարու-
3 թեանը, ու յաւիտենական դատաստանին։ Եւ
զայս պիտի ընենք՝ եթէ Աստուած հրաման տայ։
4 Վասն զի անհնար է մէկ անգամ լուսաւորուած-
ներուն, որոնք երկնաւոր պարգևին համը առին,
5 ու Հոգւոյն Սրբոյ հաղորդ եղան, Եւ Աստու-
ծոյ բարի խօսքին ու գալու աշխարհին զօրու-
6 թիւններուն համը առին, Եթէ իյնան՝ նորէն
ապաշխարութիւնով նորոգուիլ. որովհետև
կրկին Աստուծոյ Որդին խաչը կը հանեն իրենց
7 անձին, ու կը խայտառակեն։ Վասն զի այն
երկիրը որ իր վրայ շատ անգամ եկած անձրևը
կը խմէ, և արդիւնք կը բերէ պիտանի անոնց՝
որոնց համար կը մշակուի, Աստուծմէ օրհնու-
8 թիւն կ'ընդունի. Բայց այն որ փուշեր ու տա-
տասկներ կը բերէ՝ անպիտան է ու անէծքի մօտ,
9 և անոր վերջը այրուիլ է։ Իսկ մենք, սիրելի-
ներ, ձեր վրայով լաւագոյն և փրկութեան վե-
րաբերեալ յոյսեր ունինք, թէև այսպէս կը խօ-
10 սինք։ Քանզի Աստուած անիրաւ չէ, որ ձեր
գործը մոռնայ, ու այն սէրը զոր իր անուանը
համար ցուցուցիք, որ սուրբերուն ծառայեցիք
ու կը ծառայէք։
11 Բայց մենք կը բաղձանք որ ձեզմէ ամէն մէկը
նոյն ջանքը ցուցնէ յոյսին հաստատուելուն
12 մինչև վերջը. Որպէս զի դուք չհեղգանաք,
հապա նմանող ըլլաք անոնց որ հաւատքով ու
համբերութիւնով խոստմունքները ժառանգե-
13 ցին։ Վասն զի երբ Աստուած Աբրահամի
խոստմունք ըրաւ, որովհետև իրմէ մեծը չկար՝
14 որ անոր վրայ երդում ընէր, Իր անձին վրայ
երդում ըրաւ ու ըսաւ, Այո, օրհնելով պիտի
օրհնեմ քեզ, ու շատցնելով պիտի շատցնեմ
15 քեզ։ Եւ այսպէս համբերելով խոստմունքին

16 հաստատ։ Քանզի մարդիկ իրենցմէ մեծին վրայ
երդում կ՚ընեն, ու անոնց բոլոր հակառակու-
17 թեանը հաստատ վճիռ տուողը երդումն է։ Որով
Աստուած իր խորհուրդին անփոփոխ ըլլալը
ա՛լ աւելի ցուցնել ուզելով խոստմունքին ժա-
18 ռանգաւորներուն, երդումը մէջ ձգեց. Որպէս
զի երկու անփոփոխելի բաներով, որոնցմով
անկարելի է Աստուծոյ սուտ զրուցել, հաս-
տատուն մխիթարութիւն ունենանք մենք, որ
ապաւինեցանք մեր առջև դրուած յոյսը ամուր
19 բռնելու. Զոր ունինք իբրև հաստատ ու անշարժ
խարիսխ մը մեր անձին, որ վարագուրին ներսի
20 կողմն ալ կը մտնէ. Ուր Յիսուս իբրև Առաջնորդ
մտաւ մեզի համար՝ յաւիտենական Քահանայա-
պետ ըլլալով Մելքիսեդեկի կարգին պէս։

## ԳԼ. Է

1 Առաքեալը կը ցուցնէ թէ Յիսուս Քրիստոս Քահանայապետ է Մելքիսեդեկի կարգին պէս, 11 և այս պատճառաւ խիստ գերազանց է Ահարոնի կարգէն եղող քահանաներէն։

1 Քանզի այս Մելքիսեդեկը Սաղէմի թագաւորն
էր, Բարձրեալ Աստուծոյ քահանան, որ Աբ-
րահամը դիմաւորեց՝ երբ անիկա թագաւորնե-
րուն կոտորածէն կը դառնար, ու օրհնեց զա-
2 նիկա. Որուն Աբրահամ ալ տասանորդ տուաւ
բոլոր բաներէն. որ նախ Արդարութեան թա-
գաւոր կը թարգմանուի, ետքը Սաղէմի թագա-
3 ւոր՝ որ է Խաղաղութեան թագաւոր. Առանց
հօր, առանց մօր, ազգահամար չունեցող, որուն
ոչ օրերուն սկիզբը կայ, ոչ ալ կեանքին վերջը.
և Աստուծոյ Որդւոյն նման ըլլալով, կը կենայ
ու կը մնայ միշտ քահանայ։
4 Արդ նայեցէք թէ ո՛րչափ մեծ մէկն էր ա-
սիկա, որուն Աբրահամ նահապետն ալ տասա-
5 նորդ տուաւ աւարէն։ Եւ Ղևիի որդիներէն

եղողները, որոնք քահանայութիւն կ՚առնեն,
պատուէր ունին որ ժողովուրդէն տասանորդ
առնեն օրէնքին համեմատ, այսինքն իրենց եղ-
բայրներէն. թէպէտեւ անոնք Աբրահամի ե-
6 րանքէն ելեր են. Բայց անիկա, որուն ազգա-
համարը անոնցմէ չէր, Աբրահամէ տասանորդ
առաւ, ու օրհնեց զանիկա՝ որ խոստումները
7 առած էր։ Սակայն ասիկա անհակառակելի
բան մըն է, որ պզտիկը մեծէն կ՚օրհնուի։
8 Եւ հոս մահկանացու մարդիկ տասանորդ
կ՚առնեն, բայց հոն անիկա կ՚առնէ, որուն համար
9 վկայուած է թէ կենդանի է։ Եւ կրնամ ըսել
թէ Ղեւի ալ, որ տասանորդ կ՚առնէ, Աբրա-
10 համի ձեռքով տասանորդ տուաւ. Վասն զի
տակաւին իր հօրը երանքին էր, երբ Մելքիսե-
դեկ զանիկա դիմաւորեց։
11 Արդ եթէ կատարելութիւնը Ղեւտացւոց
քահանայութեան ձեռքով ըլլար, (որովհետեւ
ժողովուրդը անոր ատենը օրէնքին տակ դրուե-
ցաւ,) ալ ի՞նչ պէտք էր որ Մելքիսեդեկի կար-
գին պէս ուրիշ քահանայ մը ելլէ, ու չըսուի
12 Ահարոնի կարգին պէս։ Արդ քահանայու-
թիւնը փոխուելուն պէս՝ հարկ էր որ օրէն-
13 քին ալ փոփոխութիւն ըլլար։ Եւ իրաւ եղաւ,
վասն զի ան՝ որուն համար այսպէս կ՚ըսուի, ու-
րիշ ցեղի հաղորդութիւն ունեցաւ, որմէ բնաւ
14 մէկը սեղանին չմօտեցաւ. Քանզի յայտնի է թէ
Յուդայի ցեղէն յառաջ եկաւ մեր Տէրը, որ ցե-
ղին վրայով Մովսէս բան մը չգրուեց քահա-
15 նայութեան համար։ Ու ալ աւելի յայտնի է որ
փոխուեցաւ, քանի որ Մելքիսեդեկի նմանութիւ-
16 նովը ուրիշ քահանայ մը կ՚ելլէ, Որ ոչ թէ
մարմնաւոր պատուէրի օրէնքին պէս եղաւ,
հապա անվախճան կեանքին զօրութեանը պէս։
17 Վասն զի կը վկայէ թէ Դուն յաւիտեան քա-

18 համար ես Մելքիսեդեկի կարգին պէս ։ Քանզի
առաջին պատուէրը կը խափանուի իր տկարու-
19 թեանը ու անշահութեանը համար, (Վասն զի
օրէնքը բա՛ն մը կատարեալ չըրաւ,) և անոր տեղ
կը մտնէ լաւագոյն յոյս մը՝ որով Աստուծոյ
կը մօտենանք ։
20 Եւ որքան որ Յիսուս ոչ թէ առանց երդումի
քահանայ եղաւ, (վասն զի անոնք առանց երդումի
21 քահանայ եղած են. Բայց ասիկա երդումով՝
անոր ձեռքով որ իրեն ըսաւ, Տէրը երդում
ըրաւ ու պիտի չզղջայ, Դուն յաւիտեան քա-
22 հանայ ես Մելքիսեդեկի կարգին պէս,) Այն-
քան աւելի աղէկ ուխտի մը երաշխաւոր եղաւ
Յիսուս ։
23 Ու անոնք շատ քահանաներ եղած են՝ իրենց
միշտ մնալուն մահը արգելք ըլլալուն համար.
24 Բայց ասիկա յաւիտեան կենալուն համար ան-
25 անցանելի ունի քահանայութիւնը. Ուստի բո-
լորովին կարող ալ է ազատելու զանոնք որ
իրմով Աստուծոյ կու գան. որովհետև ինք միշտ
կենդանի է անոնց համար բարեխօս ըլլալու ։
26 Վասն զի մեզի էր այսպիսի քահանայապետ
մը կը վայլէր, սուրբ, անմեղ, անարատ, մե-
ղաւորներէն զատուած ու երկինքէն վեր բարձ-
27 րացած. Որու ամէն օր հարկ չէ ինչպէս ուրիշ
քահանայապետներուն՝ առաջ իր մեղքերուն
համար պատարագ մատուցանել, ու ետքը ժո-
ղովուրդին մեղքերուն համար. վասն զի ինք մէկ
անգամ ըրաւ ասիկա՝ իր անձը պատարագ մա-
28 տուցանելով ։ Վասն զի օրէնքը տկարութիւ-
նով պաշարուած մարդիկը քահանայապետ
կը կարգէ, բայց երդումին խօսքը, որ օրէնքէն
ետև էր, Որդին՝ որ յաւիտեան կատարեալ է ։

## ԳԼ. Ը

*1 Քրիստոսի յաւիտենական քահանայութեամբ խափանուած է Ղեւտական քահանայութիւնը. 7 Նմանապէս Նահապետներուն հետ եղած ժամանակաւոր ուխտը խափանուած է աւետարանին յաւիտենական ուխտովը։*

1 Եւ գրուցած խօսքերուս բովանդակութիւնը
այս է. այնպիսի քահանայապետ մը ունինք
մենք՝ որ երկինքը Աստուծոյ մեծութեանը աթո-
2 ռին աջ կողմը նստաւ. Սրբարանին պաշտօնեայ,
ու ճշմարիտ խորանին՝ զոր Տէրը կանգնեց և
3 ոչ թէ մարդ։ Քանզի ամէն քահանայապետ
պատարագներ ու զոհեր մատուցանելու համար
որոշուած է. ուստի հարկ է որ ասիկա ալ բան
4 մը ունենայ մատուցանելու։ Որ եթէ երկրի
վրայ ըլլար, քահանայ անգամ պիտի չըլլար,
վասն զի կան քահանաներ՝ որոնք պատարագ-
5 ներ կը մատուցանեն օրէնքին համեմատ. (Որոնք
երկնային բաներուն նմանութիւնովը ու շուքովը
կը ծառայեն, ինչպէս Մովսէսի հրամայուեցաւ,
երբ խորանը պիտի շինէր. քանզի ըսաւ, Նայէ
որ լեռը քեզի ցուցուած օրինակին պէս շինես
6 ամէնը.) Բայց հիմա Յիսուս ա՛լ աւելի գերազանց
պաշտօնի մը հասաւ, որչափ որ լաւագոյն խոստ-
մունքներով հաստատուած լաւագոյն ուխտի մը
միջնորդ է։
7 Վասն զի եթէ առաջինը անմեղադրելի ըլլար,
8 ուրեմն երկրորդին տեղ չէր փնտռուեր։ Քանզի
կը յանդիմանէ զանոնք ու կ'ըսէ, Ահա օրեր
կու գան, կ'ըսէ Տէրը, որ Իսրայէլի տանը հետ
ու Յուդայի տանը հետ նոր ուխտ պիտի ընեմ.
9 Ոչ թէ այն ուխտին պէս՝ զոր անոնց հայրերուն
հետ ըրի, այն օրը որ անոնց ձեռքէն բռնեցի՝
զանոնք Եգիպտոսի երկրէն հանելու համար.
վասն զի անոնք իմ ուխտիս մէջ չկեցան, ես ալ
10 անհոգ եղայ անոնց վրայով, կ'ըսէ Տէրը։ Քանզի
այս է այն ուխտը՝ զոր Իսրայէլի տանը հետ

պիտի ընեմ այն օրերէն ետքը, կ'ըսէ Տէրը.
իմ օրէնքներս անոնց միտքին մէջ պիտի դնեմ,
և անոնց սրտին վրայ պիտի գրեմ զանոնք, ու
ես անոնց Աստուած պիտի ըլլամ, և անոնք
11 ինծի ժողովուրդ պիտի ըլլան։ Ու բնաւ պիտի
չսորվեցնեն ամէն մէկը իր ընկերին, և ամէն
մէկը իր եղբօրը, ըսելով թէ Տէրը ճանչցիր.
քանզի անոնց պզտիկէն մինչև մեծը ամէնը
12 զիս պիտի ճանչնան. Վասն զի ես անոնց անի-
րաւութիւններուն ներող պիտի ըլլամ, և ա-
նոնց մեղքերը ու անօրէնութիւնները ա՛լ պիտի
չյիշեմ։
13 Նոր ուխտ ըսելովը առաջինը հինցուց. ու այն որ
կը հիննայ և կը ծերանայ, ա՛լ կորուստի մօտ է։

## ԳԼ. Թ

1 Առաքեալը օրէնքին ծէսերը և արիւնով եղած զոհերը նկարագրելով՝ 11 կը ցուցնէ թէ անոնք շատ ստորին էին Քրիստոսի զոհին և արիւնին արժանաւորութեանը ու կատարելութեանը նայելով։

1 Արդարև առաջին ուխտն ալ ունէր պաշտամուն-
քին կանոնադրութիւնները ու աշխարհային
2 սուրբ տեղը։ Վասն զի առաջին խորանը, որ
Սրբութիւն կ'ըսուէր, այսպէս կազմուեցաւ. ո-
րուն մէջ կար աշտանակը ու սեղանը և առա-
3 ջաւորութեան հացը։ Եւ երկրորդ վարագու-
րին ետին այն խորանը՝ որ Սրբութիւն սրբու-
4 թեանց կ'ըսուէր. Որուն մէջ էր ոսկի բուր-
վառը, և ուխտին տապանակը, ամէն կողմէն
ոսկիով պատած. որուն մէջ էր ոսկիէ սափորը
մանանայով լեցուն, և Ահարոնի գաւազանը որ
5 ծաղկեցաւ, և ուխտին տախտակները, Եւ անոր
վրայէն փառաց քերովբէները՝ որ քաւութիւ-
նին վրայ հովանի կ'ընէին. որոնց համար պէտք չէ
հիմա մէկիկ մէկիկ զրուցել։
6 Եւ այս բաները այսպէս կարգադրուած ըլլա-

լով, առաջին խորանը ամէն ատեն կը մտնէին
7 քահանաները՝ պաշտամունքը կատարելու․ Բայց
երկրորդը՝ տարին անգամ մը միայն քահա-
նայապետը կը մտնէր, ոչ թէ առանց արիւնի, զոր
իրեն համար ու ժողովուրդին սխալմունքներուն
8 համար կը մատուցանէր․ Հոգին Սուրբ ցոյ-
ցունելով՝ թէ սրբարանին ճանապարհը յայտնի
եղած չէր, քանի որ տաղաւարին առաջին խորանը
9 կը կենար․ Որ օրինակ մըն էր այն ժամանակին՝
որ պատարագներ ու զոհեր կը մատուցուէին,
որոնք խղճմտանքի կողմանէ չէին կրնար կա-
տարեալ ընել պաշտօն մատուցանողը, հապա
10 միայն կերակուրներով ու խմելիքներով, Եւ
կերպ կերպ լուացումներով՝ մարմնաւոր արա-
րողութիւններ էին, որոնք մինչև ուղղութեան
11 ատենը կը կենային։ Բայց երբ Քրիստոս եկաւ,
գալու բարիքներուն Քահանայապետը, աւելի
մեծ ու կատարեալ և անձեռագործ խորանով,
12 այսինքն անով որ այս ստեղծուածներէն չէ, Ոչ ալ
նոխազներու ու զուարակներու արիւնով, հապա
իր արիւնովը մէկ անգամ սրբարանը մտաւ՝ յա-
13 ւիտենական փրկութիւն ստանալով։ Վասն զի
եթէ ցուլերուն ու նոխազներուն արիւնը և
երինջին մոխիրը սրսկուելով՝ պղծեալները կը
14 սրբէր մարմնի մաքրութեան կողմանէ, Ալ
ո՜րչափ աւելի Քրիստոսի արիւնը, որ յաւի-
տենական Հոգիին ձեռքով իր անձը անարատ
պատարագ մատուց Աստուծոյ, պիտի սրբէ ձեր
խղճմտանքը մեռած գործերէն՝ կենդանի Աստ-
ուածը պաշտելու։
15 Եւ ասոր համար ինք նոր ուխտին միջնորդն է,
որպէս զի եթէ մահը առաջին ուխտին ժամանակը
գործուած յանցանքներուն քաւութեանը համար
եղած ըլլալով, հրաւիրուածները յաւիտենա-
կան ժառանգութեան խոստմունքը առնեն։

16 Քանզի ուր կտակ մը ըլլայ, հարկ է որ կտակը
17 ընողին մահը մէջ մտնէ. Վասն զի կտակը մեռ-
նելէն ետև հաստատ կ'ըլլայ. քանզի բնաւ վա-
ւերականութիւն չունենար քանի որ կտակը
18 ընողը ողջ է։ Անոր համար առաջինն ուխտն ալ
19 առանց արիւնի չէր հաստատուեր։ Վասն զի
երբ Մովսէս օրէնքին ամէն պատուէրները բոլոր
ժողովուրդին պատմեց, ցուլերուն ու նոխազ-
ներուն արիւնը առնելով՝ ջուրով ու կարմիր
բուրդով և զոպայով բուն գիրքին և բոլոր ժո-
20 ղովուրդին վրայ սրսկեց. Եւ ըսաւ, Ասիկա է
այն ուխտին արիւնը, զոր Աստուած ձեզի
21 պատուիրեց։ Եւ խորանին վրայ ու պաշտօնին
բոլոր գործիքներուն վրայ նոյնպէս սրսկեց
22 արիւնը։ Եւ գրեթէ ամէն բան արիւնով կը
մաքրուի օրէնքին նայելով, ու արիւն չթափուած
թողութիւն չըլլար։
23 Ուստի հարկ էր որ երկնաւոր բաներուն օ-
րինակները ասոնցմով մաքրուէին. բայց բուն
երկնաւորները՝ ասոնցմէ աւելի աղէկ զոհերով։
24 Քանզի Քրիստոս ոչ թէ ձեռագործ սրբարանը
մտաւ, որ ճշմարիտին օրինակն է, հապա բուն
երկինքը՝ որպէս զի հիմա մեզի համար Աստու-
25 ծոյ առջև ներկայանայ. Ոչ թէ՝ որպէս զի շատ
անգամ իր անձը պատարագ մատուցանէ, ինչպէս
քահանայապետը՝ որ ամէն տարի սրբարանը
26 կը մտնէ իրը չեղած արիւնով. Ապա թէ ոչ՝
պէտք էր իրեն աշխարհի սկիզբէն հետէ շատ
անգամ չարչարուիլ. բայց հիմա մէկ անգամ
դարերուն վերջը իր անձին պատարագովը յայտ-
27 նուեցաւ՝ մեղքը մէկդի ձգելու համար։ Եւ
ինչպէս մարդոց սահմանուած է մէկ անգամ
28 մեռնիլ, ու անկէ ետքը դատաստան, Նոյն-
պէս ալ Քրիստոս մէկ անգամ պատարագ մա-
տուցուեցաւ՝ շատերուն մեղքերը վերցնելու

համար, բայց երկրորդ անգամին առանց մեղքի պիտի յայտնուի փրկութեան համար անոնց որոնք անոր կը սպասեն։

## ԳԼ. Ժ

1 Օրէնքին զոհերուն տկարութիւնը։ 10 Քրիստոսի մարմնին մէկ անգամ պատարագուիլը 14 մշտնջենաւորապէս սրբեց մեղքերը։ 19 Առաքեալը կը յորդորէ որ հաւատքը ամուր բռնեն համբերութեամբ և շնորհակալութեամբ։

1 Քանզի օրէնքը գալու բարիքներուն շուքը,
ու ոչ թէ այն բաներուն բուն կերպարանքը
ունենալով, միշտ ամէն տարի մատուցուած նոյն
զոհերով երբէք չկրնար կատարեալ ընել զա-
2 նոնք որ կը մօտենան։ Ապա թէ ոչ՝ պիտի չդա-
դարէի՞ն մատուցուելէն, պաշտօն մատուցանող-
ներուն մէկ անգամ մաքրուելէն ետև ա՛լ մեղքի
վրայով խղճմտանքի յանդիմանութիւն մը չու-
3 նենալնուն համար։ Բայց անոնցմով ամէն տարի
4 մեղքերու յիշատակութիւն կ՚ըլլայ. Վասն զի
նոխազներուն ու ցուլերուն արիւնը չկրնար
5 մեղքերը վերցնել։ Անոր համար իր աշխարհ
մտնելու ատենը կ՚ըսէ, Զոհ ու ընծայ չուզեցիր
զուն, հապա ինծի մարմին մը պատրաստե-
6 ցիր. Ողջակէզներու ու մեղքի պատարագներու
7 չհաւնեցար։ Այն ատեն ըսի, Ահա կու գամ
ես, (գիրքի տոմսի մէջ ինծի համար գրուած է,)
8 քու կամքդ ընելու, ով Աստուած։ Վերը ըսե-
լով թէ Զոհ ու ընծայ և ողջակէզներ ու մեղքի
պատարագներ չուզեցիր՝ ու անոնց չհաւնեցար,
(որոնք օրէնքին համեմատ կը մատուցուին,)
9 Ետքը կ՚ըսէ, Ահա կու գամ ես քու կամքդ
ընելու, ով Աստուած. առաջինը կը հերքէ որ-
10 պէս զի երկրորդը հաստատէ. Որ կամքով մենք
ալ սրբուեցանք՝ Յիսուս Քրիստոսի մարմինին
մէկ անգամ պատարագուելովը։
11 Եւ ամէն քահանայ օր ըստ օրէ իր պաշտօ-

նին մէջ կը կենայ, և նոյն զոհերը շատ անգամ
կը մատուցանէ, որոնք երբէք չեն կրնար մեղքերը
12 վերցնել. Բայց ասիկա մէկ զոհ մատուցանելով
մեղքերու համար, մշտնջենաւորապէս Աստու-
13 ծոյ աջ կողմը նստաւ. Եւ ասկէ ետև կը սպասէ,
մինչև իր թշնամիները իր ոտքերուն պատուան-
14 դան դրուին։ Վասն զի մէկ պատարագով մշտըն-
ջենաւորապէս կատարեց սրբուածները։
15 Բայց Հոգին Սուրբ ալ մեզի վկայութիւն
16 կու տայ, քանզի առաջուընէ ըսելէն ետև թէ
Այս է այն ուխտը՝ զոր ես անոնց հետ պիտի
ընեմ այն օրերէն ետքը, (կ'ըսէ Տէրը.) իմ օ-
րէնքներս անոնց սրտին մէջ պիտի դնեմ, ու
17 անոնց միտքին մէջ պիտի գրեմ զանոնք. Ետքը
կ'ըսէ թէ Անոնց մեղքերը և անօրէնու-
18 թիւնները ա՛լ պիտի չյիշեմ։ Իսկ ուր ասոնց
թողութիւն կայ, ա՛լ մեղքի համար պատարագ-
պէտք չէ։
19 Ուրեմն, եղբայրներ, համարձակութիւն ու-
նենալով սուրբ տեղը մտնելու Յիսուսի արիւ-
20 նովը, Այն նոր ու կենդանի ճամբովը՝ զոր
բացաւ մեզի վարագուրին մէջէն, որ է իր մար-
21 մինը, Եւ մեծ քահանայ մը ունենալով Աստուծոյ
22 տանը վրայ, Մօտենանք ճշմարիտ սրտով, լե-
ցուն հաւատքով, սիրտերնիս չար խղճէն մաք-
րուած, ու մարմիննիս մաքուր ջրով լուացուած.
23 Անխախտ պահենք յոյսին դաւանութիւնը,
վասն զի հաւատարիմ է անիկա որ խոստացաւ։
24 Եւ իրարու հոգ տանինք՝ սիրոյ և բարեգործու-
25 թեան գրգռելով. Եւ մէկտեղ ժողովուիլը չթո-
ղունք, ինչպէս ոմանք սովորութիւն ունին.
հապա մէկզմէկ յորդորենք, ու այնչափ աւելի՝ որ-
չափ այն օրուան մօտենալը կը տեսնէք։
26 Վասն զի եթէ ճշմարտութեան գիտութիւնը
ընդունելէ ետև կամաւ մեղք գործելու ըլլանք,

ալ անկէ ետեւ մեղքերու համար ուրիշ զոհ մը
27 չմնար, հապա զարհուրելի սպասել մը դատաս-
տանին, ու կրակի բարկութիւն մը կը մնայ, որ
28 պիտի լափէ հակառակորդները։ Մէկը եթէ
Մովսէսի օրէնքը անարգէր, առանց ողորմու-
թեան երկու կամ երեք վկաներով կը մեռնէր․
29 Ալ ո՜րչափ սաստիկ պատժի արժանի պիտի
սեպուի կը կարծէք անիկա, որ Աստուծոյ Որդին
ոտքի տակ առաւ, եւ ուխտին արիւնը անմաքուր
սեպեց, որով ինք սրբուեցաւ, եւ շնորհաց Հո-
30 գին նախատեց։ Քանզի գիտենք զանիկա որ
ըսաւ, Իմս է վրէժխնդրութիւնը, ես պիտի
հատուցանեմ, կ՚ըսէ Տէրը․ եւ դարձեալ՝ Տէրը
31 պիտի դատէ իր ժողովուրդը։ Սարսափելի բան է
կենդանի Աստուծոյ ձեռքը իյնալը։
32 Արդ միտքերնիդ բերէք այն առաջին օրերը,
որոնց մէջ լուսաւորուելէ ետեւ շատ սաստիկ
33 չարչարանքներ կրեցիք․ Երբեմն նախատինքնե-
րով ու վիշտերով խայտառակուած, երբեմն ալ
այսպիսի վիճակի մէջ եղողներուն կցորդ ըլլա-
34 լով։ Վասն զի *իմ կապերուս մէջ ինծի״ չարչա-
րակից եղաք, ու ձեր ստացուածքին կողոպ-
տուիլը ուրախութեամբ ընդունեցիք, գիտնա-
լով որ լաւագոյն եւ մնայուն ստացուածքներ
35 ունիք ձեզի երկինքը։ Ուստի ետ մի՛ ձգէք ձեր
վստահութիւնը, որ մեծ վարձքի հատուցում
36 ունի։ Վասն զի պէտք է ձեզի համբերութիւն,
որպէս զի Աստուծոյ կամքը ընելով՝ խոստումները
37 վայելէք․ Քանզի ալ անկէ քիչ մը ատենէն ան
38 որ գալու է՝ պիտի գայ ու պիտի չուշանայ։ Եւ
Արդարը հաւատքէն պիտի ապրի․ ու եթէ մէկը
39 ետ քաշուի, իմ հոգիս անոր չհաճիր։ Բայց
մենք ետ չենք քաշուիր որ կորսուինք, հապա
կը հաւատանք որ մեր հոգին փրկուի։

*Ոմանք, կապուածներուն

## ԳԼ. ԺԱ

1 Հաւատքը ի՛նչ է ։ 6 Առանց հաւատքի չենք կրնար Աստուծոյ հաճելի ըլլալ ։ 7 Հաւատքին արդիւնաւոր պտուղները որ հին ատենը նահապետներուն վրայ երեւցան։

1 Արդ հաւատքը յուսացուած բաներուն հաս-
տատութիւնը — չերեւցած բաներուն ապացոյցն
2 է. Վասն զի անով առաջինները վկայութիւն
ընդունեցին։
3 Հաւատքով կ'իմանանք թէ աշխարհ Աստու-
ծոյ խօսքովը հաստատուեցաւ, ու աներեւոյթ
բաներէն այս երեւցածները եղան։
4 Հաւատքով Աբէլ Կայէնէ աւելի աղէկ զոհ
մատոյց Աստուծոյ, որով վկայուեցաւ արդար
ըլլալը. վասն զի իր պատարագներուն վրայ Աս-
տուծմէ վկայութիւն եղաւ իրեն. և անով, թէ-
պէտ մեռաւ, դեռ տակաւին կը խօսի։
5 Հաւատքով Ենովք երկինք փոխադրուեցաւ որ-
պէս զի մահ չտեսնէ. ու տեղ մը չէր գտնուեր,
վասն զի Աստուած փոխադրեց զանիկա. քանզի
անոր փոխադրուելէն առաջ վկայուեցաւ թէ
6 Աստուծոյ հաճելի էր։ Բայց առանց հաւատքի
անհնար է Աստուծոյ հաճոյ ըլլալ. վասն զի ան
որ Աստուծոյ կը մօտենայ, պէտք է որ հաւատայ
թէ Աստուած կայ, և թէ վարձահատոյց կ'ըլլայ
անոնց որ զինք կը փնտռեն։
7 Հաւատքով Նոյ պատգամ առնելով Աստուծմէ
դեռ չերեւցած բաներուն համար, վախնալով
տապանը շինեց իր տունը փրկելու համար, որով
աշխարհս դատապարտեց, և ժառանգաւոր
եղաւ այն արդարութեանը որ հաւատքով
կ'ըլլայ։
8 Հաւատքով, երբ Աբրահամ կանչուեցաւ,
մտիկ ըրաւ այն տեղը ելլելու, զոր ժառանգու-
թիւն պիտի առնէր. և ելաւ գնաց, ու չէր գի-
9 տեր թէ ուր կ'երթայ։ Հաւատքով պանդխտա-

ցաւ աւետեաց երկրին մէջ որպէս թէ օտարու-
թեան մէջ, և վրաններու մէջ բնակեցաւ Իսա-
հակի ու Յակոբի հետ մէկտեղ, որոնք իրեն հետ
10 ժառանգորդ էին նոյն խոստմունքին. Վասն զի
ինք կը սպասէր այն հիմերով հաստատուած
քաղաքին, որուն ճարտարապետը ու արարիչը
Աստուած է։
11 Հաւատքով ինք Սառա ալ որդեծնութեան սերմը
առնելու զօրութիւն ընդունեց, և ատենը
անցած հասակի մէջ զաւակ ծնաւ. վասն զի հա-
ւատարիմ սեպեց զանիկա որ խոստմունքը ըրեր
12 էր։ Ուստի այն մէկէն ծնան, (այն ալ մեռածի
պէս,) շատութեան կողմէ երկինքի աստղերուն
պէս, ու ծովեզերքը եղած աւազին պէս առանց
համրանքի։
13 Ասոնք ամէնն ալ հաւատքով մեռան՝ խոստ-
մունքները չառած, հապա հեռուէն տեսան
զանոնք ու *ողջունեցին, և խոստովանեցան թէ
իրենք օտարներ ու պանդուխտներ են երկրի
14 վրայ։ Քանզի անոնք որ այսպիսի բաներ կը խօ-
սին, յայտնի կ'ընեն թէ գաւառ մը կը փնտռեն։
15 Եւ յիրաւի եթէ զանիկա յիշէին՝ ուրկէ որ
16 ելան, ժամանակ ունէին հոն դառնալու։ Բայց
հիմա լաւագոյն գաւառի մը կը փափաքին, այսինքն
երկնաւորին. ուստի ամօթ չսեպեր Աստուած
անոնց Աստուածը ըսուիլ, վասն զի ինք անոնց
քաղաք մը պատրաստեց։
17 Հաւատքով Աբրահամ իր փորձուած ատենը
Իսահակը պատարագ մատուց. և ան որ խոստ-
մունքները առած էր, իր մէկ հատիկ որդին կը մա-
18 տուցանէր. Որու ըսուեցաւ թէ Իսահակով
19 քեզի սերունդ պիտի կոչուի. Քանզի կը մտածէր
թէ Աստուած մեռելներէն ալ կարող է յարու-
ցանել. ուրկէ օրինակով մը ընդունեց զանիկա։

*Ոմանք, հաւատալով ողջունեցին

20 Հաւատքով Իսահակ գալու բաներուն համար
21 մարգարէանալով՝ օրհնեց Յակոբը ու Եսաւը ։ Հա-
ւատքով Յակոբ իր մեռնելու ատենը՝ Յովսէփի
որդիներէն ամէն մէկը օրհնեց, ու երկրպա-
գութիւն ըրաւ իր գաւազանին գլխուն վրայ ։
22 Հաւատքով Յովսէփ իր վախճանելու ատենը
յիշեցուց Իսրայէլի որդիներուն Եգիպտոսէ ելլելը,
ու իր ոսկորներուն համար պատուէր տուաւ ։
23 Հաւատքով, երբ ծնաւ Մովսէս, իր ծնողնե-
րուն ձեռքով երեք ամիս գաղտուկ պահուեցաւ·
վասն զի տղան գեղեցիկ տեսան, ու չվախցան
24 թագաւորին հրամանէն ։ Հաւատքով Մովսէս,
երբ մեծցաւ, չուզեց Փարաւոնի աղջկան
25 որդի ըսուիլ ։ Քանզի աւելի աղէկ սեպեց Աս-
տուծոյ ժողովուրդին հետ չարչարուիլ, քան թէ
մեղքին ժամանակաւոր զուարճութիւնը վայե-
26 լել· Եւ աւելի մեծ հարստութիւն սեպեց
Քրիստոսի նախատինքը՝ քան թէ Եգիպտոսի
գանձերը· վասն զի դիտելով կը սպասէր վարձքի
27 հատուցումին· Հաւատքով Եգիպտոսը թողուց,
ու չվախցաւ թագաւորին բարկութենէն· վասն
զի համբերեց՝ որպէս թէ Անտեսանելին կը
28 տեսնէր ։ Հաւատքով ըրաւ զատիկը և արիւն
սրսկելը, որպէս զի անդրանիկները սատկեցնողը
իրենց չդպչի ։
29 Հաւատքով Կարմիր ծովէն անցան որպէս թէ
ցամաքէ· որուն փորձը ընելով Եգիպտացիները
ընկղմեցան ։
30 Հաւատքով Երիքովի պարիսպները ինկան՝
եօթը օր անոնց բոլորտիքը պտըտելով ։
31 Հաւատքով Ռախաբ պոռնիկը անհաւատնե-
րուն հետ չկորսուեցաւ, որ լրտեսները խա-
ղաղութեամբ ընդուներ էր ։
32 Եւ ալ ի՞նչ ըսեմ· վասն զի ժամանակը բա-
ւական չէ որ պատմեմ Գեդէոնի ու Բարակի

և Սամփսոնի ու Յեփթայէի և Դաւիթի ու
33 Սամուէլի և ուրիշ մարգարէներուն համար․ Որոնք
հաւատքով թագաւորութիւնները յաղթե-
ցին, արդարութիւն գործեցին, խոստմունքնե-
րու հասան, առիւծներու բերանները գոցեցին,
34 Կրակի զօրութիւն մարեցին, սուրի բերնէն ա-
զատեցան, տկարութենէ ուժովցան, պատե-
րազմի մէջ զօրաւոր եղան, օտարներու բանակ-
35 ներ ցրուեցին, Կիներ իրենց մեռելները ընդու-
նեցին յարութիւն առած․ ոմանք չարչարուե-
ցան և չընդունեցին ազատութիւնը, որպէս զի
36 լաւագոյն յարութեան հասնին․ Ուրիշներ ալ
նախատինքներու ու ծեծերու, նաև կապերու
37 ու բանտերու փորձը առին․ Քարկոծուեցան,
սղոցուեցան, փորձանքի մէջ ինկան, սրով սպան-
նուելով մեռան, ոչխարի մորթերով ու այծի
մորթերով պտըտեցան, կարօտութիւն քաշե-
38 լով, նեղը լինալով, չարչարուելով, (Որոնց ար-
ժանի չէր աշխարհս,) անապատներու ու լեռ-
ներու և այրերու ու երկրի խոռոչներու մէջ
մոլորելով։
39 Եւ ասոնք ամէնը հաւատքով վկայուած՝
40 խոստմունքը չառին․ Քանզի Աստուած մեզի
համար աւելի աղէկ բան մը նախապատրաստեց,
որպէս զի անոնք առանց մեզի չկատարուին։

## ԳԼ․ ԺԲ

1 Առաքեալը կը յորդորէ հաստատուն հաւատք, համբերութիւն և աստուածպաշտութիւն ունենալ. 22 կը ցուցնէ թէ Նոր ուխտը հինէն գերազանց է։

1 Ուստի մենք ալ, որ այսչափ վկաներուն *բազ-
մութիւնը մեր բոլորտիքը պատած ունինք,
ամէն ծանրութիւն մեր վրայէն մէկդի ձգենք,
և ձղ դիւրաւ պաշարող մեղքը, ու համբերու-

*Յուն. ամպը

*թիւնով վազենք մեր առջեւ դրուած ասպարէզը*
2 *ընթացքը. Յիսուսի նայինք, մեր հաւատքին ա-*
*ռաջնորդին ու կատարողին. որ այն ուրախու-*
*թեանը համար որ իր առջեւ կեցած էր, խաչը*
*յանձն առաւ, ամօթը արհամարհեց, ու Աս-*
*տուծոյ աթոռին աջ կողմը նստաւ։*
3 *Արդ միտք բերէք զանիկա, որ այսպէս համ-*
*բերեց մեղաւորներուն իրեն դէմ հակառակ*
*խօսելուն, որ չըլլայ թէ ձեր անձովը յոգնիք*
4 *ու թուլնաք։ Տակաւին արիւն թափելու չափ պա-*
5 *տերազմելով հակառակ չկեցաք մեղքին. Եւ*
*մոռցաք այն յորդորանքը որ ձեզի հետ կը խօսի*
*որպէս թէ որդիներու հետ, Որդեակ իմ, Տէ-*
*րոջը խրատը մի անարգեր, ու անկէ յանդի-*
6 *մանուելով՝ մի թուլնար։ Վասն զի Տէրը իր*
*սիրածը կը խրատէ, և կը ծեծէ ամէն որդին*
7 *զոր կ'ընդունի։ Եթէ խրատի համբերէք, Աստ-*
*ուած ձեզի հետ որպէս թէ որդիներու հետ*
*կը վարուի. քանզի ո՞ր որդին է ան՝ զոր Հայրը*
8 *չխրատեր։ Իսկ եթէ դուք առանց խրատի*
*ըլլաք, որու ամէնը մասնակից եղան, ուրեմն*
9 *խորթ էք դուք ու ոչ թէ որդիներ։ Նաև մեր*
*մարմնաւոր հայրերը մեզի խրատիչ ունենալով՝*
*անոնցմէ կ'ամչնայինք. չէ՞ որ աւելի պիտի հնա-*
10 *զանդինք հոգիներուն Հօրը ու ապրինք։ Վասն*
*զի անոնք քիչ օրեր մեզ կը խրատէին իրենց*
*հաճոյ երևցածին պէս, բայց անիկա մեր օգու-*
*տին համար՝ որպէս զի իր սրբութեանը հաղորդ*
11 *ըլլանք։ Եւ յիրաւի ամէն խրատ նոյն ատեն*
*ուրախարար չթուիր, հապա տրտմական, բայց*
*ետքը արդարութեան խաղաղարար պտուղը*
*կը հատուցանէ անով վարժուողներուն։*
12 *Ուստի թուլցած ձեռքերը ու տկար ծուն-*
13 *կերը հաստատեցէք. Եւ շիտակ ճամբաներ ըրէք*
*ձեր ոտքերուն, որ չըլլայ թէ ան որ կաղ է*

14 *խոտորի, այլ մանաւանդ բժշկուի ։ Խաղաղու-
թեան ետեւէ եղէք ամէնուն հետ և սրբու-
թեան, առանց որոյ մէ՛կը պիտի չտեսնէ
15 Տէրը ։ Զգուշացէք, չըլլայ որ մէկը Աստուծոյ
շնորհքէն ետ մնայ. չըլլայ որ դառնութեան
արմատ մը վեր երևնալով՝ ձեզ նեղէ, ու անով
16 շատերը պղծուին. Չըլլայ որ մէկը պոռնիկ ըլ-
լայ, կամ անսուրբ՝ Եսաւի պէս, որ կերա-
կուրի մը համար իր անդրանկութիւնը ծախեց ։
17 Քանզի գիտէք որ թէպէտ ետքը ուզեց օրհ-
նութիւնը ժառանգել, բայց մերժուեցաւ. վասն
զի ապաշխարութեան տեղ չգտաւ հօրը վրայ, թէ-
պէտև արցունքով խնդրեց զանիկա ։
18 Վասն զի դուք մօտեցած չէք շօշափելի լե-
ռանը, որ կրակով կը վառէր, ոչ ալ մէգին և
19 խաւարին ու մրրիկին, Եւ փողին հնչուելուն,
ու խօսքերուն ձայնին, զոր լսողները աղաչեցին
20 որ մէյմըն ալ այն խօսքը չըսուի իրենց. Վասն
զի չէին կրնար տանիլ այն հրամանին, Եթէ
գազան մըն ալ լեռանը դպչի՝ պիտի քարկոծուի† ։
21 Եւ այնպէս ահագին էր այն երևոյթը՝ որ Մով-
սէս ըսաւ, Սաստիկ կը վախնամ ու կը դողամ ։
22 Բայց դուք Սիօն լեռանը մօտեցեր էք, ու կեն-
դանի Աստուծոյ քաղաքին, երկնաւոր Երու-
23 սաղէմի, և բիւրաւոր հրեշտակներուն, Ու եր-
կինքը գրուած անդրանիկներուն հանդիսաւոր
ժողովին ու եկեղեցիին, և Աստուծոյ՝ որ ա-
մէնուն Դատաւորն է, ու արդարներուն հոգի-
24 ներուն՝ որոնք կատարուեր են, Եւ Յիսուսի՝ որ
նոր ուխտին միջնորդն է, ու սրսկուելու արիւ-
նին՝ որ Աբէլի արիւնէն աւելի աղէկ կը խօսի ։
25 Զգուշացէք, չըլլայ որ մերժէք զանիկա որ
ձեզի կը խօսի. վասն զի եթէ անոնք երկրի վրայ
Աստուծոյ պատգամները խօսողը մերժելով չազա-

*կամ, գլորի

†Ոմանք կ'աւելցնեն, կամ նետով զարնուի

*տեցան, ո՛րչափ աւելի մենք՝ եթէ երկինքէն*
26 *խօսողէն երես դարձնենք. Որուն ձայնը այն ատեն*
*երկիրը շարժեց, և հիմա խոստացեր է ու կ'ըսէ,*
*Նորէն պիտի շարժեմ, ոչ թէ միայն երկիրը,*
27 *հապա նաև երկինքը։ Եւ այս Նորէն բառը կը*
*ցուցնէ շարժուած բաներուն յեղափոխութիւնը*
*շինուած բաներու պէս, որպէս զի անշարժ բա-*
28 *ները հաստատուն մնան։ Ուստի անշարժ թա-*
*գաւորութիւնը առած ըլլալով՝ ամուր բռնենք*
*այն շնորհքը, որով զԱստուած պաշտենք հա-*
*ճոյական կերպով, ակնածութեամբ և բարե-*
29 *պաշտութեամբ. Վասն զի մեր Աստուածը*
*մաշող կրակ է։*

## ԳԼ. ԺԳ

*1 Զանազան յորդորանքներ կ'ընէ սէր ունենալու վրայով, 4 պարկեշտ վարմունք ունենալու, 5 ագահութենէ ետ կենալու, 7 Աստուծոյ խօսքին քարոզիչները պատուելու, 9 օտար վարդապետութիւններէ հեռանալու, 10 Քրիստոսը դաւանելու, 16 ողորմութիւն տալու, 17 և առաջնորդներուն հնազանդելու վրայով. 18 Նաև կը խնդրէ իրեն համար աղօթք ընել: 20 Վերջաբանութիւն:*

1 *Եղբայրսիրութիւնը թող հաստատ մնայ։*
2 *Հիւրասիրութիւնը մի մոռնաք, վասն զի անով*
*ոմանք հրեշտակներ ընդունեցին չգիտնալով։*
3 *Միտքերնիդ ըլլան կապուածները, որպէս թէ*
*անոնց հետ դուք ալ կապուած էք. և չարչար-*
*ուածները՝ որպէս թէ դուք ալ մարմին ունե-*
4 *ցող էք։ Ամուսնութիւնը բոլորովին պատուա-*
*կան է, ու անկողինը անարատ է. բայց պոռ-*
*նիկները ու շնացողները Աստուած պիտի դատէ։*
5 *Բարքերնիդ արծաթասէր չըլլայ, բաւական սե-*
*պեցէք որչափ բան որ ձեռքերնիդ կայ. վասն զի*
*ինք զրուցեց թէ Բնաւ քեզ պիտի չթողում,*
6 *ու բնաւ քեզ երեսէ պիտի չձգեմ. Այնպէս որ*
*համարձակ ըլլանք ըսելու, Տէրը իմ օգնականս*
*է, ու ես պիտի չվախնամ. մարդը ինծի ինչ*
7 *պիտի ընէ։ Յիշեցէք ձեր առաջնորդները որոնք*
*Աստուծոյ խօսքը ձեզի խօսեցան, և անոնց*

վարմունքին վախճանին նայելով՝ իրենց հաւատա-
8 քին նմանող եղէք ։ Յիսուս Քրիստոս նոյն է
երէկ ու այսօր և յաւիտեանս ։
9 Կերպ կերպ և օտարաձայն ուսմունքներով
մի տարուբերիք , քանզի աղէկ է որ սիրտը
շնորհքով հաստատուի — ոչ թէ կերակուր-
ներով . որոնցմով օգուտ մը չունեցան անոնք
10 որ այնպէս գացին ։ Սեղան մը ունինք մենք ,
ուրկէ իշխանութիւն չունին ուտելու անոնք որ
11 խորանին ծառայութիւն կ՚ընեն ։ Քանզի ո՛ր
անասուններուն արիւնը որ սուրբ տեղը կը
տարուի մեղքի համար քահանայապետին ձեռ-
քով , անոնց մարմինները բանակէն դուրս կ՚այ-
12 րուին ։ Ուստի Յիսուս ալ իր արիւնովը ժողո-
վուրդը սրբելու համար , դռնէն դուրս չար-
13 չարուեցաւ ։ Ուրեմն եկէք իրեն ելլենք բանակէն
դուրս , մեր վրայ առնելով անոր նախատինքը ։
14 Վասն զի մենք հոս մնայուն քաղաք չունինք ,
15 հապա հանդերձեալը կը փնտռենք ։ Ուստի
անոր ձեռքով ամէն ատեն Աստուծոյ օրհնու-
թեան պատարագ մատուցանենք , այսինքն Տր
շրթունքներուն պտուղը , որոնք իր անունը
16 կը դաւանին ։ Իսկ բարերարութիւնը ու կարօտեալ-
ներուն հաղորդակցութիւնը մի մոռնաք , վասն զի
Աստուած այնպիսի պատարագներու կը հաճի ։
17 Ձեր առաջնորդներուն մտիկ ըրէք ու անոնց հնա-
զանդ կեցէք , վասն զի անոնք ձեր հոգիներուն
համար կը հսկեն , որպէս թէ հաշիւ պիտի տան .
որպէս զի խնդութիւնով ընեն այն գործը , և ոչ
թէ հառաչելով , վասն զի այն ձեզի օգտակար
18 չէ ։ Մեզի համար աղօթք ըրէք , վասն զի մենք
համոզուած ենք թէ աղէկ խղճմտանք ունինք ,
և ամէն բանի մէջ կ՚ուզենք աղէկ վարմունք
19 ունենալ ։ Եւ մանաւանդ կ՚աղաչեմ որ զայս
ընէք , որպէս զի աւելի շուտով ձեզի դառնամ ։

20 Եւ խաղաղութեան Աստուածը, որ մեռել-
ներէն յարուց մեր Տէր Յիսուսը, որ յաւիտե-
նական ուխտին արիւնովը ոչխարներուն մեծ
21 Հովիւն է, Ձեզ ամէն բարի գործի մէջ հաս-
տատէ իր կամքը ընելու, և ձեր մէջ իր առջև
հաճոյ եղածը ընէ Յիսուս Քրիստոսի ձեռքով,
որուն փառք յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։
22 Կ'աղաչեմ ձեզի, եղբայրներ, այս յորդորա-
կան խօսքիս համբերել, վասն զի համառօտա-
23 բար գրեցի ձեզի ։ Գիտցէք որ մեր եղբայրը Տի-
մոթէոս արձակուած է, որուն հետ, եթէ շու-
24 տով գայ, պիտի տեսնեմ ձեզ ։ Բարև ըրէք
ձեր բոլոր առաջնորդներուն ու բոլոր սուրբե-
րուն. ձեզի բարև կ'ընեն անոնք որ Իտալիայէ
են ։ Շնորհքը ձեր ամէնուն հետ ըլլայ ։ Ամէն ։

---

ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՅԱԿՈԲՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

---

## ԳԼՈՒԽ Ա

1 Պէտք է որ ուրախ ըլլանք նեղութեան ժամանակ, 5 Աստուծմէ համբերութիւն խնդրենք, 13 և մեր փորձութիւններուն մէջ չըսենք թէ մեր տկարութեան կամ մեղքին պատճառը Աստուած է, 19 այլ մանաւանդ խօսքին մտիկ ընողներ ըլլանք, անոր վրայով խորհինք և զանիկա ի գործ դնենք. 26 եթէ ոչ՝ կրնանք կրօնաւէր երևնալ, բայց անկարելի է որ ճշմարտիւ այնպէս ըլլանք ։

1 Յակոբոս, Աստուծոյ ու Տէր Յիսուս Քրիստոսի
ծառայ, տասուերկու ցեղերուդ, որ ամէն կողմ
ցրուած էք, ողջոյն ։
2 Եղբայրներ, բոլորովին ուրախութեան ար-
ժանի բան սեպեցէք, երբ կերպ կերպ փոր-
3 ձանքներու մէջ կ'իյնաք, Գիտնալով որ ձեր
հաւատքին փորձառութիւնը համբերութիւն

4 կը գործէ ։ Բայց համբերութիւնը կատարեալ
գործ թող ունենայ, որպէս զի կատարեալ ու
ամբողջ ըլլաք, ու բանի մը պակասութիւն չու-
նենաք ։
5 Ապա եթէ ձեզմէ մէկը իմաստութենէ պակ-
սած ըլլայ, թող խնդրէ Աստուծմէ, որ ամէ-
նուն առատապէս կու տայ ու չնախատեր, և
6 անոր պիտի տրուի ։ Միայն թէ հաւատքով
թող խնդրէ ու չերկմտի. վասն զի ան որ երկ-
միտ է, ծովուն հողմակոծեալ ու տատանեալ
7 ալիքներուն նման է. Այն մարդը թող չկարծէ
8 որ Տէրոջմէ բան մը պիտի առնէ. Երկմիտ մարդը
անհաստատ է իր բոլոր ճամբաներուն մէջ ։
9 Խոնարհ եղբայրը իր բարձրութեանը վրայ
10 թող պարծենայ, Եւ ան որ հարուստ է, իր
խոնարհութեանը վրայ, վասն զի անիկա խոտի
11 ծաղկին պէս պիտի անցնի. Քանզի արևը սաս-
տիկ տաքութիւնով մը կը ծագի ու կը ցամքեցնէ
խոտը, և անոր ծաղիկը կը թափի, ու անոր
երևութին գեղեցկութիւնն ալ կը կորսուի.
նոյնպէս ալ հարուստը իր ճամբաներուն մէջ
պիտի թառամի ։
12 Երանելի է այն մարդը որ փորձութեան կը
համբերէ. վասն զի եթէ փորձուելով ընտիր
գտնուի, կենաց պսակը պիտի առնէ, զոր Տէրը
13 զինք սիրողներուն խոստացաւ ։ Զըլլայ որ մէկը,
որ փորձութեան մէջ է, ըսէ թէ Աստուծմէ
կը փորձուիմ. վասն զի Աստուած չար բանե-
րով չփորձուիր, ոչ ալ ինք մէկը կը փորձէ ։
14 Սակայն ամէն մէկը կը փորձուի՝ իր ցանկու-
15 թիւններէն հրապուրուած ու խաբուած. Անկէ
ետև ցանկութիւնը յղանալով՝ մեղք կը ծնանի,
16 և մեղքը որ կատարուի՝ մահ կը ծնանի ։ Մի
17 խաբուիք, իմ սիրելի եղբայրներս. Ամէն բարի
տուրք ու ամէն կատարեալ պարգև վերէն է,

և լուսոյ Հօրմէն կ՚իջնէ , որուն մէջ բնաւ
փոփոխութիւն կամ դառնալու շուք մը չկայ ։
18 Իր ուզելովը մեզ ծնաւ ճշմարտութեան խօսքովը ,
որպէս զի մենք իր ստեղծածներուն երախայրի
19 մը ըլլանք ։ Ուստի , իմ սիրելի եղբայրներս ,
ամէն մարդ թող շուտ ըլլայ լսելու , ու ծանր՝
20 խօսելու , և ծանր՝ բարկանալու . Վասն զի
մարդուն բարկութիւնը Աստուծոյ արդարու-
թիւնը չգործեր ։
21 Ուստի ամէն աղտեղութիւնը ու չարութեան
առաւելութիւնը մէկդի ձգելով , հեզութեամբ
ընդունեցէք ձեր մէջ սերմանուած խօսքը , որ
կրնայ ձեր հոգիները փրկել ։
22 Բայց խօսքը կատարողներ եղէք , և ոչ թէ
23 միայն լսողներ՝ ինքզինքնիդ խաբելով ։ Վասն զի
եթէ մէկը միայն լսող ըլլայ խօսքին ու կատա-
րող չըլլայ , անիկա նման է մարդու մը՝ որ
հայելիի մէջ աչքերը տնկած իր բնական երեսը
24 կը դիտէ . Վասն զի դիտելով տեսաւ ինքզինք
ու անցաւ գնաց , և շուտ մը մոռցաւ թէ ինչ-
25 պիսի մէկն էր ։ Բայց ան որ ազատութեան
կատարեալ օրէնքին աչք տնկելով կը նայի , և
անոր մէջ կը կենայ , անիկա խօսք լսող ու մոռցող
չըլլալով , հապա գործը կատարող , երանելի
26 պիտի ըլլայ իր կատարելուն մէջ ։ Եթէ *մէկը
զինք կրօնասէր կը սեպէ ու իր լեզուին սանձ
չդներ , հապա իր սիրտը կը խաբէ , այնպիսւոյն
27 կրօնասիրութիւնը փուճ է ։ Աստուծոյ ու Հօրը
քով մաքուր ու անարատ կրօնասիրութիւնը
այս է . Որբերուն ու որբևարիներուն տես եր-
թալ իրենց նեղութեան ատենը , ու անձը անա-
րատ պահել աշխարհէ ։

*Ոմանք , ձեզմէ մէկը

# ԳԼ. Բ

1 Քրիստոնէական կրօնքին անվայել է հարուստ եղբայրները պատուել և աղքատները անարգել։ 13 Պարտիմք իրարու վրայ սէր ունենալ և գթած ըլլալ։ 14 Պէտք չէ պարծենալ հաւատքին վրայ՝ երբ առանց գործոց է, 17 վասն զի այն հաւատքը մեռած հաւատք է, 19 դեւերու հաւատք է, 21 և ոչ թէ Աբրահամի 25 և Ռախաբի հաւատքը։

1 Իմ՝ եղբայրներս, չըլլայ որ աչառութեամբ
բռնէք հաւատքը մեր Տէր Յիսուս Քրիստոսի,
2 փառաց Տէրոջ։ Քանզի եթէ ձեր ժողովքին մէջ
մարդ մը մտնելու ըլլայ, որ ունենայ ոսկի մա-
տանի և փառաւոր հանդերձներ, հին աղքատ
մըն ալ մտնելու ըլլայ աղտոտ հանդերձներով,
3 Եւ նայիք անոր վրայ որ փառաւոր հանդերձներ
ունի, ու ըսէք թէ Դուն հոս նստէ պատուով,
և այն աղքատին ըսէք թէ Դուն հոդ ոտքի վրայ
կայնէ, կամ՝ թէ Եկուր նստէ պատուանդանիս
4 քով, Ձեր մէջ խտրութիւններ ըրած ու չար
5 խորհուրդներու դատաւոր չէ՞ք ըլլար։ Մտիկ
ըրէք, սիրելի եղբայրներս, չէ՞ որ Աստուած
աշխարհի աղքատները ընտրեց, որոնք հա-
ւատքով հարուստ են, ու ժառանգաւոր ար-
քայութեանը զոր զինք սիրողներուն խոս-
6 տացաւ։ Բայց դուք աղքատները անարգեցիք.
հարուստները չե՞ն որ ձեզ կը հարստահարեն,
7 ու ձեզ դատաստանարանները կը քաշեն։ Անոնք
չե՞ն որ կը հայհոյեն այն բարի անունը որ ձեր
8 վրայ կանչուած է։ Արդ եթէ դուք արքունա-
կան օրէնքը կը կատարէք գիրքին բառին հա-
մեմատ, թէ Քու ընկերդ սիրես քու անձիդ
9 պէս, աղէկ կ'ընէք. Բայց եթէ աչառութիւն
կ'ընէք, մեղք կը գործէք, և օրէնքէն կը յան-
10 դիմանուիք օրինազանցներու պէս։ Քանզի ով
որ բոլոր օրէնքը պահէ, ու մէկ բանի մէջ յան-
ցաւոր ըլլայ, ամենուն պարտական կ'ըլ-
11 լայ։ Վասն զի ան որ ըսաւ թէ Շնութիւն

մի ըներ, ըսաւ ալ թէ Մի սպաններ. ուստի
եթէ շնութիւն չընես բայց սպանութիւն ընես,
12 օրինազանց կ'ըլլաս ։ Այնպէս խօսեցէք և այն-
պէս ըրէք՝ որպէս թէ ազատութեան օրէնքով-
13 պիտի դատուիք ։ Վասն զի դատաստանը անո-
ղորմ պիտի ըլլայ անոր որ ողորմութիւն չըներ .
և ողորմութիւնը կը պարծենայ դատաստան
նին դիմաց ։
14 Ի՞նչ օգուտ է, եղբայրներս, եթէ մէկը ըսէ
թէ հաւատք ունի, ու գործ չունենայ. միթէ
15 հաւատքը կրնա՞յ փրկել զանիկա ։ Եթէ եղ-
բայր մը կամ քոյր մը մերկ ըլլայ, կամ օրուան
16 կերակուրին կարօտ, Ու ձեզմէ մէկը անոնց
ըսէ, Գացէք խաղաղութեամբ, տաքցէք ու
կշտացէք . և մարմինին պէտք եղած բաները
17 անոնց չտաք, ի՞նչ օգուտ է ։ Այսպէս ալ հա-
ւատքը եթէ իրեն հետ գործ չունենայ, ըստ ինքեան
18 մեռած է ։ Նաև կրնայ մէկը ըսել թէ Դուն
հաւատք ունիս, ես ալ գործեր ունիմ. դուն
քու հաւատքդ ցուցուր ինծի առանց գործե-
րու, ու ես քեզի ցուցնեմ իմ հաւատքս իմ
19 գործերէս ։ Դուն կը հաւատաս որ Աստուած
մէկ է . աղէկ կ'ընես . դեւերն ալ կը հաւատան
20 և կը սարսափին ։ Բայց կ'ուզե՞ս գիտնալ դուն,
ով սնոտի մարդ, որ հաւատքը առանց գործե-
21 րու մեռած է ։ Աբրահամ մեր հայրը գործե-
րով չարդարացա՞ւ, երբ իր որդին Իսահակը
22 սեղանին վրայ հանեց զոհ ընելու ։ Կը տեսնե՞ս որ
հաւատքը անոր գործերուն հետ մէկտեղ գոր-
ծեց, ու այն գործերով հաւատքը կատարեալ
23 եղաւ ։ Եւ գիրքին խօսքը կատարուեցաւ, որ կ'ըսէ,
Աբրահամ Աստուծոյ հաւատաց, ու այն իրեն
արդարութիւն սեպուեցաւ . և ինք Աստուծոյ
24 բարեկամ ըսուեցաւ ։ Կը տեսնէ՞ք որ մարդ
գործերով կ'արդարանայ, ու ոչ թէ միայն հա-

25 ւատքով։ Նոյնպէս ալ Ռախաբ պոռնիկը չէ՞ որ
գործերով արդարացաւ, երբ լրտեսները ներս
առաւ, և ուրիշ ճամբայով արձակեց զանոնք։
26 Քանզի ինչպէս մարմինը առանց հոգիի մեռած
է, նոյնպէս ալ հաւատքը առանց գործերու
մեռած է։

## ԳԼ. Գ

1 Պէտք չէ որ անխոհեմութեամբ կամ յլրութեամբ ուրիշները յանդիմանենք, 5 այլ մանաւանդ սանձենք մեր լեզուն, որ թէև պզտիկ անդամ մըն է, բայց զօրաւոր գործիք մըն է թէ՛ բարիի և թէ՛ չարի համար։ 13 Ճշմարիտ իմաստութիւնը հեզ և խաղաղասէր կ'ըլլայ առանց նախանձու և հակառակութեան։

1 Եղբայրներս, շատ վարդապետներ մի՛ ըլլաք,
գիտնալով որ աւելի մեծ դատաստան պիտի ըն-
2 դունինք. Վասն զի ամէնս ալ շատ յանցանք-
ներ կ'ընենք. եթէ մէկը խօսքով յանցանք չընէ՝
անիկա կատարեալ մարդ է, որ կարող է բո-
3 լոր մարմինն ալ սանձել։ Տես որ ձիերուն բե-
րանը սանձ կը դնենք, որպէս զի անոնք մեզի
հնազանդին, ու անոնց բոլոր մարմինը կը կա-
4 ռավարենք. Ահա նաւերն ալ որչափ մեծ բա-
ներ են, և սաստիկ հովերէն կը քշուին, բայց
ամենափոքր ղեկով մը կը կառավարուին՝ ղեկա-
5 վարին կամքը ո՛ր կողմը որ ուզէ։ Այսպէս ալ
լեզուն պզտիկ անդամ մըն է, ու մեծ բաներ
կը խօսի. ահա քիչ մը կրակը ո՛րչափ բան բոցի
6 կու տայ։ Լեզուն ալ կրակ մըն է, անիրաւու-
թեան աշխարհք մը. լեզուն մեր անդամներուն
մէջ այնպէս դրուած է, որ բոլոր մարմինը
կ'ապականէ, և բնութեան շրջանը կը բռնկցնէ,
7 ու ինք գեհենէն կը բռնկի։ Բոլոր գազաննե-
րուն ու թռչուններուն և սողուններուն ու ծո-
վու մէջ եղածներուն բնութիւնը կը նուաճուի՝ և
8 նուաճուած է մարդկային բնութենէն։ Բայց
լեզուն մարդոց մէկը չկրնար նուաճել. անիկա
անզուսպ չար է, ու մահաբեր թոյնով լեցուն։

9 Անով կ՚օրհնենք զԱստուած ու Հայրը, և անով
կ՚անիծենք մարդիկ՝ որոնք Աստուծոյ նմանու-
10 թիւնովը ստեղծուած են ։ Միևնոյն բերնէն
կ՚ելլեն օրհնութիւն ու անէծք . եղբայրներս,
11 պէտք չէ որ այս այսպէս ըլլայ ։ Միթէ աղբիւր մը
12 միևնոյն բերնէն անոյշ ու լեղի կը բղխէ՞ ։ Միթէ
կարելի՞ է, եղբայրներս, որ թզենին ձիթա-
պտուղ բերէ, կամ որթը՝ թուզ . նմանապէս
կարելի չէ որ աղբիւրէ մը աղի ու անոյշ ջուր ելլէ ։
13 Ձեր մէջ իմաստուն ու խելացի ո՞վ կայ . թող
անիկա բարի վարմունքովը ցուցնէ իր գործերը
14 իմաստութեան հեզութիւնով ։ Ապա եթէ
դառն նախանձ և հակառակութիւն ունենաք
սրտերնուդ մէջ, մի պարծենաք ու ճշմարտու-
15 թիւնը սուտ հանէք ։ Այս իմաստութիւնը վե-
րէն իջած չէ, հապա երկրաւոր, շնչաւոր և դի-
16 ւական է ։ Քանզի ուր նախանձ ու կռիւ կայ,
հոն է անկարգութիւնը և ամէն չար բաները ։
17 Հապա վերին իմաստութիւնը նախ սուրբ է,
ետքը խաղաղարար, հեզ, հլու, ողորմութիւ-
նով ու բարի պտուղներով լեցուն, անկողմնա-
18 սէր ու անկեղծ ։ Եւ արդարութեան պտուղը
խաղաղութիւնով կը սերմանուի անոնց՝ որոնք
խաղաղութիւն կ՚ընեն ։

## ԳԼ. Դ

1 Պէտք է դէմ դնենք ագահութեան, 4 անժուժկալութեան, 5 հպարտութեան, 11 բամբասանքի և ուրիշները զուր տեղ դատելու ։ 13 Պէտք չէ որ աշխարհային գործառնութեանց յաջողութեանը վստահինք, բայց միշտ խորհինք թէ այս կեանքը ո՛րչափ անստոյգ է, և մեր անձերը ու մեր բոլոր գործերը Աստուծոյ նախախնամութեան յանձնենք ։

1 Ուրկէ՞ են պատերազմները, և ուրկէ՞ կռիւ-
ները ձեր մէջ . չէ՞ որ ձեր ցանկութիւններէն՝
որոնք ձեր անդամներուն մէջ կը պատերազմին ։
2 Կը ցանկաք ու չունիք, կը սպաննէք ու կը նա-
խանձիք, և չէք կրնար ձեր ուզածին հասնիլ . կը պա-

տերազմիք ու կը կռուիք, բայց չունիք, վասն զի
3 չէք խնդրեր․ Կը խնդրէք ու չէք առներ, վասն
զի չարաչար կը խնդրէք՝ որպէս զի ձեր ցանկու-
4 թիւններուն բանեցնէք։ Շնացողներ, չէ՞ք գի-
տեր որ այս աշխարհքին սէրը Աստուծոյ դէմ
թշնամութիւն է․ ուստի ով որ կ՚ուզէ աշխարհի
բարեկամ ըլլալ, ինքզինք Աստուծոյ թշնամի
5 կ՚ընէ։ Կամ թէ կը կարծէք որ գիրքը պարա՞պ
տեղ *կ՚ըսէ թէ Նախանձի կը փափաքի մեր
6 մէջ բնակող հոգին"․ Սակայն աւելի շնորհք
կու տայ․ անոր համար կ՚ըսէ, Աստուած ամբար-
տաւաններուն հակառակ կը կենայ, բայց խո-
7 նարհներուն շնորհք կու տայ։ Ուստի հնազան-
դեցէք Աստուծոյ․ Սատանայի հակառակ կե-
8 ցէք, և անիկա ձեզմէ պիտի փախչի։ Աստուծոյ
մօտեցէք, ու անիկա ձեզի պիտի մօտենայ․
սրբեցէք ձեռքերնիդ, մեղաւորներ, և մաք-
9 րեցէք սրտերնիդ, երկմիտներ։ Տառապանք
քաշեցէք, սուգ ըրէք ու լացէք․ ձեր ծիծաղը
սուգի դառնայ, ու ձեր ուրախութիւնը՝
10 տրտմութեան։ Տէրոջը առջև խոնարհեցէք, ու
ան ձեզ պիտի բարձրացնէ։
11 Մէկզմէկ մի բամբասէք, եղբայրներ․ ան որ
իր եղբայրը կը բամբասէ կամ իր եղբայրը
կը դատէ, օրէնքը կը բամբասէ և օրէնքը
կը դատէ․ սակայն եթէ օրէնքը դատես, ալ դուն
12 օրէնքը կատարող չես, հապա դատաւոր։ Միայն
մէկ Օրէնսդիր [ու Դատաւոր] կայ, որ կարող է
փրկելու և կորսնցնելու․ դուն ո՞վ ես որ ու-
րիշը կը դատես։
13 Հիմա մտիկ ըրէք դուք որ կ՚ըսէք, Այսօր
կամ վաղը երթանք այս անուն քաղաքը ու հոն
տարի մը կենանք, և առուտուր ընենք ու
14 վաստըկինք․ (Դուք որ վաղը չէք գիտեր․

*Կամ, կը խօսի․ Նախանձի՞ կը փափաքի մեր մէջ բնակող հոգին

15 Քանզի ի՞նչ է ձեր կեանքը . յիրաւի շոգի մըն է ,
որ քիչ մը ատեն կ'երևնայ ու ետքը կ'ոչնչանայ .)
անոր տեղ ըսելու էիք , Եթէ Տէրը կամենայ
16 ու ապրինք , այս կամ այն բանը ընենք ։ Բայց
հիմա ձեր ամբարտաւանութիւնովը կը պարծե-
նաք . բոլոր այսպիսի պարծանքները չարութիւն
17 են ։ Ուստի ով որ բարին ընելը գիտնայ ու չընէ ,
այն մեղք է անոր ։

## ԳԼ. Ե

1 Չար հարուստները պէտք է որ վախնան Աստուծոյ վրէժխնդրութենէն ։ 7 Պարտիմք նեղութեան մէջ համբերող ըլլալ՝ մարգարէներուն և Յոբի օրինակին պէս ։ 12 Պէտք է որ երդում ընելէն ետ կենանք , 13 նեղութեան ատեն աղօթք ընենք , ուրախութեան ատեն երգենք , 16 մեր յանցանքները իրարու խոստովանինք , իրարու համար աղօթք ընենք , 10 և մոլորեալ եղբայրը ճշմարտութեան դարձնենք ։

1 Աղէ հիմա , հարուստներ , լացէք ու ողբացէք
այն թշուառութիւններուն համար՝ որոնք ձեր
2 վրայ պիտի գան ։ Ձեր հարստութիւնը ապակա-
նած է , ու ձեր հանդերձները՝ ցեցի կերակուր
3 եղած ։ Ձեր ոսկին ու արծաթը ժանգոտած է ,
և անոնց ժանգը ձեզի դէմ վկայ պիտի ըլլայ ,
ու ձեր մարմինը պիտի ուտէ կրակի պէս . վեր-
4 ջին օրերուն համար գանձ դիզեցիք ։ Ահա ձեր
արտերը հնձող բանուորներուն վարձքը զոր
ետ պահեցիք՝ կ'աղաղակէ , ու հնձողներուն բո-
ղոքը զօրութեանց Տէրոջը ականջներուն հա-
5 սաւ ։ Երկրի վրայ փափկութեամբ և հեշտու-
թեամբ ապրեցաք , սիրտերնիդ սնուցիք՝ որպէս
6 թէ մորթուելու օրուան համար ։ Դատապար-
տեցիք ու սպաննեցիք արդարը , որ ձեզի հակա-
ռակ չկենար ։

7 Ուստի համբերող եղէք , եղբայրներ , մինչև
Տէրոջը գալուստը . ահա երկրագործը կը սպասէ
երկրի պատուական պտուղին՝ անոր համար
համբերելով , մինչև առաջին ու վերջին անձրևը
8 առնէ ։ Դուք ալ համբերութիւն ըրէք , սիր-

*տերնիդ հաստատ բռնեցէք. վասն զի Տէրոջը*
9 *գալուստը մօտ է ։ Իրարու դէմ մի հառաչէք,*
*եղբայրներ, որպէս զի չդատապարտուիք. ահա*
10 *Դատաւորը դրանը քով կայներ է ։ Եղբայրներս,*
*չարչարանքներու և համբերութեան օրինակ*
*առէք մարգարէները, որոնք Տէրոջը անու-*
11 *նովը խօսեցան ։ Ահա համբերողներուն երանի*
*կու տանք. Յոբի համբերութիւնը լսեցիք դուք,*
*և Տէրոջը անոր ըրած վախճանը տեսաք, որ Տէրը*
*բազմագութ ու ողորմած է ։*
12 *Այդ ամէն բանէ առաջ, եղբայրներս, եր-*
*դում՝ չընէք, ոչ երկինքի վրայ, ոչ երկրի վրայ,*
*ոչ ալ ուրիշ երդում մը. հապա ձեր այոն այո*
*ըլլայ, և ոչը՝ ոչ, որ չըլլայ թէ դատապարտու-*
*թեան տակ իյնաք ։*
13 *Եթէ ձեզմէ մէկը նեղութեան մէջ է, աղօթք*
*թող ընէ. եթէ մէկը ուրախ է, սաղմոս թող*
14 *երգէ ։ Եթէ ձեզմէ մէկը հիւանդ է, եկեղե-*
*ցիին երէցները թող կանչէ, ու անոր վրայ ա-*
*ղօթք թող ընեն, ու Տէրոջը անունովը իւղով*
15 *օծեն զանիկա. Եւ հաւատքով եղած աղօթքը*
*պիտի փրկէ հիւանդը, ու Տէրը զանիկա ոտք*
*պիտի հանէ. և եթէ մեղք ալ գործեր է,*
16 *պիտի ներուի անոր ։ Ձեր յանցանքները իրա-*
*րու խոստովանեցէք, ու աղօթք ըրէք իրարու*
*համար, որպէս զի բժշկուիք. արդարին ջերմե-*
17 *ռանդ աղօթքը շատ ազդեցութիւն ունի ։ Եղիա*
*մեզի պէս կիրքերու ենթակայ մարդ մըն էր,*
*ու աղօթք ըրաւ որ անձրև չգայ, և երեք տարի*
18 *ու վեց ամիս երկրի վրայ անձրև չեկաւ ։ Եւ*
*նորէն աղօթք ըրաւ, ու երկինք անձրև տուաւ*
*և երկիր իր պտուղը բուսցուց ։*
19 *Եղբայրներ, եթէ ձեզմէ մէկը ճշմարտու-*
*թենէն մոլորի, ու մէկը զանիկա դարձի բերէ,*
20 *Գիտցած ըլլայ թէ ան որ մեղաւորը իր մոլորու-*

թեան ճամբայէն կը դարձնէ, հոգի մը մահուանէ կ՚ազատէ, ու մեղքերու բազմութիւնը կը ծածկէ ։



### ԱՌԱՋԻՆ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը գոհութիւն կը մատուցանէ Աստուծոյ՝ անոր բազմապատիկ հոգեւոր շնորհքներուն համար․ 10 կը ցուցնէ թէ Քրիստոսով եղած փրկութիւնը նոր լսուած բան մը չէ, հապա հին ատենի մարգարէներէն ալ զրուցուած է․ 13 կը յորդորէ քրիստոնեաները բարեպաշտութեամբ ապրելու, յիշեցնելով անոնց թէ իրենք նորէն ծնած են Աստուծոյ խօսքովը ։

1 Պետրոս, Յիսուս Քրիստոսի առաքեալ, օտարա-
կաններուդ որ ցրուած էք Պոնտոսի, Գաղա-
տիայի, Կապադովկիայի, Ասիայի ու Բիւթա-
2 նիայի մէջ, ընտրուած Հօր Աստուծոյ կանխա-
գիտութեանը համեմատ՝ Հոգիին սրբացնելովը,
հնազանդութեան և Յիսուս Քրիստոսի արիւ-
նին սրսկուելուն համար․ շնորհք և խաղաղու-
թիւն ձեր վրայ շատնայ ։
3 Օրհնեալ է Աստուած ու մեր Տէր Յիսուս
Քրիստոսի Հայրը, որ իր առատ ողորմութեանը
համեմատ մեզ նորէն ծնաւ կենդանի յոյսի
համար՝ Յիսուս Քրիստոսի մեռելներէն յարու-
4 թիւն առնելովը, Անեղծ ու անարատ և ան-
թառամ ժառանգութեանը համար՝ որ եր-
5 կինքը պահուած է ձեզի, Որ Աստուծոյ զօրու-
թիւնովը պահպանուած էք հաւատքով այն
փրկութեանը համար՝ որ պատրաստուած է
6 վերջին ժամանակը յայտնուելու․ Որով կ՚ու-
րախանաք, թէև հիմա, ինչպէս հարկը կը պա-

հարկէ, քիչ մը ատեն տրտմած էք զանազան
7 փորձութիւններով. Որպէս զի ձեր հաւատքին
փորձառութիւնը (որ կորսուական ոսկիէն աւելի
պատուական է, թէեւ անիկա կրակով կը փոր-
ձուի,) գտնուի գովութիւնով ու պատուով եւ
փառքով Յիսուս Քրիստոսի յայտնուելու ա-
8 տենը. Զոր դուք չտեսած՝ կը սիրէք, զոր հիմա
չէք տեսներ, բայց կը հաւատաք, եւ ուրախ էք
անպատմելի ու փառաւորեալ խնդութիւնով.
9 Ձեր հաւատքին վախճանը ընդունելով, այսինքն
10 հոգիներնուդ փրկութիւնը, Որ այն փրկու-
թեանը համար փնտռեցին ու քննեցին մար-
գարէները՝ որոնք մարգարէացան ձեզի ըլլալու
11 շնորհքին համար. Ու կը քննէին թէ ե՛րբ կամ
ի՛նչպիսի ատեն կ՚իմացնէր իրենց մէջ եղած
Քրիստոսի Հոգին, որ առաջ կը վկայէր Քրիս-
տոսի չարչարուիլը, ու անկէ ետեւ փառաւոր-
12 ուիլը։ Որոնց յայտնուեցաւ, որոնք ոչ թէ ի-
րենց՝ հապա մեզի մատակարարեցին այն բա-
ները, որոնք հիմա ձեզի պատմուեցան անոնց
ձեռքով՝ որ աւետարանը քարոզեցին ձեզի
Հոգւով Սրբով որ երկինքէն ղրկուեցաւ. որ
այն բաներուն՝ հրեշտակները կը ցանկան ակն-
կառոյց նայիլ։
13 Ուստի ձեր մտքերուն մէջքը գօտեւորած՝
արթուն կեցած, կատարելապէս յուսացէք այն
ձեր վրայ հասնելու շնորհքին, Յիսուս Քրիս-
14 տոսի յայտնուելու ատենը, Հնազանդ զաւակ-
ներու պէս, ոչ թէ ձեր տգիտութեան ատենին
15 առաջին ցանկութիւններովը վարուելով, Հապա
ձեզ կանչող Սուրբին պէս դուք ալ սուրբ եղէք
16 ձեր բոլոր վարմունքներուն մէջ. Վասն զի գրուած
17 է թէ Սուրբ եղէք, քանզի ես սուրբ եմ։ Եւ
եթէ Հայր կը կոչէք զանիկա՝ որ առանց աչա-
ռութեան կը դատէ ամէն մէկուն գործին հա-

մեմատ , ուրեմն ձեր պանդխտութեան ժա-
18 մանակը վախով անցուցէք ․ Գիտնալով որ դուք
ոչ թէ ապականացու արծաթով կամ ոսկիով
փրկուեցաք ձեր հայրերէն աւանդուած ունայն
19 ճամբաներէն , Հապա Քրիստոսի պատուական
արիւնովը՝ որպէս թէ ամբիծ ու անարատ գառի
20 մը ․ Որ առաջուընէ ճանչցուած էր աշխարհի
սկիզբէն առաջ , ու վերջին ատենները յայտ-
21 նուեցաւ ձեզի համար , Որուն միջոցով Աստու-
ծոյ հաւատացիք , որ զանիկա մեռելներէն յա-
րոյց , և անոր փառաւորութիւն տուաւ ․ որ-
պէս զի ձեր հաւատքը ու յոյսը Աստուծոյ վրայ
22 ըլլայ ։ Ձեր անձերը մաքրելով Հոգիին միջոցաւ
ճշմարտութեանը հնազանդելով , եղբայրսիրու-
թեան մէջ անկեղծ ըլլալով , մաքուր սրտով
23 մէկզմէկ պինդ սիրեցէք , Նորէն ծնած ըլլալով
ոչ թէ ապականացու սերմէն , հապա անապա-
կանացուէն Աստուծոյ կենդանի ու յաւիտե-
24 նական խօսքովը ։ Վասն զի ամէն մարմին խոտի
պէս է , և մարդուն բոլոր փառաւորութիւնը
խոտի ծաղիկի պէս ․ խոտը կը չորնայ ու անոր
25 ծաղիկը կը թափթփի ․ Բայց Տէրոջը խօսքը յա-
ւիտեան կը մնայ , այսինքն է այն խօսքը որ ա-
ւետարանով ձեզի քարոզուեցաւ ։

## ԳԼ. Բ

1 կը խրատէ բոլոր չարութիւնը մէկդի ձգել , 4 ցուցնելով թէ Քրիստոս է հիմը, որուն վրայ քրիստոնեայք շինուած են . 11 կ'աղաչէ հեռու կենալ մարմնաւոր ցանկութիւններէն , 13 ու հնազանդ ըլլալ իշխանաւորներուն . 18 կը սորվեցնէ ծառաներուն որ հնազանդ ըլլան իրենց տէրերուն , 20 ու երբ բարիք գործելնուն համար չարչարուին , համբերութեամբ տանին՝ Քրիստոսի օրինակին համեմատ ։

1 Ուրեմն մէկդի ձգելով ամէն չարութիւնը ու
ամէն խաբէութիւնը ու կեղծաւորութիւն-
ները , և նախանձը ու ամէն չարախօսութիւնը ,
2 Նորածին մանուկներու պէս բանական ու ան-
խարդախ կաթին փափաքեցէք , որպէս զի անով

3 մեծնաք [մինչեւ փրկութիւնը], Եթէ Տէրոջը
4 քաղցր ըլլալուն համը առիք. Որու մօտենալով,
այն կենդանի Վէմին, որ թէպէտ մարդոցմէ
անարգուած է, բայց Աստուծմէ ընտրուած ու
5 պատուական է, Դուք ալ կենդանի քարերու
պէս շինուելիք հոգեւոր տաճար մը, սուրբ քա-
հանայութիւն մը, Յիսուս Քրիստոսի ձեռքով
Աստուծոյ հաճելի հոգեւոր պատարագներ մա-
6 տուցանելու։ Որովհետեւ գիրքին մէջ ալ կայ
թէ Ահա Սիօնի մէջ ընտիր, պատուական ան-
կիւնի վէմ մը կը դնեմ. եւ ով որ անոր հաւա-
7 տայ՝ բնաւ պիտի չամչնայ։ Ուստի ձեզի հա-
ւատացեալներուդ պատուական է ան, բայց
անհաւատներուն՝ այն քարը զոր շինողները
անարգեցին՝ անիկա անկիւնին գլուխը եղաւ.
8 Եւ գլորման վէմ ու գայթակղութեան քար
անոնց՝ որ չհաւատալով խօսքէն կը գայթակ-
9 ղին, որու սահմանուած ալ էին։ Բայց դուք
ընտիր ցեղ մըն էք, թագաւորական քահա-
նայութիւն, սուրբ ազգ, սեփհական ժողո-
վուրդ մը, որպէս զի քարոզէք անոր առաքի-
նութիւնները, որ ձեզ խաւարէն իր սքանչելի
10 լոյսին կանչեց. Որ ատեն մը ժողովուրդ չէիք,
բայց հիմա Աստուծոյ ժողովուրդն էք. որ ա-
ռանց ողորմութեան էիք, բայց հիմա ողորմու-
թիւն գտաք։
11 Սիրելիներ, կ՚աղաչեմ, պանդուխտներու եւ
օտարականներու պէս մէկդի կեցէք մարմնա-
ւոր ցանկութիւններէն, որոնք հոգիի դէմ
12 կը պատերազմին, Ձեր վարմունքը հեթանոսա-
ներուն մէջ բարի պահելով, որպէս զի ինչ
բանով որ ձեզ չարագործներու պէս կը բամբա-
սեն, ձեր բարի գործերը տեսնելով՝ փառաւո-
13 րեն զԱստուած այցելութեան օրը։ Ուստի
հնազանդ եղէք ամէն մարդկային սահմանա-

դրութեան Տէրոջը համար, թէ թագաւորին՝
14 վերնագոյն մէկուն պէս, Թէ կուսակալներուն՝
անոր կողմէն ղրկուածներու պէս, չարագործ-
ները պատժելու և բարեգործները գովելու
15 համար ։ Վասն զի Աստուծոյ կամքը այսպէս է,
որ բարեգործ ըլլալով՝ անխելք մարդոց տգի-
16 տութիւնը պապանձեցնէք ․ Ազատներու պէս
ըլլալով, և ոչ թէ ձեր ազատութիւնը չարու-
թեան ծածկոցի մը պէս գործածելով, հապա
17 Աստուծոյ ծառաներու պէս ։ Ամէնը պատուե-
ցէք ․ եղբայրութիւնը սիրեցէք ․ Աստուծմէ
վախցէք ․ թագաւորը պատուեցէք ։
18 Ծառաները ամէն բանի մէջ վախով հնազանդ
ըլլան իրենց տէրերուն, ոչ թէ միայն բարերար-
ներուն ու հեզերուն, հապա ժանտաբարոնե-
19 րուն ալ ։ Քանզի այս շնորհք մըն է, եթէ մէկը
առ Աստուած ունեցած խղճմտանքովը անիրաւ
տեղ կրած վիշտերուն համբերելու ըլլայ ։
20 Վասն զի ինչ գովութիւն կ'ըլլայ ձեզի, եթէ
մեղք գործելով ծեծուիք ու համբերէք ․ հապա
եթէ բարիք գործելով չարչարուիք ու համբե-
րէք, ատիկա Աստուծոյ քով շնորհք մըն է ։
21 Քանզի դուք այս բանին համար կանչուեցաք ․
վասն զի Քրիստոս ալ ձեզի համար չարչարուե-
ցաւ, ու ձեզի օրինակ թողուց՝ որպէս զի իր
22 շաւիղներուն հետևիք ․ Որ մեղք մը չգործեց,
ու իր բերնին մէջ նենգութիւն մը չգտնուեցաւ ․
23 Որ կը նախատուէր, և փոխարէնը չէր նախա-
տեր ․ կը չարչարուէր, ու սպառնալիք չէր ըներ ․
հապա ինքզինք արդարութեամբ դատողին
24 կը յանձնէր ․ Որ մեր մեղքերը իր մարմնովը
խաչափայտին վրայ վերցուց, որպէս զի մենք
մեղքերէն ազատինք, ու արդարութեան հա-
մար ապրինք ․ որուն վէրքերովը դուք բժշկուե-
25 ցաք ։ Վասն զի մոլորեալ ոչխարներու պէս էիք,

բայց հիմա ձեր հոգիներուն Հովիւին ու Տե-
սուչին դարձաք ։

## ԳԼ. Գ

1 կը սորվեցնէ կիներուն ու այրերուն փոխադարձ պարտականութիւնները . 8 կը յոր-
դորէ ամէն մարդիկը միութիւն և սէր ունենալ , 14 և հալածանքի համբերել .
19 կը ծանուցանէ Քրիստոսի ցուցուցած բարերարութիւնը հին աշխարհին ։

1 Նմանապէս կիները հնազանդ ըլլան իրենց այրե-
րուն , որպէս զի եթէ ոմանք խօսքին հնազանդ
չըլլան ալ , առանց խօսքի շահուին կիներուն
2 վարմունքովը , Տեսնելով ձեր երկիւղած պար-
3 կեշտ վարքը ։ Որոնց զարդարանքը չըլլայ դրսէն
մազերու հիւսուածքներով և ոսկիներու շաքքե-
4 րով կամ՝ չէզ հանդերձներ հագնելով . Հապա
սրտին ծածուկ մարդը՝ անեղծութիւնով հեզ
ու հանդարտ հոգիին զարդը թող ըլլայ , որ Աստու-
5 ծոյ առջև խիստ պատուական է ։ Վասն զի
առենօք սուրբ կիները , որոնք իրենց յոյսը Աս-
տուծոյ վրայ դրած էին , անձերնին այսպէս
կը զարդարէին՝ իրենց այրերուն հնազանդ ըլլա-
6 լով . Ինչպէս Սառա հնազանդ էր Աբրահամի ,
և զանիկա տէր կը կոչէր . որ դուք բարեգործ
ըլլալով ու երկիւղէ մը չվախնալով՝ անոր աղ-
ջիկները կ'ըլլաք ։
7 Նմանապէս այրերը խոհեմութիւնով անոնց
հետ բնակին , տկար անօթի պէս պատիւ տա-
լով կիներուն , իբրև կենաց շնորհքին ժառան-
գակիցներու , որպէս զի ձեր աղօթքներուն ար-
գելք չըլլայ ։
8 Վերջապէս ամէնդ մէկ միաքի վրայ ըլլաք ,
կարեկից , եղբայրասէր , ողորմած ու *քաղցրա-
9 բարոյ ։ Չըլլայ որ չարութեան փոխարէն չա-
րութիւն հատուցանէք , կամ նախատինքի փո-

*Ոմանք , խոնարհ

*խարէն նախատինք․ այլ ընդհակառակն օրհ-*
*նեցէք, գիտնալով որ այս բանին համար կան-*
*չուեցաք, որպէս զի օրհնութիւն ժառանգէք։*
10 *Վասն զի ան որ կ՚ուզէ կեանքը սիրել ու բարի*
*օրեր տեսնել, իր լեզուն թող դադրեցնէ չա-*
*րութենէ, ու իր շրթունքները՝ նենգութիւն*
11 *խօսելէ․ Չարութենէ թող քաշուի ու բարու-*
*թիւն ընէ, խաղաղութիւն փնտռէ և անոր*
12 *ետևէն երթայ։ Վասն զի Տէրոջը աչքերը ար-*
*դարներուն վրայ են, ու իր ականջները՝ անոնց*
*աղօթքին․ բայց Տէրոջը երեսը չարագործնե-*
13 *րուն վրայ է։ Եւ ո՞վ ձեզի չարիք մը պիտի*
*հասցնէ՝ եթէ դուք բարիին հետևող ըլլաք։*
14 *Բայց եթէ արդարութեան համար չարչարուիք*
*ալ՝ երանելի էք․ և անոնց ահէն մի վախնաք*
15 *ու մի խռովիք․ Հապա Տէր Աստուածը սիր-*
*տերնուդ մէջ սուրբ պահեցէք․ և միշտ պատ-*
*րաստ եղէք հեզութեամբ ու երկիւղածու-*
*թեամբ պատասխան տալու ամէնուն որ ձեր*
*ունեցած յոյսին պատճառը ձեզի կը հարցնեն։*
16 *Եւ բարի խղճմտանք ունենաք, որպէս զի ինչ*
*բանով որ ձեզ կը բամբասեն իբրև չարագործ-*
*ներ, ամօթով մնան անոնք՝ որ Քրիստոսով ե-*
*ղած ձեր բարի վարմունքը կը պախարակեն։*
17 *Վասն զի աւելի աղէկ է բարեգործութիւն ը-*
*նելով չարչարուիլ, եթէ Աստուծոյ կամքը այն*
*ըլլայ, քան թէ չարագործութիւն ընելով։*
18 *Վասն զի Քրիստոս ալ մեղքի համար մէկ ան-*
*գամ չարչարուեցաւ, Արդարը անարդարներուն*
*վրայ, որպէս զի մեզ Աստուծոյ մօտեցնէ․ որ*
*թէպէտ մեռաւ մարմինով, բայց կենդանի եղաւ*
19 *հոգիով․ Որով բանտի մէջ եղած հոգիներուն ալ*
20 *գնաց ու քարոզեց․ Որոնք ատեն մը ապստամբ*
*էին, երբ Աստուծոյ երկայնմտութիւնը կը համ-*
*բերէր անոնց Նոյի օրերը՝ երբ տապանը կը շին-*

ուէր, որուն մէջ քիչ անձեր, այսինքն ութ
21 հոգի, ջուրէն ազատեցան. Որ մեզ ալ այն օրի-
նակին պէս մկրտութիւնը հիմա կ՚ազատէ, (ոչ
թէ մարմինին աղտը մէկդի ձգելը, հապա բարի
խղճմտանքին փնտռութիւնը առ Աստուած,) Յի-
22 սուս Քրիստոսի յարութիւնովը. Որ երկինք
գացած՝ Աստուծոյ աջ կողմն է, հրեշտակնե-
րուն ու իշխանութիւններուն և զօրութիւննե-
րուն իրեն հնազանդելովը։

## ԳԼ. Դ

1 Կը յորդորէ քրիստոնեաները մեղքէ հրաժարիլ, յիշեցնելով Քրիստոսի օրինակը, և աշխարհի վերջը՝ որ մօտենալու վրայ է, 12 և կը մխիթարէ զանոնք հալածանքի վրայով։

1 Ուստի որովհետև Քրիստոս մեզի համար չար-
չարուեցաւ մարմինով, դուք ալ նոյն միտքով
զինուորեցէք. վասն զի ան որ մարմինով չար-
2 չարուեցաւ, մեղքէն դադարած է. Որպէս զի
ա՛լ ոչ թէ մարդոց ցանկութիւններուն պէս՝
հապա Աստուծոյ կամքին պէս ապրիք մարմինի
3 մէջ մնացած ատեն։ Վասն զի հերիք է մեզի
կեանքի անցեալ ժամանակը, որուն մէջ հե-
թանոսներուն կամքը կատարեցինք, ու գիճու-
թիւններով, ցանկութիւններով, գինեմոլու-
թիւններով, անառակութիւններով, արբեցու-
թիւններով ու անօրէն կռապաշտութիւններով
4 վարուեցանք։ Ու այս բանին կը զարմանան՝ որ
դուք նոյն չափազանց անառակութեան մէջ
անոնց հետ չէք վազեր, ու հայհոյութիւն կ՚ընեն.
5 Որոնք պատասխան պիտի տան անոր՝ որ պատ-
րաստ է դատել կենդանիները ու մեռելները։
6 Քանզի ասոր համար մեռելներուն ալ աւետա-
րանը քարոզուեցաւ, որպէս զի դատուին մար-
դոց կողմանէ մարմինով, ու կենդանի ըլլան
Աստուծոյ կողմանէ հոգիով։

7 Սակայն ամէն բանի վախճանը մօտեցեր է.
ուստի զգաստ եղէք ու աղօթքի մէջ արթուն
8 կեցէք։ Եւ ամէն բանէ առաջ իրարու հետ
սրտանց սէր ունեցէք. վասն զի սէրը մեղքե-
9 րու բազմութիւնը կը ծածկէ։ Իրարու հիւրա-
սիրութիւն ցուցուցէք առանց տրտունջ ընելու։
10 Ամէն մէկը ինչ տեսակ շնորհք որ առաւ, զա-
նիկա իրարու մատակարարեցէք Աստուծոյ զա-
11 նազան շնորհաց բարի տնտեսներուն պէս։ Եթէ
մէկը խօսի, Աստուծոյ պատգամներուն պէս
թող խօսի. եթէ մէկը մատակարարութիւն ընէ,
որպէս թէ Աստուծոյ շնորհաց զօրութենէն
թող ընէ, որպէս զի ամէն բանի մէջ Աստուած
փառաւորուի Յիսուս Քրիստոսի ձեռքով. որու
փառք և զօրութիւն յաւիտեանս յաւիտենից։
Ամէն։

12 Սիրելիներ, օտար բան մի սեպէք այն նեղու-
թեան բոցերը, որ ձեզ փորձելու համար կ՚ըլլայ,
որպէս թէ օտար բան մը ձեզի հանդիպած է.
13 Հապա ուրախ եղէք՝ քանի որ Քրիստոսի չար-
չարանքներուն հաղորդ եղած էք, որպէս զի
անոր փառքին յայտնուելու ատենն ալ ցնծու-
14 թեամբ ուրախանաք։ Եթէ Քրիստոսի անուան
համար նախատուիք, երանելի էք. վասն զի
փառաց [և զօրութեան] և Աստուծոյ Հոգին
ձեր վրայ հանգչած է. *արդարև անոնց կող-
մանէ կը հայհոյուի անիկա, բայց ձեր կողմանէ
15 կը փառաւորուի։" Չըլլայ որ ձեզմէ մէկը չար-
չարուի իբրև մարդասպան, կամ գող, կամ
չարագործ, կամ իբրև ուրիշին բանին խառ-
16 նուող. Բայց եթէ չարչարուի իբրև Քրիստոնեայ՝
թող չամչնայ, հապա այս մասին թող Աստու-
17 ծոյ փառք տայ։ Քանզի ժամանակ է որ դա-
տաստանը Աստուծոյ տունէն սկսի. և եթէ

*Ոմանք չունին

առաջ մեզմէ կ՚սկսի, հապա անոնց վերջը ի՞նչ
պիտի ըլլայ՝ որոնք Աստուծոյ աւետարանին չեն
18 հնազանդիր։ Եւ եթէ արդարը դժուարաւ
կը փրկուի, հապա ամբարիշտը ու մեղաւորը ո՞ւր
19 պիտի գտնուին։ Ուստի անոնք որ Աստուծոյ
կամքին համեմատ կը չարչարուին, բարիք գոր-
ծելով իրենց հոգիները թող անոր յանձնեն,
իբրեւ հաւատարիմ Ստեղծողին։

## ԳԼ. Ե

1 կը յորդորէ երէցները որ իրենց հօտերը արածեն, 5 երիտասարդները՝ որ հնազանդ ըլլան. և ամէնուն կը պատուիրէ որ պարկեշտ, արթուն և հաւատքի մէջ հաստատուն ըլլան, 9 և այսպէս դէմ դնեն իրենց հակառակորդին, Սատանայի։

1 Ձեր մէջ եղող երէցներուն կ՚աղաչեմ, ես ալ ա-
նոնց պէս երէց ըլլալով, ու Քրիստոսի չարչա-
րանքներուն վկայ, և յայտնուելու հանդերձեալ
2 փառքին մասնակից. Աստուծոյ հօտը որ ձեր մէջ
է՝ արածեցէք, վերակացու ըլլալով ոչ թէ ա-
կամայ՝ հապա կամաւ, ոչ թէ անարգ շահա-
3 խնդրութեամբ՝ հապա յօժարութեամբ. Ոչ թէ
վիճակներուն վրայ տիրելով՝ հապա հօտին օ-
4 րինակ ըլլալով. Եւ Հովուապետին երեւցած
ատենը փառաց անթառամ պսակը պիտի ըն-
դունիք։
5 Նմանապէս դուք, երիտասարդներ, հնա-
զանդ եղէք ծերերուն. և ամէնդ իրարու հնա-
զանդ ըլլալով՝ խոնարհութիւն հագէք. վասն
զի Աստուած ամբարտաւաններուն հակառակ
կը կենայ, բայց խոնարհներուն շնորհք կու տայ։
6 Ուրեմն Աստուծոյ հզօր ձեռքին տակ խոնար-
հեցէք, որպէս զի ձեզ ժամանակին բարձրացնէ։
7 Ձեր ամէն հոգը անոր ձգեցէք, վասն զի անիկա
ձեզի համար կը հոգայ։
8 Արթուն կեցէք, հսկեցէք, վասն զի ձեր հա-
կառակորդը, Սատանայ, մռնչող առիւծի պէս

9 կը պտըտի, ու կը փնտռէ թէ ո՛վ կլլէ։ Անոր
դէմ կեցէ՛ք հաւատքով հաստատուած, գիտ-
նալով որ ձեր եղբայրներն ալ աշխարհի մէջ
նոյն չարչարանքները կը կրեն։
10 Եւ բոլոր շնորհաց Աստուածը, որ մեզ իր
յաւիտենական փառքին կանչեց Քրիստոս Յի-
սուսի ձեռքով, քիչ մը ատեն նեղութիւն կրել-
նէդ ետքը, ինք ձեզ կատարեալ ընէ, հաս-
11 տատէ, զօրացնէ ու հիմնէ։ Իրեն փառք և զօ-
րութիւն յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։
12 Սիղուանոս հաւատարիմ եղբօր ձեռքով,
(ինչպէս ես կը կարծեմ,) համառօտ մը ձեզի
գրեցի, յորդորելով ու վկայելով թէ այս է
Աստուծոյ ճշմարիտ շնորհքը, որուն մէջ հաս-
13 տատ կեցեր էք։ Բարեւ կ'ընէ ձեզի Բաբելոնի
մէջ եղած եկեղեցին որ ձեզի հետ ընտրուած է, ու
14 իմ որդիս Մարկոս ալ։ Բարեւ տուէք իրարու
սիրոյ համբոյրով. խաղաղութիւն ձեր ամէ-
նուն հետ որ Քրիստոս Յիսուսի մէջ էք։ Ամէն։



ԵՐԿՐՈՐԴ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԳԼՈՒԽ Ա

1 Առաքեալը հաստատելով քրիստոնեաները Աստուծոյ շնորհքին մէջ աճելու յուսով, 5 կը յորդորէ զանոնք որ հաւատքով ու բարի գործով իրենց կոչումը հաստատ պահեն, 12 զոր ինք հոգ կը տանի անոնց միտքը ձգել, գիտնալով որ իր մահը մօտ է։ 16 Կը խրատէ որ հաստատ ըլլան Քրիստոսի հաւատքին մէջ, ցուցնելով թէ անիկա է Աստուծոյ ճշմարիտ Որդին, որովհետեւ առաքեալները անոր վեհափառութեանը ականատես եղան. և Հայրը ու մարգարէներն ալ անոր համար վկայեցին։

1 Շմաւոն Պետրոս, Յիսուս Քրիստոսի ծառայ և
առաքեալ, ձեզի՝ որ մեզի հետ նոյն պատուական
հաւատքին հասաք մեր Աստուծոյն ու Փրկչին

2 Յիսուս Քրիստոսի արդարութիւնովը․ Շնորհք
և խաղաղութիւն ձեր վրայ աւելնայ Աստուծոյ
ու մեր Տէրոջը Յիսուսի գիտութիւնովը։
3 Ինչպէս իր աստուածային զօրութիւնը կե-
նաց և աստուածպաշտութեան վերաբերեալ
ամէն բաները մեզի տուաւ անոր գիտութիւ-
նովը՝ որ մեզ փառքով ու առաքինութիւնով
4 հրաւիրեց․ Որոնցմով ամենամեծ ու պատուա-
կան խոստումներ տրուած են մեզի, որպէս զի
անոնցմով աստուածային բնութեանը հաղորդ-
ըլլաք՝ աշխարհի մէջ ցանկութենէ յառաջ
5 եկած ապականութենէն փախչելով։ Եւ այս
բանին համար բոլոր ջանքերնիդ դրած՝ ձեր հա-
ւատքին վրայ առաքինութիւն աւելցուցէք, ու
6 առաքինութեան վրայ գիտութիւն, Եւ գիտու-
թեան վրայ ժուժկալութիւն, ու ժուժկալու-
թեան վրայ համբերութիւն, և համբերութեան
7 վրայ աստուածպաշտութիւն, Ու աստուած-
պաշտութեան վրայ եղբայրսիրութիւն, ու եղ-
8 բայրսիրութեան վրայ սէր։ Վասն զի քանի որ
այս բաները ձեր վրայ կը գտնուին ու կ'աճին,
պարապ ու անպտուղ չեն ըներ ձեզ մեր Տէր
9 Յիսուս Քրիստոսը ճանչնալուն մէջ։ Բայց որուն
քով որ այս բաները չկան, անիկա կոյր է ու
կարճատես, որ մոռցեր է իր առաջուան մեղքե-
10 րէն մաքրուիլը։ Ասոր համար, եղբայրներ, ա-
ւելի ջանք ըրէք որ ձեր կոչումը ու ընտրու-
թիւնը հաստատէք, վասն զի ասիկա ընելով՝ բնաւ
11 պիտի չիյնաք․ Քանզի այսպէս ձեզի առատօ-
րէն պիտի շնորհուի մեր Տէր ու Փրկիչ Յիսուս
Քրիստոսի յաւիտենական թագաւորութիւնը
մտնել։
12 Ուստի ես միշտ այս բաները միտքերնիդ ձգե-
լու վրայով զանցառու պիտի չըլլամ, թէև գի-
տէք և հաստատուած էք ներկայ ճշմարտու-

13 թեանը վրայ։ Եւ իրաւունք կը սեպեմ, թէ
քանի որ այս *մարմինին մէջ եմ, միտքերնիդ
14 ձգելով ձեզ արթնցնեմ. Քանզի գիտեմ որ ես
շուտով այս իմ մարմինս պիտի մերկանամ,
ինչպէս մեր Տէր Յիսուս Քրիստոսը յայտնեց
15 ինծի։ Ուստի պիտի ջանամ որ իմ աշխարհէ
ելլելէս ետքն ալ միշտ կարող ըլլաք այս բա-
16 ները յիշել։ Վասն զի ոչ թէ մենք վարպետու-
թեամբ շինուած առասպելներու ետեւէ երթա-
լով մեր Տէր Յիսուս Քրիստոսի զօրութիւնը
ու գալուստը ձեզի ցուցուցինք, հապա անոր
17 մեծափառութեանը ականատես ըլլալով։ Վասն
զի ինք Հօր Աստուծմէ փառք ու պատիւ առաւ,
այն մեծվայելչութեան փառքէն այնպիսի ձայն
մը գալով, թէ Ասիկա է իմ սիրելի Որդիս,
18 որուն հաճեր եմ։ Եւ այս երկինքէն եկած
ձայնը մենք լսեցինք, որուն հետ էինք սուրբ
19 լեռանը վրայ։ Եւ մարգարէական խօսքն ալ
ունինք՝ որ աւելի հաստատուն է. ու աղէկ կը-
նէք՝ եթէ անոր մտադրութիւն ընէք, որպէս
թէ մութ տեղը լոյս տուող ճրագի մը, մինչեւ
ցորեկը լուսնայ ու արուսեակը սրտերնուդ մէջ
20 ծագի։ Բայց առաջ զայս գիտնաք, որ գրոց
ամէն մարգարէութիւն իր յատուկ մեկնու-
21 թիւնը չունի։ Վասն զի մարգարէութիւն մը
երբեք մարդոց կամքին պէս չտրուեցաւ, հապա
Աստուծոյ սուրբ մարդիկը Սուրբ Հոգիէն շար-
ժուած՝ խօսեցան։

## ԳԼ. Բ

1 Կը ծանուցանէ թէ սուտ վարդապետներ պիտի ըլլեն, և կը նախաձայնէ՝ թէ՛ անոնց ու թէ՛ անոնց հետեւողներուն անպարկեշտ վարմունքը ու պատիժը. 7 որմէ ազատ պիտի մնան բարեպաշտները, ինչպէս Ղովտ Սոդոմէ ազատեցաւ։ 10 Անոնց անառակ և հայհոյիչ խաբեբաներուն վարմունքը աւելի մանրամասնաբար կը նկարագրէ, որպէս զի տեսնելով մարդիկ շուտով կարենան ճանչնալ զանոնք, և անոնցմէ հեռու կենալ։

*Յուն. վրանին

1 Բայց սուտ մարգարէներ ալ կ'ըլլային ժողո-
վուրդին մէջ, ինչպէս ձեր մէջ ալ սուտ վար-
դապետներ պիտի ըլլան, որոնք գաղտուկ պիտի
մտցնեն կորուսիչ հերձուածողութիւններ, ու
զիրենք ծախու առնող Տէրը ուրանալով՝ իրենց
2 վրայ պիտի բերեն արագահաս կորուստը. Եւ
շատերը անոնց *կորստական ընթացքներուն"
ետեւէն պիտի երթան, որոնց համար ճշմար-
3 տութեան ճամբան պիտի հայհոյուի. Եւ ա-
գահութիւնով՝ խորամանկութեամբ հնարուած
խօսքերով ձեզ վաճառաշահութեան պիտի գոր-
ծածեն. որոնց դատապարտութիւնը շատոնցմէ
պատրաստ ըլլալ չուշանար, ու անոնց կորուստը
չմրափեր ։

4 Վասն զի եթէ Աստուած մեղք գործող
հրեշտակներուն չխնայեց, հապա խաւարի կա-
պերով տարտարոսը ձգած՝ դատաստանի պահել
5 տուաւ. Ու առաջուան աշխարհին ալ չխնայեց.
միայն թէ Նոյ ութերորդ անձը, արդարութեան
քարոզիչը, պահեց, երբ ջրհեղեղը ամբարիշտ-
6 ներուն աշխարհին վրայ բերաւ, Եւ Սոդոմի ու
Գոմորի քաղաքները մոխիր դարձնելով ու կոր-
ծանելով դատապարտեց, ետքը ամբարշտու-
7 թիւն ընելու մարդոց օրինակ ընելով զանոնք. Եւ
ազատեց արդար Ղովտը, որ անօրէններուն
8 անառակ վարմունքէն ձանձրացեր էր. (Վասն
զի այն արդարը անոնց մէջ կենալով՝ աչքովը
տեսնելով ու ականջովը լսելով, օրէ օր իր արդար
հոգին կը տանջէր անոնց անօրէն վարմունքովը.)
9 Տէրը գիտէ բարեպաշտները փորձութենէ ազա-
տել, և անիրաւները տանջանքի համար դա-
տաստանի օրուան պահել ։

10 Մանաւանդ անոնք որ պղծալից ցանկու-
թեամբ մարմինի ետեւէ կ'երթան, և տէրու-

*Ոմանք, անառակութիւններուն

*թիւնը կ՚անարգեն, ինքնահաւան ու յանդուգն*
*են, չեն վախնար փառաւորներուն դէմ հայ-*
11 *հոյելու. Երբ հրեշտակները, որ անոնցմէ շատ մեծ*
*են զօրութիւնով ու կարողութիւնով, Տէրոջը*
*առջև հայհոյութեամբ դատապարտութիւն չեն*
12 *բերեր անոնց վրայ։ Բայց ասոնք անբան անա-*
*սուններու պէս, (որ բնականաբար որսի ու ա-*
*պականութեան համար եղած են,) չգիտցած*
*բաներնուն դէմ կը հայհոյեն, և իրենց ապա-*
13 *կանութիւնովը պիտի ապականին, Անիրաւու-*
*թեան վարձքը ընդունելով. որ ցորեկուան մէջ*
*եղած զեղխութիւնը զուարճութիւն կը սեպեն.*
*արատ ու բիծ են, իրենց խաբէութիւններովը*
*զուարճանալով՝ երբ ձեզի հետ կերուխումի*
14 *կը նստին. Շնութեամբ լեցուն աչքեր ունին,*
*որ մեղքէ չեն դադարիր. անհաստատ հոգի-*
*ները կը խաբեն. ագահութեան սովորած սիր-*
15 *տեր ունին. անիծեալ զաւակներ են. Շիտակ*
*ճամբան ձգելով մոլորեցան՝ Բէովրեան Բա-*
*ղաամի ճամբուն հետևելով, որ անիրաւու-*
16 *թեան վարձքը սիրեց. Բայց իր անօրէնու-*
*թեանը յանդիմանութիւնը առաւ. անխօս էշը*
*մարդկային ձայնով խօսելով՝ մարգարէին յի-*
17 *մարութիւնը արգիլեց։ Ասոնք ջուր չունեցող*
*աղբիւրներ են, ու փոթորիկէ քշուած մէգեր,*
*որոնց համար թանձր խաւարը պահուած է*
18 *յաւիտեան։ Քանզի ունայնութեան հպարտ*
*խօսքեր ընելով՝ գիճութիւններով, մարմնի*
*ցանկութիւններով կը խաբեն զանոնք որ քիչ մը*
*առաջ փախեր էին անոնցմէ՝ որ մոլորութեան*
19 *մէջ կը պտըտին. Անոնց ազատութիւն կը խոս-*
*տանան, և իրենք ապականութեան ծառաներ*
*են. վասն զի ինչ բանէ որ մէկը յաղթուի, անոր*
20 *ծառայ ալ կ՚ըլլայ։ Վասն զի եթէ Տէր ու Փրկիչ*
*Յիսուս Քրիստոսի գիտութիւնովը աշխարհի*

*պղծութիւններէն հրաժարելէ ետեւ՝ դարձեալ
այն բաներէն բռնուած յաղթուին, անոնց վերջը
21 առաջինէն գէշ կ'ըլլայ։ Վասն զի աղէկ էր ա-
նոնց՝ որ բնա- արդարութեան ճամբան ճանչցած
չըլլային, քան թէ ճանչնալով ետ դառնային
այն սուրբ պատուիրանքէն՝ որ իրենց յանձ-
22 նուեցաւ։ Սակայն անոնց հանդիպեցաւ այն
ճշմարիտ առակին բանը, Թէ Շունը նորէն իր
փսխածին կը դառնայ, ու լուացուած խոզը՝
ցեխի մէջ թաւալելու։*

## ԳԼ. Գ

*1 Կը հաստատէ Քրիստոսի դատաստանի գալուն ճշմարտութիւնը. կը նկարագրէ թէ ինչ կերպով աշխարհս պիտի վերջանայ. 11 կը յորդորէ քրիստոնեաները որ այս բանին սպասելով՝ անարատ վարք ունենան, 15 ու համոզուին թէ Տէրոջը երկայնմտութիւնը իրենց փրկութեանը համար է, ինչպէս Պօղոս գրեր էր անոնց իր թուղթերուն մէջ։*

*1 Սիրելիներ, այս երկրորդ թուղթը հիմա ձեզի
կը գրեմ, որոնցմով ձեր անկեղծ միտքը կ'ար-
2 թընցնեմ յիշելու, Որպէս զի սուրբ մարգարէ-
ներէն առաջուընէ ըսուած խօսքերը, և
մեր, այսինքն Տէրոջը ու Փրկչին առաքեալնե-
3 րուն, պատուէրները միտքերնիդ բերէք։ Բայց
առաջ զայս գիտնաք, որ վերջին օրերը ծաղր
ընողներ պիտի գան, որոնք իրենց ցանկութիւն-
4 ներուն համեմատ պիտի քալեն, Եւ պիտի ըսեն,
Ո՞ւր է անոր գալուն խոստմունքը. վասն զի
քանի որ հայրերը քնացան, ամէն բան այնպէս
կայ կը մնայ արարածներուն սկիզբէն հետէ։
5 Քանզի անոնք (որոնց ուզածը այս է,) այն բանը
մոռցեր են, թէ երկինք առաջուընէ եղաւ, ու
երկիր ջուրերէն և ջուրերով հաստատ կեցեր է
6 Աստուծոյ խօսքովը. Որով հին աշխարհը ջրհե-
7 ղեղով ապականուած կորսուեցաւ. Եւ հի-
միկուան երկինքը ու երկիրը նոյն խօսքով պահ-
պանուած են, մինչև դատաստանին ու ամբա-*

*րիշտ մարդոց կորուստին օրը կրակի համար
8 պահուած ։ Եւ այս մէկ բանը ձեզմէ ծածուկ
չմնայ , սիրելիներ , որ Տէրոջը քով մէկ օրը
հազար տարուան պէս է , ու հազար տարին՝
9 մէկ օրուան պէս ։ Տէրը չուշացներ իր խոստա-
մունքը , ինչպէս ոմանք ուշացուցած կը սեպեն ,
հապա մեզի երկայնամիտ կ՚ըլլայ․ վասն զի չուզեր
որ մէ՛կը կորսուի , հապա որ ամէնը ապաշխա-
10 րութեան գան ։ Սակայն Տէրոջը օրը *գողի պէս
պիտի գայ , որ ատեն երկինք սաստիկ շառաչիւ-
նով պիտի անցնին , ու տարերքները բռնկած
պիտի լուծուին , երկիր ալ , ու ինչ գործեր որ
11 անոր մէջ կը գտնուին , պիտի այրուին ։ Ուստի
որովհետեւ այս ամէն բաները պիտի լուծուին ,
ձեզի ի՞նչպիսի մարդիկ ըլլալ կը վայելէ սուրբ
վարմունքով ու բարեպաշտութեամբ , սպասե-
12 լով Ու արտորալով Աստուծոյ օրուանը գալուն ,
որուն մէջ երկինք կրակով այրուած պիտի
լուծուի , ու տարերքները բռնկած պիտի հալին ։
13 Սակայն իր խոստմունքին համեմատ Նոր եր-
կինքի ու Նոր երկրի մը կը սպասենք , որոնց մէջ
արդարութիւն կը բնակի ։
14 Ուստի , սիրելիներ , ասոնց սպասելով ջանա-
ցէք , որ ան ձեզ անբիծ ու անարատ գտնէ խա-
15 ղաղութիւնով ․ Եւ մեր Տէրոջը երկայնմտու-
թիւնը փրկութիւն սեպեցէք ․ ինչպէս մեր սի-
րելի եղբայրը Պօղոս ալ իրեն տրուած իմաս-
16 տութիւնովը գրեց ձեզի ․ Ինչպէս ամէն թուղ-
թերուն մէջ ալ այս բաներուն վրայով կը խօսի ․
որոնց մէջ քանի մը դժուարիմաց խօսքեր կը գըտ-
նուին , զորոնք տգէտները ու անհաստատները
ծուռ կերպով կը դարձնեն , ինչպէս ուրիշ գիր-
17 քերն ալ՝ իրենց անձին կորուստին համար ։ Ու-
րեմն դուք , սիրելիներ , առաջուընէ գիտնալով

*Յոյն․ , գիշերուան գողի

զգուշ եղէք, որ չըլլայ թէ անօրէններուն խա-
բէութենէն բռնուած՝ ձեր հաստատութենէն
18 իյնաք. Հապա աճեցէք մեր Տէր ու Փրկիչ Յի-
սուս Քրիստոսին շնորհքովը ու գիտութիւնովը.
անոր փառք հիմա ալ ու մինչև յաւիտենական
օրն ալ։ Ամէն։



## ԱՌԱՋԻՆ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԳԼՈՒԽ Ա

Առաքեալը կը նկարագրէ Քրիստոսի անձը, որով մենք յաւիտենական կեանք ունինք՝ Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալով. 5 կը յորդորէ որ ասոր հետ սուրբ վարք ալ ունենանք, որ վկայութիւն մը ըլլայ թէ մեր հաւատքին դաւանութիւնը և հաղորդութիւնը ճշմարիտ է, և որ հաստատ ապահովութիւն մը ունենանք թէ Քրիստոսի մահուամբ մեր մեղքերուն թողութիւն կայ։

1 Կենաց Բանին վրայով որ սկիզբէն էր, որու-
համար լսեցինք, զոր մեր աչքերովը տեսանք,
որու նայեցանք ու մեր ձեռքերը շօշափեցին.
2 (Եւ կեանքը յայտնուեցաւ, ու տեսանք և կը
վկայենք ու ձեզի կը պատմենք այն յաւիտենա-
կան կեանքը, որ Հօրը քով էր ու մեզի յայտ-
3 նուեցաւ.) Զայն որ տեսանք ու լսեցինք, ձեզի
կը պատմենք, որպէս զի դուք ալ մեզի հետ հա-
ղորդութիւն ունենաք. և մեր հաղորդութիւնը
Հօրը հետ է՝ ու իր Որդւոյն Յիսուս Քրիստոսի
4 հետ։ Եւ այս բաները կը գրենք ձեզի, որպէս զի
ձեր ուրախութիւնը կատարեալ ըլլայ։
5 Եւ ասիկա է այն պատգամը զոր իրմէ լսե-
ցինք ու ձեզի կը պատմենք, թէ Աստուած լոյս
6 է, ու անոր մէջ բնաւ խաւար չկայ։ Եթէ ըսենք
թէ Անոր հետ հաղորդութիւն ունինք, ու խա-

ւարի մէջ պտըտինք, սուտ կը զրուցենք և ճշմար-
7 տութիւնը չենք ըներ։ Ապա եթէ լոյսի մէջ
քալենք, ինչպէս անիկա լոյսի մէջ է, իրարու
հետ հաղորդութիւն կ'ունենանք, ու անոր
Որդւոյն Յիսուս Քրիստոսի արիւնը մեզ ամէն
8 մեղքէ կը սրբէ։ Եթէ ըսենք թէ Մենք մեղք
մը չունինք, ինքզինքնիս կը խաբենք, ու մեր մէջ
9 ճշմարտութիւն չկայ։ Եթէ խոստովանինք մեղ-
քերնիս, հաւատարիմ ու արդար է անիկա մեր
մեղքերուն թողութիւն տալու, և մեզ բոլոր
10 անիրաւութենէ սրբելու։ Եթէ ըսենք թէ
Մեղք մը չգործեցինք, սուտագրոյց կ'ընենք զա-
նիկա, ու անոր խօսքը մեր մէջ չէ։

## ԳԼ. Բ

1 Կը զգուշացնէ տկարութեան մեղքերէն։ 3 Կը սորվեցնէ թէ ճշմարտապէս զԱստուած ճանչնալը կը կայանայ անոր պատուիրանքները պահելու մէջ, 9 մեր եղբայրները սիրելու, 15 և աշխարհը չսիրելու մէջ։ 18 Պարտիմք հեռու կենալ մոլորեցուցիչներէն, 20 որոնց մոլորութիւններէն աստուածապաշտները ապահով և ազատ կ'ըլլան՝ հաստատուն հաւատքով և սուրբ վարքով պահպանուած։

1 Իմ որդեակներս, այս բաները ձեզի կը գրեմ,
որպէս զի մեղք չգործէք. և եթէ մէկը մեղք
գործելու ըլլայ, Հօրը քով բարեխօս ունինք
2 Յիսուս Քրիստոս արդարը. Եւ անիկա մեր մեղ-
քերուն քաւութիւն է, և ոչ թէ միայն մերին-
ներուն, հապա բոլոր աշխարհին ալ։
3 Ու ասով գիտենք թէ զանիկա ճանչցանք,
4 եթէ անոր պատուիրանքները պահենք։ Ան որ
կ'ըսէ թէ Ես զանիկա ճանչցայ, ու անոր պատ-
ուիրանքները չպահեր, ստախօս է, ու անոր մէջ
5 ճշմարտութիւն չկայ։ Բայց ան որ անոր խօսքը
կը պահէ, իրաւցնէ իր մէջ կատարեալ է Աս-
տուծոյ սէրը. ասով կը ճանչնանք թէ անոր մէջ
6 ենք։ Ան որ կ'ըսէ թէ անոր մէջ կը բնակի,
այնպէս պէտք է քալէ՝ ինչպէս անիկա քալեց։

7 *Եղբայրներ, ոչ թէ նոր պատուիրանք մը
կը գրեմ ձեզի, հապա այն հին պատուիրանքը
զոր սկիզբէն ի վեր ունէիք. և հին պատուի-
րանքը այն խօսքն է, զոր դուք սկիզբէն լսեցիք։
8 Դարձեալ նոր պատուիրանք մը կը գրեմ ձեզի,
որ ճշմարիտ է անոր մէջ ու ձեր մէջ. վասն զի
խաւարը կ'անցնի ու ճշմարիտ լոյսը արդէն կ'ե-
9 րևնայ։ Ան որ կ'ըսէ թէ լոյսի մէջ է, ու իր
եղբայրը կ'ատէ, մինչև տակաւին խաւարի մէջ
10 է։ Ան որ իր եղբայրը կը սիրէ, լոյսի մէջ կը
11 բնակի, ու իր մէջ գայթակղութիւն չկայ. Բայց
ան որ իր եղբայրը կ'ատէ, խաւարի մէջ է ու
խաւարի մէջ կը քալէ, ու չգիտեր թէ ուր
կ'երթայ, վասն զի խաւարը անոր աչքերը կուր-
ցուցեր է։
12 Կը գրեմ ձեզի, որդեակներ, վասն զի ձեր
մեղքերը թողուած են անոր անուան համար։
13 Կը գրեմ ձեզի, հայրեր, վասն զի դուք ճանչ-
ցաք զանիկա որ սկիզբէն է։ Կը գրեմ ձեզի,
երիտասարդներ, վասն զի դուք չարին յաղթե-
14 ցիք։ Կը գրեմ ձեզի, տղաքներ, վասն զի դուք
ճանչցաք Հայրը։ Գրեցի ձեզի, հայրեր, վասն զի
դուք ճանչցաք զանիկա որ սկիզբէն է։ Գրեցի
ձեզի, երիտասարդներ, վասն զի դուք ուժով
էք, և Աստուծոյ խօսքը ձեր մէջ կը բնակի, ու
15 չարին յաղթեցիք։ Մի սիրէք աշխարհը, ոչ ալ
16 ինչ որ աշխարհի մէջ է։ Եթէ մէկը աշխարհը
կը սիրէ, անոր ներսիդին Հօրը սէրը չկայ.
քանզի ամէն բան որ աշխարհի մէջ է, մարմնի
ցանկութիւնը ու աչքերու ցանկութիւնը և այս
կեանքին ամբարտաւանութիւնը, Հօրմէն չէ,
17 հապա այս աշխարհէն է։ Աշխարհս ալ կ'անցնի,
անոր ցանկութիւնն ալ. բայց ան որ Աստուծոյ
կամքը կը կատարէ, յաւիտեան կը մնայ։

*Ոմն., Սիրելիներ

18 Որդեակներ, վերջին ժամանակն է. ու ինչ-
պէս լսեցիք թէ Նեռը պիտի գայ, և արդէն
շատ նեռեր ելած են, անկէ կ'իմանանք թէ
19 վերջին ժամանակ է։ Մեզմէ ելան անոնք, բայց
մեզմէ չէին. վասն զի եթէ մեզմէ ըլլային, մեզի
հետ պիտի մնային. հապա դուրս ելան, որպէս զի
յայտնի ըլլան թէ անոնք ամէնը մեզմէ չէին։
20 Բայց դուք օծութիւն ունիք Սուրբէն, ու ամէն
21 բան գիտէք։ Չգրեցի ձեզի՝ իբր թէ ճշմարտու-
թիւնը չէք գիտեր, հապա թէ գիտէք զանիկա,
ու նաև թէ ամէն ստութիւն ճշմարտութենէն
22 չէ։ Ո՞վ է ստախօս, եթէ ոչ ան որ կ'ուրանայ
թէ Յիսուս՝ Քրիստոս չէ. անիկա է Նեռը որ
23 կ'ուրանայ Հայրը ու Որդին։ Ամէն ով որ կ'ու-
րանայ Որդին, անիկա Հայրն ալ չընդունիր.
[բայց ան որ կը խոստովանի Որդին, անիկա Հայրն
24 ալ կ'ընդունի։] Ուրեմն ինչ որ դուք սկիզբէն
լսեցիք, թող անիկա ձեր մէջ բնակի. եթէ
ան սկիզբէն լսածնիդ ձեր մէջ բնակի, դուք ալ
25 Որդւոյն ու Հօրը մէջ պիտի բնակիք։ Եւ ասիկա
է այն խոստումնիքը զոր ինք մեզի խոստացաւ,
26 այսինքն յաւիտենական կեանքը։ Այս բաները
ձեզի գրեցի՝ ձեզ մոլորեցնողներուն համար։
27 Եւ այն օծութիւնը զոր դուք իրմէ ընդունեցիք,
ձեր մէջ կը մնայ, ու պէտք չէ որ մէկը ձեզի
սորվեցնէ. հապա ինչպէս նոյն օծութիւնը ձեզի
կը սորվեցնէ ամէն բանի վրայով, և ճշմարիտ է
ու սուտ չէ, և ինչպէս անիկա ձեզի սորվեցուց,
անոր մէջ կեցէք։
28 Ու հիմա, որդեակներ, անոր մէջ կեցէք, որ-
պէս զի երբ անիկա յայտնուի, մենք համարձա-
կութիւն ունենանք, ու անկէ չամչնանք իր գա-
29 լու ատենը։ Եթէ գիտէք թէ անիկա արդար է,
կ'իմանաք թէ ամէն ով որ արդարութիւն կը
գործէ, անկէ ծնած է։

# ԳԼ. Գ

1 Յիշեցնելով Աստուծոյ անզուգական սէրը՝ որով մեզ իրեն որդիներ կ'ընէ, 3 կը յորդորէ որ հնազանդութեամբ անոր պատուիրանքները պահենք, 11 ու նաև եղբայրաբար մէկզմէկ սիրենք :

1 Տեսէք, Հայրը ինչպիսի սէր շնորհեց մեզի,
որպէս զի մենք Աստուծոյ որդիներ ըսուինք.
ասոր համար աշխարհ մեզ չճանչնար, վասն զի
2 զանիկա ալ չճանչցաւ : Սիրելիներ, հիմա մենք
Աստուծոյ որդիներն ենք, և տակաւին յայտնի
չէ թէ ինչ պիտի ըլլանք. բայց գիտենք որ երբ
անիկա յայտնուի, անոր պէս պիտի ըլլանք.
վասն զի զանիկա պիտի տեսնենք՝ ինչպէս է :
3 Եւ ամէն ով որ այս յոյսը անոր վրայ ունի,
ինքզինք կը մաքրէ, ինչպէս անիկա մաքուր է :
4 Ամէն ով որ մեղք կը գործէ, անիկա անօրէ-
նութիւն ալ կը գործէ, և բուն մեղքը անօրէ-
5 նութիւն է : Եւ գիտէք որ անիկա անոր համար
յայտնուեցաւ, որ մեր մեղքերը վերցնէ. ու
6 իր մէջ մեղք չկայ : Ամէն ով որ անոր մէջ
կը կենայ, մեղք չգործեր. ամէն ով որ մեղք
կը գործէ, զանիկա տեսած չէ ու զանիկա
7 ճանչցած չէ : Որդեակներ, մէկը ձեզ չխաբէ.
ան որ արդարութիւն կը գործէ, արդար է,
8 ինչպէս Անիկա արդար է : Եւ ան որ մեղք
կը գործէ, Սատանայէ է, վասն զի Սատանայ
սկիզբէն ի վեր կը մեղանչէ. ասոր համար Աս-
տուծոյ Որդին յայտնուեցաւ, որ Սատանայի
9 գործերը քակէ : Ամէն ով որ Աստուծմէ ծնած
է, մեղք չգործեր, վասն զի անոր սերմը իր մէջ
կը մնայ, ու չկրնար մեղք գործել, քանզի Աս-
10 տուծմէ ծնած է : Ասով յայտնի են Աստուծոյ
որդիները ու Սատանայի որդիները : Ամէն ով
որ արդարութիւն չգործեր, անիկա Աստուծմէ
11 չէ, և ան ալ՝ որ իր եղբայրը չսիրեր : Վասն զի
ասիկա այն պատուիրանքն է զոր դուք սկիզբէն

12 լսեցիք, որ մէկզմէկ սիրենք։ Ոչ թէ Կայէնի
պէս որ չարէն էր, ու իր եղբայրը սպաննեց.
և ինչո՞ւ համար զանիկա սպաննեց. անոր հա-
մար որ իր գործերը չար էին, ու իր եղբօրը
13 գործերը՝ արդար։ Մի զարմանաք, եղբայրներս,
14 եթէ աշխարհ ձեզ ատէ։ Մենք գիտենք որ
մահէն կեանքի փոխուեցանք, վասն զի եղբայր-
ները կը սիրենք. ան որ եղբայրը չսիրեր՝ մահ-
15 ուան մէջ կը մնայ. Ամէն ով որ իր եղբայրը
կ'ատէ՝ մարդասպան է. ու գիտէք որ ամէն
մարդասպան իր մէջ բնակած յաւիտենական
16 կեանք չունի։ Ասով գիտցանք Քրիստոսի սէրը, որ
անիկա իր կեանքը մեզի համար դրաւ. մենք ալ
պարտաւոր ենք մեր եղբայրներուն համար դնել
17 մեր կեանքը։ Բայց ան որ աշխարհի բարիքը
ունի, և իր եղբայրը բանի մը կարօտ կը տեսնէ
ու իր գութը անկէ կը գոցէ, ի՞նչպէս Աստուծոյ
18 սէրը անոր մէջ բնակած կ'ըլլայ։ Որդեակներս,
ոչ թէ խօսքով ու լեզուով սիրենք, հապա
գործով ու ճշմարտութիւնով։
19 Եւ ասով կը ճանչնանք թէ ճշմարտութենէն
ենք, ու մեր սրտերուն համարձակութիւնը
20 անոր առջև պիտի երևնանք։ Քանզի եթէ մեր
սրտերը մեզ կը մեղադրեն, հապա Աստուած
21 մեր սրտերէն մեծ է՝ և ամէն բան գիտէ։ Սիրե-
լիներ, եթէ մեր սրտերը մեզ չմեղադրեն, հա-
մարձակութիւն կ'ունենանք Աստուծոյ առջև.
22 Եւ ինչ որ խնդրենք՝ կ'առնենք անկէ, վասն զի
իր պատուիրանքները կը պահենք, ու իր առջև
23 հաճոյ եղած բաները կ'ընենք։ Եւ ասիկա է
անոր պատուիրանքը, որ իր Որդւոյն Յիսուս
Քրիստոսի անուանը հաւատանք ու մէկզմէկ
24 սիրենք, ինչպէս մեզի պատուէր տուաւ։ Եւ
ան որ անոր պատուիրանքները կը պահէ՝ անոր
մէջ կը կենայ, ու անիկա ալ անոր մէջ. և ասկէ

գիտենք որ անիկա մեր մէջ կը կենայ, այսինքն
այն Հոգիէն զոր մեզի տուաւ ։

## ԳԼ. Դ

1 Կը պատուիրէ չհաւատալ ամէն վարդապետներուն, որոնք կը պարծենան թէ Աստուծոյ Հոգին ունին, այլ փորձել զանոնք ուղղափառ հաւատքին կանոններովը. 7 և շատ փաստերով կը յորդորէ զանոնք եղբայրական սէր ունենալ։

1 Սիրելիներ, ամէն հոգիի մի հաւատաք, հապա
հոգիները փորձեցէք՝ թէ արդեօք Աստուծմէ՞
են. վասն զի աշխարհի մէջ շատ սուտ մարգա-
2 րէներ ելած են ։ Ասով կրնաք ճանչնալ Աստու-
ծոյ Հոգին. ամէն հոգի որ Յիսուս Քրիստոսը
մարմնով եկած կը խոստովանի, անիկա Աս-
3 տուծմէ է. Եւ ամէն հոգի որ Յիսուս Քրիս-
տոսը մարմնով եկած չխոստովանիր, անիկա
Աստուծմէ չէ. ու անիկա Նեռի հոգին է, որուն
համար լսեցիք թէ պիտի գայ, ու հիմակուընէ
4 ալ աշխարհի մէջ է ։ Դուք Աստուծմէ էք,
որդեակներ, ու անոնց յաղթեցիք. քանզի մեծ
է անիկա որ ձեր մէջ է, քան թէ անիկա որ
5 աշխարհի մէջ է ։ Անոնք աշխարհէ են. անոր
համար աշխարհի վրայով կը խօսին, և աշխարհ
6 մտիկ կ'ընէ անոնց ։ Մենք Աստուծմէ ենք. ան
որ զԱստուած կը ճանչնայ, մեզի մտիկ կ'ընէ.
ան որ Աստուծմէ չէ, մեզի մտիկ չըներ. ասով
կը ճանչնանք ճշմարտութեան Հոգին ու խա-
բէութեան հոգին ։
7 Սիրելիներ, մէկզմէկ սիրենք, վասն զի սէրը
Աստուծմէ է. ու ամէն ով որ կը սիրէ՝ Աս-
տուծմէ ծնած է, ու կը ճանչնայ զԱստուած ։
8 Ան որ չսիրեր՝ զԱստուած չճանչնար. վասն զի
9 Աստուած սէր է ։ Այս բանին մէջ Աստուծոյ
սէրը մեր վրայ յայտնի եղաւ, որ Աստուած
իր միածին Որդին աշխարհ ղրկեց, որպէս զի
10 անոր միջոցով ապրինք ։ Այս բանին մէջ է սէրը,

որ ոչ թէ մենք սիրեցինք զԱստուած, հապա
որ անիկա մեզ սիրեց, ու իր Որդին ղրկեց մեր
11 մեղքերուն քաւութիւն ըլլալու։ Սիրելիներ,
եթէ Աստուած մեզ այսպէս սիրեց, ուրեմն
12 մենք ալ կը պարտաւորինք մէկզմէկ սիրել։ Մէկը
երբեք զԱստուած տեսած չէ. եթէ մէկզմէկ
կը սիրենք, Աստուած մեր մէջ կը բնակի, ու
13 անոր սէրը մեր մէջ կատարեալ է։ Ասով գի-
տենք թէ մենք անոր մէջ կը բնակինք, ու ա-
14 նիկա մեր մէջ, որ իր Հոգիէն մեզի տուաւ։ Եւ
մենք տեսանք ու կը վկայենք որ Հայրը իր Որդին
15 ղրկեց աշխարհի Փրկիչը ըլլալու։ Ով որ կը խոս-
տովանի թէ Յիսուս Որդի Աստուծոյ է, Աստուած
16 անոր մէջ կը բնակի, ան ալ՝ Աստուծոյ մէջ։ Եւ
մենք ճանչցանք ու հաւատացինք այն սէրը զոր
Աստուած մեր վրայ ունի. Աստուած սէր է. և
ան որ սիրոյ մէջ կը բնակի, Աստուծոյ մէջ
17 կը բնակի, ու Աստուած՝ անոր մէջ։ Ասով սէրը
մեր վրայ կատարեալ կ՚ըլլայ, որպէս զի հա-
մարձակութիւն ունենանք դատաստանին օրը.
վասն զի ինչպէս է ինք, նոյնպէս ալ մենք ենք
18 այս աշխարհին մէջ։ Սիրոյ մէջ վախ չկայ, հապա
կատարեալ սէրը վախը մէկդի կը ձգէ. վասն զի
վախը տանջանքի ենթակայ է. ուստի ան որ
19 կը վախնայ, սիրոյ մէջ կատարեալ չէ։ Մենք
զանիկա կը սիրենք, վասն զի առաջ անիկա մեզ
20 սիրեց։ Եթէ մէկը կ՚ըսէ թէ Ես զԱստուած
կը սիրեմ, ու իր եղբայրը ատէ, անիկա ստա-
խօս է. քանզի ան որ իր եղբայրը չսիրեր՝ զոր
կը տեսնէ, զԱստուած՝ զոր չտեսներ, ի՞նչպէս
21 կրնայ սիրել։ Եւ անկէ այս պատուէրը ունինք,
թէ ան որ զԱստուած կը սիրէ, իր եղբայրն ալ
կը սիրէ։

## ԳԼ. Ե

1 Ով որ զԱստուած կը սիրէ, անոր որդիներն ալ կը սիրէ, ու կը պահէ անոր պատուիրանքները, որոնք հաւատացելոց ծանրութիւն մը չեն։ 9 Յիսուս Աստուծոյ Որդին ըլլալով, կարող է մեզ փրկել, 14 ու մեր աղօթքները լսել, զորոնք կը մատուցանենք թէ՛ մեր անձերուն և թէ՛ ուրիշներուն համար։

1 Ամէն ով որ կը հաւատայ թէ Յիսուս՝ Քրիս-
տոսն է, Աստուծմէ ծնած է. և ամէն ով որ
2 ծնողը կը սիրէ՝ անկէ ծնածն ալ կը սիրէ։ Ասով
կը ճանչնանք թէ Աստուծոյ որդիները կը սի-
րենք, երբ զԱստուած սիրենք ու անոր պատուի-
3 րանքները պահենք։ Վասն զի ասիկա է Աս-
տուծոյ սէրը, որ անոր պատուիրանքները պա-
հենք. և անոր պատուիրանքները ծանր բան չեն։
4 Վասն զի այն ամէնը որ Աստուծմէ ծնած է՝
աշխարհի կը յաղթէ. և ասիկա է յաղթու-
թիւնը որ աշխարհի կը յաղթէ. այսինքն մեր
5 հաւատքը։ Ո՞վ է որ աշխարհի կը յաղթէ, եթէ
ոչ անիկա որ կը հաւատայ թէ Յիսուս Որդի
Աստուծոյ է։
6 Ասիկա է որ եկաւ ջրով և արիւնով, այսինքն
Յիսուս Քրիստոս. ոչ թէ միայն ջրով, հապա
ջրով ու արիւնով. և Հոգին է որ կը վկայէ,
7 վասն զի Հոգին ճշմարտութիւն է։ Վասն զի
երեք են որ *երկինքի մէջ կը վկայեն. Հայրը,
Բանը ու Սուրբ Հոգին, և այս երեքը մէկ են։
8 Ու երեք են որ երկրի վրայ" կը վկայեն. Հոգին,
9 ջուրը ու արիւնը, և երեքը միաբան են։ Եթէ
մարդոց վկայութիւնը կ'ընդունինք, Աստուծոյ
վկայութիւնը աւելի մեծ է. վասն զի ասիկա է
Աստուծոյ վկայութիւնը, որ իր Որդւոյն համար
10 վկայեց։ Ան որ Աստուծոյ Որդւոյն կը հաւատայ՝
վկայութիւնը իր մէջ ունի. ան որ Աստուծոյ
չհաւատար՝ ստախօս կ'ընէ զանիկա, վասն զի
չհաւատար այն վկայութեանը՝ զոր Աստուած

*Շատ հին ձեռագիրներ չունին

11 *իր Որդւոյն համար վկայեց ։ Եւ վկայութիւնը
այս է, որ Աստուած մեզի յաւիտենական կեանք
տուաւ, ու այս կեանքը անոր Որդւոյն մէջ է ։
12 Ան որ Որդին ընդունած է՝ կեանք ունի, և
ան որ Աստուծոյ Որդին ընդունած չէ՝ կեանք
չունի ։
13 Այս բաները գրեցի ձեզի՝ որպէս զի գիտնաք
թէ յաւիտենական կեանք ունիք դուք՝ որ Աս-
14 տուծոյ Որդւոյն անուանը կը հաւատաք* ։ Եւ
այն համարձակութիւնը զոր մենք անոր քով
ունինք՝ այս է, որ ինչ բան որ խնդրելու ըլլանք
15 իր կամքին համեմատ, կը լսէ մեզի ։ Եւ եթէ
գիտնանք թէ մեզի կը լսէ ինչ որ խնդրելու ըլ-
լանք, ուրեմն կը գիտնանք թէ կ'առնենք խնդիրք-
ները զոր կը խնդրենք իրմէ ։
16 Եթէ մէկը տեսնէ որ իր եղբայրը մեղք մը
գործեց, ոչ թէ մահացու, թող խնդրէ, ու
Աստուած անոր կեանք պիտի տայ այն մահացու
չեղած մեղքը գործողին. մեղք կայ որ մահա-
ցու է, չեմ ըսեր որ անոր համար խնդրէ ։
17 Ամէն անիրաւութիւն մեղք է, և մեղք կայ
որ մահացու չէ ։
18 Գիտենք որ այն ամէնը որ Աստուծմէ ծնած
է՝ մեղք չգործեր. հապա ան որ Աստուծմէ
ծնած է՝ իր անձը կը պահէ, ու չարը իրեն
19 չդպչիր ։ Գիտենք որ մենք Աստուծմէ ենք, ու
20 բոլոր աշխարհ չարին մէջ է ։ Եւ գիտենք որ
Աստուծոյ Որդին եկաւ, ու մեզի միտք տուաւ,
որպէս զի ճշմարիտը ճանչնանք. և այն ճշմարի-
տին մէջ ենք, իր Որդւոյն Յիսուս Քրիստոսի
մէջ. ասիկա է ճշմարիտ Աստուած ու յաւի-
21 տենական կեանք ։ Որդեակներ, ինքզինքնիդ
կուռքերէն պահեցէք ։†*

*Ոմանք կ'աւելցնեն, և որպէս զի Աստուծոյ Որդւոյն անուանը հաւատաք
†Ոմանք կ'աւելցնեն, Ամէն ։

ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

---

1 Կը յորդորէ պատուաւոր քրիստոնեայ տիկին մը՝ որ իր որդիներովը մէկտեղ հաստատուն մնայ քրիստոնէական սիրոյն և հաւատքին մէջ, 8 որ չըլլայ թէ իրենց առջուան դաւանութեանը վարձքը կորսնցնեն. 10 պատուէր կու տայ չընդունիլ այն մոլորեցուցիչները, որոնք Յիսուս Քրիստոսի ճշմարիտ վարդապետութիւնը չունին։

1 Երէցէն ընտրեալ տիկնոջը ու անոր որդինե-
րուն, զորոնք ես ճշմարտութեամբ կը սիրեմ,
(և ոչ թէ միայն ես, հապա ամէնն ալ՝ որոնք
2 ճշմարտութիւնը կը ճանչնան,) Այն ճշմարտու-
թեանը համար՝ որ մեր մէջ կը մնայ, ու յա-
3 ւիտեան մեզի հետ պիտի ըլլայ. Շնորհք, ո-
ղորմութիւն, խաղաղութիւն Հայր Աստուծմէն
և Տէր Յիսուս Քրիստոսէ, Հօրը Որդիէն, ձեզի
հետ ըլլայ ճշմարտութիւնով ու սիրով։
4 Շատ ուրախ եղայ ես, որ քու որդիներէդ
գտայ որոնք ճշմարտութեամբ կը քալեն այն
պատուիրանքին համեմատ՝ զոր Հօրմէն առինք։
5 Եւ հիմա քեզի կ'աղաչեմ, ով տիկին, ոչ իբր
թէ նոր պատուիրանք մը քեզի կը գրեմ, հապա
զայն որ սկիզբէն ունէինք, որ մէկզմէկ սիրենք։
6 Եւ սէրը այս է՝ որ անոր պատուիրանքներուն
համեմատ քալենք. — պատուիրանքը այս է՝ որ
ինչպէս սկիզբէն ի վեր լսեցիք, անոր համեմատ
7 քալէք։ Վասն զի շատ մոլորեցուցիչներ ելան
աշխարհի մէջ, որոնք Յիսուս Քրիստոսը մար-
մինով եկած չեն խոստովանիր. այնպիսին մէկը
8 մոլորեցուցիչ ու Նեռն է։ Զգուշացէք ձեր ան-
ձերուն, որպէս զի աշխատանքնիս չկորսնցնենք,
9 հապա որպէս զի լման վարձք առնենք։ Ամէն
ով որ յանցանք կը գործէ ու Քրիստոսի վարդա-
պետութեանը մէջ չկենար, անիկա զԱստուած

չունի. ան որ Քրիստոսի վարդապետութեանը
մէջ կը կենայ, անիկա Հայրն ալ ունի Որդին ալ։
10 Եթէ մէկը ձեզի գայ ու այս վարդապետու-
թիւնը չբերէ, զանիկա տուներնիդ մի ընդու-
11 նիք, և անոր Բարև մի ըսէք։ Քանզի ով որ
անոր Բարև կ'ըսէ, անոր չար գործերուն հա-
ղորդ կ'ըլլայ։
12 Շատ բան ունէի ձեզի գրելու, բայց չուզեցի
թղթով ու մելանով գրել. վասն զի յոյս ունիմ
որ ձեզի գամ, ու բերան առ բերան խօսիմ,
որպէս զի ձեր ուրախութիւնը կատարեալ ըլլայ։
13 Բարև կ'ընեն քեզի քու ընտրեալ քրոջդ որ-
դիները։*



## ԵՐՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

1 Առաքեալը կը գովէ Գայիոսի բարեպաշտութիւնը, 5 և հիւրասիրութիւնը, 7 որով ճշմարիտ քարոզիչները կը պատուէր. 9 կը գանգատի Դիոտրեփէսի անվայել վարմունքին և սնափառութեանը համար, 11 որուն չար օրինակէն զգուշանալու պատուէր կու տայ. 12 մասնաւոր վկայութիւն մը կ'ընէ Դեմետրիոսի բարի համբաւին վրայով։

1 Երէցէն Գայիոս սիրելիին, զոր ես կը սիրեմ
2 ճշմարտութեամբ։ Սիրելի, աղօթք կ'ընեմ որ
ամէն կողմէ յաջողութեան մէջ ու առողջ ըլ-
լաս, ինչպէս քու հոգիդ ալ յաջողութեան մէջ
3 է։ Վասն զի շատ ուրախացայ, երբ քանի մը
եղբայրներ եկան, ու քու ճշմարտութեանդ
վրայով վկայեցին, ինչպէս դուն ճշմարտու-
4 թեամբ կը քալես։ Ասկէ մեծ ուրախութիւն մը
չունիմ, որ կը լսեմ թէ իմ որդիներս ճշմար-
5 տութեան մէջ կը քալեն։ Սիրելի, դուն հա-

*Ոմանք կ'աւելցնեն, Ամէն։

հաւատարմաբար կ'ընես, ինչ որ կ'ընես եղբայր-
6 ներուն և օտարներուն․ Որոնք եկեղեցիին առջև
վկայեցին քու սիրոյդ վրայով․ որ եթէ աստ-
ուածահաճոյ կերպով զանոնք ճամբայ դնես,
7 աղէկ պիտի ընես։ Վասն զի Աստուծոյ անուանը
համար ելան, ու հեթանոսներէն բան մը չեն
8 առներ։ Ուստի մենք պարտաւոր ենք այնպիսի-
ները ընդունիլ, որպէս զի ճշմարտութեանը
գործակից ըլլանք։
9 Եկեղեցիին գրեցի․ բայց Դիոտրեփէս, որ
անոնց մէջ առաջին ըլլալ կ'ուզէ, մեզ չընդու-
10 նիր։ Ասոր համար եթէ գամ, անոր ըրած
գործերը պիտի յիշեմ, որ մեզի դէմ շաղակրա-
տելով չարախօսութիւն կ'ընէ․ և ասով ալ գոհ
չեղած՝ ինք չընդունիր եղբայրները, ու անոնք
որ կ'ուզեն ընդունիլ՝ կ'արգիլէ, ու եկեղեցիէն ալ
11 կը հանէ։ Սիրելի, չարին նմանող մի ըլլար,
հապա բարիին․ ան որ բարիք կը գործէ, Աս-
տուծմէ է․ բայց ան որ չարիք կը գործէ, անիկա
12 զԱստուած տեսած չէ։ Դեմետրիոսի համար
ամէնն ալ կը վկայեն, բուն իսկ ճշմարտութիւնն
ալ․ մենք ալ կը վկայենք, և դուք գիտէք որ
մեր վկայութիւնը ճշմարիտ է։
13 Շատ բան ունէի գրելու, բայց չեմ ուզեր
14 մելանով ու գրիչով քեզի գրել։ Սակայն յոյս
ունիմ մօտերս քեզ տեսնել, ու բերան առ
15 բերան պիտի խօսինք։ Խաղաղութիւն քեզի․
բարեկամները քեզի բարև կ'ընեն․ բարև ըրէ
մեր բարեկամներուն ամէն մէկուն անունով։

## ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՅՈՒԴԱՅԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

---

1 Առաքեալը կը յորդորէ քրիստոնեաները որ հաստատ կենան հաւատքին դաւանութեանը մէջ, 4 ծանուցանելով անոնց թէ խաբեբայ վարդապետներ մտած են անոնց մէջ՝ որպէս զի զանոնք մոլորեցնեն. որոնց դատապարտելի վարդապետութեանը ու վարմունքին համար սոսկալի պատիժ պատրաստուած է. 20 իսկ բարեպաշտներուն վրայով կ'իմացնէ թէ անոնք Աստուծոյ աղօթք ընելով՝ Սուրբ Հոգիին օգնականութիւնովը կրնան հաստատուն կենալ, շնորհքով աճիլ, անձերնին պահել և ուրիշներն ալ ազատել այս մոլորեցուցիչներուն որոգայթներէն։

1 Յուդա, Յիսուս Քրիստոսի ծառայ ու Յակոբոսի
եղբայրը, ձեզի որ Հայր Աստուծմէն սրբուած
էք, և Յիսուս Քրիստոսէ պահուած ու կանչուած.
2 Ողորմութիւն ու խաղաղութիւն և սէր ձեր
վրայ շատնայ։
3 Սիրելիներ, բոլոր ջանքը վրաս առնելով ձեզի
գրելու հասարակաց փրկութեանը համար, ին-
ծի հարկ սեպեցի ձեզի գրել ու յորդորել որ
մրցիք այն հաւատքին համար որ անգամ մը
4 սուրբերուն աւանդուեցաւ։ Քանզի մէկ քանի
մարդիկ գաղտուկ մտան, որ առաջուընէ այս
դատապարտութեանը համար որոշուած էին,
ամբարիշտներ, որոնք մեր Աստուծոյ շնորհքը
անառակութեան դարձուցին, և միմիայն *Իշ-
խանը ու մեր Տէր Յիսուս Քրիստոսը ուրա-
5 ցան։ Արդ կ'ուզեմ միտքերնիդ բերել, թէև
արդէն գիտէք ասիկա, թէ Տէրը որ ժողո-
վուրդը Եգիպտոսի երկրէն ազատեց, ետքը չհա-
6 ւատացողները կորսնցուց։ Եւ այն հրեշտակ-
ները, որոնք իրենց իշխանութիւնը չպահեցին,
հապա իրենց բնակութիւնը ձգեցին, մշտնջե-
նաւոր կապերով խաւարի մէջ պահեց մեծ

---

*Ոմանք ; Աստուած իշխանը

7 *օրուան դատաստանին։ Ինչպէս Սոդոմ ու Գո-*
*մոր և անոնց բոլորտիքը եղած քաղաքները,*
*որոնք ասոնց նման պոռնկեցան ընկերներուն*
*մարմնին ետևէն երթալով, մեր առջև օրինակ*
*կեցեր են՝ յաւիտենական կրակին դատապար-*
8 *տութիւնը ընդունելով։ Նմանապէս այս ցնո-*
*րածներն ալ մարմինը կը պղծեն, տէրութիւնը*
*կ'անարգեն, փառաւորներուն դէմ կը հայհոյեն։*
9 *Բայց Միքայէլ հրեշտակապետը երբ Սատանայի*
*դէմ գնելով՝ Մովսէսի մարմնին համար կը*
*վիճէր, չհամարձակեցաւ հայհոյութեան դա-*
*տապարտութիւն բերել անոր վրայ, հապա ըսաւ,*
10 *Տէրը յանդիմանէ քեզ։ Իսկ ասոնք այն բանե-*
*րուն զորոնք չեն հասկնար, հայհոյութիւն կ'ը-*
*նեն. և այն բաները զորոնք բնականաբար ան-*
*բան անասուններու պէս գիտեն, անոնց մէջ*
11 *կ'ապականին։ Վա՜յ անոնց, որոնք Կայէնի*
*ճամբան գացին, ու Բաղաամի մոլորութեանը*
*պէս ցանկութեամբ վարձքի ետևէ գացին, ու*
*Կորխի հակառակութեանը պէս կորսուեցան։*
12 *Ասոնք ձեր սիրոյ խնճոյքներուն մէջ արատներ*
*են, ու երբ ձեզի հետ կերուխումի կը նստին,*
*աներկիւղ իրենց անձը կը կերակրեն. անջուր*
*ամպեր՝ հովերէն քշուած. պտուղնին կորսըն-*
*ցուցած ծառեր, բերք չունեցող, երկու անգամ*
13 *մեռած, արմատէն խլուած։ Ծովու կատղած*
*ալիքներ, որոնք իրենց անձերուն ամօթը կը*
*փրփրեն. մոլորական աստղեր, որոնց համար*
*խաւարին մէգը պահուած է յաւիտեան։*
14 *Անոնց վրայ մարգարէացաւ Ենովք ալ, որ*
*եօթներորդ էր Ադամէ, ու ըսաւ, Ահա Տէրը*
15 *իր բիւրաւոր սուրբերովը եկաւ, Ամէնուն դա-*
*տաստան ընելու, ու բոլոր ամբարիշտները յան-*
*դիմանելու իրենց ըրած ամբարշտութեանը բո-*
*լոր գործերուն համար, և բոլոր խիստ խօսքե-*

րուն համար, զորոնք ամբարիշտ մեղաւորները
16 անոր դէմ խօսեցան։ Ասոնք տրտունջողներ ու-
քրթմնջողներ են, որոնք իրենց ցանկութիւն-
ներուն համեմատ կ'երթան, և իրենց բերան-
ները ամբարտաւան խօսքեր կը զրուցեն, և
17 շահի համար երեսպաշտութիւն կ'ընեն։ Բայց
դուք, սիրելիներ, միտքերնիդ բերէք այն խօս-
քերը որոնք մեր Տէր Յիսուս Քրիստոսի ա-
18 ռաքեալներէն առաջուընէ զրուցուեցան. Որոնք
ձեզի կ'ըսէին թէ Վերջին ժամանակը ծաղր
ընողներ պիտի ըլլան, որոնք իրենց ամբարիշտ
ցանկութիւններուն համեմատ պիտի երթան։
19 Ասոնք ինքզինքնին զատող շնչաւորներ են,
20 որոնք Հոգին չունին։ Բայց դուք, սիրելիներ,
անձերնիդ շինելով ձեր ամենասուրբ հաւատ-
քին վրայ, և Սուրբ Հոգիով աղօթք ընելով,
21 Անձերնիդ Աստուծոյ սիրոյն մէջ պահեցէք՝ մեր
Տէր Յիսուս Քրիստոսի ողորմութեանը սպասե-
22 լով յաւիտենական կեանքի համար։ Եւ խտրու-
23 թիւն ընելով՝ ոմանց ողորմեցէք։ Եւ ոմանք
վախով ազատեցէք՝ կրակէն յափշտակելով զանոնք,
ատելով մարմինէն աղտոտուած հանդերձն ալ։
24 Եւ անոր՝ որ կարող է ձեզ անբիծ պահել, և
իր փառքին առջև անարատ կայնեցնել ցնծու-
25 թիւնով, Մեր Փրկչին, միմիայն *Աստուծոյ,
[մեր Տէր Յիսուս Քրիստոսի ձեռքով] փառք
ու մեծութիւն, զօրութիւն ու իշխանութիւն
[բոլոր դարերէն առաջ,] և հիմա ու բոլոր դա-
րերու մէջ։ Ամէն։

*Օրին., իմաստուն Աստուծոյ



## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ԱՒԵՏԱՐԱՆՉԻՆ

---

## ԳԼՈՒԽ Ա

*4 Յովհաննէս իրեն եղած յայտնութիւնը կը գրէ Ասիայի եօթը եկեղեցիներուն, որոնց նշան ըլլալու համար ցուցուեցան իրեն՝ եօթը ոսկեղէն աշտանակները ։ 7 Քրիստոսի գալուստը, 14 ու անոր զօրութիւնը և մեծափառութիւնը ։*

1 Յիսուս Քրիստոսի յայտնութիւնը, զոր Աստ-
ուած անոր տուաւ իր ծառաներուն ցուցնելու
ինչ որ շուտով պէտք է ըլլայ. և իր հրեշտակին
ձեռքով ղրկելով՝ իր Յովհաննէս ծառային ի-
2 մացուց, Որ Աստուծոյ խօսքին վկայութիւնը
ըրաւ, ու Յիսուս Քրիստոսի վկայութիւնը՝ ինչ
3 որ տեսաւ ։ Երանի՜ անոր որ կը կարդայ, ու
անոնց որ կը լսեն այս մարգարէութեան խօս-
քերը, և կը պահեն ինչ որ անոր մէջ գրուած է.
վասն զի ժամանակը մօտ է ։
4 Յովհաննէսէ եօթը եկեղեցիներուն որոնք
Ասիայի մէջ են. շնորհք և խաղաղութիւն ձեզի
Անկէ որ է և որ էր և որ պիտի գայ, ու եօթը
Հոգիներէն՝ որոնք անոր աթոռին առջև են,
5 Եւ Յիսուս Քրիստոս հաւատարիմ վկայէն, որ
մեռելներուն անդրանիկն է ու երկրի թագա-
ւորներուն իշխանը. անոր որ մեզ սիրեց, ու
6 մեզ իր արիւնովը մեր մեղքերէն լուաց, Եւ
մեզ թագաւորներ ու քահանաներ ըրաւ Ա-
ստուծոյ ու իր Հօրը. անոր փառք և զօրութիւն
յաւիտեանս յաւիտենից ։ Ամէն ։
7 Ահա ամպերով կու գայ. ու ամէն աչք պիտի

տեսնէ զանիկա , և անոնք որ զանիկա խոցեցին .
և անոր վրայ կոծ պիտի ընեն երկրի բոլոր ազ-
8 գերը ։ Այո , Ամէն ։ Ես եմ Ալֆա և Օմէղա,*
կ'ըսէ Տէր [Աստուած], որ է և որ էր և որ
պիտի գայ , Ամենակալը ։
9 Ես Յովհաննէս ձեր եղբայրը , և Յիսուսի
Քրիստոսի նեղութեանը ու արքայութեանը և
համբերութեանը մէջ ընկերակիցը , Պատմոս
ըսուած կղզին էի՝ Աստուծոյ խօսքին համար ու
10 Յիսուս Քրիստոսի վկայութեանը համար ։ Ե-
†կիրակի օրը Հոգին իմ վրաս եկաւ , ու ետևէս
մեծ ձայն մը լսեցի փողի ձայնի պէս , որ կ'ըսէր ,
11 ‡Ինչ որ կը տեսնես , գիրքի մը մէջ գրէ , ու ղրկէ
||եօթը եկեղեցիներուն , որոնք Եփեսոսի , ու
Զմիւռնիայի , և Պերգամոնի , ու Թիւատիրի , և
Սարդիկէի , ու Փիղադելփիայի , և Լաոդի-
12 կիայի մէջ են ։ Եւ դարձայ այն ձայնը տեսնե-
լու՝ որ ինծի կը խօսէր . ու երբ դարձայ՝ եօթը
13 ոսկեղէն աշտանակներ տեսայ . Եւ եօթը աշ-
տանակներուն մէջ՝ մէկը Որդւոյ մարդոյ նման ,
պճղնաւոր պատմուճան մը հագած ու կուրծքին
14 վրայ ոսկի գօտի մը կապած . Եւ իր գլուխը ու
մազերը՝ բուրդի պէս ճերմակ ու ձիւնի պէս ,
15 ու իր աչքերը՝ կրակի բոցի պէս . Եւ իր ոտ-
քերը՝ ոսկեպղնձի նման , որպէս թէ հնոցի մէջ
կրակ դարձած , ու իր ձայնը՝ շատ ջուրերու
16 ձայնի պէս . Եւ իր աջ ձեռքին մէջ եօթը աստղ
ունէր , ու իր բերնէն սրած երկբերան սուր մը
կ'ելլէր , և իր երեսը արեւու պէս էր՝ որ իր զօ-
17 րութիւնովը կը փայլի ։ Ու երբ տեսայ զանիկա ,
իր ոտքը ինկայ մեռելի պէս , ու իր աջ ձեռքը
իմ վրաս դրաւ ու ըսաւ ինծի , Մի վախնար .

---

*Ոմանք չ'ունենան , Առաջինը ու վերջինը , †Այսինքն , տէրունական
‡Ոմանք , Ես եմ Ալֆա և Օմեղա , Առաջինը և վերջինը . և Ինչ
||Ոմանք , Ասիա եղած եօթը

18 ես եմ Առաջինը ու Վերջինը. Եւ ես կենդանի
եմ, ու ես ան եմ որ մեռայ, և ահա կենդանի
եմ յաւիտեանս յաւիտենից.* և ես ունիմ
19 մահուան ու դժոխքին բանալիները։ [Ուստի]
գրէ ինչ որ կը տեսնես, զայն որ կայ ու զայն որ
20 ետքը պիտի ըլլայ. Եօթը աստղերուն խոր-
հուրդը՝ զոր իմ աջ ձեռքիս մէջ տեսար, և եօթը
ոսկեղէն աշտանակները. այն եօթը աստղերը
եօթը եկեղեցիներուն հրեշտակներն են. և
եօթը աշտանակները† եօթը եկեղեցիներն են։

## ԳԼ. Բ

1 Եփեսոսի, 8 Զմիւռնիայի, 12 Պերգամոնի 18 և Թիւատիրի եկեղեցիներուն հրեշտակ-
ներուն՝ այսինքն հոգևոր պաշտօնեաներուն գրուելու պատուէրները, ու այն եկե-
ղեցիներուն եղած գովութիւնները ու յանդիմանութիւնները։

1 Եփեսոսի մէջ եղած եկեղեցւոյն հրեշտակին
գրէ. Այսպէս կ'ըսէ անիկա որ իր աջ ձեռքին
մէջ եօթը աստղերը ունի, ու եօթը ոսկեղէն
2 աշտանակներուն մէջ կը պտըտի. Գիտեմ քու
գործերդ և քու աշխատութիւնդ ու քու համ-
բերութիւնդ, և որ չարերուն չես կրնար տա-
նիլ, ու փորձեցիր զանոնք որ կ'ըսեն թէ իրենք
առաքեալ են, ու չեն, և գտար թէ ստախօս
3 են. Ու համբերութիւն ունենալով՝ նեղութիւն
կրեցիր ‡իմ անուանս համար" ու չթուլցար։
4 Բայց քեզի դէմ բան մը ունիմ, որ քու ա-
5 ռաջուան սէրդ ձգեցիր։ Միտքդ բեր հիմա
ուրկէ որ ինկար, ու ապաշխարէ և քու առաջուան
գործերդ ըրէ. եթէ ոչ՝ շուտով կու գամ քեզի,
ու քու աշտանակդ իր տեղէն պիտի շարժեմ՝
6 եթէ չապաշխարես։ Բայց ասիկա ունիս, որ
Նիկողայոսեանց գործերը կ'ատես, զորոնք ես ալ
7 կ'ատեմ։ Ան որ ականջ ունի, թող լսէ թէ

*Ոմանք կ'աւելցնեն, Ամէն. †Ոմանք կ'աւելցնեն, զորոնք տեսար,
‡Ոմանք, և իմ անուանս համար աշխատեցար

Հոգին ինչ կ՚ըսէ եկեղեցիներուն. Ան որ կը
յաղթէ, անոր ուտել պիտի տամ կենաց ծա-
ռէն՝ որ Աստուծոյ դրախտին մէջ է։
8 Եւ Զմիւռնիայի մէջ եղած եկեղեցւոյն հրեշ-
տակին գրէ. Այսպէս կ՚ըսէ Առաջինը ու Վեր-
9 ջինը, որ մեռաւ ու կենդանացաւ. Գիտեմ քու
գործերդ ու նեղութիւնդ և աղքատութիւնդ,
(բայց հարուստ ես,) ու անոնց հայհոյութիւնը՝
որ կ՚ըսեն թէ իրենք Հրեայ են, ու չեն, հապա
10 Սատանայի ժողովք մը։ Բնաւ մի վախնար այն
բաներէն զորոնք պիտի կրես. ահա Բանսարկուն
ձեզմէ մէկ քանիները բանտը պիտի ձգէ որ-
պէս զի փորձուիք, և տասը օր նեղութիւն պիտի
ունենաք. մինչև ի մահ հաւատարիմ եղիր, ու
11 քեզի կենաց պսակը պիտի տամ։ Ան որ ականջ
ունի, թող լսէ թէ Հոգին ինչ կ՚ըսէ եկեղեցի-
ներուն։ Ան որ կը յաղթէ, երկրորդ մահէն
պիտի չվնասուի։
12 Եւ Պերգամոնի մէջ եղած եկեղեցւոյն հրեշ-
տակին գրէ. Այսպէս կ՚ըսէ անիկա որ սրած
13 երկբերան սուրը ունի. Գիտեմ քու գործերդ,
և թէ ո՛ւր կը բնակիս, այսինքն Սատանայի ա-
թոռին եղած տեղը, ու իմ անունս կը պահես,
և իմ հաւատքս չուրացար այն օրերը անգամ՝
որ Անթիպաս իմ հաւատարիմ վկաս սպան-
նուեցաւ ձեր մէջ, ուր Սատանայ կը բնակի։
14 Բայց քեզի դէմ քիչ մը բան ունիմ, որ հոն
Բաղաամի վարդապետութիւնը բռնողներ ու-
նիս, որ Բաղակի սորվեցուց Իսրայէլի որդինե-
րուն առջև գայթակղութիւն դնել, որպէս զի
անոնք կուռքերու զոհուածներ ուտեն ու
15 պոռնկութիւն ընեն։ Այսպէս ալ դուն Նիկո-
ղայոսեանց վարդապետութիւնը բռնողներ ու-
16 նիս, զոր ես կ՚ատեմ։ [Ուստի] ապաշխարէ.
եթէ ոչ՝ շուտով կու գամ քեզի, ու իմ բերնիս

17 սրովը պիտի պատերազմիմ անոնց հետ։ Ան
որ ականջ ունի, թող լսէ թէ Հոգին ինչ կ'ըսէ
եկեղեցիներուն. Ով որ կը յաղթէ, պահուած
մանանայէն ուտել պիտի տամ անոր, ու ճեր-
մակ խիճ մը պիտի տամ անոր, և այն խիճին
վրայ նոր անուն մը գրուած, զոր մէ՛կը չգիտեր,
բայց միայն ան՝ որ կ'ընդունի։
18 Եւ Թիւատիրի մէջ եղած եկեղեցւոյն հրեշ-
տակին գրէ. Այսպէս կ'ըսէ Աստուծոյ Որդին,
որ կրակի բոցի պէս աչքեր ունի, ու իր ոտ-
19 քերը ոսկեպղինձի նման են. Գիտեմ քու գոր-
ծերդ և սէրդ ու ծառայութիւնդ, և քու հա-
ւատքդ ու համբերութիւնդ, և թէ քու վեր-
20 ջին գործերդ առաջիններէն շատ են։ Բայց
քեզի դէմ *բան մը" ունիմ, որ թող կու տաս
Յեզաբէլ կնոջ, որ ինքզինք մարգարէուհի
կ'անուանէ. ու իմ ծառաներս մոլորեցնելով՝
կը սորվեցնէ պոռնկութիւն ընել և կուռքերու
21 զոհուածներ ուտել։ Եւ ես անոր ժամանակ
տուի իր պոռնկութեանը վրայ ապաշխարելու,
22 ու չապաշխարեց։ Ահա ես զանիկա անկողին
պիտի ձգեմ, ու անոր հետ շնութիւն ընողները՝
մեծ նեղութեան մէջ, եթէ իրենց գործերուն
23 վրայ չապաշխարեն։ Եւ անոր զաւակները մահով
պիտի սպաննեմ. ու բոլոր եկեղեցիները պիտի
գիտնան թէ ես ան եմ՝ որ երիկամունքները
ու սիրտերը կը քննեմ. և ամէն մէկուդ ձեր
գործերուն համեմատ պիտի հատուցանեմ։
24 Բայց ձեզի կ'ըսեմ միւսներուդ որ Թիւատիրի
մէջ էք, ու այս վարդապետութիւնը չունիք,
որ չճանչցաք Սատանայի խորունկ բաները,
(ինչպէս կ'ըսեն,) Ձեր վրայ ուրիշ ծանրութիւն
25 չեմ ձգեր. Հապա զայն որ ունիք՝ պահեցէք
26 մինչև ես գամ։ Եւ ան որ կը յաղթէ ու իմ

---

*Ոմանք, քիչ. մը բան

գործերս մինչև վերջը կը պահէ, անոր իշխա-
27 նութիւն պիտի տամ ազգերուն վրայ, (Եւ
պիտի հովուէ զանոնք երկաթէ գաւազանով.
անոնք բրուտի ամաններու պէս պիտի փշրուին.)
28 Ինչպէս ես ալ իմ Հօրմէս առի. ու անոր պիտի
29 տամ առաւօտեան աստղը։ Ան որ ականջ ունի,
թող լսէ թէ Հոգին ինչ կ'ըսէ եկեղեցիներուն։

## ԳԼ. Գ

2 Քրիստոս կը յանդիմանէ Սարդիկէի եկեղեցին հրեշտակը. 3 կը յորդորէ զանիկա որ ապաշխարէ, և սպառնալիք կ'ընէ անոր. 8 կը գովէ Փիղադեղփիայի եկեղեցին հրեշտակը 10 իր արթնութեանը և համբերութեանը համար. 15 կը նախատէ Լաւոդիկէի եկեղեցին հրեշտակը՝ ոչ պաղ և ոչ տաք ըլլալուն համար, 19 և կը պատուիրէ որ աւելի նախանձաւոր ու ջերմեռանդ ըլլայ։ 20 Քրիստոս դուռը կայնած կը բաղխէ։

1 Եւ Սարդիկէի մէջ եղած եկեղեցւոյն հրեշտա-
կին գրէ. Այսպէս կ'ըսէ անիկա որ ունի Աս-
տուծոյ եօթը Հոգիները ու եօթը աստղերը.
Գիտեմ քու գործերդ՝ որ դուն անուն ունիս
2 թէ կենդանի ես, ու մեռած ես։ Արթուն կե-
ցիր և հաստատէ մնացած բաները որոնք մեռ-
նելու վրայ են, վասն զի քու գործերդ Աստու-
3 ծոյ առջև կատարեալ չգտայ։ Հիմա միտքդ բեր
թէ ինչպէս ընդունեցիր ու լսեցիր, ու պահէ
և ապաշխարէ. բայց եթէ արթննալու չըլլաս,
գողի պէս քու վրադ պիտի գամ, ու բնաւ
պիտի չգիտնաս թէ ո՛ր ժամուն քու վրադ պիտի
4 գամ։ Սակայն քանի մը անձեր ունիս Սարդի-
կէի մէջ, որոնք իրենց հանդերձները չաղտո-
տեցին, և ճերմակներով պիտի պտըտին ինծի
5 հետ, քանզի արժանի են։ Ան որ կը յաղթէ՝
ճերմակներ պիտի հագնի, ու ես անոր անունը
կենաց գիրքէն պիտի չաւրեմ. և անոր անունը
պիտի դաւանիմ իմ Հօրս առջև ու անոր հրեշ-
6 տակներուն առջև։ Ան որ ականջ ունի, թող
լսէ թէ Հոգին ինչ կ'ըսէ եկեղեցիներուն։

7 Եւ Փիղադեղփիայի մէջ եղած կեղեցւոյն
հրեշտակին գրէ . Այսպէս կ'ըսէ այն Սուրբը,
այն ճշմարիտը որ Դաւիթի բանալին ունի .
կը բանայ ու մէ՛կը չկայ որ գոցէ, և կը գոցէ
8 ու մէ՛կը չկայ որ բանայ . Գիտեմ քու գործերդ .
ահա քու առջեւդ բացուած դուռ մը դրի, զոր
մէ՛կը չկրնար գոցել . վասն զի դուն քիչ մը կա-
րողութիւն ունիս, և իմ խօսքս պահեցիր ու
9 իմ անունս չուրացար : Ահա ես քեզի կու տամ
Սատանայի ժողովքէն եղողները, որոնք կ'ըսեն
թէ իրենք Հրեայ են ու չեն, հապա սուտ կ'ը-
սեն . ահա պիտի ստիպեմ զանոնք որ գան ու
երկրպագութիւն ընեն քու ոտքերուդ առջև,
10 և ճանչնան թէ ես քեզ սիրեցի : Որովհետև
իմ համբերութեանս խօսքը պահեցիր, ես ալ
քեզ պիտի պահեմ փորձութեան ժամանակ,
որ պատրաստ է գալու բոլոր աշխարհի վրայ՝
երկրի երեսը բնակողները փորձելու համար :
11 Ահա ես շուտով կու գամ . ունեցածդ ամուր բռնէ,
12 որպէս զի մէ՛կը չառնէ քու պսակդ : Ան որ
կը յաղթէ, անիկա իմ Աստուծոյս տաճարին
մէջ սիւն մը պիտի ընեմ, ու ալ դուրս պիտի
չելլէ . և անոր վրայ իմ Աստուծոյս անունը
պիտի գրեմ, ու իմ Աստուծոյս քաղաքին ա-
նունը, այսինքն նոր Երուսաղէմի, որ երկինքէն
իմ Աստուծմէս կ'իջնէ, և իմ նոր անունս .
13 Ան որ ականջ ունի, թող լսէ թէ Հոգին ինչ
կ'ըսէ եկեղեցիներուն :
14 Եւ Լաւոդիկէի մէջ եղած եկեղեցւոյն հրեշ-
տակին գրէ . Այսպէս կ'ըսէ Ամէնը, հաւատա-
րիմ ու ճշմարիտ Վկան, Աստուծոյ արարած-
15 ներուն Սկիզբը . Գիտեմ քու գործերդ, որ ոչ
պաղ ես ու ոչ տաք . երանի թէ պաղ ըլլայիր
16 կամ տաք : Ուստի դուն որ գաղջ ես, ու ոչ
տաք՝ ոչ ալ պաղ, քեզ բերնէս դուրս փսխելու

17 վրայ եմ․ Քանզի կ՚ըսես, Ես հարուստ եմ ու
մեծցայ, և բանի մը կարօտ չեմ․ ու չես գիտեր
որ դուն խեղճ՝ ու թշուառական ես, և աղքատ
18 ու կոյր ու մերկ։ Ես քեզի խորհուրդ կու տամ․
ինծմէ կրակի մէջ փորձուած ոսկի ծախու առ,
որպէս զի հարստանաս, ու ճերմակ հանդերձ-
ներ՝ որպէս զի հագնիս, որպէս զի քու ամօթալի
մերկութիւնդ չերևնայ․ և աչքերդ դեղ դիր
19 որպէս զի տեսնես։ Ես իմ ամէն սիրածս կը
յանդիմանեմ ու կը խրատեմ․ ուստի նախան-
20 ձաւոր եղիր ու ապաշխարէ։ Ահա ես դուռը
կայներ եմ ու կը զարնեմ․ եթէ մէկը իմ ձայնս
լսէ ու դուռը բանայ, անոր քով պիտի մտնեմ
և անոր հետ ընթրիք պիտի ընեմ, ան ալ ինծի
21 հետ։ Ան որ կը յաղթէ, ինծի հետ իմ աթոռս
նստել պիտի տամ անոր, ինչպէս ես ալ յաղ-
թեցի ու իմ Հօրս հետ անոր աթոռը նստայ։
22 Ան որ ականջ ունի, թող լսէ թէ Հոգին ինչ
կ՚ըսէ եկեղեցիներուն։

## ԳԼ. Դ

2 Յովհաննէս Աստուծոյ աթոռը կը տեսնէ երկինքին մէջ։ 4 Քսանըչորս երէցները։ 6 Չորս կենդանիները՝ որոնք առջևնուն ու ետևնուն աչքերով լեցուն էին։ 10 Երէցները իրենց պսակները աթոռին վրայ նստողին ոտքը դնելով, երկրպագութիւն կ՚ընեն անոր։

1 Այս բաներէն ետքը տեսայ, և ահա երկինքի
մէջ բացուած դուռ մը կար, և առաջին ձայնը
զոր լսեցի՝ փողի նման էր, որ ինծի հետ կը խօ-
սէր ու կ՚ըսէր, Հոս ելիր ու ասկէ ետքը ըլլա-
2 լու բաները քեզի ցուցնեմ։ Եւ շուտ մը Հոգին
իմ վրաս եկաւ․ և ահա աթոռ մը դրուած էր
3 երկինքի մէջ․ Ու աթոռին վրայ մէկը նստեր էր․
և նստողը յասպիս ու սարդիոն քարերու ե-
4 րևութին նման էր։ Եւ աթոռին բոլորտիքը
ծիածան՝ զմրուխտի երևութի նման․ ու աթո-

*ունին բոլորտիքը քսանըչորս աթոռներ, և այն
աթոռներուն վրայ քսանըչորս երէցներ *նստեր
էին՝՝ ճերմակ հանդերձներ հագած, ու գլուխ-
5 նին ոսկիէ պսակներ ունէին։ Եւ աթոռէն փայլակ-
ներ ու ձայներ և որոտումներ կ'ելլէին, ու ա-
թոռին առջև եօթը հատ բորբոքած կրակի
ղամբարներ կային. որոնք Աստուծոյ եօթը
6 Հոգիներն են։ Եւ աթոռին առջև իբրև ա-
պակեղէն ծով մը՝ ակնվանիի նման, և աթո-
ռին մէջ ու աթոռին բոլորտիքը՝ չորս կենդանի-
ներ, որոնք աչքերով լեցուն էին առջևէ ու
7 ետևէ։ Եւ առաջին կենդանին առիւծի նման
էր, ու երկրորդ կենդանին՝ զուարակի նման,
և երրորդ կենդանին մարդու երես ունէր, ու
8 չորրորդ կենդանին՝ թռչող արծիւի նման։ Եւ
չորս կենդանիներուն ամէն մէկը շուրջանակի
վեց վեց թև ունէր, ու ներսէն աչքերով լե-
ցուն էին. ու չէին հանգչեր ոչ ցորեկը ոչ ալ
գիշերը՝ ըսելով, Սուրբ, Սուրբ, Սուրբ Տէր
Աստուած Ամենակալ, որ էր և որ է և որ պիտի
9 գայ։ Ու երբ այն կենդանիները փառք ու
պատիւ և գոհութիւն կու տային աթոռին վրայ
նստողին, որ կենդանի է յաւիտեանս յաւի-
10 տենից. Քսանըչորս երէցները աթոռին վրայ
նստողին առջև կ'իյնային ու երկրպագութիւն
կ'ընէին յաւիտեանս յաւիտենից կենդանի ե-
ղողին, և իրենց պսակները աթոռին առջև
կը ձգէին՝ ըսելով, Արժանի ես, Տէր, փառք
ու պատիւ և զօրութիւն առնելու, վասն զի
ամէն բան դուն ստեղծեցիր, և քու կամքովդ
եղան ու ստեղծուեցան։*

---

*Յուն., նստած տեսայ

# ԳԼ. Ե

*1 Եօթը կնիքով կնքուած գիրքը ։ Միայն մորթուած Գառնուկը արժանի էր զանիկա բանալու ։ 12 Վասն որոյ երէցները փառք ու գոհութիւն կու տան անոր, 9 ու կը խոստովանին թէ անիկա փրկեց զիրենք իր արիւնովը ։*

1 Եւ աթոռին վրայ նստողին աջ ձեռքը գիրք մը
տեսայ՝ ներսէն ու դուրսէն գրուած, և եօթը
2 կնիքով կնքուած ։ Ու զօրաւոր հրեշտակ մը
տեսայ՝ որ մեծ ձայնով կը կանչէր, Ո՞վ ար-
ժանի է այդ գիրքը բանալու և անոր կնիքները
3 քակելու ։ Եւ ոչ երկինքի մէջ, ոչ երկրի վրայ
ու ոչ երկրի տակ գտնուեցաւ մէկը՝ որ կարող ըլ-
լար այն գիրքը բանալ, ոչ ալ անոր նայիլ ։
4 Ես ալ սաստիկ կու լայի՝ որ մէ՛կը արժանի չգըտ-
նուեցաւ այն գիրքը բանալու*, ոչ ալ անոր նայե-
5 լու ։ Ու երէցներէն մէկը ըսաւ ինծի, Մի լար.
ահա Յուդայի ցեղէն եղող Առիւծը, Դաւիթի
Արմատը, յաղթեց այն գիրքը բանալու ու անոր
6 եօթը կնիքները քակելու ։ Եւ տեսայ որ աթո-
ռին ու չորս կենդանիներուն մէջտեղ և երէց-
ներուն մէջտեղ կայնած Գառնուկ մը կար, որ-
պէս թէ մորթուած, որ եօթը եղջիւր ու եօթը
աչք ունէր, որոնք Աստուծոյ եօթը Հոգիներն
7 են՝ որ բոլոր երկիր կը ղրկուին ։ Եւ անիկա եկաւ
ու աթոռին վրայ նստողին աջ ձեռքէն գիրքը
8 առաւ ։ Ու երբ գիրքը առաւ, չորս կենդանի-
ները ու քսանըչորս երէցները Գառնուկին
առջև ինկան, և ամէնն ալ քնարներ ունէին,
ու ոսկիէ խնկամաններ՝ խունկով լեցուն, որ
9 սուրբերուն աղօթքն է ։ Եւ նոր երգ մը կ'եր-
գէին՝ ըսելով, Արժանի ես դուն այդ գիրքը
առնելու և անոր կնիքները բանալու. վասն զի
մորթուեցար, ու մեզ ծախու առիր Աստուծոյ՝
քու արիւնովդ ամէն ցեղէ ու լեզուէ և ժողո-
10 վուրդէ ու ազգէ. Եւ †մեզ մեր Աստուծոյն թա-

---

*Ոմանք՝ չգտնուեցաւ, և կարդալու

†Ոմանք, զանոնք

դաւորներ ու քահանաներ ըրիր, ու երկրի վրայ
11 պիտի *թագաւորենք։ Եւ նայեցայ՝ ու շատ
հրեշտակներու ձայն լսեցի, որոնք աթոռին ու
կենդանիներուն և երէցներուն բոլորտիքն էին.
ու անոնց թիւն էր բիւրք բիւրուց և հազարք
12 հազարաց. Որոնք մեծ ձայնով կ՚ըսէին, Այդ
մորթուած Գառնուկը արժանի է զօրութիւն
ու հարստութիւն և իմաստութիւն ու կարո-
ղութիւն և պատիւ ու փառք և օրհնութիւն
13 առնելու։ Եւ բոլոր արարածները, որ երկինքի
մէջ ու երկրի վրայ ու երկրի տակ և ծովու մէջ,
ու ամէն ինչ որ անոնց մէջ կայ՝ լսեցի որ կ՚ը-
սէին, Աթոռին վրայ նստողին և Գառնուկին
օրհնութիւն ու պատիւ և փառք ու զօրութիւն
14 յաւիտեանս յաւիտենից։ Եւ չորս կենդանի-
ները կ՚ըսէին, Ամէն. ու †երէցները ինկան ու
երկրպագութիւն ըրին‡։

## ԳԼ. Զ

Վ կնիքներուն կարգաւ բացուիլը, ու անոնց հետեւած երեւոյթները։

1 Եւ տեսայ, երբ Գառնուկը ‖կնիքներէն մէկը"
բացաւ, ու չորս կենդանիներուն մէկէն որո-
տումի պէս ձայն մը լսեցի որ կ՚ըսէր, Եկուր
2 ու տես։ Ու տեսայ, և ահա ճերմակ ձի մը,
ու անոր վրայ հեծնողը աղեղ մը ունէր. և
պսակ մը տրուեցաւ անոր, և անիկա յաղթող
էր ու յաղթելու ելաւ։
3 Ու երբ երկրորդ կնիքը բացաւ, երկրորդ
4 կենդանիէն լսեցի որ կ՚ըսէր, §Եկուր։ Եւ ուրիշ
ձի մը ելաւ շառագոյն, ու անոր վրայ հեծնո-
ղին իշխանութիւն տրուեցաւ որ երկրէն խաղաղու-
թիւնը առնէ, որպէս զի իրար սպաննեն. ու
անոր մէկ մեծ սուր մը տրուեցաւ։

*Ոմանք, թագաւորեն †Ոմանք, քսանըչորս երէցները
‡Ոմանք կ՚աւելցնեն, յաւիտեանս յաւիտենից կենդանի եղողին
‖Ոմանք, եօթը կնիքները §Ոմանք, Եկուր ու տես

5 Ու երբ երրորդ կնիքը բացաւ, երրորդ կեն-
դանիէն լսեցի որ կ՚ըսէր, Եկուր ու տես. ու
տեսայ, և ահա սև ձի մը, ու անոր վրայ հեծ-
6 նողը իր ձեռքը կշիռ մը ունէր։ Ու չորս կեն-
դանիներուն մէջէն ձայն մը լսեցի որ կ՚ըսէր,
Կապիճ մը ցորենը մէկ դահեկանի, ու երեք
կապիճ գարին մէկ դահեկանի. և ձէթին ու
գինիին վնաս չընես։
7 Ու երբ չորրորդ կնիքը բացաւ, չորրորդ կեն-
դանիէն ձայն մը լսեցի որ կ՚ըսէր, Եկուր ու
8 տես։ Ու տեսայ, և ահա դեղին ձի մը, ու անոր
վրայ հեծնողին անունը Մահ էր, և Դժոխքը
անոր ետևէն կ՚երթար. ու անոնց իշխանու-
թիւն տրուեցաւ երկրի չորրորդ մասին վրայ,
որ սրով ու սովով և մահով ու երկրի գազան-
ներով սատկեցնեն։
9 Ու երբ հինգերորդ կնիքը բացաւ, սեղանին
տակ տեսայ այն մարդոց հոգիները, որոնք
սպաննուած էին Աստուծոյ խօսքին համար, ու
անոր վկայութեանը համար՝ զոր իրենք ունէին.
10 Եւ մեծ ձայնով աղաղակեցին ու ըսին, Ով սուրբ
ու ճշմարիտ Տէր, մինչև ե՞րբ չես դատեր ու
մեր արիւնին վրէժը երկրի բնակիչներէն պա-
11 հանջեր։ Եւ ճերմակ հանդերձներ տրուեցան
անոնց, ու ըսուեցաւ անոնց որ քիչ մը ատեն ալ
հանգչին, մինչև անոնց ծառայակիցները ու ա-
նոնց եղբայրները լման ըլլան, որոնք իրենց պէս
պիտի սպաննուէին։
12 Եւ տեսայ, երբ վեցերորդ կնիքը բացաւ, ու
մեծ շարժ մը եղաւ, ու արևը սևցաւ մազեղէն
քուրձի մը պէս, և լուսինը [բոլորովին] արիւնի
13 պէս եղաւ. Ու երկնքի աստղերը գետինը
թափթփեցան, ինչպէս սաստիկ հովէն շար-
ժուած թզենին իր տհաս պտուղները կը թափէ.
14 Եւ երկինք գալարուող տոմսի մը պէս կը քաշ-

ունէր․ ու բոլոր լեռները և կղզիները իրենց
15 տեղերէն շարժեցան ։ Ու երկրի թագաւորները
և մեծամեծները ու հարուստները, հազարա-
պետները և զօրաւորները, ու բոլոր ծառաները
ու բոլոր ազատները այրերուն և լեռներու ա-
16 պառաժներուն մէջ պահուըտեցան․ Եւ լեռ-
ներուն ու ապառաժներուն կ՚ըսէին, Մեր վրայ
ինկէք ու մեզ ծածկեցէք անոր երեսէն՝ որ ա-
թոռին վրայ կը նստի, ու Գառնուկին բարկու-
17 թենէն ։ Վասն զի անոր բարկութեանը մեծ օրը
եկաւ, և ո՞վ կրնայ դիմանալ ։

## ԳԼ․ Է

2 Հրեշտակ մը Աստուծոյ ծառաներուն ճակատները կը կնքէ ։ 4 Կնքուածներուն թիւը, այսինքն Իսրայէլի ամէն մէկ ցեղէն որոշեալ թիւ մը, 9 ու բոլոր ուրիշ ազգերէն անհամար ժողովուրդներ՝ որոնք աթոռին առջև կը կենային ճերմակ հանդերձները հագած՝ ու ձեռքերնին արմաւենիներ բռնած ։ 14 Անոնց հանդերձները Գառնուկին արիւնովը լուացուած էին ։

1 Եւ անկէ ետև տեսայ չորս հրեշտակներ՝ որոնք
երկրի չորս անկիւնը կեցեր էին, ու երկրի չորս
հովերը բռներ էին, որպէս զի երկրի վրայ հով
չփչէ, ու ոչ ծովու վրայ, ոչ ալ ծառի մը վրայ ։
2 Եւ ուրիշ հրեշտակ մը տեսայ որ արևելքէն
ելաւ, ու կենդանի Աստուծոյ կնիքը ունէր․ և
մեծ ձայնով մը աղաղակեց այն չորս հրեշտակ-
ներուն, որոնց իշխանութիւն տրուած էր երկրի ու
3 ծովուն վնասելու, Ու ըսաւ, Երկրի վնաս մի
ընէք, ոչ ծովուն, ոչ ալ ծառերուն, մինչև մեր
Աստուծոյն ծառաներուն ճակատները կնքենք ։
4 Եւ կնքուածներուն համրանքը լսեցի՝ որ էր
հարիւր քառասունըչորս հազար՝ Իսրայէլի որ-
5 դիներուն բոլոր ցեղերէն կնքուած․ Յուդայի
ցեղէն տասուերկու հազար կնքուած, Ռուբէնի
ցեղէն տասուերկու հազար կնքուած, Գադի
6 ցեղէն տասուերկու հազար կնքուած, Ասերի
ցեղէն տասուերկու հազար կնքուած, Նեփթա-

ղիմի ցեղէն տասներկու հազար կնքուած, Մա-
նասէի ցեղէն տասներկու հազար կնքուած,
7 Շմաւոնի ցեղէն տասներկու հազար կնքուած,
Ղեւիի ցեղէն տասներկու հազար կնքուած,
Իսաքարի ցեղէն տասներկու հազար կնքուած,
8 Զաբուղոնի ցեղէն տասներկու հազար կն-
քուած, Յովսէփի ցեղէն տասներկու հազար
կնքուած, Բենիամինի ցեղէն տասներկու հա-
զար կնքուած։
9 Անկէ ետքը տեսայ, և ահա մեծ բազմու-
թիւն՝ զոր մէ՛կը չէր կրնար համրել, բոլոր ազ-
գերէն ու ցեղերէն և ժողովուրդներէն ու լե-
զուներէն, որոնք աթոռին առջև ու Գառնու-
կին առջև կեցեր էին՝ ճերմակ հանդերձներ
հագած և ձեռքերնին արմաւենիներ բռնած․
10 Ու մեծաձայն կաղաղակէին՝ ըսելով, Փրկու-
թիւն մեր Աստուծոյն՝ որ աթոռին վրայ կը նստի,
11 ու Գառնուկին։ Եւ բոլոր հրեշտակները աթո-
ռին ու երէցներուն և չորս կենդանիներուն բո-
լորտիքը կեցեր էին, ու իրենց երեսներուն վրայ
աթոռին առջև ինկան ու Աստուծոյ երկրպա-
12 գութիւն ըրին, Ըսելով, Ամէն․ օրհնութիւն
ու փառք և իմաստութիւն ու գոհութիւն և
պատիւ ու զօրութիւն և կարողութիւն մեր
Աստուծոյն յաւիտեանս յաւիտենից։ Ամէն։
13 Ու երէցներէն մէկը պատասխան տալով՝ ինծի
ըսաւ, Ասոնք որ ճերմակ հանդերձներ հագած
14 են՝ ո՞վ են, և ուրկէ՞ եկան։ Ես ալ ըսի անոր,
Տէր իմ, դուն գիտես․ ու ըսաւ ինծի, Ասոնք են
մեծ նեղութենէ եկողները, որոնք իրենց հան-
դերձները լուացին, ու զանոնք Գառնուկին
15 արիւնովը ճերմկցուցին․ Անոր համար Աստու-
ծոյ աթոռին առջև են, և իրեն կը ծառայեն
ցորեկ ու գիշեր իր տաճարին մէջ․ և աթոռին
վրայ նստողը իր վրանը պիտի տարածէ անոնց

16 վրայ։ Այսուհետեւ ոչ պիտի անօթենան ու ոչ
ծարաւին, ոչ ալ արեւը կամ տաքութիւն մը
17 անոնց վրայ պիտի իյնայ. Վասն զի Գառնուկը
որ աթոռին մէջ է, պիտի հովուէ զանոնք, ու
կենդանի ջուրերու աղբիւրները պիտի առաջ-
նորդէ զանոնք. և Աստուած բոլոր արցունքները
պիտի սրբէ անոնց աչքերէն։

## ԳԼ. Ը

1 Եօթներորդ կնիքին բացուած ժամանակը, 2 եօթը հրեշտակներու եօթը փողեր կը տրուին։ 6 Անոնցմէ չորսը իրենց փողերը կը հնչեցնեն, որու կը հետեւին մեծ հարուածներ ու պատուհասներ։

1 Ու երբ եօթներորդ կնիքը բացաւ, լռութիւն
եղաւ երկինքը կէս ժամու չափ։
2 Եւ տեսայ այն եօթը հրեշտակները, որոնք
Աստուծոյ առջեւ կը կայնէին. ու անոնց եօթը
3 փող տրուեցաւ։ Եւ ուրիշ հրեշտակ մը եկաւ
սեղանին առջեւ կայնեցաւ, ու ոսկեղէն խնկա-
նոց մը ունէր. և իրեն շատ խունկ տրուեցաւ,
որպէս զի բոլոր սրբոց աղօթքներուն հետ ա-
թոռին առջեւ եղող ոսկի սեղանին վրայ մա-
4 տուցանէ։ Եւ խունկերուն ծուխը սրբոց ա-
ղօթքներուն հետ հրեշտակին ձեռքէն Աստու-
5 ծոյ առջեւ ելաւ։ Ու հրեշտակը առաւ խնկա-
նոցը ու զանիկա սեղանին կրակէն լեցուց, և
ձգեց երկրի վրայ. ու եղան ձայներ և որոտում-
6 ներ ու փայլակներ ու երկրաշարժ։ Եւ եօթը
հրեշտակները, որոնք եօթը փողերը ունէին,
պատրաստուեցան որ հնչեցնեն։
7 Եւ առաջին հրեշտակը փողը հնչեցուց, ու
եղաւ կարկուտ ու կրակ արիւնով խառնուած,
ու երկրի վրայ ձգուեցաւ, [ու երկրի երրորդ-
մասը այրեցաւ,] և ծառերուն երրորդ մասը
այրեցաւ, ու ամէն կանանչ խոտ այրեցաւ։
8 Ու երկրորդ հրեշտակը փողը հնչեցուց, և

որպէս թէ մեծ լեռ մը կրակով բորբոքած՝ ծովը
ձգուեցաւ, ու ծովուն երրորդ մասը արիւն ե-
9 ղաւ. Եւ ծովուն մէջի շնչաւոր արարածներուն
երրորդ մասը մեռաւ, ու նաւերուն երրորդ
մասը կորսուեցաւ։
10 Ու երրորդ հրեշտակը փողը հնչեցուց, ու
երկինքէն մեծ աստղ մը ինկաւ ղամբարի պէս
բորբոքած, և գետերուն ու ջուրի աղբիւրնե-
11 րուն երրորդ մասին վրայ ինկաւ։ Եւ այն աստ-
ղին անունը Օշինդր էր. ու ջուրերուն երրորդ
մասը օշինդր եղաւ, և շատ մարդիկ ջուրերէն
մեռան, քանզի դառն եղան։
12 Եւ չորրորդ հրեշտակը փողը հնչեցուց, ու
արևին երրորդ մասը և լուսնին երրորդ մասը
ու աստղերուն երրորդ մասը զարնուեցաւ, այն-
պէս որ անոնց երրորդ մասը խաւարի, և օր-
ուան երրորդ մասը լոյս չտայ, նոյնպէս ալ
գիշերուանը։
13 Եւ նայեցայ՝ ու երկինքի մէջ թռչող *հրեշ-
տակի մը ձայն լսեցի, որ մեծ ձայնով կ'ըսէր,
Վա՜յ, վա՜յ, վա՜յ երկրի վրայ բնակողներուն՝
այն մնացած փողի ձայներուն համար, զորոնք
երեք հրեշտակները պիտի հնչեցնեն։

## ԳԼ. Թ

1 Հինգերորդ հրեշտակը փողը հնչեցնելով՝ աստղ մը կ'իյնայ երկինքէն, որու կը տրուի անդունդին բանալին։ 2 Անիկա անդունդը կը բանայ, ուրկէ կարիճներու պէս մարախներ կ'ելլեն։ 12 Մէկ վայը կ'անցնի։ 13 Վեցերորդ փողը կը հնչուի։ 14 Չորս կապուած հրեշտակները կ'արձակուին։

1 Եւ հինգերորդ հրեշտակը փողը հնչեցուց, ու
տեսայ որ երկինքէն աստղ մը ինկաւ երկրի
վրայ. և անդունդի գուբին բանալին անոր տըր-
2 ուեցաւ. Ու անդունդին գուբը բացաւ, ու այն
գուբէն ծուխ կ'ելլէր մեծ հնոցի մը ծուխին

*Ոմանք, արծուի

պէս. ու խաւարեցաւ արևը ու օդը գուբին
ծուխէն ։
3 Եւ ծուխէն մարախներ ելլէին երկրի վրայ,
ու անոնց զօրութիւն տրուեցաւ երկրի կարիճ-
4 ներուն ունեցած զօրութեանը պէս. Եւ անոնց
ըսուեցաւ որ չվնասեն երկրի խոտին, ոչ ալ կա-
նանչեղէնի մը և ոչ ծառի մը, հապա միայն այն
մարդոց, որոնք իրենց ճակատներուն վրայ Աս-
5 տուծոյ կնիքը չունին ։ Եւ անոնց հրաման տրուեցաւ
որ չսպաննեն զանոնք, հապա չարչարեն զանոնք
հինգ ամիս. ու անոնց տուած չարչարանքը կա-
րիճի տուած չարչարանքին պէս էր՝ երբ մարդը
6 կը զարնէ ։ Եւ այն օրերը մարդիկ մահը պիտի
փնտռեն ու պիտի չգտնեն. և պիտի ուզեն մեռ-
7 նիլ, ու մահը անոնցմէ պիտի փախչի ։ Եւ մա-
րախներուն նմանութիւնը՝ պատերազմի պատ-
րաստուած ձիերու պէս, ու անոնց գլուխնե-
րուն վրայ *ոսկեղէն պսակներու պէս, և անոնց
8 երեսները մարդոց երեսներու պէս էին. Ու ա-
նոնք մազեր ունէին կիներու մազերուն պէս,
ու անոնց ակռաները առիւծներու ակռաներուն պէս
9 էին ։ Եւ զրահներ ունէին երկաթէ զրահնե-
րու պէս. ու անոնց թևերուն ձայնը պատե-
րազմի վազող շատ ձիեր լծուած կառքերու ձայնին
10 պէս էր ։ Եւ կարիճներու նման պոչեր ունէին,
ու պոչերնուն վրայ խայթոց. և իշխանութիւն
11 ունէին հինգ ամիս մարդոց վնասելու ։ Եւ իրենց
վրայ թագաւոր ունէին անդունդին հրեշտակը,
որուն անունը Եբրայեցերէն †Աբադոն, և Յոյն
12 լեզուով կ'ըսուի ‡Ապողլիոն ։ Մէկ վայը անցաւ.
ահա ետև աւելի երկու վայեր ալ կու գան ։
13 Եւ վեցերորդ հրեշտակը փողը հնչեցուց, ու
ձայն մը լսեցի Աստուծոյ առջև եղող ոսկի սե-
14 ղանին չորս եղջիւրներէն, Որ կ'ըսէր վեցերորդ

*Ոմանք, ոսկւոյ նման †Այսինքն, կորուսիչ ‡Այսինքն, կորուսիչ

*հրեշտակին որ փողը ունէր, Եփրատ մեծ գե-
տին վրայ կապուած չորս հրեշտակները ար-
15 ձակէ ։ Եւ այն չորս հրեշտակները արձակուե-
ցան, որ պատրաստուած էին ժամի ու օրուան
և ամիսի ու տարիի համար, որպէս զի մարդոց
16 երրորդ մասը մեռցնեն ։ Եւ ձիաւոր զօրքերուն
համրանքը երկու բիւրք բիւրուց էր, ու լսեցի
17 անոնց համրանքը ։ Եւ տեսիլքին մէջ այսպէս
տեսայ ձիերը, ու անոնց վրայ հեծնողները՝ ա-
րոնք ունէին հրեղէն ու յակինթեղէն և ծծմբե-
ղէն զրահներ. և ձիերուն գլուխները առիւծ-
ներու գլուխներուն պէս էին, ու անոնց բեր-
18 նէն կրակ ու ծուխ և ծծումբ կ'ելլէր ։ Այս
երեք [հարուած]ներէն մարդոց երրորդ մասը
մեռաւ, այսինքն կրակէն ու ծուխէն ու ծծում-
19 բէն, որոնք անոնց բերնէն կ'ելլէին ։ Վասն զի
*անոնց զօրութիւնը բերաններնուն մէջ է ու
պոչերնուն մէջ. քանզի անոնց պոչերը օձերու
նման էին, ու գլուխներ ունէին որոնցմով
20 կը վնասէին ։ Եւ ուրիշ մարդիկ որոնք այս
հարուածներէն չսպաննուեցան, իրենց ձեռքե-
րուն գործերէն չապաշխարեցին, որ երկրպա-
գութիւն չընեն դեւերուն, ու ոսկիէ և արծաթէ
ու պղնձէ և քարէ ու փայտէ շինուած կուռքե-
րուն, որոնք ոչ կրնան տեսնել, ոչ ալ լսել ու
21 ոչ քալել. Նաև չապաշխարեցին իրենց մար-
դասպանութիւններէն, ոչ ալ իրենց կախար-
դութիւններէն, ոչ ալ իրենց պոռնկութենէն
և ոչ իրենց գողութիւններէն ։*

## ԳԼ. Ժ

1 Զօրաւոր հրեշտակ մը կ'երևնայ՝ իր ձեռքը բացուած գրքոյկ մը ունենալով. 6 Երդում կ'ընէ յաւիտեան կենդանի եղողին վրայ, թէ ալ ուրիշ ժամանակ պիտի չըլլայ ։ 9 Յովհաննէսի հրաման կ'ըլլայ որ այն գիրքը առնէ և ուտէ ։

*Բնաբ., այն ձիերուն

1 Եւ տեսայ ուրիշ զօրաւոր հրեշտակ մը որ եր-
կինքէն կ'իջնէր, ու ամպ հագած էր եւ իր գլխուն
վրայ ծիածան կար․ ու իր երեսը արեւի պէս էր,
2 եւ իր ոտքերը՝ կրակի սիւներու պէս․ Եւ իր
ձեռքը գրքոյկ մը ունէր բացուած, ու իր աջ
ոտքը ծովուն վրայ դրաւ, եւ ձախը՝ ցամաքին
3 վրայ․ Եւ մեծ ձայնով աղաղակեց առիւծի մը
գոչելուն պէս․ ու երբ աղաղակեց, եօթը ո-
4 րոտումները իրենց ձայներովը խօսեցան։ Ու
երբ եօթը որոտումները *խօսեցան, պիտի գրէի․
ու երկինքէն ձայն մը լսեցի որ †կ'ըսէր, Կնքէ
այն բաները զորոնք եօթը որոտումները խօսե-
5 ցան, ու զանոնք մի գրեր։ Եւ այն հրեշտակը
զոր ծովուն վրայ ու ցամաքին վրայ կայնած
6 տեսայ, իր [աջ] ձեռքը երկինք վերցուց․ Ու
երդում ըրաւ յաւիտեանս յաւիտենից Կեն-
դանի եղողին վրայ, որ ստեղծեց երկինքը ու
ինչ որ անոր մէջ է, ու երկիրը եւ ինչ որ անոր
մէջ է, եւ ծովը ու ինչ որ անոր մէջ է, թէ ա՛լ
7 ժամանակ պիտի չըլլայ․ Հապա եօթներորդ
հրեշտակին ձայնին օրերը՝ երբ փողը հնչեցնէ,
Աստուծոյ խորհուրդը պիտի կատարուի, ինչ-
պէս իր ծառաներուն, մարգարէներուն, ա-
ւետիս տուաւ։

8 Եւ այն ձայնը զոր երկինքէն լսեցի, նորէն
խօսեցաւ ինծի ու ըսաւ, Գնա առ այն բաց
գրքոյկը՝ որ ծովուն ու ցամաքին վրայ կայնող
9 հրեշտակին ձեռքն է։ Ես ալ հրեշտակին գացի
ու ըսի անոր, Տուր ինծի այդ գրքոյկը․ ու ըսաւ
ինծի, Առ ասիկա ու կեր․ եւ քու փորդ մէջ
դառնութիւն պիտի պատճառէ, բայց բերնիդ
10 մէջ մեղրի պէս անոյշ պիտի ըլլայ։ Եւ գրքոյկը
հրեշտակին ձեռքէն առի ու կերայ զանիկա․
եւ իմ բերնիս մէջ մեղրի պէս անոյշ էր, եւ ու-

*Ոմանք, իրենց ձայներովը խօսեցան   †Ոմանք, ինծի կ'ըսէր

*տելէս ետքը փորիս մէջ դառնութիւն եղաւ ։*
11 *Ու ըսաւ ինծի, Պէտք է որ դուն նորէն մար-*
*գարէութիւն ընես շատ ժողովուրդներու և*
*ազգերու ու լեզուներու և թագաւորներու*
**վրայով ։*

## ԳԼ. ԺԱ.

3 Երկու վկաները կը մարգարէանան ։ 6 Անոնք իշխանութիւն պիտի ունենան երկինքը գոցելու՝ որպէս զի անձրև չգայ ։ 7 Գազանը պիտի պատերազմի անոնց դէմ, ու սպաննէ զանոնք ։ 8 Անոնք չթաղուած պիտի մնան, 11 և երեք ու կէս օրէն ետև յարութիւն պիտի առնեն ։ 14 Երկրորդ վայը կ'անցնի ։ 15 Եօթներորդ փողը կը հնչուի ։

1 *Եւ ինծի եղէգ մը տրուեցաւ գաւազանի պէս,*
*և հրեշտակը կայներ էր ու կ'ըսէր, Ելիր ու*
*չափէ Աստուծոյ տաճարը ու սեղանը, և անոր*
2 *մէջ երկրպագութիւն ընողները ։ Ու գաւիթը*
*որ տաճարին դուրսն է, ձգէ և մի չափեր,*
*վասն զի անիկա հեթանոսներուն տրուած է,*
*ու անոնք սուրբ քաղաքը պիտի կոխկռտեն*
3 *քառասուներկու ամիս ։ Եւ իմ երկու վկա-*
*ներուս զօրութիւն պիտի տամ, և անոնք քուրձ*
*հագած հազար երկու հարիւր ու վաթսուն օր*
4 *մարգարէութիւն պիտի ընեն ։ Ասոնք այն եր-*
*կու ձիթենիները ու երկու աշտանակներն են,*
5 *որոնք երկրի Տէրոջը առջև կը կենան ։ Եւ եթէ*
*մէկը ուզէ անոնց վնաս ընել, անոնց բերան-*
*ներէն կրակ կ'ելլէ, ու իրենց թշնամիները*
*կ'ուտէ. և եթէ մէկը ուզէ անոնց վնաս ընել,*
6 *պէտք է որ անիկա այսպէս սպաննուի ։ Ասոնք*
*իշխանութիւն ունին երկինքը գոցելու, որ-*
*պէս զի իրենց մարգարէութեան օրերը անձրև*
*չգայ, ու ջուրերուն վրայ իշխանութիւն ունին՝*
*զանոնք արիւն դարձնելու, և ամէն կերպ պա-*
*տուհասներով երկիրը զարնելու՝ քանի անգամ*
7 *որ ուզեն ։ Ու երբ իրենց վկայութիւնը կա-*
*տարեն, այն ատեն անդունդէն ելլող գազանը*

*կամ, առջև

անոնց հետ պատերազմ պիտի ընէ, և անոնց
8 պիտի յաղթէ ու պիտի սպաննէ զանոնք ։ Եւ
անոնց դիերը ինկած պիտի մնան այն մեծ քաղաքին
հրապարակին մէջ, որ հոգևորապէս կ’ըսուի
Սոդոմ ու Եգիպտոս, ուր *մեր Տէրն ալ խաչ-
9 ուեցաւ ։ Եւ ժողովուրդներէն ու ցեղերէն և
լեզուներէն ու ազգերէն պիտի տեսնեն անոնց
դիերը երեք ու կէս օր. ու թող պիտի չտան
անոնց դիերը գերեզմաններու մէջ թաղել ։
10 Եւ անոնք որ երկրի վրայ կը բնակին, ուրախ
պիտի ըլլան ու խնդան անոնց վրայ, մինչև ան-
դամ իրարու ընծաներ պիտի ղրկեն. վասն զի
այս երկու մարգարէները երկրի բնակիչները
չարչարեցին ։
11 Եւ երեք ու կէս օրէն ետև Աստուծմէ կեն-
դանութեան հոգի մտաւ անոնց մէջ, ու իրենց
ոտքերուն վրայ կայնեցան. և զանոնք տեսնող-
12 ներուն վրայ մեծ վախ ինկաւ ։ Ու երկինքէն
մեծ ձայն մը †լսեցին, որ կ’ըսէր անոնց, Վեր
ելէք, հոս ելէք. և անոնք ամպով երկինք վե-
րացան, ու անոնց թշնամիները զանոնք տեսան ։
13 Եւ նոյն ժամուն մեծ երկրաշարժ մը եղաւ, ու
քաղաքին տասներորդ մասը կործանեցաւ, և
այն երկրաշարժէն եօթը հազար մարդիկ մե-
ռան, ու մնացածները վախով լեցուեցան ու
14 փառք տուին երկնից Աստուծոյն ։ Երկրորդ վայը
անցաւ. ահա երրորդ վայը շուտով կու գայ ։
15 Ու եօթներորդ հրեշտակը փողը հնչեցուց.
ու երկինքի մէջ մեծ ձայներ եղան որ կ’ըսէին,
Աշխարհի թագաւորութիւնները մեր Տէրոջը
ու իր Օծեալին եղան, և ինք պիտի թագա-
16 ւորէ յաւիտեանս յաւիտենից ։ Եւ քսանըչորս
երէցները որոնք իրենց աթոռներուն վրայ
նստած էին Աստուծոյ առջև, իրենց երեսնե-

*Յուն. իրենց †Յուն. լսեցի

րուն վրայ ինկան և Աստուծոյ երկրպագութիւն
17 ըրին՝ ըսելով, Քեզի գոհութիւն կը մատուցա-
նենք, Ամենակալ Տէր Աստուած, որ ես և որ
էիր*, որ քու մեծ զօրութիւնդ առիր ու թա-
18 գաւորեցիր ։ Եւ ազգերը բարկացան. ու քու
բարկութիւնդ եկաւ, և մեռելներուն ժամա-
նակը՝ որպէս զի դատուին, ու վարձք տաս քու
ծառաներուդ, մարգարէներուն, և սուրբերուն
ու քու անունէդ վախցողներուն, պզտիկներուն
ու մեծերուն, և երկրի ապականիչները ապա-
կանես ։
19 Ու երկինքի մէջ Աստուծոյ տաճարը բացուե-
ցաւ, և †անոր ուխտին տապանակը իր տաճա-
րին մէջ երևցաւ. ու եղան փայլակներ ու ձայ-
ներ և որոտումներ ու երկրաշարժ և խոշոր
կարկուտ ։

## ԳԼ. ԺԲ

1 Կին մը արեւը իր վրայ հագած՝ ցաւ կը քաշէ ։ 4 Մեծ հրեղէն վիշապ մը անոր առջեւ կը սպասէ, որպէս զի կլլէ անոր ծնանելու որդին. 6 բայց կինը երբ կը ծնանի, անապատը կը փախչի ։ 7 Միքայէլ ու իր հրեշտակները վիշապին հետ կը պատերազմին, ու անոր կը յաղթեն ։ 13 Վիշապը երկրի վրայ իյնալէն ետքը կինը կը հալածէ ։

1 Ու երկինքի մէջ մեծ նշան մը երևցաւ. կին մը
արևը իր վրայ առած, ու լուսինը իր ոտքերուն
տակ. և իր գլխուն վրայ տասուերկու աստղէ
2 պսակ մը. Եւ յղի էր, ու երկունքի մէջ ըլլա-
լով և ծնանելու համար շատ նեղութիւն քա-
շելով՝ կը պոռար ։
3 Ու երկինքի մէջ ուրիշ նշան մը երևցաւ, և
ահա մեծ շառագոյն վիշապ մը, որ եօթը գլուխ
ու տասը եղջիւր ունէր, և իր գլուխներուն վրայ
4 եօթը թագ ։ Եւ անոր պոչը երկինքի աստղե-
րուն երրորդ մասը կը քաշէր, ու զանոնք երկրի
վրայ ձգեց. և վիշապը կեցեր էր այն կնոջ առջև
որ ծնանելու վրայ էր, որպէս զի երբ ծնանի,

*Ոմանք չունենան, և որ պիտի գաս

†Ոմանք, Տէրոջը

5 անոր զաւակը կլլէ ։ Ու կինը արու զաւակ մը
ծնաւ, որ երկաթէ գաւազանով պիտի հովուէր
բոլոր ազգերը. և անոր զաւակը յափշտակուեցաւ
6 Աստուծոյ քով ու անոր աթոռին քով ։ Եւ կինը
անապատը փախաւ, ուր անոր տեղ պատրաս-
տուած էր Աստուծմէ, որպէս զի հոն կերակրուի
հազար երկու հարիւր ու վաթսուն օր ։
7 Ու երկինքի մէջ պատերազմ եղաւ. Միքայէլ
ու իր հրեշտակները վիշապին հետ պատերազ-
մեցան. վիշապն ալ իր հրեշտակներովը պա-
8 տերազմեցաւ. Ու չկրցան դէմ կենալ, ու եր-
9 կինքի մէջ ալ տեղ չգտնուեցաւ անոնց ։ Եւ վար
ձգուեցաւ մեծ վիշապը, այն առաջուան օձը որ
Բանսարկու ու Սատանայ կ՚ըսուի, որ բոլոր աշ-
խարհ մոլորեցուց. ու իր հրեշտակները իրեն
10 հետ վար ձգուեցան երկրի վրայ ։ Եւ մեծ ձայն մը
լսեցի երկինքի մէջ՝ որ կ՚ըսէր, Հիմա եղաւ մեր
Աստուծոյ փրկութիւնը ու զօրութիւնը և թա-
գաւորութիւնը, ու անոր Օծեալին իշխանու-
թիւնը. վասն զի մեր եղբայրներուն դէմ չար
խօսողը վար ձգուեցաւ, որ անոնց դէմ չարա-
խօսութիւն կ՚ընէր մեր Աստուծոյն առջև ցո-
11 րեկ ու գիշեր ։ Եւ անոնք անոր յաղթեցին
Գառնուկին արիւնովը, ու իրենց վկայութեանը
խօսքովը. և իրենց կեանքը չսիրեցին մինչև
12 ի մահ ։ Ասոր համար ուրախացէք, ով երկինք
ու անոր մէջ բնակողներ. վա՜յ երկրի ու ծովու*,
վասն զի Բանսարկուն ձեզի իջաւ, որ շատ բար-
կութիւն ունի՝ գիտնալով որ քիչ ժամանակ
պիտի կենայ ։
13 Ու երբ վիշապը տեսաւ որ ինք երկրի վրայ
ձգուեցաւ, արու զաւակ ծնանող կնոջ ետևէն
14 ինկաւ ։ Եւ այն կնոջ մեծ արծիւի երկու թե-
ւեր տրուեցան, որպէս զի անապատ իր տեղը

*Ոմանք կ՚աւելցնեն, բնակիչներուդ

թռչի, ուր պիտի կերակրուէր ժամանակ ու
ժամանակներ ու կէս ժամանակ՝ օձին երեսէն։
15 Եւ օձը իր բերնէն գետի պէս ջուր վազցուց
կնոջ ետեւէն, որպէս զի զանիկա հեղեղով
16 ընկղմէ։ Ու երկիր օգնեց կնոջը. ու երկիր իր
բերանը բացաւ և կլլեց այն գետը զոր վիշապը
17 իր բերնէն վազցուց։ Ու վիշապը բարկացաւ
կնոջ դէմ, և գնաց պատերազմելու անոր ուրիշ
զաւակներուն հետ, որոնք Աստուծոյ պատուի-
րանքները կը պահէին, ու *Յիսուսի վկայու-
թիւնը ունէին։
18 Եւ †կայնեցայ ծովուն աւազին վրայ։

## ԳԼ. ԺԳ

1 Եօթը գլխով ու տասը եղջիւրով գազան մը ծովէն դուրս կ'ելլէ, ու վիշապը իր
զօրութիւնը անոր կու տայ։ 11 Ուրիշ գազան մը երկրէ կ'ելլէ, 14 առաջին գա-
զանին պատկերը շինել կու տայ, 15 ու կը ստիպէ մարդիկ որ անոր երկրպագու-
թիւն ընեն, 16 ու անոր դրոշմը ընդունին։

1 Ու տեսայ որ ծովէն գազան մը կ'ելլէր, և ու-
նէր եօթը գլուխ ու տասը եղջիւր. և անոր եղ-
ջիւրներուն վրայ տասը թագ, ու անոր գլուխ-
ներուն վրայ հայհոյութեան անուններ կային։
2 Եւ այն գազանը զոր տեսայ, ընձու նման էր,
ու իր ոտքերը արջու ոտքերու պէս, և իր բերանը
առիւծի բերնի պէս. ու վիշապը անոր տուաւ
իր զօրութիւնը և իր աթոռը ու մեծ իշխանու-
3 թիւն։ Եւ անոր գլուխներէն մէկը մահու չափ
վիրաւորուածի պէս ‡էր. ու անոր մահուան
վէրքը առողջացաւ. և բոլոր երկիր գազանին
4 ետեւէն զարմացաւ։ Եւ երկրպագութիւն ըրին
վիշապին՝ որ գազանին իշխանութիւն տուաւ,
ու երկրպագութիւն ըրին գազանին՝ ըսելով,
Ո՞վ է այս գազանին նման. և ո՞վ կրնայ անոր
5 հետ պատերազմ ընել։ Եւ անոր մեծ բաներ

*Ոմանք, Յիսուս Քրիստոսի †Ոմանք, կայնեցաւ ‡Ոմանք, տեսայ

ու հայհոյութիւններ խօսող բերան տրուեցաւ.
և քառասուներկու ամիս անոր իշխանու-
6 թիւն տրուեցաւ իր կամքը ընելու ։ Ու իր բերանը
հայհոյութեամբ Աստուծոյ դէմ բացաւ, անոր
անունը ու անոր խորանը ու երկինքը բնակող-
7 ները հայհոյելու ։ Եւ անոր իշխանութիւն տրուեցաւ
սուրբերուն հետ պատերազմ ընելու ու անոնց
յաղթելու. և անոր իշխանութիւն տրուեցաւ
բոլոր ցեղերու [և ժողովուրդներու] ու լեզու-
8 ներու և ազգերու վրայ. Եւ անոր երկրպագու-
թիւն պիտի ընեն երկրի վրայ բոլոր բնակող-
ները, որոնց անունները աշխարհի սկիզբէն ի վեր
մորթուած Գառնուկին կենաց գիրքին մէջ
9 գրուած չեն ։ Ով որ ականջ ունի, թող լսէ ։
10 Ով որ գերութեան քշէ, ինք գերի պիտի
տարուի. ով որ սրով սպաննէ, պէտք է որ ինք
սրով սպաննուի. հոս է սուրբերուն համբերու-
թիւնը ու հաւատքը ։
11 Եւ ուրիշ գազան մը տեսայ՝ որ երկրէ կ'ելլէր,
ու գառնուկի նման երկու եղջիւր ունէր, ու
12 կը խօսէր վիշապի պէս ։ Եւ առաջին գազանին
բոլոր իշխանութիւնը կը վարէր անոր առջև,
ու երկիրը *և անոր բնակիչները կը ստիպէր որ
երկրպագութիւն ընեն առաջին գազանին՝ որուն
13 մահուան վէրքը առողջացաւ ։ Եւ մեծ նշաններ
կ'ընէր, ու մինչև անգամ երկինքէն կրակ կ'ի-
14 ջեցնէր երկրի վրայ մարդոց առջև ։ Ու երկրի
վրայ բնակողները կը մոլորեցնէր այն նշաննե-
րով, որ իր ձեռքը տրուած էր գազանին առջև
ընելու. ու երկրի բնակիչներուն կ'ըսէր որ
պատկեր շինեն այն գազանին, որ սրով վիրա-
15 ւորուած էր ու առողջացաւ ։ Եւ իշխանութիւն
տրուեցաւ անոր, որ գազանին պատկերին հոգի
տայ, որպէս զի գազանին պատկերը խօսի, և

*Ոմանք, և բոլոր

ով որ գազանին պատկերին երկրպագութիւն
16 չընէ, զանոնք սպաննել տայ։ Եւ կը ստիպէր
ամէնը, այսինքն պզտիկները ու մեծերը և հա-
րուստները ու աղքատները և ազատները ու
ծառաները, որ իրենց աջ ձեռքին վրայ կամ
17 իրենց ճակատին վրայ դրոշմ ընդունին. Եւ որ
մէ՛կը չկրնայ գնել կամ ծախել, բայց միայն ան՝
որ ունի դրոշմը կամ գազանին անունը կամ
18 անոր անուանը թիւը։ Հոս է իմաստութիւնը.
ով որ միտք ունի, թող հաշուէ գազանին թիւը.
քանզի մարդու մը թիւ է, ու անոր թիւը վեց
հարիւր վաթսունըվեց է։

## ԳԼ. ԺԴ

1 Գառնուկը իր հետևողներովը Սիօն լեռանը վրայ կը կենայ։ 6 Հրեշտակ մը աւետարանը կը քարոզէ։ 8 Բաբելոնի անկումը։ 15 Այս աշխարհին հունձքը, 18 այգեկութը։ 20 Աստուծոյ բարկութեան հնձանը։

1 Եւ տեսայ, և ահա Գառնուկը կայներ էր Սիօն
լեռանը վրայ, ու անոր հետ հարիւր քառա-
սունըչորս հազարը, որոնք ունէին [անոր անունը
և] անոր Հօրը անունը իրենց ճակատներուն վրայ
2 գրուած։ Ու երկինքէն ձայն մը լսեցի՝ շատ ջու-
րերու ձայնի պէս ու մեծ որոտումի ձայնի մը
պէս, ու լսած ձայնս քնարահարներուն իրենց
3 քնարները զարնելու ձայնին կը նմանէր։ Եւ *նոր
երգ կ'երգէին աթոռին առջև ու չորս կենդա-
նիներուն ու երէցներուն առջև. և մէ՛կը չէր
կրնար այն երգը սորվիլ բայց ի այն հարիւր քա-
ռասունըչորս հազարէն, որոնք երկրէ գնուած
4 էին։ Ասոնք անոնք են որ կիներու հետ չխառ-
նակեցան, քանզի կոյս են. ասոնք Գառնուկին
ետևէն կ'երթան՝ ուր որ ան երթայ. ասոնք
մարդոց մէջէն գնուեցան Աստուծոյ ու Գառ-
5 նուկին երախայրի ըլլալու. Եւ անոնց բերանը
սուտ չգտնուեցաւ, վասն զի անբիծ են†։

---

*Ոմն., որպէս թէ նոր †Ոմն. կ'աւելցնեն, Աստուծոյ աթոռին առջև

6 Եւ ուրիշ հրեշտակ մը տեսայ, որ կը թռչէր
երկինքի մէջ, և ունէր յաւիտենական աւե-
տիսը՝ քարոզելու բոլոր ազգերուն ու ցեղե-
րուն և լեզուներուն ու ժողովուրդներուն ո-
7 րոնք երկրի վրայ կը բնակին. Եւ մեծ ձայնով
կ՚ըսէր, Աստուծմէ վախցէք ու փառք տուէք
անոր, վասն զի անոր դատաստանին ժամը եկաւ.
ու երկրպագութիւն ըրէք անոր՝ որ ստեղծեց
երկինքը ու երկիրը և ծովը ու ջուրերուն աղ-
բիւրները։
8 Եւ անոր ետևէն ուրիշ հրեշտակ մը եկաւ ու
ըսաւ, Ինկաւ, ինկաւ մեծ *Բաբելոն, վասն զի
բոլոր ազգերը արբեցուց իր կատաղի պոռնկու-
9 թեանը գինիէն։ Եւ անոնց ետևէն †երրորդ
հրեշտակ մըն ալ եկաւ, ու մեծ ձայնով մը ըսաւ,
Ով որ գազանին ու անոր պատկերին երկրպա-
գութիւն կ՚ընէ, և դրոշմը իր ճակատին վրայ
10 կամ՝ իր ձեռքին վրայ կ՚ընդունի, Անիկա Աս-
տուծոյ սրտմտութեան գինիէն պիտի խմէ, որ
անխառն լեցուած է անոր բարկութեանը գա-
ւաթին մէջ, և կրակով ու ծծումբով պիտի
տանջուի սուրբ հրեշտակներուն առջև ու Գառ-
11 նուկին առջև։ Եւ անոնց տանջանքին ծուխը
կ՚ելլէ յաւիտեանս յաւիտենից. և ցորեկ ու
գիշեր հանգստութիւն չունին անոնք՝ որ գա-
զանին ու անոր պատկերին երկրպագութիւն
կ՚ընեն, և անոր անուանը դրոշմը կ՚ընդունին։
12 Հոս է սուրբերուն համբերութիւնը, ‡որոնք
Աստուծոյ պատուիրանքները ու Յիսուսի հա-
13 ւատքը կը պահեն։ Ու երկինքէն ձայն մը լսեցի՝
որ ‖կ՚ըսէր, Գրէ, Այսուհետև երանելի են այն
մեռելները՝ որոնք Տէրոջմով կը մեռնին. այո,
կ՚ըսէ Հոգին, որ իրենց աշխատութիւններէն հանգ-

---

*Յուն., Բաբելոն քաղաքը  †Յուն., ուրիշ  ‡Յուն., հոս են անոնք որ
‖Յուն., ինծի կ՚ըսէր

չին. ու իրենց գործերը իրենց ետեւէն կ'երթան։
14 Եւ տեսայ, և ահա ճերմակ ամպ մը, ու այն
ամպին վրայ մէկը նստեր էր Որդւոյ մարդոյ
նման. և իր գլուխը ոսկիէ պսակ մը՝ ու իր ձեռքը
սուր մանգաղ մը ունէր։
15 Եւ տաճարէն ուրիշ հրեշտակ մը կ'ելլէր, որ
ամպին վրայ նստողին մեծ ձայնով կ'աղաղակէր
ու կ'ըսէր, Երկնցուր քու մանգաղդ ու հնձէ.
վասն զի հնձելու ժամանակը *եկաւ, վասն զի
16 երկրի հունձքը հասունցած է։ Եւ ան որ ամպին
վրայ կը նստէր, իր մանգաղը երկրի վրայ եր-
կընցուց, ու երկիր հնձուեցաւ։
17 Ու երկինքին մէջի տաճարէն ուրիշ հրեշտակ
մը ելաւ, և անիկա ալ սուր մանգաղ մը ունէր։
18 Ու սեղանէն ուրիշ հրեշտակ մը ելաւ, որ կրակի
վրայ իշխանութիւն ունէր, ու մեծ ձայնով
կանչեց անոր՝ որ սուր մանգաղը ունէր, ու
ըսաւ, Երկնցուր քու սուր մանգաղդ, ու երկրի
այգիին ողկոյզները կթէ, վասն զի անոր խաղող-
19 ները հասունցած են։ Եւ այն հրեշտակը իր
մանգաղը երկրի վրայ երկնցուց, ու երկրի այ-
գիին խաղողները կթեց, ու Աստուծոյ բարկութեան
20 մեծ հնձանին մէջ ձգեց։ Եւ հնձանը քաղա-
քին դուրսը կոխուեցաւ. ու հնձանէն արիւն
կ'ելլէր, որ մինչև ձիերուն սանձերը ու հազար
վեց հարիւր ասպարէզ կը հասնէր։

## ԳԼ. ԺԵ

1 Եօթը վերջին հարուածները ունեցող եօթը հրեշտակները։ 3 Գառնին յաղթողներուն երգը։ 7 Աստուծոյ բարկութիւնովը լեցուն եօթը սկաւառակները։

1 Եւ ուրիշ մեծ ու զարմանալի նշան մը տեսայ
երկինքի մէջ, եօթը հրեշտակներ՝ որոնք եօթը
վերջին հարուածները ունէին, որովհետև ա-
նոնցմով կը կատարուէր Աստուծոյ բարկու-

*Ոմն., քեզի եկաւ

2 թիւնը ։ Ու տեսայ որպէս թէ ապակեղէն ծով
մը կրակով խառնուած . և անոնք որ յաղթե-
ցին գազանին ու անոր պատկերին *և անոր
անուան թիւին, ապակեղէն ծովուն վրայ կայ-
3 ներ էին, ու Աստուծոյ քնարները ունէին. Եւ
Աստուծոյ ծառային, Մովսէսի, երգը կ'երգէին,
ու Գառնուկին երգը՝ ըսելով, Մեծ ու զարմա-
նալի են քու գործերդ, ով Տէր Աստուած Ա-
մենակալ . արդար ու ճշմարիտ են քու ճամբա-
4 ներդ, ով Թագաւոր †սրբոց . Տէր, ո՞վ պիտի
չվախնայ քեզմէ, ու քու անունդ չփառաւորէ,
վասն զի դուն միայն սուրբ ես . քանզի բոլոր ազ-
գերը պիտի գան ու քու առջևդ երկրպագու-
թիւն պիտի ընեն, վասն զի քու արդար դա-
տաստաններդ յայտնուեցան ։
5 Եւ ասկէ ետև տեսայ, ու բացուեցաւ վկայու-
6 թեան խորանին տաճարը որ երկինքն էր . Ու
եօթը հարուածները ունեցող եօթը հրեշտակ-
ները մաքուր ու պայծառ կտաւ հագած՝ և ի-
րենց կուրծքերնուն վրայովը ոսկեղէն գօտի կա-
7 պած՝ տաճարէն ելան ։ Եւ չորս կենդանիներէն
մէկը եօթը հրեշտակներուն եօթը ոսկեղէն
սկաւառակներ տուաւ յաւիտեանս յաւիտե-
նից կենդանի եղող Աստուծոյ բարկութիւնովը
8 լեցուն ։ Եւ տաճարը Աստուծոյ փառքէն ու
անոր զօրութենէն ծուխով լեցուեցաւ . ու մէ՛կը
չէր կրնար տաճարը մտնել, մինչև կատարուին
եօթը հրեշտակներուն եօթը հարուածները ։

## ԳԼ. ԺԶ

2 Հրեշտակները երկրի վրայ կը թափեն իրենց եօթը սկաւառակները որ բարկութիւնով լեցուն էին . ու զանազան հարուածներ կը հետևին ։ 15 Քրիստոս գողի պէս կու գայ . երանի՛ անոնց որ արթուն կը մնան ։

1 Եւ տաճարէն մեծ ձայն մը լսեցի՝ որ եօթը
հրեշտակներուն կ'ըսէր, Գացէք Աստուծոյ բար-

*Ոմանք, և անոր դրոշմին և

†Ոմանք, ազգաց

կուժերուն [եօթը] սկուտեղները երկրի վրայ
թափեցէք ։
2 Եւ առաջինն հրեշտակը գնաց ու իր սկուտեղը
երկրի վրայ թափեց. ու չարաչար պալարներ
եղան այն մարդոց վրայ որոնք գազանին դրոշմը
ունէին ու անոր պատկերին երկրպագութիւն
կ՚ընէին ։
3 Ու երկրորդ հրեշտակը իր սկուտեղը ծո-
վուն վրայ թափեց, ու ջուրերը մեռած մարդու
արիւն դարձան, և ծովուն մէջի բոլոր կենդանի-
ները մեռան ։
4 Ու երրորդ հրեշտակը իր սկուտեղը գետերուն
ու ջուրերու աղբիւրներուն վրայ թափեց, ու
5 անոնք արիւն դարձան ։ Եւ ջուրերուն հրեշտա-
կէն լսեցի՝ որ կ՚ըսէր, Արդար ես դուն, *որ ես
և որ էիր, և սուրբ ես, որ այսպիսի դատաս-
6 տաններ ըրիր. Վասն զի անոնք սուրբերուն ու
մարգարէներուն արիւնը թափեցին. և դուն
անոնց արիւն խմել տուիր, քանզի արժանի են ։
7 Եւ սեղանէն †լսեցի՝ որ կ՚ըսէր, Այո, Ամենա-
կալ Տէր Աստուած, քու դատաստաններդ՝ ար-
դար ու ճշմարիտ են ։
8 Եւ չորրորդ հրեշտակը իր սկուտեղը արևին
9 վրայ թափեց ։ Ու անոր զօրութիւն տրուեցաւ որ
խորշակահար ընէ մարդիկը կրակով. և սաստիկ
տաքէն խորշակահար եղան մարդիկ, և հայհոյե-
ցին Աստուծոյ անունը, որ այս հարուածնե-
րուն վրայ իշխանութիւն ունի. ու չապաշխա-
րեցին որ անոր փառք տան ։
10 Եւ հինգերորդ հրեշտակը իր սկուտեղը գա-
զանին աթոռին վրայ թափեց, ու անոր թա-
գաւորութիւնը խաւարեցաւ. և ցաւէն լեզու-
11 ներնին կը ծամէին. Ու երկինքի Աստուածը
հայհոյեցին իրենց ցաւերուն և իրենց պալար-

*Ոմանք, ով Տէր, որ

†Ոմանք, ուրիշ մը լսեցի

ներուն պատճառաւ. ու իրենց գործերէն չա-
պաշխարեցին ։
12 Եւ վեցերորդ հրեշտակը իր սկաւառակը մեծ գե-
տին, Եփրատի, վրայ թափեց, ու անոր ջու-
րերը ցամքեցան, որպէս զի արեւելքի թագա-
13 ւորներուն ճամբան պատրաստուի ։ Եւ տեսայ որ
վիշապին բերնէն ու գազանին բերնէն և սուտ
մարգարէին բերնէն երեք պիղծ ոգիներ կ'ելլէին
14 գորտերու նման. Վասն զի անոնք դեւերու ոգի-
ներ են՝ որ նշաններ կ'ընեն, *ու բոլոր աշխարհի
թագաւորներուն կ'երթան, որպէս զի զանոնք
Ամենակալ Աստուծոյ այն մեծ օրուանը պա-
15 տերազմին համար ժողվեն. (Ահա գողի պէս
կու գամ. երանի՜ անոր որ արթուն կը կենայ
ու իր հանդերձները կը պահէ, որպէս զի մերկ
16 չպտըտի ու իր ամօթը երեւնայ.) Եւ զանոնք
տեղ մը ժողվեցին, որ Եբրայեցերէն Արմագեդոն
կ'ըսուի ։
17 Ու եօթներորդ հրեշտակը իր սկաւառակը օդին
վրայ թափեց, ու երկնքի տաճարէն, աթո-
18 ռէն, մեծ ձայն մը ելաւ՝ ըսելով, Եղաւ ։ Եւ
†փայլակներ ու ձայներ և որոտումներ" եղան
ու մեծ երկրաշարժ մը եղաւ, այնպէս որ մար-
դոց երկրի վրայ ըլլալէն ի վեր այնպիսի մեծ
19 երկրաշարժ մը եղած չէր ։ Եւ մեծ քաղաքը
երեք մաս եղաւ, ու ազգերուն քաղաքները
կործանեցան, և մեծ Բաբելոնը Աստուծոյ առջե
յիշուեցաւ, որպէս զի իր սաստիկ բարկութեան
20 գինիին գաւաթը անոր տայ ։ Եւ ամէն կղզի
21 փախաւ, ու լեռները չգտնուեցան ։ Եւ խոշոր
կարկուտ գրեթէ տաղանդի մը կշիռքով եր-
կինքէն կ'իջնէր մարդոց վրայ. ու մարդիկ հայ-
հոյեցին զԱստուած կարկուտին հարուածին
համար, վասն զի խիստ մեծ էր այն հարուածը ։

*Յոյն. ու երկրի և

†Յոյն. ձայներ և որոտումներ ու փայլակներ

## ԳԼ. ԺԷ

3 Ծիրանիներ ու կարմիրներ հագած կին մը ձեռքը ոսկեղէն գաւաթ մը բռնած՝ գազանին վրայ կը նստի ։ 5 Անիկա է մեծ Բաբելոնը ու ամէն գարշութեանց մայրը ։ 9 Գազանին եօթը գլուխներուն, 12 ու տասը եղջիւրներուն մեկնութիւնը ։ 14 Գառնուկին յաղթութիւնը ։ 16 Պոռնիկին պատիժը ։

1 Եւ եօթը սկաւառակները ունեցող եօթը հրեշ-
տակներէն մէկը եկաւ, ու ինծի հետ խօսեցաւ՝
ըսելով, Եկուր, ու քեզի ցուցնեմ այն մեծ
պոռնիկին դատաստանը, որ շատ ջուրերու վրայ
2 կը նստի. Որու հետ երկրի թագաւորները
պոռնկեցան, ու երկրի բնակիչները անոր պոռ-
3 նկութեան գինիովը գինովցան ։ Եւ զիս —
անապատը տարաւ հոգւով. ու տեսայ կին մը՝
որ կարմիր գազանի մը վրայ նստեր էր. և այն
գազանը լեցուն էր հայհոյութեան անուններով,
4 ու եօթը գլուխ և տասը եղջիւր ունէր ։ Եւ
կինը ծիրանի ու կարմիր հագած էր, և զար-
դարուած էր ոսկիով ու պատուական քարերով
և մարգարիտներով, և իր ձեռքը ոսկիէ գա-
ւաթ մը ունէր պղծութիւններով ու իր պոռն-
5 կութեանը անմաքրութիւններով լեցուն. Եւ
անոր ճակատին վրայ անուն մը գրուած էր.
Խորհուրդ, Մեծ Բաբելոն, պոռնիկներուն ու
6 երկրի պղծութիւններուն մայրը ։ Եւ տեսայ
այն կինը որ սուրբերուն արիւնովը ու Յիսուսի
վկաներուն արիւնովը գինովցած էր. ու երբ
տեսայ զանիկա, մեծ զարմանքով զարմացայ ։
7 Եւ հրեշտակը ինծի ըսաւ, Ինչո՞ւ զարմացար.
ես քեզի ըսեմ այն կնոջ խորհուրդը, ու այն
գազանին՝ որ զանիկա իր վրայ կը կրէ, ու եօթը
8 գլուխ և տասը եղջիւր ունի ։ Այն գազանը
զոր տեսար, կար ու չկայ, և անդունդէն ելլե-
լու ու կորուստը երթալու վրայ է. ու երկրի
վրայ բնակողները, որոնց անունները աշխարհի
սկիզբէն ի վեր կենաց գիրքին մէջ գրուած չեն,

պիտի զարմանան երբ տեսնեն այն գազանը թէ
9 կար ու չկայ, *թէև կայ"։ Հոս պէտք է իմաս-
տութիւն ունեցող միտք մը. այն եօթը գլուխը
եօթը լեռներ են, ուր կինը անոնց վրայ կը նստի.
10 և եօթը թագաւորներ են. Հինգը ինկած են,
մէկը կը կենայ, և միւսը դեռ եկած չէ, ու
11 երբ գայ՝ քիչ ատեն պիտի մնայ։ Եւ այն
գազանը որ կար ու չկայ, անիկա ալ ութե-
րորդ է, ու եօթնէն է, ու դէպ ի կորուստ
12 կ՚երթայ։ Եւ տասը եղջիւրը զորոնք տեսար՝
տասը թագաւորներ են, որոնք դեռ թագաւո-
րութիւն առած չեն, հապա գազանին հետ մէկ
ժամու չափ թագաւորներու պէս իշխանու-
13 թիւն կ՚առնեն։ Անոնք մէկ կամք ունին, ու
իրենց զօրութիւնը և իշխանութիւնը գազանին
14 կու տան։ Ասոնք Գառնուկին հետ պիտի պա-
տերազմին. և Գառնուկը անոնց պիտի յաղթէ,
քանզի անիկա տէրերուն Տէրն է ու թագա-
ւորներուն Թագաւորը. և անոր հետ եղողները
կանչուած ու ընտրուած և հաւատարիմ են։
15 Ու ըսաւ ինծի, Այն ջուրերը զորոնք տեսար,
որոնց վրայ պոռնիկը նստեր էր, ժողովուրդ-
ներ են ու բազմութիւններ և ազգեր ու լեզու-
16 ներ։ Եւ տասը եղջիւրները զորոնք գազանին
վրայ տեսար, անոնք պիտի ատեն պոռնիկը, ու
զանիկա ամայի ու մերկ պիտի ընեն, և անոր
մարմինը պիտի ուտեն, ու զանիկա կրակով
17 այրեն։ Վասն զի Աստուած անոնց սրտին մէջ
դրաւ որ իր կամքը կատարեն ու մէկ կամք ըլ-
լան, և իրենց թագաւորութիւնը գազանին տան,
18 մինչև Աստուծոյ խօսքերը կատարուին։ Եւ կինը
զոր տեսար, այն մեծ քաղաքն է, որ կը թագա-
ւորէ երկրի թագաւորներուն վրայ։

*Ոմանք, և մօտ է

## ԳԼ. ԺԸ

2 Բաբելոն կ'իյնայ ։ 4 Աստուծոյ ժողովուրդին հրաման կ'ըլլայ, որ անոր մէջէն դուրս ելլեն ։ 9 Երկրի թագաւորները, 11 վաճառականները 17 և նաւավարները կ'ողբան անոր վրայ ։ 20 Սուրբերը կ'ուրախանան՝ տեսնելով որ Աստուծոյ դատաստանները անոր վրայ կը կատարուին ։

1 Եւ ասկէ ետքը [ուրիշ] հրեշտակ մը տեսայ որ
երկինքէն կ'իջնէր, և մեծ իշխանութիւն ունէր,
2 ու երկիր անոր փառքէն լուսաւորուեցաւ ։ Եւ
*զօրաւոր ձայնով աղաղակեց՝ ըսելով, Ինկաւ,
ինկաւ մեծ Բաբելոն, և դեւերու բնակարան
եղաւ, ու բոլոր պիղծ ոգիներու արգելանոց,
և բոլոր պիղծ ու ատելի թռչուններու վանդակ.
3 Վասն զի անոր կատաղի պոռնկութեանը գի-
նիէն խմեցին բոլոր ազգերը, ու երկրի թագա-
ւորները անոր հետ պոռնկեցան, և երկրի վա-
ճառականները անոր չափազանց զեղխութենէն
4 հարստացան ։ Ու երկինքէն ուրիշ ձայն մը լսեցի
որ կ'ըսէր, Ելէք անոր մէջէն, իմ ժողովուրդս,
որպէս զի անոր մեղքերուն հաղորդ չըլլաք, ու
5 անոր հարուածներէն բաժին չառնէք. Վասն զի
անոր մեղքերը մինչև երկինք հասան կցուե-
ցան. ու Աստուած անոր անիրաւութիւնները
6 յիշեց ։ Հատուցէք անոր՝ ինչպէս ինք †հատուց.
ու իր գործերուն համեմատ կրկնապատիկ փո-
խարինեցէք անոր. այն գաւաթը զոր ինք լե-
7 ցուց՝ կրկնապատիկ լեցուցէք իրեն ։ Որչափ որ
փառաւորեց զինք և զեղխութեամբ ապրեցաւ,
այնչափ ալ տանջանք և սուգ հատուցէք անոր.
վասն զի իր սրտին մէջ կ'ըսէ թէ Ես թագուհի
կը նստիմ, ու որբևարի չեմ, ու բնաւ սուգ
8 պիտի չտեսնեմ ։ Անոր համար մէկ օրուան մէջ
պիտի գան անոր հարուածները, մահ ու սուգ
և սով, ու կրակով պիտի այրի. վասն զի հզօր է
9 Տէր Աստուած որ զանիկա դատեց ։ Ու երկրի

---

*Յուն., զօրութեամբ՝ մեծ

†Յուն., ձեզի հատուց

թագաւորները, որ անոր հետ պոռնկեցան ու
հեշտացան, պիտի լան ու կոծեն անոր վրայ
10 երբ անոր հրկիզութեանը ծուխը տեսնեն. Եւ
անոր տանջանքին վախէն հեռուն պիտի կայնին
ու ըսեն, Վա՜յ, վա՜յ քեզ, մեծ Բաբելոն քաղաք,
հզօր քաղաք, որ մէկ ժամու մէջ եկաւ քու
11 դատաստանդ։ Ու երկրի վաճառականները պիտի
ողբան ու սուգ ընեն անոր վրայ. վասն զի ալ
12 մէ՛կը ծախու չառներ անոնց վաճառքը։ Ոսկիի,
ու արծաթի, և պատուական քարերու, ու մար-
գարիտներու, և բեհեզի, ու ծիրանիի, և մե-
տաքսի, ու որդան կարմիրի վաճառքը, և ամէն
խունկի փայտերը, ու ամէն փղոսկրեայ աման-
ները, և ամէն պատուական փայտէ ու պղնձէ
13 և երկաթէ ու մարմարիոնէ ամանները, Եւ կի-
նամոնը, [ու ամոմը] և խունկերը, ու անու-
շահոտ իւղը, ու կնդրուկը, և գինին, ու ձէթը,
և նաշիհը, ու ցորենը, և արջառները, ու ոչ-
խարները, և ձիերը, ու կառքերը, և մարմին-
14 ները ու մարդոց հոգիները։ Եւ քու հոգիիդ
ցանկացած պտուղները քեզմէ գացին, ու բո-
լոր չքեղ ու փայլուն բաները քեզմէ կորսուե-
15 ցան, և ա՛լ բնաւ պիտի չգտնես զանոնք։ Այս
բաներուն վաճառականները, որոնք անկէ հա-
րըստացած էին, հեռուն պիտի կայնին անոր
16 տանջանքին վախէն՝ լալով ու սուգ ընելով, Ու
պիտի ըսեն, Վա՜յ, վա՜յ, մեծ քաղաք, որ բե-
հեզ ու ծիրանի և որդան կարմիր հագած էիր,
ու ոսկիով և պատուական քարերով ու մար-
17 գարիտներով զարդարուած էիր. Վասն զի այն-
քան հարստութիւնը մէկ ժամու մէջ փճացաւ։
Ու ամէն նաւապետները, և այն ամէնը որ նա-
ւով տեղ տեղ կ'երթան, ու նաւաստիները և
որոնք որ ծովու մէջ կը բանին, հեռուն կայնե-
18 ցան. Եւ տեսնելով անոր հրկիզութեան ծուխը՝

կ'աղաղակէին՝ ըսելով, Ո՞ր նման է այս մեծ
19 քաղաքին. Ու իրենց գլուխներուն վրայ հող
ցանեցին, և լալով ու սուգ ընելով՝ կ'աղաղա-
կէին՝ ըսելով, Վա՜յ, վա՜յ այն մեծ քաղաքին,
որուն մէջ իր պատուականութենէն հարստա-
ցան ամէնը որոնք նաւեր ունէին ծովուն վրայ.
20 վասն զի մէկ ժամու մէջ ամայացաւ ։ Ուրա-
խացէք անոր վրայ, երկինք ու սուրբ առաքեալ-
ներ և մարգարէներ, որ Աստուած ձեր վրէժը
անկէ առաւ ։
21 Եւ զօրաւոր հրեշտակ մը քար մը առաւ ա-
ղօրիքի մեծ քարի նման, ու ծովը ձգեց՝ ըսելով,
Այսպէս ուժով վար պիտի ձգուի Բաբելոն
22 մեծ քաղաքը, ու ա՛լ պիտի չգտնուի ։ Եւ քնա-
րահարներուն ու երաժիշտներուն և սրնգա-
հարներուն ու փողահարներուն ձայնը ա՛լ պիտի
չլսուի քու մէջդ. և արհեստի վարպետ մը ա՛լ
պիտի չգտնուի քու մէջդ, ու աղօրիքին ձայնը
23 ա՛լ պիտի չլսուի քու մէջդ. Եւ ճրագին լոյսը
ա՛լ պիտի չերևնայ քու մէջդ. ու փեսային ձայնը
և հարսին ձայնը ա՛լ պիտի չլսուի քու մէջդ.
քանզի քու վաճառականներդ երկրի մեծամեծ-
ներն էին. վասն զի քու կախարդութիւնովդ բո-
24 լոր ազգերը մոլորեցան ։ Եւ մարգարէներուն
ու սուրբերուն ու երկրի վրայ բոլոր սպան-
նուածներուն արիւնը անոր մէջ գտնուեցաւ ։

## ԳԼ. ԺԹ

1 Երկինքին մէջ զԱստուած կը փառաբանեն՝ որ դատեց պոռնիկը, և սուրբերուն արիւնը վրէժը առաւ ։ 7 Գառնուկին հարսնիքը ։ 10 Հրեշտակը չուզեր որ Յովհաննէս իրեն երկրպագութիւն ընէ ։ 17 Թռչունները կը կանչուին մեծ կոտորածին ։

1 Եւ անկէ ետքը շատ բազմութեան մեծ ձայն մը
լսեցի երկինքը՝ ըսելով, Ալէլուիա. փրկութիւն
ու փառք և պատիւ ու զօրութիւն մեր *Աս-
2 տուծոյն. Վասն զի ճշմարիտ ու արդար են անոր

*Ոմանք, Տէր Աստուծոյն

դատաստանները, քանզի դատեց այն մեծ պոռ-
նիկը, որ իր պոռնկութիւնովը երկիրը ապակա-
նեց, ու իր ծառաներուն արեան վրէժը անոր
3 ձեռքէն պահանջեց։ Եւ կրկին անգամ ըսին,
Ալէլուիա. ու անոր ծուխը յաւիտեանս յա-
4 ւիտենից կ'ելլէ։ Եւ քսանըչորս երէցները ու
չորս կենդանիները ինկան ու երկրպագութիւն
ըրին Աստուծոյ՝ որ աթոռը կը նստի, ըսելով,
5 Ամէն, Ալէլուիա։ Եւ աթոռէն ձայն մը ելաւ՝
ըսելով, Մեր Աստուծոյն օրհնութիւն տուէք,
իր բոլոր ծառաները, ու դուք որ իրմէ կը վախ-
6 նաք, պզտիկներ ու մեծեր։ Եւ լսեցի շատ բազ-
մութեան ձայնի պէս, ու շատ ջուրերու ձայնի
պէս, ու սաստիկ որոտումներու ձայնի պէս,
որոնք կ'ըսէին, Ալէլուիա, վասն զի [մեր] Ամե-
7 նակալ Տէր Աստուածը թագաւորեց։ Խնդանք
և ուրախանանք ու փառք տանք անոր, քանզի
Գառնուկին հարսնիքը հասաւ, ու անոր կինը
8 ինքզինք պատրաստեց։ Եւ իրեն տրուեցաւ որ
մաքուր ու լուսափայլ բեհեզ հագնի, (քանզի
այն բեհեզը սուրբերուն արդարութիւնն է։)
9 Եւ ինծի ըսաւ, Գրէ. Երանելի են անոնք որ
Գառնուկին հարսանեաց ընթրիքին կանչուած
են. ու ինծի ըսաւ, Ասոնք են Աստուծոյ ճշմա-
10 րիտ խօսքերը։ Ես ալ անոր ոտքերուն առջև
ինկայ, որպէս զի անոր երկրպագութիւն ընեմ.
ու ըսաւ ինծի, Զգուշացիր, մի ըներ. վասն զի ես ալ
քու ծառայակիցդ եմ ու քու եղբայրներուդ՝
որոնք Յիսուսի վկայութիւնը ունին. Աստու-
ծոյ երկրպագութիւն ըրէ. (վասն զի Յիսուսի
վկայութիւնը մարգարէութեան հոգին է։)
11 Եւ տեսայ երկինքը բացուած. և ահա ճեր-
մակ ձի մը, ու անոր վրայ հեծնողը Հաւատա-
րիմ ու Ճշմարիտ կ'ըսուի, և արդարութեամբ
12 դատաստան կը տեսնէ ու կը պատերազմի. Եւ

անոր աչքերը կրակի բոցի պէս էին, ու անոր
գլխուն վրայ շատ թագեր կային, ու գրուած
անուն մը ունէր՝ զոր մէ՛կը չգիտեր, բայց միայն
13 ինք. Եւ արիւնով ներկուած հանդերձ մը հագեր
էր. ու անոր անունը Բան Աստուծոյ կ՚ըսուի:
14 Ու երկինքի մէջ եղող զօրքերը անոր ետեւէն
կ՚երթային ճերմակ ձիերով, ճերմակ ու մաքուր
15 բեհեզներ հագած: Եւ անոր բերնէն սրած
սուր մը կ՚ելլէր, որպէս զի անով ազգերը զարնէ.
ու ինք երկաթէ գաւազանով պիտի հովուէ զա-
նոնք, ու Ամենակալ Աստուծոյ սաստիկ բար-
կութեանը գինիին հնձանը ինք պիտի կոխէ:
16 Եւ իր պատմուճանին վրայ ու իր ազդրին վրայ
գրուած գիր մը ունէր, ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱ-
ՒՈՐԱՑ ԵՒ ՏԷՐ ՏԵՐԱՆՑ:
17 Եւ հրեշտակ մը տեսայ, որ արեւին մէջ կայ-
ներ էր, ու մեծ ձայնով աղաղակեց երկինքի
մէջ թռչող բոլոր թռչուններուն՝ ըսելով, Եկէք,
18 *Աստուծոյ մեծ ընթրիքին" ժողվուեցէք, Որ-
պէս զի ուտէք թագաւորներուն մարմինները,
ու հազարապետներուն մարմինները, զօրաւոր-
ներուն մարմինները, ու ձիերուն և անոնց վրայ
հեծնողներուն մարմինները, ու ամէնուն մար-
մինները, թէ՛ ազատներուն և թէ՛ ծառանե-
րուն, թէ՛ պզտիկներուն և թէ՛ մեծերուն:
19 Եւ տեսայ գազանը ու երկրի թագաւորները
ու անոնց զօրքերը մէկտեղ ժողվուած պատե-
րազմ ընելու անոր հետ՝ որ ձիուն վրայ հեծեր
20 էր, ու անոր զօրքերուն հետ: Եւ գազանը
բռնուեցաւ, ու անոր հետ սուտ մարգարէն՝
որ անոր առջեւ նշաններ ըրաւ, որոնցմով մոլո-
րեցուց գազանին դրոշմը ընդունողները, և անոր
պատկերին երկրպագութիւն ընողները. եր-
կուքն ալ ողջ ողջ ծծումբով վառած կրակին

---

*Ոմն․, մեծ Աստուծոյ ընթրիքին

21 լիճը ձգուեցան ։ Եւ ուրիշներն ալ սպաննուե-
ցան ձիուն վրայ հեծնողին սուրէն՝ որ իր բեր-
նէն կ՚ելլէր , ու բոլոր թռչունները անոնց մար-
միններէն կշտացան ։

## ԳԼ. Ի

2 Սատանան հազար տարի կը կապուի ։ 6 Առաջին յարութիւնը . երանի՛ անոնց որ անոր մէջ բաժին ունին ։ 7 Սատանայ նորէն արձակուելով՝ Գոգը ու Մագոգը կը ժողվէ ։ 9 Սատանայ կը ձգուի կրակի ու ծծումբի ծովուն մէջ ։ 12 Վերջին ընդհանուր յարութիւնը ։

1 Եւ հրեշտակ մը տեսայ , որ երկինքէն կ՚իջնէր ,
ու անդունդին բանալին և մեծ շղթայ մը ունէր
2 իր ձեռքը · Ու բռնեց վիշապը , այսինքն առա-
ջին օձը , որ Բանսարկուն ու Սատանան է , և
3 կապեց զանիկա հազար տարի · Ու անդունդը
ձգեց զանիկա , և գոցեց ու վրայէն կնքեց , որ
ա՛լ չմոլորեցնէ ազգերը՝ մինչև հազար տարին
լմննայ , և անկէ ետքը պէտք է որ արձակուի
անիկա քիչ մը ժամանակ ։
4 Եւ աթոռներ տեսայ , ու նստան անոնց վրայ ·
և անոնց դատաւորութիւն տրուեցաւ · նաև
Յիսուսի վկայութեանը համար ու Աստուծոյ
խօսքին համար գլխատուածներուն հոգիները
տեսայ , և զանոնք որ երկրպագութիւն չըրին գա-
զանին , ոչ ալ անոր պատկերին , ու անոր դրոշմը
իրենց ճակատներուն վրայ ու իրենց ձեռքին
վրայ չընդունեցին · և ապրեցան ու Քրիստոսի
5 հետ հազար տարի թագաւորեցին ։ Եւ ուրիշ
մեռելները չապրեցան մինչև հազար տարին կա-
տարուեցաւ · ասիկա է առաջին յարութիւնը ։
6 Երանելի և սուրբ է ան որ առաջին յարու-
թեանը մէջ բաժին ունի · ասոնց վրայ երկրորդ-
մահը իշխանութիւն չունի , հապա անոնք Աս-
տուծոյ և Քրիստոսի քահանաները պիտի ըլլան ,
ու անոր հետ հազար տարի պիտի թագաւորեն ։

7 Եւ հազար տարուան լմնալուն՝ պիտի ար-
ձակուի Սատանայ իր բանտէն. և պիտի ելլէ
ու մոլորեցնէ երկրի չորս անկիւնները եղող
ազգերը, Գոգը ու Մագոգը, որպէս զի զանոնք
պատերազմի ժողվէ, որոնց համրանքը ծովու
8 աւազին չափ է։ Ու երկրի ընդարձակութեանը
մէջ ելան, և սուրբերուն բանակը ու սիրելի
9 քաղաքը չորս կողմէն պատեցին։ Եւ երկինքէն
Աստուծմէ կրակ իջաւ ու սպառեց զանոնք. և
Բանսարկուն որ զանոնք մոլորեցուց, ձգուեցաւ
կրակի ու ծծումբի լիճին մէջ, ուր էր գազանը,
10 Եւ սուտ մարգարէն. ու պիտի չարչարուին ցա-
բեկ ու գիշեր յաւիտեանս յաւիտենից։
11 Եւ մեծ ճերմակ աթոռ մը տեսայ, ու անոր
վրայ մէկը նստած, որուն երեսէն երկիր ու
երկինք փախան, և տեղ չգտնուեցաւ անոնց։
12 Եւ տեսայ պզտիկ ու մեծ մեռելները, որոնք
*Աստուծոյ առջև կայնած էին. ու գիրքերը
բացուեցան, և ուրիշ գիրք մը բացուեցաւ,
այսինքն կենաց գիրքը. և գիրքերուն մէջ գրուած-
ներէն մեռելները դատուեցան իրենց գործե-
13 րուն համեմատ։ Եւ ծովը իր մէջի մեռելները
տուաւ, ու մահը և դժոխքը իրենց մէջի մեռել-
ները տուին. ու ամէն մէկը իրենց գործերուն
14 համեմատ դատուեցան։ Եւ մահը ու դժոխքը
կրակի լիճին մէջ ձգուեցան. ասիկա է երկրորդ
15 մահը։ Եւ ով որ կենաց գիրքին մէջ գրուած
չգտնուեցաւ, կրակի լիճին մէջ ձգուեցաւ։

## ԳԼ. ԻԱ

Նոր երկինքը ու Նոր երկիրը։ 10 Երկնային Երուսաղէմի տեսիլքը ու անոր ստո-
րագրութիւնը։ 23 Անոր մէջ արևի կարօտութիւն չկայ, որովհետև Աստուծոյ
փառքը անոր լոյսն է։ 24 Երկրի թագաւորները իրենց հարստութիւնները անոր
կը բերեն։

---

*Ոմանք, աթոռին

1 Եւ նոր երկինք մը ու նոր երկիր մը տեսայ.
վասն զի առաջին երկինքը ու առաջին երկիրը
2 անցան, և ալ ծով չկար։ *Եւ սուրբ քաղաքը,
նոր Երուսաղէմը, տեսայ, որ երկինքէն Աս-
տուծմէ կ'իջնէր, իր էրկանը համար զարդար-
3 ուած հարսի մը պէս պատրաստուած։ Ու եր-
կինքէն մեծ ձայն մը լսեցի՝ որ կ'ըսէր, Ահա
Աստուծոյ խորանը մարդոց մէջ, ու անիկա ա-
նոնց հետ պիտի բնակի. և անոնք անոր ժողո-
վուրդը պիտի ըլլան, և Աստուած ինք անոնց
4 հետ պիտի ըլլայ իբր անոնց Աստուածը. Եւ
†ինք անոնց աչքերէն բոլոր արցունքները պիտի
սրբէ, և ալ մահ պիտի չըլլայ, ոչ սուգ և ոչ
աղաղակ և ոչ ցաւ պիտի ըլլայ ասկէ ետև.
5 վասն զի առաջուան բաները անցան։ Եւ ան որ
աթոռին վրայ կը նստէր՝ ըսաւ, Ահա ամէն բա-
ները նոր կ'ընեմ. ու ըսաւ ինծի, Գրէ, վասն զի
այս խօսքերը ճշմարիտ ու հաւատարիմ են։
6 Նաև ըսաւ ինծի, Եղաւ. ես եմ Ալֆա և Օմէղա,
Սկիզբը ու Վերջը. ես ծարաւին ձրի պիտի տամ
7 կենաց ջուրին աղբիւրէն։ Ան որ կը յաղթէ,
‡ամէն բաները պիտի ժառանգէ. ու ես անոր
Աստուած պիտի ըլլամ, ան ալ ինծի որդի պիտի
8 ըլլայ։ Բայց վախկոտներուն, ու անհաւատնե-
րուն, և պղծերուն, ու մարդասպաններուն,
ու պոռնիկներուն, և կախարդներուն, ու կռա-
պաշտներուն, և բոլոր ստախօսներուն բաժինը
կրակով ու ծծումբով վառած լիճին մէջ պիտի
ըլլայ, որ է երկրորդ մահը։
9 Եւ եօթը վերջին հարուածներով լեցուն
եօթը սկաւառակները ունեցող եօթը հրեշ-
տակներէն մէկը ինծի եկաւ, և ինծի հետ խօ-
սեցաւ ու ըսաւ, Եկուր ցուցնեմ քեզի հարսը,
10 Գառնուկին կինը։ Եւ Հոգիով մեծ ու բարձր

---

*Ոմն., Եւ ես Յովհաննէս †Ոմն., Աստուած ‡Ոմն., այս

լեռան մը վրայ տարաւ զիս, և ցուցուց ինծի
սուրբ Երուսաղէմ *քաղաքը, որ երկինքէն Աս-
11 տուծմէ կ'իջնէր. Ու Աստուծոյ փառքը ունէր,
և անոր լուսաւորութիւնը խիստ պատուական
քարի նման էր, ակնվանիի երեւութով յասպիս
12 քարի պէս։ Եւ անոր պարիսպը մեծ ու բարձր
էր, և տասներկու դռներ ունէր, ու դռնե-
րուն վրայ տասներկու հրեշտակներ կային, և
դռներուն վրայ անուններ գրուած էին՝ այսինքն
Իսրայէլի որդիներուն տասներկու ցեղերուն
13 անունները։ Արեւելեան կողմէն երեք դուռ, ու
հիւսիսային կողմէն երեք դուռ, և հարաւային
կողմէն երեք դուռ, ու արեւմտեան կողմէն ե-
14 րեք դուռ։ Եւ քաղաքին պարիսպը տասներ-
կու հիմեր ունէր, ու անոնց վրայ Գառնուկին
տասներկու առաքեալներուն [տասներկու]
15 անունները գրուած էին։ Եւ ինծի հետ խօսողը
ձեռքը ոսկիէ եղէգ մը ունէր, որպէս զի անով
քաղաքը և անոր դռները ու անոր պարիսպները
16 չափէ։ Եւ քաղաքը քառակուսի էր, ու անոր
երկայնութիւնը լայնութեանը չափ էր. և քա-
ղաքը նոյն եղէգով տասներկու հազար ասպա-
րէզ չափեց, անոր երկայնութիւնը ու լայնու-
17 թիւնը և բարձրութիւնը հաւասար էին։ Եւ
անոր պարիսպը հարիւր քառասունըչորս կան-
գուն չափեց, մարդու չափով, այսինքն հրեշ-
18 տակին չափովը։ Եւ անոր պարսպին շինուածքը
յասպիս քարէ էր, ու քաղաքը զուտ ոսկի էր
19 մաքուր ապակիի նման։ Եւ քաղաքին պարսպին
հիմերը ամէն տեսակ պատուական քարերով զար-
դարուած էին. առաջին հիմը յասպիս էր, երկ-
րորդը՝ շափիւղայ, երրորդը՝ քաղկեդոն, չոր-
20 րորդը՝ զմրուխտ։ Հինգերորդը՝ եղնգնաքար,
վեցերորդը՝ սարդիոն, եօթներորդը՝ ոսկեքար,

*Ոմանք, մեծ քաղաքը

ութերորդը՝ բիւրեղ, իններորդը՝ տպազիոն,
տասներորդը՝ քրիսոպրասոս, մետասաներորդը՝
21 յակինթ, երկոտասաներորդը՝ ամեթիստ։ Եւ
տասներկու դռները տասներկու մարգարիտ
էին, ամէն մէկ դուռը մէյմէկ ամբողջ մարգա-
րիտէ էր. ու քաղաքին հրապարակը մաքուր
22 ոսկի էր թափանցիկ ապակիի նման։ Եւ անոր
մէջ տաճար չտեսայ, վասն զի Տէր Աստուած
Ամենակալն ու Գառնուկը անոր տաճարն են։
23 Եւ քաղաքը արեւի ու լուսնի պէտք չունի, որ
զանիկա լուսաւորեն, վասն զի Աստուծոյ փառքը
զանիկա կը լուսաւորէ, ու անոր ճրագը Գառ-
24 նուկն է։ Եւ [փրկուած] ազգերը անոր լոյսովը
պիտի քալեն, ու երկրի թագաւորները իրենց
փառքը ու պատիւը անոր մէջ պիտի բերեն։
25 Եւ անոր դռները ցորեկը պիտի չգոցուին. (վասն
26 զի հոն գիշեր պիտի չըլլայ.) Եւ ազգերուն
փառքը ու պատիւը անոր մէջ պիտի բերեն։
27 Եւ հոն բնաւ *անմաքրութիւն մը պիտի չմտնէ,
ոչ ալ պղծութիւն ու ստութիւն գործող մը,
հապա միայն անոնք՝ որ Գառնուկին կենաց
գիրքին մէջ գրուած են։

## ԳԼ. ԻԲ

1 կենաց ջուրին գետը։ 2 կենաց ծառը։ 5 Աստուած ինք կը լուսաւորէ երկնային քաղաքը։ 9 Հրեշտակը չուզեր որ իրեն երկրպագութիւն մատուցուի։ 18 Պէտք չէ բան մը աւելցնել Աստուծոյ խօսքին վրայ, ոչ ալ անկէ բան մը պակսեցնել։

1 Եւ ինծի կենաց ջուրի †գետ մը ցուցուց ակն-
վանիի պէս պայծառ, որ կ'ելլէր Աստուծոյ ու
2 Գառնուկին աթոռէն։ Եւ այն քաղաքին հրապա-
րակին մէջ, ու այն գետին մէկ կողմէն ու միւս
կողմէն կենաց ծառ կար՝ որ տասներկու կերպ
պտուղ կը բերէր, ու ամէն ամիս իր պտուղը
կու տար. և այն ծառին տերեւները հեթանոս-

*Ոմն., անմաքրութիւն ընող

†Ոմն., մաքուր գետ

3 ներուն բժշկութիւն կ՚ըլլար ։ Եւ ա՛լ բնաւ
նզովք պիտի չըլլայ. ու անոր մէջ պիտի ըլլայ
Աստուծոյ ու Գառնուկին աթոռը, և անոր ծա-
4 ռաները պիտի պաշտեն զանիկա. Եւ անոր ե-
րեսը պիտի տեսնեն, ու անոր անունը իրենց
5 ճակատներուն վրայ պիտի ըլլայ ։ Եւ հոն ա՛լ
գիշեր պիտի չըլլայ, և ճրագ ու արեւու լոյս
պէտք չէ. քանզի Տէր Աստուած պիտի լուսա-
ւորէ զանոնք, և յաւիտեանս յաւիտենից պիտի
թագաւորեն ։
6 Եւ ըսաւ ինծի, Այս խօսքերը հաւատարիմ
են ու ճշմարիտ. և *սուրբ մարգարէներուն
Տէր Աստուածը իր հրեշտակը ղրկեց՝ իր ծա-
ռաներուն ցուցնելու ինչ որ շուտով պէտք է
7 ըլլալ ։ Ահա ես շուտով կու գամ. երանի՜ անոր
որ կը պահէ այս գրքին մարգարէութեան խօս-
քերը ։
8 Եւ ես Յովհաննէս լսեցի ու տեսայ այս բա-
ները. և երբ լսեցի ու տեսայ, ինկայ որ եր-
կրպագութիւն ընեմ այն հրեշտակին ոտքե-
րուն առջև՝ որ այս բաները ինծի կը ցուցնէր ։
9 Եւ ըսաւ ինծի, Զգուշացիր, մի՛ ըներ. վասն զի ես
քուկին ու քու եղբայրներուդ, մարգարէնե-
րուն, և այս գրքին խօսքերը պահողներուն
ծառայակիցն եմ. Աստուծոյ երկրպագութիւն
10 ըրէ ։ Եւ ըսաւ ինծի, Այս գրքին մարգարէու-
թեան խօսքերը մի կնքեր, վասն զի ժամանակը
11 մօտ է ։ Ան որ անիրաւութիւն կ՚ընէ՝ ալ անի-
րաւութիւն թող ընէ, ու ան որ աղտոտ է՝ ալ
աղտոտ ըլլայ, և ան որ արդար է՝ ալ արդար
12 ըլլայ, ու ան որ սուրբ է՝ ալ սուրբ ըլլայ ։ Ահա
ես շուտով կու գամ, և իմ վարձքս ինծի հետ է՝
ամէն մէկուն իր գործին համեմատ հատուցա-
13 նելու ։ Ես եմ Ալֆա և Օմեղա, Առաջինը ու

*Ոմանք, մարգարէից հոգիներուն

14 Վերջինը, Սկիզբը և Վախճանը։ Երանելի են
անոնք որ անոր պատուիրանքները կը կատա-
րեն, որպէս զի իշխանութիւն ունենան կենաց
ծառին վրայ, և դռներէն ներս քաղաքը մտնեն։
15 Բայց դուրս պիտի մնան շուները ու կախարդները և
պոռնիկները ու սպանութիւն ընողները և կռա-
պաշտները ու այն ամէնը որ ստութիւն կը սիրէ
և կ'ընէ։
16 Ես Յիսուս իմ հրեշտակս ղրկեցի՝ այս բա-
ները ձեզի վկայելու եկեղեցիներուն *մէջ. ես
Դաւիթի արմատը ու ցեղն եմ, ու առաւօտեան
17 պայծառ աստղը։ Եւ Հոգին ու Հարսը կ'ըսեն,
Եկուր. և ան որ կը լսէ՝ թող ըսէ, Եկուր. ու
ան որ ծարաւ է՝ թող գայ, և ան որ կ'ուզէ՝
կենաց ջուրը ձրի առնէ։
18 †Ես կը վկայեմ ամէնուն՝ որ այս գիրքին մար-
գարէութեան խօսքերը կը լսէ. եթէ մէկը ա-
սոնց վրայ բան մը աւելցնէ, Աստուած ալ անոր
վրայ պիտի աւելցնէ այն հարուածները որոնք
19 այս գիրքին մէջ գրուած են։ Եւ եթէ մէկը
այս մարգարէութեան գիրքին խօսքերէն բան մը
պակսեցնէ, Աստուած ալ անոր բաժինը պիտի
պակսեցնէ կենաց ‡գիրքէն և սուրբ քաղաքէն՝
20 ‖որ այս գիրքին մէջ գրուած են։ Այս բանե-
րուն վկայութիւն տուողը կ'ըսէ, Այո, շուտով
կու գամ ես։ Ամէն, եկուր, Տէր Յիսուս։
21 Մեր Տէրոջը Յիսուս Քրիստոսի շնորհքը §ձեր
ամէնուն" հետ ըլլայ։ Ամէն։

*Կամ, վրայով †Ոմն., քանզի ‡Ոմն., ծառէն
‖Ոմն., և այն բաներէն որ §Ոմն., բոլոր սուրբերուն